ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ

Մ. ԱԲԵՂՅԱՆԻ ԱՆՎԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԱՐԱՄ ՂԱՆԱԼԱՆՅԱՆ

# ԱՎԱՆԴԱՊԱՏՈՒՄ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ 1969

Printed in the Soviet Union

АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ЛИТЕРАТУРЫ ИМ. М. АБЕГЯНА

АРАМ ГАНАЛАНЯН

# АРМЯНСКИЕ ПРЕДАНИЯ

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1969

Վաղամեռիկ որդուս՝

ՏԻԳՐԱՆԻԿԻ

անմոռաց հիշատակին

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԱԱ—Ազգագրական հանդես, առաջին տարի, Ա. գիրք, Շուշի, 1896:

ԱԲ—Ազգագրական հանդես, երկրորդ տարի, Բ. գիրք, Թիֆլիս, 1897:

ԱԳ—Ազգագրական հանդես, երրորդ տարի, Գ. գիրք, № 1, Թիֆլիս, 1898:

ԱԴ—Ազգագրական հանդես, երրորդ տարի, Դ. գիրք, № 2, Թիֆլիս, 1898:

ԱԵ—Ազգագրական հանդես, չորրորդ տարի, Ե. գիրք, № 1, Թիֆլիս, 1899:

ԱԶ—Ազգագրական հանդես, հինգերորդ տարի, Զ. գիրք, Թիֆլիս 1900:

ԱԷԸ—Ազգագրական հանդես, վեցերորդ տարի, Է. և Ը. գրքեր, Թիֆլիս 1901:

ԱԹ—Ազգագրական հանդես, յոթներորդ տարի, Թ. գիրք, Թիֆլիս, 1902:

ԱԺ—Ազգագրական հանդես, ութերորդ տարի, Ժ գիրք, Թիֆլիս, 1903:

ԱԺԱ—Ազգագրական հանդես, իններորդ տարի, ԺԱ. գիրք, Թիֆլիս, 1904:

ԱԺԲ—Ազգագրական հանդես, իններորդ տարի, ԺԲ. գիրք, Թիֆլիս, 1904:

ԱԺԵ—Ազգագրական հանդես, տասնմեկերորդ տարի, ԺԵ. գիրք, Թիֆլիս, 1907:

ԱԺԷ—Ազգագրական հանդես, տասնմեկերորդ տարի. ԺԷ. գիրք, № 1, Թիֆլիս, 1908:

ԱԺԸ—Ազգագրական հանդես, տասնմեկերորդ տարի, ԺԸ. գիրք, № 2, Թիֆլիս, 1908:

ԱԺԹ—Ազգագրական հանդես, տասներկուերորդ տարի, ԺԹ. գիրք, № 1, Թիֆլիս, 1910:

ԱԻԵ—Ազգագրական հանդես, տասնհինգերորդ տարի, ԻԵ. գիրք, № 2, Թիֆլիս, 1913:

ԱԻԶ—Ազգագրական հանդես, տասնվեցերորդ տարի, ԻԶ. գիրք, Թիֆլիս, 1916:

ԳԱԹ—Հայկական ՍՍՀ գրականության և արվեստի թանգարան:

ՀԱԱ—Հայկական ՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի ազգագրության բաժին:

ՀԱԺԲ—Հայկական ՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի ժողովրդական բանահյուսության բաժին:

ՄՄ—Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարան:

ՊԹԱ—Երևանի Պետական պատմական թանգարանի ազգագրական բաժին:

ИКОГО—Известия Кавказского отделения русского географического общества.

СМОМПК—Сборник материалов для описания местностей и племен Кавказа.

# ԱՌԱՋԱԲԱՆ

Ավանդությունները ժողովրդական բանահյուսության այն տեսակներից են, որոնք մեզանում մինչև այժմ չեն արժանացել քիչ թե շատ ամբողջական հրատարակության։ Նրանց մեծ մասը ուրիշ նյութերի հետ խառն և չտարբերակված վիճակում ցրված է զանազան տպագիր ու ձեռագիր աղբյուրներում, իսկ մի զգալի մասն էլ մնում է գրի չառնված[1]։

Տպագիր աղբյուրներից առաջին հերթին պետք է նշել **բանահյուսական և ազգագրական ժողովածուները**, ուր այլ նյութերի հետ հրատարակված են նաև հատ ու կենտ ավանդություններ։

Զգալի թվով ավանդություններ կան, այնուհետև, **ուղեգրական, տեղագրական և հնախոսական գրքերում**։ Այստեղ դրանք բերված են Հայաստանի լեռների, քարերի, լճերի, գետերի, աղբյուրների, բույսերի, կենդանիների, գավառների, գյուղերի, բերդերի, վանքերի և վերջիններիս հետ կապված պատմական դեպքերի ու դեմքերի նկարագրության առնչությամբ։

Ավանդությունների առանձին նմուշներ տեղ են գտել Հայաստանում և հայաբնակ զանազան վայրերում հրատարակված **հայերեն պարբերականներում** (օրաթերթ, շաբաթաթերթ, ամսագիր, տարեգիրք)։ Այս տեսակետից առանձնապես հիշարժան են «Ազգագրական հանդես»-ը և «Բյուրակն»-ը, ուր Արևելյան և Արևմտյան Հայաստանի մի շարք գավառներին նվիրված ազգագրական ու բանահյուսական նյութերի հետ, տարիների ընթացքում տպագրվել են նաև ավանդություններ։

---

[1] Մյուս ժողովուրդներից ավանդությունների համեմատաբար մեծ կամ փոքր ժողովածուներ ունեն՝ գերմանացիները (*Brüder Grimm*, Deutsche Sagen, Berlin, 1816), ռուսները (*Афанасьев А.*, Русские народные легенды, Москва, 1860), շվեդացիք (*Hjalmar Olsson*, Sägner frän Gotland, 1888) ամերիկացիները (*Washigton Mattews*, Novaho Legends, Boston and New York, 1897), դանիացիք (*Kristensen C.* Danske sagn, I—VI, 1902), իտալացիները (*Ginseppe Pitrě*, Sicilia e nuova raccoltadi leggende siciliane, Torin, 1904), լատիշները (*Ancelane A.*, Latviessu tautas teikas, Riga, 1961), ճապոնացիք (*Richard M. Dorson*, Folk legendes of Japan, Tokyo, 1962) և այլն։

Ժողովրդական ավանդությունների համար յուրահատուկ լրացուցիչ աղբյուր են հանդիսանում հայ հին, միջնադարյան, նոր և նորագույն շրջանի պատմիչների ու գրողների գործերը: Այստեղ դրանք վկայակոչված են հայկական բնաշխարհի և Հայաստանում տեղի ունեցած պատմական կարևոր անց ու դարձերի նկարագրության առնչությամբ:

Ավանդություններ պարունակող տպագիր աղբյուրների ցանկն ամբողջացնելու համար հիշենք նաև այն օտարալեզու պարբերականներն ու գրքերը, որոնց էջերում թարգմանաբար բերված են հայկական ավանդությունների մի շարք նմուշներ[1]:

Տպագիր աղբյուրներից բացի մեզանում զգալի թվով ժողովրդական ավանդություններ կան արձանագրված նաև զանազան ձեռագիր աղբյուրներում: Այդպիսիններից են Հայաստանի գիտությունների ակադեմիայի հնագիտության և ազգագրության ինստիտուտի ժողովրդական բանահյուսության և ազգագրության բաժինների, Հայաստանի պետական պատմական թանգարանի ազգագրական բաժնի, Հայաստանի գրականության և արվեստի թանգարանի գրական բաժնի, Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան մատենադարանի ձեռագրերը[2]:

Ժողովրդական ավանդությունները մեր բանագիտության մեջ մինչև այժմ չեն արժանացել նաև մասնագիտական հատուկ ուսումնասիրության[3]: Հայ բանագետները ավանդություններին անդրադարձել են ի մի-

---

[1] Ավանդությունների տպագիր աղբյուրների մեջ չենք դասում Ս. Բաբախանյանի «Հայաստանի լեռներում ավանդությունները» (Գահիրե, 1931), Ա. Ղուկասյանի «Հայրենի ավանդավեպեր» (Երևան, 1960) և Ստ. Կուրտիկյանի «Հայրենի լեգենդներ» (Երևան, 1963) խորագրերով գրքույկները, որովհետև դրանք անհատական ստեղծագործություններ են, ուր իբրև նյութ մասամբ օգտագործված են Խորենացու «Պատմության» մեջ և այլուր բերված որոշ հայկական ավանդություններ:

[2] Ինչպես տպագիր, այնպես էլ ձեռագիր բոլոր աղբյուրները, ավանդությունները գրի առնող բանահավաքների անունները կարելի է գտնել սույն աշխատության՝ «Աղբյուրներ և ծանոթագրություններ» բաժնում:

[3] Դրսում էլ քիչ կան համապատասխան ընդարձակ ու ամբողջական աշխատություններ: Այդ ուղղությամբ եղածը համառոտ ակնարկներ են (Wehran K., Die Sage Leipzig, 1908), առանձին հոդվածներ մասնակի հարցերի վերաբերյալ (*Аристов И.*, Русские народные предания об исторических лицах и событиях 1878) *Сумцов И.*, Сказания о провалившихся городах (1896), ժողովածուների առաջաբաններ (*Richard M.*, Dorson, Folk legends of Japan (1962), *Анцелане А.*, Латышские народные предания, 1962), բանագիտական ընդհանուր բնույթի աշխատությունների առանձին հատվածներ կամ գլուխներ (*Соколов Ю. М.*, Русский фольклор, Москва, 1938, էջ 342—346, „Русское народно-поэтическое творчество“, հատ. 2, М.—Л., 1955, էջ 378—386) և այլն:

*չի այլոց, վիպական բանահյուսության մյուս ժանրերի քննության ժամանակ: Ավելին՝ որոշակի ու հստակ պատկերացում չունենալով ավանդությունների ժանրային ուրույն նկարագրի մասին, հաճախ վերջիններս նույնացրել են ժողովրդական առասպելների, զրույցների, հեքիաթների, վեպերի ու վիպական երգերի հետ[1]: Իր վաղ շրջանի բանագիտական աշխատությունների մեջ նույն կերպ է վարվել նաև Մ. Աբեղյանը[2]: Ավելի ուշ, սակայն, անդրադառնալով հայ վիպական բանահյուսության չուսումնասիրված ստեղծագործություններին, նա ավանդությունները որոշակիորեն տարբերակել է բանավոր արձակի մյուս ժանրերից և առաջ է քաշել նրանց հատուկ հետազոտություն նվիրելու անհրաժեշտության հարցը, գրելով. «Վիպական բանահյուսության մեջ են մտնում նաև պատմական զրույց կամ պատմական ավանդություն, բարոյակրթական ու կրոնական զրույց, որոնք չեն առնված այս աշխատության մեջ, որովհետև դրանք կարոտ են հատուկ ուսումնասիրության»[3]:*

*Հայ ժողովրդական ավանդություններին նվիրված ներկա հատորը, որ կրում է* «**Ավանդապատում**»[4] *ընդհանուր խորագիրը, նպատակ ունի ի մի բերել մեզ մատչելի տպագիր ու ձեռագիր աղբյուրներում եղած համապատասխան բոլոր նյութերը, խմբավորել դրանք ըստ տեսակների ու բովանդակության և տալ դրանց բազմակողմանի վերլուծությունը:*

*Աշխատությունը բաղկացած է հետևյալ բաժիններից.*

**1. Ուսումնասիրություն,** *որն ունի երեք հիմնական գլուխ.*

*ա. Ավանդությունների մասին ընդհանրապես*

*բ. Հայոց ազգային ավանդությունները*

*գ. Միջազգային և եկամուտ ավանդություններ.*

**2. Ավանդապատում,** *որն իր հերթին բաղկացած է երեք մասից.*

---

[1] *Տե՛ս* **Մ. Էմին,** *Վէպք հնոյն Հայաստանի, Մոսկվա, 1850, էջ 7—8, 77, 90:* **Հ. Գաթրճյան,** *Պատմութիւն մատենագրութեան հայոց, Վիեննա, 1851, էջ 15—16, 53—54:* **Ստ. Պալասանյան,** *Պատմություն հայոց գրականության, հատ. Ա., Թիֆլիս, 1805, էջ 93, 105—106, 183, 190—191:* *Г. Халатьянц,* Армянский эпос в истории Армении Моисея Хоренского, Москва, 1896, *էջ 125.*

[2] *Տե՛ս* **Մ. Աբեղյան,** *Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց պատմության մեջ, Վաղարշապատ, 1899:*

[3] **Մ. Աբեղյան.** *Երկեր, հատ. Ա., Երևան, 1966, էջ 8—9:*

[4] *Բառս կազմել ենք* **հայապատում, ազգապատում** *և նմանօրինակ ուրիշ բարդությունների զուգանմանությամբ: Այն ունի ավանդություններին նվիրված ամբողջական աշխատության իմաստ:*

**Ա. Ստուգաբանական և բացատրական ավանդություններ:** *Ունի հետևյալ ենթաբաժինները.*

*ա. Արև, լուսին, աստղեր*
*բ. Լեռներ, ժայռեր, բլուրներ*
*գ. Քարայրներ, ձորեր, դաշտեր*
*դ. Նշանավոր քարեր*
*ե. Լճեր, գետեր, ջրանցքներ, աղբյուրներ*
*զ. Բույսեր*
*է. Կենդանիներ*
*ը. Գավառներ, քաղաքներ, գյուղեր*
*թ. Բերդեր, կամուրջներ, ճանապարհներ*
*ժ. Վանքեր, եկեղեցիներ, մատուռներ*
*ժա. Գերեզմաններ*

*Այս մասի որոշակի վայրերի հետ կապված բոլոր ավանդությունները դասավորված են ըստ այդ վայրերի տեղագրության: Նախ բերված են Սովետական Հայաստանի և հարևան հանրապետությունների հարակից շրջանների հետ կապված նյութերը (Արարատյան դաշտն իր մերձակա վայրերով, Վայք և Նախիջևան, Զանգեզուր, Լեռնային Ղարաբաղ, Գանձակ, Սևանա լճի շրջակայք, Հյուսիս-արևելյան կամ Անտառային Հայաստան, Լոռի և Բորչալու, Շիրակ, Ախալքալաք և Ախալցխա): Ապա, հյուսիսից դեպի հարավ դիրքավորմամբ և արևելքից արևմուտք ձգվող շարքերով, տրված են պատմական Հայաստանի մյուս վայրերի հետ կապված ավանդությունները: Առաջին շարքն սկսվում է Արդահանով և ավարտվում Տայքն-Գարահիսարով: Երկրորդը՝ Թավրիզով և ավարտվում Սեբաստիայով: Երրորդ շարքը սկսվում է Ուրմիայով և ավարտվում Կեսարիայով: Չորրորդը՝ Սղերդով և ավարտվում Դիարբեքիրով: Հինգերորդ շարքը սկսվում է Եդեսիայով և ավարտվում Զեյթունով: Վերջում տրված են հայկական գաղթավայրերի հետ կապված ավանդությունները (Ղրիմ, Հյուսիսային Կովկաս, Ռուսաստան, Լեհաստան և այլն):*

**Բ. «Վարքաբանական ավանդազրույցներ»**. *որն ունի չորս ենթաբաժին:*

*ա. Թագավորներ, իշխաններ, զորականներ*
*բ. Գիտնականներ, գրողներ, արվեստագետներ*
*գ. Բիբլիական և ավանդական դեմքեր*
*դ. Սրբեր և հոգևորականներ*

*Հատորում ընդգրկված են 900-ից ավելի ավանդություններ և ավանդազրույցներ, իրենց շուրջ 400 տարբերակներով կամ վարիանտներով։ Թե՛ ավանդությունները և թե՛ ավանդազրույցները ըստ բնույթի երկու տիպի են.*

*ա. Բանավոր հաղորդումների հարազատ գրառումներ, բուն ժողովրդական բարբառով ու պատմելակերպով։ Այդպիսիք են բանահյուսական, մասամբ էլ ազգագրական սկզբնաղբյուրներից քաղված ավանդություններն ու ավանդական զրույցները։*

*բ. Բանավոր հաղորդումների սովորական վերապատմումներ (գրաբար, արևելահայ և արևմտահայ գրական լեզուներով)։ Այդպիսիք են պատմական, ուղեգրական և ուրիշ աղբյուրներից քաղված ավանդություններն ու ավանդական զրույցները։*

*Բանահյուսական և ազգագրական աղբյուրների նյութերը բերված են անփոփոխ ձևով։ Հիմնականում անփոփոխ են թողնված նաև գրաբար նյութերը։ Մնացած բոլոր ավանդություններն ու ավանդական զրույցները ենթարկված են անհրաժեշտ խմբագրության (կրճատված են բանահավաքների ու հրատարակիչների ավելացրած տեղերը, լեզվաոճական ինքնահնար զարդարանքները և այլն)։*

*Ավանդություններն իրարից տարբերազատելու և ճիշտ տեղաբաշխելու նպատակով նրանց տրված են համապատասխան վերնագրեր ու թվահամարներ, իսկ որոշակի վայրերի (սար, ձոր, գավառ, գյուղ և այլն) հետ կապված ավանդություններին, վերնագրից անմիջապես հետո, կցված են համառոտ տեղեկանքներ այդ վայրերի աշխարհագրական տեղադրման վերաբերյալ (տեղեկանքների համար հիմք են ծառայել բանահավաքների հաղորդած գրավոր վկայությունները, որոնք, անհրաժեշտության դեպքում, ենթարկվել են ճշտման ու խմբագրության)։*

*Հայտնի է, որ օտար նվաճողները տարբեր դարերում բռնությամբ տիրանալով Հայաստանին, հաճախ աղավաղել կամ փոխել են հայկական բնաշխարհի տեղանունները։ «Ավանդապատում»-ի մեջ վերականգնված են նախկին անունները. Ալագյազն, օրինակ՝ Արագած, Ղանլը-յարըղը՝ Արայի լեռ, Բինգյոլը՝ Բյուրակն, Բալըղ-գյոլը՝ Գայլատվա լիճ, Այղր-գյոլը՝ Մեծամոր, Դարալագյազը՝ Վայոց ձոր, Էկինը՝ Ակն, Խարփութը՝ Խարբերդ, և այլն (որոշ դեպքերում վերջիններիս կողքին, փակագծերի մեջ, բերված են նաև դրանց օտար անվանաձևերը)։*

Գ. **«Աղբյուրներ և ծանոթագրություններ»**: Այս մասում, յուրաքանչյուր առանձին ավանդության հերթական թվահամարին ու վերնագրին կից տրված են անհրաժեշտ ծանոթագրություններ ու տեղեկություններ. եթե հայտնի է՝ հաղորդողի և գրի առնողի անուն-ազգանունը, օգտագործված տպագիր կամ ձեռագիր աղբյուրը հացեն, և այլն: Այստեղ կարելի է գտնել նաև համապատասխան հղումներ այն ավանդությունների վերաբերյալ, որոնք ունեն նման մոտիվներ կամ նվիրված են նույն անձին ու առարկային, բայց իրենց թեմայի կամ աշխարհագրական տեղակայության հանգամանքով գտնվում են տարբեր տեղերում:

**«Ցանկերի»** մեջ առանձին-առանձին բերված են ավանդությունների և ավանդական զրույցների մեջ առկա բոլոր **տեղանունները** (գավառ, քաղաք, գյուղ և այլն), **անձնանունները** (թագավոր, իշխան, զորական և այլն), և **առարկայական անունները** (կենդանի, բույս, զենք, գործիք և այլն): Դրանց օգնությամբ ժողովածուի մեջ հեշտությամբ կարելի է գտնել այս կամ այն նյութը:

Հատորն ունի նաև ավանդությունների տարածման հիմնական վայրերը ցույց տվող համապատասխան քարտեզ և ավանդության նյութ դարձած զանազան հուշարձանների երեք տասնյակ լուսանկարներ (քարտեզը մեր խնդրանքով կազմել է պրոֆ. Թ. Հակոբյանը, գծագրել է Ռ. Բուրուշյանը. լուսանկարները պատկանում են՝ Թ. Թորամանյանին, Ա. Վրույրին, Նեմրութին, Պ. Գրիգորյանին և Ս. Ճիմանսկուն):

Աղաչեմ զհանդիպողսդ սատիցս. չարեաւ մի յիշէք սպասաւորիս հայագիտութեան և ակամա սխալանացս անմեղադիր լերուք:

Ա. ՂԱՆԱԼԱՆՅԱՆ

1967 թ., Երևան

# ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԸՆԴՀԱՆՐԱՊԵՍ

**1. Ավանդությունների տեղը բանավոր արձակի մեջ։**—*Ժողովրդական ավանդությունները իբրև բանարվեստի ուրույն տեսակներից մեկը ցարդ իրենց համակողմանի մեկնաբանությունը չեն ստացել բանագիտության մեջ։ Տակավին չի տրված նրանց ժանրային առանձնահատկությունների քիչ թե շատ մանրամասն ու ամբողջական բնութագիրը, ինչպես այդ, ավել կամ պակաս հաջողությամբ, արված է, դիցուկ, առասպելների, հեքիաթների, էպոսի, վիպական երգերի և ուրիշ ժանրերի նկատմամբ։*

*Որոշ գիտնականներ ավանդությունները նույնացրել են առասպելների հետ, ելնելով այն փաստից, որ երկուսի մեջ էլ ծավալային մոտավորապես նույն շրջանակներում արտացոլված են բնության ու հասարակական կյանքի միևնույն առարկաներն ու երևույթները, բատ որում, հաճախ նման մոտիվներով ու կերպարներով։*

*Նման կարգի մոտեցման բնորոշ օրինակ է Մ. Է. Մատյեի աշխատությունը, նվիրված հին եգիպտական առասպելներին, ուր մի ընդհանուր վերնագրի տակ, և նույն գրքերից՝ Օզիրիս, Իսիդ, Նեֆտիդ, Դոռ, Սեթ աստվածների առասպելները քննարկված են՝ երկնքի, արևի, լուսնի, աստղերի, կենդանիների (օձ, կարիճ և այլն), գետերի և նմանների մասին պատմող սովորական ավանդությունների հետ*[1]*։*

*Հաշվի չի առնվել այն կարևոր հանգամանքը, որ առասպելների մեջ առկա է բնության և հասարակական կյանքի դիցաբանական ընկալումը, որ այստեղ մարդը իր երևակայության մեջ և այդ երևակայության միջոցով անգիտակցական ու պատկերավոր ձևով մարմնավորել ու աստվածացրել է իր համար անըմբռնելի և իր վրա իշխող մութ ու տարերային ուժերը։*

*Մինչդեռ ավանդությունների մեջ մարդու աշխարհաճանաչողությունը ունի ավելի գիտակցական ու իրականության մոտ բնույթ, և ա-*

---

[1] *М. Э. Матье,* Древнеегипетские мифы, М.-Л., 1956.

առաջնայինը ոչ թե աստվածներն են, այլ իրենք մարդիկ՝ բնության և հասարակական կյանքի հակոտնյա ուժերի դեմ մղած իրենց պայքարով, աշխատանքային գործունեությամբ և պատմական ճակատագրով։

Ուրիշ գիտնականներ ավանդությունները դասել են հրաշապատում հեքիաթների շարքը, նկատի ունենալով այն, որ երկուսի մեջ էլ իրականության երևույթների վերարտադրությունը միահյուսվում է երևակայականի հետ, որ երկու դեպքում էլ, իբրև արտահայտչական միջոց, առկա է չափազանցությունը։ Այսպիսի փաստի մենք հանդիպում ենք Յու. Սոկոլովի ռուսական ժողովրդական բանահյուսության նվիրված բուհական հայտնի դասընթացում, ուր ավանդությունները դիտված են իբրև ժողովրդական հեքիաթների մի տարատեսակ[1]։

Մոռացության է տրվել սկզբունքային նշանակություն ունեցող այն հանգամանքը, որ հրաշապատում հեքիաթների հիմնական առանցքը կազմում է չարի պարտությունը և բարու հաղթանակը, որը իրականացվում է ժողովրդի երևակայության ուժով։ Նրանց բովանդակությունը ինչպես պատմողների, այնպես էլ ունկնդիրների կողմից ընկալվում է մեծ վերապահությամբ ու թերահավատությամբ, որովհետև այն կապված լինելով հնամենի կենցաղի ու պատկերացումների հետ, չի համընկնում նրանց նոր ըմբռնումներին ու հասկացություններին։ Այդ են վկայում թեկուզ հրաշապատում հեքիաթների «Կար-չկար» կամ «Լինում է, չի լինում» կայուն բանաձևերի բնույթն ունեցող բնորոշ սկսվածքները։ Հեքիաթների մեջ առաջնային և էական դեր ունեն հեքիաթասացի ստեղծագործական հնարանքն ու գեղարվեստական մտածողությունը։ Լինելով ծավալուն ստեղծագործություններ՝ դրանք ունեն հարուստ սյուժե, բազմաթիվ կերպարներ, բավական բարդ կառուցվածք։ Հեքիաթների գործողությունը չի սահմանափակվում ժամանակի և տարածության որոշակի շրջանակներում։

Մինչդեռ ավանդությունների մեջ չարի և բարու հարաբերությունը շատ ավելի իրական դրսևորումներ ունի։ Նայած կյանքի հանգամանքներին և պատմական իրադրությանը, այստեղ մերթ հաղթող է հանդիսանում «չարը», մերթ «բարին»։ Ավանդությունների բովանդակության իսկությանը հավատում են ոչ միայն նրանց պատմողները, իբրև կատարված դեպքերին ժամանակակիցներ ու ականատեսներ, այլև ունկըն-

[1] *Ю. М. Соколов,* Русский фольклор, учебник для высших учебных заведений, Москва, 1938, *էջ 342—346*։

*դիրները, իբրև նրանց հետնորդներ ու ազգակիցներ։ Ավանդություննե-րի մեջ առաջնայինը պատմական, աշխարհագրական, քաղաքական, կրոնական այն տեղեկություններն են, որ հաղորդում է ավանդախոսն իր ունկնդիրներին։ Ստեղծագործական հնարքն այստեղ երկրորդական մի-ջոց է այդ տեղեկությունները ավելի լավ տեղ հասցնելու համար։ Ավան-դությունները խիստ կարճ պատումներ են, մեծ մասամբ առանց որոշակի սյուժեի, սահմանափակ թվով գործող անձերով և պարզ կառուցվածքով։ Նրանք կապված են կոնկրետ առարկաների ու մարդկանց հետ, գործո-ղությունը կատարվում է պատմական և աշխարհագրական համապա-տասխան հողի վրա։*

*Գիտնականներից ոմանք հավասարության նշան են դրել ավանդու-թյունների և էպոսի մեջ, հաշվի առնելով այն, որ երկու տեղում էլ անդ-րադարձում են գտել պատմական դեպքեր ու դեմքեր, իրական առար-կաներ ու երևույթներ, ժողովրդի կենցաղն ու հավատալիքները, նրա ազգային բնավորության առանձնահատկությունները։*

*Այդպես են վարվել վրաց բանագետներից մի քանիսը։ Խոսելով, օրինակ, Ամիրանիի ավանդության մասին, նրանցից ոմանք այդ ստեղ-ծագործությունը հորջորջել են մերթ՝ «ավանդություն», «լեգենդ», «զր-ույց», «էպիկական զրույց», «հերոսական զրույց», մերթ էլ՝ «էպոս», «ժողովրդական էպոս», «դասական էպոս», «առասպելական էպոս», անուններով, իսկ երբեմն էլ՝ ուղղակի «պոեմ» կամ «առասպելական պոեմ»*[1]։

*Հաշվի չի առնվել, որ էպոսը, նախ և առաջ, մեծ ընդգրկման ու ծա-վալի ստեղծագործություն է, հարուստ սյուժեով և բազմաթիվ գործող անձերով, հյուսված է տվյալ ժողովրդի կյանքում բախտորոշ նշանակու-թյուն ունեցած ռազմա-քաղաքական խոշորագույն իրադարձության շուրջը։ Հաշվի չի առնվել, այնուհետև, որ էպոսն իր միջուկով կապված է պատմական որոշակի դարաշրջանի հետ և իր տեսակի մեջ անկրկնելի ստեղծագործություն է։ Այն արտացոլում է ժողովրդական զանգված-ների ձևավորվող ազգային ինքնագիտակցությունը, օտարերկրյա*

---

[1] «Амирани, грузинская мифологическая поэма», перевод и введение *Ш. Нуцубидзе,* Тбилиси, 1946, էջ 20, 21, 23, 25, 26, 37, 42, 54, 60, 61։

«Сокровище грузинского народного творчество, Сказания и легенды, под ред., с предисл. и примеч. проф. *М. Я. Чиковани,* Тбилиси, 1963, էջ VI, VII։

*М. Я. Чиковани,* Народный грузинский эпос о прикованном Амирани, Москва, 1966, էջ 5, 6, 9, 16, 33, 36 45, 50, 109, 120, 138, 143, 148, 171, 199, 327։

նվաճողներից հարազատ հայրենիքը պաշտպանելու համաժողովրդական գաղափարը։ Նրա գլխավոր հերոսը հանդես է գալիս միաժամանակ և՛ իբրև կոնկրետ անհատականություն, և՛ իբրև ժողովրդի հավաքական ամբողջի մարմնավորում, վերջինիս ազգային բնավորության լավագույն հատկանիշների՝ անպարտելի ուժի, իմաստության, ձգտումների ու ակընկալությունների արտահայտիչ։ Էպոսի մեջ դեպքերն ու դեմքերը վերարտադրվում են մեծ չափազանցումներով, կյանքի իրական ու հավաստի նկարագրությունները սերտորեն զուգակցվում են առասպելական ու հեքիաթային ֆանտաստիկ պատկերների հետ։

Մինչդեռ ավանդությունները, ինչպես ասվեց վերևում, բավական նեղ ընդգրկման և փոքր ծավալի ստեղծագործություններ են, հաճախ զուրկ որոշակի սյուժեից, մեկ կամ երկու գործող անձով։ Նրանք հորինվում են տարբեր դարաշրջաններում, մեծ մասամբ տեղային նշանակություն ունեցող դեպքերի ու դեմքերի, իրերի ու երևույթների շուրջը։ Առանձին մարդկանց, պատմական որոշակի գործիչների անձնական հաբերությունների նկարագրության միջոցով ավանդությունների մեջ բացահայտվում է նույն այդ մարդկանց ու գործիչների վարքագիծն ու հոգեբանությունը, նրանց պայքարն ու ոգորումները։ Ավանդություններն առանձին-առանձին արտացոլում են ժողովրդի հավաքական ամբողջի կոնկրետ մասնիկները միայն, նրա ազգային բնավորության ու հոգեբանության այս կամ այն գիծը։ Չափազանցությունն ու երևակայականը այստեղ արտահայտված է բավական զուսպ ձևով, պատմական դեպքերի նկարագրությունը ավելի մոտ է իրականին ու հավաստիին։

Որոշ գիտնականներ էլ կենդանիներին ու բույսերին նվիրված ավանդությունները չեն տարբերակել կենդանական էպոսից կամ առակներից, նկատի ունենալով այն փաստը, որ երկուսի գործող անձինք ու հերոսներն էլ գլխավորապես կենդանիներն ու բույսերն են։

Այդպիսի մոտեցում է ունեցել Լ. Զ. Կոլմաչևսկին սլավոնների և Արևմտյան Եվրոպայի ժողովուրդների կենդանական էպոսին նվիրված իր ուսումնասիրության մեջ, ուր կենդանիների և բույսերի մասին եղած ավանդությունները լռելյայն նույնացված են կենդանական էպոսի կամ առակների հետ[1]։

Աչքաթող է արված այն հանգամանքը, որ կենդանական էպոսը կամ առակը համեմատաբար ուշ շրջանում առաջ եկած փոխաբերական կամ

---

[1] *Л. З. Колмачевский,* Животный эпос на Западе и у славян, Казань, 1882.

այլաբանական ստեղծագործություններ են։ Մարդկանց փոխարինող կենդանիների ու բույսերի «բնավորությունների» ու «հարաբերությունների» միջոցով այստեղ ակնարկվում, բացահայտվում և քննարկվում են մարդկային բնավորություններն ու հարաբերությունները, հասարակական կյանքի բացերն ու արատները։

Մինչդեռ կենդանական ավանդությունները հնուց եկող ոչ-այլաբանական ստեղծագործություններ են, հիմնված մեծ մասամբ տոտեմական ժամանակների պաշտամունքային հավատալիքների վրա։ Նրանց մեջ բացատրվում է որևէ կենդանու կամ բույսի ծագումը, ցույց է տրվում նրա այս կամ այն առանձնահատկությունը։ Կենդանիներն ու բույսերն այստեղ հանդես են գալիս մարդկանցից անկախ, իրենց բնական նկարագրով։

Ժողովրդական ավանդությունների ժանրային առանձնահատկությունների որոշակի սահմանման բացակայությունը բանագիտության մեջ զգալի չափով պայմանավորված է համապատասխան առարկայական պատճառներով։ Բանավոր արձակի ոչ մի ուրիշ տեսակ թերևս այնքան աղերսված չէ հարակից ժանրերի հետ, որքան ավանդությունները։ Ավանդությունների մեջ հեշտությամբ կարելի է նկատել բանահյուսական այլ և այլ ստեղծագործությունների առանձին տարրերը, իսկ այս վերջինների մեջ էլ ավանդությունների թեմաների, մոտիվների, կերպարների, կառուցվածքի ու ոճի առկայության փաստեր։

Գալով դարերի խորքից և գոյակցելով բանահյուսական մյուս ստեղծագործությունների հետ, ավանդությունները բնականաբար պետք է ենթարկվեին այդ ստեղծագործությունների ազդեցությանը, իրենք էլ իրենց հերթին ազդեին նրանց վրա։ Եվ իրոք։

Որոշ ավանդություններ ժամանակի ընթացքում ձեռք են բերել առասպելական գծեր, իսկ առանձին առասպելներ էլ ստացել են պատմական ավանդության կամ ավանդական զրույցի երանգավորում ու կերպարանք։

Այդ երևույթի ցայտուն օրինակներից մեկն է Ծիր կաթինի՝ աշխարհով մեկ տարածված հայտնի ավանդությունը, որը հին հույների մոտ դիցաբանական կերպարանք ստանալով վեր է ածվել առասպելի և կապվել է Օլիմպոս լեռան և Հերա աստվածուհու անվան հետ[1]։ Կամ՝ Լուսնի, Նեղոս գետի և եզան մասին պատմող եգիպտական հնօրյա ավանդու-

[1] Տե՛ս Мифологический словарь, Ленинград, 1959, էջ 76։

թյունները, որոնք դարերի ընթացքում միացել են Օզիրիս աստվածությանը նվիրված առասպելին և ձուլվել են վերջինիս հետ[1]։

Նույն տիպի մի ուրիշ օրինակ է շվեյցարական հայտնի առասպելը Վիլհելմ Տելլի մասին, որի մեջ սկզբնապես արտացոլված են եղել շվեյցարական ժողովրդի վաղնջական պատկերացումները լույսի և խավարի կամ ցերեկվա ու գիշերվա պայքարի մասին, իբրև աստվածային մի աղեղնավորի կռիվ, և որը հետագայում դարձել է պատմական ավանդություն, ուր երբեմնի աստվածային աղեղնավորին փոխարինել է իր ժողովրդի ազգային ազատության համար մարտնչող անվեհեր հերոս Վիլհելմ Տելլը[2]։ Կամ՝ ասորա-բաբելական հայտնի առասպելը՝ պտղաբերության, սիրո ու ջրի դիցուհի՝ հեշտասեր Իշտարի մասին[3], որը հետագայում դարձել է պատմական ավանդություն, ուր երբեմնի Իշտար աստվածուհուն փոխարինել է Ասորեստանի Շամիրամ թագուհին[4]։

Հատկանշական է այն հանգամանքը, որ վերոհիշյալ ստեղծագործությունները բանագիտական գրականության մեջ խառն կերպով հորջորջվել են մերթ «ավանդություն», մերթ էլ «առասպել» անուններով։

Կան ավանդություններ, որոնք երկար ժամանակ բանավոր ձևով ապրելով ժողովրդի լայն խավերում, հետզհետե կորցրել են իրենց ժանրային ուրույն նկարագիրը և վեր են ածվել համեմատաբար ընդարձակ հեքիաթատիպ պատումների, ձեռք բերելով վերջիններիս բնորոշ հատկանիշները (մշտական ու կայուն սկսվածք ու վերջավորություն, հնարածին մոտիվներ, հիպերբոլիկ պատկերներ, գերբնական հատկություններով օժտված կերպարներ, կենդանի երկխոսություններ և այլն)։

Հայ բանահյուսության մեջ հեքիաթի վերածված այդպիսի ավանդությունների բնորոշ օրինակներ են՝ Հովվի կամուրջին, ջրով լցված թոնրին, կնոջից խաբված Սողոմոն իմաստունին, Անողորմ Պետրոսին նվիրված ավանդությունները[5], վրաց բանահյուսության մեջ՝ Ամիրանի

[1] Տե՛ս *М. Э. Матье*, Древнеегипетские мифы, М.—Л., 1956, էջ 52։

[2] Տե՛ս Մ. Աբեղյան, *Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց պատմության մեջ*, Վաղարշապատ, 1899, էջ 254—256։

[3] Նույն տեղում, էջ 516 և 525։

[4] Տե՛ս *Lehman-Haupt*, Armenien einst und jetzt, I, էջ 253—265։

[5] Տե՛ս Ե. Լալայան, *Ջավախքի բուրմունք*, Թիֆլիս, 1899, էջ 61—63 (Չոպնի կարմունջը), Տ. Նավասարդյանց, *Հայ ժողովրդական հեքիաթներ*, 7-րդ գիրք, Թիֆլիս, 1891, էջ 39—41 (Աղքատին պաշ տվող կնիկը), *Հայ ժողովրդական հեքիաթներ*, հատ. 10, գրի առավ Ս. Մովսիսյան (Բենսե), Երևան, 1967, էջ 341—342 (Կնկա խաբուկ), էջ 302—303 (Անողորմ Պետրոս)։

*Հայտնի ավանդության մի քանի տարբերակներ[1], ռուս բանահյուսության մեջ՝ Պետրոս Մեծի մասին պատմող ավանդություններից մի քանիսը[2] և այլն, որոնք բանահավաքների և հրատարակիչների կողմից կոչվել են մերթ «ավանդություն», մերթ էլ «հեքիաթ» անուններով։*

*Կան ավանդություններ էլ, որոնք ժամանակի ընթացքում վեր են ածվել անեկդոտների։ Դրանք՝ իրենց կատարած այս կամ այն արարքով, խելքով, սրամտությամբ, կամ ընդհակառակն՝ թեթևամտությամբ ու բթությամբ աչքի ընկած իրական-պատմական մարդկանց մասին պատմված այն հուշապատումներն են, որոնք բերանից-բերան անցնելով, ենթարկվել են համապատասխան «մշակման» ու «խմբագրության», հնարովի հավելումների ու չափազանցությունների, և կորցնելով իրենց երբեմնի վավերական հավաստիությունը, դարձել են յուրահատուկ ինքնակա երգիծական հորինվածքներ։*

*Անեկդոտների վերածված այդպիսի ավանդությունների նմուշներից են Պըլը-Պուղու և Հոբոսի ավանդությունները հայ բանահյուսության մեջ[3], Սուլթան Մահմուդի և Դիվանա Բահլուլի ավանդությունները իրանական բանահյուսության մեջ[4] և այլն։*

*Քիչ չեն այն ավանդությունները, որոնք ժողովրդի մեջ ունեցած երկարամյա գոյության ընթացքում փոխել են իրենց ժանրային ձևը (սովորական արձակ պատումը) և օժտվելով չափական ոտանավորով, երբեմն էլ երաժշտական եղանակով, դարձել են վիպական երգեր, և կամ այն վիպերգները, որոնք կորցնելով իրենց չափական ոտանավորն ու երաժշտական եղանակը, դարձել են սովորական ավանդություններ կամ ավանդական զրույցներ։*

*Վիպական երգի վերածված այդպիսի ավանդությունների կամ ավանդություն դարձած այդպիսի վիպերգների օրինակներ են Գրիգոր Նարեկացու, Կարոս խաչի և Մոկաց Միրզայի ավանդություն-վիպերգնե-*

---

1 *М. Я. Чиковани,* Народный грузинский эпос о прикованном Амирани, Москва, 1966, *էջ 236—243* (Сказка об Амирани)։

2 *Տե՛ս Е. Барсов,* Петр Великий в народных преданиях и сказках Северного края, Москва, 1877, *էջ 34։*

3 *Տե՛ս* Մ. Վ. Բարխուդարյան, *Պըլը-Պուղի, Թիֆլիս, 1883,* Ե. Լալայան, *Ժողովրդական առակներ, Բ., Հոբոս, Թիֆլիս, 1903։*

4 *Տե՛ս* Персидские анекдоты, перевод с персидского М. Ашрафи, А. Бертельса, Н. Кондыревой, Н. Османова и Т. Щаповой, под редакцией А. Нушина, Москва, 1963.

րը հայ բանահյուսության մեջ[1], Ստեպան Ռազինի և Եմելյան Պուգաչովի ավանդություն-վիպերգները ռուս բանահյուսության մեջ[2] և այլն։

Առանձնապես ակնառու է ավանդությունների և ժողովրդական վեպի կամ էպոսի միջև գոյություն ունեցող փոխադարձ կապն ու առնչությունը։

Ավանդությունները սովորաբար ստեղծվում են այս կամ այն ժողովրդի հայրենի բնաշխարհի աչքի ընկնող առարկաների, հուշարձանների և նրա կյանքում կատարված նշանակալից դեպքերի և վերջիններիս գլխավոր գործող անձանց շուրջը։ Տարբեր դարերում ստեղծված այդ կարգի ավանդությունները, ավանդական զրույցները, առասպելներն ու վիպական առանձին երգերը ժամանակի ընթացքում համախմբվում են տվյալ ժողովրդի պատմական ճակատագրի համար բախտորոշ նշանակություն ունեցող ռազմա-քաղաքական որևէ մեծագույն իրադարձության և սրա գլխավոր գործող անձի կամ հերոսի շուրջը, ձուլվում են իրար և ստեղծագործաբար վերամշակվելով կազմում են մի ծավալուն ու ամբողջական ժողովրդական վեպ կամ էպոս։

Ժողովրդական ավանդությունների, ավանդական զրույցների, առասպելների ու վիպերգների նմանօրինակ ստեղծագործական համադրությունից են ծնվել շումերական «Գիլգամեշը», հունական «Իլիականը», հնդկական «Ռամայանան», ֆիննական «Կալեվալան», հայկական «Սասունցի Դավիթը» և շատ ուրիշ ժողովուրդների էպոսներ։

**2. Ավանդությունների ժանրային առանձնահատկությունները։—** Ինչպես ամեն մի բանահյուսական ժանր, այնպես էլ ավանդությունները համապատասխան պատմական, սոցիալական, էթնիկական, կենցաղային ու այլ կարգի գործոնների ծնունդ են։ Ինչպես ամեն մի բանահյուսական ժանր, այնպես էլ ավանդությունները իրենց վերապահված հասարակական դերը կատարում են այն թեմաների, գաղափարների, գործող անձանց, հերոսների և արտահայտչական միջոցների օգնությամբ, որոնք հանդես են գալիս նրանց մեջ։

Ժողովրդական բանահյուսության և մասնավորապես բանավոր արձակի տարբեր ժանրերի հետ ավանդությունների ունեցած ընդհանրու-

[1] Տե՛ս Գ. Հովսեփյանց, *Փշրանքներ ժողովրդական բանահյուսությունից*, Թիֆլիս, 1892, էջ 12—20, Հ. Աճեմյան, *Ծաղկաքաղ Վասպուրականի հայ ժողովրդական բանահյուսության*, Ա. փունջ, Էջմիածին, 1917, էջ 9—34։

[2] Տե՛ս *Н. П. Андреев*, Русский фольклор, М.—Л., 1938, էջ 281—321։

թյունները նրանց չեն զրկում իրենց բնորոշ առանձնահատկություններից, այն ուրույն տեղից, որ գրավում են նրանք այդ ստեղծագործությունների շարքում։

Ի տարբերություն ժողովրդական բանավոր արձակի մյուս բոլոր ստեղծագործությունների (հեքիաթ, վեպ, զրույց և այլն), որոնք կոչված են ծառայելու հիմնականում ունկնդիրների գեղարվեստական պահանջմունքների բավարարմանը (նրանց հասարակական-գաղափարական բովանդակությունը շատ կարևոր լինելով հանդերձ, տվյալ դեպքում, արտահայտվում է միջնորդավորված ձևով), ավանդությունների գլխավոր դերը ունկնդիրներին համապատասխան աշխարհագրական, պատմական, կենցաղային, կրոնական ու այլ կարգի տեղեկություններ ու գիտելիքներ հաղորդելն է (գեղարվեստական ներգործման խնդիրն այստեղ ստորադաս նշանակություն ունի)[1]։

Մինչդեռ բանավոր արձակի մյուս ժանրերը ծնվում ու ապրում են իրենց ինքնուրույն ու անկախ կյանքով, ավանդությունների և՛ ծնունդը, և՛ կյանքը սերտորեն ու անբաժան կապված է որոշակի առարկաների, վայրերի ու անձնավորությունների հետ։ Նրանք ընդհանրապես ծագում, պահպանվում և հարատևում են այս կամ այն նշանակալից վայրի ու առարկայի մոտակայքում, այն տեղերում, ուր ապրել ու գործել է ավանդության նյութ դարձած պատմական դեմքը կամ հերոսը, ուր հետաքրքրություն է եղել վերջինիս շուրջը։ Այդ վայրերն ու առարկաները, լինեն դրանք լեռներ, ձորեր, քարեր, լճեր, գետեր, բերդեր, կամուրջներ, ճանապարհներ, կամ գավառներ, քաղաքներ, գյուղեր և այլն, մարդու հատուկ զուգորդական մտածողության ուժով պահում ու պահպանում են այն հիշողությունները, որոնք կապված են իրենց և իրենց շուրջը ժամանակին տեղի ունեցած պատմական դեպքերի ու սրանց մասնակից դեմքերի հետ։ Ահա թե ինչու մինչդեռ հեքիաթը, վեպը, առակը, վիպերգը, երգը և այլն, իբրև բանավոր գեղարվեստական ստեղծագործություններ, ժողովրդի մեջ ապրում են իրենց ինքնուրույն ու անկախ կյանքով, և կարող են կատարվել (պատմվել կամ երգվել) սովորական պայմաններում (երբ հետաքրքրություն ու պահանջ է լինում նրանց նկատմամբ), ավանդությունները ավանդվում կամ պատմվում են գլխավորապես այն ժամանակ, երբ պատճառ կամ առիթ է ներկայանում տեսնելու կամ հի-

[1] Հմմ. К. В. Чистов, К вопросу о принципах класификации жанров устной прозы, Москва, 1964, էջ 5—7։

*շելու այն առարկաները, դեպքերն ու դեմքերը, որոնց հետ անմիջականորեն կապված են նրանք իբրև այդ առարկաների, դեպքերի ու դեմքերի յուրօրինակ բանավոր բացատրություններ կամ տեղեկանքներ։ Առանձնապես ամուր է այն կապը, որ գոյություն ունի ժողովրդական ավանդությունների և նյութական կուլտուրայի զանազան հուշարձանների միջև։ Նյութ հանդիսանալով այս կամ այն ավանդության ստեղծման համար, այդ նույն հուշարձանները, դարեր շարունակ կանգուն մնալով իրենց տեղում, յուրահատուկ կռվան են դարձել նրանց մասին ժողովրդի ստեղծած համապատասխան ավանդությունների կենդանի մնալուն ու հարատևմանը։ Իբրև օրինակ կարելի է հիշել զանազան բերդերի, կամուրջների, վանքերի, գերեզմանների վերաբերյալ տարբեր ժողովուրդների մոտ պատմվող բազմաթիվ ու բազմապիսի ավանդությունները։*

*Ուշագրավ է այս առումով Նիկողայոս Մառի մի դիտողությունը՝ ուրարտական թագավորների սխրագործությունների վերաբերյալ Հայաստանում պատմվող ավանդությունների և նույն այդ թագավորների մեր երկրում թողած բազմաթիվ սեպագիր արձանագրությունների միջև եղած կապի մասին։ Ականավոր հայագետը իրավացիորեն նշել է, որ «... Այդ ավանդությունները զգալի օժանդակություն էին գտնում հանելուկային գրերի (իմա սեպագիր արձանագրությունների. Ա. Ղ.) փաստի մեջ, որոնք թեև արդեն չէին հասկացվում, բայց որոնց մեջ, ըստ ժողովրդական ավանդությունների, տակավին շարունակում էին տեսնել Հայաստան աշխարհի մեծ շինարարների կատարած գործերը»*[1]*։*

*Հատկանշական է այն, որ անգամ հրաշապատում հեքիաթը կամ դիցաբանական առասպելը, երբ կապվում են որոշակի վայրերի կամ առարկաների հետ, և պատմվում են իբրև տվյալ վայրում կատարված իրողություն, որոշ չափով փոխում են իրենց ժանրային նկարագիրը և տեղային երանգ ստանալով, մոտենում են ավանդությանը։*

*Ի տարբերություն ժողովրդական հեքիաթների, վեպերի, վիպերգների և բանահյուսական ուրիշ ստեղծագործությունների, որոնց հեղինակներն ու կատարողները համապատասխան բնատուր ձիրքով օժտված հատուկ անհատներ են, ավանդությունների իմացողներն ու պատմողները մեծ մասամբ սովորական մարդիկ են, որոնց կարելի է հանդիպել հասարակության ամենատարբեր խավերում։ Դրանք այն անձնավորու-*

---

[1] *Н. Марр и И. Орбели,* Археолог. экспед. 1916 года в Ван, Петербург, 1922, *էջ 60—61։*

*թյուններն են, ովքեր այս կամ այն առիթով ուրիշներից ժամանակին լսած լինելով իրենց շրջապատում եղած առարկաների և կատարված անց ու դարձերի վերաբերյալ ժողովրդի գիտակցության մեջ դարերի ընթացքում ձևավորված ու կայուն տեսք ընդունած հնօրյա հուշապատումները, իրենք իրենց հերթին դրանք, ավել կամ նվազ հաջողությամբ, հաղորդում են հետաքրքրվողներին։ Ժողովրդական այդ ավանդախոսների մեջ հատկապես աչքի են ընկնում լավ հիշողություն և հարուստ կենսափորձ ունեցող տարեց մարդիկ (տղամարդ, թե կին)։*

*Անգիր բանահյուսության մյուս ժանրերի և ավանդությունների ասացողների ինքնության մեջ եղած վերոհիշյալ բնորոշ տարբերությամբ է պայմանավորված այն հանգամանքը, որ բանահավաքներն ու հրատարակիչները հաճախ անհրաժեշտ տեղեկություններ տալով այս կամ այն հեքիաթը, վեպը, զրույցը հաղորդողի վերաբերյալ, մեծ մասամբ անուշադրության են մատնել ավանդախոսներին, կամ էլ՝ բավարարվել են «հներն ասում են», «ծերերի պատմելով» և նմանօրինակ ընդհանուր խոսքերով։ Առանձին դեպքերում միայն նրանցից ոմանք հարկ են համարել շատ սեղմ կենսագրական տեղեկություններ տալ այս կամ այն ավանդախոսի մասին։*

*Ժողովրդական բանավոր արձակի մյուս ժանրերից, ավանդություններր տարբերվում են նաև իրենց կառուցվածքով ու ձևով։ Եթե հեքիաթը, առակը և նմանները վերջավորված ու կայուն ձև ունեցող սյուժետային ստեղծագործություններ են, ավանդությունները միշտ չէ, որ ունեն այդպիսի կայուն ձև ու սյուժե։ Նրանք ավելի հաճախ հանդես են գալիս իբրև հանպատրաստից ասված հուշապատումներ կամ մանրապատումներ։*

*Ավանդությունների մեջ երկրորդական տեղ ունեն բանավոր արձակի մյուս ժանրերին հատուկ վիպական կայուն բանաձևերն ու այսպես կոչված ընդհանուր տեղիները։ Նրանց հատուկ ու բնորոշ է առանց միջանկյալ նախադասությունների կարճ խոսքը, տրամաբանական կապերի ոչ միշտ հիմնավոր լինելը, այնքանով, որքանով որ այս կամ այն հուշը մարդու գիտակցության մեջ հաճախ հանդես է գալիս կցկտուր ձևով։*

*Մինչդեռ բանահյուսական մյուս ստեղծագործությունները, իբրև ինքնակա գեղարվեստական երկեր, ունենալով իրենց կայուն կառուցվածքն ու պատմողական ոճը, որոշակիորեն տարբերազատվում են ժողովրդական հեքիաթասացների, վիպասանների, առակախոսների, գուսանների ու մյուսների առօրեական խոսքից, և պատմելու կամ երգելու*

*համար պահանջում են առանձին ժամ ու ժամանակ, ավանդությունները, իբրև գերազանցապես ճանաչողական բնույթի և նպատակային պատումներ, չունեն այդպիսի կայուն ոճ ու կառուցվածք, ուստի և ավանդվելիս հաճախ միանում-ձուլվում են ավանդախոսների սովորական խոսքի հետ և կատարման համար չեն պահանջվում հատուկ պայմաններ։*

*Ի տարբերություն ժողովրդական բանահյուսության արձակ ու չափածո մյուս բոլոր ստեղծագործությունների, որոնք ժողովրդի մեջ տարածված ու հայտնի են իրենց որոշակի անվանումներով (օրինակ՝ առասպել, զրույց, հեքիաթ, վեպ, առակ, երգ, առած, հանելուկ, անեծք, օրհնանք...), ավանդությունները նույն ժողովրդի մեջ ծնվում ու գոյատևում են անանուն ձևով, հիշվելով կամ վկայակոչվելով միայն այն ժամանակ, երբ խոսք է բացվում այս կամ այն առարկայի, անձի ու դեպքի մասին*[1]*։*

*Ինչ վերաբերում է հայերեն՝* ավանդություն, *հունարեն՝* paradosis, *լատիներեն՝* legenda[2], *գերմաներեն՝* Sage *կամ* Überlieferung, *ֆրանսերեն և անգլերեն՝* tradition, *ռուսերեն՝* предание *կամ* сказ, *ուկրաիներեն՝* оповидания, *լատիշերեն՝* teikas, *վրացերեն՝* გადმოცემა **կամ** თქმულება *և ուրիշ անվանումներին, ապա վերջիններս ունեն հիմնականում գրքային կամ գրական ծագում։ Զանազան ազգերի բանահավաքները, բանագետները, գրողները դրանք սովորաբար օգտագործում են բանահյուսական տվյալ ստեղծագործությունները ժողովրդական բանավոր արձակի մյուս ժանրերից (առասպել, զրույց, հեքիաթ, վեպ և այլն) տարբերելու համար։*

**3. Ավանդությունների տեսակները։**—*Բանագիտության մեջ տակավին գոյություն չունի ավանդությունների դասակարգման կամ տեսակավորման ընդհանուր ճանաչում գտած միասնական որևէ սիստեմ։ Մեկնակետ*

*[1] Ավանդությունների վերաբերյալ այդօրինակ առաջին անուղղակի գրավոր հիշատակությունը մենք գտնում ենք Հին կտակարանում։ Այստեղ արձանագրված է, թե ինչպես բիբլիական Մովսես մարգարեն մեռնելուց առաջ օրինապահության խորհուրդներ կարդալով հարազատ ժողովրդին, ի միջի այլոց, ասում է.* «Հարց զհարսն քո եւ պատմեսցեն քեզ. և ծերս քո, և ասասցեն քեզ». *(Բ. օրինաց, գլ. ԼԲ, 7)։ Ընդգծված խոսքի մեջ հնօրյա մարգարեի բերանով ակնարկված են ժամանակին կատարված անց ու դարձերի վերաբերյալ սերնդից-սերունդ հաղորդվող այն բանավոր հուշապատումները կամ ավանդությունները, որոնցով այնքան հարուստ է Հին կտակարանը։*

*[2] Լեգենդը դա ժողովրդական ավանդության մի հատուկ տեսակն է։ Այս անունով են սովորաբար հորջորջվում այն ավանդությունները, որոնց բովանդակությունը կազմում են ավելի երևակայական, քան պատմական դեպքերն ու դեմքերը, իրերն ու առարկաները։ Լեգենդների մեծ մասը հրաշապատում բնույթ ունի։*

*ունենալով գլխավորապես տվյալ ժանրի մեջ մտնող ստեղծագործությունների բովանդակության մոտիվները, գործող անձանց ու առարկաները, տարբեր բանագետներ առաջադրել ու կիրառել են տեսակավորման իրենց ուրույն սիստեմները։ Նրանցից ոմանք, օրինակ, գտնում են, որ ավանդությունները պետք է խմբավորվեն՝* էտիոլոգիական, էսխատոլոգիական, կուլտուր-պատմական *և այլ տեսակների մեջ։ Ուրիշները հարմար են գտել դրանք տեղադրել՝* կոսմոգոնիական, էտնոգոնիական, զոոգոնիական, տոպոնիմիական *կամ՝* պատմական, սոցիալ-ուտոպիական, կրոնական *և այլ տեսակների մեջ*[1]։

*Հիմնականում թեմատիկ կամ առարկայական սկզբունքով կատարված նշված խմբավորումները, ավանդությունների ուղեցույց-կատալոգներ և ժողովածուներ պատրաստելու համար գործնական առումով, ավել կամ պակաս չափով, պիտանի հանդիսանալով հանդերձ, ունեն մի էական թերություն։ Հայտնի է, որ ժողովրդական բանահյուսության մյուս բոլոր ստեղծագործությունների նման, ավանդությունները ևս բովանդակությամբ միատարր չեն։ Միևնույն ավանդության մեջ հաճախ առկա են և կողք-կողքի գոյակցում են տարբեր մոտիվներ ու թեմաներ, այլազան գործող անձինք ու առարկաներ։ Պատմական ավանդությունների մեծ մասը, օրինակ, միաժամանակ ունեն նաև տոպոնիմիական և էտիոլոգիական բնույթ և կապված են աշխարհագրական զանազան վայրերի (գավառ, քաղաք, գյուղ, սար, ձոր, լիճ, գետ) կամ այլևայլ առարկաների ու անձերի (բերդ, կամուրջ, վանք, մարդ, կենդանի, բույս և այլն) հետ։ Տվյալ հանգամանքը, ինքնին, բավական պայմանական է դարձնում ավանդություններն ըստ նրանց բովանդակության, մոտիվների, գործող անձանց ու առարկաների խմբավորելու սկզբունքները, քանի որ, նման պարագաներում, բնականորեն, անհրաժեշտություն է առաջ գալիս այս*

---

[1] *A. Aarne*, Finnishe Märchenvarianten Hamina, 1920 (FFC 33), *C. W. von Sydow*, Kategorien der Prosa-Volksdichtung, Berlin und Leipzig, 1934, *J. K. W. Sinninghe*, Katalog der niederlandischen Märchen, Ursprungssagen, Sagen und Legendenvarianten, Helsinki, 1934, (FFC 132), *O. Sirovatka*, Zur Morphologie der Sage und Sagenkatalogisierung, Magung in Budapest, SS. 99—106, *L. Simonsuuri*, Über die Klassifirierung der finnischen Sagentradition, SS. 21—22, *G. Burde-Schneidewind*, Zur Katalogisierung historischer Volkssagen, S. 39. *Чистов К. В.*, К вопросу о принципах классификации жанров устной народной прозы, М. 1964, *Азбелев С. Н.*, Проблемы международной систематизации преданий и легенд *(տե՛ս* „Русский фольклор". X. М.-Л.. 1966, *էջ 176—189)*։

կամ այն ավանդությունը նախատեսնված մի խմբից մյուսը տեղափոխելու և կամ համապատասխան զուգահեռ հղումներ ու վերապահումներ անելու համար։

Վերոհիշյալ թերությունից խուսափելու համար մենք առաջարկում ենք մեկնակետ ունենալ ոչ թե ավանդությունների բովանդակության մոտիվները, գործող անձանց ու առարկաները, այլ նրանց էությունը և ըստ այդմ դրանք տեղադրել հետևյալ երեք հիմնական տեսակների մեջ.

ա. **Ստուգաբանական ավանդություններ:** Այստեղ պետք է դասվեն այն բոլոր ավանդությունները, որոնց մեջ ժողովուրդը ձգտել է մեկնել ու իմաստավորել անհասկանալի բառերը (անձնանուններ, տեղանուններ, առարկաների անուններ)։ Լեզվաբանների համար հաճախ անընդունելի համարված ժողովրդական այդ ստուգաբանություններից շատերը նշանակալից հետաքրքրություն են ներկայացնում բանագետների, ազգագրագետների և պատմաբանների համար, այն չափով, որչափով որ դրանք որոշ լույս են սփռում ժողովրդի պատմության ընթացքի վրա, յուրովի արտացոլում են հասարակական գիտակցության մեջ բեկված առարկայական իրականությունը։

Հանդիսանալով առանձին բառերի ծագման ու զարգացման պատմությունը, ստուգաբանական ավանդությունները կարող են օգտակար լինել էթնոգենետիկական զանազան կնճռոտ հարցերի լուծման ժամանակ։ Նրանց միջոցով կարելի է դատել տարբեր ժողովուրդների միջև եղած հարաբերությունների ու կուլտուրական կապերի մասին, ընդ որում երբեմն այնպիսի հեռավոր ժամանակներում, որոնցից մեզ չի հասել ուրիշ ոչ մի պատմական վկայություն կամ հուշարձան[1]։

բ. **Բացատրական ավանդություններ:** Այս խմբավորման մեջ պետք է դասվեն այն ավանդությունները, որոնց մեջ բացատրված են երկնքի, երկրի, արևի, լուսնի, աստղերի ծագումը, լեռների, ձորերի, լճերի, գետերի, աղբյուրների առաջացումը, բույսերի ու կենդանիների օգտակար ու վնասակար հատկությունները, իր նմանների հետ մարդու ունեցած հարաբերությունները, նրա աշխատանքային գործունեության, կենցաղային հասկացությունների, հավատալիքների ու բարոյական նորմերի հանգամանքները և այլն։

գ. **Վարքաբանական ավանդազրույցներ:** Այս տեսակի մեջ պետք է դասվեն այն ավանդությունները, որոնց մեջ կենսագրական տեղեկու-

---

[1] Տե՛ս *Пизани В.*, Этимология, Москва, 1956, էջ 5։

թյուններ և միջադեպեր են հաղորդվում զանազան իրական և մտացածին անձնավորությունների կյանքի ու գործունեության վերաբերյալ։ Ի տարբերություն ստուգաբանական և բացատրական ավանդությունների, որոնց համար բնորոշ է սյուժեի և ֆաբուլայի բացակայությունը, վարքաբանական ավանդությունների զգալի մասը, սովորական ժողովրդական զրույցների նման, ունեն սյուժե և ֆաբուլա։ Տարբերությունն այստեղ այն է, որ մինչդեռ ժողովրդական զրույցները տիպիկ գեղարվեստական ստեղծագործություններ են, վարքաբանական ավանդազրույցները, սովորական ավանդությունների նման զերծ չլինելով գեղարվեստականության ներքնապաշարից, ունեն հիմնականում ճանաչողական բնույթ։ Նրանց գլխավոր դերը վերը նշված կենսագրական տեղեկությունների և միջադեպերի հաղորդումն է։

Վարքաբանական ավանդազրույցների հերոսները, լինեն դրանք քաղաքական, ռազմական, մշակույթի, թե եկեղեցական գործիչներ, յուրօրինակ գաղափարատիպեր են, իսկ նրանց կյանքի ու գործի պատմությունն էլ ոչ այլ ինչ է, բայց եթե ժողովրդի կյանքի յուրօրինակ տարեգրությունը։ Վարքաբանական ավանդազրույցների հերոսները հաճախ հանդես են գալիս իբրև հրաշագործ ու գերբնական արարածներ, իբրև յուրահատուկ սրբեր։ Ժողովուրդը սրբացրել է գլխավորապես իրական ու պատմական այն գործիչներին, ովքեր իրենց մտահոգության առարկան դարձրել են ազգակիցների ու հայրենակիցների շահերը, սեփական անձը ի սպաս են դրել հարազատ ժողովրդին, պայքարել ու ստեղծագործել են նրա համար։

Վարքաբանական ավանդազրույցների մեջ, բացի բուն ժողովրդական ստեղծագործություններից, որոնք ստուգաբանական և բացատրական ավանդությունների մեծ մասի նման գրի են առնվել ժողովրդից և ունեն տիպիկ բանահյուսական նկարագիր, զգալի տեղ են գրավում նաև գրքային հորինվածքները, որոնք սերում են աշխարհիկ ու հոգևոր զանազան պատմա-գրական հուշարձաններից։

Կրելով հանդերձ իրենց վրա անհատ հեղինակների աշխարհայացքի ու ոճի որոշակի կնիքը, այս կարգի ավանդազրույցների ակունքները ևս, ավել կամ պակաս չափով, կապված են հնօրյա ժողովրդական առասպելների ու հեքիաթների հետ, և անուղղակի կերպով արտացոլում են հասարակական լայն զանգվածների իրապաշտական մտածողության և առողջ բանականության տարրերը։

**4. Ավանդությունների բնույթը:**—Տարբեր ժողովուրդների ավանդությունների մեջ թե քանակով և թե արժեքով առաջին հերթին աչքի են ընկնում ազգային ավանդությունները: Դրանք նախ և առաջ այն ավանդություններն են, որոնք իրենց աշխարհագրական քարտեզով, շոշափած հարցերով, գործող անձանցով, հերոսներով և ողջ բովանդակությամբ սերտորեն կապված են տվյալ ժողովրդի ապրած բնաշխարհի, նրա հավատալիքների, սոցիալ-տնտեսական հարաբերությունների, կենցաղի, քաղաքական ճակատագրի, մշակույթի, նրա բնավորության ու հոգեբանության հետ, և որոնց զուգահեռները բացակայում են մյուս ժողովուրդների ավանդությունների մեջ։ Դրանք, այնուհետև, այն ավանդություններն են, ուր բոլոր ժողովուրդներին հատուկ ընդհանուր գծերը կամ, այսպես կոչված, համամարդկային հատկանիշները դրսևորված են ազգային յուրահատուկ ձևերի մեջ, սյուժեների, մոտիվների և կերպարների տիպաբանական ինքնօրինակ խաչավորումներով։

Ինչպես որ տարբեր են զանազան ժողովուրդների ապրած կյանքի բնական և հասարակական պայմանները, այդպես էլ տարբեր են այդ պայմանների յուրահատուկ արտահայտությունն հանդիսացող նրանց ազգային ավանդությունները։ Էպոսի նման և նրա հետ միասին, այդ ավանդությունները հանդիսանում են յուրաքանչյուր ժողովրդի բանարվեստի ամենաինքնատիպ ստեղծագործությունները, ուր, ավելի քան այլուր, նա արտահայտել է ինքն իրեն, իր պատմական ձգտումներն ու ինքնատիպ բնավորությունը, որոնցով նա զանազանվում է մյուս ժողովուրդներից։

Ազգային ավանդությունների մեջ դրոշմված է տվյալ երկրի բնակչության մեծամասնության կյանքի ու պայքարի պատմությունը, բեկված ժողովրդական հոծ զանգվածների համընդհանուր ձգտումների ու ակընկալությունների բովով։ Այս առումով հատկանշական հանգամանք է, որ անցյալի գրավոր պատմություններից առանձնապես արժեքավոր են համարվել այն հեղինակների երկերը, ովքեր իրենց պատմական շարադրանքների մեջ առատորեն օգտագործել են ժողովրդական ավանդությունների թանկարժեք պատմական տվյալները (Հերոդոտ, Խորենացի և այլն)։

Տարբեր ժողովուրդների ավանդությունների մեջ, նրանց հիմնական հարստությունը կազմող բուն ազգային ստեղծագործություններից բացի, կան նաև ոչ քիչ թվով այսպես կոչված միջազգային ավանդություններ: Դրանք այն ստեղծագործություններն են, որոնց սյուժեների, մոտիվների,

*թեմաների ու կերպարների զուգահեռները առկա են աշխարհագրական տարածություններով և ժամանակով իրարից հաճախ շատ հեռու ժողովուրդների ավանդություններում։ Այդպիսիք են գլխավորապես երկնային մարմիններին ու երևույթներին և երկրային որոշ առարկաներին (երկինք, երկիր, արև, լուսին, աստղեր, կայծակ, քամի, հող և այլն) կամ այսպես կոչված ֆիզիկական աշխարհին նվիրված ավանդությունները, որոնք դրսևորում են հնօրյա մարդկանց անիմիստական, անտրոպոմորֆիստական և պանթեիստական մտածողության տարրերը, և որոնց գործող անձինք ու հերոսները մեծ մասամբ մարդակերպ ու կենդանակերպ էակներ ու ոգիներ են։*

*Միջազգային ավանդությունների մեջ առկա նմանությունների հիմքը այն ընդհանուր և սահմանափակ պատկերացումն է, որ ժամանակին ունեցել է մարդկությունը իր գիտակցության համար անմատչելի բնության տարերային ուժերի ու երևույթների մասին։*

*Ազգային և միջազգային ավանդություններից հետո, տարբեր ժողովուրդների ավանդությունների մեջ երրորդ տեղը գրավում են* **եկամուտ ավանդությունները:** *Փոխառության և փոխազդեցության արդյունք բազմազան բովանդակությամբ այդ ստեղծագործությունների գոյությունը այս կամ այն ժողովրդի մոտ պայմանավորված է էթնիկական, տնտեսական, քաղաքական, ռազմական, մշակութային ու կրոնական այն շփումներով ու հարաբերություններով, որ տվյալ ժողովուրդը իր պատմական կյանքի տարբեր դարաշրջաններում ունեցել է ուրիշ ժողովուրդների հետ։*

*Ի տարբերություն միջազգային ավանդությունների համատարած և աշխարհասփյուռ բնույթի, եկամուտ ավանդությունները սովորաբար առկա են աշխարհագրական տարածությամբ իրար մոտ ու հարևան համեմատաբար սահմանափակ թվով ժողովուրդների բանավոր ստեղծագործության մեջ։*

**5. Ավանդությունների դարավոր կյանքն ու պատմական ճակատագիրը:**—*Ավանդությունները ժողովրդական բանահյուսության այն ժանրերից մեկն են, որոնց ստեղծումը դժվար է սահմանափակել այս կամ այն դարաշրջանով։ Նրանք ծնվել ու գոյատևել են պատմությանը համընթաց, հանդիսանալով վերջինիս անհրաժեշտ ու անբաժան ուղեկիցը։ Ավանդությունների մեջ հասած հարուստ ժառանգությունը պերճախոս ցույց է տալիս, որ դրանք ստեղծվել են թե՛ խորը հնադարում, թե՛ վաղ և ուշ միջնադարում, և թե նոր ու նորագույն ժամանակներում։*

Ավանդությունները, միաժամանակ, ժողովրդական բանահյուսության ամենաերկարակյաց ժանրերից են։ Նրանք արտացոլում են ժողովրդի կյանքում կարևոր նշանակություն ունեցող երևույթներ, արծարծում են այնպիսի հարցեր, թեմաներ ու գաղափարներ, որոնք ժամանակի հոլովումով չեն կորցնում իրենց հետաքրքրությունն ու այժմեականությունը։ Ավանդությունների մի զգալի մասը գալով խորը հնությունից շարունակ վերանորոգվում, վերաստեղծվում է, հարմարվելով նոր ժամանակների պահանջներին ու խնդիրներին, նոր սերունդների կյանքին, կենցաղին, բարքերին ու հասկացողություններին։

Ավանդախոսները հաճախ հին կենցաղի ու հասկացությունների նկարագրությունը փոխարինում են նորով, հին հերոսների հատկություններն ու արարքները վերագրում նորերին։ Նման փոփոխությունների հետևանքով հին ավանդությունները հարստանում են նորերի մեջ, նոր կատարված իրողությունների և անցքերի պատմությունը ստանում է արդեն պատրաստի հին ավանդությունների կերպարանքը։

Ինչքան ավելի շատ է հեռանում այս կամ այն ավանդությունը իր ծագման ժամանակից, այնքան ավելի շատ են փոփոխություններ կատարվում նրա մեջ։ Ժամանակն ու հասկացողությունները երբեմն այնքան են կերպարանափոխում որևէ ավանդություն, որ դժվար է լինում նույնիսկ ըմբռնել կամ մեկնել նրա բուն իմաստը։

Այս կապակցությամբ ուշագրավ են այն դիտողությունները, որ ժամանակին արել է Միքայել Նալբանդյանը պատմական ավանդությունների դարերի ընթացքում կրած փոփոխությունների մասին։ Նա գրել է. «Մի անցք, կամ մի իրողություն, որ ստուգապես պատահած էր, դնենք Թորոսի ժամանակ, այդ բանը համարվում է եղած կամ Մինասի ժամանակ, որ շատ առաջ էր ապրել Թորոսից, կամ Նիկողոսի, որ Թորոսից շատ դարեր հետո էր ծնվել։ ... Հայտնի է, թե մի պատերազմ, մի քաջագործություն, մի հաղթություն չի վերագրվիլ մի սուրբի, որպես նաև մի հրաշագործություն մի երևելի զորավարի։ Եթե ազգը Թորոսի օրով տեսել է մի խորհրդավոր անցք, բայց Թորոսի վրա բնավ համարում չունի, ազգի հետագա զավակները այդ անցքը անպատճառ կխլեն Թորոսից և կվերագրեն մի մարդու, որ կամ առաջ է ապրել Թորոսից կամ վերջը, որի վրա ազգը մեծ համարում ունի քաղաքականապես կամ կրոնապես, նայելով անցքի բնավորությանը։ Ավանդությունքը, զրկվելով այսպես ժամանակագրական ճշտությունից, շատ անգամ այնքան շատ հավաքվում են մի մարդու վրա, որ այդ մարդը շատ դարերից հե-

*տը դառնում է մի պահարան, մի շտեմարան սքանչելի անցքերի ու գործերի, իսկ մյուս բոլոր մարդիկը, այն մեկ նշանավոր մարդու օգտի համար, զրկվում են իրենց ստուգապես ունեցածից»*[1]։

*Գալով ժողովրդական ավանդությունների ճակատագրին, պետք է ասել, որ այն հիմնականում նույնն է, ինչ էպոսի և բանահյուսական մի քանի ուրիշ ժանրերի (առասպել, զրույց) ճակատագիրը։ Վերջիններիս պես ավանդությունները ևս իրենց կենսունակությունը պահպանում են այնքան ժամանակ, որքան իրականության մեջ շարունակում է գոյություն ունենալ նրանց ծնող ու սնող հողը՝ համապատասխան տնտեսական, հասարակական հարաբերությունները և դրանց վրա խարսխված իրավական, բարոյական, կենցաղային և այլ հասկացությունները։*

*Բերված փաստերի և արված դիտողությունների հիման վրա, կարելի է կատարել հետևյալ ամփոփում-եզրակացությունը.*

Ավանդությունները նպատակային և ճանաչողական բնույթի ստուգաբանական, բացատրական և վարքաբանական ստեղծագործություններ են, որոնք ժողովրդի կողմից ընկալվում են իբրև հեռու ու մոտիկ անցյալում եղած ու կատարված իրերի ու երևույթների, դեպքերի ու դեմքերի վերաբերյալ ճշմարտացի հաղորդումներ և հուշապատումներ:

Ժողովրդական ավանդությունները ծագել են իրականությունն ըմբռնելու գործնական անհրաժեշտությունից: Նրանց մեջ դրսևորված է հասարակական լայն զանգվածների ձգտումը հասկանալու և իմաստավորելու արտաքին աշխարհի գաղտնիքները:

Լինելով աշխարհաճանաչողության յուրահատուկ միջոցներ, ավանդությունները միաժամանակ նաև բանաստեղծական ստեղծագործություններ են, բնության և մարդկային կյանքի երևույթների գեղարվեստական ընկալման ինքնօրինակ արտահայտություններ:

Ավանդությունների մեջ դրոշմված է տվյալ ժողովրդի հավաքական կենսափորձն ու գիտելիքները, նրա ճաշակն ու ըմբռնումները, դատողություններն ու գնահատականները: Նրանց միջոցով յուրաքանչյուր եկող նոր սերունդ գաղափար է կազմում իր ապրած բնաշխարհի առանձնահատկությունների, հարազատ ժողովրդի պատմական անցյալի, մոտիկ ու հեռավոր ազգերի հետ նրա ունեցած շփման ու փոխհարաբերությունների մասին: Ավանդությունները յուրովսանն նպաստում են ժո-

[1] Մ. Նալբանդյան, *Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, Երևան, 1940, էջ 144, 163։*

ղովրդի պատմական գիտակցության ձևավորմանը, ամրապնդում են նրա աշխատանքային կենսափորձն ու անցյալի հիշողությունները: Նրանք արտացոլում են այն հաղթանակները, որ տարել է մարդը բնության ուժերին տիրապետելու ասպարիզում:

**6. Ավանդությունների պատմական և ճանաչողական արժեքը:—** *Մեծ է ավանդությունների պատմական և ճանաչողական արժեքը։ Նրանց շատ նմուշներ ստեղծվել են ժողովրդի համար բախտորոշ նշանակություն ունեցող պատմական դեպքերի, դեմքերի, իրերի ու երևույթների շուրջը։ Ավանդությունների մեջ տվյալ երկրի բնակչության մեծամասնության գոյի ու գիտակցության խորը տեղյակության հիման վրա յուրովի արտացոլված են նույն այդ երկրի բնաշխարհի բնորոշ առանձնահատկությունները՝ սերտորեն կապված ու զուգորդված ժողովրդական հավատալիքների, ժողովրդի կենցաղի, նրա սոցիալ-տնտեսական, աշխատանքային, հասարակական, քաղաքական, մշակութային կյանքի երևույթների ու հասկացությունների հետ։*

*Ճիշտ է, ավանդությունների մեջ բացակայում է ստույգ ժամանակագրությունը, մի պատմական անձնավորության կատարած գործը երբեմն վերագրվում է մեկ ուրիշի, սակայն դրանով նրանք չեն դադարում «պատմությունը լուսավորող ճառագայթներ» (Գ. Սրվանձտյանց) լինելուց, քանի որ նրանց մեջ յուրովի վերարտադրվում է պատմական իրականության ընդհանուր մթնոլորտը և իշխում է պատմության տրամաբանությունը։*

*Պատմական հավաստիությունը առանձնապես ուժեղ է արտահայտված այն ավանդությունների մեջ, որոնք կապված են որոշակի վայրերի ու առարկաների հետ, և որոնցում հիշված դեպքերն ու դեմքերը ժամանակագրական առումով ավելի մոտ են իրենց ստեղծման դարաշրջանին։ Եվ դա հասկանալի է։ Հիշյալ կարգի ավանդությունները հիմնված լինելով իրական դեպքերի ու դեմքերի վրա և ունենալով համեմատաբար կարճատև կյանք, ավելի քիչ են ենթարկվել պատմա-վիպական բանահյուսության համար բնորոշ փոփոխությունների ու հարակցումների։*

*Հատկապես մեծ է ավանդությունների արժեքը գիր ու գրականություն չունեցող ցեղերի ու ժողովուրդների կյանքի ուսումնասիրության համար։ Տվյալ պարագայում նրանք դառնում են այն միակ բանավոր վկայություն-վավերականները, որոնց միջոցով հնարավոր է պարզել այդ ցեղերի ու ժողովուրդների անցած պատմական զարգացման տարբեր*

*փուլերը, որոշել նրանց կյանքի, կենցաղի, աշխարհայացքի ու հավատալիքների առանձնահատկությունները։*

*Պակաս մեծ չէ ավանդությունների արժեքը նաև գիր ու գրականություն ունեցող ժողովուրդների ու ազգերի նախագրային, ինչպես նաև գրային շրջանի պատմության ուսումնասիրության համար։ Ավանդություններն իբրև ժողովրդի պատմական իրականության նկատմամբ ունեցած համապատասխան պատկերացման ու վերաբերմունքի անխարդախ ու հարազատ վավերականներ, իրենց հաղորդած կարևոր տվյալներով ու տեղեկություններով, անհրաժեշտ չափով լրացնում են գրավոր աղբյուրների բացը։*

*Հակառակ գրավոր աղբյուրների, որոնք իբրև անհատ հեղինակների գրչի արգասիք, հաճախ աչքի են ընկնում զգալի միակողմանիությամբ ու աչառությամբ, ավանդությունները, իբրև ժողովրդական զանգվածների հավաքական և ընդհանրական հայացքների դրսևորում, շատ ավելի առարկայական են ու անաչառ։ Նրանք ժողովրդի դիրքերից ու ժողովրդի մեկնաբանությամբ բացահայտում են այն վերաբերմունքը, որ ունեցել է հասարակության մեծամասնությունը պատմական իրականության նկատմամբ, դրսևորում են դարաշրջանի ընդհանուր ոգին ու էությունը։ Ավանդությունների մեջ մենք գտնում ենք պատմական այս կամ այն դեպքի ու դեմքի վերաբերյալ ժողովրդի տված դատավճիռն ու գնահատականը, որը արմատապես տարբերվում է գրավոր աղբյուրներում եղած պաշտոնական դատավճիռներից ու գնահատականներից։*

*Իբրև դարերից եկած և դարեր վերապրած ստեղծագործություններ, ավանդությունները հաճախ ավելի տոկուն են, քան նույնիսկ գրավոր աղբյուրները։ Շատ բան, որ չի մնացել անգամ որձաքարերին դրոշմված վիմական արձանագրությունների մեջ, կուլ գնալով տարերքին կամ մարդու ավերիչ ձեռքին, պահպանվել է ժողովրդի դիմակայուն հիշողության մեջ և հարատևելով հասել է մինչև մեր օրերը։*

*Ավանդությունների ձևով պահպանվել են նախնադարյան հասարակությունից եկող այնպիսի տեղեկություններ, որոնք վաղուց մոռացության են տրվել և հնարավոր չէ այլևս վերականգնել ոչ մի ուրիշ աղբյուրով։ Անգամ հնագիտությունը երբեմն չի կարողանում պատասխան տալ որոշ հարցերի, որոնց պատասխանում են ավանդությունները։ Ավանդությունների մեջ վաղնջական ժամանակներից պահպանված այս կամ այն վերապրուկը յուրահատուկ առաջնորդ և ուղեցույց է դառնում անհետա-*

*ցած հասարակական որևէ երևույթ հայտնաբերելու, նրա ծագման ու գոյության հանգամանքները բացատրելու համար։*

*Չպետք է մոռանալ, սակայն, որ ավանդությունները երկար ժամանակ ապրելով բանավոր կյանքով, դարերի ընթացքում ենթարկվել են մեծ փոփոխությունների։ Նրանց նախնական կորիզի վրա ժամանակի ընթացքում աճել ու շերտավորվել են զանազան տարրեր։ Այս կամ այն պատմական անձնավորության կատարած իրական արարքին ավանդությունների մեջ ձուլվել են նրան վերագրված ստեղծական արարքներ։ Պատմական դեպքերի շարադրանքի մեջ մուտք են գործել հեքիաթային մոտիվներ։ Մոռացության տրված առանձին դրվագների տեղ գրավել են նորերը։*

*Ահա թե ինչու ավանդություններն իբրև պատմական սկզբնաղբյուր օգտագործելիս, անհրաժեշտ է քննադատական մոտեցում ունենալ նրանց նկատմամբ։ Գիտնականի խնդիրն է ոչ թե հերքել, այլ բացատրել դրանք՝ պատմա-համեմատական և բանասիրական մանրակրկիտ քննությամբ ավանդությունների կորիզը կազմող իրական փաստերից տարորոշել հետագա դարաշրջանների նստվածքները*[1]*։ Իրավացիորեն նշված է, որ ինչպես բնագետը մի կենդանու քարացած ժանիքից ամբողջական պատկերացում է կազմում նրա մարմնի կառուցվածքի, նրա անդրջրհեղեղյան գոյության մասին, այդպես էլ հետախույզ հնագետ-բանագետը մի ժողովրդական ավանդությունից կարող է գաղափար ստանալ տվյալ ժողովրդի անցյալ կյանքի այս կամ այն երևույթի մասին*[2]*։*

*Ժողովրդական ավանդությունների պատմական արժեքը, ավել կամ նվազ խորությամբ, ըմբռնել են շատ պատմաբաններ, հնագետներ ու ազգագրագետներ, և ըստ այդմ իրենց երկերում իբրև սկզբնաղբյուր օգտվել նրանցից։*

*Հին աշխարհի հեղինակներից այս տեսակետից հիշարժան է Հերոդոտի «Պատմությունը» (9 գիրք), մասնավորապես վերջինիս այն բաժինը, որ նվիրված է հույն-պարսկական պատերազմներին։ Այստեղ, ինչպես հույների ու պարսիկների, այնպես էլ արևմուտքի ու արևելքի ուրիշ ցեղերի ու ժողովուրդների և նրանց ապրած վայրերի մասին խոսելիս, պատմիչը հաճախ հենվում է ստուգաբանական, բացատրական և վար-*

---

1 *Տե՛ս Н. Я. Марр,* К вопросу о задачах арменоведения, С. Петербург, 1899, *էջ 10։*

2 *Տե՛ս* Րաֆֆի, *Խամսայի մելիքությունները, Թիֆլիս, 1895, էջ 286։*

*քարանական այն ավանդությունների վրա, որ ինքը անձամբ լսել է տեղում իր ճանապարհորդությունների միջոցին։ Այդպիսիք են Հերոդոտի «Պատմության» տարբեր էջերում ցրված ավանդությունները՝ Պերս, Ագաֆիրս, Ազիա, Ամֆիկոն, Հելլեն, Դոռ, Կառոս, Լիդոս, Միզոս, Եգիպտոս, Տիրրենոս, Սկյութ, Դեկել անուններով երկրների, քաղաքների ու ցեղերի ծագման, Սիլենոսի գերեվարման, Կրեսոսի գահընկեց արվելու, Քսերքսեսի վերադարձի, սկյութների իրենց երկիրը կատարած դարձի, Պոլիկրատեսի մատանու մասին, և այլն*[1]*։*

*Նոր ժամանակների հեղինակներից բնորոշ է Էդ. Թայլորի օրինակը։ Իր «Նախնադարյան կուլտուրա» խորագրով նշանավոր աշխատության մեջ, մանրազնին հետազոտության ենթարկելով տարբեր ցեղերի ու ժողովուրդների հնօրյա հավատալիքները, կենցաղը և վերջիններիս վերապրուկները, իբրև մարդկային մշակույթի անցած աստիճանները բացահայտող պերճախոս փաստերի, ազգագրական, հնագիտական շատ տվյալների հետ, հեղինակը բազմիցս վկայակոչում է նաև այդ ցեղերի ու ժողովուրդների այսպես կոչված տոպոնիմիկան, էպոնիմիկան ու այլ կարգի ավանդությունները*[2]*։*

*Ժողովրդական ավանդություններին իբրև պատմական կարևոր սկզբնաղբյուրների դիմել են նաև հայ պատմաբանները, հնագետներն ու ազգագրագետները։*

*Հին հեղինակներից այս տեսակետից մեզանում հատկապես աչքի է ընկնում Մ. Խորենացին։ Ավանդություններն ու առասպելները համարելով պատմական միջուկ ունեցող ստեղծագործություններ, որոնք «ճշմարտութիւն իրացն այլաբանաբար յինքեանս ունին թաքուցեալ», պատմիչն իրավացիորեն գտնում է, որ անհրաժեշտ է քննախույզ հայացքով թափանցել այդ միջուկի խորքը և վեր հանել ու մեկնել այնտեղ թաքնված «հավաստի» իրողությունը*[3]*։*

---

[1] *Геродот,* История, пер. Ф. Мищенко, Москва, 1888, *Клингер В.,* Сказочные мотивы в истории Геродота, К., 1903, *Лурье С.,* Геродот, М.—Л., 1947, *Довагур А.,* Повествовательный и научный стиль Геродота, Л., 1957.

[2] *Тэйлор Э.,* Первобытная культурв, Москва, 1929. *Տե՛ս նաև Фрезер Д.,* Золотая ветвь, Москва, 1928, *նույնի* Фольклор в Ветхом завете, М.—Л., 1931, *Морган Л.,* Древнее общество, *Л., 1934, Леви-Брюль Л.,* Первобытная мифология, Москва, 1937, *Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը։*

[3] **Մ. Խորենացի,** *Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1913, էջ 30։*

*Ինքը Խորենացին իր «Հայոց պատմության» մեջ տվել է դրա բազմաթիվ հաջող օրինակները։ Վերջիններս առանձնապես շատ են նրա աշխատության առաջին գրքում։ Հայաստանի հնագույն դարերի պատմությունն այստեղ փաստորեն վերաստեղծված է ցեղանվանական, տեղանվանական և այլ կարգի այնպիսի ավանդությունների հիման վրա, ինչպիսիք են՝ Հայկի ու Բելի, Արայի ու Շամիրամի, Արամի, Արտավազդի, Անգեղ Տուրքի, Արծրունյաց տոհմի ծագման, Տարոնի, Արագածի, Արմավիրի, Սիսականի, Շիրակի, Գեղարքունիքի մասին ավանդությունները, և շատ ուրիշներ։*

*Նոր շրջանի հայ հեղինակներից ավանդությունները իբրև պատմական սկզբնաղբյուր ամենից ավելի բեղմնավոր օգտագործել է անվանի ազգագրագետ, հնագետ և կուլտուրայի պատմաբան պրոֆ.* Խ. *Սամուելյանը։ Նա իրավացիորեն գտնում է, որ ազգագրական նյութերը, այդ թվում և ավանդությունները, հնագիտական համապատասխան նյութերի բացակայության պայմաններում, «առ այժմ հանդիսանում են վաղեմի կուլտուրայի, հնադարյան կենցաղի այն միակ շոշափելի մնացորդներն ու հետքերը, որոնք մեզ տանում են դեպի Հայկական լեռնաշխարհի հինավուրց ցեղերն ու ժողովուրդները, առաջնորդում են դեպի այդ երկրի մշուշապատ պատմությունը»*[1]։

*Ելնելով վերոհիշյալ ճիշտ մեկնակետից, Սամուելյանը իր «Հին Հայաստանի կուլտուրան» խորագրով եռահատոր մեծարժեք աշխատության մեջ Հայաստանի նյութական, սոցիալական և հոգևոր մշակույթի մի շարք բարդ ու վիճելի հարցեր (պալեոլիթ, նեոլիթ, տոտեմիզմ, մատրիարխատ, անիմիզմ...) լուսաբանելիս, ի շարս հնագիտական ու ազգագրական այլ տվյալների, դիմել է նաև ժողովրդական ավանդություններին։ Վերջիններս առանձնապես շատ են վկայակոչված նրա աշխատության առաջին հատորում, լեռների, քարերի, ջրի, բույսերի ու կենդանիների պաշտամունքին նվիրված գլուխներում*[2]։

**7. Ավանդությունների գաղափարական և գեղարվեստական արժեքը։**—*Աներկբա է նաև ավանդությունների գաղափարական և գեղարվեստական արժեքը։ Նրանց մեծ մասի էությունը կազմում է ժողովրդի ստեղ-*

---

1 Խ. Սամուելյան, *Հին Հայաստանի կուլտուրան, հատ. Ա., Երևան, 1931, էջ 37։*

2 Սամուելյան Խ., *նույն տեղում, էջ 39—62, 169—215, 280—299, 306—325։ Տե՛ս նաև* Րաֆֆի, *Խամսայի մելիքությունները,* Լեո, *Հայոց պատմություն, հատ. Ա., Թիֆլիս, 1917, հատ. Բ., Երևան, 1947, հատ. Գ., Երևան, 1946։*

ծարար ոգու և հավերժության փիլիսոփայությունը, որ դարից-դար հաղորդվել է ավանդախոսների բյուրավոր սերունդների կողմից։ Ավանդությունների հերոսները էպոսի հերոսների նման բնության տարերքի և հասարակական կյանքի թշնամական ուժերի դեմ ժողովրդի մղած դարավոր մաքառումների անձնավորումներն են, նրա խիզախության, անձնազոհության ու տոկունության կրողները, նրա հոգեբանության ու բնավորության առանձնահատկությունների խտացումները։ Ավանդությունների մեջ դրսևորված է աշխատավոր մարդու առողջ կենսափիլիսոփայությունը՝ աշխատանքի փառաբանություն, մարդասիրություն, ազատ ու անկաշկանդ ապրելու ձգտում, աներեր հավատ իր անխորտակելի ուժի, վերջնական հաղթանակի և լավագույն ապագայի նկատմամբ։ Իրավացիորեն նկատված է, որ ավանդությունների ճանաչողական արժեքը չպետք է որոնել միայն պատմական շոշափելի իրողության արտացոլման հանգամանքի մեջ։ Պակաս նշանակություն չունի նաև նրանց մեջ արտահայտություն գտած պատմական զարգացման հարափոփոխ ընթացքի արդյունք տեսական մտածողությունը, որը նույնպես կարող է ստանալ պատմական գիտության համար նշանակալից փաստի ուժ[1]։

Իբրև գեղարվեստական ստեղծագործություններ, ավանդությունները, ամենից առաջ աչքի են ընկնում իրենց սեղմ ու զուսպ ոճով։ Սակավաթիվ բառերով, մի քանի բնորոշ խոսքով նրանց մեջ ներկայացվում է կյանքի մի մանրանկար։ Ավանդախոսները սովորաբար ավելորդ են համարում գործածել այնպիսի բառեր ու խոսքեր, երբ համոզված են, որ առանց դրանց էլ ունկնդրին պարզ ու հասկանալի կարող է լինել իրենց պատմածը կամ ասածը։ Գոյականները նրանց մեջ իբրև կանոն չունեն վերադիրներ, բայերն էլ՝ մակբայներ, իսկ եթե երբեմն առկա են այդպիսիք, ապա դրանց վերապահված է էական ու կարևոր նշանակություն։

Ավանդությունները հիմնականում պատմողական ստեղծագործություններ են։ Նրանց մեջ երբեմն միայն հանդիպում են հարց ու պատասխանի բնույթ ունեցող կարճ ու կտրուկ երկախոսություններ, որոնք նկատելի աշխուժություն ու թարմություն են մտցնում հագեցած ու խիտ պատումի մեջ։

Հակառակ տարեգրությունների մի զգալի մասին, որոնք բավարարվում են կատարված պատմական անց ու դարձերի հետ կապված փաս-

---

[1] Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք Բ., Երևան, 1959, էջ 627։

տերի արձանագրումով, ավանդությունները օժտված են հուզական ներգործման ուժով։ Հնամենի հավատալիքների հիման վրա անձնավորված ու շնչավորված լեռներն ու ջրերը, ծառերն ու ծաղիկները նրանց մեջ ապրում, խոսում ու դառնում են կենդանի էակների պես։ Իրականն ու առեղծվածը, պատմականն ու առասպելականը այստեղ հանդես են գալիս ներդաշն հյուսվածքով և ունկնդիրների կողմից ընկալվում են անխառն հավատով։

Չնայած ավանդախոսների գործածած բառերի ժլատությանը, նրանց լեզվի, ոճի սեղմությանը, մանրամասներ նկարագրելուց խուսափելուն, ավանդությունների մեջ հաճախ մի քանի գծերով բավական հաջող տիպականացվում են միջավայրն ու ժամանակը։ Նրանց գործող անձանց մեջ ժողովուրդը խտացրել է հասարակական տարբեր խավերի ներկայացուցիչների բնորոշ գծերը, կատարել գեղարվեստական ինքնատիպ ընդհանրացումներ։ Ավանդությունների մեջ հանդես եկող տիպերի մի զգալի մասի վերաբերյալ որոշ վերապահությամբ կարելի է կրկնել Հեգելի խոսքերը ասված էպոսի կերպարների մասին, իբրև ազգը խտացնող առանձին անհատների, որոնք իրենց ինքնօրինակության մեջ յուրովի բովանդակում են համընդհանուրը[1]։ Այդ տիպերը օրինաչափ ու անհրաժեշտ արտահայտությունն են իրական փաստերի։ Դրանք ոչ այլ ինչ են, բայց եթե վերջիններիս հիման վրա կատարված համապատասխան գեղարվեստական ընդհանրացումներ։

Նման կարգի ավանդական տիպերի կամ հերոսների ցայտուն օրինակներից են՝ հունական Պրոմեթևսը, գերմանական Ֆաուստը, հայկական Մհերը և շատ ուրիշներ։

Ժողովրդական ավանդություններին առանձին գրավչություն ու հմայք է հաղորդում բնության ծոցում ծնված ու հասակ առած ավանդախոսների պատկերավոր երևակայությունը, բնությունից մարդուն շնորհված մեծագույն պարգևներից մեկը։

Յուրաքանչյուր առանձին ավանդություն իրենից ներկայացնում է մարդկային կյանքի մի դրվագ, որտեղ, ժողովրդի երևակայության ուժով, բացահայտվում և գեղարվեստական հետաքրքիր իմաստավորում են ստանում այդ կյանքի բազմապիսի գաղտնիքները, դառնալով յուրահատուկ հավերժացած պատմություններ։

Չնայած իրենց փոքր ծավալին, շատ ավանդություններ ընկալվում

[1] *Гегель,* Сочинения, том 15, Москва, 1958 *էջ 251, 252, 280։*

են իբրև ինքնուրույն, ամբողջական, ավարտուն ու լիարժեք գեղարվեստական ստեղծագործություններ։ Եթե էպոսն իր ընդարձակ ծավալով մեծաթիվ գործող անձանցով և բարդ կառուցվածքով նման է վեպին, ապա ավանդությունն իր սեղմ ծավալով, սակավաթիվ գործող անձերով և պարզ կառուցվածքով, հիշեցնում է նովելին։ Ավանդությունների լավագույն նմուշները իրենց պարունակած գաղափարական ու գեղարվեստական ներքնապաշարով կարող են հարուստ նյութ դառնալ այնպիսի ծավալուն ու ծանրակշիռ ստեղծագործությունների համար, ինչպիսիք են վեպը կամ պոեմը՝ գրականության, օպերան կամ բալետը՝ երաժշտության և պատկեր-կոմպոզիցիան՝ կերպարվեստի մեջ։

Ավանդությունների գաղափարական և գեղարվեստական վերոհիշյալ արժանիքները չեն վրիպել գրականության ու արվեստի ներկայացուցիչների ուշադրությունից։ Զանազան ժողովուրդների շատ նշանավոր գրողներ, նկարիչներ, երաժիշտներ, ինչպես հին դարերում, այնպես էլ նոր և նորագույն ժամանակներում հիանալի զգալով նրանց մեջ թաքնված գանձերը, հաճախակի դիմել են ժողովրդական բանարվեստի այդ հարուստ շտեմարանին, իրենց ստեղծագործությունների համար առատ նյութ քաղել այնտեղից, ոգեշնչվել նրանց հերոսներով, թեմաներով, գաղափարներով ու արվեստով։

Ժողովրդական ավանդություններից սերող այդ կարգի ստեղծագործությունների բնորոշ օրինակներ են՝ Էսքիլեսի «Շղթայված Պրոմեթեոսը», Գյոթեի «Ֆաուստը», Բայրոնի «Կայենը», Լոնգֆելլոյի «Հայավաթի երգը», Գորկու «Վալախական լեգենդը», Կոցյուբինսկու «Վարպետները». Միքել-Անջելոյի «Երկնքի ու երկրի բաժանումը», Դյուրերի «Ադամը» և «Եվան», Տինտորետոյի «Ծիր կաթինի ծագումը», Վելասկեսի «Մանողուհիները». Մոցարտի «Կախարդական սրինգը», Լիստի «Պրոմեթեոսը», Սեն-Սանսի «Սամսոնն ու Դալիլան» և շատ ուրիշներ։

Հայ գրողներն ու արվեստագետները ևս լավ ըմբռնելով ժողովրդական ավանդությունների գաղափարական և գեղարվեստական մեծ արժանիքները, հատկապես ընդգծել են ազգային գրականության զարգացման համար նրանց ունեցած կարևոր նշանակությունը։ Թումանյանն, օրինակ, ժողովրդական ավանդությունները համարել է մեր ժողովրդի «հանճարի, նրա ոգու և մտքի, ազգային բնավորության, աշխարհայացքի ու շնորհքի լավագույն ծնունդները», այն աղբյուրը՝ «որտեղից պետք է խմի հայոց բանաստեղծը, հայոց վիպասանը, հայոց գրողը, որ զորանա»։

«Ամեն մի ազգի բանաստեղծություն,—գրել է նա,—ժողովրդական լեգենդներով, ազգային ոգու ստեղծագործություններով է զորանում ու ինքնուրույնության կնիք առնում, հաստատվում, առաջ գալիս, որպես մի ամբողջ ժողովրդի խոսք և դրանով էլ դառնում պատկառելի»։ Եվ ապա. «Մեր լեզվի ու գրականության առողջ զարգացման համար պետք է մշտական տեղ հատկացնել հայրենի երկրի ժողովրդական բանավոր գրականությանը, նրա ամեն տեսակ ավանդություններին»[1]։

Իսահակյանի կարծիքով՝ «Լեգենդները մի որևէ ժողովրդի լավի, ազնիվի, վեհի, գեղեցկի ցանկությունների իրականացումներն են. Մարդկային տենչերը, ձգտումները առասպելների, լեգենդների մեջ են գտնում բավարարություն, վարձատրություն։ Հայրենիքի լեռներն ու ձորերը, դաշտերն ու գետերը, այրերն ու անտառները բնակված են ավանդություններով, պատմական հուշերով։ Դրանք երկիրը շենցնում են, բովանդակություն, խորություն, խորք տալիս, իմաստավորում, բանական դարձնում, բանաստեղծացնում, վիպային շինում, անհատականացնում, անձնավորում, հոգեղինացնում, մարդկայնացնում, ազգայնացնում, վրան կնիք ու դրոշմ դնում, կերպարանք տալիս, թե ձև, և թե հոգի։ Ժողովրդի համար իր երկրի ավանդություններով կենդանի են անցյալն ու հերոսները։ Ժողովուրդը հավատում է իր ազգային լեգենդներին, նրանց իրական լինելուն, պատմականությանը։ Նրա համար Լուսավորիչը եղել է, հավատում է Խոր վիրապին, Տրդատին, Մասիսից բերած քարերին, Նոյան տապանին, Եղիշեի գերեզմանին, Սասունցի Դավթի ջրաղացին... Երբ այլևս դադարում է հավատալուց, նա չորանում է, կորցնում է երկրի պոեզիայի զգացումը, նրա նվիրականությունը։ Երկիրը, հայրենիքը դառնում է նրա համար օտար երկիր, անտարբեր վերաբերմունքով»[2]։

Հայ գրականության ու արվեստի մեջ ժողովրդական ավանդություններից սերող նշանակալից ստեղծագործություններից են՝ Թումանյանի «Թմկաբերդի առումը», «Աղավնու վանքը», «Ախթամարը», Իսահակյանի «Մոր սիրտը», «Հավերժական սերը», «Հայրենի հողը», Շիրազի «Բիբլիականը». Սուրենյանի «Շամիրամը Արա Գեղեցկի դիակի մոտ», Սպենդիարյանի «Ալմաստը» և այլն։

---

[1] Հովհ. Թումանյան, Երկերի ժողովածու, հատ. 4, Երևան, 1951, էջ 112—113, հատ. 5, 1955, էջ 147, 150, 269, հատ. 6, 1959, էջ 65—66։

[2] Ավ. Իսահակյան, Խոհեր, «Գրական թերթ», 1960, № 44, Անտիպ էջեր, «Գրական թերթ», 1967, № 44։

## ՀԱՅՈՑ ԱԶԳԱՅԻՆ ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Դարերի խորքից եկող և սերնդից-սերունդ փոխանցվող բյուրավոր ազգային ավանդությունների և ավանդական զրույցների միջից յուրովի հառնում է ինքը հայ ժողովուրդը իր հնամենի հավատալիքներով, պաշտամունքի առարկաներով, կենցաղային հարաբերություններով, հասարակական կյանքով, ստեղծագործ ու շինարար խոյանքներով, ազատ ու անկախ ապրելու իր անկոտրում կամքով, լուսավոր ապագայի վառ հավատով։*

### ԲՆԱՇԽԱՐՀ ԵՎ ՀԱՎԱՏԱԼԻՔ

*Հայկական ավանդությունների մեջ աչքի ընկնող տեղ են գրավում տեղական բնաշխարհը և այդ բնաշխարհի հետ սերտորեն կապված ժողովրդական հավատալիքներն ու պաշտամունքի առարկաները։*

*Շատ ուրիշ ցեղերի ու ժողովուրդների նման, հին հայերը ևս ժամանակին հավատացել են ոգիների գոյությանը, և ըստ այդմ մարդու ու կենդանու օրինակով ոգեղինացրել ու անձնավորել են հայրենի բնաշխարհի այն բոլոր անշունչ առարկաները, որոնք հատուկ ներգործություն են ունեցել նրանց վրա և որոնցից, ավել կամ պակաս չափով, կախված է եղել նրանց գոյությունը։*

**8. Լեռների պաշտամունք։**—*Ոգեղինացման և անձնավորման առարկա են դարձել մեզանում, առաջին հերթին, Հայաստանի բարձրաբերձ լեռները, որոնք իրենց վիթխարի կանգվածներով, հրաբխային անհանգիստ գործունեությամբ (հաճախ հուր ու լավա ժայթքելով, երկիրը տատանելով և ահարկու դղրդոցներ հանելով), կրած մշտական կերպարանափոխություններով, իբրև հսկայական ուժի ու շարժման աղբյուրներ, կենդանի էակների պատրանք են առաջ բերել բնության գաղտնիքներին անհաղորդ մեր հեռավոր նախնիների պարզունակ մտաշխարհում։*

Ձյան հաստ շերտով ծածկված իր հայրենի հսկա լեռներին, որոնք յուրատեսակ շտեմարան են հանդիսացել երկրի ալպիական հարուստ արոտավայրերը սնող ջրառատ գետերի և սառնորակ աղբյուրների համար, ժողովուրդը հաճախ ներկայացրել է իբրև կենդանի, խոսուն, ապրող ու շնչող էակներ։ Մերթ սիրով ու հպարտությամբ, մերթ էլ երկյուղով ու ակնածանքով նա պատմել է նրանց տեղի ու դիրքի, անցյալի ու ներկայի, նրանց լանջերին ու մերձակայքում ապրող մարդկանց կյանքի, կենցաղի, աշխատանքային առօրյայի նրանց գլխով անցած հասարակական-քաղաքական կարևոր իրադարձությունների մասին։

Մի դեպքում այդ լեռները ժողովրդին ներկայացրել են իբրև երբեմնի հարազատ քույրեր, մի այլ դեպքում՝ իբրև նետաձիգ զորականներ, մի երրորդ դեպքում՝ իբրև արյունակից եղբայրներ, և այլն, որոնք այս կամ այն պատճառով (նախանձ, ավանդական սովորույթի խախտում, կամակորություն և այլն) պատժի ենթարկվելով, կորցրել են իրենց մարդկային նկարագիրը, կերպարանափոխվելով լեռների։ Այսպես.

Թալինի շրջանում վերաբնակված սասունցի հայ գաղթականները ասում են, թե Մասիսն ու Արագածը ժամանակին շատ սիրով քույրեր են եղել։ Պատահում է, որ նրանք մի օր կռվում են։ Մեկն ասում է. «Ես եմ լավը և քեզանից էլ բարձր», մյուսը թե. «Ես քեզանից և լավն եմ, և ավելի մեծ ու բարձր»։ Այս միջոցին վրա է հասնում Մարութա լեռը և փորձում է հաշտեցնել քույրերին, բայց չի կարողանում։ Ստիպված թողնում, հեռանում է և անիծում է, որ Մասիսն ու Արագածը այնպես բաժանվեն իրարից, որ այլևս երբեք չհանդիպեն։ Մասիսն էլ անիծում է Արագածին, որ ամբողջ տարին դարդը դուրս չգա նրա սրտից, և արտասուքն էլ չպակասի աչքերից։ Արագածն իր հերթին անիծում է Մասիսին, որ աշխարհի երեսին մարդ չբարձրանա նրա կատարին, վրան մատաղ չմորթվի։ Այդպես էլ լինում է։ Արագածի կատարին արտասուքից լիճ է գոյանում, իսկ Մասիսի վրա էլ մինչև օրս մարդ չի բարձրացել, ոչ էլ մատաղ է մորթվել (№ 11)[1]։

Ղարաբաղում գտնվող Քափաս և Մռավ լեռների մասին ասում են, թե Քափասն առաջներում այնքան է բարձր եղել, որ իր ստվերի մեջ է թողել Գանձակ քաղաքը։ Նրան նախանձել է Մռավ լեռը և հրավիրել է մենամարտի։ Քափասն իսկույն իր նետն ուղղել է Մռավին և կտրել է

[1] Ուսումնասիրության մեջ բերվող ավանդությունները նշվում են «Ավանդապատումում» իրենց ունեցած հերթական համարներով։

*նրա ձախ կողը։ Մռավն իր հերթին, զայրույթով ու բարկությամբ լցված Քափասի դեմ, նետով հարվածել և փշուր-փշուր է արել նրա գլուխը (№ 26)։*

*Մոկս գավառի Սեպ գյուղի մոտ գտնվող «Տրգամ-տրգամ» անունով լեռան մասին պատմում են, որ ժամանակին նրանից շարունակ լսվել է՝ «Տր գամ, տր գամ» (պիտի գամ, պիտի գամ) խոսքը։ Տեղացի հայերը մատաղ են արել և խնդրել են նրան, որ չշարժվի տեղից և չավերի իրենց գյուղը։ Սակայն, լեռը դրանից հետո էլ շարունակ կրկնել է. «Իկը՛, իկը» (եկա՛, եկա՛)։ Գյուղի երիտասարդներից մեկը զայրացած բացականչել է. «Թե չգա՞ս...»։ Եվ լեռը անմիջապես լռել է (№ 52)։*

*Արևմտյան Հայաստանի Արճեշ գավառի բնակիչների ավանդությամբ հայոց լեռները մի ժամանակ բարձրահասակ ու հաղթանդամ հսկա եղբայրներ են եղել։ Ամեն օր լուսաբացին, զարթնելուց անմիջապես հետո, նրանք նախ կապել են իրենց գոտիները և հետո միայն բարևել իրար։ Մի անգամ էլ, ինչպես է լինում, եղբայրները առավոտյան վաղ մոռանում են կապել իրենց գոտիները։ Այդ պատճառով նրանք անմիջապես ծերանում են և տեղն ու տեղը քարանալով լեռներ են դառնում, գոտիները՝ դաշտեր, իսկ արցունքներն էլ՝ զուլալ աղբյուրներ (№ 9)։*

*Հսկա եղբայրներին քարացնելու և լեռներ դարձնելու մոգական զորությունը, որ ներկա ավանդության մեջ վերագրվում է գոտիներին, մի վերապրուկ է վերջիններիս վերաբերյալ Հայաստանում գոյություն ունեցող հնօրյա հավատալիքի։ Հայտնի է, որ գոտիները մեզանում միայն զարդի, զրահի ու առողջապահական նշանակություն չեն ունեցել։ Դրա հետ միասին նրանք համարվել են նաև վտանգից ու չարիքից պաշտպանող, հաջողություն ու բարիք տվող յուրահատուկ հուռութներ, քաջության ու առնականության խորհրդանիշներ։ Այդ են հաստատում Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերում պեղումների ժամանակ հայտնաբերված տոտեմական բույսերի ու կենդանիների զարդաքանդակներ կրող բրոնզե գոտիները, «Սասնա ծռեր» էպոսի պատումներում բազմիցս հիշատակված Քամար ֆեհրդին, Քամար պողպատին, և այլն։*

**9. Քարերի պաշտամունքը։**—*Լեռների հետ հայ ժողովուրդը ոգեղինացրել ու անձնավորել է նաև հայրենի երկրի քարերը, որոնցով իբրև հրաբխային երկիր այնքան հարուստ է Հայաստանը, և որոնք լեռներից պակաս նշանակություն չեն ունեցել նրա տնտեսության և նյութական կյանքի համար։*

Գործիքներ ու զենքեր պատրաստելուց բացի, քարը Հայկական լեռնաշխարհում լայնորեն օգտագործվել է նաև շինարարության մեջ՝ իբրև մատչելի ու հարմար շինանյութ, սկսած նախապատմական շրջանի առանց շաղախի շարված բերդերից ու խրճիթներից, մինչև միջնադարյան և նոր ժամանակների կրաշաղախ հոյակապ ամրոցները, վանքերը, պալատներն ու սովորական տները։

Իրենց ֆիզիկական գոյության, նյութական ապահովության հանգամանքը և կենցաղային հարմարությունները զգալի չափով կապված տեսնելով քարերի մեջ մարմնավորված բարի ու չար ոգիների հետ, հին Հայաստանի բնակիչները, ըստ այդմ, յուրահատուկ պաշտամունքի առարկա են դարձրել այդ քարերը, մի դեպքում փառաբանելով ու մեծարելով, մյուս դեպքում պաշտպանվելով ու զգուշանալով նրանցից։

Ժողովրդական բազմաթիվ ավանդությունների մեջ Հայաստանի քարերը հանդես են գալիս իբրև այդ բարի և չար ոգիների յուրահատուկ անձնավորումներ։ Նրանք չբեր կանանց՝ զավակ, կաթ չունեցող ծնընդկաններին՝ կաթ են պարգևում, իբրև վիշապներ ու այլ կարգի գերբնական էակներ սպառնալիքի տակ են պահում մարդկանց կյանքը, և այլն։ Բնորոշ են այս տեսակետից հետևյալ ավանդությունները.

Քաջարանի շրջանում, Խորխորի կապ կոչված վայրից վերև, ժայռե պատվանդանի վրա կանգնած է մի կապույտ մեծ ցից քար (ոսկե երանգներով), որին տեղացիները Պտղաբեր քար են կոչում։ Աստծուց խռոված չբեր կանայք իրենց պորտերը քսել են այս քարին՝ նրանից պտուղ հուսալով (№ 142)։

Լեռնային Ղարաբաղի Խերխան գյուղի մոտ կա մի ժայռաբեկոր՝ Ծծաքար անունով, որը կնոջ նմանություն ունի։ Սա ժամանակին մի դժբախտ հարս է եղել, որին չարաչար տանջել է իր սկեսուրը։ Կեսրոջ հալածանքներից ազատվելու համար, հարսը աղաչել է Քիրս լեռանը, որ իրեն քար դարձնի։ Քիրսը կատարել է հարսի խնդիրքը։ Քար դարձնելու հետ միասին նա օժտել է նրան նաև կաթից զուրկ կանանց կաթ տալու շնորհքով (№ 157)։

Գեղամա լեռների ստորոտին, Կալադիպի կոչված բերդի մոտ գտնվող չորս ձկնանման քարերը առաջ վիշապներ են եղել, որոնք երկնքից ցած են իջել մարդկանց ոչնչացնելու համար։ Աստված իմանալով այդ մասին, նրանց քար է դարձրել (№ 164)։

Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի մոտ կա մի մեծ քար, որ հայտնի է Սուրբ քար անունով։ Ժամանակին մի երիտասարդ տան կարիքների

համար ուզում է ջարդել այս քարը։ Երբ նա մեծ մուրճով սկսում է խփել քարին, նրա ներսից հանկարծ լսվում է. «Թող կուրանա նա, ով ինձ վրա ձեռք բարձրացնի»։ Եվ քարը ջարդող երիտասարդը տեղն ու տեղը զրկվում է աչքերի լույսից (№ 23)։

Խրամ և Ճավճավ գետերի արանքում գտնվող Շամշուլդայի բերդի եկեղեցու մեջ կա մի քար Ջուհար խաչ անունով։ Այս քարը բուսել է ինքն իրեն և օրեցօր սկսել է երկարել։ Նա երևացել է մեկին երազում և ասել է. «Եթե ինձ վրա եկեղեցի չշինեք, այնքան կբարձրանամ, որ գլուխս երկինք կհասնի»։ Երազ տեսնողն այդ մասին պատմել է համագյուղացիներին։ Սրանք էլ անմիջապես եկեղեցի են շինել քարի վրա, վախենալով, որ այն շատ բարձրանալով կարող է ընկնել իրենց գլխին։ Դրանից հետո քարը դադարել է երկարելուց (№ 172)։

Ուշագրավ է հետևյալ բուն ազգային ավանդությունը ևս, ուր խորհրդանշվում է Հայաստանի զգալի մասի մարդկային բնակության ու կենցաղի համար անբարենպաստ լինելու հանգամանքը և միաժամանակ բացահայտված է հայ ժողովրդի անկոտրում կամքը ջանասիրությամբ ու տոկունությամբ վերափոխելու բնությունը։

Ասում են, թե երբ աստված ստեղծում է բոլոր ցեղերին ու ազգերին, դրանից հետո սկսում է երկրներ բաժանել նրանց։ Մինչև գալիս է հայի հերթը, արդեն բաժանված էր ամբողջ աշխարհը և մնացել էր մի քարքարոտ հողակտոր միայն։ «Ինչպե՞ս պիտի ապրեք այս չոր ապառաժների վրա»,— կարեկցանքով հարցնում է աստված հային։ «Ոչինչ, տե՛ր, դու տուր, մենք մի կերպ գլուխներս կպահենք»,— պատասխանում է հայն աստծուն։ Եվ աստված մնացած քարքարոտ հողակտորը տալիս է հային։ Ստանալով իր բաժին երկիրը, հայն անմիջապես գործի է անցնում։ Քարերը մաքրելով և առատ քրտինք թափելով, նա աստծու տված քարաստանը շենացնում, դարձնում է բուրաստան (№ 898)։

**10. Ջրի պաշտամունք։**—Հայկական բնաշխարհին և հավատալիքներին նվիրված ժողովրդական ավանդությունների մեջ ուժեղ են ջրի պաշտամունքի արձագանքները։ Այլ կերպ չէր էլ կարող լինել։ Հայտնի է, որ Հայաստանի շատ շրջաններ իրենց ցամաքային կլիմայի պատճառով միշտ մեծ պակաս են զգացել մթնոլորտային տեղումների։ Ջուրն այստեղ անհրաժեշտ է եղել ոչ միայն մարդկանց հիմնական բնակության սահմաններից հեռու լեռնավայրերում, ուր զբաղվել են անասնապահությամբ, այլև նախալեռներում ու դաշտավայրերում, ուր ժողովրդի պարապմունքի գլխավոր առարկան եղել է երկրագործությունը։ Ջրի գոյու-

թյամբ է պայմանավորվել մի դեպքում անասունների, արոտավայրերի, մյուս դեպքում էլ մարդկանց ապրուստի հարցը։

Ըստ այսմ և ջուրը վաղնջական դարերից դարձել է Հայաստանի բնակչության հույսի, հուսահատության, ուրախության, վշտի, երազանքների ու կրոնական պաշտամունքի կարևորագույն առարկաներից մեկը։

Ջրի վերոհիշյալ դերը երկրի բույս ու բերքի և ժողովրդի տնտեսության ու կենցաղի համար իր անջնջելի դրոշմն է դրել նաև հայկական ավանդությունների վրա։ Հայ ժողովուրդը բազմաթիվ ավանդություններ է ստեղծել իր երկրի լեռնային լճերի, գետերի, վտակների, առուների ու աղբյուրների մասին։ Այդ ավանդությունների մեջ նա տվել է դրանց անունների բացատրությունը, արել է ծագման պատմությունը, վեր է հանել այն ջանքերը, որ գործադրել է ինքը այդ ջրերը իր շահերին ծառայեցնելու համար։ Քիչ չեն մեզանում և այն ավանդությունները, որտեղ պատմվում է ջրի շուրջը ծագած վեճերի ու արյունահեղ ընդհարումների մասին, վերարտադրվում են այն փորձերը, որ կատարել են տեղական և օտար իշխողները ջրի միջոցով ժողովրդին իրենց ենթարկելու, ծունկի բերելու և հնազանդության մեջ պահելու համար։ Առանձնապես շատ են այն ավանդությունները, ուր խոսվում է Հայաստանի տարբեր վայրերում գտնվող բազմաթիվ աղբյուրների մասին, որոնցից սկիզբ են առել երկրի վտակներից ու գետերից շատերը, որոնց մոտ իր բնակությունն է հաստատել հայկական լեռնաշխարհի անասնապահ բնակչությունը՝ լեռնային կամ հովտային արոտներում արածող իր հոտերն ու նախիրները ջրով ապահովելու համար, և որոնցից բխող հանքային ջրերով նա բուժել է իր հիվանդությունները, ոչնչացրել բուսականության վնասատուներին։ Բերենք մի քանի բնորոշ օրինակ.

Վանա լճի մեջ ժամանակին ահռելի վիշապներ են ապրել, որոնց հետ միշտ պատերազմել են հրեշտակները։ Երբ վիշապը հազար տարեկան է դարձել, հրեշտակները դեպի վեր են քաշել նրան ջրից, տարել, մոտեցրել են արեգակին, որի ջերմությունից վիշապը այրվել ու մոխիր դառնալով, թափվել է գետին։ Այդ ժամանակ այնպիսի թանձր մառախուղ է պատել չորս կողմը, որ մարդիկ մի քանի քայլի վրա չեն տեսել իրար (№ 221Բ)։

Ավանդության մեջ արձագանք է գտել ջրի պաշտամունքի հետ կապված ամենահին հավատալիքներից մեկը, որի համաձայն լճերի ու ծովերի մեջ կատարվող ալեկոծությունների ու փոթորիկները վերագրվել են այնտեղ ապրող վիշապակերպ ձկներին, որոնք բարկության ժամանակ

տակն ու վրա են արել իրենց շրջապատը։ Դա ոչ այլ ինչ է, բայց եթե յուրօրինակ մի արտահայտությունը օդերևութային վիշապի վերաբերյալ հայերի և ուրիշ ժողովուրդների մոտ տարածված հայտնի առասպելի, որի համաձայն երաշտը լինում է այն ժամանակ, երբ վիշապը կտրում է երկնային ջրերի (իմա անձրևի) առաջը։ Որպեսզի ջրերը բացվեն, անհրաժեշտ է, որ մարդկանց բարեկամ ամպրոպային հերոսը ոչնչացնի նրան[1]։

Նույն այդ վիշապակերպ հսկայական ձկները ավելի ուշ, ինչպես այլուր, այնպես էլ մեզանում մարմնավորվում ու առարկայանում են ջրի պաշտամունքի հետ կապված վիշապներ կոչված հայտնի քարե արձանների մեջ, որոնց հնությունը որոշ գիտնականների կարծիքով հասնում է մինչև մեր թվականությունից առաջ 5-րդ հազարամյակը[2]։

Տարոնում ժամանակին ապրել է Աստղիկ անունով մի գեղեցկուհի։ Իրեն հետապնդող երիտասարդների աչքից հեռու մնալու համար նա ցերեկը թաքնվել է և միայն գիշերներն է դուրս եկել։ Աստղիկը սովորություն է ունեցել ամեն գիշեր լողանալու Գուռգուռա գետի ջրառատ ավազանում։ Իմանալով այդ մասին, տարոնցի երիտասարդները մոտակա լեռան վրա խարույկ են վառում Աստղիկի մարմինը տեսնելու համար։ Նրանց աչքից պաշտպանվելու համար Աստղիկը Տարոնի դաշտը պատում է թանձր մշուշով, որից և գավառը ստանում է Մուշ անունը (№ 395Բ)։

Ավանդությունը ուշագրավ մի վերապրուկ է հեթանոսական Հայաստանի՝ սիրո, պտղաբերության և ջրի անձնավորում Աստղիկ դիցուհու պաշտամունքի[3]։ Պատահական չպետք է համարել այս առումով այն հանգամանքը, որ նրա անունը իբրև ջրային աստվածուհու՝ ժողովուրդը կապել է այնպիսի մի ջրառատ ու արգասաբեր գետի հետ, ինչպիսին Մշո դաշտով հոսող Գուրգուռա կամ պատմական Արածանի գետն է (Մուրադ չայ), Գրգուռ լեռան ստորոտում գտնվող իր մեծ ջրավազանով։ Աստղիկի հետ կապված ջրի պաշտամունքի այդ հետքերը մինչև 20-րդ դարի սկզբները պահպանված են եղել Տարոնի բնակչության մեջ։

Կոտայքի շրջանի Ջրվեժ գյուղի անվան ծագման վերաբերյալ պատմում են, թե մի տարի այս կողմերում մեծ երաշտ է լինում. երկու գյուղերի

---

[1] Տե՛ս Մ. Աբեղյան, Երկեր, հատ. Ա., Երևան, 1966, էջ 85—88։

[2] Տե՛ս Н., Мар, Армянская культура. . . տե՛ս «Язык и история», գիրք 1, Л., 1936, էջ 68։

[3] Հմմ. Մ. Աբեղյան, «Վիշապներ» կոչված կոթողներն իբրև Աստղիկ-Դերկետո դիցուհու արձաններ, Երևան, 1941, էջ 76։

*ծերերը խորհուրդ են անում մի ճար գտնելու համար։ Նրանցից մեկն առաջարկում է լայնացնել մոտակա սարից եկող առվի հունը, որպեսզի ավելացած ջուրը հերիքի իրենց։ Մի երկու օրում առվի հունը բավական լայնացնում են։ Ջուրն իսկապես ավելանում է, բայց տեսնում են, որ այն դարձյալ չի կարող հերիքել երկու գյուղերին էլ։ Սկսում են վիճել, թե ով է առաջ ջրելու։ Վեճը քանի գնում, տաքանում է։ Մի ծերուկ առաջարկում է. ով առաջինը կարողանա աղբյուրի ակին մատաղ անել՝ ջուրը նրանը լինի։ Երկու գյուղերի ջահելներն էլ թռչում են դեպի իրենց նախիրները։ Բոլորն անհամբեր սպասում են նրանց վերադարձին։ Շուտով երևում են Հարևան գյուղի մարդիկ՝ ոչխարը ուսերին։ Ջրվեժցիների սիրտը ահ է ընկնում։ Նրանք սկսում են մտածել այն մասին, որ երաշտը պիտի տանի իրենց արտերը, գյուղը սովահար դառնա։ Այդ միջոցին, հանկարծ, մի ջահել ջրվեժցի հանում է գրպանից դանակը և մորթում ինքն իրեն։ Վեճը լուծվում է ջրվեժցիների օգտին, ջրի հերթը, ըստ պայմանի, նրանց է հասնում։ Այն տեղում, ուր ընկնում է անձնազոհ երիտասարդը, ջրվեժցիները մի խաչարձան են կանգնեցնում, որին երաշտ ժամանակ ուխտի են գնում, իսկ գյուղն էլ այդ օրվանից սկսում է կոչվել Ջրվեճ (№ 431)։*

*Ավանդությունը ամենայն հավանականությամբ սկզբնապես կապված է եղել ջրին մատուցվող զոհաբերության հնօրյա սովորույթի հետ։ Հետագայում է միայն, որ այն պահպանելով իր միջուկը, միացել է իրական-կենսական հիմքերի վրա Հայաստանի շատ վայրերում տեղի ունեցած բազմաթիվ արյունահեղ վեճերից մեկի հետ։ Ավանդության ստեղծման հանգամանքների վրա լույս է սփռում մեր ձեռքի տակ եղած մի վիմական արձանագրություն, որը ընդօրինակված է Ջրվեժ գյուղի բլրի լանջին, հին գերեզմանոցի մոտ, այգու մեջ գտնվող միայնակ գերեզմանի վրա դրված տապանաքարից և որի տակ, տեղացիների ասելով, թաղված է ավանդության հերոս անձնազոհ երիտասարդը։ Ահա այդ արձանագրությունը. «Այս տուն սգո... [խա]չատրի որ սպանաւ ի վերա ջրի Ջրվիժո, կիսաւրեա եղ ի յաշխարհէ եւ եթող կսկիծ ծնօղաց իմոց. որք երկրպագէք սուրբ նշանիս յիշեսջիք ի տէր. թ[վին]։ ՈԻԲ։ Վարդ.»*[1]։

[1] Токарский Н. М., Джервеж, *գիրք I, Երևան, 1959, էջ 6։*

*Այս տապանաքարի մոտ ժամանակին կանգնեցված է եղել մի սքանչելի խաչքար, որն այժմ գտնվում է Երևանի պատկերասրահում։ Տապանաքարի արձանագրության տակ եղած «Վարդ» ստորագրությունը, մասնագետների կարծիքով, կարող է եղած լինել ոչ միայն արձանագրության, այլև խաչքարի փորագրողի* անունը *(Նույն տեղում)։*

Այստեղից կարելի է մակաբերել, որ ավանդության հերոսը, հավանորեն, եղել է հենց վերոհիշյալ խաչատուրը, որը սպանվել է Ջրվեժի ջրի համար, երիտասարդ հասակում (= կիսաւրեա ել ի յաշխարհէ)։ Արձանագրության տարեթիվն էլ (ՈՒԲ=622+551=1173 թ.), իր հերթին, հուշում է մեզ ավանդության հորինման մոտավոր ժամանակը, որը պետք է եղած լինի 1173 թվից առաջ, բայց թե ե՞րբ՝ որոշակի ասելն անհնարին է։ Ճիշտ է, արձանագրության մեջ նշված է միայն երիտասարդ ջրվեժցու սպանվելու (և ոչ ինքնասպանության) մասին, բայց դա, տվյալ դեպքում, էական նշանակություն չունի։ Կարևորն այստեղ այն է, որ սպանվողը ջրվեժցի է, երիտասարդ, սպանության պատճառն էլ՝ ջրի շուրջը ծագած վեճը։

Գալով գյուղի անվան ծագմանը տրված բացատրությանը, ապա պետք է ասել, որ դա ժողովրդական սովորական մի ստուգաբանություն է, որի հիմքը, անկասկած, հանդիսացել է ջրի վեճ խոսքը, և որը ստեղծված պիտի լինի ուշ դարերում, քանի որ տվյալ վայրի բուն անունը Ջրվեժ (=գոչգոչան) ձևով հիշատակված ենք գտնում դեռևս Ղազար Փարպեցու մոտ (5-րդ դար)[1]։ Որ «Ջրվեճը» գյուղի իսկական անունը չէ, այլ նրա ժողովրդական ուրույն հորջորջումը, երևում է նաև այն հանգամանքից, որ, ոչ միայն Ղազար Փարպեցու, այլ և նոր ժամանակների մեր մի քանի ուրիշ հեղինակների մոտ այն հիշվում է ոչ թե Ջրվեճ, այլ՝ Ջրվեժ անունով[2]։

Ջիվանշիրի գավառի Կասապետ գյուղից դեպի արևելք, գետակի ափին կա սուրբ համարվող մի աղբյուր, որին տեղացիները «Եղին աղբյուր» են ասում։ Ավանդության համաձայն՝ հին ժամանակ ամեն տարի այս աղբյուրի մոտ մի եղնիկ է եկել ու պառկել։ Գյուղացիները մորթել են նրան և միսը հավասար բաժանել իրար մեջ, համարելով այն աստծուց ուղարկված մատաղ։ Մի անգամ էլ, երբ եղնիկը սովորականի նման նորից է գալիս աղբյուրի մոտ և սկսում է ջուր խմել այնտեղից, մի քանի գյուղացի, չսպասելով եղնիկի պառկելուն, հարձակվում են նրա վրա։ Այդ տեսնելով, եղնիկը փախչում է անտառի կողմը։ Գյուղացիները հասնում են եղնիկի ետևից և բռնելով նրան՝ տեղն ու տեղը սպանում են։

---

[1] Ղազար Փարպեցի, *Պատմութիւն Հայոց և թուղթ առ Վահան Մամիկոնեան*, Թիֆլիս, 1907, էջ 317։

[2] Զաքարեայ Սարկաւագ, *Պատմութիւն*, I, Վաղարշապատ, 1870, էջ 104։ Յովհ. Շահխաթունեանց, *Ստորագրութիւն Կաթուղիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ*, 2, Էջմիածին, 1842, էջ 160։ Սիմէոն Երևանցի, *Ջամբռ*, Վաղարշապատ, 1873։

Հակառակ ընդունված հին սովորության, նրանք եղնիկի մսից բաժին չեն տալիս ուրիշներին, որի համար էլ աստված պատժում է նրանց և դադարում է այլևս եղնիկներ ուղարկել (№ 267)։

Ավանդությունը մեզանում իրավացիորեն համարվել է տակավին որսորդական դարաշրջանից պահպանված ջրի պաշտամունքի հնագույն արտահայտություններից մեկը։ Մի ժամանակ էր դա, երբ մարդը դարան էր մտնում ջրերի մոտ, ուր իրենց ծարավը հագեցնելու համար գալիս էին զանազան կենդանիներ։ Այդպիսի ջրերը կարևոր նշանակություն ունենալով հին մարդկանց նյութական գոյության համար, բնականորեն պիտի սրբացվեին և պաշտամունքի առարկա դառնային նրանց համար[1]։ Այդ է հաստատում, նախ և առաջ, «Եղին աղբյուրի» սուրբ համարվելու հանգամանքը, և ապա, ավանդության մեջ եղած այն հիշատակությունը, որի համաձայն այդ աղբյուրի մոտ ժամանակին սովորություն է եղել եղնիկ մատաղել։

Վարագա լեռան մոտ կա մի «Կաթնաղբյուր»։ Ավանդությունն ասում է, թե սրա ջրում ժամանակին լողացել և բորից բուժվել է Սանատրուկ թագավորի շունը։ Տեսնելով այդ ինքը Սանատրուկն էլ է լողացել նույն աղբյուրում և բուժվել է բորից։ Ի հիշատակ «Կաթնաղբյուրի» հրաշագործության՝ Սանատրուկ թագավորը նրա մոտ՝ Ս. Բարդուղիմեոսի գերեզմանի վրա կառուցել է տվել համանուն վանքը (№ 290)[2]։

Աղբյուրի բուժիչ հատկությունը բացահայտող այս ավանդությունը ևս Հայաստանում ժամանակին գոյություն ունեցող ջրի պաշտամունքի վերապրուկներից է։ Այդ է հաստատում ավանդությունը գրի առնող բանահավաքի այն վկայությունը, ըստ որի հիշյալ «Կաթնաղբյուրը» իբրև սուրբ աղբյուր ուխտատեղի է եղել տեղացի հայերի ու քրդերի համար։

Քիչ չեն մեզանում նաև այն ավանդությունները, ուր պատմվում է Հայաստանի լեռների, քարերի, ջրերի և վերջիններիս հետ կապված հավատալիքների միջև գոյություն ունեցող ներքին կապի ու փոխհարաբերության մասին։ Այսպես.

---

[1] Սամուելյան Խ., *Հին Հայաստանի կուլտուրան*, հատ. Ա, Երևան, 1931, էջ 282։

[2] Այս ավանդության տարբերակը բերված է Խորենացու «Հայոց պատմության» մեջ։ Դա Սանատրուկ անվան ծագումը բացատրող ստուգաբանական մի ավանդություն է, ուր պատմվում է, թե ինչպես աստվածներից առաքված մի նորահրաշ սպիտակ կենդանի (իմա՝ շունը) բուքի ժամանակ փրկում է մանուկ Սանատրուկի կյանքը (տե՛ս Մ. Խորենացի, *Պատմութիւն Հայոց*, Տփխիս, 1913, էջ 161)։

*Ասում են, թե մի կույր աղջիկ եղբոր հետ ոչխար է արածացրել Բյուրակնյան լեռներում։ Մի օր էլ, երբ նա լվացվել է այստեղի բազմաթիվ աղբյուրներից մեկի ջրով, աչքերը հանկարծ լուսավորվել են։ Կատարված հրաշքը պարզելու համար աղջկա ծնողները գալիս են դեպքի վայրը։ Բազմաթիվ նման աղբյուրների միջից չկարողանալով գտնել իրեն բուժող աղբյուրը, աղջիկն ասում է. Այս բյուր ակների մեջ ես ո՛նց իմանամ, թե ո՞րն էր այն ակը։ Դրանից հետո լեռների անունը մնում է Բյուրակն (№ 45Ա)։*

*Ավանդության մեջ ջրերի բուժիչ հատկության հետ կապված հնօրյա հավատալիքը զուգորդված ու միահյուսված է Բյուրակնյան լեռների՝ բազմաթիվ լճակներով ու առվակներով հարուստ լինելու իրական փաստի հետ, լեռներ, որոնցից, ինչպես հայտնի է, իրենց սկիզբն են առել պատմական Հայաստանի մի քանի նշանավոր գետերը (Արաքս, Արածանի, Եփրատ)։*

*Արևմտյան Հայաստանում գտնվող Ջագրոշ լեռների մասին ասում են, թե դրանք առաջ եղջյուրավոր հսկա վիշապներ են եղել։ Ջագրոշը փորձում է ուտել Տավրոսին, որի համար կռվի է ելնում նրա դեմ։ Տավրոսը թեև իր մեծությամբ փոքր է, բայց ավելի ուժեղ լինելով, այնպես է հարվածում Ջագրոշի ճակատին, որ նրա եղջյուրները պոկվում են։ Ջագրոշը շշմած՝ մեջքը դեմ է տալիս Տավրոսի Աոնոս և Արտոս եղջյուրներին։ Տավրոսը բարկացած՝ այնպես ուժեղ է խփում նրա մեջքին ու փորին, որ մի մեծ ձոր է բացվում, որով սկսում է հոսել Ջագրոշի արյունից գոյացած Զաբ գետը և որը թեև վշշում է, բայց անուշ ու անմահական ջուր ունի։ Իսկ Ջագրոշի փորոտիքի աղի ջրերի մի մասն էլ գնում է դեպի Վան, կազմելով Վանա լիճը (№ 50)։*

*Ավանդությունը խոսուն մի ապացույց է լեռների ու ջրի պաշտամունքի միջև գոյություն ունեցող երբեմնի սերտ աղերսի, որն այստեղ արտահայտված է ջրային հավատալիքի խորհրդանիշ վիշապներին հատկացված մեծ դերով՝ իբրև Ջագրոշ լեռներն ու Վանա լիճը ստեղծող տարերային հզոր ուժերի։*

*Մշո Առաքելոց վանքի մոտ գտնվող Գլխաջրիկ աղբյուրի առջև կա մի ահագին տաշտաձև քար, որին տեղացիները Տրդատի քար են կոչում։ Ավանդությունն ասում է, թե այս քարը Մասիս սարից գլխի վրա դրած բերել է Տրդատ թագավորը։ Ջերմ ունեցողները նրա վրա լոգանք են ընդունել Գլխաջրիկ աղբյուրից բերված սառը ջրով և բուժվել են իրենց հիվանդություններից (№ 200)։*

*Ավանդության մեջ յուրովի արտացոլված է քարի և ջրի պաշտամունքների միջև գոյություն ունեցող ներքին աղերսը, իբրև համապատասխան բարի ոգիների անձնավորումների, որոնք միացյալ ուժերով մարդկանց բուժում են հիվանդությունից։*

**11. Բույսերի և կենդանիների պաշտամունքը։**—*Հայկական բնաշխարհի և հավատալիքների հետ կապված ավանդությունների առանձնահատուկ ու կարևոր մի բաժինն են կազմում տեղական բույսերին ու կենդանիներին նվիրված ավանդությունները։ Հեռավոր դարերի խորքից եկած այդ ստեղծագործությունների մեջ դրսևորված է կենսական այն մեծ նշանակությունը, որ ունեցել են բույսերն ու կենդանիները նախ որսորդությամբ և ապա՝ անասնապահությամբ ու երկրագործությամբ զբաղվող մեր նախնիների համար։ Իր ավանդությունների մեջ հայ ժողովուրդը հատուկ ուշադրություն է նվիրել իր հայրենիքի շնչավոր ու անշունչ այդ բնակիչների կյանքին ու բնավորությանը, բացահայտել է նրանցից ամեն մեկի բնորոշ կողմը, արտաքին ու ներքին հատկանիշները (գույն, հոտ, համ և այլն), պատմել է նրանց ուժի ու թուլության մասին, գովաբանել է նրանց՝ մարդուն տված օգուտի և պախարակել հասցրած վնասի համար։*

*Քննության առարկա ավանդությունների մեջ առանձնապես ցայտուն է արտահայտված հայ ժողովրդի հնօրյա այն ըմբռնում-հավատալիքը, ըստ որի մարդ արարածին հատուկ է բույսի կամ կենդանու կերպարանափոխվելու կախարդական հատկությունը։*

*Նման կարգի ավանդությունները ինչպես այլուր, այնպես էլ մեզանում ծագել են տոհմատիրական-համայնական հասարակարգի դարաշրջանում, շրջապատի բույսերից ու կենդանիներից մարդու ունեցած ամենօրյա կենսական կախման պայմաններում։ Մի դարաշրջան էր դա, երբ արտադրողական ուժերի ծայր աստիճան ցածր վիճակը մարդուն զրկում էր ինքնուրույն ու անկախ գոյություն պահպանելու հնարավորությունից, կապված պահելով նրան մի կողմից իր համայնքից, մյուս կողմից՝ շրջապատի բնությունից։ Այս հիման վրա խարսխված հնօրյա տոտեմական և անիմիստական աշխարհայեցության համաձայն մարդու հոգին օժտված լինելով թափառելու հատկությամբ, շարունակում էր կյանքը տիրոջ մահվանից հետո էլ, ապաստան գտնելով նրան այնքան հարազատ ու մտերիմ բույսերի ու կենդանիների մեջ։*

*Ըստ հայկական ավանդությունների՝*

**Ուռենին** *առաջ մի երիտասարդ աղջիկ է եղել։ Նա երկար սպասել է սիրած տղային, բայց տղան չի եկել։ Աղջիկը կարոտից կռացել, ուռենի*

*է դարձել։ Մինչև հիմա էլ նա կանգնած է ջրի եզրին ու գլուխը կախ լուռ հեկեկում է (№ 324)։*

**Լոշտակը** *ժամանակին փոքրավոր է եղել, որին շատ տանջել է իր վարդապետը։ Նա մի օր կանթեղից ձեթ է լցրել քնած վարդապետի մորուքին և կրակել է այն։ Վարդապետը սարսափահար վեր է թռել քնից և տեսնելով Լոշտակին, անիծել է նրան։ Լոշտակն իսկույն գետինն է մտել և բույս է դարձել (№ 331)։*

**Աղբրանց արուն** *ծաղիկները սկզբում յոթ եղբայրներ են եղել։ Լեռը բարձրանալիս նրանք սպանվել են ավազակների կողմից։ Սպանված եղբայրների արյան կաթիլներից կարմիր ծաղիկներ են գոյացել (№ 312)։*

**Նունուփարը** *ծագել է Սասունցի Դավթի արյան կաթիլներից, որին Մեղրագետում լողանալիս նետահար է արել դարանակալ թշնամին (№ 313)։*

**Սոսին** *սուրբ ծառ է։ Նա ժամանակին թաքցրել է իր սաղարթների տակ թշնամիներից հալածված Քրիստոսին, որի համար և արժանացել է Քրիստոսի օրհնությանը։ Դրա համար է, որ նա ամառ-ձմեռ միշտ կանաչ է (№ 321)։*

**Եզը** *մարդու աշխատանքային զորավիգ ընկերն է։ Նա մեն-մենակ կրել է Տաթևի վանքի համար անհրաժեշտ բոլոր շինանյութերը։ Երբ եզը մեռել է, մարդիկ մեծ հարգանքով թաղել են նրան վանքի հանդիպակաց լեռնաշղթայի վրա։ Եզան գերեզմանը ուխտատեղի է համարվում։ Ամեն անցորդ պարտավոր է մի քար դնել նրա գերեզմանին (№ 146)։*

**Արագիլը** *մարդու ամենացանկալի հյուրն է։ Մարդը խնամքով պաշտպանում է արագիլի բունը, չթողնելով, որ որևէ մեկը դիպչի նրան։ Ով համարձակվի ձեռք տալ արագիլին կամ նրա ձագերին, ենթակա է չարաչար պատժի ու խորշանքի (№ 132)։*

**Կռունկը** *մարդու նեղ օրվա ամենալավ բարեկամն է։ Հենց որ որևէ դժվարություն կամ դժբախտություն պատահի մարդուն, կռունկը անմիջապես օգնության է հասնում։ Կռունկին սպանելը մեծ մեղք է։ Երբ հրացանը ձեռքդ առնես նրան նշան բռնելու, կռունկն անմիջապես մի գեղեցիկ հարս կդառնա՝ ծծկեր երեխան կրծքին (№ № 364, 664Ա)։*

**Մողեսները** *սկզբում յոթ քույրեր են եղել։ Առևանգիչների հետապնդումից ազատվելու համար նրանք խնդրել են աստծուն՝ փրկել իրենց։ Եվ աստված քույրերին անմիջապես մողես է դարձրել (№ 151)։*

**Թիթեռները** *առաջ կարիճ երիտասարդներ են եղել։ Թագավորի գե-*

*դեցկուհի աղջկան տիրանալու համար, աղջկա հոր պահանջով, նրանք գնացել են բերելու անհանգչելի հուրը, բայց չեն կարողացել և թիթեռ դառնալով սկսել են պտտվել կրակի շուրջը (№ 379Բ)։*

*Տոտեմական բույսերից Հայաստանում առանձնապես ուժեղ է եղել սոսու պաշտամունքը։ Վերջինիս սաղարթների սոսափյունի հիման վրա մեր նախնիները գուշակություններ են արել։ Նրանք միաժամանակ երկրրպագել ու զոհեր են մատուցել սոսուն։ Սոսու պաշտամունքի պերճախոս ապացույցն է Արմավիր քաղաքում ժամանակին գոյություն ունեցող սոսյաց նվիրական պուրակը, որը համարվել է հեթանոսական Հայաստանի պաշտամունքային կարևոր օջախներից մեկը*[1]։

*Կենդանիներից ու թռչուններից՝ մեզանում հատուկ ուշադրության առարկա են հանդիսացել եզը, արագիլն ու կռունկը։ Վերջիններիս նվիրված ավանդությունները յուրովի խորհրդանշում են այն կարևոր դերը, որ կատարել են նրանք երկրագործությամբ ու անասնապահությամբ պարապող ժողովրդի կյանքում։ Ինչպես եզը, այնպես էլ արագիլն ու կռունկը հայկական ավանդություններում հանդես են գալիս իբրև գարնան ավետաբերներ, հողագործ գյուղացու տնտեսության զորավիգ-հովանավորողներ, նրան չարից նախազգուշացնող ու փրկող և բարին ու լավը հաստատող ուժեր։ Նրանք սուրբ ու խորհրդավոր էակներ են, որոնց մեջ ժողովուրդը անձնավորել է արգասավորության և բնության զարթոնքի գաղափարները։*

**12. Քրիստոնեական հավատալիքներ։**—*Բնապաշտական հնօրյա հավատալիքների հետ միասին հայկական ավանդությունների մեջ զգալի արձագանք են գտել նաև համապատասխան բնազանցական հավատալիքներ, որոնք մեզանում տարածում են գտել քրիստոնեության մուտքից հետո երկրում ստեղծված հասարակական-գաղափարական նոր մթնոլորտում։ Այդ հավատալիքները կապված են աստծու, սատանայի, մեղքի, քավության, դրախտի, դժոխքի, ապաշխարության և կրոնական նմանօրինակ ուրիշ հասկացությունների հետ։*

*Ի հակակշիռ հնօրյա հեթանոսական հավատալիքների և օտար կրոնների (կրակապաշտություն, մահմեդականություն), քրիստոնեական եկեղեցին իր հայրերի ու վարդապետների միջոցով դարերի ընթացքում ձգտել է նոր կրոնի վերոհիշյալ հասկացությունները պատվաստել հասա-*

---

[1] Մ. Խորենացի, *Պատմութիւն Հայոց, գիրք Ա., գլ. Ի, էջ 63—64, «Ազգագրական հանդէս», գիրք 25, 1914, էջ 38—42, գիրք 26, 1917, էջ 199—201 և այլն։*

րական լայն զանգվածների մեջ, ներգործել նրանց մտքի ու երևակայության վրա։

Ինչպես այլուր, այնպես էլ մեզանում տարածված քրիստոնեական այդ հավատալիքները պատմական տարբեր դարաշրջաններում ունեցել են տարբեր բնույթ։ Դրանց մի զգալի մասը վերաբերում է նոր կրոնի տիրապետության սկզբնական շրջանին, երբ մարդկանց երևակայությունը սկսել էր սնվել Քրիստոսի ու նրա աշակերտների կատարած գերբնական գործերի հրաշալի պատմություններով։

Այդ շրջանի հավատալիքների արձագանքն հանդիսացող բազմաթիվ հայկական ավանդությունների բնորոշ օրինակներից են հետևյալները.

Հրեաները հետապնդում են Քրիստոսին, որ սպանեն նրան։ Քրիստոսը փախչելով թաքնվում է մի քարայրում։ Սարդերը ոստայն են գործում քարայրի դռանը։ Հրեաները տեսնելով սարդոստայնը, հեռանում են, մտածելով, որ եթե Քրիստոսը մտած լիներ ներս, դռանը ոստայն չէր լինի (№ 380)։

Երբ հրեաները չարչարել են Հիսուսին փշե պսակ դնելով գլխին, նրա աչքերից սկսել է առատ արցունք հոսել։ Տեսնելով, որ Հիսուսը թաշկինակով սրբում է իր արցունքները, հրեաներից մեկը խլում է նրա ձեռքից թաշկինակը և աղբանոց է նետում։ Թաշկինակն իսկույն կատվի է փոխակերպվում (№ 324Բ)։

Քրիստոսը դաշտով անցնելիս հանդիպում է երեք մարդու։ Առաջինի համար նա քարերից մի ամբողջ հոտ է ստեղծում, երկրորդի համար՝ խաղողի այգու է վեր ածում դաշտը, իսկ երրորդին էլ տալիս է մի բարի ու գեղեցիկ կին։ Ժամանակ անց, այդ մարդկանց փորձելու համար, Քրիստոսը հերթով այցելում է նրանց։ Առաջին երկուսը շատ անհյուրընկալ են գտնվում։ Դրա համար Քրիստոսը նրանցից մեկին քար է դարձնում իր հոտի հետ, մյուսի այգին անտառի է վերածում, իրեն էլ՝ արջի։ Երրորդ մարդը, չնայած իր ծանր պայմաններին, կնոջ հետ սիրով հյուրընկալում է Քրիստոսին։ Քրիստոսը կենդանացնում է նրանց մեռած որդուն, մորթված եզան ոսկորներից նորից եզ է ստեղծում, ոսկի է դարձնում այն ջուրը, որով լվացել էին իր ոտներն ու ձեռները (№ 801Ա)։

Ժողովրդի հետաքրքրությունը, այնուհետև, ուղղվում է դեպի դարերի խորքը, կանգ առնելով մարդկային անցյալի պատմության, աշխարհի արարչագործության, առաջին մարդկանց ճակատագրի և հանդերձյալ կյանքի վերաբերյալ Սուրբ Գրքում տեղ գտած երևակայածին զրույցների ու հնավանդ պատումների վրա։ Տվյալ շրջանի քրիստոնեական հա-

վատալիքների հետ կապված հայկական ավանդությունների բնորոշ օրինակներից են հետևյալները.

Ադամը դրախտից արտաքսվել է երեկոյան։ Նա երկար թափառել է գիշերվա խավարի մեջ և կորցրել է երբևէ լույսը տեսնելու հույսը։ Սատանան իմանալով, որ լուսաբաց է լինելու և արև է դուրս գալու, ներկայանում է Ադամին և ասում է. Տուր ինձ հոգիդ և ես կվերադարձնեմ քեզ լույսը։ Ադամը համաձայնում է։ Առավոտյան դուրս է գալիս արևը, և Ադամը ամբողջ օրը վայելում է նրա լույսը։ Երեկոյան արևը նորից է մայր մտնում և թագավորում է խավարը։ Ու այսպես շարունակվում է ամեն օր։ Ադամը հասկանում է, որ սատանան խաբել է իրեն, քանի որ ցերեկն ու գիշերը անպայման պետք է հաջորդեն իրար, և ինքը զուր է հոգին ծախել սատանային (№ 788Զ)։

Հայր Աբրահամը Իսահակին մատաղ անելու համար գնում է սարը։ Աստված հրեշտակի միջոցով մի խոյ է ուղարկում Աբրահամին, որպեսզի նա Իսահակի փոխարեն խոյին մատաղի։ Աբրահամը կատարում է Աստծու կարգադրությունը։ Մորթված խոյի բուրդը գզելու համար Աբրահամն, այնուհետև, խոյի ոսկորներից ու աղիքներից մի գործիք է շինում։ Սակայն դրանով բուրդը չի գզվում։ Աբրահամը հուսմունքից սկսում է լաց լինել։ Նրա արցունքները կաթում են խոյի բրդի վրա։ Հանկարծ հայտնվում է Սատանան և ասում է Աբրահամին. Ի՞նչ կտաս, որ գործիքդ աշխատեցնեմ։ Աբրահամը խոստանում է կատարել Սատանայի բոլոր պահանջները։ Դրանից հետո Սատանան վերցնում է խոյի ճանը, դնում լարի և տափի միացման կետում, որից լարը սկսում է թրթռալ և գզել բուրդը (№ 791)։

Կռապաշտները բռնելով Եղիա մարգարեին, լավ ծեծում են նրան և ստիպում են, որ ասի «Իմ աստվածս չկա»։ Եղիան ուտում է ծեծը, լաց լինում, բայց չի մեղանչում աստծու դեմ։ Հանկարծ նրան երևում է Քրիստոսը և ասում. Եղիա, թող քո արցունքները ջավահիր դառնան ու ծավալվեն երկրե-երկիր։ Այդպես էլ լինում է։ Եղիայի թափած արցունքներն անմիջապես ջավահիր են դառնում (№ 795Գ)։

Ավելի ուշ, հատկապես միջին դարերում, ինչպես այլուր, այնպես էլ Հայաստանում, մարդկանց մտքերի վրա սկսում են իշխել քրիստոնեական եկեղեցու հայրերի ու վարդապետների ճգնավորական կյանքի ու սրբակրոն վարքի վերաբերյալ հոգևոր դասի միջավայրում ծնունդ առած հրաշապատում և խորհրդավոր պատմությունները։

Այդ շրջանի քրիստոնեական հավատալիքներն արտացոլող հայկական ավանդությունների բնորոշ օրինակներից են հետևյալները.

Առյուծը մի օր Սուրբ Սահակի մոտ է բերել իր կույր կորյունին և մարդկային լեզվով աղաչել է սրբին, որ բժշկի նրան։ Սահակ Հայրապետը բացատրել է առյուծին, որ իր աջ աչքն էլ կույր է և ինքը ոչինչ չի կարող անել։ Բայց հետո, զիջելով առյուծի աղերսանքներին, Սուրբ Սահակը խաչակնքել է կորյունին և նրա աչքերը անմիջապես բացվել են։ Առյուծն ու իր կորյունը այլևս չեն հեռացել Սուրբ Սահակի մոտից և միշտ ծառայել են նրան (№ 811)։

Մծբնի Հակոբ Հայրապետը մի անգամ Տոսպ գավառում գտնվող Արտամետ գյուղի աղբյուրի մոտ հանդիպում է լվացք անող աղջիկների ու կանանց։ Առանց քաշվելու և պատկառելու հայրապետից, նրանք մերկ սրունքներով շարունակում են իրենց լվացքը, ոմանք էլ նույնիսկ սկըսում են ծաղրել սրբին։ Տեսնելով այդ՝ Հակոբ Հայրապետը անիծում է նրանց, որի հետևանքով աղբյուրը անմիջապես ցամաքում է, իսկ աղջիկների ու կանանց մազերն էլ սպիտակում են պառավների մազերի պես (№ 813Բ)։

Հին ժամանակ Աշտարակը ջուր չի ունեցել։ Սուրբ Ակիանոսեա անունով մի վարդապետ մտնում է Քասախ գետի ձորը և ձորալանջով քարշ տալով իր գավազանը, ասում է. Թող այստեղով ջուր բարձրանա Քասախից։ Եվ ջուրը նրա գավազանի հետքով սկսում է դանդաղ հոսել դեպի Աշտարակ։ Մարդիկ այգիներ են տնկում և շենացնում են գյուղը։ Սուրբ Ակիանոսեսը գնում է Սաղմոսավանք՝ ճգնելու։ Ջրանցքը նրա անունով կոչվում է Ակիանոսեսի առու (№ 240)։

Առանձնապես ուշագրավ են հայկական այն ավանդությունները, որ վերարտադրված են նոր կրոնի մուտքի առնչությամբ Հայաստանում կատարված կարևոր դեպքերը և վերջիններիս հետ կապված պատմական դեմքերը (Հայոց դարձի պատմությունը, կրոնական հալածանքները, հավատուրացությունը, Տրդատ թագավորը, Գրիգոր Լուսավորիչը և այլն)։

Ըստ այդ ավանդությունների, Գրիգոր Լուսավորիչը շրջապատված մեծամեծ իշխաններով գնում է դեպի Արարատյան աշխարհը։ Ճանապարհին նա լսում է, որ Տարոն գավառում կան Գիսանե և Դեմետրե անուններով կուռքեր, որոնք պաշտվում են տեղացի հայերի կողմից։ Լուսավորիչը փոխում է իր ճանապարհը և զորքով գնում է այդ կառքները կործանելու։ Դարան մտած քրմապետի որդին իր մարդկանցով

պաշարում է Լուսավորչին։ Վրա է հասնում Ռշտունյաց Արձան իշխանը, կոտորում է քրմապետի զորքը և ազատում է Լուսավորչին։ Հանկարծ այն լեռան վրա, ուր գտնվում էին կռապաշտները, երևում է մի լուսեղեն խաչ, որը երեք օր, երեք գիշեր շարունակ փայլում է արեգակի պես։ Հրաշքը տեսնելով, շատ հեթանոս հայեր սկսում են գոչել՝ «Հավատա՜մք, հավատա՜մք...»։ Այդ օրվանից էլ լեռան անունը մնում է Հավատամք (№ 43)։

Կռապաշտ Սուրեն իշխանը իմանալով, որ իր որդին Թաքուն քրիստոնեություն է ընդունել, փնտրում է նրան, որ սպանի։ Կաքավները հայտնում են իշխանին որդու տեղը։ Իշխանը գտնում ու սպանում է որդուն։ Մատնիչ կաքավները իրենց կտուցներն ու ոտները թաթախում են նահատակի արյան մեջ և այդ օրվանից դառնում են կարմրակտուց ու կարմրատոտիկ։ Դրանից հետո կաքավները զղջում են իրենց արարմունքի համար և ներում են հայցում Լուսավորչից, որը նահատակի ընկած տեղում վանք էր կառուցում։ Լուսավորիչը ներում է նրանց։ Այդ օրվանից կաքավները ամբողջ օրը իրենց կտուցները քսում են քարերին ու հողին, որ ջնջեն նրանց վրա եղած արյան հետքերը։ Սակայն արյունը չի ջնջվում, և նրանք ամեն օր հիշում են իրենց կատարած սխալը (№ 362Գ)։

Երբ Գրիգոր Լուսավորիչը Արագած լեռան կատարին աղոթք էր անում, գիշերը նրան լուսավորում էր մի կանթեղ, որը առանց պարանի կախված էր երկնքից և տեսանելի էր միայն արժանավորներին (№ 810Ա)[1]։

**13. Քրիստոնեական և հեթանոսական հավատալիքներ։**—Նոր կրոնի և նրա հետ կապված հավատալիքների ընդունումով, հայ ժողովուրդը հեշտությամբ չի հրաժարվում իր հնավանդ հավատալիքներից ու ավանդություններից։ Վերջիններս, Հայկական լեռնաշխարհում երկար դարեր իրենց գոյությունը պահպանում են և շարունակում են հարատևել ժողովրդի մեջ, մասնավորապես գեղջկական հետամնաց խավերի միջավայրում, հաճախ խառնվելով ու ձուլվելով քրիստոնեական հավատալիքների ու ավանդությունների հետ։

---

[1] Նմանօրինակ մի այլ ավանդության համաձայն, Հայոց Տրդատ թագավորը արձակել է մեջքից իր Հավլունի թուրը և Գրիգոր Լուսավորչի ձեռքով այն նետել է Սեպուհ լեռների կողմը։ Թուրը գետին չի ընկել և խաչի ձևով կախված մնացել է օդի մեջ։ Նրա շուրջը սկսել է փայլել շրջանակաձև մի շող, որը տեսել են միայն արժանավորները (№ 810Բ)։

*Այդօրինակ «խառնածին» ավանդությունների մեջ գերիշխողը մերթ հեթանոսական, մերթ էլ քրիստոնեական հավատալիքներն են, նայած թե ինչ արմատներ ունի տվյալ հավատալիքը այս կամ այն ավանդությունը պատմող ավանդախոսի հոգևոր աշխարհում։ Պատահում են այնպիսի ավանդություններ էլ, ուր հիշյալ հավատալիքները հանդես են գալիս իբրև հավասար ուժի մրցակիցներ։*

*Հին ու նոր հավատալիքների այդպիսի խառնուրդի ու միաձուլման բնորոշ օրինակներ են ներկայացնում իրենցից Արևելյան և Արևմտյան Հայաստանի տարբեր գավառներում գրի առնված հետևյալ ավանդությունները։*

*Սուրբ Սարգսի մասին ասում են, որ նա իր 40 ձիավորներով մեծ քաջագործություններ է կատարում հույների թշնամիների դեմ։ Երկյուղ կրելով, որ Սարգիսը մի օր էլ իրեն կարող է վտանգ սպառնալ, հունական թագավորը կարգադրում է մեկական հույն աղջիկ տալ Սարգսին ու նրա քաջերին, որպեսզի այդ աղջիկները հարբեցնելով նրանց, գլուխները կտրեն։ Այդպես էլ անում են։ Միայն Սարգսին տրված հույն աղջիկն է, որ խղճալով նրան, իմաց է տալիս դավադրության մասին։ Վերցնելով իր հետ իր ազատարարին, Սարգիսը նստում է Սպիտակ ձին և փախչում է Հունաստանից։ Հույները հետապնդում են Սարգսին, բայց աստված բուք ու բորան բարձրացնելով, խանգարում է նրանց, և Սարգիսն իր հեյլենուհու հետ ողջ-առողջ հասնում են Հայաստան (№ 809Գ)։*

*Հեթանոսականը տվյալ ավանդության մեջ փոթորկի ու քամու անձնավորում «արագահաս սպիտակ ձիավորն» է, որի պաշտամունքը Հայաստանում առանձնապես ուժեղ է եղել երիտասարդ աղջիկների ու տղաների շրջանում, իբրև փեսացուներ ճարող և նեղության ժամանակ իրենց օգնության հասնող, ամենակարող ու փրկարար մի բարի ոգու[1]։ Քրիստոնեականը այստեղ կապված է Սարգիս անունով նշանավոր կապադովկիացի զինվորականի կյանքի հետ, որը ապրել է Կոստանդիանոս Մեծի և Տրդատի ժամանակ։ Պատմական աղբյուրներից հայտնի է, որ հիշյալ Սարգիսը ժամանակին ծառայել է պարսից Շապուհ արքայի բանակում և մեծ հաղթանակներ է տարել հույների դեմ։ Հայտնի է նաև, որ պարսից արքան մահապատժի է ենթարկել նրան՝ կրակի երկրպագությունը մերժելու և զորքի մեջ քրիստոնեություն տարածելու համար,*

---

[1] *Հմմ.* *Abeghian M.*, Der armenische Volksglaube, Leipzig, 1889, *էջ 95*։

*որով և նա հետագայում դասվել է քրիստոնեական նշանավոր սրբերի կարգը*[1]։

*Մոկսից դեպի հյուսիս, Արտաանի լեռան վրա գտնվող Փուխկու Սուրբ Գևորգ կոչված վանքի մասին պատմում են, որ սրա վանահայրը մի աքաղաղ է։ Առանց այդ աքաղաղի կանչը լսելու, վանքում իջևանած ոչ մի կարավան երբեք ճանապարհ չի ընկնի։ Երբ նախկին աքաղաղը վախճանվում է, նրա փոխարեն ժողովուրդը վանահայր է կարգում որևէ բարեպաշտ մարդու երազում հայտնված արժանավոր մի ուրիշ աքաղաղի (№ 676Բ)։*

*Հեթանոսականը ներկա ավանդության մեջ աքաղաղի հետ կապված պատմությունն է, ուր արձագանք է գտել հին Հայաստանում ժամանակին գոյություն ունեցող թռչուններով գուշակություն անելու կամ, այսպես կոչված, հավահմայության տոտեմական հավատալիքը։ Քրիստոնեականը՝ Սուրբ Գևորգ վանքի հիշատակությունն է, որը կապված է համանուն հայտնի սրբի հետ*[2]։

*Վասպուրականի Արտամետ գյուղի հարավ-արևելքում գտնվող «Անգղա ս. Աստվածածին» վանքի մասին պատմում են, որ Թադևոս առաքյալը երազում տեսնելով Աստվածածնին, վերջինիս ցուցումով ավերում է Անգղ գյուղում եղած հեթանոսական մեհյանը և տեղն սկսում է կառուցել քրիստոնեական տաճար, որը գիշերը քանդում են դևերը։ Թադևոս առաքյալի աղոթքով և Աստվածածնի հրամանով գալիս են հրեշտակների կերպարանք ընդունած բազմաթիվ անգղներ և չարաչար հալածում են դևերին, որոնք սև ագռավների կերպարանք ընդունելով՝ փախուստի են դիմում։ Դրանից հետո վանքը ստանում է Անգղա վանք անունը (№ 667)։*

*Հեթանոսականը տվյալ ավանդության մեջ մեհյանի և սրա հետ կապված հնօրյա բարի ու չար տոտեմ-թռչունների (անգղ, ագռավ) հի-*

---

[1] *«Սոփերք Հայկականք», Վենետիկ, 1854, էջ 11—53։ Տե՛ս նաև* Փավստոս Բուզանդ, *Հայոց պատմություն, թրգմ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1947, էջ 325, ծանոթ. 95։*

[2] *Հատկանշական է այն, որ վերջինս ժողովրդի մեջ միացել ու խառնվել է Գևորգ անունով զորավարի անվան հետ, որը, ավանդախոսների ասելով, այն ժամանակ է կռիվ մտել՝ հուսալով, որ կհաղթի՝ երբ իր թևին նստած հավքը սկսել է խոսել («Հավք որ խոսեր բարին էր, որ չխոսեր՝ կը նստեր, ճանապարհ չէր գնալ, կռիվ չէր մտնիլ»)։ Տե՛ս* Վարսամ, *Գ. Հովսեփյանի «Փշրանքներ ժողովրդական բանահյուսությունից» ժողովածուի մասին, «Նոր-Դար», 1893, № 9, էջ 2—3։*

*շատակությունն է։ Քրիստոնեականը՝ Աստվածածինն է, հրեշտակները, Թադեոս առաքյալը և սրա ձեռքով կառուցվող տաճարը։*

*Էջմիածնի մայր տաճարի մասին ժողովրդական ավանդությունն ասում է, թե երբ այն սկսում են կառուցել, գիշերը որ անցնում է, առավոտյան վարպետներն ու Գրիգոր Լուսավորիչը գալիս տեսնում են, որ տաճարի հիմքը քանդվել է։ Գիշերը Գրիգոր Լուսավորիչը երազում տեսնում է Քրիստոսին, որը նրան ասում է. Այդ տեղում չարքերի բուն է, դրանց ցիր ու ցան կանեմ։ Մեկ էլ տեսնում է, որ Քրիստոսը գալիս է Էջմիածնի տաճարի կառուցման տեղը և ձեռքի ուռով սկսում է խփել նրա հիմքին։ Բոլոր չարքերը ցիր ու ցան են լինում, որից հետո տաճարի կառուցումը հասնում է իր բարեհաջող վախճանին (№ 602Բ)։*

*Հեթանոսականը ներկա ավանդության մեջ Էջմիածնի տաճարի հիմնատեղում գտնվող չարքերի բնի վերաբերյալ եղած տեղեկությունն է[1], և նույն այդ չարքերի պատճառով տաճարի շինության խափանման հանգամանքը։ Քրիստոնեականը Գրիգոր Լուսավորչի մասնակցությունն է և չարքերի վանումը Քրիստոսի միջոցով։*

*Գանձակի գավառի Խաչակապ անունով գյուղի մասին պատմում են, որ քրիստոնեության քարոզի ժամանակ, շրջակա բոլոր գյուղերում ընդունել են նոր կրոնը, իսկ այս գյուղի բնակիչները, իբրև կաղնու ծառեր պաշտողներ, հրաժարվել նրանից։ Այդ պատճառով նոր կրոնի քարոզիչները պաշտամունքի առարկա յուրաքանչյուր կաղնու ծառի տակ խաչեր են կանգնեցրել։ Նրանց կողմից խաչեր են տնկվել նաև գյուղը շրջապատող բազմաթիվ բլուրների վրա գտնվող կաղնիների տակ։ Այսպիսով կաղնու պաշտամունքին հետզհետե փոխարինել է խաչի պաշտամունքը և գյուղը խաչերով շրջափակված լինելու պատճառով կոչվել է Խաչակապ (№ 456)։*

*Հեթանոսականը ներկա ավանդության մեջ կաղնի ծառի պաշտամունքի վերաբերյալ եղած հիշատակությունն է։ Քրիստոնեականը՝ նույն*

---

*[1] Վերոհիշյալ տեղեկությունը պատմական մի թանկագին վկայություն-վերապրուկ է մեր հինավուրց վանքերի մի զգալի մասի, այդ թվում նաև Էջմիածնի մայր տաճարի, հեթանոսական մեհյանների տեղում կառուցված լինելու պատմական իրողության։ Դրա պերճախոս ապացույցն է Էջմիածնի տաճարի ներսում վերջին տարիներս կատարված հետախուզական պեղումների ժամանակ հայտնաբերված հին կրակարանը (տե՛ս Ալ. Սահինյան, Էջմիածնի մայր տաճարի սկզբնական տեսքը, «Պատմա-բանասիրական հանդես», 1966, № 3, էջ 75)։*

այդ պաշտամունքի տեղում նոր կրոնի քարոզիչների ձեռքով խաչեր տնկելու փաստն է։

**14. Հավատալիքների և կրոնի քննադատություն:**—Հայկական բնաշխարհին և ժողովրդական հավատալիքներին նվիրված ավանդությունների մեջ համապատասխան տեղ ունեն և այն ստեղծագործությունները, ուր յուրովի քննադատվում և բացավում են ինչպես հին հեթանոսական, այնպես էլ համեմատաբար ավելի ուշ շրջանի քրիստոնեական հավատալիքները։ Այդօրինակ ավանդությունների գոյությունը պայմանավորված է մարդկային մտածողության մեջ տարերային մատերիալիզմի այն նշաններով, որոնք անխուսափելիորեն ծնունդ են առել աշխատանքի պրոցեսներից և հասարակական կյանքի երևույթներից մարդկանց ստացած համապատասխան դրդումներից. բնության և հասարակական կյանքի թշնամական ուժերի դեմ նրանց մղած համառ ու տևական պայքարի դրական հետևանքներից։ Դրանց մեջ, հենվելով իր հասարակական առողջ բնազդի և աշխատանքային դարավոր կենսափորձի վրա, հայ ժողովուրդը իր թերահավատությունն է դրսևորել բնության և հասարակական կյանքի երևույթների սխալ ընկալումից մարդկանց գլուխներում ստեղծված առանձին անահավատական պատկերացումների նկատմամբ, երկբայությամբ ու կասկածով է վերաբերվել քրիստոնեական կրոնի հեղինակություններին, մերկացրել ու նշավակել է եկեղեցու այն սպասավորներին, որոնք աչքի են ընկել իրենց պորտաբուծությամբ և ընչաքաղցությամբ։ Այսպես.

Ըստ այդ ավանդությունների՝ Պետրոս առաքյալը մուրացիկ կնոջը ողորմություն չտալու համար արժանանում է «անողորմ» ածականին (№ 808), Դավիթ մարգարեի աշակերտը հնարամտությամբ գերազանցում է հրաշագործ զորությամբ օժտված իր վարպետին, որը ստիպված է լինում դարբնության մեջ ունեցած առաջնությունը զիջել նրան (№ 793), աղքատ գյուղացու ծանր վիճակին անհաղորդ մնալու պատճառով, Սուրբ Սարգիսը ծաղրի է ենթարկվում նրա կողմից (№ 809Ը), ընչաքաղց եպիսկոպոսը անձնական շահի համար ոտնահարում է եկեղեցու հաստատած իրավական և բարոյական կարգերը՝ քահանա օծելով ավազակին (№ 814Ա), իր արհեստի մեջ արտակարգ հմտություն և ազնվություն ցուցաբերած արհեստավորը մեռնելուց հետո ավելի բարձր պատվի է արժանանում աստծո կողմից, քան կրոնի սպասավոր քահանան (№ 889), սովորական հարկահավաքի նման Քրիստոսը առանց խղճալու տասանորդ է ուզում վերցնել տասն որդու տեր կնոջից, և երբ նա քիչ հարկ տա-

*լու համար թաքցնում է որդիների մի մասին, Քրիստոսը անգթորեն պատժում է նրան՝ քաշքեր դարձնելով թաքցված որդիներին (№ 801 ժԳ), կյանքից դառնացած պառավը փորձում է ինքնասպան լինել և երբ այդ չի հաջողվում նրան, մեղադրում է աստծուն անարդարության մեջ, քանի որ նա՝ կյանք ուզողին մահ է տալիս, մահ ուզողին՝ կյանք (№ 163), և այլն։*

## ՆԵՐՔԻՆ ԿՅԱՆՔ

*Հայոց հին և միջնադարյան մատենագիրների աշխատություններում հազվադեպ և խիստ կցկտուր են ժողովրդական զանգվածների տնտեսական զբաղմունքի, հասարակական հարաբերությունների և կենցաղի վերաբերյալ եղած հաղորդումներն ու տվյալները։*

*Հայ ժողովրդի պատմության այդ նկատելի բացը զգալի չափով լրացնում է հայոց հարուստ ու հին բանահյուսությունը՝ մեր բյուրավոր առասպելները, հեքիաթները, վեպերը, վիպական ու քնարական երգերը, առած-ասացվածքները և մասնավորապես պատմա-ճանաչողական նշանակալից արժեք ներկայացնող ժողովրդական ավանդություններն ու ավանդազրույցները։*

**15. Զբաղմունք։**—*Հայկական ավանդությունների մեջ բանահյուսական արձագանք են գտել ամենից առաջ տնտեսության ու զբաղմունքի այն բնագավառները, որոնցով իրենց նյութական կյանքի անհրաժեշտ միջոցները հայթայթելու համար պարապել են հայ ժողովրդի լայն խավերը, վաղնջական դարերից մինչև նոր ժամանակները։ Դրանցից առաջին հերթին պետք է հիշել՝* **անասնապահությունը, որսորդությունը** *և* **երկրագործությունը:**

*Հայկական լեռնաշխարհի ալպիական գոտիները լայն հնարավորություններ են ստեղծել տեղական բնակչության համար՝ ամռան արևից խանձված տափաստաններից իրենց անասունները լեռնալանջերը տեղափոխելու և այնտեղ եղած հարուստ կերապաշարից օգտվելու, իսկ բարձր լեռնալանջերով շրջափակված դաշտերն էլ՝ ձմռան ամիսներին լավ արոտավայր են ծառայել նույն անասունների համար։ Անասնապահությունից բացի Հայկական բարձրավանդակը իր հարուստ կենդանական աշխարհով հարմար վայր է հանդիսացել նաև որսորդության համար։ Նրա բնակիչները, ինչպես հայտնի է, հնուց պարապել են վայրի գազանների, թռչունների և ձկների որսով։ Պակաս զարգացած չի եղել մեղվանում և երկրա-*

գործությունը, որը դարեր շարունակ կազմել է հայ ժողովրդի տնտեսական գործունեության ու զբաղմունքի կարևոր ճյուղերից մեկը։ Հայաստանը սկզբնական օրրաններից է ինչպես հացահատիկային մի շարք կուլտուրաների (ցորեն, գարի, կորեկ և այլն), այնպես էլ բազմաթիվ պտուղների (խաղող, ծիրան, դեղձ, նուռ և այլն)։

Ըստ հայկական ավանդությունների՝ ոչխարներն առաջին անգամ աշխարհում տարածվել են հայոց Բյուրակնյան լեռներից (№ 343), հայ ժողովրդի ազգային վեպի հերոս Սասունցի Դավիթը հովիվ է եղել. նա օգնել է իր հայրենակիցներին, որ նրանք անարգել ու ապահով արածացնեն ու կթեն իրենց անասուններին (№ 202), Սևանա ավազանի բնակիչները հնուց պարապել են հայկական աշխարհահռչակ Իշխան ձկի որսով (№ 352Բ), հայոց Արամայիս նահապետի Շարա անունով որդին իր մարդկանցով բնակություն է հաստատում Արագած լեռան փեշին գտնվող ջրառատ ու արգավանդ Շիրակի դաշտում, որը հռչակված էր իր հացառատ ամբարներով (№ 388), հայոց Արիստակես պատրիարքը ապացուցելու համար հույներին, որ ինքը լավ երկրագործ է՝ արորի մաճը ձեռքն առնելով եզներին քշում է ծովի մեջ և այնտեղ երկու ակոս է բաց անում, որոնք մինչև հիմա էլ մնում են առանց ջնջվելու (№ 812), ջրհեղեղից անմիջապես հետո, դուրս գալով տապանից, Նոյ նահապետը Մասիս լեռան ստորոտին գտնվող Ակոռի գյուղում և Երևանի մոտակայքում խաղողի որթ է տնկում (№ № 400 Գ, 437), իսկ մի ուրիշ անգամ էլ նա բարձրանում է Մասիսի գագաթը և այնտեղից, ի պատիվ խաղողի որթի ու գինու, երախտագիտության զոհ է մատուցում աստծուն (№ 789 Ժ), և այլն։

Ակնբախ է վերոհիշյալ ավանդությունների պատմական ատաղձը։ Հրաշապատում պատկերներով ու կերպարներով նրանց մեջ իրենց անդրադարձումն են գտել տնտեսական այն զբաղմունքները, որոնցով պարապել է հայ ժողովուրդը իր բազմադարյան կյանքի ընթացքում։ Առանձնապես ուշագրավ են բիբլիական Նոյ նահապետի և հայոց Արամայիս նահապետի որդու՝ Շարայի հետ կապված ավանդությունները։ Դրանք բանահյուսական յուրահատուկ վկայություն-ապացույցներ են գիտական գրականության մեջ առաջադրված այն վարկածների, որոնց համաձայն Հայաստանը եղել է ցորենի հնագույն օրրաններից մեկը և խաղողի նախահայրենիքը[1]։

---

[1] *Տե՛ս Пиотровский Б.,* Ванское царство, М., 1959, էջ 133–142, 142–147, *Вавилов Н.,* Азия—источник видов, „Наука и жизнь", М.. 1938, էջ 98։

Անասնապահության, որսորդության և երկրագործության զուգընթաց Հայաստանում հնագույն դարերից լայն տարածում են ունեցել արհեստները: Ամենահինը դրանցից եղել է կավագործությունը։ Բազմապիսի մետաղներով հարուստ Հայկական լեռնաշխարհում կարևոր նշանակություն՝ է ունեցել մետաղագործության արհեստը։ Հայերը վաղնջական դարերից հռչակված են եղել փորձված ու հմուտ քարտաշ վարպետներով ու որմնադիրներով, որոնք իրենց արհեստը գործադրել են ոչ միայն հայրենիքում, այլև հարևան ու հեռավոր երկրներում։ Մյուս արհեստներից Հայկական լեռնաշխարհում տարածում են ունեցել մանածագործությունը, արծաթագործությունը, գորգագործությունը և այլն։

Ըստ հայկական ավանդությունների՝ մարդուն ստեղծելուց անմիջապես հետո աստված նրան տեսակ-տեսակ արհեստներ է սովորեցնում, որ նա դրանցով պահի իր գլուխը (№ 912), ջրաղացպանների նախնին չախչախը հնարել է սատանայի ոտքի օրինակով (№ 907 Բ), գորգ գործելու արհեստը սատանան է սովորեցրել մարդուն (№ 912), ջուլհակը մաքոքը ստեղծել է դրդում ստանալով երազում տեսած կտավի մի եզրից մյուսը ձգվող գորշ օձերից (№ 909), կաշեգործները կարմիր կաշի պատրաստելու եղանակը սովորել են այն ժամանակ, երբ նրանցից մեկը իր որդու մահվան առթիվ աղի արցունքներ է թափել աղջևում դրված կաշու վրա, որից այն անմիջապես կարմրել է (№ 914), Իզմիրի և Նիկոմեդիայի հայերը սերել են այդ վայրերում մզկիթներ ու բաղնիքներ շինելու համար տեղական փաշաների կողմից ժամանակին հրավիրված հայ քարագործ և որմնադիր վարպետներից (№ № 870, 871). և այլն։

Վերոհիշյալ և տասնյակ ուրիշ ավանդությունների մեջ բացահայտված է հայ ժողովրդի հայացքը արհեստի և արհեստավորի մասին, բնութագրված են արհեստների այն տեսակները, որ գոյություն են ունեցել Հայաստանում։ Ըստ այդ ավանդությունների, արհեստը վերուստ մարդուն շնորհված թանկագին պարգևներից մեկն է։ Տարբեր արհեստների գաղտնիքներին նա տիրապետել է ժամանակի ընթացքում՝ իր խելքի, շնորհքի, հնարամտության և աշխատանքային կենսափորձի օգնությամբ։

Տնտեսական մյուս զբաղմունքը, որով հին դարերից պարապել են Հայաստանի քաղաքներում և գյուղերում, եղել է առևտուրը։ Հայկական լեռնաշխարհն իր աշխարհագրական դիրքով յուրահատուկ առևտրական ճանապարհ է հանդիսացել Առաջավոր Ասիայի հարավից դեպի հյուսիս, մանավանդ Փոքր Ասիայի վրայով դեպի Միջերկրական ու Սև ծովերի եզերքները, դեպի Կասպից ծովը։ Տարանցիկ երկիր լինելով, Հայկական

*լեռնաշխարհը ինքն էլ որոշ չափով հանդիսանում էր առևտրական շուկա թե իր բնատնտեսության արգասիքների արտահանման և թե օտար երկրներից ապրանքների ներմուծման համար։ Հայ առևտրականները չեն բավարարվել միայն ներքին շուկայով։ Նրանք խոշոր գործարքներ են կատարել նաև Հայաստանից դուրս գտնվող հեռու և մոտիկ երկրների շուկաներում։*

*Հայկական ավանդություններում պատմաճանաչողական արժեք ունեցող տվյալներ են պահպանվել նաև Հայաստանի առևտրի ու առևտրականների մասին։ Ահա մի քանի բնորոշ օրինակ այդ ավանդություններից։*

*Մի հայ վաճառական իր ուղտերի քարավանով Մեծ Մասիսի լանջով անցնող ճանապարհով առևտրի է գնացել Պարսկաստան։ Հոգնած քարավանը հանգստանալու համար կանգ է առել մի աղբյուրի մոտ։ Լավ նախաճաշելուց և իր ու ուղտերի ծարավը հագեցնելուց հետո, վաճառականը թքել է աղբյուրի ջրի մեջ։ Աստված սաստիկ բարկացել է վաճառականի այդ արարքի վրա և նրան իր յոթ ուղտերի հետ տեղն ու տեղը քար է դարձրել (№ 72)։*

*Հին Ջուղա քաղաքի հանդեպ, Արաքս գետի վրա գտնվող հռչակավոր կամուրջի մասին պատմում են, որ այն կառուցել է մի հարուստ վաճառական (ըստ ուրիշ տարբերակի՝ խոջա Խաչիկը)։ Նրա հրամանով աշխարհի տարբեր ծայրերից հմուտ շինարարներ և շաղախի համար մեծ քանակությամբ ձվեր են բերել։ Վաճառականը սկսել է մեկ-մեկ կշռել բոլոր ձվերը և թեթևներն ու փոքրերը մի կողմ դնելով, հրաժարվել է նրանց համար էլ նույն գինը վճարելու, ինչ որ մեծերի։ Ծառաները զարմացել են իրենց տիրոջ ժլատության վրա։ Զգալով դա, վաճառականը նստել է ձին, քշել դեպի գետի ծանծաղուտը և բռով ոսկի դրամ լցնելով ջրի մեջ, ասել է. «Ես ոչ թե դրամն եմ ափսոսում, այլ վաճառականության օրենքն եմ սովորեցնում» (№ 587Բ)։*

*Ղրիմի Կաֆա քաղաքում մի ջենովացի վաճառական վեճի է բռնվում տեղացի թաթար վաճառականի հետ։ Սա ապտակում է իտալացուն, իսկ իտալացին էլ սպանում է թաթար վաճառականին։ Ջանիբեկ խանը որոշում է վրիժառու լինել սպանված թաթար վաճառականի համար։ Մարդ է ուղարկում դեսպանի մոտ, պահանջելով հանձնել մարդասպանին։ Մերժում ստանալով դեսպանից, թաթար խանը մեծ զորքով պաշարում է Կաֆա քաղաքը։ Տեղացի հայ մեծահարուստ վաճառականները իմանալով խանի մտադրության մասին, ծովափի ամենավտանգավոր կողմից*

սեփական ծախսով պարիսպներ են կառուցում: Պաշարումը տևում է երկու տարի, բայց խանը ոչ մի վնաս չի կարողանում հասցնել քաղաքին: Մտածում է մեքենաներով քանդել պարիսպները: Քաղաքացիները հանկարծակի հարձակվելով նրա վրա, մեծ ջարդ են տալիս և խանը ստիպված հաշտություն է կնքում ջենովացոց հետ: Դրանից հետո փրկարար պարիսպները հայտնի են դառնում Հայոց բերդ անունով (№ 584 Բ):

Հնարածին և հրաշապատում մոտիվների հետ (վաճառականի և ուղտերի քարանալը, ապտակի պատմությունը, ջրի մեջ բռով ոսկի շաղ տալու հանգամանքը) վերոհիշյալ ավանդությունների մեջ միաժամանակ առկա են նաև ճանաչողական որոշակի նշանակություն ներկայացնող իրական-պատմական փաստեր ու հիշատակություններ:

Այդպիսին է, նախ և առաջ, Մեծ Մասիսի լանջով անցնող ճանապարհով դեպի Պարսկաստան առևտրի մեկնող վաճառականի պատմությունը: Դա յուրահատուկ մի արձագանքն է պարսկական իրականությունից սերող հայ խոջաների առևտրական գործունեության: Վերջինս 17-րդ դարի երկրորդ կեսից սկսած հետզհետե ընդարձակվելով անցնում է նաև եվրոպական շուկաները: Այդ գործունեության «արյունատար անոթը», ինչպես հայտնի է, հանդիսացել է Մասիսի լանջերով անցնող առևտրական այն մեծ ճանապարհը, որը Միջին Ասիան և Իրանը կապել է Սև ծովի արևելյան ավազանի ու Կովկասի մեծ ճանապարհների հետ[1]:

Այդպիսին է, այնուհետև, Ջուղայի կամուրջի, և «հարուստ վաճառականի» կամ խոջա Խաչիկի պատմությունը: Վերջինիս մեջ, ամենայն հավանականությամբ, իր արտահայտությունն է գտել այն իրողությունը, որ առևտրական կապիտալի զարգացման դարաշրջանում, մեծ ճանապարհների հետ կապված կարևոր կառույցները (քարվանսարա, կամուրջ) հիմնականում կատարում էին նման կառույցներով առանձնապես շահագրգռված անձինք, այն է՝ հարուստ վաճառականները: Ջուղայեցի խոջա Խաչիկը 17-րդ դարի այդպիսի անվանի մեծահարուստ հայ վաճառականներից մեկն էր: Ահա թե ինչու ժողովրդական ավանդությունը՝ Արևելքն ու Արևմուտքը իրար հետ կապող երբեմնի առևտրական տարանցիկ մեծ ճանապարհին ընկած տվյալ կամուրջի կառուցումը վերագրել է նրան: Իրականում, սակայն, Ջուղայի կամուրջը կապ չունի ոչ «մի հարուստ վաճառականի», ոչ էլ խոջա Խաչիկի անվան հետ: Հայտնի է, որ այն կառուցվել է տակավին Ալեքսանդր Մակեդոնացու ժամանակ,

[1] Տե՛ս Լեո, Խոջայական կապիտալը, Երևան, 1934, էջ 56—57:

*և ապա վերանորոգվել Օգոստոս կայսեր օրոք*[1]*։ Խոջա Խաչիկի ժամանակ, որ Շահ-Աբասի տիրապետության շրջանում ապրած Ջուղայեցի համբավավոր հայ վաճառականներից էր, կամուրջն արդեն քանդված է եղել։ Առաքել Դավրիժեցու վկայությամբ այդ միջոցներին Երասխի վրա կանգուն ոչ մի կամուրջ չի եղել*[2]*։ Իսկ Աբրահամ Կրետացին խոսելով Հին Ջուղայի և նրա շրջակա վայրերի ու հուշարձանների մասին, ի միջի այլոց գրում է. «... Եւ անցանելով զՏարաշամըն լեռնամիջով հասանէ ի Հին Ջուղայ. ուր կայ մեծ և զարմանալի կամուրջն՝ երեք տակ՝ բարձր և հիանալի տեսողացն, զոր մեծն Շահապազ քակեաց ի ժամանակին՝ յորում զՋուղայ քշեաց, և այժմ աւեր կայ. և ճանապարհորդք նուաւ անցանեն ի Ջուղայու և գնան ի Դավրէժ»*[3]*։*

*Այդպիսին է, վերջապես, Կաֆայի Հայոց բերդի կառուցման հետ կապված պատմությունը։ Ժամանակակից գրավոր աղբյուրների վկայությամբ, այդ բերդ-պարիսպը իրոք գլուխ է բերվել Անիից գաղթած հայ մեծատուն առևտրականների միջոցներով և Կաֆայում նստող ջենովացոց դեսպանի թույլտվությամբ ու խրախուսով։ Ինչ վերաբերում է ավանդության մեջ հիշվող ջենովացի և թաթար վաճառականների վեճին, ապա դա էլ ոչ այլ ինչ է, բայց եթե յուրահատուկ մի արձագանք մի կողմից 14—15-րդ դարերում ջենովացիների և Ղրիմի թաթար խաների միջև գոյություն ունեցող հակամարտության, մյուս կողմից նույն այդ ժամանակաշրջանում հայ ու ջենովացի առևտրականների միջև եղած բարեկամական փոխհարաբերությունների և Ղրիմի տեր թաթար խաների դեմ նրանց մղած համատեղ պայքարի*[4]*։*

**16. Հասարակական հարաբերություններ։**—*Ժողովրդական ավանդությունների մեջ իրենց բազմակողմանի արձագանքն են գտել սոցիալական հարաբերությունները։ Տվյալ կարգի ավանդությունների գլխավոր թեման, այսուժետային առաջձը և գաղափարական բովանդակության հիմքը աշխատանքն է։ Աշխատանքի նկատմամբ իրենց ունեցած վերաբերմունքով են բստ էության տարբերվում իրարից և նմանվում իրար նրանց գործող*

---

[1] *Տե՛ս* Առաքելյան Հ., *Պարսկաստանի հայերը..., «Հանդես Ամսօրյա», 1899, № 3, էջ 65—66։*

[2] Առ. Դավրիժեցի, *Պատմութիւն, Վաղարշապատ, 1884, էջ 28—30։*

[3] Աբ. Կրետացի, *Պատմագրութիւն անցիցն իւրոց և Նատր-Շահին պարսից, Վաղարշապատ, 1870, էջ 42։*

[4] *Հմմ.* Հովհաննիսյան Աշ., *Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք Բ., 1955, էջ 431։*

անձինք ու հերոսները։ Մի կողմից՝ ազնվականներ, իշխաններ, մելիքներ, առևտրականներ և այլն, մյուս կողմից՝ շինական հողագործներ, հովիվներ, մշակներ, ռամիկներ, արհեստավորներ, ծառաներ և այլն։ Սրանք իրարից տարբերվում են ոչ միայն սոցիալ-տնտեսական վիճակով ու ապրելակերպով, այլև իրենց հոգեբանությամբ ու բնավորությամբ։ Առաջինների համար ընդհանուր առմամբ բնորոշ հատկանիշներ են հանդիսանում՝ ագահությունը, եսամոլությունը, անգթությունն ու ամբարտավանությունը, երկրորդները հիմնականում աչքի են ընկել իրենց առատաձեռնությամբ, սրտաբացությամբ, բարությամբ ու մարդկայնությամբ։

Այսպես.

Արևելյան և Արևմտյան Հայաստանի տարբեր վայրերից գրի առնված մի շարք ավանդությունների համաձայն՝ ագահ հարուստը տեղեկանալով, որ ծառան մի բուռ ցորեն է տվել իրենց կալի մոտով անցնող մուրացկանին, վռնդում է նրան տանից. ծառայի մայրը դրա համար անիծում է հարուստին և նա տեղն ու տեղը քար է դառնում (№ 149)։ Մի հարուստ ու ժլատ մարդ զլանում է երկու կտոր քակոր տալու վառելիք չունեցող աղքատին, որի անեծքով նրա քակորի ամբողջ ամբոցը քար է դառնում (№ 162)[1]։ Սոսկալի ժլատ հարուստը ոչ միայն ողորմություն չի տալիս աղքատներին, այլև կարգադրում է ծառաներին հետևելու, որ թռչունները ոչ մի հատիկ չկտցահարեն իրեն պատկանող ցորենի շեղջից, որի համար և աստված նրան իր ասյլի, գոմեշների ու ցորենի շեղջի հետ քար է դարձնում (№ 83)։ Մի աղքատ գյուղացի իր կովի համար մի քիչ խոտ է խնդրում հարուստից. հարուստը մերժում է։ Աղքատի խնդիրքով աստված ժլատ հարուստին իր խոտի հսկայական դեզի հետ միասին անմիջապես քար է դարձնում (№ 177) և այլն։

---

[1] Վերոհիշյալ և բազմաթիվ ուրիշ ավանդությունների մեջ արտահայտված է ժողովրդական այն հնամենի հավատալիքը, ըստ որի մարդկային մտքերն ու զգացմունքները դրսևորող սովորական խոսքերից բացի, գոյություն ունեն նաև այնպիսի խոսքեր, որոնք լիցքավորված են չարը պատժելու և բարին հաստատելու մոգական կամ հմայական ուժով։ Անեծքների, օրհնանքների ձևով արտահայտված բանադրական այդ խոսքերի բովանդակության իրականացումը անհրկբայելի իրողություն է համարվել ժողովրդի համար, որոնցով նա օժտել է միայն ճատուկ մարդկանց և գերբնական այնպիսի ուժերի, ինչպիսիք են՝ աստված, Քրիստոս, զանազան սրբեր և այլն (խոսքի կախարդական զորության վերոհիշյալ ժողովրդական հին հավատալիքը դրսևորող ավանդություններով առանձնապես հարուստ են «Ավանդապատումի» «Լեռներ, ժայռեր, բլուրներ» (№ № 9—89) և «Նշանավոր քարեր» (№ № 129—210) գլուխները)։

Իրենց արմատներով սոցիալական ծագում ունեն նաև հայկական այն ավանդությունները, որոնց մեջ խոսվում է պանդխտության մասին։

Բնորոշ ստեղծագործություններ են այս տեսակետից հետևյալ երկու ավանդությունները, ուր հուզիչ պատկերներով վերարտադրված է նյութական և հոգեկան այն ծանր կացությունը, որ բաժին է ընկնում թե իրեն՝ պանդուխտին և թե նրա ընտանիքին ու հարազատներին.

Կինը չափազանց սիրել է ամուսնուն։ Սա պանդխտություն գնալով, այլևս չի վերադարձել։ Կինն իր ամբողջ սերը տվել է ծծկեր որդուն։ Արծիվը օրորոցից հափշտակել է երեխային։ Ամուսնու և որդու անդարձ կորստից կինը դարձել է Հավալուսին կոչված թռչունը, որն անդադար սավառնում է օդում և շարունակ ողբագին կանչում է։ Նա հանգիստ է առնում միայն այն ժամանակ, երբ սրտից նրեք կաթ արյուն է կաթում (№ 371)։

Մի անգամ կաչաղակը նստելով պառավի կտուրին ավետում է նրան, որ որդին վերադառնալու է պանդխտությունից։ Առանց հասկանալու կաչաղակի ավետիքը, պառավը մի կտոր հաց է նետում նրան։ Կաչաղակն այդ հացը տանում, տալիս է պառավի որդուն, որը սաստակ քաղցած է լինում։ Նույն բանը կրկնվում է մի քանի անգամ։ Մի օր էլ պառավը ձանձրանալով, հացի փոխարեն քար է նետում կաչաղակին։ Կաչաղակն առնում է այդ քարը և տանում նետում է պառավի՝ պանդխտության մեջ գտնվող որդու գլխին, որն իսկույն մեռնում է։ Այդ դեպքից հետո այլևս քար չեն նետում կաչաղակին, այլ միշտ հաց են տալիս ու ասում. Բարին մեզ, չարը թշնամուն (№ 373 Բ)։

Սոցիալական բովանդակություն ունեցող հայկական ավանդությունների գործող անձանց ու հերոսների մեծ մասը չունեն որոշակի արտահայտված ու շոշափելի իրական-պատմական նկարագիր։ Դրանք հիմնականում անանուն ու անհասցե բանահյուսական կերպարներ են. «մի ագահ հարուստ» և նրա «կալվոր ծառան», «մի ժլատ հարուստ» և «մի աղքատ», «խիստ ժլատ մի հարուստ» և «ողորմության կարոտ աղքատներ», «ունևոր» ու «աղքատ» գյուղացիներ և այլն։ Իրականն ու պատմականը հիշյալ կերպարներին ծնունդ տված համապատասխան հասարակական հարաբերություններն են, սերտորեն կապված տվյալ բնաշխարհի, նրա մարդկանց հավատալիքների, կենցաղի, աշխատանքային պայմանների, աշխարհայացքի ու հոգեբանության հետ։ Ժողովրդական ավանդախոսները այդ կերպարների մեջ մարմնավորել ու խտացրել են

*իրենց շրջապատում գոյություն ունեցող աշխարհիկ ու հոգևոր տերերի և գյուղի ու քաղաքի ընչազուրկ մարդկանց տիպական գծերը։*

*Հիշյալ կարգի ավանդությունների շարքում, մերթ ընդ մերթ հանդիպում են նաև այնպիսի ստեղծագործություններ, որոնք թե իրենց սյուժետային ատաղձով և թե գործող անձանցով ունեն բավական որոշակի արտահայտված և շոշափելի իրական-պատմական նկարագիր։ Այդպիսի ստեղծագործությունների բնորոշ օրինակներից են հետևյալ երկու ավանդությունները.*

*Անեցի հովիվը մի կիրակի հանդից տուն վերադառնալով՝ սրտնեղած ու տխուր վիճակում է գտնում իր ընտանիքի անդամներին։ Հարցնելով իմանում է, որ նրանց այդ օրը, իբրև հասարակ մարդկանց, թույլ չեն տվել ներկա լինելու քաղաքի արքայական տաճարում կատարվող պատարագին։ Զայրացած հովիվը որոշում է սեփական խնայողություններից առանձին եկեղեցի կառուցել իր ընտանիքի համար։ Անցնում է որոշ ժամանակ և Անիի պարիսպներից դուրս բարձրանում է մատուռանման մի փոքրիկ եկեղեցի, որն իր գեղեցկությամբ չի զիջում քաղաքի մյուս տաճարներին և հայտնի է Հովվի եկեղեցի անունով (№ 652)։*

*Գորիսի շրջանի Խնածախ գյուղի մոտ կա մի բարձր քարաժայռ, որին տեղացիները Դատ-մելիք են ասում։ Պատմում են, որ Զանգեզուրում մի մելիք է լինում, որը օր ու արև չի տալիս գյուղացիներին, ամեն անգամ մի պատրվակ բռնելով նա դատ ու դատաստան է տեսնում նրանց հետ։ Մի օր էլ գյուղացիները հարձակվում են մելիքի մարդկանց վրա՝ որին սպանում են, որին էլ քշում սարերից դենը։ Այն սարը, որի վրա մելիքը դատ ու դատաստան է արել գյուղացիներին, դրանից հետո կոչվում է Դատ-մելիք (№ 18 Բ)։*

*Առաջին ավանդության մեջ իրականն ու պատմականը այն փաստն է, որ Հովվի եկեղեցու կառուցման ժամանակաշրջանում (10—11-րդ դարեր), Անի քաղաքի պարիսպներից ներս բնակվելու և այնտեղ գտնվող արքայական տաճարից օգտվելու իրավունքը եղել է իշխանների և ազնվականների մենաշնորհը, իսկ հասարակ ժողովուրդը ապրել է այդ պարիսպներից դուրս գտնվող քարայրների և բաց դաշտի մեջ, զրկված լինելով հիշյալ տաճարից օգտվելու հնարավորությունից։ Ուստի և Հովվի եկեղեցին կառուցողը իրոք պետք է եղած լինի հասարակ ժողովրդին պատկանող մի անձնավորություն։ Դրա լավագույն ապացույցը, ինչպես նշել է Թորամանյանը, պարիսպներից դուրս գտնված մեծատարած եր-*

կու հաստրակաց գերեզմանատներն են, որոնցից մեկը գտնվում է Ծաղ-կոցաձորում, իսկ մյուսը՝ Հոռոմոսի ճանապարհին, ձորի մոտ[1]։

Երկրորդ ավանդության մեջ, ամենայն հավանականությամբ, պետք է տեսնել բանահյուսական յուրօրինակ արձագանքը Զանգեզուրի մելիքական նշանավոր տոհմերից մեկի հիմնադիր, տխրահռչակ Մելիք-Հայկազի կենսագրության։ Ըստ առկա պատմական աղբյուրների, հիշյալ Մելիք-Հայկազը ապրել է 19-րդ դարի սկզբներին։ Նրա տնօրինությանն է ենթարկվել Խնածախ գյուղն իր շրջակայքով։ Նույն աղբյուրների վկայությամբ, նա եղել է վերին աստիճանի խստաբարո ու դաժան մի անձնավորություն, անխնայորեն նեղել ու կեղեքել է իրեն ենթակա աշխատավոր գյուղացիներին[2]։

Ժողովրդական ավանդությունների մեջ համապատասխան ձևով արձագանք են գտել նաև տիրող սոցիալ-տնտեսական կարգերի հենարան հանդիսացող պետական, վարչական ու իրավական մարմինները իրենց ղեկավարներով և մեծ ու փոքր պաշտոնյաներով (թագավոր, դատավոր, ռես, հարկահավաք և այլն)։ Վերջիններս ամեն կերպ ձգտելով անխախտ պահել մասնավոր սեփականության և շահագործման վրա հիմնված տիրող կարգերը, ճնշում ու նեղում են աշխատավոր զանգվածներին, պաշտպանում և հովանավորում են աշխարհիկ ու հոգևոր տերերին. ժողովուրդն իր հերթին քննադատում, մերկացնում ու ծաղրում է պետական, վարչական ու իրավական մարմինների ղեկավարներին ու պաշտոնյաներին, բողոքում է սրանց կատարած բռնությունների, անարդարության ու շահատակությունների դեմ, իսկ երբ ներկայանում է առիթը, չի հապաղում նաև անողոք դատաստան տեսնելու նրանց հետ։

Վերը ասվածը հաստատող բնորոշ օրինակներ են հետևյալ երկու ավանդությունները.

Չղջիկի մասին պատմում են, որ երբ նա մի անգամ ներկայանում է իր ցեղակից թռչուններին, սրանք ասում են նրան. Եթե դու իսկապես թռչուն ես, ապա բարի եղիր հարկ վճարել մեր թագավորին։ Հարկի անունը լսելով չղջիկը թողնում է թռչուններին և գալիս է մկների մոտ։ Մկները նայելով նրան, նույնպես ասում են. Եթե դու իսկապես մուկ ես, ապա մեզ հետ միասին պետք է հարկ վճարես մկների թագավորին։

[1] Թ. Թորամանյան, Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, հատ. Ա., Երևան, 1942, էջ 319։

[2] Ե. Լալայան, Զանգեզուր, նյութեր ապագա ուսումնասիրության համար, «Ազգագրական հանդես», գիրք 4, 1892, էջ 14։

Հարկի անունը լսելով, չղջիկը հեռանում է նաև մկներից։ Դրանից հետո նա սկսում է գիշերները դուրս գալ, որպեսզի իրենից հարկ չվերցնեն ոչ թռչունների, ոչ էլ մկների թագավորները (№ 359 Բ)։

Գուգարքի շրջանի Համզաչիման գյուղի մոտ գտնվող ավերակների մասին ասում են, թե այստեղ առաջ գյուղ է եղել, որն ունեցել է մի դաժան գզիր։ Հարկ հավաքելիս, զորակոչի կանչելիս նա այնքան է նեղում գյուղացիներին, որ սրանք ստիպված թողնում են իրենց տունն ու տեղը և հեռանում գյուղից։ Ժամանակ անց, երբ գզիրը ծերանում է և զգում է, որ մեռնելու օրերը մոտեցել են, որոշում է նորից վախեցնել գյուղացիներին։ Կանչում է քահանային, հաղորդություն ընդունում և պատվիրում է նրան մեռնելուց հետո թաղելու փոխարեն իրեն կախ տալ մի բարձր ծառից։ Քահանան կատարում է գզրի պատվերը։ Մոտակա գյուղի բնակիչները տեսնելով ծառից կախված գզրին, ուրախանում են և հավաքվելով նրա դիակի շուրջը՝ պար են բռնում ու երգ ասում։ Այդ ժամանակ ծառի մոտով անցնելիս է լինում մուլրովը։ Նկատելով կախված գզրին և կարծելով, որ դա գյուղացիների արածն է, նա հրամայում է այրել գյուղը։ Մուլրովի հրամանը անմիջապես կատարվում է։ Դրանից հետո գյուղատեղի ավերակները կոչվում են Գզրավեր (№ 487)։

Առաջին ավանդության մեջ, որն ունի առակատիպ այլաբանական հորինվածքի բնույթ, չղջիկի բնախոսական առանձնահատկությունները (թռչնային թևեր, մկնային ատամներ) բացահայտող արտաքուստ անմեղ քողի տակ, թաքնված է հարկապահանջության հակահասարակական էությունը՝ իբրև տիրող քաղաքական իշխանության կողմից ժողովրդի վզին փաթաթված, բռնի ուժով պարտադիր օրենքի ուժ ստացած անտանելի ծանր մի բեռ, որից խուսափելու համար հարկադրման ենթական պատրաստ է նույնիսկ հրաժարվելու իր ինքնությունից։

Երկրորդ ավանդությունը յուրօրինակ մի լուռ բողոք-նախատինք է ուղղված պետական իշխանության տեղական ներկայացուցիչների (գզիր, մուլրով) քմահաճ կամայականության դեմ, որի զոհն է դառնում գյուղական մի ամբողջ հասարակություն։

Հայկական ավանդությունների մեջ աշխարհիկ ու հոգևոր տերերի և պետական պաշտոնյաների շարքում մեկ-մեկ հանդիպում են նաև այնպիսիք, ովքեր հանդես են գալիս իբրև ժողովրդի բարեկամներ, ընչազուրկ ու ճնշված մարդկանց պաշտպաններ։ Դրանց մի մասը իրականպատմական դեմքեր են, որոնք ժողովրդի օգտին կատարած իրենց այս կամ այն բարի գործի համար մեծարվել են նրա կողմից, ուրիշները՝

մտացածին կերպարներ են՝ ծնունդ ավանդախոսների ստեղծագործական երևակայության, որոնց վերջիններս վերագրել են ժողովրդի ձգտումներն ու ակնկալություններն իրականացնողների հատկություններ։

Առաջին կարգի դեմքերից է Հայոց Աշոտ Ողորմած թագավորը (952—977 թթ.), որը ժողովրդական ավանդության մեջ հանդես է բերված իր իշխանության տակ գտնվող տարբեր ազգերի աշխատավոր, հասարակ մարդկանց պաշտպանի, նրանց նեղ օրին հասնող, «ողորմած» թագավորի դերում, հակադրվելով ժողովրդի հաշվին ապրող և նրա ցավերին անկարեկիր, հայ և այլազգի զանազան ագահ ու խաբեբա հարուստների, իշխանավորների ու հոգևորականների։

Ավանդությունն ասում է, թե Աշոտ Ողորմածը նստելիս է եղել Ղարս քաղաքում։ Նրա հպատակների մեջ ամեն ազգի մարդ է եղել։ Մի անգամ ժողովուրդը թագավորական վերակացուի միջոցով դիմում է Աշոտին, որպեսզի նա օգնության հասնի իրենց։ Աշոտը կանչել է տալիս իր վերակացուին, 500 ոսկի դնում նրա բռան մեջ և ասում. «Տար, բոլորին հավասար բաժանի», ու անմիջապես ավելացնում՝ «Գիտեմ, որ դու ագահություն պիտի անես, մեծ մասը քեզ պահես։ Ահա քեզ 100 ոսկի, միայն թե տված 500 ոսկին անպայման ժողովրդին կտաս։ Գնալուդ առաջ մի անգամ էլ կհանդիպես ինձ»։ Վերակացուն գնալուց առաջ գալիս է Աշոտի մոտ։ Թագավորը նորից 50 ոսկի է տալիս նրան ու ասում. «Գիտեմ, ագահություն պիտի անես, ահա քեզ էլի 50 ոսկի, չլինի թե բաժանելիք ոսկիների մեծ մասը քեզ վերցնես»։ Վերակացուն գալով ժողովրդի մոտ ասում է. «Թագավորը ձեզ վրա շատ բարկացավ, ասաց «Ուզում է թող բոլորն էլ կոտորվեն սովից, իմ ինչ գործն է», և գրպանում է թագավորի կողմից նրանց բաժին տրված բոլոր 500 ոսկին (№ 753)։

Իրականն ու պատմականը այստեղ ոչ միայն ավանդության հերոս Աշոտ թագավորն է, այլ և նրա Ողորմած մականունը, Ղարս քաղաքի հիշատակությունը իբրև թագավորանիստ վայրի, տարբեր ազգություններին պատկանող ընչազուրկ ու կարիքավոր մարդկանց նրանից օգնություն հայցելու փաստը և թագավորի կողմից նրանց խնդիրքին ընդառաջելու հանգամանքը։ Միջնադարյան մի քանի հայ պատմիչների (Վարդան Պատմիչ, Ստ. Տարոնեցի, Մ. Ուռհայեցի) վկայությամբ Աշոտ Ողորմածը Աբաս թագավորից իր հայրենական գահը ժառանգելուց հետո սկզբում թագավորում է Կարսում, որտեղից շուտով փոխադրվում է Անի ամրոցը։ Այստեղ նա հիմք է դնում հայ պատմական կյանքի անիական շրջանին։ Նույն աղբյուրների վկայությամբ իր երկարատև գահակա-

*լության ընթացքում Աշոտ թագավորը զբաղվել է խաղաղ ու շինարար գործունեությամբ, բարեկարգել է երկիրը, հիմնել բարեգործական հաստատություններ, ուրկանոցներ՝ հիվանդներին ու անկյալներին պատըսպարելու համար, ընդառաջել է կարիքավորներին, որի համար և ժամանակակիցներից արժանացել է «Ողորմած» մականվանը։*

*Երկրորդ կարգի կերպարներից է Սուրբ Սարգիսը, որը ժողովրդական ավանդության մեջ ներկայանում է որպես «անճար պառավի» պաշտպան ու հովանավոր։*

*Ըստ ավանդության մի հարուստ ու ագահ գյուղացի, չնայելով իր մարագներում եղած լիքը դարմանին, գողանում է անճար պառավի այծերի ու ուլերի բաժին դարմանը։ Լսելով պառավի գանգատը՝ Սուրբ Սարգիսը սոսկալի փոթորիկ է բարձրացնում և կոտորում է ագահ հարուստի ոչխարների ողջ հոտը (№ 4Դ)։*

**17. Կենցաղ։**—*Հայկական լեռնաշխարհի բնակչության տնտեսական և հասարակական կյանքի հետ միասին ժողովրդական ավանդություններին մեջ արձագանք է գտել նույն այդ բնակչության կենցաղը իր տարբեր ու բազմազան արտահայտություններով։ Առանձնապես ուժեղ է ավանդությունների վրա տոհմատիրական-համայնական հասարակությունից եկող կենցաղային* **սովորույթների, հարաբերությունների** *ու* **ծեսերի** *կնիքը, որոնք իրենց հատուկ պահպանողականության շնորհիվ վերապրուկի ձևով գոյատևել ու պահպանվել են նաև հետագայում, իսկ որոշ դեպքերում էլ հասել մինչև մեր օրերը։*

*Կենցաղային այդպիսի սովորույթներից, հարաբերություններից ու ծեսերից են մեզանում՝ գյուղական աղջիկների ու երիտասարդ հարսների՝ աղբյուրը ջրի գնալու սովորույթը, քավորի ու սանամոր խնամիելը իրարից, հարսի հարաբերությունները ամուսնու ընտանիքի մյուս անդամների (սկեսուր, սկեսրայր և այլն) հետ, ազատ սերն ու ամուսնությունը կաշկանդող երևույթները, Վարդավառի, Բարեկենդանի, Պառավի պասի և ուրիշ տոների ժամանակ ժողովրդի մեջ կատարվող հանդեսներն ու արարողությունները և այլն։*

*Աղբյուրը ջրի գնալու սովորույթի մասին պատմող հայկական մի շարք ավանդություններից (№ № 219, 220) առանձնապես ուշագրավ է Սևանա լճի ծագումը բացահայտող հետևյալ ավանդությունը, որ պատմըվել է լճափի՝ Ցամաքաբերդ, Լճաշեն և մյուս գյուղերի բնակիչների միջավայրում։*

*Ասում են, թե Սևանա լճի տեղում ժամանակին ցամաք է եղել՝ անտառապատ բլուրներով, ծաղկոտ դաշտերով ու բերքատու հողերով։ Գյուղի մոտ, բլրի տակ բխել է առատաջուր մի աղբյուր, որից օգտվելիս գյուղացիները հանել են ակունքի ահագին կափիչը և հետո նորից հարմարեցրել իր տեղը։ Դա պապերից մնացած սովորություն էր, որ չէր կարելի խախտել, որովհետև աղբյուրն այնքան ջրառատ էր, որ չփակելու դեպքում՝ կարող էր ողողել ամբողջ շրջապատը։ Մի իրիկուն գյուղի հարսներից մեկը ջրի է գնում, հանում է ակունքի կափիչը, կուժը լցնում ջրով ու գալիս տուն՝ մոռանալով փակել աղբյուրը։ Ջուրը հոսելով տարածվում է չորս կողմը, հասնում գյուղի խրճիթներին. գյուղացիները դուրս են փախչում, անիծում աղբյուրը բաց թողնողին, ասելով. «Քար դառնա՝ ով բաց է թողել ակունքը»։ Եվ մոռացկոտ հարսը անմիջապես քար է դառնում, իսկ ջուրը բխում է ու բխում, կազմում Սևանա լիճը, որի երեսն ի վեր հազիվ վեր է բարձրանում քարացած հարսի գլուխը՝ «Հարսնաքարը» (№ 217)։*

*Ավանդությունը նշանակալից է իբրև բանահյուսական մի արձագանք Հայաստանում հնուց անտի գոյություն ունեցող կենցաղային տարածված սովորույթներից մեկի, որի մասին վկայում է Քսենոֆոնն իր Անաբազիսում*[1] *և որի մեջ յուրովի արտահայտված է մարդկային հասարակության պատմության այն ժամանակաշրջանը, երբ տնտեսությունը հիմնված էր աշխատանքի սեռային բաժանման վրա՝ տղամարդիկ կատարում էին դրսի աշխատանքները, իսկ կանայք՝ տան ներսի գործերը, այդ թվում նաև տանն գործածության համար անհրաժեշտ ջրի մատակարարման աշխատանքը։*

*Նույն ավանդությունը պակաս նշանակալից չէ նաև իբրև պատմությունը լուսավորող մի ճառագայթ, որ հավաստում է Սևանա լճի հատակի համապատասխան տեղամասի՝ հազարամյակներ առաջ մարդկային բնակատեղի լինելու պատմական փաստը։ Մի փաստ, որն իր վերջնական հիմնավորումը ստացավ լճի ջրերի նվազման հետևանքով նրա առերես դուրս եկած հատակի որոշ շրջանում (Լճաշեն, Ցամաքաբերդ) արված հնագիտական պեղումների ժամանակ հայտնաբերված*

[1] *Ксенофонт,* Анабазис, пер. М. Максимовой, М.—Л., *1951, գիրք 4, գլուխ 5, էջ 110։*

դամբարանների, բնակատեղերի, ամրոցների ավերակների և ուրիշ հրեղեն ապացույցների միջոցով[1]։

Հայաստանում բավական մեծ տարածում են ունեցել այն ավանդությունները, որոնց մեջ պատմվում է քավորի ու սանամոր իրարից խուսափելու փաստի մասին։ Ըստ այդ ավանդությունների՝ աղքատ սանամայրը ամոթից երկինք է բարձրանում, երբ քավորը տեսնում է նրան իր հարդանոցից հարդ գողանալիս (№ 4 Գ). սանամոր խնդրանքով աստված քար է դարձնում նրան, որովհետև քավորը աղբյուրի մոտ տեսել էր նրա բոբիկ ոտները (№ 135). ականատես լինելով քավորի և սանամոր սիրաբանությանը, աստված պատժում է նրանց՝ երկուսին էլ տեղն ու տեղը քար դարձնելով (№ 173). Մայրամ Աստվածածինը փողոցում պատահմամբ հանդիպելով իր կնքահորը (Հովհաննես Մկրտչին) ամոթից թաքնվում է փշատի ծառի տակ (№ 323) և այլն։

Քավորի և սանամոր փոխհարաբերություններին վերաբերող վերոհիշյալ ավանդությունները մեզ տեղափոխում են դեպի հնադարյան ժամանակները։ Նրանք հիշեցնում են հայրիշխանության հասարակական ձևերում գոյացած սովորութական իրավունքի արգելական նորմերից մեկը, արգելք, որը ժամանակին ուղղված է եղել մայրիշխանության պայմաններում տիրապետող ամուսնական խառնակ հարաբերությունների դեմ։ Քավորն այստեղ հանդես է գալիս իբրև տոհմական նահապետի և գերդաստանի ավագի դերը ստանձնած մի անձնավորություն, որը յուրովի մարմնավորում է իր մեջ ոչ միայն նրանց իրավունքները, այլև նրանց վայելած պատիվն ու հարգանքը։ Այդ բանը առանձնապես զգացվել է կանանց մոտ, մասնավորապես հարսների ու սանամայրե-

---

[1] Հ. Մնացականյան, Հնագիտական պեղումներ Սևանի լճի ցամաքած տերիտորիայում, Հայկական ՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր», 1952, № 8, էջ 99—111, նույնի Հնագույն դամբարանադաշտ Ցամաքաբերդ գյուղի մոտ, նույն տեղում, 1954, № 5, էջ 85—94։

Լճի ծագման հետ կապված բանահյուսական ուշագրավ մի վերապրուկ է նաև Սևանի և Նոր-Բայազետի շրջանների բնակչության մեջ տարածված «սև ճանդակը (= անտակը, խանդակը) գնաս» ժողովրդական անեծքը, որի տարբերակները՝ «Սևանա տակը գնաս», «Սևանա տլի տակը գնաս» կամ «սև տլի տակը գնաս» ձևերով գործածվել են՝ Սուրմալուում, Մուշում և այլ վայրերում։ Վերոհիշյալ բոլոր անեծքների իմաստը մոտավորապես նույնն է ինչ և «գրողի ծոցը գնաս», «չիանդամը գնաս» անեծքներինը։ Դրանց մեջ հավանորեն պահպանվել է հեռավոր հիշողությունը երբեմնի այն բնակատեղի, որի մարդիկ անհետացել են երկրի երեսից, երբ լճի ջուրը բարձրանալով՝ նրանց թողել է «Սևանա տակը» կամ «Սև տլի տակը»։

*րի, որոնք հատուկ ակնածանք ու ամոթ են տածել քավորի անձնավորության հանդեպ, խուսափել են նրա աչքին երևալուց, թաքնվել են, երբ հեռվից նկատել են նրան, չեն համարձակվել անցնել նրա տան առջևով և այլն*[1]։

*Ինչ վերաբերում է Հովհաննես Մկրտչի և Մայրամ Աստվածածնի հետ կապված ավանդությանը (№ 323), ապա վերջինս բնորոշ մի օրինակ է քավորի ու սանամոր փոխհարաբերությունը բացահայտող այն ստեղծագործությունների, որոնք ծագած լինելով հեթանոսական դարերում, քրիստոնեական շրջանում որոշ կերպարանափոխություն են կրել և համարվել են նոր ժամանակների մտահայեցությանը*[2]։

*Քիչ ավանդություններ չեն ստեղծվել Հայաստանում նաև կենցաղային այն հարաբերությունների վերաբերյալ, որ ունեցել է հարսը ամուսնու ընտանիքի տարեց ու կրտսեր անդամների, և հատկապես սկեսրայրի ու սկեսուրի նկատմամբ։ Ըստ այդ ավանդությունների՝ նորահարսը ամոթահար է լինում՝ չկարողանալով իրագործել ամուսնու ծնողների առաջարկը կապերտ գործելու, որի համար և ինքնասպան է լինում (№ 913). հարսն ու սկեսուրը չխոսկանության օրենքը խախտելու համար սկեսրայրի անեծքով քար են դառնում (№ 167). իր սրտի ուզածը ուտելու համար «անամոթ» հղի հարսը սկեսրայրի նախատինքով գորտ է դառնում (№ 355). հարսի կողմից չխոսկանության օրենքը խախտելու համար՝ աստված պատժում է մարդկանց, ջրհեղեղ առաջացնելով աշխարհում (№ 789 Դ). սկեսուրին հակաճառելու համար՝ հարսը նրա անեծքով կաքավ է դառնում (№ 362). մազերը սանրելու համար, խմորը հունցելը կիսատ թողած հարսը սկեսուրի նախատինքով դառնում է հոպոպ թռչուն (№ 367). սկեսրոջ պահանջը խոնարհաբար կատարած լինելու համար՝ հարսը թոնիրն ընկնելով տեղն ու տեղը այրվում է (№ 490). համարձակախոսության համար հարսը սկեսուրի անեծքով ծաղիկ է դառնում՝ լեզուն ծոծրակից դուրս եկած (№ 314). սկեսուրը մեր-*

---

[1] Խ. Սամուելյան, *Հին Հայաստանի կուլտուրան, հատ. Ա., էջ 243 և այլն։*

[2] *Քավորի և սանամոր փոխհարաբերությունը բացահայտող ավանդությունների վաղնջական ծագման յուրահատուկ լրացուցիչ ապացույցներ են՝ խոսքի կախարդական զորության և մարդկանց կերպարանափոխ լինելու ընդունակության վերաբերյալ նրանց մեջ արտահայտված հնօրյա հավատալիքները, որոնց ուժով՝ քավորն ու սանամայրը իրենց թույլ տված «անամոթության» համար՝ մի տեղ ասածու անեծքով քար են դառնում (№ 135, 173), մի ուրիշ տեղ՝ աստղերի են վերածվում (№ 4 Գ) և այլն։*

*ժում է մի կտոր միս տալու իր հղի հարսին, որի պատճառով հարսը խնդրում է աստծուն՝ արջ դարձնել իրեն (№ 337Դ) և այլն։*

*Վերը հիշատակված ավանդություններում, քավորի և սանամոր փոխհարաբերությանը վերաբերող նախորդ ավանդությունների նման, իրենց բանահյուսական անդրադարձումն են գտել մայրիշխանությունից հայրիշխանությանն անցնելու ժամանակների սովորութական և իրավական հասկացողությունները, որոնցով արգելակվում և հետապնդվում էին նախկինում գոյություն ունեցող համապատասխան ըմբռնումները։ Այդ արգելքների և հետապնդումների նպատակն էր՝ կանանց մեկուսացումը ընտանիքում, իսպառ վերացումը այն մերձեցման, որ ժամանակին (մայրիշխանության պայմաններում) գոյություն ուներ տղամարդու և կնոջ միջև, իբրև ազգակցական երբեմնի խմբակցությունների (կամ խմբակցական ամուսնության ձևերի) համակենակից անդամներին պատկանող իրավունք։*

*Հասարակական տվյալ երևույթի խոսուն արտահայտությունն են վերը ակնարկված այն ավանդությունները (№ № 167, 355, 789 Դ), ուր դրսևորված է հարսի և սկեսրայրի միջև գոյություն ունեցող չխոսկանության պատնեշը։ Դա ոչ այլ ինչ է, բայց եթե յուրօրինակ մի հակադրություն երբեմնի այն իրավիճակի, երբ կինը, ընդունված սովորույթով, պատկանում էր ոչ միայն իր ամուսնուն, այլև վերջինիս հորը. չխոսկանությամբ խափանվում էր որևէ մերձեցում նրանց միջև։*

*Ինչ վերաբերում է այն ավանդություններին, ուր ակնարկված է հարսի և սկեսուրի միջև գոյություն ունեցող «տաբուն» (№ № 362, 367, 490, 314), ապա այստեղ էլ յուրովի արձագանք է գտել ամուսնացած կնոջ վերապրող պատկանելությունը իր տոհմին, ընդգծումն այն տարբերության, որ գոյություն է ունեցել տվյալ ընտանիքի իսկական անդամների և նրա մեջ նոր մուտք գործած օտար մարդու միջև*[1]*։ Ավելի ուշ, հարսի չխոսկանությամբ արտահայտված վերոհիշյալ «տաբուն», ինչպես այլուր, այնպես էլ մեզանում, ստացել է նոր իմաստավորում՝ դիտվելով իբրև միջոց կասեցնելու երիտասարդ հարսների հնարավոր նկրտումները՝ զավթելու գյուղական ընտանիքի տեր ու տնօրեն հանդիսացող սկեսուրի անսահմանափակ իրավունքները։*

---

[1] *Тейлор*., Этногр. обозрение, հատ. 5, 1890, էջ 3—5, Խ. Սամուելյան, Հին Հայաստանի կուլտուրան, հատ. Ա., էջ 240—249, *Косфен М.*, Этнография и история Кавказа, М., 1961, էջ 88—92։

Հայ ժողովրդի ստեղծած բազմաթիվ ու բազմապիսի կենցաղային ավանդությունների մեջ նշանակալից տեղ են գրավում սիրո և ամուսնության մասին պատմող ստեղծագործությունները։ Այդ ավանդությունների մեջ ցայտուն ձևով դրսևորված է հայ կնոջ իրավազուրկ ու ճնշված վիճակը, որը, ինչպես այլուր, այնպես էլ մեզանում, պատմականորեն սկսվել է մայրիշխանության վերացմամբ և հայրիշխանության հաստատումով։ Հասարակական զարգացման մեջ կատարված վերոհիշյալ շրջադարձը իրավացիորեն բնորոշված է իբրև կանացի սեռի համաշխարհային-պատմական պարտություն, երբ տղամարդն իր ձեռքն է առնում նաև տան ղեկավարությունը, և կինը նվաստացվելով, ստրկացվելով, դառնում է լոկ նրա ցանկությունների ստրկուհին և երեխա ծնելու գործիք[1]։ Կնոջ իրավազուրկ ու ճնշված այդ վիճակը հետզհետե ավելի է խորանում արդեն դասակարգայնորեն ձևավորված հասարակության մեջ։ Այդ պայմաններում կաշկանդվում են ոչ միայն կնոջ, այլև ընդհանրապես մարդու և մասնավորապես, երիտասարդ սերնդի երկսեռ ներկայացուցիչների բնական մղումները, նվիրական զգացմունքները և անհատական կամքի դրսևորման յուրաքանչյուր արտահայտություն, ստիպելով նրանց առաջնորդվելու իրենց շրջապատող միջավայրի պահանջների և ըմբռնումների համեմատ։ Ամենափոքր շեղումն իսկ այդ պահանջներից ու ըմբռնումներից ենթարկվում է դաժան հետապնդության ու պատժի։ Հակառակ նրանց կամքի՝ նրանց ճակատագիրը որոշվում է ուրիշների կողմից, որոնք առաջնորդվում են սիրող սրտերի հոգեկան աշխարհի հետ ոչ մի կապ չունեցող արտաքին այլ և այլ հանգամանքներով։

Ինչպես Արևելյան, այնպես էլ Արևմտյան Հայաստանում ստեղծված բազմաթիվ ավանդություններ վերոհիշյալ իրողության խոսուն ապացույցն են։ Ըստ այդ ավանդությունների, երիտասարդ զույգերի ազատ սիրուն և կնոջ ու տղամարդու միջև կայանալիք ամուսնական դաշինքին մեզանում դարեր շարունակ խանգարել են՝ տղայի ու աղջկա կամ տղամարդու և կնոջ սոցիալական ծագումն ու ընչքային դրությունը։ Բարձր խավերի և ունևոր դասակարգերի ներկայացուցիչները, իբրև կանոն, սեփական հասարակական դիրքին անվայել և իրենց արժանապատվությունից ցածր են համարել սիրային և ամուսնական կապերի մեջ

[1] Տե՛ս Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Երևան, 1940, էջ 69—70։

մանել հասարակ խավերից դուրս եկած մարդկանց հետ։ Իսկ եթե երբեմն, այնուամենայնիվ, նրանց կամքից անկախ նման դեպքեր տեղի են ունեցել իրական կյանքում, ապա նրանք ոչ մի միջոցի առաջ կանգ չեն առել այդ փորձերը խափանելու համար։ Այս առումով բնորոշ են հետևյալ ավանդությունները.

Անի քաղաքի հարավ-արևմտյան կողմում, Ախուրյան գետի ափին գտնվող Աղջկա բերդի մասին պատմում են, որ տեղական իշխանի աղջիկը ժամանակին սիրել է մի հասարակ հովվի։ Ամեն գիշեր, երբ բոլորը քնած են եղել, հովիվը մոտեցել է իշխանի բերդին և երգել է աղջկա համար։ Աղջիկն էլ իր հերթին, պատուհանը բացած, գիշերային հագուստով, լսել է նրան։ Մի անգամ էլ լսելով հովվի գիշերային երգը և սիրահարների երգումի խոսքերը, իշխանը դուրս է եկել իր սենյակից, նախատել աղջկան և արգելել է նրան այլևս հանդիպել հովվին։ Հոր խոսքերի վրա աղջիկը պատուհանից նետվել է Ախուրյան գետը։ Նրա օրինակին հետևել է նաև հովիվը։ Այդ օրվանից էլ իշխանի բերդը կոչվել է Աղջկա բերդ (№ 568)։

Գորիսի շրջանի Խոտ գյուղում եղել է Բեդի անունով մի հարուստ մարդ, որն ունեցել է շատ սիրուն մի աղջիկ։ Սա սիրահարվել է իրենց հովվին։ Բեդին մի օր ականատես է եղել իր աղջկա ու հովվի սիրաբանությանը։ Առանց տատանվելու նա քաշել է խանչալը և տեղն ու տեղը սպանել հովվին։ Բեդու աղջիկը, տեսնելով այդ, իրեն ցած է նետել ժայռից։ Նրան թաղել են ընկած տեղում և գերեզմանի վրա մի ծառ են տնկել, որին գյուղացիք Բեդու ծառ են ասում (№ 828)։

Նոր-Բայազետից դեպի հյուսիս, Աղկալա գյուղի ճանապարհի կողքին կա մի հասարակ շիրմաքար, որին տեղացիները Աղջիկ-տղի քար են ասում։ Ըստ ժողովրդական ավանդության, մի աղքատ ու գեղեցիկ երիտասարդ սիրահարվել է քահանայի աղջկան։ Քահանայի աղջիկն էլ սիրել է աղքատ երիտասարդին։ Իմանալով այդ մասին, քահանան որոշել է ազատվել երիտասարդից։ Կանչել է նրան իր մոտ և ասել. Աղջիկս կտամ քեզ, եթե մի օրում մենակ կարողանաս քաղել իմ մեծ արտը։ Աղքատ երիտասարդը գիշերը սրում է գերանդին և լուսաբացին սկսում է երգելով քաղել քահանայի մեծ արտը։ Երեկոյան դեմ, երբ քիչ է մնում, որ նա վերջանցի իր քաղը, քահանան երիտասարդի մոտ է ուղարկում մի պառավի, որը նրան ասում է. Զուր ես տանջվում, քահանան սպանեց իր աղջկան, որ քեզ չտա։ Լսելով այդ բոթը՝ աղքատ երիտասարդը տեղն ու տեղը մեռնում է։ Քահանայի աղջիկն էլ, իր հեր-

*թին, լսելով երիտասարդի մահը, նետվում է լիճը։ Տղային ու աղջկան թաղում են իրար կողքի և գերեզմանի անունը դնում են Աղջիկ-տղի քար (№ 715Ա)։*

*Երիտասարդ զույգերի ազատ սիրուն և կնոջ ու տղամարդու ամուսնական փոխադարձ դաշինքին, սոցիալ-տնտեսական վերոհիշյալ հանգամանքներից բացի, մեզանում դարեր շարունակ արգելք են հանդիսացել նաև՝ ծնողների կամայականությունները ու նախապաշարումները, հնուց եկող սովորութական իրավունքն ու ադաթը, կենցաղային զանազան հաշիվներ, կրոնի և եկեղեցու կողմից հարուցվող արհեստական մի շարք արգելքներ, այսպես կոչված հասարակական կարծիքի չգրված օրենքի ուժ ունեցող բարոյական կապանքները և այլն։*

*Նմանօրինակ մոտիվներ ունեցող կենցաղային ավանդությունների ցայտուն նմուշներից են հետևյալները.*

*Տղա ու աղջիկ սիրելիս են լինում իրար։ Աղջկա հայրը չի ուզեցել որ նրանք ամուսնանան։ Երկուսով խոսքը մեկ արած գիշերով փախել են։ Հայրն ընկել է աղջկա ետևից և ձորի մեջ բռնելով նրան՝ տեղն ու տեղը սպանել է։ Տեսնելով այդ, տղան ժայռից ցած է նետվել ու մեռել։ Երկուսին էլ թաղել են նույն տեղում։ Այդ օրվանից նզովք է դրվել, որ ամեն անցորդ մի քար գցի ծնողների անունը մրոտող սիրահարների գերեզմանին։ (№ 736)։*

*Հոպոպ թռչունը ժամանակին եղել է մի գեղեցիկ աղջիկ։ Նա սիրահարվել է մի կտրիճ երիտասարդի։ Ծնողները հակառակ իրենց աղջկա կամքին, նրան ամուսնացրել են մի ուրիշի հետ։ Հարսնաքաղնիքի ժամանակ աղջիկը հիշում է սիրած տղային և ինքն իրեն ասում է. «Ա՜խ, երանի թե թռչուն դառնայի, սար ու ձոր ընկնեի և գտնեի սիրածիս»։ Անմիջապես կատարվում է նրա ցանկությունը։ Աղջիկը սանրը գլխին թռչուն է դառնում և դուրս թռչում բաղնիքից։ Ասում են, թե նա մինչև հիմա էլ հառաչելով թափառում է սար ու ձոր և փնտրելով սիրած տղային, կանչում է. «Իպի՛պ... կուկո՛ւ...» (№ 367 Գ)։*

*Թագավորներից մեկն ունենում է շատ սիրուն մի աղջիկ։ Երբ գալիս է սրա ամուսնանալու ժամանակը, հայրն ասում է. Աղջիկս կտամ այն կտրիճին, որը կկարողանա բերել անհանգչելի կրակը։ Շատերն են փորձում կատարելու թագավորի պայմանը, որպեսզի տիրանան նրա աղջկան, սակայն նրանց ջանքերը զուր են անցնում. բոլորն էլ ընկնում են վառվող կրակի մեջ և այրվում։ Ավանդությունն ասում է, թե կրակի*

*շուրջը պտտվող թիթեռները, որոնց Փարվանա են կոչում, Թագավորի աղջկա թիթեռ դարձած փեսացուներն են (№ 379 Բ)։*

*Վայոց ձորի Թանահատ գյուղից մի մարդ սիրահարվում է իր սանամոր քրոջը։ Վերջինիս հետ ամուսնանալու համար նա մի քանի անգամ թույլտվություն է խնդրում տեղի առաջնորդ Ստեփանոս եպիսկոպոսից և ամեն անգամ մերժվում։ Բարկությամբ լցված սիրահարները որոշում են սպանել եպիսկոպոսին։ Տղամարդը գիշերով բարձրանում է նրա բնակարանի կտուրը։ Սակայն, տեսնելով որ եպիսկոպոսը հանգիստ քնած է և բերանից լույս է արձակում, չի համարձակվում նրան ձեռք տալ։ Գալիս է կինը և կտուրից թռկով իջնելով եպիսկոպոսի սենյակը՝ դաշույնը խրում է նրա կուրծքը։ Վիրավոր եպիսկոպոսը քնից վեր թռչելով բացականչում է. «Վա՜յ ձոր, քար մաղվես...»։ Եպիսկոպոսի անեծքով անմիջապես երկրաշարժ է լինում, երկնքից քար է թափվում և կործանում է Մոզ քաղաքը։ Այդ օրվանից էլ գավառը կոչվում է Վայոց ձոր (№ 385)։*

*Աղթամարի կղզու վրա ապրող մի աղջիկ, Թամար անունով, և մի գյուղացի երիտասարդ, Վանա լճի ափին գտնվող մի գյուղից, սիրահարվում են իրար։ Աղջկա ու տղայի միջև կայացված փոխադարձ պայմանի համաձայն, աղջիկը ամեն օր կրակ էր վառում իրենց խրճիթի պատուհանին և երիտասարդը ուղղություն վերցնելով այդ կրակը, լողանալով գիշերը թաքուն անցնում էր Վանա լիճը և հանդիպում էր իր սիրածի հետ։ Նրանց ժամադրությունների մասին իմանում են կղզու բնակիչները։ Ընդունված բարոյական օրենքներին դեմ համարելով տղայի ու աղջկա գաղտնի սիրային հանդիպումները, մի խավար գիշեր նրանք հանգցնում են Թամարի պատուհանի լույսը և հերթական ժամադրության դուրս եկած սիրահար երիտասարդը գիշերվա խավարում կորցնելով իր ուղեցույցը, զոհ է գնում ծովի ալիքներին «Ա՜խ Թամար, ա՜խ Թամար» բացականչելով (№ 223 Բ)։*

*Քիչ ավանդություններ չեն ստեղծվել մեզանում նաև հայ կանանց և աղջիկների նկատմամբ օտարերկրյա նվաճողների գործադրած բռնությունների վերաբերյալ։ Հաճախ է պատահել, երբ պարսից խաները, քուրդ բեգերն ու թուրք փաշաները իմանալով այս կամ այն հայ աղջըկա ու կնոջ արտակարգ գեղեցկության մասին, որոշել են ինչ գնով էլ լինի խլել նրան իր սիրածից կամ ամուսնուց, դարձնել սեփական հարեմի զարդ, տիրանալ առաջին գիշերվա իրավունքին։*

*Հայկական մի շարք ավանդությունների մեջ պատմվում է այն մասին, թե ինչպես հայ երիտասարդը թուրք փաշայի ձեռքից սիրած աղջկանը փրկելու համար կռվի է բռնվում առևանգչի մարդկանց հետ և իր սիրածի հետ միասին զոհվում է անհավասար կռվում, թե ինչպես նրանց թափած արյուն-արցունքից հայոց լեռներում բյուրավոր աղբյուրներ ու առվակներ են գոյանում, որոնք միանալով իրար, կազմում են Արաքս գետը (№ 230 Բ), թե ինչպես պարսից խանի հարեմը չտարվելու համար գեղեցկուհի հայ աղջիկը ինքնասպան է լինում, եկեղեցու գմբեթից ցած նետելով իրեն (№ 696), թե ինչպես իրենց միակ քրոջը քուրդ բեկին չտալու համար, յոթ եղբայրներից ամենափոքրը քրոջ շորերը հագնելով ծպտված ներկայանում է բեկին և հանելով շորերի տակ թաքցրած սուրը՝ մորթում է նրան (№ 548) և այլն։*

*Կենցաղային թեմա ունեցող վերոհիշյալ ավանդությունների հիմքում անկասկած ընկած են եղել համապատասխան իրական-պատմական դեպքեր ու դեմքեր։ Այս առումով առանձնապես բնորոշ է Վայոց ձորի Թանահատ գյուղի սրբահարների հետ կապված ավանդությունը։ Պատմական դեմք է, ամենից առաջ, այստեղ հիշատակվող Ստեփանոս եպիսկոպոսը։ Վերջինս ոչ այլ ոք է, բայց եթե 8-րդ դարի հայ եկեղեցական և մշակութային նշանավոր գործիչ Սյունյաց մետրապոլիտ, «իմաստասեր», «անհաղթ հռետոր», «երանելի և մեծ նահատակ», հայտնի Ստեփանոս եպիսկոպոսը, որի մասին հիշատակում է Օրբելյանը իր Պատմության մեջ*[1]*։*

*Ավանդության նյութ է դարձել հիշյալ Ստեփանոս եպիսկոպոսի անդրդվելի հավատարմությունը ամուսնության վերաբերյալ եկեղեցու սահմանած կանոններին, որին և զոհաբերվում է նրա կյանքը։ Պատմական է, այնուհետև, երկրաշարժի հիշատակությունը, որը վիպական արձագանքն է Վայոց ձորում 735 թ. տեղի ունեցած կործանարար երկրաշարժի, երբ, ինչպես հայտնի է, հիմն ի վեր ավերվում է այս գավառում գտնվող Մոզ քաղաքը և ոչնչանում են նրա հազարավոր բնակիչները*[2]*։*

*Պատմական անձնավորություն է եղել ըստ երևույթին նաև սույն ավանդության մեջ հիշվող կինը կերպարը որովհետև ավանդությունը գրի առնող բանահավաքի վկայությամբ մինչև ներկա դարի սկզբները դեռ*

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, Թիֆլիս, 1911, էջ 131—144։

[2] Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն Հայոց*, Թիֆլիս, 1910, էջ 70։

*Թանահատի վանքում տեղացիները ցույց են տվել ոչ միայն Ստեփանոս եպիսկոպոսի, այլև նրան սպանող և վերջն ապաշխարող այդ կնոջ գերեզմանները*[1]*: Ինչ վերաբերում է «Վայոց ձոր» անվանը տրված բացատրությանը, ապա այն տիպիկ ժողովրդական մի ստուգաբանություն է: Պատմական աղբյուրներից հայտնի է, որ Վայոց ձոր գավառի անունը շատ ավելի հին ծագում ունի, քան Ստեփանոս եպիսկոպոսի ապրած ժամանակը: Հայ պատմիչներից Եղիշեն և Ղազար Փարպեցին իրենց պատմություններում հիշյալ դեպքից մոտ երեք դար առաջ հիշում են այդ անունը*[2]*:*

*Սիրո և ամուսնության հարցերին նվիրված հայկական ավանդությունների ճնշող մեծամասնության սյուժետային հենքն ու ատաղձը կազմում է Հայաստանում դարերի ընթացքում տիրող սոցիալ-տնտեսական և իրավա-քաղաքական իրականության և ազատ սիրո ու ամուսնության մասին ժողովրդական զանգվածների ունեցած ըմբռնման հակադրությունը: Նրանց մեջ պաշտպանվում է հավասար հիմունքների և փոխադարձ համաձայնության վրա խարսխված սերը: Տղան աղջկա սրտին տիրում է ոչ թե դրամի ուժով, ֆիզիկական բռնությամբ, տնտեսական հանգամանքների թելադրանքով, այլ իր մարդկային առաքինություններով: Լինելով ազատ սիրո և ինքնուրույն ընտրության կողմնակիցներ, երիտասարդ զույգերը, բնականաբար, դժգոհում և բողոքում են, երբ ուրիշները խառնվում են իրենց ներքին գործերին, ճնշում գործադրում իրենց վրա: Նրանք ծառս են լինում հաշվով ամուսնության դեմ, արհամարհում են ամեն տեսակ նախապաշարում, չեն ընդունում ծնողների միջամտությունը: Նրանք անզիջում պայքար են մղում սեփական իրավունքների պաշտպանության, իրենց սիրո և անձնական երջանկության համար, աչքի ընկնելով զգացմունքների մաքրությամբ, սիրո հավատարմության և անձնազոհության արտակարգ ուժով:*

*Ավանդություններից շատերը խոսուն օրինակ են ողբերգական այն իրողության, երբ սիրո երջանկության զգացումը մեզանում վեր է ածվել իր հակադրությանը: Ցավով ու կսկիծով վերարտադրելով այդ իրողությունը, ժողովրդական ավանդախոսները փարել են սիրո ռոմանտիկային, հավերժական սիրո գաղափարին: Կյանքում չգտնելով իրենց երազած երջանկությունը, ավանդությունների հերոս երիտասարդ զույ-*

---

1 Ե. Լալայան, *Վայոց ձոր, «Ազգագրական հանդես», գիրք 12, Թիֆլիս, 1905, էջ 250:*

3 Եղիշե, *Վասն Վարդանանց և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 178:*

գերը այդ երջանկությունը գտնում են բարի ու գթառատ բնության մեջ, որին նրանք ձուլվում են կերպարանափոխվելով աղբյուրի, գետի, ծաղիկի, ծառի, թռչունի, և որը պահպանում ու հավերժացնում է սիրո և երջանկության նրանց աննիվ մղումներն ու երազանքները։

Կենցաղային բնույթի հայկական ավանդությունների առանձին մի բաժինն են կազմում ժողովրդական զանազան տոների և վերջիններիս ժամանակ կատարվող ծեսերի ու արարողությունների վերաբերյալ ավանդությունները։ Իրենց ծագումնաբանական արմատներով դրանք կապված են Հայկական լեռնաշխարհի բնակչության հնօրյա հավատալիքների ու պաշտամունքի առարկաների հետ։

Հիշյալ կարգի ավանդությունների բնորոշ օրինակներից են՝ Վարդավառին, Բարեկենդան-Մեռելոցին և Պառավի պասին նվիրված հետևյալ ժողովրդական մանրապատումները.

Ասում են, թե երբ Նոյ նահապետը ջրհեղեղից փրկվելով հասնում է Մասիս լեռան գագաթը և հետո այնտեղից իջնում է Նախիջևան, պատվիրում է որդիներին՝ տարվա այդ օրը միշտ ջուր լցնել իրար վրա, ջրհեղեղի հիշատակը մարդկանց մեջ անմոռաց պահելու համար (№ 915)։

Պատմում են, որ բազմաթիվ հայեր Բարեկենդանի օրը հավաքված մի բաց դաշտում, ուրախ-զվարթ կեր ու խում են անելիս լինում, երբ հանկարծ դիմացից մի ձիավոր սուրբշավ հասնում է նրանց մոտ և գուժում է Վարդան Մամիկոնյանի մահվան բոթը։ Հավաքվածների ուրախությունն անմիջապես սուգի է փոխվում... Եվ այդ օրվանից Բարեկենդանի ուրախության օրը դառնում է մեռելների օր կամ Մեռելոց (№ 916)։

Ասում են, թե մի պառավ ամառվա շոգին պաս է պահել, որ աստված հով եղանակ անի և իր որդին կարողանա հեշտությամբ հնձել իրենց հասած արտը։ Դրա համար էլ ամառվա այդ պասը կոչվում է Պառավի պաս (№ 914)։

Առաջին ավանդությունը վերաբերում է Հայաստանում մեծ տարածում ունեցող Վարդավառ անունով ժողովրդական տոնին, որ կատարվել է ամռան կեսերին (հայոց՝ Նավասարդ կոչված ամսին)։ Այդ տոնը սկզբնապես կապված է եղել ջրի ու պտղաբերության պաշտամունքի անձնավորում Աստղիկ դիցուհու հետ. տոնի ժամանակ մեր հեթանոս նախնիները ջուր են սրսկել իրար վրա, աղավնիներ են բաց թողել, վարդեր և ուրիշ ծաղիկներ են ձոնել Աստղիկին, զոհեր մատուցել նրան։

Նմանողական մոգության այդ արարողությունների նպատակն է եղել ներգործել բնության վրա, ստիպել վերջինիս, հետևելով մարդու օրինակին՝ դաշտերի ու արտերի պտղաբերությունն ապահովելու համար՝ ջուր ցանելու կամ անձրևելու նրանց վրա։ Ավելի ուշ, իր էությամբ բուն հեթանոսական Վարդավառի տոնը քրիստոնեական եկեղեցին փոխարինել է Քրիստոսի պայծառակերպության տոնով, պահպանելով, սակայն, ոչ միայն նրա հին անունը, այլև այն ծեսերն ու արարողությունները, որ կատարվել են նրա ժամանակ, համարեցնելով դրանք (ջուր սրսկելը, աղավնի բաց թողնելը) բիբլիական ջրհեղեղի և Նոյան աղավնու հետ, իսկ Աստղիկ դիցուհուն էլ դարձնելով Նոյի դուստրը՝ կրոնական տեսակետից օրինականացնելու համար նրա հեթանոսական պաշտամունքը[1]։

Երկրորդ ավանդությունը կապված է Բարեկենդան անունով հայտնի ժողովրդական տոնի հետ, որը մեզանում կատարվել է գարնանամուտին (փետրվար-մարտ ամիսներին)։ Լինելով հայոց հնագույն երկրագործական տոներից մեկը, Բարեկենդանը ունեցել է ըստ ամենայնի աշխարհիկ, հեթանոսական բնավորություն։ Այն մի կողմից յուրովի խորհրդանշել է ձմռան ավարտը (ցրտի, սննդամթերքի պաշարների և նեղության օրերի վերջանալը), մյուս կողմից՝ հավաստել բաղձալի գարնան գալուստը, կապված բնության զարթոնքի և բերք ու բարիքի առատանալու բերկրալի հույսերի ու հեռանկարների հետ, որի ժամանակ (Մեծ պասին նախորդող շաբաթվա ընթացքում), մարդիկ տանը թե դրսում սեղան բաց արած, հյուրերի հետ միասին, կեր ու խում և ուրախություն են արել, վայելել ձմռան պաշարի մնացորդները, կազմակերպել զանազան խաղեր ու բեմադրություններ[2]։

Վարդավառի նման, քրիստոնեական եկեղեցին մեզանում որդեգրել է նաև Բարեկենդանի ժողովրդական տոնը։ Ըստ էության պահպանելով վերջինիս աշխարհիկ բնույթը՝ իբրև համաժողովրդական ուրախության մի տոն, նա որոշ կրոնական երանգավորում է տվել այդ տոնին՝ Բարեկենդանի երեքշաբթի և հինգշաբթի օրերը համարելով Մե-

[1] Սամուելյան Խ., Հին Հայաստանի կուլտուրան, հատ. Ա., էջ 181—182, 186, Աբեղյան Մ., «Վիշապներ» կոչված կոթողները, Երևան, 1941, էջ 76 և այլն։

[2] Տե՛ս «Ազգագրական հանդես», Ա. գիրք, 1898, էջ 151—153, Բ. գիրք, 1899, էջ 107, Գ. Լևոնյան, Թատրոնը հին Հայաստանում, Երևան, 1941, էջ 149—155, և այլն։

*ռելոց օրեր, որի ընթացքում նշվել է Ավարայրի ճակատամարտի նահատակների հիշատակը:*

*Երրորդ ավանդությունը ևս կապված է երկրագործական բնավորություն ունեցող մի տոնի հետ, որը Հայաստանի որոշ շրջաններում հայտնի է Պառավի պաս անունով: Ամառվա ամենատաք ժամանակ (հուլիս ամսին) կատարվող այդ տոնի նպատակն է եղել պահեցողության միջոցով անձրև հայցել երկնքից՝ հունձի աշխատանքները բարեհաջող ավարտելու համար:*

*Հեթանոսության ժամանակներից եկող մյուս տոների հետ, հայ եկեղեցին ժառանգել է նաև Պառավի պասը՝ վերակոչելով այն Լուսավորչի պաս անունով*[1]*:*

## ԱՅԼԱԶԳԻ ԲՌՆԱԿԱԼՆԵՐ ԵՎ ՀԱՅՐԵՆԻ ՀԵՐՈՍՆԵՐ ՈՒ ՆԱՀԱՏԱԿՆԵՐ

18. **Հայկական ավանդությունների գլխավոր թեման և հիմնական միտումը:**—*Իր «Հայոց հին գրականության պատմության» առաջին հատորում անդրադառնալով հայոց գրավոր դպրության ընդհանուր միտումին, Մանուկ Աբեղյանը գրել է. «Հայ ժողովրդի վիճակն եղել է գրեթե շարունակ պայքար մղել օտար տերությունների դեմ իր գոյության և իր հոգևոր կյանքի պաշտպանության համար: Եվ մեր պատմության ներքին իմաստը գլխավորապես այդ պայքարի մեջ է.* **դրա արտահայտությունն է եղել ընդհանրապես և մեր գրականությունը»**[2] *(ընդգծումը մերն է—Ա. Ղ.):*

*Մի ուրիշ աշխատության մեջ խոսելով «Սասունցի Դավթի» և մեր բոլոր լավագույն վեպերի գլխավոր թեմայի մասին, գիտնականը հավաստել է, որ վերջիններիս մեջ ևս արտացոլում է գտել մեր պատմության վերոհիշյալ ներքին իմաստը, սկսած ամենահին դարերից: Նա գրել է. «Մեր երկիրը հաճախ, շատ հաճախ ենթակա է եղել հարձակումների. այդ տեսնում ենք մեր վեպերի մեջ: Բայց տեսնում ենք նաև մեր ժողովրդի անընկճելի ձգտումն ու կամքը պաշտպանվելու դրսից հարձակվող թշնամու դեմ և ոչնչացնելու նրան, հակահարված տալու:*

---

[1] Մ. Օրմանյան, *Հայոց եկեղեցին և իր պատմությունը, Կ. Պոլիս, 1912, էջ 168:*

[2] Մ. Աբեղյան, *Երկեր, հատ. Գ, Երևան, 1968, էջ 473:*

*իր հայրենի երկրի կեղեքիչներին և պահպանելու իր անկախությունն ու ազատությունը»*[1]։

*Ազգային մաքառման վերոհիշյալ միտումը, որն Աբեղյանի կողմից իրավացիորեն համարվել է հայ գրականության և ժողովրդական վեպերի էական հատկանիշը, մենք գտնում ենք նաև հայ ժողովրդի ստեղծած բազմաթիվ ու բազմազան ավանդություններում։ Դրանք վերաբերում են ոչ միայն մեր հին, միջնադարյան և նոր շրջանի գրականության ու ժողովրդական վեպերի մեջ արտացոլում գտած ժամանակներին, այլև հայ գրի ու գրականության ստեղծումից շատ առաջ եղած դարերին, երբ հայկական ցեղային առանձին միավորումներն իրենց էթնիկական ինքնությունը հաստատելու, հայկական թագավորություններ հիմնելու, միասնական կենտրոնական պետականություն ստեղծելու և նրա անկախությունը պաշտպանելու համար ստիպված էին գոյամարտելու հին աշխարհի այնպիսի հզոր պետությունների դեմ, ինչպիսիք էին Ասորեստանի, Աքեմենյան Պարսկաստանի, Սելևկյան և Հռոմեական իշխանությունները։*

*Իրենց հուշապատումներում, ավանդություններում և ավանդական զրույցներում հայ ավանդախոսները դարերի ընթացքում պատմել են Հայաստանի բազմաթիվ այլազգի թշնամիների մասին, արձանագրել են նրանց կատարած կոտորածները, ավերն ու ավարը։ Դրա հետ միասին նրանք չեն մոռացել հիշելու նաև հայրենի քաջերի ու նահատակների հերոսական ու անձնազոհ պայքարի մասին, վեր հանելու օտար բռնակալների դեմ նրանց գործած սխրագործությունների առավել աչքի ընկնող դրվագները։*

*Ինչպես հայ գրականության մեջ և ժողովրդական վեպերում, այնպես էլ մեր անգիր ավանդություններից շատերի մեջ, այլազգի բռնակալների դեմ ժողովրդի մղած դարավոր ռազմական պայքարի հետ միասին, բավական ցայտուն արտահայտություն է գտել նաև նույն այդ բռնակալների դեմ նրա մղած հոգևոր-գաղափարական պայքարը։ Այդ եղել է հատկապես այն ժամանակ, երբ ժողովուրդը դժվարացել է պատերազմի դաշտում հաղթահարել թշնամու բազմամբոխ բանակների գերակշիռ ուժերը։ Նման դեպքերում ամեն ինչ ընաջնջող արյունարբու թշնամու ավերիչ սրին հայ ժողովուրդը հակադրել է իր ստեղծարար,*

[1] Մ. Աբեղյան, *Երկեր*, հատ. Ա., Երևան, 1967, էջ 551 («Մատենագրություն», «Սասունցի Դավիթ» հայ ժողովրդական վեպի մասին)։

շինարար ու խաղաղասեր ոգին, դիմել գերբնական ու հրաշալի այնպիսի ուժերի օգնությանը, ինչպիսիք են աստված, Քրիստոս, սրբերն ու խաչը։

**19. Հայկի ու Բելի և Արայի ու Շամիրամի ավանդությունները։**— Այս ավանդությունների մեջ բանահյուսական արձագանք են գտել մի կողմից այն պարբերական արշավանքները, որ գործել են ասորա-բաբելական աշխարհակալները 9—6-րդ դարերում (մեր թվականությունից առաջ) Հայաստանի հնագույն ցեղերի, մասնավորապես ուրարտացիների դեմ՝ նրանց երկիրը նվաճելու, ժողովրդին կողոպտելու ու հարկի տակ դնելու նպատակով, մյուս կողմից այն համառ ու անզիջում պայքարը, որ մղել են նույն այդ ուրարտական ցեղերն ու նրանց առաջնորդները ասորա-բաբելական նվաճողների դեմ, վանելով նրանց իրենց երկրից։

Ըստ այդ ավանդությունների.

Դյուցազն Հայկը չկամենալով ենթարկվել բռնակալ հսկա Բելի իշխանությանը, թողնում է Բաբելոնը և իր ժողովրդի հետ գալիս բնակություն է հաստատում Արարատյան երկրում։ Լսելով այդ մասին Բելը պատգամավոր է ուղարկում Հայկի մոտ և առաջարկում է նրան վերադառնալ ու հնազանդվել իրեն։ Հայկը մերժում է Բելի առաջարկը։ Բելը պատերազմի է ելնում նրա դեմ և չարաչար պարտություն է մատնվում Հայկի կողմից (№ 390)։

Բելին հաղթելուց հետո Հայկն իր մարդկանց մի մասի հետ գալիս է մի բարձրավանդակ լեռնադաշտ և այստեղ մի գյուղ է հիմնում, որը նրա անունով կոչվում է Հայկաշեն (№ 513)։

Հայկի անունով են կոչվում Վասպուրականի Հայոց Ձոր գավառը, Հայկաբերդ ամրոցը, Հայկավանք գյուղը, նրա անունից են սերում հայ և Հայաստան անունները (№ № 48, 390, 514)։

Հայկի աղջիկների և տղաների անունով են կոչվում հայկական ամիսները (Նավասարդ, հոռի, սահմի, մահեկի, արեգ, մարերի, տրե, արաց, հրոտից (№ 899)։

Բելի անունն են կրում Հայոց Ձոր գավառի Խարատենց գյուղը, ուր Հայկն իր նիզակով խարառում է Բելի կուրծքը (№ 515Ա)։

Հայոց Ձոր գավառի Հայկաբերդ ամրոցից ոչ հեռու գտնվող Դեռ լեռան գագաթին Հայկը հրամայում է դնել Բելի նեռահար մարմինը, որպեսզի բոլորը կարողանան դիտել նրան (№ 48)։

*Բելու գյուղում Հայկի կարգադրությամբ թաղում են Բելի դիակը (№ 515Ա)։*

*Բելի (=Նեբրովթ) անունով է կոչվում Վասպուրականի Դատվան գյուղի ճանապարհին գտնվող Նեմրութ լեռը, որը գոյացել է այն ժամանակ, երբ Բել-Նեմրութը ամբարտավանանալով կամեցել է մրցել աստծու հետ. այդ նպատակով նա կարգադրել է ուղտերով հող կրել և նրանից բլուր կազմել, որտեղից ինքը կարողանա կռվել աստծու հետ. աստված պատժել է Բել-Նեմրութին՝ թողնելով նրան իր իսկ ստեղծած բլուրի տակին, իսկ նրա ուղտերին էլ քար է դարձրել (№ 194 Ա—Դ) և այլն։*

*Ասորեստանի Շամիրամ թագուհին լսելով Արայի գեղեցկության համբավը, պատգամավորներ է ուղարկում Հայաստան և առաջարկում է նրան ամուսնանալ իր հետ և համատեղ թագավորել Ասորեստանում, կամ էլ՝ կատարել իր ցանկությունը և նոր վերադառնալ հայրենիք։ Մերժում ստանալով Արայից, զայրացած Շամիրամը մեծ զորքով պատերազմի է ելնում նրա դեմ։ Մարտի դաշտում Արան սպանվում է։ Նրա զինվորների ցասումը մեղմելու համար Շամիրամը իր հոմանիներից մեկին զարդարելով, լուր է տարածում, թե աստվածներն Արայի դիակը լիզելով կենդանացրել են նրան[1]։*

*Արա Գեղեցիկի և Շամիրամի հետ է կապված Վան քաղաքի հյուսիսային կողմում գտնվող Լեզք գյուղի անունը, ուր չաստվածները Շամիրամի կարգադրությամբ լիզելով զոհված Արայի դիակը կենդանացրել են նրան (№ 516Ա)։*

*Շամիրամի հետ է կապված Վասպուրականի Արտամետ գյուղի մոտ գտնվող Ծամքար անունով հսկայական քարաժայռը, որը մազերի մեջ դնելով Շամիրամը նետել է իր կին լինելու գաղտնիքը բացող Ներքինու ետևից (№ 188Բ), և Վարագա սարի տակից բխող Գայլ գետը, որը նրա կարգադրությամբ խցվել է բամբակով ու քարով, որովհետև այնտեղ լողանալիս խեղդվել է Շամիրամի որդին (№ 232 Գ)։*

*Արայի ու Շամիրամի անունների հետ են կապված Գեղամա լեռան արևմտյան ստորոտին գտնվող Շամիրամ բլուրը, ուր բանակ է դրել Արա Գեղեցիկի դեմ պատերազմելու եկած Շամիրամ թագուհու զորքը (№ 75), Կոտայքի (=Աբովյան) շրջանում գտնվող Արայի լեռը, որի ստորոտին իր զորքերով ժամանակին կռվել է Արա Գեղեցիկը Շամիրամի բանակի դեմ (№ 12), Արզնի գյուղը, որտեղ Շամիրամի զինվորները*

[1] **Մ. Խորենացի**, *Պատմություն հայոց, Տփխիս, 1913, էջ 48—50։*

*իրենց թագուհու հրամանով զննել են սպանվածների դիակները՝ Արայի դիակը գտնելու համար (№ 430) և այլն։*

*Իրենց ծագման նախնական արմատներով ինչպես Հայկի ու Բելի, այնպես էլ Արա Գեղեցիկի ու Շամիրամի ավանդությունները սկզբնապես եղել են դիցաբանական ստեղծագործություններ*[1]*։ Դրա պերճախոս ապացույցներն են՝ Հայկ անունով համաստեղության գոյության փաստը մեզանում, որը հիշեցնում է հունական Օրիոնին, Արայի՝ հայոց գարնան, բուսականության, մեռնող ու հարություն առնող բնության, Բելի՝ սեմական ազգերի երկնքի ու լույսի, իսկ Շամիրամի էլ՝ ասորեստանցոց սիրո ու ռազմի աստվածություններ լինելու հանգամանքը*[2]*։*

*Ունենալով դիցաբանական արմատներ, սակայն, երկու ավանդություններն էլ մեզանում ստացել են շատ որոշակի պատմական գունավորում, արտացոլելով հայ ժողովրդի պատմության վաղնջական դարերի ռազմա-քաղաքական կարևոր իրադարձությունները։*

*Հայկի ու Բելի մասին պատմող ավանդությունների մեջ, օրինակ, հայ ժողովրդի պատմության հնագույն շրջանով զբաղվող հայ և այլազգի նորագույն գիտնականների զգալի մասը իրավացիորեն տեսնում է մի կողմից հայ ցեղի Հայաստան մտնելու և աստիճանաբար այնտեղ տեղավորվելու հիշողությունը, մյուս կողմից՝ ասորեստանյան նվաճողների դեմ Հայաստանի նախաբնիկ ուրարտական ցեղերի մղած պատերազմների հիշողությունը։ Այդ ավանդությունները, նրանց կարծիքով, ուրարտացիների նյութական ու հոգևոր մշակույթի մի շարք ուրիշ հուշարձանների հետ, անցել են նրանց անմիջական ժառանգորդ հայ ժողովրդին և յուրացվել ու ազգայնացվել վերջինիս կողմից*[3]*։*

---

[1] *Այդ է, ըստ երևույթին, պատճառը, որ իրենց ժանրային նկարագրով տիպիկ ստուգաբանական-բացատրական այդ ավանդությունները մեր հին ու նոր բանագետների մեծ մասի կողմից դասվել են դիցաբանական առասպելների շարքում։*

[2] *Հմմտ.* Մ. Աբեղյան, *Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց պատմության մեջ, Վաղարշապատ, 1900, էջ 523—524։ Նույն հեղինակի, Երկեր, հատ. Ա., Երևան, 1966, էջ 39, 42, 63—68։* Գ. Ղափանցյան, *Արա Գեղեցիկի պաշտամունքը, Երևան, 1945, էջ 164 և այլն։*

[3] *Տե՛ս Kevork Aslan,* Etudes historiques, Paris, 1928, էջ 170, Մ. Աբեղյան, Երկեր, հատ. Գ., էջ 33, *Я. А. Манандян,* О некоторых спорных проблемах истории и географии древней Армении, Ереван, 1956, էջ 145—155, *Б. Б. Пиотровский,* Ванское царство, Москва, 1959, էջ 123—124։

*Ինչ վերաբերում է Արա Գեղեցիկի ու Շամիրամի ավանդությանը, ապա նույն այդ գիտնականները նրա մեջ դիտել են այն պայքարի արձագանքները, որ մղել են ուրարտական ցեղերը մեր թվականությունից առաջ 9—6-րդ դարերում իրենց երկիրը նվաճելու փորձեր անող ասորա-բաբելական հզոր պետության դեմ։ Պատահական չէ այն հանգամանքը, որ հայ ավանդախոսները Շամիրամ թագուհու անվան հետ են կապել Արևմտյան և Արևելյան Հայաստանի և հատկապես Վասպուրականի մի շարք վայրեր, առարկաներ ու հուշարձաններ։ Պատմական և հնագիտական համապատասխան հետազոտություններով հաստատվում է, որ Շամիրամը իրական անձնավորություն է։ Նա եղել է ասորեստանյան Շամսի-Ադադ թագավորի (825—811 թ. մ. թ. ա.) կինը և Ադադնիրարի թագավորի (811—783 թ. մ. թ. ա.) մայրը։ Վերջինիս անչափահասության պատճառով, նա հինգ տարի կառավարել է պետությունը և ընդհանրապես աչքի ընկնող դերը է ունեցել Ասորեստանի պալատական ու քաղաքական կյանքում։ Շամիրամի կեսրայրը, ամուսինը, որդին անդադար պատերազմներ էին մղում մի կողմից նոր ապարեզ եկած ուժեղ մեդական թագավորության, իսկ մյուս կողմից՝ ուրարտացիների դեմ, Մենուա և Իշպուինի թագավորների օրոք։ Ահա այս հանգամանքներում էլ Շամիրամի անձնավորությունը ավանդությունների նյութ է դարձել մեդացիների մեջ։ Վերջիններից էլ, ամենայն հավանականությամբ, այդ ավանդությունները անցել են հայերին, որոնք այդ շրջանում գտնվում էին մեդերի իշխանության տակ և ապա, երբ առաջ խաղալով աստիճանաբար գրավեցին ուրարտացիների երկիրը, իրենց հետ բերին նաև հիշյալ ավանդությունները։ Այստեղ տեսնելով մի կողմից բազմաթիվ հոյակապ ու վիթխարի կառույցներ, իսկ մյուս կողմից էլ՝ այն գերիշխող դերը, որ ուներ ուրարտացիների մոտ ընդհանրապես կինը՝ պաշտամունքի, կենցաղի ու հասարակական կյանքում, նրանք, մտապատկերների զուգորդմամբ, այդ բոլորը կապել են Շամիրամ թագուհու անվան հետ*[1]։

**20. Ծապուհ Վարազի, Մուշեղ ու Վարդան Մամիկոնյանների, Շահ-Աբասի և այլոց ավանդությունները։**—*Այս ավանդությունների մեջ բանահյուսական արտացոլում են գտել մի կողմից այն հաճախակի*

---

[1] *C. Lehman-Haupt*, Armenien einst und Jetzt, I, *էջ 253—265*, *Б. А. Тураев*, История древного Востока, *հատ. 2, 1938, էջ 44,* **Ն. Ադոնց**, *Հին հայոց աշխարհայացքը, տե՛ս «Պատմական ուսումնասիրություններ», Պարիս, 1948, էջ 243։*

կրկնվող զինված հարձակումներն ու ճնշումը, որ գործադրել են պարսկական բռնակալները 4—5-րդ և հետագա դարերում Հայաստանի ու նրա առանձին գավառների (Տարոն, Սյունիք) վրա՝ վերջիններս գրավելու, ժողովրդին հպատակ ու հարկատու դարձնելու, դավանափոխ անելու, լեզուն փոխելու նպատակով, մյուս կողմից՝ պաշտպանական ու ազատագրական այն համառ ու տևական հերոսամարտերը, որ մղել է հայ ժողովուրդը իր հայրենանվեր ու անկուն թագավորների ու զորավարների առաջնորդությամբ պարսից բռնակալների դեմ, հանուն իր անկախության և ազգային ինքնուրույնության ու ազատության։

Ըստ այդ ավանդությունների.

Սահակ Պարթևը կործանել է տալիս Ուշտունյաց գավառի գյուղերից մեկում գտնվող պարսկական ատրուշանը, որը հիմնել էին Հազկերտ արքայի ուղարկած մոգերը։ Ատրուշանի մոխրից գոյացած բլուրի վրա հետագայում հիմնվում է Մոխրաբերդ անունով հայկական գյուղը (№ 521)։

Պարսից Շապուհ Վարազ արքան չկարողանալով հաղթել հայոց Տիրան թագավորին, հաշտություն կնքելու պատրվակով Դալարիս գյուղում շղթայում և շիկացած ածուխով կուրացնել է տալիս նրա աչքերը։ Դրանից հետո Դալարիսը կոչում են Ածուղ անունով (№ 530)։

Շապուհ արքան հաշտություն կնքելու պատրվակով իր մոտ է հրավիրում հայոց Արշակ թագավորին Վասակ Սպարապետի հետ, և տեսնելով, որ երկուսն էլ անհողդողդ են իրենց համոզմունքների մեջ, առաջինին շղթայակապ է անել տալիս և բանտարկում է Անհուշ բերդում, իսկ երկրորդին էլ մորթազերծ անել տալով և մորթի մեջ խոտ լցնելով, ուղարկում է բանտարկված Արշակ թագավորի մոտ (№ № 747, 748)։

Երբ Շապուհ արքան մեծ զորքով հարձակվում է Հայաստանի վրա, նրա դեմ դուրս է գալիս Վասակ Սպարապետի որդի Մուշեղ Մամիկոնյանը և մեծ ջարդ է տալիս պարսից զորքերին։ Շապուհ արքան ձին նստած փախուստի է դիմում և մի կերպ ազատում է գլուխը։ Մուշեղի զորքերը գրավում են պարսից արքայի բոլոր գանձերը, գերում նրա կանանց։ Հոր վրեժն առնելու համար Մուշեղը ձերբակալում և մորթազերծ է անում 600 հոգի պարսից ավագանուց, բայց և միաժամանակ մեծահոգաբար հետ է վերադարձնում Շապուհի կանանց։ Ազդված Մուշեղի այդ քայլից, Շապուհ արքան իր գինու գավաթի վրա նկարել է

*տալիս Մուշեղին սպիտակ ձիու վրա և ամեն անգամ, ուրախության ժամին, ձեռքն առնելով գավաթը, ասում է «ճերմակաձին գինի արբցէ»*[1]*։*

*Երբ պարսիկները մեծ զորքով լցվում են Հայաստան, Մուշեղն իր փոքրաթիվ մարդկանցով, մի քանի գյուղերի նախիրների անասունների պոչերին բոցավառ ջահեր ամրացնելով, գիշերով հարձակվում է թշնամու վրա և խուճապի է մատնում նրան։ Դրանից հետո Տարոնի գավառը Մուշեղի անունով կոչվում է Մուշ (№ 395)։*

*Խոյից դեպի հարավ, Սալմաստի սահմանի մոտ գտնվող բլուրների մասին ասում են, թե Վարդան Մամիկոնյանը այս բլուրների վրա կանգնած հրամաններ է արձակել Տզմուտ գետի ափին պարսից բանակների դեմ կռվող իր զորքերին։ Բլուրները Կարմիր են կոչվում, որովհետև ներկված են Վարդանի քաջերի արյունով (№ 80)։*

*Այդ բլուրներից մեկի վրա կա մի մատուռ, որ կրում է Վարդան զորավար անունը։ Տեղացիների ասելով մատուռը կառուցվել է այն վայրում, ուր պարսիկների դեմ կռվելիս ընկել է Վարդան Մամիկոնյանը (№ 658)։*

*Հին Նախիջևանի Աստապատ գյուղը այն վայրն է, ուր բերվել, պատանքվել (ասա է պատ) և թաղվել են Ավարայրի դաշտում ընկած Վարդան զորավարի ու նրա զինվորների դիակները (№ 435)։*

*Լոռու շրջանի Թեղուտ գյուղի հանդամասում գտնվող Նահատակի խաչքարի մասին ասում են, թե այն կառուցված է Վարդան Մամիկոնյանի հիշատակին, որովհետև նա ժամանակին իջևանել է այստեղ, երբ իր զորքով օգնության է գնացել աղվաններին՝ պարսիկների դեմ նրանց մղած պատերազմում (№ 843)։*

*Վարդան Մամիկոնյանը ժողովելով իր զորքը, գնում է Մասիս սարի փեշը Լանգ-Թեմուրի դեմ պատերազմելու։ Երեք օր կռվելուց հետո, նա կոտորում է Թեմուրի զորքը։ Բայց հանկարծ ամպում է և աղեղի կամարը կապվում է երկնքում։ Հրեշտակը հրամայում է Վարդանին վերջ տալ արյունահեղությանը։ Վարդանը սուրը տեղն է դնում... Հետո նա պատահում է մի մեծ քարի, որը փակում է նրա ճանապարհը։ Սուրը դուրս քաշելով Վարդանը խփում է քարին, քարափը բաժանվում է երկու մասի և ճանապարհը բացվում է նրա առաջ...*[2]*։*

---

1 Փ. Բուզանդ, *Պատմություն հայոց, Թիֆլիս, 1913, էջ 282—284։*

2 *Տե՛ս «Մշակ», 1881, № 52։*

Շահ-Աբասն իր ծպտյալ շրջագայություններից մեկի ժամանակ հանդիպում է մի հայ գեղջկուհու և խնդրում է նրան ի սեր շահի մի հավ վաճառել իրեն։ Գեղջկուհին չիմանալով, թե ով է իր հետ խոսողը, հայտնում է, որ շահի սերը չի կարող իրեն կաշառել, քանի որ նեղությունից, զրկանքից և հայրենի երկրից տեղահանվելուց բացի, իրենք նրանից ոչ մի լավ բան չեն տեսել (№ 760Բ)։

Շահ-Աբասը մի անգամ տեսնելով դաշտային աշխատանքից տուն դարձող երկայնամորուս հայ քահանային, ստիպում է նրան հավատափոխ լինել։ Քահանան հրաժարվում է կատարել շահի կամքը։ Գազազած Շահ-Աբասը ձեռքին եղած կացնի հարվածով գետին է տապալում նրան և կարգադրում է անմիջապես թլփատել[1]։

Երբ Շահ-Աբասը գալիս է Տաթև, մարդ է ուղարկում, որ գնան Մեծ անապատից իր համար կույս բերեն։ Շահի համար ընտրված կույսը ճանապարհին ինքն իրեն նետում է ձորը և տեղն ու տեղը քար է դառնում (№ 147)։

Շահ-Աբասի կողմից տեղահան եղած և գերեվարված հայերը, երբ հասնում են Թավրիզի մոտերը, հրաժարվում են այլևս առաջ շարժվել և ասում են. «Օղում չենք»։ Մնալով այդ վայրում նրանք իրենց համար գյուղ են հիմնում, որը և կոչվում է Օղումչի անունով (№ 502), և այլն։

Պարսից բռնակալների դեմ հայ ժողովրդի մղած դարավոր պատերազմների մասին պատմող ավանդությունների զգալի մասը պատմական համապատասխան ատաղձ ունեցող հուշապատումներ են։ Նրանց մեջ հանդես եկող Շապուհ Վարազի կամ Շապուհ թագավորի նախատիպը ոչ այլ ոք է, բայց եթե 4-րդ դարի պարսից Սասանյան հարստության ներկայացուցիչ Շապուհ 2-րդը, որը հայ մատենագրության մեջ հիշատակվում է իբրև Շապուհ Երկայնակյաց և հայտնի է Հայաստանի նկատմամբ իր ունեցած աշխարհակալական ոտնձգություններով։

Փավստոս Բուզանդն իր Պատմության մեջ բավական մանրամասն նկարագրել է այն հալածանքն ու արյունահեղությունը, ավերն ու ավարը, որ կատարվել է մեր երկրում նրա օրոք։ Բերենք միայն մի քանի դրվագ այդ նկարագրություններից. «Յայնմ ժամանակի թագաւորն Պարսից Շապուհ ժողովեաց զզօրս իւր անթիւ և անհամար իբրև զաւազ առ ափն ծովու և փիղս բազումս, զի ոչ գոյր նոցա թիւ... Եւ հրաման տայր թագաւորն զօրացն ընդ երիս տեղիս խաղալ, մտանել, արշաւել

[1] Առաքել Դավրիժեցի, Պատմություն, Վաղարշապատ, 1884, էջ 124։

յաշխարհն Հայոց։ ...Ապա լցան, սփռեցան, ծաւալեցան ընդ ամենայն երկիրն Հայոց, աւար առնուլ, քանդել, աւերել զերկիրն ամենայն Հայոց աշխարհին։ ...Այրացաւեր առնէին, և զանթիւ մարդիկ արկանէին ի սուր սուսերի իւրեանց, զկայանս և զմանկտի հանէին ընդ ցից սայլից ...Եւ զարանց բազմութիւնս տային ի կոխումն փղաց ...զերութիւն վարէին և զբազում ամուրս քանդէին և զբերդս աւերէին զամուրս...»[1]։

Հայոց Տիրան թագավորի աչքերը կուրացնելու, Արշակ թագավորին դավադրաբար բանտարկել տալու վիպական պատումների մեջ անդրադարձում են գտել ոչ միայն Շապուհ 2-րդի, այլև սրա նախորդ ու հետնորդ պարսից մի քանի բռնակալների (Շապուհ 1-ին, Խոսրով, Հազկերտ, Պերոզ) աշխարհակալական նկրտումներն ու գործած չարիքները, որոնք հար և նման են եղել Շապուհ 2-րդի արարքներին։

Պատմական անձնավորություն է հայկական ավանդությունների մեջ հանդես եկող Մուշեղը։ Դա ոչ այլ ոք է, քան Մամիկոնյան համանուն նշանավոր զորավարը, Վասակ Սպարապետի հարազատ որդին։ Նրա կատարած քաջագործությունների նկարագրությունների մեջ արձագանք են գտել համապատասխան իրական-պատմական դեպքեր ու դեմքեր, կապված պարսից նվաճողների դեմ 4-րդ դարում հայերի մղած հայտնի ազատագրական պատերազմների և Մամիկոնյանների ապրած վայրերի հետ։ Անցնելով տարիների ու դարերի բովով և մշակվելով ժողովրդի ստեղծագործական երևակայության մեջ, բուն պատմական դեպքերն ու դեմքերն այստեղ միախառնվել են վիպական մոտիվների հետ, հանդես եկել ժամանակագրական ու այլ կարգի խախտումներով և շփոթություններով։ Բնորոշ է այս տեսակետից նախիրի անասունների պոզերին ամրացված բոցավառ ջահերով թշնամու դեմ Մուշեղի կատարած գիշերային գրոհի ավանդությունը, որը Հովհան Մամիկոնյանի Պատմության մեջ պատմված է Մուշեղի թոռան՝ պայպի պես քաջ ու հնարամիտ Սմբատ զորավարի մասին, և որոշ փոփոխություններով, ժողովրդի կողմից վերագրվել է Մուշեղին[2]։

---

[1] Փ. Բուզանդ, Պատմութիւն հայոց, Թիֆլիս, 1913, էջ 212, 219, 228 և այլն։

[2] Ըստ Հովհան Մամիկոնյանի՝ Պարսից Վախթանգ զորավարը 20.000 զորքով գալիս է Հայաստան։ Նա առաջարկում է Սմբատին հնազանդվել և հարկ վճարել իրեն։ Սմբատը փոքրաթիվ զորքով կռվի է դուրս գալիս Վախթանգի դեմ։ Պարսիկները շրջապատում են հայերին։ Սմբատը ուզում է գիշերով մարտի դուրս գալ նրանց դեմ։ Քահանաները խորհուրդ չեն տալիս։ Սակայն Սմբատը, չլսելով նրանց, բոցավառ ջահը ձեռքին հարձակվում է թշնամու վրա։ Լույսը կուրացնում է պարսից զինվորների աչքերը.

*Ե՛վ Մուշեղի, և՛ Սմբատի պատմությունների մեջ պարսից զորքերին խուճապահար անողը գիշերվա լույսն է. երկու դեպքում էլ պարսիկների ջախջախման վայրերը կոչում են կատարված դեպքի տեղի անունով (Մուշեղի պատմության մեջ՝ Ցխաու—ցխալ. սպանվել, սպառվել, ոչընչանալ. Սմբատի պատմության մեջ՝ Թիլ—հողաբլուր, հողակույտ)։ Տարբերությունն այն է, որ առաջին դեպքում Մուշեղը բոցավառ պողերով նախիրն է բաց թողնում պարսիկների վրա, երկրորդ դեպքում՝ Սմբատը ինքն է ջահը ձեռքին հարձակվում թշնամու վրա։*

*Պատմական դեմք է հայկական ավանդությունների մեջ հանդես եկող Վարդան Զորավարը։ Դա Մամիկոնյան քաջարի տոհմի ամենակարկառուն ներկայացուցիչներից մեկն է, նույն ինքը Վարդան Մամիկոնյանը, որին, իբրև իր սիրեցյալ հերոսի, հայ ժողովուրդը մկրտել է Կարմիր Վարդան խոսուն անունով։ Վարդան Մամիկոնյանին նվիրված ավանդություններին մեջ կես իրական, կես վիպական գույներով պատկերված են մահու և կենաց այն հերոսամարտերը, որ մղել է հայ ժողովուրդը 5-րդ և 6-րդ դարերում հանուն իր անկախության ու ազատության, Հայաստանը զավթելու և նրա ժողովրդին կողոպտելու, սարկացնելու և դավանափոխ անելու փորձեր անող պարսից նվաճողների դեմ։*

*Այդ հերոսամարտերից առաջինը 451 թվականին պարսից լծի դեմ հայ ժողովրդի բարձրացրած զինված մեծ ապստամբությունն է և նույն այդ թվականին Պարսկաստանի սահմանամերձ Արտազ գավառի Ավարայր գյուղի դաշտում, Տղմուտ գետի մոտ հայ-պարսկական զորքերի միջև տեղի ունեցած այն արյունահեղ պատերազմը, որը նրա գլխավոր հերոս Վարդան Մամիկոնյանի անունով հայտնի է իբրև Վարդանանց պատերազմ։*

*Ճիշտ է, այդ պատերազմի ժամանակ, չնայած իր ցույց տված ուժեղ դիմադրությանը, հայ ժողովուրդը ի վիճակի չեղավ պարտության մատնելու թշնամու գերակշիռ ուժերին և մարտի դաշտում հերոսի մահով ընկան թե՛ ինքը Վարդան Մամիկոնյանը և թե նրա շատ զինակիցներն ու*

---

*նրանք կարծում են, թե այդ լույսը մարդու մազերից է ճառագում։ Խուճապահար փախուստի են մատնվում։ Մթության մեջ իրար չջոկելով, պարսիկներն սկսում են կոտորել իրենց առաջապահ զինվորներին։ Տեսնելով այդ, Սմբատը քաջալերում է իր մարտիկներին և նրանց գլուխն անցած ջարդում թշնամուն։ Ավանդությունն ասում է. «Եւ այնչափ կոտորեցին զնոսա, մինչև հեղեղատք արեան ելանէին, որ և Թիլ կոչեցաւ անուն տեղւոյն այնօրիկ»։*

զինվորները, բայց հայերի ապստամբությունը՝ քաղաքական ու բարոյական մեծ դաս հանդիսացավ պարսից բռնակալների համար։

Երկրորդ հերոսամարտը 571 թ. հայտնի ապստամբությունն էր, տեղի ունեցած պարսից Խոսրով Անուշիրվան թագավորի ժամանակ։ Մի ապստամբություն, որի կազմակերպիչն ու ղեկավարը դարձյալ Մամիկոնյան տոհմից էր, նույնպես Վարդան անունով։ Առաջինի համեմատությամբ այս երկրորդ ապստամբության առանձնահատկությունն այն է, որ այն ավարտվեց հայերի փայլուն հաղթանակով։ Երկրորդ կամ կրտսեր Վարդան Մամիկոնյանը 10.000-անոց իր բանակով գրավեց Դվինը և փախուստի մատնեց պարսից մարզպանին։ Ապստամբությունից հետո Հայաստանի մեծ մասը անջատվեց Պարսկաստանից և ձեռք բերեց անկախություն։

Իբրև հայ ժողովրդի համար բախտորոշ նշանակություն ունեցող պատերազմներ, հիշյալ հերոսամարտերը, ինչպես նշվեց վերևում, մեծ տպավորություն են գործել թե ժամանակակիցների, և թե հաջորդ սերունդների վրա, առատ նյութ տվել բազմաթիվ ժողովրդական ավանդությունների ու զրույցների համար։

Վերջիններիս մեջ 451 և 571 թվերի պատմական դեպքերը հաճախ խառնվել են իրար՝ այդ դեպքերի ունեցած մի շարք ընդհանրությունների պատճառով։ Խառնվել ու միաձուլվել են իրար նաև հիշյալ դեպքերի գլխավոր գործող անձինք՝ երկու Վարդաններն՝ իրենց անվան ու կատարած դերի նմանության պատճառով։ Առաջին կամ Կարմիր Վարդանին փառաբանող դրամատիկ բնույթի պատումները հյուսվել են կրտսեր կամ երկրորդ Վարդանի հաղթական ապստամբությունը վեր հանող ժողովրդական պատումներին, լավատեսական ու հերոսական շունչ հաղորդելով առաջիններին։

Գալով ժողովրդական այն ավանդությանը, որտեղ Վարդանը պարսիկների փոխարեն կռվում է Լենկ-Թեմուրի հետ և հաղթում նրան, ապա դա էլ տիպիկ վիպական մի անաքրոնիզմ լինելով հանդերձ, միաժամանակ ունի և իր բանական ու տրամաբանական պատճառներն ու բացատրությունը։

Լենկ-Թեմուրի բարբարոս արշավանքների ժամանակ ապրելով ծանր ու տագնապալի վիճակ և իրականության մեջ դժվարանալով դիմագրավել վտանգավոր ու կատաղի թշնամուն, ժողովուրդն իր ավանդություններում մեջ նրա դեմ դուրս է բերել ազատագրական մարտերի մեջ փորձ-

ված իր հին, սիրելի ու հերոսական Վարդան Զորավարին, նրա միջոցով ջախջախել տալով Լենկ-Թեմուրին։

Պատմական դեմք է հայկական ավանդությունների մեջ հանդես եկող Շահ-Աբաս թագավորը։ Դա Պարսկաստանի համանուն հայտնի բռնակալ արքան է, որը ապրել ու գործել է 17-րդ դարում և որը Պարսկաստանի ռազմա-քաղաքական ու տնտեսական շահերի համար հայ ժողովրդի հաշվին իր վարած կործանարար քաղաքականությամբ (հայերի բռնի տեղահանությունը դեպի Պարսկաստան, նրանց անխնա հարստահարությունը, հավատափոխ անելու փորձերը և այլն) պակաս բացասական դեր չի խաղացել Հայաստանի ճակատագրի մեջ, քան իր հեռավոր ու մոտավոր ախրահոչակ մյուս նախորդները (Տապուհ, Հազկերտ և այլն)։

Ահա թե ինչ է պատմում դեպքերին ականատես հայ պատմիչ Առաքել Դավրիժեցին 1604 թվին Շահ-Աբասի կազմակերպած՝ Արարատյան դաշտի և Հայաստանի մյուս վայրերի շուրջ 350.000 հայության բռնի տեղահանության վերաբերյալ. «Եւ զօրապետացն՝ յետ ընդունելոյ զայսպիսի զաշխարհակործան և զսաստիկ հրաման ի թագաւորէն, ...իբրև զչոլիրս բազմութեան հօտից և անդէոց զառաջեաւ արարեալ՝ բռնութեամբ վարեալ՝ ածեալ, բերեալ հասուցին ի գաւառն Արարատու, և զլայնանիստ դաշտ նորա լցին ծագէ ի ծագ ...Եւ այնուհետև ...կարի սաստիկ տագնապաւ նեղէին զժողովուրդն, զոմանս մահու հարուածով գանելով, և զոմանց զունչս զգլուխն կտրեալ ի ձող ցցէին... զի փութանակի անցցեն զգետն... Իսկ ողորմելի ժողովրդեանն հայէին յառաջ զանհուն գետն տեսանէին իբրև գծով՝ որ խեղդէր, և յետուստ զսուրն Պարսից՝ որ սպանանէր, և ճարակ փախչելոյ ոչ գտանիւր. և առ հասարակ աղիողորմ ողբս, և յորդ արտասուս յաչաց հեղեալ անէին երկրորդ Երասխ... Եւ անմարդաբնակ արար միահաղոյն զամենայի և զյուրթի աշխարհս Հայոց։ Վասն զի ի քշելն զերկիրս՝ ոչ թէ զմի կամ զերկու գաւառս վարեաց ի Պարսկաստան, այլ զբազումս։ Եւ սկսեալ ի սահմանացն Նախչուանու և անցեալ ընդ Եղեգնաձոր, առ եզերբ Գեղամայ, և Լոռւոյ, և զՀամզաչիման գաւառն, զԱպարան, զՇարապխանէն, զՇիրակուան, զՁարիշատ, և մանինչ ի գեղօրէիցն Կարսա, և զձորն Կաղզվանու բնաւին, և բովանդակ զերկիրն Ալաշկերտու, և զգեղօրայսն Մակուայ, և զերկիրն Աղբակու, և զՍալմաստու, և զխոյա, և զՈրմի, և որ ինչ պանդուխտք և զարիպականք մնացեալք էին ի քաղաքն և ի գեղօրայսն Թարվիզու, զդաշտն Արարատու բովանդակ, և զԵրևան քաղաք, զերկիրն Կրխբուլաղա, զՏաղկունաց ձոր, զԳառնու ձորն, զԱրծաձորն։ Եւ յառաջ քան զայս՝ զգաւառն Կարնոյ, և

*զԲասենու, և զԽնուսայ, և զՄանազկերտու, և զԱրծկէոյ, և զԱրճշոյ, և զԲերկրու, և զՎանա, ամարով և դերութեամբ բերեալ էին յԵրևան և ընդ սոսա քշեցին և տարան»*[1]։

*Խնդրո առարկա հայկական ավանդությունների մեջ, որոնք հիմնականում պատմվել են Պարսկաստանի հայաբնակ շրջաններում, ինչպես նաև Հայաստանի այն գավառներում ու վայրերում, որոնք մոտ ու հարևան են եղել Պարսկաստանին, ճշմարտացի անդրադարձում են գտել այն ծանր հետևանքները, որ ունեցել է Շահ-Աբասի վերոհիշյալ քաղաքականությունը հայ ժողովրդի ֆիզիկական, հոգեկան և նյութա-տնտեսական կյանքի համար։*

**21. Ուլիանոս թագավորի, Վասիլ զորավարի, Օհան Օձնեցու, Պետրոս կաթողիկոսի և այլոց ավանդությունները։**—*Այս ավանդությունների մեջ բանահյուսական համապատասխան անդրադարձում են գտել մի կողմից այն հայահալած քաղաքականությունը և տեսակ-տեսակ դավերն ու խարդավանքները, որ պարսից բռնակալներին զուգընթաց, կիրառել են Հայաստանի նկատմամբ բյուզանդական կամ Արևելա-հռոմեական ենդ ու ամարդի կայսրերն ու նրանց կամակատար պաշտոնյաները 5—7-րդ և հետագա դարերում, մյուս կողմից մահու և կենաց այն անձնազոհ ու հերոսական պայքարը, որ մղել է հայ ժողովուրդը իր հայրենանվեր թագավորների և քաջարի զորավարների գլխավորությամբ այդ կայսրերի ու վերջիններիս կամակատար պաշտոնյաների դեմ, հանուն իր քաղաքական, իրավական, տնտեսական, կուլտուրական և կրոնական ազատության ու անկախության։*

*Նշենք մի քանի օրինակ.*

*Հունաց Ուլիանոս թագավորը նեղվելով իր թշնամի պարսից (ղզլբաշ) թագավորից, դիմում է հայոց թագավորին՝ օգնություն խնդրելով նրանից։ Սա ուղարկում է իր զորքերը Սարգիս անունով զորավարի գլխավորությամբ, որոնք մեծ քաջություններ գործելով, հալածում են ղզլբաշներին։ Հունաց թագավորը վախենալով, որ Սարգիսը մի օր էլ իրեն կարող է նեղել, ուզում է դավադրաբար սպանել տալ նրան։ Մի հելլենուհի այդ մասին զգուշացնում է Սարգսին, որը ձիու գավակն առնելով իր ազատարարին, նրա հետ Հունաստանից գալիս է Հայաստան (№ 809Գ)։*

*Հունաց Վասիլ զորավարը մեծ զորքով հարձակվելով Հայաստանի վրա գրավում է այն։ Օհան Օձնեցին պատժելու համար Վասիլին՝ մի սաս-*

---

[1] Առաքել Դավրիժեցի, *Պատմութիւն, Վաղարշապատ, 1884, էջ 28—32 և այլն։*

տիկ ցավ է զգում նրա մարմնի մեջ։ Վասիլին հայտնում են, որ իրեն կարող է բուժել միայն Օձնեցին։ Գոռոզ Վասիլը ստիպված է լինում դիմելու նրա օգնությանը։ Օձնեցին մի գրված թուղթ է տալիս նրան և պատվիրում է, որ նա ջրով կուլ տա այդ թուղթը։ Վասիլը կատարում է Օձնեցու պատվերը և բուժվում է ցավից։ Ի հատուցումն իր ապաքինման, Վասիլը կարգադրում է զորքերին հեռանալ Հայաստանից, իսկ ինքն էլ առանձնանալով հայկական մի վանքում (Ս. Նշան), սկսում է ճգնել (№ 281)։

Հույները անասելի նեղություններ են պատճառում Պոլսում ապրող հայերին։ Մի այրի հայ կին հիվանդ երեխայի համար հաց է խնդրում հույն հարևաններից։ Սրանք մի կտոր հաց տալու համար առաջարկում են նրան կենակցել իրենց հետ։ Կինը գանգատվում է Օձնեցուն։ Սա հրաշագործությամբ հաց է հանում դատարկ պահարանից և բավարարում է հիվանդ երեխայի մոր խնդիրքը (№ 773Բ)։

Տրապիզոնում նստող հոռոմոց թագավորի մոտ գովաբանում են մի հայ երիտասարդի ｉրև հիանալի լողորդի։ Թագավորն առաջարկում է հայ երիտասարդին իր աղջկանը, պայմանով, որ նա լողալով հասնի մինչև Պոլիս։ Երիտասարդը կատարում է հոռոմոց թագավորի պայմանը, սակայն վերջինս դրժում է իր խոստումը և նենգորեն խեղդել է տալիս նրան ծովում (№ 762)։

Հոռոմները դավադրաբար սպանում են հայոց Գագիկ թագավորին։ Ռուբեն անունով մի երիտասարդ ուխտում է վրիժառու լինել հոռոմներից իրենց թագավորի սպանության համար։ Երբ նա հասակ է առնում և գալիս է Կիլիկիայի կողմերը, այստեղ հանդիպում է մի հույն եպիսկոպոսի։ Հավատարիմ իր ուխտին, նա ճաշի ժամանակ, հարմար առիթ որսալով, խեղդամահ է անում հույն եպիսկոպոսին և կամաց-կամաց տիրելով Կիլիկիային, այստեղ հիմնում է իր իշխանությունը, որը նրա անունով կոչվում է Ռուբինյանց իշխանություն (№ 864)։

Հայ քաջ զորավար Սմբատ Բագրատունին, հույների դեմ կռվելիս. մատնությամբ շղթայակապ է արվում և բերվում է Բյուզանդիա։ Պոլսի պալատական ծերակույտը վճռում է նրան մերկանդամ նետել ի կեր կրկեսի գազաններին։ Սակայն իր ամրակուռ բազուկներով Սմբատը սպանում է արջին, խեղում է ցուլին և խեղդամահ է անում կատաղի առյուծին։ Կրկեսի բյուրավոր հանդիսականների պահանջով հայ դյուցազնին ներում է շնորհվում[1]։

---

[1] Սեբեոս, Պատմություն, Երևան, 1939, էջ 55 և հտվ.։

Տրապիզոն քաղաքում ջրի օրհնության օրը հույները հայոց Պետրոս հայրապետին իր ժողովրդի հետ կանգնեցնում են ջրի հոսանքի վերևում, իսկ իրենք կանգնում են ներքևում, որպեսզի Պետրոսի օրհնությունը խափանվի։ Նրանք առաջուց սովորեցրել էին մի սպիտակ աղավնու, որ սա հույների օրհնության ժամանակ գա, իջնի ջրի մեջ և հետո նորից վերանա՝ իբրև սուրբ հոգի։ Սակայն Պետրոս հայրապետի ջերմեռանդ աղոթքով գետի ջուրը դեպի վեր է բարձրանում, իսկ երբ հույների վարժեցրած աղավնին գալիս է ջրին խառնվելու, հանկարծ հայոց լեռներից մի արծիվ է հայտնվում և վերցնելով աղավնուն, թռչում է։ Այս հրաշքները տեսնելով հույները ամոթով են մնում և ակամա սկսում են գովել հայոց հավատը։ Այդ օրվանից Պետրոս հայրապետին կոչում են Պետրոս Գետադարձ (№ 816), և այլն։

Բյուզանդական բռնակալների դեմ հայ ժողովրդի մղած ազատագրական պայքարի շուրջը հյուսված ավանդությունները պատմական և վիպա-առասպելական մոտիվների յուրահատուկ խառնուրդ-համաձուլվածքներ են։

Պատմական որոշակի հիմքեր ունի այն պատմությունը, ըստ որի հունաց Ուլիանոս թագավորը փորձում է դավադրաբար շարքից հանել իրեն օգնության հասած հայոց քաջարի Սարգիս զորավարին, վերջինիս Հունաստանին սպառնող հնարավոր վտանգը կանխելու համար։ Դա մեր կարծիքով, յուրահատուկ վիպական արձագանքն է Բյուզանդական Հուստինիանոս կայսեր կողմից 529 թվականին արձակված այն հատուկ հրովարտակի, որով նա միտում էր վերացնել հայ նախարարների սեփական զորք ունենալու ժառանգական իրավունքը, դրանով իսկ նպատակ ունենալով ոչնչացնելու նրանց ռազմական ինքնուրույնությունը։ Ինչ վերաբերում է Հուստինիանոս անվան Ուլիանոսով փոխարինվելու փաստին, ապա այդ շփոթության պատճառը հավանորեն այն վատ համբավն է, որ ունեցել են հիշյալ երկու պատմական դեմքերը հայ ժողովրդի մտաշխարհում[1], մասամբ էլ թերևս նրանց անուններում առկա հնչյունական որոշ ընդհանրությունները (Հուստինիանոս—Ուլիանոս)։

---

[1] Ուլիանոսը 4-րդ դարի հռոմեացի այն պատմական դեմքն է, որը հեթանոսությունը վերականգնելու փորձերի համար քրիստոնեական եկեղեցու կողմից արժանացել է «Ուրացող» մականվանը և որի հիշողությունը իբրև վատահամբավ մի անձնավորության մինչև անցյալ դարի վերջերը պահպանվել էր հայ ժողովրդի մեջ (հատկապես Բարձր Հայքի բնակիչների մոտ) «Ջար Ուլիանոս» ձևով։

Պատմական հիմքի վրա է խարսխված Հունաց Վասիլ զորավարի մեծ զորքով Հայաստանի վրա հարձակվելու և Օհան Օձնեցու կողմից հրաշագործությամբ նրան խեղճացնելու ու ծունկի բերելու պատմությունը։ Դա ամենայն հավանականությամբ այլափոխված արձագանքն է Հունաց համանուն կայսեր (Վասիլ Բ) հայերի նկատմամբ կիրառած ռազմական ագրեսիայի, որի հետևանքով 1022, 1045 թթ. նրան հաջողվում է մեկը մյուսի ետևից զավթելու Հայաստանի մի շարք գավառները (Վասպուրական, Տայք, Վանանդ, Շիրակ)։

Պատմական հիմքեր ունի հոռոմների կողմից դավադրաբար Հայոց Գագիկ թագավորին սպանելու և Ռուբեն անունով մի հայ երիտասարդի Գագիկի վրեժն առնելու նպատակով Կիլիկիայում գտնվող հույն եպիսկոպոսին խեղդամահ անելու պատմությունը։ Դա անկասկած մի հիշողություն է Գագիկ Բ. թագավորի մերձավորներից Կիլիկիայի հայոց Ռուբեն Ա. թագավորի բյուզանդացիների դեմ մղած պայքարի, որի հետևանքով նրան հաջողվում է բյուզանդացիներին դուրս մղել Լեռնային Կիլիկիայի մի մասից և 1080 թ. այնտեղ հռչակել անկախ իշխանություն։

Պատմական համապատասխան առաղձ ունի հույների դեմ Սմբատ Բագրատունու վարած կռվի և շղթայակապ վիճակում Բյուզանդիա բերվելու պատմությունը։ Դա ոչ այլ ինչ է, բայց եթե բանահյուսական հիշողությունը համանուն հայ նշանավոր զորավարի ու քաղաքական գործչի կողմից բյուզանդական հայակործան քաղաքականության դեմ գլխավորած հայտնի զինված ապստամբության։ Մի ապստամբություն, որը տեղի է ունեցել 6-րդ դարի վերջերին, երբ Մորիկ կայսեր կարգադրությամբ նա իր հեծյալ գնդով ուղարկվում է Թրակիա՝ Բալկանյան թերակղզում ավարների դեմ կռվելու համար և երբ մատնության ու դավաճանության հետևանքով, ապստամբության մյուս յոթ ղեկավարների հետ, նրան ևս ձերբակալում և շղթայակապ վիճակում բերում են Բյուզանդիա։

Պատմական որոշակի առաղձից զուրկ չէ նաև Գետադարձ կոչված Պետրոս կաթողիկոսի մասին արված պատմությունը։ Վերջինիս մեջ այլափոխված ձևով արձագանք են գտել կրոնական այն հալածանքները, որ կիրառվել է բյուզանդական կայսրերի կողմից հայերի նկատմամբ (հայ եկեղեցու մասնատումը Դվինի Մայր կաթողիկոսարանի և հայ քաղկեդոնական կաթողիկոսական աթոռների միջև և այլն)։

Քննության առարկա ավանդությունների մեջ վերարտադրված իրական-պատմական դեպքերի ու դեմքերի վերահիշյալ հիշողությունները,

*ինչպես ուրիշ դեպքերում, այնպես էլ այստեղ, սերտորեն կապված ու զուգորդված են ավանդախոսների ստեղծագործական երևակայության ծնունդ զանազան արտասովոր ու հնարածին պատմությունների հետ։ Այդ պատմությունների մեջ հայազգի գործիչներն ու հերոսները հանդես են գալիս իբրև գերբնական շնորհքի և ուժի տեր անձնավորություններ։ Իրենց այդ հատկություններով նրանք հակադրվում և հաճախ հաղթում են թվով անհամեմատ ավելի շատ ու առավել զորեղ թշնամիներին։ Ստեղծելով արտասովոր ու հնարածին այդ պատմությունները, հայ ավանդախոսները նպատակ են ունեցել հոգեպես ու բարոյապես զորացնել իրենց ունկնդիրներին, թուլացնել ու չեզոքացնել այն ծանր ու ճնշիչ տպավորությունը, որ կարող էին թողնել նրանց վրա բյուզանդական խարդախ ու նենգ բռնակալների կողմից Հայաստանում կատարված արյունահեղությունների ու ավերի ճշմարտացի պատմությունները։*

*Այսպես.*

*Մեծ զորքով Հայաստան մտած հունաց Վասիլ զորավարին իր հրաշագործ ուժով չարաչար պատժում է հայոց Օհան Օձնեցի կաթողիկոսը։ Նա նախ մի սոսկալի ցավ է զգում Վասիլի մարմինը և ապա մի գրած թուղթ տալով նրան առաջարկում է ջրով խմել։ Վասիլը կատարում է Օձնեցու առաջարկը և անմիջապես առողջանում է։ Ի հատուցումն իր բուժման Վասիլը Հայաստանից դուրս է բերում իր զորքերը։*

*Մի ուրիշ անգամ նույն Օձնեցի կաթողիկոսը հրաշագործությամբ հաց է դնում դատարկ պահարանը և այն տալիս է այրի հայ կնոջը հիվանդ երեխային տանելու համար, որին անգթորեն մերժել էին հաց տալ նրա հույն հարևանները։*

*Քաջարի հայ զորավար Սմբատ Բագրատունին մերկ բազուկներով հրաշքով ոչնչացնում է կրկեսում գտնվող արջին, ցուլին և առյուծին, որոնց ի կեր էին նետել նրան Հունական ծերակույտի որոշմամբ։*

*Պետրոս կաթողիկոսի հրաշագործությամբ գետը փոխում է իր ընթացքը, իսկ Հայաստանի լեռներից եկած արծիվն էլ կուլ է տալիս հայերի դեմ սարքված դավադրության համար հույների կողմից բաց թողնված վարժեցված աղավնուն և այլն։*

**22. Բաղդատի խալիֆի, Սասունցի Դավթի, Աշոտ Երկաթի և այլոց ավանդությունները։**—*Այս ավանդությունները խոսուն վավերականներ են ռազմական այն գործողությունների, որ իրականացրել է արաբական խալիֆաթը 7—10-րդ դարերում Արևելյան և Արևմտյան Հայաստանը նվաճելու և այն իրեն հպատակ ու հարկատու երկիր դարձնելու նպա-*

տակով, և պաշտպանական ու ազատագրական այն կռիվների և զինված ապստամբությունների, որ մղել ու իրականացրել է հայ ժողովուրդը իր անվանի զորավարների և շարքային քաջորդիների գլխավորությամբ՝ խալիֆաթի բազմամբոխ բանակների և նրա կողմից պարբերաբար Հայաստան գործուղվող բազմաթիվ ոստիկանների ու հարկահավաքների դեմ։

Ըստ այդ ավանդությունների.

Վանա լճի ափին, Խլաթի հին քաղաքատեղի մոտ գտնվող գերեզմանները կոչվում են Սասունցի Դավթի թշնամիների գերեզմաններ։ Այդտեղ թաղված են արաբների դեմ Դավթի մղած կռվի ժամանակ սպանված զինվորների դիակները (№ 738)։

Հալեպ քաղաքի մոտ բարձր բլրի վրա գտնվող բերդը կոչվում է Սասունցի Դավթի բերդ։ Այն շինել է ինքը Դավիթը՝ ամեն օր Քուռկիկ Ջալալին նստած առավոտյան Սասունից մի ակնթարթում գալով այստեղ և երեկոյան նորից հետ վերադառնալով։ Բերդի պարսպից դուրսանի շղթայով կախված հսկայական կուռը՝ Դավթի գուրզն է (№ 583)։

Սասնա գավառում գտնվող Ճախրական գյուղն իր անունը ստացել է այն ժամանակ, երբ Սասունցի Դավիթը Կողբադնի ձեռքից ազատելով իբրև հարկ գանձված սասունցի կանանց ու աղջիկներին, այստեղ նրանց համար պատրաստել է տալիս բազմաթիվ ճախարակներ, որպեսզի նրանք ճախարակագործությամբ զբաղվեն (№ 546)։

Տաթևի վանքի հարավային կողմում, Որոտան գետի ափին գտնվող հսկայական ժայռի մասին պատմում են, թե Շահանդուխտ անունով մի հայուհի հարս գնալիս այստեղ ենթարկվել է իսմայելացի հրոսակների հարձակմանը։ Թշնամու ձեռքը չընկնելու համար նա ժայռի կատարից իրեն ձիով նետել է ձորը և անվնաս իջել է Որոտանի ափը։ Այդ դեպքից հետո ժայռը նրա անունով կոչվել է Շահանդուխտի քերծ (№ 17)։

Արաբները Հայաստան գալով կողոպտում են Զանգեզուրում գտնըվող Շաղատի վանքը և նրա սրբություններն ու հարստությունը թաղում մի գաղտնի տեղում և վրան հող լցնելով դարձնում են մի մեծ բլուր։ Ժամանակ անց, երբ որսորդները այս կողմերում հետապնդելիս են լինում մի եղնիկի, եղնիկի ոտը խրվում է հիշյալ բլուրի մեջ, և նա բռնըվում է որսորդների կողմից։ Սրանք կասկածելով քանդում են բլուրը, գտնում Շաղատի վանքի թաքցված գանձերը և տեղափոխում են Տաթև-

վի վանքը։ Դրանից հետո Շաղատի վանքի ավերակների մոտ գտնվող բլուրը կոչվում է Եղնիկի բլուր (№ 78)։

Շամշադինի Չինար գյուղի բերդում ժամանակին արաբների կողմից պաշարված է լինում Աշոտ Երկաթն իր զինվորներով և գյուղի բնակիչներով։ Պաշարվածների միջից մի աղջիկ իր երկար հյուսերի մեջ ահագին քարեր դնելով բերդի պարիսպներից դրանք նետում է թշնամու վրա։ Արաբները խուճապի մատնվելով փախուստի են դիմում։ Դրանից հետո բերդի անունը դնում են Աղջկա քար (№ 165)։

Երբ արաբները հարձակվում են Շամշադինի շրջանի վրա, Աշոտ Երկաթն իր փոքրաթիվ զորքով ամրանալով այստեղ գտնվող Տավուշ բերդում, ուժեղ դիմադրություն է ցույց տալիս թշնամուն։ Չկարողանալով ուժով գրավել բերդը, արաբները կտրում են նրա ջուրը, որպեսզի դրանով ստիպեն բերդականներին անձնատուր լինելու։ Թշնամու ձեռքը չընկնելու համար Աշոտ Երկաթը վերցնելով իր քաջերին, մութ գիշերով թաքուն դուրս է գալիս բերդից և տեղափոխվում է Սևանի կղզին (№ 564)։

Օհան Օձնեցին Բաղդատի խալիֆին (Հեշմ ամիրային) ցույց է տալիս իր սրբությունն ու հրաշագործ շնորհքը։ Ազդվելով դրանից խալիֆը ընդառաջում է Օձնեցու խնդիրքին և նրան պահանջված քանակով օգնական զորք է տալիս։ Խալիֆի տված զորքով Օձնեցին վռնդում է Հայաստանից՝ այստեղ գտնվող բյուզանդական վերակացուին ու զինվորներին (№ 773Գ և Դ) և այլն։

Հիշյալ ավանդությունների մեջ վերարտադրված գլխավոր դեպքերն ու դեմքերը հիմնականում հավաստվում ու հաստատվում են այդ դեպքերին ու դեմքերին ականատես ու ժամանակակից հայ և արաբացի պատմիչների գրավոր վկայություններով։

Խոսելով արաբական խալիֆաթի տիրապետության շրջանում Հայաստանում կատարված գազանությունների և կեղեքումների մասին, 8-րդ դարի հայ պատմիչ Ղևոնդը գրում է. «Զայն ժամանակս ի հրամանատարութեան Եզիտի և յիշխանութեանն Աբդլայի միսոյ, յոյժ ծանրացաւ անուր լծոյ հարկապահանջութեան ի վերայ աշխարհիս Հայոց... համօրէն զբոլոր երկիրս Հայոց արկանէր ընդ անհանդուրժելի վտարանդիւք. զի վախճանեաց զգիւտ արծաթոյ ի յերկրէս, և ամենայն ոք տալով զպաճարանս ընչից իւրեանց՝ ոչ գտանէին զգինս փրկանաց անձին իւրեանց, և չար կտտանօք, կեղարանօք և կախաղանօք և դառն տանջանօք կեղէին զկեանս մարդկան։ Յորմէ փախստեայ եղեալ բա-

զումք յայրս և ի փապարս երկրի՝ զօղեալ թագչէին. և ոմանք ձիւնահեղձ և գետավէժ լինէին վասն անտանելի աղետիցն. զի ոչ էր գիտ զոր հայցէինն, գտանել պահանջումն սակի արծաթոյն, այլ ըստ գլխոյ արանց. որովք թափուր մնացեալք յամենայն ստացուածոց՝ կապէին կապանօք տնանկութեան երկիրս Հայոց, և առհասարակ ճաշակէին ի հնոցէ աղքատութեան»[1]։

Մի ուրիշ հայ պատմիչ՝ Հովհաննես կաթողիկոսը, խոսելով արաբ արյունարբու ոստիկան Բուղայի ձեռքով Սասունի ավերման և Բագրատունի Դավթի ու Խութեցի Հովնանի գերության մասին, ի միջի այլոց գրում է. «Իբրև զկայծակն փայլակնահար զաշխարհն արարեալ... ապատակ զզօրս իւր սփռէ ընդ ծործորս ի լերինն Տաւրոսի և երեսս Գաւառին (Սասնոյ)։ Եւ նախ զընակեալսն ի խոխոմն լերինն՝ զօրս ըմբռնէինն՝ տապաստ երկրի տայրն անողորմ սրով. իսկ զԳաւառին հեծելազունդն զզուեհիկս զոմանս սրոյ ճարակ տայրն, և զայլս ձերբակալս արարեալ առ բռնաւորն հասուցանէրն տոռամբք զնոսա քարշեալ, իսկ ղանձնազեղս և զերեսաւորս և զգունեանս արտաքոյ այլոցն տրոհեալ վասն անօրէն յօրէնս իւրեանց դարձուցանելոյ ըստ ամիրապետին հրամանի և զայլս ևս մնացականս առ ի նոցանէ հրամայէր սրով վատնել»[2]։

Նույն բանը Բուղան կատարում է նաև Հայաստանի մյուս գավառներում։

Ահա և դեպքերին ժամանակակից ու մասնակից արաբ պատմիչ Ահմեդ Բալաձորիի (9-րդ դար) վկայությունները արաբ ոստիկանների Հայաստանում գործած ավերի ու ավարի և հայ ժողովրդի նրանց դեմ կազմակերպված զինված ընդվզումների վերաբերյալ. «Երբ փոխարքայի կողմից այս երկիրն (Հայաստան) էր գալիս որևէ ոստիկան, նրան պատրիկները (նախարարները) աշխատում էին անտեսել։ Եթե նրանք նկատում էին, որ ոստիկանն անկաշառ է ու խիստ և իր տրամադրության տակ ունի ռազմական ուժ և հանդերձանք, նրանք մուծում էին հարկերն ու հայտնում իրենց հնազանդությունը, հակառակ դեպքում նրանք աշխատում էին գրպարտել նրան և արհամարհանքով վերաբերվել նրան»։

---

[1] Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի հայոց, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 135—13։

[2] Հովհ. կաթողիկոս, Պատմութիւն հայոց, Թիֆլիս, 1912, էջ 119։

*Մի այլ տեղ կարդում ենք. «...Մուտավաքիլը՝ հավատացյալների տերը (847—861 թթ.) իր խալիֆայության երկրորդ տարին նշանակեց Հայաստանի կառավարիչ Յուսուֆ իբն Մուհամեդ Յուսուֆ ալ-Մերվզիին (մերվեցի), որը գալով Խլաթ՝ ձերբակալեց նրա պատրիկ Բագարատին, Աշոտի որդուն, և ուղարկեց նրան Սուրրա-մինրայ (=Սամառա, ամիրապետի նիստը)։*

*Դրանով նա դժգոհություն առաջացրեց պատրիկների, ազատների և ապստամբների (խռովարարների) շրջանում։ (Այդ դեռ քիչ էր), նրա գավառական կառավարիչներից մեկը՝ ալ-Ալլա իբն Ահմադ անունով գնաց մի վանք Սասունում, որ հայտնի էր Աքթահ վանք անունով, որը Հայաստանի քրիստոնյաները մեծապես հարգում էին և որին բերում էին շատ նվերներ, գրավեց այն ամենը, ինչ որ այնտեղ կար և վիրավորանքներ հասցրեց նրա բնակիչներին (միաբաններին)։ Դրանով նա պատրիկների մեջ առաջ բերեց ծայր աստիճան զայրույթ և գրգռություն, և նրանք սկսեցին թղթակցել իրար հետ և հրահրել իրար ապստամբելու և անկախանալու։ Հենց նրանք էլ դրդեցին խութեցիներին,—դրանք (գյուղացի) մշակներ են, որոնք հայտնի են Արթան անունով,—ապստամբելու Յուսուֆի դեմ և գրգռեցին նրանց նրա դեմ այն բանի համար, որ նա (Յուսուֆը) ուղարկեց նրանց պատրիկին (Սամառա)։*

*Ինչպես պատրիկները, այնպես էլ բոլոր խռովարարները խութեցիներին օգնելու համար ձիավոր և հետևակ մարդիկ ուղարկեցին, և նրանք հարձակվեցին նրա (Յուսուֆի) վրա Տարոնում այն ժամանակ, երբ նա իր մարդկանց ցրել էր գյուղերում, սպանեցին նրան և գրավեցին այն ամենը, ինչ որ կար նրա ճամբարում»[1]։*

*Քննության առարկա ավանդությունների մեջ պատմական հիմքեր ունի Սասունցի Դավթի թշնամիների գերեզմանների հիշատակությունը, որոնք գտնվում են Խլաթի հին քաղաքատեղի մոտ։ Այդ հիշատակությունը ամենայն հավանականությամբ արձագանք է Յուսուֆ ոստիկանի կողմից Խլաթ քաղաքում Բագարատ Բագրատունու ձերբակալության առնչությամբ արաբների դեմ հայերի զինված ապստամբության և վերջինիս ժամանակ թշնամու կրած զոհերի։*

---

[1] *Баладзори*, «Книга завоевания стран», текст и перевод с арабского проф. П. К. Жузе, Баку, 1927, *էջ 21—22։ Օգտվում ենք «Սասնա ծռեր»-ի Ա. հատորի ներածության մեջ բերված հայերեն թարգմանությունից, Երևան, 1936, էջ 17—19։*

Պատմական հիմքեր ունի Հալեբ քաղաքում Սասունցի Դավթի կողմից կառուցվող և նրա անունը կրող բերդի հիշատակությունը։ Կասկածից վեր է, որ այդ հիշատակությունը արձագանք է տնտեսական, քաղաքական ու ռազմական այն հարաբերությունների, որ ունեցել են ժամանակին Սասունի բնակիչները Եգիպտոսի (= Մսրա) հետ՝ էյուբյան կամ էտլյան հարստության շրջանում (1169—1250 թթ.), որի իշխանության մեջ է եղել նաև Հալեբ քաղաքը[1]։

Պատմական հիշողություն է Դավթի կողմից սասունցի կանանց ու աղջիկներին Կոզբադնի ձեռից փրկելու փաստը, որոնց վերջինս իբրև հարկ գանձել էր Սասունից։ Այդ հիշատակությունը համընկնում է արաբ պատմիչ Բալաձորիի հաղորդած այն տեղեկությանը, ըստ որի արաբները իրենց նվաճած երկրներից, այդ թվում նաև Սասունից, բացի նյութական բարիքներից, իբրև հարկ պահանջել են նաև որոշ թվով «սևահեր, սևահոն, երկար արտևանունքներով և բարձրահասակ» աղջիկներ ու պատանիներ[2]։

Պատմական հիշողություն է սյունեցի Շահանդուխտի՝ թշնամիների ձեռքը չընկնելու համար հսկայական ժայռից ձորը նետվելու պատմությունը։ Ստեփանոս Օրբելյանի վկայությամբ հար և նման մի դեպք ժամանակին նույն վայրում կատարվել է գահերեց իշխան Վարազ Տրդատի դուստր գեղանի Շահանդուխտի հետ, որը Բաղաց երկիրը հարսնանալու գնալիս ենթարկվել է իսմայելացի հրոսակների հարձակմանը և իր պատիվը փրկելու համար ձիու վրա նստած ժայռից դեպի անդունդը է նետվել[3]։

Պատմական հիշողություններ են Շամշադինի շրջանում գտնվող Աղջկա քար և Տավուշ բերդերից Աշոտ Երկաթի արաբական զորքերի դեմ մղած կռիվների պատմությունները։ Այդ պատմությունները հիշեցնում են տվյալ վայրերում և հատկապես Սևանի ավազանում 914—922 թթ. անվանի հայ զորավարի և նրա համեմատաբար փոքրաթիվ զորքերի արաբ Բեշիր զորավարի մեծ բանակի դեմ մղած անհավասար մարտերը։

Պատմական հիշողություն է նաև Բաղդատի խալիֆից (Հեշմ ամիրայից) Օհան Օձնեցու խնդիրքով օգնական զորք ստանալու պատմու-

[1] Տե՛ս Մ. Աբեղյան, Երկեր, Ա. հատոր, Երևան, 1966, էջ 347, 348, 365, 368։

[2] Баладзори, նույն տեղում, էջ 18։ Օգտվում ենք «Սասնա ծռեր»-ի Ա. հատորի Ներածության մեջ բերված հայերեն թարգմանությունից, էջ 17։

[3] Ստ. Օրբելյան, Պատմութիւն, նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 163—164։

*թյունը։ Այդ փաստի մեջ անդրադարձում է գտել Թեոդորոս Ռշտունու կողմից արաբ խալիֆ Մուավիայի հետ 652 թ. կնքված հատուկ պայմանագիրը, որի համաձայն, եթե որևէ թշնամի պետություն (նկատի էր առնված հատկապես Բյուզանդիան) հարձակվեր Հայաստանի վրա, խալիֆաթը պարտավորվում էր զորքով անմիջապես օգնության հասնելու նրան։*

*Պատմական հիշողություններից բացի, քննության առարկա ավանդությունները բավական հարուստ են նաև վիպական և առասպելական մոտիվներով։ Այդպիսիք են՝ Սասունցի Դավթի Քուռկիկ Ջալալու միջոցով Սասունից մի ակնթարթում Հալեբ հասնելն ու այնտեղից հետ վերադառնալը, արաբների կողմից կողոպտված և գաղտնի տեղում թաքցված Շաղատի վանքի գանձերի պատահական հայտնաբերումը եղնիկին հետապնդող որսորդների միջոցով, Շամշադինի շրջանի Չինար գյուղացի հայ քաջուհու կողմից իր մազերի հյուսերի մեջ դրված ահագին քարերը բերդի պարիսպներից թշնամու վրա նետելը, Բաղդադի խալիֆի ներկայությամբ Օհան Օձնեցու կատարած հրաշագործությունները և այլն։*

*Ինքնաբերաբար համեմելով իրենց հաղորդած պատմական տեղեկություններն ու հուշապատումները նման կարգի վիպական և հրաշապատում մոտիվներով, ժողովրդական ավանդախոսները դրանով իսկ ավելի հետաքրքիր են դարձրել այդ տեղեկություններն ու վերհուշները, առավել ուժեղացրել են դրանց թողած ազդեցությունն ու տպավորությունը ունկնդիր հասարակության վրա։*

**23. Լենկ-Թեմուրի, վանահայր Օհանի և այլոց ավանդությունները։—** *Այս ավանդությունների մեջ համապատասխան անդրադարձում են գտել արևելյան ամենակատաղի ու դաժան բռնակալներից մեկի՝ Լենկ-Թեմուրի և նրա հրոսակների կողմից 1386—1394 թթ. Արևելյան և Արևմտյան Հայաստանի բազմաթիվ գավառներում, քաղաքներում ու գյուղերում կատարված անօրինակ ավերածությունները, կողոպուտը, գերեվարությունն ու սպանությունները և այն անհավասար պայքարը, որ մղել են Հայաստանի բնակիչները նրանց դեմ՝ իրենց ֆիզիկական գոյությունը պահպանելու, նյութական ու հոգևոր հարստությունները փրկելու, իրենց անկախությունը պաշտպանելու համար։*

*Երբ Լենկ-Թեմուրը գալով Սյունյաց աշխարհը ավերում է այն և իբրև գերի քշում, տանում է նրա բնակիչներից շատերին, Հին-Նախիջևանի Աուինջ գյուղի մոտ գտնվող փոքրիկ վանքի վանահայրը կապում*

*է ուսից Սուրբ Նշանը և նետվում է գետը։ Այդ նշանի զորությամբ նա մնում է ջրի երեսին և առանց սուզվելու սկսում է անարգել քայլել գետի վրայով։ Տեսնելով կատարված հրաշքը, Թեմուրի զինվորները այդ մասին հայտնում են իրենց տիրոջը։ Սուրբ Նշանին տիրաշահած լինելու համար Լենկ-Թեմուրը վանահոր խնդիրքով վանքով մեկ գերիներ է բաշխում նրան։ Մտնելով վանք գերիներն անմիջապես աղավնի դարձած դուրս են թռչում նրա լուսամուտից, և վանքը նորից մնում է դատարկ։ Ահաբեկված Սուրբ Նշանի կատարած այս երկրորդ հրաշքից, Լենկ-Թեմուրը վերցնում է իր հրոսակներին և հեռանում է Սյունյաց աշխարհից։ Այդ օրվանից վանքը սկսում է կոչվել Մարդաղավնյաց կամ Հազարափրկիչ վանք (№ 617)։*

*Իմանալով Տաթևի վանքի մեծ զանգի դերը, որով թշնամու ներխուժման ժամանակ ահազանգ էին տալիս շրջակա բնակչությանը ոտքի ելնելու նրա դեմ, Լենկ-Թեմուրը կաշառում է տեղական իշխաններից մեկին, նրա միջոցով խարույկ է վառել տալիս այդ զանգի տակ և կտրում է նրա ձայնը։ Դրանից հետո միայն գիշերով մտնում է Սյունյաց աշխարհը, գրավում է այն և սկսում է իր ավերն ու կոտորածը։ Իզուր են մարդիկ փորձում Տաթևի զանգի միջոցով օգնության կանչել ժողովրդին։ Այդ օրվանից էլ ահա գավառի անունը մնում է Զանգը զուր, որ հետո դառնում է Զանգեզուր (№ 386)։*

*Լուր ստանալով Լենկ-Թեմուրի գալստյան մասին, Գարդման լեռան լանջին ապրող ժողովուրդը թաքնվում է մոտակա խորանաշարի վանքերում։ Լենկ-Թեմուրը հրամայում է վանքերից հանել բոլոր թաքնվածներին, կապկապել նրանց, պառկեցնել գյուղի կալատեղում և պայտած ձիերով անցնել նրանց վրայով։ Երբ բոլոր մարդիկ տրորվում, ոչնչանում են, Լենկ-Թեմուրը կարգադրում է հողով ծածկել կալատեղը և իր հրոսակների գլուխն անցած շարունակում է ճանապարհը։ Այդ օրվանից կալի անունը դնում են Անաստվածի կալ կամ՝ Իգիտ ղրման (№ 838)։*

*Լենկ-Թեմուրի կարգադրությամբ Գանձակի գավառի գյուղերից մեկի հրապարակում կախաղան են հանում քրիստոնյաներին։ Նրանց միջից հանկարծ դուրս է գալիս Վարդան անունով մի քաջ որսորդ և սպանում է դահճին։ Լենկ-Թեմուրը իր մոտ է կանչում Վարդանին և հարցնում է, թե ինչու նա սպանեց դահճին։ «Մարդը իրավունք չունի ձեռք բարձրացնելու իր նմանի վրա,— ասում է Վարդանը։ Նրա համարձակ պատասխանը դուր է գալիս Լենկ-Թեմուրին և նա ոչ միայն ներում է*

*շնորհում հայ որսորդին, այլև մի գյուղ է նվիրում նրան, որը Վարդանի անունով կոչվում է Վարդանաշեն (№ 455)։*

*Երբ Լենկ-Թեմուրը գալիս հասնում է Նոր-Բայազետի գավառը, Այրիվանք գյուղի բնակիչները հավաքվում են իրենց գյուղի վանքում, ներսից փակում են դռները և ապավինում են վանահայր Օհանին։ Սա մեծ ջերմեռանդությամբ սկսում է աղոթել աստծուն, որ նա փրկի իր ժողովրդին։ Աստծու հրամանով վանքում հավաքված մարդիկ աղավնի են դառնում և թռչելով ազատվում են Թեմուրի սրից։ Այդ օրվանից Այրիվանք գյուղի վանքը կոչվում է Օհանավանք կամ Հովանավանք (№ 638)։*

*Լսած լինելով Գեղարդա վանքի հրաշագործությունների համբավը, Լենկ-Թեմուրը որոշում է անձամբ փորձել այն։ Անթիվ զորքով հարձակվում է ամայի ձորի վրա և հոխորտանքով ու ծաղրաբանությամբ հրամայում է բերել իր մոտ Գեղարդի Սուրբ նշանը։ Հենց որ բարձրացնում են նիզակները Սուրբ նշանին հարվածելու, անմիջապես բյուրավոր աներևույթ զրահավորված զինվորներ գույնզգույն համազգեստներով ամեն կողմից հարձակվում են թշնամու վրա։ Իրարանցումն ընկնում է Թեմուրի զորքի մեջ. ոմանք փախուստի են դիմում, ուրիշների ձեռքերն են գոսանում, շատերը կուրանում են։ Տեսնելով այդ, սարսափահար Լենկ-Թեմուրը թողություն է խնդրում Սուրբ Նշանից և մեծամեծ պարգևներ խոստանալով նրան, ետ է վերադառնում (№ 609Բ)։*

*Լենկ-Թեմուրն իր հրոսակներով հարձակվում է Աշտարակի վրա։ Աշտարակցիք միանալով օշականցիների հետ, երկար դիմադրում են կատաղի թշնամուն։ Վերջում սակայն, այլևս չկարողանալով դիմանալ նրա ճնշումին, թողնում են իրենց գյուղը և քաշվում են դեպի Կարբի։ Այստեղ նոր ուժեր հավաքելով աշտարակցիք նորից դուրս են գալիս Լենկ-Թեմուրի դեմ և այնքան են նեղում նրան, որ Թեմուրը ծանր վիրավորվելով, ընգլնգալով փախուստի է դիմում։ Դրանից հետո է, որ նրա անունը մնում է Լենկ (կաղ) Թեմուր (№ 757Բ)։*

*Թիֆլիս քաղաքից մինչև Երուսաղեմ, Երուսաղեմից մինչև Մոկաց երկիրը ավերելով, կողոպտելով, սպանելով ու գերեվարելով Լենկ-Թեմուրը գալիս հասնում է Արճեշի Մեծոփա վանքը և ուզում է ավերել ու կողոպտել նաև այս վանքը։ Նա կանչում է իր մոտ վանահորը՝ վանքի գանձերը պահանջելու համար։ Երբ Լենկ-Թեմուրին ներկայանում է Մեծոփա վանքի վանահայրը, նրա աչքին նա երևում է բյուրավոր զորքերով շրջապատված... Կարծելով, որ այստեղ խառն է աստծու մատը,*

*Թեմուրը սարսափահար է լինում, փոխում է իր մտադրությունը և թողնելով ուրիշ վանքերից կողոպտված 65 բեռ. դրչյա մատյանները, հավաքում է իր զորքերին ու հեռանում է (№ 674, 675Բ)։*

*Եփրատի քանդված կամուրջը շինելու համար Լենկ-Թեմուրը որոշում է քանդել Տարոնի Աշտիշատ գյուղի Սուրբ Սահակ եկեղեցին։ Դրա համար նա իր զինվորներին կողք-կողքի շարել է տալիս Սուրբ Սահակից մինչև Եփրատի կամուրջը (որ երկու ժամ հեռավորության վրա է գտնվում նրանից) և կարգադրում է նրանց ձեռքից-ձեռք տալով փոխադրել քանդված եկեղեցու բոլոր քարերը (№ 678)։*

*Սեբաստիայի հայոց գերեզմանատան մոտ կա մի տարածություն, որը կրում է Սև հողեր անունը։ Ասում են, թե Լենկ-Թեմուրը կարգադրել է իր հրոսակներին այստեղ ողջ-ողջ թաղել հազարավոր սեբաստացիների (№ 729)։*

*Մի ուրիշ ավանդության համաձայն, երբ Թեմուրին լուր են բերում, թե Սեբաստայում կատարված նախճիրից կենդանի մնացած հատ ու կենտ մարդիկ խելագարվելով սկսել են ծիծաղել ու պարել քաղաքի ավերակների վրա, Լենկ-Թեմուրը նոր միայն իրեն լիովին բավարարված զգալով, հավաքում է զորքերին և հեռանում է Սեբաստիայից (№ 887), և այլն։*

*Վերոհիշյալ և բազմաթիվ ուրիշ ավանդությունների մեջ յուրովի արձագանք են գտել պատմական այնպիսի անցուդարձեր, ինչպիսիք են՝ Նախճավանի, Գառնիի, Բջնիի, Կարսի, և Սիսիանի Որոտան բերդերի գրավումը, Տաթևի վանքի ու նրա հարուստ մատենադարանի հրկիզումը, Ղարաբաղի, Վասպուրականի, Մուշ-Տարոնի, Սասունի, Կարինի, Երզնկայի և Հայաստանի այլ գավառների ավերումն ու ավարումը, նրանց բնակիչների կոտորածն ու գերեվարումը Լենկ-Թեմուրի հրոսակների կողմից 1386, 1387, 1388, 1394 թվականներին, Սուրմառի գավառի բնակչության և Սասունի լեռնականների այդ հրոսակներին ցույց տված կատաղի դիմադրությունը 1387 թ., և այլն։*

*Քննության առարկա ավանդությունների բովանդակության պատմական խնկությունը հիմնականում հաստատվում է մեր ձեռքի տակ եղած համապատասխան փաստացի գրավոր վկայություններով։ Այսպես.*

*Ավանդություններից մեկի մեջ եղած հիշատակությունն այն մասին, որ Լենկ-Թեմուրը Թիֆլիս քաղաքից մինչև Երուսաղեմ, Երուսաղեմից մինչև Մոկաց երկիրը քանդել է հայկական եկեղեցիները, կողոպտել,*

սպանել ու գերեվարել է բոլոր հայերին (№ 675Բ), համընկնում է այն տեղեկությանը, որ թողել է մեզ դեպքերին ժամանակակից ու ականատես հայ պատմիչ Թովմա Մեծոփեցին, գրելով. «Աւա՜ղ եւ եղուկ ամենայն Հայոցս զի աւերեցան ամենայն երկիրս զի յԱրճշոյ մինչեւ ի տունն Վրաց եւ մինչ ի Կուր գետն Աղուանից շաղախեցին արեամբ անմեղաց երկիր ամենայն, չարչարանօք, սպանմամբ եւ գերութեամբ»[1]:

Նույն պատմիչի վկայությամբ հաստատվում է նաև այն ավանդությունների բովանդակությունը, ուր խոսվում է Արևմտյան Հայաստանում և մասնավորապես Վասպուրականում (Արճեշ, Վան և այլն) Լենկ-Թեմուրի կատարած գազանային նախճիրների մասին: Ահա այդ վկայությունը. «Հրաման եղեւ ի չար բռնաւորէն զկանայս եւ մանկունս առնուլ ի գերութիւն, և զհաւատացեալս եւ զանհաւատս ի բերդէն ի վայր ընկենուլ: Իսկ նոքա առ ժամայն կատարեցին զչար հրաման նորա, սկսան առ հասարակ զամենեսեան ի վայր ընկենուլ: Եւ այնքան բարձրացաւ մեռեալն, մինչ զի վերջին անկեալք ոչ մեռանէին, զոր տեսաք աչօք և լուաք ականճօք մերովք...»[2]:

Իր Պատմության ուրիշ էջերում հիշյալ պատմիչը հավաստում է այն ավանդությունների բովանդակության իսկությունը, ուր հիշատակվում է Սյունիքում, Տարոնում և հատկապես Սեբաստիա քաղաքում (= Սվազ) Լենկ-Թեմուրի հրոսակների կատարած ավերածությունների ու կոտորածների մասին[3]:

Ինչ վերաբերում է զանձակեցի որսորդ Վարդանի՝ Լենկ-Թեմուրի դահճին սպանելու և Աշտարակի ու Օշականի բնակիչների Լենկ-Թեմուրին վիրավորելու և նրա հրոսակներին իրենց հայրենիքից դուրս քշելու վիպական պատմություններին (№ № 455, 757Բ), ապա դրանց մեջ այլափոխված ձևով արձագանք են գտել այն ընդվզումները, որոնք ժամանակին տեղի են ունեցել Հայաստանի մի քանի վայրերում Լենկ-Թեմուրի դեմ և որոնց բնորոշ արտահայտություններից են Սուրմառիի բնակիչների և Սասունի լեռնականների վերևում հիշված զինված դիմադրությունները:

Նշանակալից են նաև Լենկ-Թեմուրի մասին պատմող ավանդություններում առկա հրաշապատում մոտիվները: Այդպիսի մոտիվներից

---

[1] Թ. Մեծոփեցի, *Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց*, Փարիզ, 1860, էջ 30:

[2] Նույն տեղում, էջ 30—32:

[3] Նույն տեղում:

են՝ Նախիջևանի Աոինջ գյուղի վանքում գտնվող Սուրբ Նշանի զորությունից Լենկ-Թեմուրի աՀաբեկման (№ 617), Նոր-Բայազետի Այրիվանք գյուղի վանքի վանաՀայր ՕՀանի ջերմեռանդ աղոթքով վանքում ապաստանած մարդկանց ազատվելու փոխակերպվելու (№ 638), Գեղարդա վանքի Սուրբ Նշանի՝ Լենկ-Թեմուրի և նրա զորքերի մեջ առաջացրած խուճապի (№ 609Բ), Մեծոփա վանքի վանաՀոր՝ Լենկ-Թեմուրի աչքին բյուրավոր զինավառ զորքերով շրջապատված երևալու (№ 674) պատմությունները և այլն։

Հիշյալ և նման կարգի ուրիշ Հրաշապատում մոտիվների ստեղծման Հոգեբանական Հիմքը այն Հակադրեցությունն է, որ ծնունդ է առել Հայաստանի բնակչության լայն զանգվածների շրջանում Լենկ-Թեմուրի և նրա նման այլազգի բազմաթիվ բռնակալների և նրանց Հրոսակների սփռած Հրի ու սրի, գործած ավերի, ավարի, կոտորածների ու գերեվարության պայմաններում։ Այդ մոտիվների մեջ դրսևորված է գերբնական ուժերի և ազգային սրբությունների նկատմամբ այդ՝ զանգվածների ունեցած միամիտ ու պարզունակ Հավատը՝ խարսխված նրանց աշխարՀայացքի պատմական սաՀմանափակության վրա։ Ապավինելով Սուրբ Նշանի կամ խաչի Հրաշագործ ուժին, որևէ սրբակրոն Հոգևորականի ջերմեռանդ աղոթքի զորությանը, ժողովուրդը Հոգեպես զտանդել է ինքն իրեն, մխիթարվել այն գաղափարով, որ ինքն ունի մի զենք, որն ավելի զորավոր է քան Լենկ-Թեմուրի սուրը, որով կարելի է աՀ ու սարսափ ազդել թշնամուն, շփոթության, աՀաբեկման ու փախուստի մատնել նրան[1]։

**24. Սուլթան Մուրադի, Քոսա Բինբաշու, Գրիգոր Նահատակի, Դավիթ-բեկի, Անդրանիկ Զորավարի և այլոց ավանդությունները։—** Այս ավանդությունների մեջ արձագանք են գտել թուրքական բռնակալների ու նրանց Հրոսակների կողմից Արևելյան և Արևմտյան Հայաստանի բազմաթիվ գավառներում, քաղաքներում ու գյուղերում դարերի ընթացքում գործված ավերածությունները, կողոպուտն ու կոտորածը և անձնազոՀ այն պայքարը, որ մղել է Հայ ժողովուրդը այդ բռնակալների ու նրանց Հրոսակների դեմ իր քաջարի զավակների միջոցով։

Ըստ այդ ավանդությունների.

Թուրք Հրոսակները Հարձակվելով Շիրակի վրա, ուրիշ շատ գյուղերի Հետ կողոպտում ու ավերում են նաև Ղարաքիլիսա գյուղը։ Սրա

[1] Հմմտ. Ն. Աղբալյան, Գրական-քննադատական երկեր, Բեյրութ, 1959, էջ 192—204։

բնակիչների դիմադրությունը տեսնելով, հրոսակապետ փաշան հրամայում է գոմը լցնել բոլոր տղամարդկանց և այրել, իսկ գյուղի եկեղեցին էլ դարձնել գոմանոց իր զինվորների համար։ Գիշերը, երբ եկեղեցում գտնվող թուրք զինվորները քնած են լինում, գյուղի ողջ մնացած տղամարդիկ դրսից փակում են եկեղեցու դռները և կրակ տալով վառում են այն։ Վառվող թուրք զինվորների աղաղակից արթնանալով և տեսնելով ծխացող եկեղեցին, փաշան բացականչում է՝ «Ղարա՜ քիլիսա...» (սև եկեղեցի) և խուճապահար փախչում է գյուղից։ Դրանից հետո գյուղի անունը մնում է Ղարաքիլիսա (№ 488)։

Սուլթան Մուրադի հրամանով նրա թիկնապահ զինվորները Հայաստանի գյուղերից հավաքում են գեղեցիկ մանուկներին և տանում են իրենց տիրոջը։ Արզնի գյուղի մոտակայքում երկու հայ մանուկներ, Սուլթանի ձեռքը չընկնելու համար, իրենց ցած են նետում Դժվարադեմ կոչված ժայռերի վրայից և տեղն ու տեղը ինքնասպան են լինում (№ 13)։

Ժամանակին Իջևանի շրջանի Ուզունթալա գյուղում ապրել է մի շատ գեղեցիկ հայ աղջիկ։ Թուրք բեկը լսելով նրա գեղեցկության մասին, իր ծառաների հետ գալիս է առևանգելու։ Աղջկա հայրը նրան թաքցնում է անտառի խորքում գտնվող աղբյուրի մոտ։ Բեկի ծառաները գալիս են այստեղ և դիմելով աղջկա հորը, ասում են. «Կըզի վեր» (աղջկանդ տուր)։ Հայրը զենքով դիմադրում է թուրք բեկի ծառաներին և կոտորում է բոլորին։ Լսելով այդ մասին բեկը փախչում է։ Դրանից հետո անտառի խորքում գտնվող աղբյուրի անունը դնում են Կըզվեր (№ 278)։

Թուրք ավազակները հանդիպելով Վայոց ձորի Արփա գյուղացի Գրիգորին, պահանջում են նրանից, որ նա ցույց տա իրենց գյուղի ճանապարհը։ Համագյուղացիներին նրանց սպառնացող վտանգից փրկելու համար Գրիգորը սխալ ճանապարհ է ցույց տալիս թուրքերին։ Սրանք գլխի ընկնելով բռնում և տեղն ու տեղը սպանում են Գրիգորին։ Ժամանակ անց Արփա գյուղացիք, գյուղից ոչ հեռու, Գրիգորի հիշատակին մի մատուռ են շինում, որը նրա անունով կոչվում է Գրիգոր Նահատակի մատուռ (№ 612)։

Մուղանում բանակ դրած թուրք բեկը Սիսիան է ուղարկում իր մարդկանց, այնտեղից հարեմի համար գեղեցիկ հայ աղջիկներ բերելու։ Առևանգված աղջիկներից Շաքեն ճանապարհին թաքնվում է ջրվեժի փրփուրների մեջ և ազատվում է թուրքերի ձեռքից։ Դրանից հետո ջրվե-

ծը նրա անունով կոչվում է Շաքեի կամ Շաքիի ջրվեժ (№ 246)։

Օրդուվարի կռվի ժամանակ Դավիթ բեկի քաջերի մեջ աչքի է ընկնում Դալի քեշիշը։ Նրա շնորհիվ թուրքերը ծանր դրության մեջ են ընկնում։ Դավիթ բեկի զինվորները հաղթությունից հետո սկսում են բռնագրավել ունևոր մահմեդականների հարստությունը։ Նրանք սխալմամբ տանում են նաև աղքատ Ալու միակ կովը։ Իմանալով այդ մասին Դավիթ բեկը կարգադրում է անմիջապես հետ վերադարձնել Ալու կովը, հետն էլ նվիրել նրան ձի ու ոչխար (№ 832Գ)։

Ցաթալի խանը մեծ զորքով պաշարում է Դավիթ բեկին Հալիձորի բերդում։ Դավթի քաջերը մեկը մյուսի ետևից վանում են թշնամու կատաղի գրոհները։ Այդ կռիվների մեջ առանձնապես աչքի են ընկնում Թորոս իշխանի քաջերը։ Թշնամին միայն այն ժամանակ է կարողանում գրավել Հալիձորի բերդը, երբ Շուն-Ցրանգյուլի մատնությամբ իմանում է բերդի ջրի ճանապարհը (№ 832Բ)։

Երբ Զավնդուրցի Թորոս իշխանը Մելիք-Ցրանգյուլի մատնությամբ սպանվում է Ցաթալի խանի կողմից, նրա դիակի շուրջը մեծ կռիվ է սկսվում։ Թորոսի զինվորները վիրավորում են Ցաթալի խանին և սպանում նրա եղբորը (Աղասի խանին)։ Գիշերը կռվող երկու կողմերն էլ սկսում են հավաքել իրենց վիրավորներին ու սպանվածներին։ Պատերազմից հետո, ճակատամարտի վայրում հայ քաջերի թափած արյան կաթիլներից բուսնում են անթիվ ու անհամար շուշաններ ու նարգիսներ, որի համար և այդ վայրը կոչվում է Նարգիսների դաշտ (№ 815), և այլն։

Թուրքական հրոսակախմբերը Լեռնային Ղարաբաղ մտնելու համար միշտ անցել են Մարտունու շրջանում գտնվող ձորով։ Նրանցից ամեն մեկը մեծ կոտորածներ է արել ձորում. դրա համար էլ այն ստացել է Արյունոտ ձոր (Կանլը դարա) անունը (№ 111)։

Էրզրումի շրջանի Կան գյուղում ապրելիս են լինում յոթ եղբայր և մի քույր։ Թուրք բեկը մարդ է ուղարկում Կան և պահանջում է յոթ եղբայրների միակ քրոջը։ Վերջինիս փոխարեն, ծպտվելով նրա զգեստներով, գնում է փոքր եղբայրը՝ շորերի մեջ թաքցրած իր դաշույնը։ Գալով բեկի մոտ փոքր եղբայրը գիշերով սպանում է նրան և վերադառնում տուն։ Վերցնելով իրենց քրոջը յոթ եղբայրները թողնում են Կան գյուղը և գալիս են Սասունի կողմերը։ Այստեղ, Անդոկ սարի մոտ, նրանք մի հյուղ (կապր) են շինում և բնակություն են հաստատում նրա մեջ։ Ժա-

մանակի ընթացքում ավելանում է հյուղերի թիվը և հիմնվում է Կապըր-նի գյուղը (№ 548)։

Մի թուրք մոլլա պատարագի ժամանակ մտնում է Սվազի Լուսավորիչ հայկական եկեղեցին, բարձրանում է նրա բեմը և այնտեղից բարձրաձայն հայտարարում է, որ այսօրվանից եկեղեցին մզկիթի է վերածվում, ուստի ոչ մի քրիստոնյա այլևս իրավունք չունի ոտք դնելու այնտեղ (№661)։

Թուրքերը բռնությամբ տիրանում են Ակն քաղաքի մոտ գտնվող Սուրբ Հակոբ հայկական վանքին։ Նրանք փորձում են վանքի արևելյան դուռը տեղափոխել դեպի հարավ։ Սակայն թուրքերի բոլոր ջանքերը զուր են անցնում։ Վանքի դուռը անշարժ մնում է իր տեղում (№ 683)։

Երբ Սուլթան Մուրադն իր բանակով հարձակվում է Մալաթիա քաղաքի վրա, նրա դեմ շատերի հետ դուրս է գալիս նաև մի երիտասարդ հայ աղջիկ՝ ահագին քարը ձեռքին։ Զարմացած Մալաթիայի հայերի քաջության վրա, Սուլթանը հրամայում է խիզախ հայուհու ձեռքի քարը իբրև կոթող կանգնեցնել Մալաթիա քաղաքի մուտքի մոտ (№ 205)։

Քոսա բինբաշին հազար ձիավորով բռնում է Սոլուխա կամուրջի ճանապարհը։ Անդրանիկն իր երեք զինվորներով հնարամտորեն խուճապի է մատնում թշնամու զորքերին։ Լսելով այդ մասին, թուրքական Սուլթանն ասում է. «Այսօրվանից Անդրանիկն էլ չաուշ չէ, փաշա է»։ Եվ դրանից հետո Անդրանիկին սկսում են կոչել Անդրանիկ փաշա (№ 767), և այլն։

Վերոհիշյալ և նմանօրինակ բազմաթիվ ուրիշ ավանդություններում մենք գտնում ենք ուղղակի և այլափոխված արձագանքներ պատմական այն իրադարձությունների և վերջիններիս ծանր հետևանքների, որոնք տեղի են ունեցել Արևելյան և Արևմտյան Հայաստանում թուրքական բռնիշխանության տարիներին, սկսած 16-րդ դարի 50-ական թվականներից մինչև 1921 թ.։

Այդ իրադարձություններից առանձնապես հիշարժան են.

1554—1555 թթ. թուրքական բանակի առաջին ներխուժումը Հայաստան. նախ՝ Շիրակի գավառը, ապա Արարատյան դաշտ, Սյունիք, Փերչևիի վկայությամբ օսմանյան բանակը մտնելով նախ Շորագյալ, հովիտը։ Դեպքերին ժամանակակից ու ականատես թուրք պատմիչ Փերչևիի վկայությամբ օսմանյան բանակը մտնելով նախ Շորագյալ, «քանդեց, ավերեց, բարեշեն գյուղերը, շինությունները ոչնչացվեցին և հողին հավասարվեցին։ Այստեղից բանակը շարժվեց ... Երևան, ամեն

ինչ կրակի տվին, այրեցին և հողին հավասարեցրին. 23-րդ օրն անցան հայտնի Արփաչայ գետը (Վայոց Ձորի) և այդ շրջանում էլ ամեն ինչ կողոպտեցին ու ավերեցին... 25-րդ օրը մտան Ղարաբաղ կոչված երկիրը (խոսքը Սյունիքի մասին է), որն իր լեռներով ու հարուստ այգիներով շատ հայտնի մի գավառ էր աջամի երկրում։ ... Լուսավոր ցերեկը մութ գիշերի վերածվեց։ 27-րդ օրը հասան Նախճավանի դաշտը։ Հաղթական բանակի սարսափից քաղաքներն ու գյուղերն, տներն ու բնակավայրերն այն աստիճան ամայացել, ավերվել ու բուերի ու ագռավների բնակավայր էին դարձել, որ տեսնողներին սարսափ էին պատճառում։ ... Որսի և ավարի ծարավի զինվորները... գյուղերն ու ավանները, դաշտերն ու շինությունները այն աստիճան քանդեցին ու ավերեցին, որ շինության ու կենդանության հետք անգամ չմնաց»։ Նույն պատմիչի վկայությամբ ոչ մի արշավանքում սուլթանի բանակն այսքան հարստություններ ձեռք չէր բերել և չկար մի զինվորական վրան, որ երեքից պակաս գերի ունենար, իսկ հնգից, տասնից ավելի գերի ունեցող վրաններն անթիվ էին[1]։

1578—1590 թթ. պարսկա-թուրքական պատերազմների թատերաբեմ են դառնում Արարատյան դաշտը, Ղարաբաղը և մի քանի ուրիշ հայաբնակ վայրեր։ Հիշարժան է մասնավորապես Թուրքական զորքերի հրամանատար Օսման Յուզդեմիր փաշայի կողմից 1579 թ. կազմակերպված մի արշավանքը, որի նպատակն էր ասպատակել պարսկական Հայաստանի արևելյան կողմերը։ Ահա թե ինչ է պատմում այդ արշավանքի մասին նրա ականատես և ժամանակակից Հովհաննիսիկ վարդապետը իր հիշատակարանում.

«Արդ զնեղութիւն և զդառնութիւն վշտաշատ ժամանակիս ո՞վ կարէ ընդ գրով արկանել, ով եղբարք, բայց փոքր ի շատէ ողբալով ասասցուք։

Ազգն մահմեդականաց՝ որ ըմբռնեալ էին զգաւառս Հայոց աւերելով և գերելով զամենայն շէնս և զանշէնս, տիրեալ բնակէին ընդ ամենայն տեղիս և այնչափ և այնքան խիստ էր լուծ հարկի նոցա, մինչ զի բազումք զրկեալ ի ստացուածոց և ի հայրենի ժառանգութեանց, դեռևս ոչ կարէին զերծանել, այլ և ոչ զոյր փախստեան ճարակ և թագստեան տեղիք, այլ ամենայն մարդ ի տարակուսանս կայր, և երանի տային մեռելոցն և ոչ այս կենդանեացս, քանզի ոչ եթէ սակաւ ժամանակ էր

[1] «Հայ ժողովրդի պատմություն», Ա. մաս, Երևան, 1951, էջ 260։

բռնութիւն սոցա ի վերայ գաւառաց, այլ բազում և յերկար ամօք... Ոչ ևս մխիթարութիւն զոյ յազգիս Հայկածին, այլ դեռ ևս կամք գլխակորեալք ի ներքոյ չար ծառայութեան նոցա, և ի Հայրենի գաւառացն արտաքսեալ, ցիր և ցան եղեալ ընդ ոլորտս տիեզերաց, և իշխանազինք և ազատածինք՝ ծառայք լեալ ազգին մահմեդականի։ Այլ և եկեղեցիք կոխան եղեն այլազգեաց, զորս քակեալ էին, զքարինս տանէին ի շինութիւն բերդից, և զորս շէն մնացեալ էին՝ ինքեանք պղծագործութեամբ, և երիվարք և ջորիք իւրեանց պահէին և նոսա։ Եւ մեք գլուխ ի կոր կամք, և բազում տարակուսանօք լցեալ՝ վասն այսպիսի աղետալի կսկծանացըս, և ոչ ուրեք երևի հնար օգնականութեան»[1]։

1724 թվին թուրքերի կողմից Երևանի պաշարումն ու գրավումը, որի ընթացքում թշնամու դրսից համալրված 40.000-անոց նոր բանակի ճնշման տակ հերոսի մահով ընկնում են շատ քաջարի երևանցիներ, ավերվում, կողոպտվում է քաղաքը, իսկ կենդանի մնացած բնակչությունից էլ թուրքական աղբյուրների հաղորդմամբ, «գերի են վերցվում ավելի քան 10.000 կին ու երեխաներ»[2]։

1725—1730 թթ. թուրքական զինված ուժերի պարբերաբար կրկնվող գրոհները նախ Ղարաբաղի, ապա Սյունիքի վրա՝ «սուլթանի հրամանով հայերին ոչնչացնելու և երկիրն ավերելու նպատակով»[3] և հիշյալ գավառների խիզախ ու հերոսական բնակիչների մղած ազատագրական պայքարը թուրք զավթիչների դեմ, անվանի զորավարներ ղարաբաղցի Ավան Յուզբաշու և սյունեցի Դավիթ բեկի ու վերջիններիս քաջարի օգնականների (Պետրոս Գիլանենց, Մխիթար Սպարապետ, Թորոս Իշխան, Տեր-Ավետիս և այլն) գլխավորությամբ։

1915 թ. թուրք ջարդարարների ու ցեղասպանների կողմից կազմակերպված մեծ եղեռնը, որի ընթացքում ավերվեցին ու հրկիզվեցին Արևմտյան Հայաստանի ծաղկուն ու շեն գյուղերն ու քաղաքները, ըկվեցին ու բռնաբարվեցին հազարավոր հայ կանայք ու աղջիկներ, գազանաբար տանջամահ արվեցին և սրին ու ջրին կուլ դարձան շուրջ 2 միլիոն հայություն։

Վերը նշված և նմանօրինակ ուրիշ պատմական իրադարձությունների բանահյուսական արձագանքների բնորոշ նմուշներ են.

---

[1] «Ճռաքաղ» ամսագիր, 1859, էջ 69—70։

[2] «Հայ ժողովրդի պատմություն», Ա. մաս, Երևան, 1951, էջ 303։

[3] Գերի վերցված թուրք փաշաներից մեկի հարցաքննության ժամանակ արած հայտարարությունից (տես նույն տեղում, էջ 303)։

Սուլթան Մուրադի բանակի Մալաթիայի վրա հարձակվելու և նրա համար Հայաստանից հափշտակվող գեղեցիկ մանուկների մասին պատմող ավանդությունները (№ № 13, 205), որոնց բովանդակությունը յուրովի հավաստվում ու հաստատվում է դեպքերին ժամանակակից հայ հեղինակների հետևյալ գրավոր վկայություններով. «Իսկ ի վերջին դարուս և ի նսեմ ժամանակիս մեր, եղև բարկութիւն և պատուհաս ի վերայ աշխարհիս վասն ծովացեալ մեղաց մերոց, քանզի մեծ թագաւորն խոնդքար (խոսքը Սուլթան Մուրադ Գ. թագավորի մասին է—Ա. Ղ.) զօրաժողով արար հեծելոց եօթն հարիւր հազար և ետ նոցա գլուխ զոմն անուն Օսման փաշա։ Եւ եկեալ բազմութեամբ զօրօք ի Թէոդուպոլիս, որ է Արզրում, և զչարիսն զոր արար ո՞վ կարէ պատմել կամ ընդ գրով արկանել։ Կացեալ անդ աւուրս բազում, որ և զայր մարդիկ ի դուրս ձգէին և զկայանս և զկոյս աղջկունս և զտղայս խայտառակէին. այնպիսի պիղծ գործովք էին անօրէն ազգն Մահմէտի, որ և մինչ զի զգեղեցիկ կանայք և զտղայքն ի հետ բերէին և յօտար երկիր ձգէին...»[1]։

Նույն կարգի նմուշներ են նաև Դավիթ բեկին վերաբերող ավանդությունները (№ № 815, 832Բ, 832Գ)։ Վերջիններիս մեջ ճշմարտացի անդրադարձում են գտել այն քաջագործությունները, որ կատարել է սյունեցի հռչակավոր զորավարն իր զինակիցներով օսմանյան բանակների դեմ մղած ազատագրական կռիվների ընթացքում։

Հավատարիմ իր իրապաշտ ու լայնախոհ հայացքներին, ժողովուրդըն այդ ավանդությունների մեջ վերարտադրել է ոչ միայն Դավիթ բեկի մեկը մյուսից փայլուն հաղթանակները, այլև այն անհաջողությունները ու դժվարին պահերը, որ եղել են նրա կյանքում, երբ՝ կամ թշնամին է նեղել նրան իր գերակշիռ ուժերով, կամ էլ հայրենի դավաճանն է դավել իր նենգ գործերով։

Դավիթ բեկի մասին պատմող հայկական ավանդություններից մեկի պատմական առաղձն են կազմում 1722 թվին Ղափանի և Օրդուվարի խաների ու բեկերի դեմ Դավթի մղած հաղթական կռիվները։ Իրական-պատմական դեմքեր են նրա մեջ ոչ միայն Դավիթ բեկը, այլև Դալի-Քեշիշը, որը ոչ այլ ոք է, քան Դավթի համհարզ հայտնի Տեր Ավետիսը, նրա մղած բազմաթիվ ազատամարտերի քաջարի հերոսներից մեկը։ Պատմական հիմքեր ունեն նաև նույն ավանդության մեջ հիշատակվող կռիվը, վերջինիս վայրը, կռվի հաղթական վախճանը։

[1] «Դիվան հայոց պատմության», Ժ., էջ 37—39։

Միակ բանը, որի վերաբերյալ չկա համապատասխան գրավոր վկայություն, դա հարուստ մահմեդականների ունեցվածքը բռնագրավելու վերաբերյալ Դավիթ բեկի արած կարգադրության և աղքատ Ալու կովի պատմություններն են, որոնք, ամենայն հավանականությամբ, հնարածին և հետասմուտ մոտիվներ են։

Մյուս ավանդության մեջ մենք գտնում ենք 1727 թվին Բեքիր և Արաբ-Ալի փաշաների բազմամարդ բանակի կողմից Հալիձորի բերդի պաշարման և այդ բերդում իր փոքրաթիվ կտրիճներով ամրացած Դավիթ բեկի գործած քաջագործությունների հեռավոր արձագանքները, որոնց հետևանքով, ինչպես հայտնի է պատմությունից, ոչ միայն կասեցվել են թշնամու կրկնվող կատաղի գրոհները, այլև, ի վերջո, նա ետ է շպրտվել բերդի պարիսպներից և դիմել է փախուստի։ Այնտեղ գտնում ենք նաև 1727 թվին Բարգուշատի Եղիվարդ գյուղի մոտ Ֆաթալի խանի և Դավիթ բեկի հավատարիմ զինակից Ջավնդուրի զորապետ Թորոս իշխանի զորքերի միջև տեղի ունեցած արյունալի ճակատամարտի արձագանքները, որի ժամանակ ուրացող՝ Մելիք-Ֆրանգյուլի ստոր դավաճանությամբ, հայերը մեծ զոհեր կրելով և կորցնելով իրենց զորապետին, ստիպված են լինում նահանջելու։

Պատմական վերոհիշյալ դեպքերն ու դեմքերը ժողովրդական ավանդության մեջ միախառնվել են իրար, ենթարկվել զգալի փոփոխության, ստացել վիպական նկատելի երանգավորում։ Օսմանյան փաշաներին այստեղ փոխարինել է պարսից շահը (իմա Ֆաթալի խանը), իր քրտամենելի դերով հանդես է եկել Եղիվարդի ճակատամարտի մասնակից Մելիք-Ֆրանգյուլը (որին ժողովուրդը նշավակել է «շուն» նախատականով), Հալիձորի բերդի պաշարման՝ հայերի համար ունեցած հաղթական վախճանին փոխարինել է Դավիթ բեկի և նրա մարդկանց կողմից հարկադրաբար բերդը լքելու պատմությունը, որը հիշեցնում է Եղիվարդի վերոհիշյալ ճակատամարտի տխուր վերջավորությունը. դրույցի մեջ մուտք է գործել բերդի ջուրը կտրելու, նման դեպքերում հաճախակի կրկնվող, վիպական սովորական դրվագը։

Ինչ վերաբերում է Նարգիսների դաշտի անվանակոչության հետ կապված պատմությանը, ապա վերջինս վիպական-ստեղծական մի դեղեցիկ դրվագ է, որով սյունեցիները յուրովի խորհրդանշել են թշնամու դեմ մղված ազատագրական մարտերի զոհ իրենց հերոսական զավակների անմահության և հավերժության գաղափարը։

Ակնհայտ են նաև քննության առարկա մյուս ավանդություններում առկա պատմական մոտիվները։ Սխալ կլիներ, սակայն, այդ ավանդությունների մեջ տեսնել լոկ իրական փաստերի սովորական արձանագրումներ։ Ինչպես ժողովրդական ավանդությունների մեծ մասի մեջ, այնպես էլ այստեղ մենք գործ ունենք իրական երևույթների յուրօրինակ բանահյուսական վերարտադրության հետ, որոնք խորհրդանշում են անձնազոհ ու հերոսական այն պայքարը, որ մղել է հայ ժողովուրդը դարերի ընթացքում թուրքական բռնակալ փաշաների, բեգերի և նրանց հրոսակների դեմ։

Բերված օրինակներով չեն սահմանափակվում հայկական ավանդություններում հիշվող այլազգի բռնակալները և հայրենի հերոսներն ու նահատակները։ Նրանց մեջ մենք հանդիպում ենք նաև հռոմեական Ներոն կայսերն ու հայոց Տիրիթ (=Տրդատ) թագավորին (№ 745), Սալահադին Սուլթանին ու Երուսաղեմի հայերին (№ 693), Տուղրիլ բեկին ու Թաթուլ իշխանին (№ 754), Ղըլարի թաթար խանին և Հայաստանից առևանգված աղջիկներին (№ 418), Ջիլի Սուլթանին և Սարգիս զորավարին (№ 755), Պարսից թագավորին ու Թմբկաբերդի հայ իշխանին (№ 759), Սելիմ խանին և Երանոս գյուղացի Ջոհրաբին (№ 113), Լեզգի հրոսակներին և Աշտարակեցի Վարդիկին (№ 694), Իբրահիմ խանին և Թյուլի Արզումանին (№ 764), Երևանի խանին ու Եղվարդ գյուղացի հայ քաչուհուն (№ 765Գ), Նախիջևանի խանին և Քարահունջ գյուղացի անձնազոհ հորը (№ 766), Ջաֆար կուլի բեկին և աշուղ Միսկին-Բուրջուն (№ 785) և շատ ուրիշների։

**25. Այլազգի բռնակալների և հայրենի հերոսների ու նահատակների մասին պատմող ավանդությունների գաղափարական էությունը։—** Ըստ արժանվույն գնահատելով քննության առարկա ավանդությունների պատմական ու հրաշապատում մոտիվների ճանաչողական արժեքն ու նշանակությունը, պետք է հատկապես ընդգծել այդ ավանդությունների գաղափարական էության առանձնակի կարևորությունը իբրև այլազգի բռնակալների ու նրանց հրոսակների դեմ հայ ժողովրդի դարավոր պաշտպանական և ազատագրական մաքառումների նշանակալից վավերականների։

Հիշյալ կարգի ավանդությունների մեջ իրական դեպքերի ու դեմքերի հիշողությունը բանավոր ավանդմամբ անցնելով դարից դար և սերնդից-սերունդ, ժամանակի հոլովումով ինքնաբերաբար ենթարկվել է նշանակալից փոփոխությունների ու խմբագրման, օժտվել ընդհան-

րացնող բնավորությամբ։ Այդ ավանդությունների գործող անձ այլազգի բռնակալները և հայրենի հերոսներն ու նահատակները դարձել են հայոց դարավոր պատմության մեջ հաճախակի հանդիպող համապատասխան պատմական դեմքերի յուրահատուկ տիպական կերպարներ, իսկ նրանց կատարած գործողություններն էլ ստացել են նույնօրինակ տիպական հանգամանքների բնույթ։

Հայ ավանդախոսները մի կողմից նշավակել ու դատապարտել են Հայաստանի բազմաթիվ թշնամիներին, անկախ նրանց ազգային պատկանելությունից, կրոնական դավանանքից, դիրքից ու աստիճանից, մյուս կողմից՝ դրվատել ու մեծարել են հայրենի հերոսներին, թագավոր լինեն նրանք, թե զորավար, իշխան թե հասարակ շինական, աշխարհական, թե հոգևորական։ Ոչ մի քիչ թե շատ կարևոր հատկանիշ, որ բնորոշ է այլազգի բռնակալներին և հայրենի հերոսներին, չի վրիպել ժողովրդական ավանդախոսների ուշադրությունից։ Կերտելով թշնամի և բարեկամ պատմական անձանց կերպարներ, նրանք ընդհանուր առմամբ հարազատ են մնացել նրանց իրական նախատիպերին։ Սակայն, բեկվելով ավանդախոսների երևակայության մեջ և անցնելով նրանց ստեղծագործական բովով, պատմական այդ անձինք միաժամանակ ենթարկվել են նաև զգալի փոփոխությունների։ Ժողովրդական ավանդախոսները, ամեն մեկը յուրովի, խտացրել կամ մեղմել են նրանց այս կամ այն գիծը, մարմնավորել են նրանց մեջ այն ամենը, ինչ մտածել ու զգացել են իրենք նրանց մասին։ Ինքը լինելով պատմության հիմնական շարժիչ ուժն ու գլխավոր հերոսը, ժողովուրդը, ինչպես իր անգիր բանահյուսության մյուս ստեղծագործություններում, այնպես էլ ավանդությունների մեջ, իր աշխարհայացքի պատմական սահմանափակության հետևանքով, սեփական գործերը հաճախ վերագրել է զանազան թագավորների, իշխանների ու զորավարների, նրանց մեջ մարմնավորված տեսել իր հատկություններն ու ցանկությունները։

Հայկական ավանդություններում հանդես եկող այլազգի բռնակալներին բնորոշ են, ամենից առաջ, նվաճողական, աշխարհակալական նկրտումները, ուրիշի հողը գրավելու, նրան ազատությունից զրկելու, նրա կայք ու գույքին տիրանալու ձգտումը, ժողովրդին կեղեքելն ու հարստահարելը։ Մենք նրանց սովորաբար հանդիպում ենք ավերի ու ավարի պատրաստվելիս, սպանությամբ, կողոպուտով կամ հարկահանությամբ զբաղված, գերեվարելիս, առևանգելիս կամ հրկիզելիս։ Այլազգի բռնակալի համար խորթ է ստեղծագործ, շինարար աշխատանքի,

խաղաղ ու հանգիստ կյանքով ապրելու հասկացողությունը։ Նրա բարոյական դիմանկարի ամենաաչքի ընկնող կողմերից մեկը դավաճանությունն ու խարդախությունն է։ Իր չար նպատակներին հասնելու համար նա կանգ չի առնում որևէ միջոցի առջև, դրժում է պայմանն ու ուխտը, խախտում տված խոսքն ու երդումը։ Դավադիր ու խարդախ լինելով, այլազգի բռնակալը միաժամանակ նաև ստոր է, արյունոուշտ ու չար. առանց ոճրագործ դաժանության ու դավաճանության նա չի կարողանում իրականացնել իր մտադրությունները։ Նրա բնորոշ գծերից են նաև պարծենկոտությունն ու շաղակրատությունը, փոքրոգությունն ու վախկոտությունը։ Իրենց հասարակական ու անձնական վերոհիշյալ հատկանիշներով հիմնականում մոտ ու նման լինելով իրար, այլազգի բռնակալները միաժամանակ ունեն նաև իրենց տարբերիչ գծերը։ Մեկն օրինակ նրանցից քսու է ու անինքնասեր, մյուսը մորթապաշտ է, երրորդը պարզամիտ է կամ հիմար, չորրորդը զերծ չէ խոհեմությունից, երբեմն նաև որոշ մեծահոգությունից։

Այլազգի բռնակալներին հայկական ավանդություններում սովորաբար հակադրված են հայրենի հերոսները։ Առաջինների նման սրանք էլ ծնունդ են համապատասխան հասարակական, քաղաքական և պատմական հանգամանքների, ժողովրդի կյանքում բախտորոշ դեր խաղացած իրադարձությունների։ Ժողովրդական ավանդախոսները կարողացել են ճշմարտացիորեն բացահայտել նաև վերջիններիս բուն էությունը։ Նրանց համոզմամբ հերոսականությունը կապված չէ միայն ֆիզիկական մեծ ուժի հետ։ Այն, առաջին հերթին, բխում է այն նպատակից, որ հետապնդում են նրա կրողները։ Պայքարի մեջ հաղթանակում ու հերոսանում են այնպիսի անձնավորություններ, ովքեր հետապնդում են բարձր ու վեհ նպատակներ, ում ոգեշնչում է ընդհանուրի բարօրության գաղափարը։

Ինչպես վիպական բանահյուսության հերոսների մեծ մասը, այնպես էլ հայկական ավանդությունների լավագույն հերոսները ապրում ու գործում են ժողովրդի ընդհանուր կյանքով ու շահախնդրություններով։ Նրանք դաժան ու անսիրտ կռվարարներ չեն։ Լինելով մարդասիրական բարձր հատկություններով օժտված անձնավորություններ, նրանց խորթ է դաժանությունն ու վրիժառությունը։ Ազգային հերոսները համարձակ են ու վճռական, տոկուն ու շրջահայաց, մեծահոգի ու անձնազոհ, ազնիվ ու շիտակ, հնարամիտ ու հեռատես, խոհեմ ու առաքինի։ Նրանք գնահատում ու հարգում են ոչ միայն իրենց հայրենակից-

*ների, այլև օտարների ազատությունն ու անկախությունը, աչքի են ընկնում ճնշվածների ու հարստահարվածների նկատմամբ ունեցած իրենց հոգատարությամբ։ Ազգային հերոսները անհանդուրժող են բռնության նկատմամբ, անողոք ու անզիջում թշնամու հանդեպ։ Ճիշտ է, հայկական ավանդություններում համարյա բացակայում է ազգային հերոսների կյանքի մյուս կողմերի (ընտանեկան հարաբերություն, սեր և այլն) դրսևորումը, սակայն, այդուհանդերձ, նրանք թողնում են բավական ամբողջական տպավորություն։ Եվ դա բնական է, քանի որ նրանց էությունը բացահայտվում է ոչ թե անձնական կամ ընտանեկան հարաբերություններում, այլ հայրենիքի պաշտպանության համար մղած մարտերում։ Ինչպես վիպական բանահյուսության մյուս ժանրերի (էպոս, վիպերգ...), այնպես էլ ավանդությունների հերոսների ճակատագիրը հերոսական լինելով, հաճախ ունի ողբերգական բնավորություն, այնքանով, որքանով որ նրանց անձնազոհ պայքարը թշնամու դեմ, վերջինիս գերակշիռ ուժերի պատճառով, միշտ չէ, որ պսակվել է հաջողությամբ։*

*Ստեղծված լինելով պատմական տարբեր ժամանակներում և իրենց անհատական մի շարք գծերով տարբերվելով իրարից, հայկական ավանդությունների հերոսները՝ իրենց հասարակական ընդհանուր նկարագրով՝ իբրև ժողովրդի լավագույն հատկությունների ու նվիրական գաղափարների կրողներ, նրա ազգային բնավորության լավագույն գծերի խտացումներ, հարազատ ու մոտ են իրար։ Նրանց մեջ հայ ժողովուրդը մարմնավորել է ազատության, անկախության, խաղաղության, աշխատասիրության, հայրենի հողի նվիրական լինելու վսեմ գաղափարները, որոնցով ինքը տոգորված է եղել այլազգի բռնակալների ու վերջիններիս հրոսակների դեմ մղած իր դարավոր մահու և կենաց պաշտպանական և ազատագրական մաքառումների ողջ ընթացքում։*

*Այդօրինակ ստեղծագործությունների բնորոշ նմուշներից են.*

Հայկի և Բելի ավանդությունը, *բազմադարյան հայ բանահյուսության վաղնջական ստեղծագործություններից մեկը, որի մեջ ներդրված են այդ բանահյուսության գաղափարական էության և գեղարվեստական ձևի լավագույն հատկանիշները։ Հիշյալ ավանդության մեջ մեր հեռավոր նախնիները բացահայտել են ազատ կյանքի և հարազատ հայրենիքի անկախության նվիրական գաղափարները, վիպական ձևով պատմել են այլազգի բռնակալների դեմ իրենց մղած առաջին հերոսա-*

*մարտերից մեկի մասին։ Հատկանշական է այս առումով այն հանգամանքը, որ ըստ Հայկի և Բելի ավանդության՝ Հայաստան երկրի և հայ ժողովրդի ծագումն ու անունը կապվում են իր անկախության և ազատության համար պայքարող դյուցազն Հայկի անվան հետ։*

**Հայոց Տիրիթ (= Տրդատ) թագավորի և հռոմեացի Ներոն կայսեր ավանդությունը,** *ուր պատմվում է, թե ինչպես, երբ հայոց Տիրիթ թագավորը Հայաստանից Հռոմ է գալիս Ներոնից թագ ստանալու, Հռոմի իշխանները ցանկանալով ահաբեկել նրան, Տիրիթին տանում են ցույց տալու Հռոմի մեծամեծ ու երևելի շինությունները, այդ թվում նաև նրա ծերակույտի ժողովն ու բազմաթիվ սենյակները, ուր պահված էին հռոմեական օրենսգրքերը։ Երբ Տիրիթը ճաշի սեղան է նստում, Ներոնը նրան հարցնում է. «Հայոց աշխարհումն էլ այսպիսի օրենքներ կա՞ն»։ Տիրիթը պատասխանում է. «Հայոց աշխարհի օրենքները, ճիշտ է, թվով քիչ են, բայց լավ օրենքներ են և ամեն մարդ պարտավոր է իմանալ դրանք. և եթե հայ ժողովուրդն այդ օրենքները լավ պահպանի, հռոմեացիք չեն կարող շատ մոտենալ Հայաստանին»։ Ներոն կայսրը զարմանքով հարցնում է. «Որո՞նք են Հայաստանի այդ օրենքները, որոնց մասին մենք դեռ չենք լսել»։ Տիրիթը պատասխանում է. «Առաջին օրենքն այն է, որ մեր թուրը ժանգոտ լինի ու մանգաղը՝ հայելիի նման փայլուն։ Երկրորդ օրենքն այն է, որ մեր դատարանի դուռը կանաչ խոտ բուսած լինի, իսկ տաճարի դուռն էլ միշտ ցեխոտ լինի» (№ 746)*[1]*։*

*Տվյալ ավանդության մեջ Տիրիթ թագավորի բերանով հայ ժողովուրդը դրսևորել է իր ազգային բնավորությանը հարազատ այնպիսի գծեր, ինչպիսիք են աշխատասիրությունը, շինարար ու խաղաղասեր ոգին, ազգային արժանապատվության բարձր գիտակցությամբ օժտված լինելը*[2]*։*

---

[1] *Հայոց Տիրիթ թագավորի վերոհիշյալ պատասխանը մոտիկից հիշեցնում է՝ «Թուրդ թող ժանգոտ լինի», «Մանգաղդ սուր (կամ փայլուն) լինի», «Դատարանիդ դուռը թող կանաչ բուսնի» հայկական ժողովրդական օրհնանքները։*

[2] *Ավանդության պատմական ատաղձը կազմում են մեր թվականության առաջին դարի երկրորդ կեսի հայ-հռոմեական հարաբերությունները, երբ 62 թ. Ներոն կայսեր հանձնարարությամբ հռոմեացի Պետրոս զորավարն իր զորքերի գլուխն անցած հարձակվում է Հայաստանի վրա՝ այն նվաճելու և հռոմեական պրովինցիա դարձնելու նպատակով. երբ հայկական զորքերը Տրդատ առաջին (իմա՝ Տիրիթ) Արշակունի թագավորի գլխավորությամբ և պարթևների ռազմական օգնությամբ, ուժեղ հակահարված տալով*

**Հայոց Արշակ թագավորի և պարսից Շապուհ Վարազի ավանդությունը**, *ուր պատկերավոր ու գեղեցիկ խորհրդանշված է հայ ժողովրդի անսահման նվիրվածությունն իր հարազատ երկրին, նրա անխզելի կապը հայրենի հող ու ջրի հետ։ Հունական դիցաբանության հռչակավոր հերոս Անթեյի նման հայոց Արշակ թագավորն այստեղ կտրվելով հայրենի հող ու ջրից (իմա՛ իր ժողովրդից) թուլանում ու ընկճվում է Շապուհի հանդեպ, և ընդհակառակը, հաստատ կանգնելով այդ հողի ու ջրի վրա, գոտեպնդվում է և նոր լիցք ստանալով խիզախորեն դիմագրավում է ոխերիմ թշնամուն։*

## ՄՇԱԿՈՒՅԹԻ ԳՈՐԾԻՉՆԵՐ

*Հայաստանն իր աշխարհագրական դիրքի և քաղաքական անբարենպաստ պայմանների պատճառով դարեր շարունակ ենթարկվել է օտարերկրյա նվաճողների պարբերական հարձակումներին, դարձել կողոպուտների, ավերի ու ավարի առարկա. չնայած դրան հայ ժողովուրդը չի դավաճանել իր ստեղծագործ բնավորությանը։ Դիմագրավելով իր երկիրը խուժած թշնամու բազմամբոխ բանակներին և անհամար զոհերի գնով ազատագրելով նրանից հայրենի հողը, նա նոր ի նորո վերաշինել է իր ավերված քաղաքներն ու ավանները, ակոսել է խոպան մնացած դաշտերը, կերտել է ճարտարապետական իր հոյակապ կոթողները, զարգացրել գիրն ու գրականությունը, մտահոգվել ուսման ու լուսավորության տարածման գործով։*

*Հայ գիտնականներից, գրողներից ու արվեստագետներից շատերն անցյալում ստեղծագործել են ոչ միայն այն ժամանակ, երբ երկրում կարճատև խաղաղություն ու դադար է տիրել, այլև անգամ պատերազմների ու վտանգի ծանր տարիներին։ Ծվարած հայրենի բնաշխարհի լեռնակարկառներում կամ վանքերի մթին խցերում, նրանք շարունակել են իրենց անընդհատ ստեղծագործական նվիրումը։*

*Դեռևս Մովսես Խորենացին անդրադառնալով 5-րդ դարում Հայաստանում գոյություն ունեցող քաղաքական ծանր վիճակին, երբ ինքը շարադրել է իր «Հայոց պատմությունը», ի միջի այլոց գրել է. «Հէնք*

---

*հռոմեացիներին, պարտություն են մատնում նրանց. երբ Ներոնն ստիպված է լինում ընդունելու հայերի առաջարկը՝ Հայաստանի անկախությունը ճանաչելու մասին, պայմանով, որ Տրդատը գնա Հռոմ և անձամբ իր ձեռքով թագադրվի։*

*եկեալ անհատք և յոլովից կողմանց, գերփումն տանց և յափշտակութիւն ստացուածոց. կապումն գլխաւորաց և բանտք յայտնեաց. յօտարութիւն վտարումն ազատաց և անթիւ նեղութիւնք ռամկաց. առումն քաղաքաց և քանդումն ամրոցաց. աւերումն աւանաց և հրդեհումն շինուածոց. սովք անբաւք և հիւանդութիւնք և մահք բազմօրինակք...»*[1]։

*Նման պայմաններում է ստեղծվել նաև Եղիշեի նշանավոր «Վարդանանց պատմությունը», որի տարբեր էջերում մենք գտնում ենք հեղինակային այսօրինակ վկայություններ*[2]. *«Ոչ ըստ կամաց արտօսրալիր ողբովք ճառագրեմք զբազում հարուածսն՝ յորում պատահեցաք և մեք իսկ ականատեսք լինելով»։*

*Մահն ու սարսափն է իշխել հայ մշակույթի գործիչներին նաև հաջորդ դարերում, երբ Հայաստանի վրա ծանրացել է բյուզանդական և արաբական տիրապետության լուծը, երբ նրա քաղաքներում ու գյուղերում իրենց ավերածություններն ու կոտորածներն են կատարել սելջուկմոնղոլական հորդաները, Իրանի բռնակալ շահերն ու սուլթանական արյունկզակ ջարդարարները։*

*Ապացույց՝ հայ հին ու նոր հեղինակների պատմագրական երկերից շատերի համապատասխան բովանդակությունը, այդ երկերի մի մասի բնորոշ վերնագրերը («Ողբ Եդեսիո», «Հիշատակարան աղետից», «Վերք Հայաստանի» և այլն), ինչպես նաև այն բյուրավոր սրտաուչ հիշատակարանները, որ թողել են մեր մագաղաթյա մատյանների գրիչները։*

*Ահա թե ինչ է գրել այդ կապակցությամբ միջնադարյան Հայաստանի անվանի իմաստասեր-փիլիսոփա և ուսուցիչ Հովհան Որոտնեցու ան Հակոբ գրիչը 1385 թվականին Երնջակի գավառի վրա «անօրեններ» կատարած բարբարոսական արշավանքների առիթով. «Գծագրեցաւ մատեանս ի թուականիս Հայոց ՊԼԵ, ի ժամանակիս, որ է դառն և լալաբեր...։ Այլ մեք ընդ տեղերահամբաւ և երանաշնորհ րաբունապետիս Հայաստանեաց և վերադիտողի տեառն Յովհաննու Որոտնեցոյ կայաք կարդալ և ի գրել ի համալսարան սորին, որ յայս անձուկ և խաւարեալ ժամանակիս փայլէր որպէս զարեգակն ի վերայ աշխարհի անուն սորին...։ Եւ մինչդեռ անճառ ցնծութեամբ և բերկրալից ուրախութեամբ լցեալ կայաք... եկին և առին զբերդն Որոտան... Եւ կամէին ձերբակալ*

[1] Մ. Խորենացի, *Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1913, գիրք Գ, գլուխ ԿԸ, էջ 365—366։*

[2] Եղիշե, *Պատմութիւն Վարդանանց, Տփխիս, 1904, էջ 11, 24, 77 և հով.։*

*առնել զսուրբ բաբունիս մեր վասն հայրենեացն ժառանգութեան։ Եւ առ կամօքն աստուծոյ զերծաւ ի նոցանէ և Բ ամ բոլոր յայլ և յայլ տեղիս շրջէր աշակերտօք հանդերձ կարդալով և ուսուցանելով։ Եւ ես ծանրաբեռն մարմնով, զթուղթ և զօրինակ, զգրիչ և զթանաք ի յուս իմ բարձեալ, ի հետ գնացի, կարդայի, և որչափ ժամանէի՝ զսուրբ մատեանս գրէի, բազում նեղութեամբ և չարչարանօք, զի ուր սկսա անդ ոչ էառ զկատարումն»*[1]։

*Հար և նման վկայություն է թողել մեզ նաև մեր մոտիկ անցյալի նշանավոր պատմաբան Լեոն իր «Հայոց պատմություն» հեղինակային հիշատակարանի մեջ։ Նա գրել է. «Վերջակետը դրի 1921 թվականի հունվարի 19-ին (ն.տ.), Ծննդյան թաթախման երեկոյան, ժամը 6 և կեսին։ Դառն ու նեղ ժամանակ է, աշխարհը տառապում է համաշխարհային պատերազմի հետևանքներից. Հայաստանում սով է։ Ղարա-բեքիր փաշան գրավել է Կարսի ամբողջ շրջանը, Ալեքսանդրապոլը և շրջակաները։ Ժողովուրդը արյուն-արցունք է թափում թյուրքի ձեռքին։ Կոտորածներ, ավարառություն, տղամարդկանց քշում տանում են էրզերում և էլ հեռու, կանանց ու աղջիկներին բռնաբարում։ Քաներորդ դարում ենք, բայց հային դեռ կրծում և ծվատում է հին արյունոտ իրականությունը։ Ե՞րբ է լինելու հանգստությունը, ով անողոք ու զարհուրելի ճակատագիր»*[2]*։ Այսպես և շատ ուրիշներ։*

*Հակառակ քաղաքական, հաճախ էլ նյութական այն ծանր պայմաններին, որոնց մեջ ապրել և ստեղծագործել են հայ մշակույթի գործիչները, նրանց երկերը ընդհանրապես աչքի են ընկնում իրենց առաջավոր ու կենսահաստատ գաղափարներով, մշակուն և բարձր արվեստով։ Այդ երկերի լավագույն նմուշները ըստ էության լինելով մաքառման ու պայքարի ստեղծագործություններ, ազատ են վրիժառության մարդատյաց ու արյունռուշտ միտումներից, հեռու հոռետես ու մռայլ տրամադրություններից։ Նրանց մեջ իրենց ցայտուն դրսևորումն են գտել Հայաստանի հասարակական լայն զանգվածներին հարազատ ու հասկանալի այնպիսի գաղափարներ, ինչպիսիք են՝ ազատասիրությունը, խաղաղասիրությունը, մարդասիրությունը, գովերգված և փառաբանված են՝ արդար աշխատանքն ու սերը, աշխարհիկ կյանքն ու վա-*

---

[1] Լ. Խաչիկյան, *ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 735։*

[2] Լեո, *Հայոց պատմություն, հատ. Բ, Երևան, 1947, էջ 735։*

յելքները, դատապարտված ու նզովված են՝ ճնշումը, բռնությունը, շահագործումն ու ձրիակերությունը։

Ահա թե ինչու գիտության, գրականության և արվեստի լավագույն ներկայացուցիչները Հայաստանում մեծ համարում են ունեցել ոչ միայն մտավորականության մեջ, այլև հասարակ ժողովրդի ամենալայն շրջաններում։ Դրա պերճախոս ապացույցներից են այն բազմաթիվ ավանդությունններն ու ավանդական զրույցները, որոնք դարերի ընթացքում հյուսվել ու պատմվել են մեզանում նրանց վերաբերյալ։

**26. Հին շրջան։**—*Բազմադարյան հայ մշակույթի առաջին մեծ երախտավորը, որի մասին բավական շատ ավանդություններ և ավանդական զրույցներ են հորինվել մեր ռամիկ ու շինական ավանդախոսների միջոցով, դա Մեսրոպ Մաշտոցն է՝ անդրանիկ հայ ուսուցիչն ու թարգմանիչը, գրողն ու գիտնականը։*

Ինչպես Արևելյան, այնպես էլ Արևմտյան Հայաստանի տարբեր վայրերում, տարբեր դարերում հյուսված ու պատմված այդ ստեղծագործությունների մեջ յուրովի արտացոլված է Մեսրոպ Մաշտոցի կյանքն ու գործը, դրսևորված է նրա կատարած պատմական մեծագույն առաքելության համազգային ընդունելությունն ու բուն ժողովրդական ընկալումը, հրաշապատում պատկերներով ու մոտիվներով խորհրդանշված է այն բախտորոշ դերը, որ ունեցել են Մաշտոցի ստեղծած նշանագրերը հայերի ազգային, քաղաքական և մշակութային անկախության ու ինքնուրույնության հաստատման ու ամրապնդման համար։

Նշված ավանդություններում ու ավանդական զրույցներում պատմվում է, թե ինչպես Մեսրոպ Մաշտոցը հայերի համար տառեր գտնելու մտքով տարված, գիշերային տեսիլի ժամանակ մտովին պատկերացնում է այդ տառերը և նրանց նմանությամբ ստեղծում է հայոց գրերը (768 Ա, 768 Դ.), թե ինչպես նա լուսավորություն ու քրիստոնեություն տարածելու համար շրջում է Հայաստանում և հարևան վայրերում (Գողթն, Աղվանից աշխարհ, Բալու և այլն), կատարում է զանազան հրաշագործություններ (№ 741, 430, 632), թե ինչպես մեռնելուց հետո նրա ճկույթը թաղում են հայրենի Հացիկ գյուղում, իսկ մարմինը՝ Օշականում (№ № 739, 254), և այլն, և այլն։

Մեսրոպ Մաշտոցի կյանքի ու գործունեության մասին պատմող վերոհիշյալ և նույնօրինակ շատ ուրիշ ավանդությունների զգալի մասը կապված է Հայաստանի զանազան հիշարժան վայրերի, հուշարձանների ու տաճարների հետ։

*Այդպիսիք են, օրինակ, Մեսրոպ Մաշտոցի քարայրը Գողթան գավառի Մսրվանիս գյուղի մոտ (№ 90), Մաշտոցի այրը Բալուի բերդի մոտ (№ 102), Մաշտոցներ կոչված բնակավայրը Սևանա լճի արևելյան ծայրին (№ 466), Մեսրոպ Մաշտոցի եկեղեցին՝ Բաքվի Էրմանիքենդ թաղամասում (№ 637), Մեսրոպ Մաշտոցի գերեզմանը Տարոնի Հացիկ գյուղում (№ 739), Մեսրոպի գերեզմանը Բալուի հյուսիսային կողմում, Սուրբ Մեսրովբ լեռան մոտ (№ № 741), Մաշտոցի աղոթատեղին Բալուի շրջանի Չեթ գյուղի արևմտյան կողմում (№ 858) և այլն։*

*Քննության առարկա բոլոր ավանդությունների մեջ իրար համաձուլված հանդես են եկել մի կողմից պատմական ճշմարտացի փաստերը, մյուս կողմից բանահյուս ժողովրդի ստեղծագործական երևակայության բնորոշ արտահայտությունն հանդիսացող հրաշապատում պատկերներն ու կերպարները։*

*Իրական-պատմական փաստեր են հայոց գրերի գյուտը, Մաշտոցի ուսուցչական և քարոզչական գործունեությունը ինչպես Արևելյան, այնպես էլ Արևմտյան Հայաստանի մի շարք վայրերում, հեթանոսության մնացորդների հալածանքը Գողթն գավառում և Աղվանից աշխարհում, Տարոն գավառի Հացիկ գյուղի հետ նրա ունեցած կապը, Վաղարշապատում վախճանվելն ու Օշականում թաղվելը, որոնք համընկնում են ժամանակակցի ու ականատեսի այն վկայություններին, որ թողել է մեզ Մաշտոցի աշակերտ ու գործակից Կորյունը, իր «Վարք Մաշտոցի» կենսագրական հայտնի երկում[1]։ Պատմական հիմքից զուրկ չէ նաև բերված ավանդություններից մեկի մեջ եղած այն ակնարկը, որ վերաբերում է հայոց գրերի Բալուում ստեղծված լինելուն։ Այստեղ հավանորեն դեր է խաղացել Մաշտոցի գործակից երկու աշակերտներից մեկի բալուցի լինելու հանգամանքը (խոսքը Հովսեփ Պաղնացու մասին է)։ Եդեսիայից (կամ Սամոսատից) Հայաստան դառնալիս Մաշտոցը, ըստ երևույթին, իր այդ աշակերտի խնդիրք-դրդումով, այցելել է իրենց դարձի ճանապարհին գտնվող նրա հայրենի Պաղին կամ Բալու քաղաքը[2], ուր և տեղացի հայերը առիթ են ունեցել լսելու Մաշտոցի կատարած գյուտի մասին։*

---

[1] Կորյուն, *Վարք Մաշտոցի, Երևան, 1941, էջ 5, 36, 92, 94 և հտվ.։*

[2] *Հմմտ.* Ս. Երեմյան, *Հայաստանի քարտեզը Մեսրոպ Մաշտոցի դարաշրջանում (կցված է Կորյունի «Վարք Մաշտոցի» գրքին), Երևան, 1962։*

Բերված ավանդությունների մեջ հնարածին և հրաշապատում բնույթ ունեն՝ Մաշտոցի կողմից գավազանի հարվածով քարից ջուր բխեցնելը, ճկույթի պատմությունը, Վաղարշապատից Օշական տանող ճանապարհին քարի պատռվելն ու միջից ջուր բխելը, և նման այլ մոտիվներ, որոնց միջոցով ավանդաստեղծ ժողովուրդը հատկապես շեշտել է Մաշտոցի արտակարգ ընդունակությունների տեր մարդ լինելու հանգամանքը, գերբնական ու խորհրդավոր մեկնություն տալով նրա կատարած ազգային-լուսավորական մեծ գործին։

Մաշտոցի նման ժողովրդական ավանդությունների հերոս ու գործող անձ են դարձել հայ մշակույթի հին շրջանի գործիչներից նաև ուրիշ նշանավոր դեմքեր։ Այսպես.

Եղիշեի համար պատմում են, որ նա եղել է Վարդան Մամիկոնյանի զինվորն ու դպրապետը, մասնակցել է Ավարայրի ճակատամարտին։ Վարդանի զոհվելուց հետո, նա թողել է զինվորական ծառայությունը, դարձել է ճգնավոր Ռշտունյաց երկրում և գրել է իր «Վարդանանց պատմությունը»։ Ասում են նաև, որ երբ Եղիշեն վախճանվել է, նրա վրա լույս է իջել երկնքից։ Մարդիկ տեսնելով այդ հրաշքը, եկեղեցի են կառուցել նրա գերեզմանին, որտեղ դրանից հետո սկսել են կատարվել հիվանդների բազմաթիվ բժշկություններ։ Մի օր էլ լեռան վրայից մի բորոտ վիշապ է իջել և հառաչելով ու բառաչելով սկսել է լիզել Եղիշեի գերեզմանը։ Վիշապն իսկույն առողջացել է և մի պայծառ ակ թողնելով նրա գերեզմանին, հեռացել է։ Եղիշեի եկեղեցու դուռը միշտ բաց է եղել թե հայ և թե քուրդ ուխտավորների համար։ Նա շատ անգամ երևացել է նրանց երազում՝ իբրև կարմիր ձիու վրա նստած մի զորական կամ իբրև ճերմակամորուք վարդապետ (№ 731)։

Ավանդությունը ուշագրավ է նախ և առաջ իր պարունակած կենսագրական արժեքավոր տեղեկություններով (Եղիշեի՝ Վարդան Մամիկոնյանի զինվոր ու դպրապետ լինելը, նրա անձնական մասնակցությունը 451 թ. պատերազմին), որոնք լրացնում ու հարստացնում են պատմիչի կյանքի վերաբերյալ գրավոր աղբյուրներում եղած կցկտուր ու աղքատ տվյալները։ Պակաս նշանակալից չեն նաև Եղիշեի սրբացվելու հանգամանքը և այն հրաշապատում մոտիվները, որոնցով ներթափանցված է ամբողջ ավանդությունը (երկնքից լույս իջնելը, հիվանդ մարդկանց և վիշապին բուժելը, գերեզմանի՝ ուխտատեղի լինելու հանգամանքը)։ Դրանք պերճախոս ապացույց են այն լայն ժողովրդականության, որ վայելել է պատմիչը թե իր ժամանակակիցների և թե հա-

ցորդ սերունդների մեջ՝ իբրև Վարդանանց հերոսամարտի գործոն մասնակիցներից մեկը և մանավանդ իբրև այդ հերոսամարտի անմահ տարեգիրը։

Դավիթ Անհաղթի մասին ասում են, թե նա 60 ուրիշ իմաստասերների հետ մասնակցում է Աթենքում կայացած իմաստունների մրցումին։ Դավիթը մեծ հաջողությամբ մեկնում է քաղաքում կանգնեցված հատուկ պղնձյա բարձր սյան վրա գրված յոթ իմաստասերների խոսքերը և արժանանում մրցույթի դատավորների հիացմունքին ու փայլուն գնահատականին։ Այդ առիթով Դավթի ընկերները նստեցնում են նրան ակներով ու մարգարիտներով զարդարված ոսկե ապարի վրա և ուսերին առած սկսում են ման ածել քաղաքի շուրջը՝ «անհա՛ղթ Դավիթ» ցնծագին բացականչություններով։ Դրանից հետո Դավթի անունը մնում է Դավիթ Անհաղթ (№ 771)։

Ավանդության մեջ, օգտագործելով Դավիթ Անհաղթի Աթենքում ուսանելու և արտակարգ ընդունակությունների տեր մարդ լինելու կենսագրական փաստերը[1], հայ ավանդախոսները վիպական ձևով (60 հոգու հետ մրցույթի մասնակցելու պատմությունը, անհաղթ ածականի ստուգաբանությունը) բացահայտել են Դավիթ Անհաղթի մեծ հռչակը, իբրև հին աշխարհի նշանավոր փիլիսոփաներից մեկի։

**27. Միջին դարեր։**—Հին շրջանի գիտնականների և պատմիչ-գրողների հետ միասին մեզանում ժողովրդական ավանդախոսների ուշադրության առարկա են դարձել հայոց միջնադարյան գեղարվեստական գրականության, մասնավորապես միջնադարյան հայ քնարերգության նշանավոր ներկայացուցիչները, մի քնարերգություն, որը Վ. Բրյուսովի բնութագրմամբ հանդիսանում է «մարդկային ոգու ամենասքանչելի հաղթանակներից մեկը, որպիսիք երբևէ ճանաչել է համայն աշխարհի տարեգրությունը»[2]։

Առանձնապես շատ ու տարածված են եղել Գրիգոր Նարեկացու մասին հյուսված ժողովրդական ավանդություններն ու ավանդական զրույցները։ Բանահյուսական այդ ստեղծագործությունների գոյության ու տարածման փաստը պայմանավորված է գրական այն մեծ հռչակով, որ ունեցել է նա հայության ամենահոծ զանգվածներում վերածնության շնչով ատգորված իր խորախորհուրդ և բարձրարվեստ ստեղծագործու-

[1] Տե՛ս Գ. Զարբհանալյան, *Հայկական հին դպրության պատմություն*, Վենետիկ, 1886, էջ 296—301։

[2] *В. Брюсов,* Поэзия Армении, М., 1916, էջ 7։

թյուններով, մասնավորապես՝ համամարդկային և ազգային նշանակալից հարցեր արծարծող իր «Ողբերգության մատյանով» կամ «Նարեկով»: Գրական իսկական մի կոթող, որը օտարների իսկ կողմից համեմատվել է Հոմերոսի, Դանթեի, Շեքսպիրի ու Գյոթեի գործերի հետ, համարվել հայ ժողովրդի մշակույթի չափանիշը, իսկ նրա հեղինակն էլ՝ տառապած և հանուն հոգեկան մեծության, հանուն անբծության՝ մեղքի դեմ մաքառած, ազգային համընդհանուր խոր ապրումների, մեծ քաղաքակրթության տեր մի ժողովրդի հույզերի ու մտորումների արտահայտիչը[1]: Մի ստեղծագործություն, ուր Թումանյանի բառերով ասած՝ «հայի լեզուն չի որ խոսում է, բերանը չի որ պատմում է, կրակված սիրտն է, որ այրվում է երկիրը բռնած, տանջված հոգին է, որ մռնչում է մինչև երկինք»[2]: Բնատուր հանճարի կատարյալ մի հրաշագործություն, որը ընթերցողին հիացնում է հեղինակի ստեղծագործական արտակարգ երևակայությամբ, անօրինակ բուռն զեղումներով, բանաստեղծական անկրկնելի պատկերներով:

Հայ ժողովուրդը ներքին մի բնազդով զգացել է Նարեկացու «Ողբերգության Մատյանի» վերոհիշյալ արժանիքները, իր հոգու աչքերով յուրովի թափանցել նրա էության խորքերը և ըստ այդմ այն համարել իսկական մի հրաշալիք, իսկ նրա հեղինակին էլ՝ կատարյալ հրաշագործ մի էակ:

Ահա թե ինչով պետք է բացատրել այն փաստը, որ բազմաթիվ հայ ընտանիքներում, անկախ վերջիններիս ընչքային ու կրթական վիճակից, «Նարեկը» դարեր շարունակ եղել է ամենանվիրական ու հարգի գրավոր մատյանը, որին վերագրվել է ոչ միայն հոգեկան, այլև ֆիզիկական ցավեր բուժելու մեծ զորություն: Ահա թե ինչու Մեսրոպ Մաշտոցի նման ժողովուրդը սրբացրել է նաև Նարեկացուն, ուխտավայր դարձրել Վասպուրականի Նարեկա վանքում գտնվող նրա գերեզմանը: Ահա թե ինչու Նարեկացու մասին նրա ստեղծած բազմաթիվ ավանդությունները ու ավանդական զրույցները դարերի ընթացքում, բանավոր ու գրավոր ուղիներով տարածվել են Արևմտյան և Արևելյան Հայաստանի զանազան կողմերում և հայրենիք այլ վայրերում, Ռշտունյաց երկրի Նարեկ գյուղից մինչև Ռուսաստանի հայաշատ Աստրախան քաղաքը[3],

---

[1] «Մատյան Ողբերգությանը Ֆրանսերեն», տես «Հայրենիքի ձայն», 1965, № 37:

[2] Հ. Թումանյան, Երկերի ժողովածու, հատ. 4, Երևան, 1951, էջ 158:

[3] Ավելորդ չենք համարում այստեղ արձանագրելու, որ Աստրախան քաղաքում է գրված, ավելի ճիշտ ընդօրինակված, Նարեկացու մասին ժողովրդական ավանդությունններ

կապվել Հայաստանի սահմաններում և նրանից դուրս գտնվող բազմաթիվ հիշարժան վայրերի, հուշարձանների ու առարկաների հետ[1], ստացել համահայկական-համազգային նշանակություն։

Գրիգոր Նարեկացու մասին պատմող ժողովրդական ավանդությունները գաղափարական և ճանաչողական նշանակալից արժեք ներկայացնող բանահյուսական վավերականներ են[2]։ Նրանց մեծ մասի էությունը կազմում է այն սրտացավ ու ջերմ վերաբերմունքը, որ ցու-

---

ու զրույցներ պարունակող ամենահարուստ ձեռագիր ժողովածուն՝ «Վարք և պատմութիւն սրբոյն Գրիգորի Նարեկացւոյն» ընդհանուր խորագրով, որ պարունակում է թվով 17 ուշագրավ ավանդություններ և զրույցներ գրաբար լեզվով։ Այդ ժողովածուն ներկայումս գտնվում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանի բազմահազար ձեռագրերի շարքում, 9861 թվահամարի տակ։ Թե ե՞րբ, որտե՞ղ և ի՞նչ հանգամանքներում է ստեղծվել այն՝ հայտնի չէ։ Ժողովածուի մասին որոշ տեղեկություն է տալիս նրա վերջում գտնվող գրչական հետևյալ համառոտ հիշատակարանը. «Եւ պարտ է գիտել, թէ զպատմութիւնս ո՞ւստի գրեցաւ, կամ յո՞րում ժամանակ։ Ի ՌՃԿԲ (= 1713) թուականութեանս մերում եկն Թաւրիզեցի Տէր Մարտիրոսն ի քաղաքս Թփխիզ, Գրիգոր Նարեկայ աջովն և կոնդակովն, ու տեսեալ Մովսէս քահանային զկիսկատար պատմութիւնս, ցանկացաւ սմայ, և յոյժ փափագմամբ ետ գրել ձեռամբ զակամեցի յոգնիմաստ Սարգիս քահանային։ Ետ ժամանակաց յօրինակեցաւ ձեռամբ Գրիգոր Կղերիկոս Մանուկեան, ի փառս հրաշագործողին Աստուծոյ, և ի պատիւ սրբոյն Գրիգորի Նարեկացւոյ հրեշտակական վարդապետին։ Արդ, ով ոք հանդիպիք սմա ընթեռնելով կամ օրինակելով, յիշեսջիք ի յաղօթս ձեր միով հայրմերիւ և դուք յիշեալ լիջիք առաջի Աստուծոյ։ Ամէն։

Գրեցաւ ի Աստրախան քաղաքի, ի 1837 թուականիս փրկչականի և ի յամսեանն դեկտեմբերի» (տե՛ս Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 9861, էջ 22բ—23ա։ Այս ձեռագրի վրա, իրարից անկախ և տարբեր ժամանակ, մեր ուշադրությունն են հրավիրել Մատենադարանի տնօրեն Լ. Խաչիկյանը և ձեռագրական բաժնի վարիչ Օ. Եգանյանը։ Օգտվելով առիթից երկուսին էլ հայտնում ենք մեր շնորհակալությունը)։

[1] Իբրև օրինակ հիշենք՝ Նարեկացու քարերը Վասպուրականի Նարեկ, Խարգիթ գյուղերի և Նարեկա վանքի մոտակայքում (№ 190 Ա, Բ և Գ), Նարեկացու աղբյուրը Վասպուրականի Նարեկ գյուղի մոտ (846), Նարեկացու գիհին և Կարոս խաչը Վասպուրականի Ջեվե գյուղում (322 Բ, 774 Ի), Առեր կղզին Վանա լճում (224), Նարեկացու տունը Եվդոկիայի արևմտյան կողմում (№ 861). և այլն։

[2] Դրանցից մի քանի նմուշներ են միայն տպագրված։ Գոյություն չունի նաև ուսումնասիրություն այդ մասին։ Եղածը առանձին ակնարկներ ու դիտողություններ են՝ արված այս կամ այն առիթով (տե՛ս Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք Ա., Երևան, 1941, էջ 524 (Նարեկացու կենսագրության առնչությամբ), Հովհ. Թլկուրանցի, Տաղեր, աշխատասիրությամբ Էմ. Պիվազյանի, Երևան, 1960, էջ 65—71 (Թլկուրանցու «Գեղ մի կայր Նարեկ անեն» սկզբնատողով վիպական տաղի առիթով), և այլն։

ցաբերում է Նարեկացին հասարակ մարդկանց նկատմամբ, օգնելով վերջիններիս նրանց առաջ ծառացած դժվարությունների և պատահած դժբախտությունների ժամանակ։ Ըստ այդ ավանդությունների՝ Նարեկացին կամավոր իր վրա է վերցնում Խարգիթ գյուղի մեռած հովվի պարտականությունը և ստացած վարձը տալիս է նրա անօգնական մնացած կնոջն ու յոթ որբերին (№ 774 Թ.), աղոթելով աստծուն, մեջտեղից երկու կես է անում այն վեմ քարը, որը չէին կարողանում ջարդել և ճանապարհից հեռացնել վանքի առուն փորող մշակները (№ 774 ԺԲ), թողություն և արքայություն է հայցում աստծուց Տիգրիս գետի վրա կամուրջ կապող վարպետի համար, որը կռապաշտ լինելու պատճառով, մեռնելուց հետո դժոխք էր ընկել (№ 774 ԺԴ), աստծու միջոցով պատժել է տալիս շահամոլ տանուտիրոջը, որը կիրակի օրերն անգամ չարաչար աշխատեցնում էր իր 40 մշակներին (№ ԺԸ), աստծու օգնությամբ կենդանացնում է մեռած նորապսակ երիտասարդին, անհուն խնդություն ու երջանկություն պատճառելով նրա ողբացող ծնողներին ու հարսնացուին (№ 774 Ը), կենդանացնում է աղքատ պառավի՝ երկանքի քարի տակ մնացած թխսկանին ու ձագերին (№ 774 Բ), խաչակնքելով՝ չոր քակորը թարմ լավաշ է դարձնում, որով կերակրվում են քաղցած հոտաղները (№ 774 Ժ), ծարավ մարդկանց համար գավազանի հարվածով ջուր է բխեցնում չոր քարաժայռից (№ 774 ԺԱ), վիրավոր անդամալուծի խնդիրքով նրան շալակած մի գյուղից մյուսն է տեղափոխում (№ 774 Զ) և այլն։

Գրիգոր Նարեկացուն նվիրված ժողովրդական ավանդությունների մեջ պատմվում է նաև այն դավերի ու ամբաստանությունների մասին, որ նյութվում են նրա դեմ։

Պատմում են, օրինակ, որ Նարեկացին մինչև կրոնավոր դառնալը հովիվ է եղել Վանա լճի ափին գտնվող Խարգիթ գյուղում։ Գրիգորի թշնամիները մի անգամ հարձակվում են նրա վրա և ուզում են ծեծել։ Նարեկացին թաքնվում է վեմ քարի ետևում, որը գողավոր ձև ստանալով, իր մեջ է առնում նրան։ Թշնամիները անցնում են քարի կողքով և չեն նկատում Նարեկացուն (№ 190Ա)։

Մեկ ուրիշ ավանդությամբ՝ մի քանի հաչաղկոտ (= նախանձ) ու սպր (= բիրտ) մարդիկ բամբասում ու չարախոսում են Նարեկացուն իբրև հերձվածողի։ Իշխաններն ու եպիսկոպոսները հավաքվելով որոշում են դատի տալ նրան։ Այդ նպատակով նրանք հրավիրակներ են ուղարկում Նարեկացու մոտ։ Սա հեզությամբ ընդունում է իր մոտ եկած

մարդկանց և հացի հրավիրելով, նրանց առաջները դնում է երկու տապակած աղավնի։ Օրն ուրբաթ է լինում։ Հրավիրակները հիշեցնում են Նարեկացուն պասի մասին։ Սա ներողություն է խնդրում նրանցից պասը մոռացած լինելու համար և առաջարկում է, որ նրանք հրամայեն աղավնիներին թռչելու։ Հյուրերը չեն կարողանում անել այդ։ Նարեկացին ինքն է հրամայում։ Նրա խոսքով տապակած աղավնիները թև առնելով թռչում, գնում են։ Հրավիրակները զարմանում և սարսափում են աչքով տեսած հրաշքից, գալիս պատմում են այդ մասին իրենց ուղարկող իշխաններին ու եպիսկոպոսներին, և Նարեկացու դեմ նյութված ամբաստանությունը խափանվում է (№ 774Ձ)։

Վերոհիշյալ բոլոր ավանդությունների մեջ Գրիգոր Նարեկացին հանդես է գալիս իբրև մի գաղափարատիպ, իբրև յուրօրինակ մի սուրբ։ Ի տարբերություն քրիստոնեական եկեղեցու սովորական սրբերի, որոնք հիմնականում ծառայում են կրոնին և եկեղեցուն, Նարեկացու մտահոգությունների գլխավոր առարկան հասարակ ժողովուրդն է, վերջինիս հուզող կենսական հարցերը։ Նրա կյանքի ու գործի պատմությունը, ըստ ավանդությունների, ոչ այլ ինչ է, բայց եթե հարազատ ժողովրդի լայն խավերի զբաղմունքի, կենցաղի ու հասարակական հարաբերությունների բանահյուսական տարեգրությունը։

Ունենալով հիմնականում հրաշապատում բնավորություն, Նարեկացու մասին պատմող ժողովրդական ավանդություններն ու զրույցները զերծ չեն նաև որոշակի պատմական ատաղձից։

Իրական ու ճշմարտացի են, նախ և առաջ, այդ ավանդությունների ու զրույցների գործողության վայրերը։ Պատմական Հայաստանի Վասպուրական և Տուրուբերան նահանգներում գտնվող այն գավառները, քաղաքները, գյուղերն ու ավանները (Վան, Մուշ, Վարագ, Աղթամար, Արճեշ, Նոր-գեղ, Բելու, Զախավանց, Պատականց, Կազաղիչ, Խարզիթ, Ներքին Գազոխ, Արտոնք և այլն), վանքերն ու մենաստաններն (Նարեկա վանք, Սուրբ Կարապետի վանք, Վարդանանց վանք, Ապարանից Սուրբ Խաչ վանք և այլն) են դրանք, ուր ծնվել, ապրել, ուսանել, քարոզել, այցելել ու ստեղծագործել է ինքը՝ Նարեկացին։

Թեև ժամանակագրական ու այլ կարգի զանազան խախտումներով, բայց ըստ էության իրական ու ճշմարտացի են իրենց արմատներով նաև Նարեկացուն նվիրված ժողովրդական ավանդություններում առկա կենսագրական ու կենցաղային որոշ մոտիվներ, պատմական դեպքեր, դեմքեր, հարաբերություններ, որոնք գոյություն են ունեցել միջնադար-

յան Հայաստանում Նարեկացուն շրջապատող միջավայրում, նրա ապրած ժամանակաշրջանում, նրանից առաջ և հետո։

Այդպիսիք են այն հիշատակությունները, որոնց համաձայն Նարեկացին եղել է Անանիա Շիրակացու քեռորդին (պետք է լինի Անանիա Նարեկացու) և Խոսրովի որդին, մանուկ հասակում աշակերտել է Եղիշե վարդապետին (№ 774Բ), առածու հրամանով «մեկ առել, հազար է սովորել», եղել է շատ «կարդացվոր», «ուսումնագետ» մարդ (№ № 774 ԺՁ, ԻԱ, ԻԳ), և այլն։

Առանձնապես ուշագրավ են տվյալ առումով վերևում բերված այն ավանդությունները, ուր խոսվում է Նարեկացու հակառակորդ եպիսկոպոսների, իշխանների և ուրիշ «սուպր» և «հաշաղկոտ» մարդկանց մասին (№ № 190Ա, 774Ջ)։

Ինքնաբերաբար հարց է առաջանում։ Դրանք նույն այն անձնավորությունները չե՞ն արդյոք, որոնց մասին հիշատակում է ինքը բանաստեղծը իր «Ողբերգության մատյանի» մեջ, իբրև իր «թշնամիների», «բամբասողների» և «խածնողների»[1]։ Նման ենթադրության համար որոշ հիմք են տալիս այն կասկածները, որ եղել են ժամանակին Նարեկացու հոր, նրա ուսուցչի և իրեն՝ Գրիգորի նկատմամբ, իբրև հերձվածողների։ Ահա ինչ է գրել այդ կապակցությամբ Մ. Աբեղյանը Նարեկացուն նվիրված իր մեծարժեք ուսումնասիրության մեջ. «Թե ինչո՞ւ են թշնամացել և բամբասել նրան (իմա Նարեկացուն—Ա. Ղ.) այդ չի իմացվում նրա Մատյանից. անհավանական չէ «Յայսմաւուրքի» հաղորդածը, թե նրան ամբաստանում էին իբրև հերձվածողի։ Նրա հայրը, Խոսրով Անձևացյաց եպիսկոպոսը, իր ծերության հասակում բանադրվում է իրեն ձեռնադրող Անանիա Մոկացի կաթողիկոսից իբրև հերձվածող, Նրա ուսուցիչ Անանիա Նարեկացին, ինչպես իր Խոստովանության Գրից երևում է, «մերձ ի մահ վիճակում, ոչ ինքնաբերաբար, այլ կատարելով կաթողիկոսի հրամանը՝ անիծել է թոնդրակեցիներին», ամենայն հավանականությամբ այն պատճառով, որ Խոսրով եպիսկոպոսի և կաթողիկոսի միջև տեղի ունեցած վեճերից հետո կարող էր կասկած ծագել և Անանիա Նարեկացու ուղղափառության մասին, քանի որ խնամիական կապեր կային սրա և Խոսրովի միջև և Անանիա Նարեկացուն էր աշակերտում Խոսրովի որդին՝ պատանի Գրիգորը։ Շատ հավանական

---

[1] Գր. Նարեկացի, Մատենագրութիւնք, 1840, էջ 291։

է, որ նույն կասկածն եղել է և Գրիգոր Նարեկացու մասին, քանի որ սա էլ գրած ունի թուղթ ընդդեմ թոնդրակեցի աղանդավորների»[1]։

Մ. Աբեղյանի առաջ քաշած վերոհիշյալ վարկածը մեր կարծիքով բավական հիմնավոր է և հաստատվում է համապատասխան առարկայական կռվաններով։ Այդ վարկածի հաստատմանը նպաստում են ամենից առաջ Նարեկացու գրական ստեղծագործությունները, մասնավորապես նրա «Ողբերգության մատյանը»։ Այստեղ առկա են այնպիսի միտումներ ու գաղափարներ, որոնք կարող էին դժգոհություն առաջացնել ժամանակի հոգևոր և աշխարհիկ վերնախավերի շրջանում, հիմք տալով նրանց հերձվածող կամ աղանդավորների համակիր համարելու «Նարեկի» հեղինակին։

Այդօրինակ միտումներից ու գաղափարներից են.

ա. Նարեկացու համարձակությունը՝ շրջանցելով պաշտոնական եկեղեցուն և անմիջական հաղորդակցության մեջ մտնելով երկնային տիրոջ հետ, «ի խորոց սրտից» բխած իր խանդավառ խոսքով՝ համուր մարդկության կատարած մեղքերի համար թողություն հայցելու անձամբ աստծուց, որը հիշեցնում է միջնադարյան հայ աղանդավորների (մծղնեականներ, թոնդրակեցիներ) համապատասխան դիրքորոշումը, որով աստծու հետ հոգևոր հաղորդակցությամբ միացած մարդու համար ավելորդ էին համարվում եկեղեցին ու նրա խորհուրդները (մարդը իր գործած մեղքերի համար պետք է անձամբ խոստովաներ միայն աստծուն, քանի որ ոչ եկեղեցին և ոչ էլ քահանան նրան ոչ մի օգնություն չէին կարող ցույց տալ այդ գործում)[2]։

բ. «Ողբերգության մատյանի» հեղինակի խորհրդածությունները՝ մի կողմից «խռովարար առաջյալների», «անկնդրուկ քահանաների», «գողամիտ հազարապետների», «շահարար վաճառականների», «թարմատար թագավորների», «ոգեկործան կայսրերի» և մյուս կողմից՝ «ամենուր մրրկող աղքատության հնոցի» մասին, որոնք հեռվից-հեռու արձագանքում են ժամանակակից հասարակական կյանքում տիրող սոցիալական անհավասարության ու անարդարության վերաբերյալ պավլիկյանների և թոնդրակեցիների մտքերին, համընկնում գույքերի արդար բաժանման, մասնավոր սեփականության վերացման, եկեղեցական կալվածների համայնացման նրանց առաջադրած պահանջներին։

---

[1] Մ. Աբեղյան, Երկեր, հատ. Գ., Երևան, 1968, էջ 79—80։

[2] Ե. Տեր-Մինասյան, Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Երևան, 1968, էջ 76, 168։

գ. «Ողբերգության Մատյանի» էությունը կազմող «մարդապաշտության» և «աստվածապաշտության» գաղափարները, որոնք զգալի չափով համընկնում են մարդու և աստծու նկատմամբ Թոնդրակեցիների մոտեցմանը։ Պերճախոս է այս տեսակետից այն փաստը, որ հակադրվելով իրենց նյութապաշտության մեջ մեղադրողներին, Թոնդրակեցիները հավաստել են, որ իրենք ոչ թե նյութապաշտ, այլ աստվածապաշտներ են, դրա համար էլ ոչինչ են համարում՝ խաչը, եկեղեցին, քահանային, անգոսնում են եկեղեցական ամուսնությունն ու պսակը (նրանց կարծիքով կատարյալ սերն այն է, երբ մարդիկ սիրով են մերձենում միմյանց։ Դա բխում է աստծու պատվիրանից և հաճելի է Քրիստոսին, որովհետև ինքը աստված սեր է և սիրով միավորվելն է կամենում, և ոչ թե եկեղեցական պսակը)[1]։

Մ. Աբեղյանի վարկածի անուղղակի հաստատումն են, մեր կարծիքով, նաև Նարեկացու մասին պատմող հայ ժողովրդական ավանդությունները, որոնց մեջ դժվար չէ նկատել այն միտումների ու գաղափարների բանահյուսական յուրօրինակ անդրադարձումները, որ մենք տեսանք վերևում, մի կողմից «Ողբերգության մատյանի», մյուս կողմից՝ Թոնդրակեցիների և աղանդավորական այլ ուսմունքների մեջ։ Այդ ավանդությունների ճանաչողական գլխավոր արժեքը, տվյալ դեպքում, ոչ այնքան նրանց մեջ արձագանք գտած պատմական այս կամ այն փաստի ճշգրտությունն է, որքան էլ նշանակալից լինի այդ փաստը, ինչքան պատմության տրամաբանությունը, դարաշրջանի ընդհանուր մթընոլորտը, և հատկապես այն կարծիքն ու ըմբռնումը, որ ունեցել են Հայաստանի ժողովրդական լայն զանգվածները հանճարեղ գրողի մասին։ Ըստ պատկերի յուրում ռամկացնելով Գրիգոր Նարեկացուն և հրաշագործ հատկություններ վերագրելով իր սիրելի հերոսին, հայ ժողովուրդը նրան դարձրել է սեփական նվիրական հույզերի ու մտորումների մարմնացումը, իր երազանքների ու ակնկալությունների իրականացնողը, նրա միջոցով մերկացրել ու դատապարտել է չարիքն ու անարդարությունը, հաստատել ու փառաբանել է բարին ու արդարը։

Ժողովրդական ավանդությունների մեջ առկա վերոհիշյալ անդրադարձումներից են.

ա) Աստծու կարևոր մասնակցությունը ավանդությունների մեծ մասի մեջ՝ Նարեկացու կատարած հրաշագործությունների ժամանակ։

---

1 Նույն տեղում, էջ 155, 178։

*բ) Նարեկացու և պաշտոնական եկեղեցու ներկայացուցիչների միջև մի քանի ավանդություններում առկա հակամարտությունը։*

*գ) Այն անսահման ու բոլորանվեր մարդասիրությունը, որ երևան է բերում Նարեկացին անխտիր բոլոր ավանդություններում։*

*դ) Առանձին ավանդություններում պաշտոնական եկեղեցու կողմից օրենքի ուժ ստացած կրոնական ձևերի ու խորհուրդների նկատմամբ Նարեկացու կատարած զանցառումները (ուրբաթ օրվա պասի մոռացումը, միջնորդությունը աստծու առաջ՝ դժոխքից դրախտ տեղափոխելու Տիգրիս գետի վրա կամուրջ շինող կռապաշտ վարպետին)։*

*ե) Հասարակ մարդկանց (հովիվ, աղքատ պառավ, վանքի կամ տանուտիրոջ համար աշխատող մշակներ) նյութական ու աշխատանքային ծանր պայմանները բարելավելու գործում Նարեկացու դրսևորած մտահոգությունը մի շարք ավանդություններում և այլն։*

*Բերված փաստերը, թվում է, թե բավական որոշակի լույս են սփռում Գրիգոր Նարեկացու՝ թոնդրակեցիների հետ ունեցած կապի վրա։ Նույն այդ փաստերը միաժամանակ հավաստում են մի իրողություն, որ ժողովրդի ընդերքից ելած հնօրյա ավանդախոսները ավելի ճիշտ են ընկալել գաղափարական այն աղերսը, որ իրականում գոյություն է ունեցել թոնդրակեցիների և Նարեկացու միջև, քան մեր օրերի որոշ գիտնականներ։ Դյուրագայթորեն խաբվելով թոնդրակեցիների դեմ Նարեկացու կողմից հարկադրաբար գրված «Թղթից», այդ գիտնականները անջրպետ են ստեղծել մեծ բանաստեղծի և հայ հասարակական մտքի ժամանակի առաջավոր հոսանքներից մեկի ներկայացուցիչների միջև։ Նրանք անտեսել են, որ Նարեկացին ոչ առաջինն է և ոչ էլ վերջինը ինչպես անցյալի, այնպես էլ նոր ժամանակների գիտության ու մշակույթի ականավոր գործիչների շարքում, որոնք իրենց նկատմամբ տարվող հալածանքներից խուսափելու համար ստիպված են եղել առերես դատապարտել սեփական իսկ դավանանքները։*

*Հայ գրականության, գիտության ու արվեստի միջնադարյան գործիչներից ժողովրդական ավանդությունների գործող անձ ու հերոս են դարձել ուրիշ նշանավոր դեմքեր ևս։ Այսպես.*

*Մխիթար Գոշի մասին ասում են, թե մի անգամ նա երազում տեսնում է աստծուն, որը նրան ասում է. «Մխիթար, յոթ տարի հացի առատություն է լինելու, յոթ տարի էլ՝ չորային. առատության ժամանակ պաշար հավաքի, որ սովի ժամանակ ժողովուրդը նեղություն չկրի»։ Լսելով աստծու խոսքը, Մխիթարը մեծ ամբարներ է շինել տալիս և հացի*

առատ տարիներին վանքի միջոցներով ջրերն է լցնում այդ ամբարնե-րը։ Երբ յոթ տարի անց սկսում է սովը, Մխիթարը մի գուշ (փայտե կլոր աման) է շինել տալիս և նրանով ջրերն է բաժանում ժողովրդին։ Դրա-նից հետո Մխիթարի անունը դնում են Գուշ կամ Գոշ Մխիթար, իսկ գյու-ղի անունն էլ՝ Գոշի գյուղ (№ 470)։

Ավանդության մեջ, որ կապված է Մխիթար Գոշի կյանքի ու գոր-ծունեության հիմնական վայրից (Նոր Գետիկի վանք) ոչ հեռու գտնվող Գոշ գյուղի հետ (Իջևանի շրջան) բանահյուսական կերպավորում է ստա-ցել Վերածնության շրջանի հայ նշանավոր գործիչներից մեկի մարդա-սիրությունը, նրա համակրական վերաբերմունքը ընչազուրկ, աշխա-տավոր խավերի նկատմամբ, որի արձագանքները մենք գտնում ենք նրա գրական երկերում («Առակներ», «Դատաստանագիրք»)[1]։

Ճարտարապետ, քանդակագործ և նկարիչ Վարպետ Մոմիկի մասին պատմում են, որ նա ժամանակին փոխադարձ սիրով կապված է եղել Սյունյաց իշխանի աղջկա հետ։ Իմանալով այդ, իշխանը մի օր կանչում է իր մոտ Մոմիկին և ասում է. Աղջիկս կտամ քեզ, եթե կարողանաս ինձ համար երեք տարում մի նոր վանք կառուցել Եղեգնաձորում։ Վարպետ Մոմիկը ընդունում է իշխանի դրած պայմանը և անմիջապես գործի է անցնում։ Մոտակա ապառաժներից ահագին քարեր կտրելով և խնամ-քով տաշելով ու քանդակազարդելով դրանք, նա արագությամբ բարձ-րացնում է իշխանի պահանջած նոր վանքի պատերը։ Ժամանակ անց, իմանալով, որ Մոմիկը ավարտելու վրա է վանքի կառուցումը, իշխանը մտահոգության մեջ է ընկնում։ Որպեսզի իր աղջկան չտա հասարակ քարագործ վարպետի, նա խորամանկության է դիմում։ Պատվիրում է ծառային բարձրանալ Մոմիկի կառուցած վանքի գմբեթը և այնտեղից ցած հրել նրան։ Ծառան կատարում է տիրոջ պատվերը, և Մոմիկի տա-շած վերջին քարը շիրմաքար է դառնում իր համար (№ 611)։

Ավանդությունն ունի իրական-պատմական որոշակի հիմքեր։ Իրական է, նախ և առաջ, Վարպետ Մոմիկի մասին եղած հիշատակու-թյունը՝ իբրև Եղեգնաձորի շրջանի Ամաղու գյուղից ոչ հեռու գտնվող Նո-րավանքի տաճարը կառուցողի ու քանդակազարդողի։ Դա ոչ այլ ոք է, բայց եթե միջնադարյան այն նշանավոր համանուն հայ արվեստագետը

---

[1] Մխիթար Գոշ, Առակներ, տեքստը ձեռագրերի համեմատությամբ և ներածությունը Էմ. Պիվազյանի, Երևան, 1951, էջ 14, 15, 22։

*(ճարտարապետ, քանդակագործ և մանրանկարիչ), որին վերագրվում է ինչպես Նորավանքի Բուրթելաշեն (Ս. Աստվածածին) երկհարկանի քանդակազարդ ու գեղեցիկ հայտնի եկեղեցու կառուցումը, այնպես էլ Վայոց ձորում գտնվող որոշ խաչքարերի քանդակները։ Պատմական հիմքեր ունի, այնուհետև Սյունյաց իշխանի հիշատակությունը՝ իբրև Նորավանքի տաճարը կառուցել տվողի։ Հայտնի է, որ 13-րդ դարից Նորավանքը սկսում է վայելել Սյունյաց Օրբելյան իշխանների լայն աջակցությունն ու հովանավորությունը, դառնալով Սյունիքի հոգևոր տերերի աթոռանիստ կենտրոնն ու դամբարանը։ Հայտնի է նաև, որ Նորավանքի բոլոր շինությունները կառուցված են Օրբելյան իշխանական տան անդամների կողմից և, ընդհանրապես, Նորավանքի ծաղկումն էլ հենց Օրբելյանների տոհմի տիրապետության հետ է կապված։ Ինչ վերաբերում է մասնավորապես Նորավանքի Ս. Աստվածածին երկհարկանի եկեղեցուն, ապա այն շինել է տվել Բուրթել Օրբելյանը[1]։*

*Գալով ավանդության հենքն հանդիսացող Վարպետ Մոմիկի և Սյունյաց իշխանի դստեր սիրավեպին, ապա վերջինս, ամենայն հավանականությամբ վիպական-բանահյուսական ծագում ունի, քանի որ ժամանակակից գրավոր աղբյուրները (պատմիչներ, վիմական արձանագրություններ) այդ մասին ոչ մի հիշատակություն չունեն։ Պատմականը այստեղ նման կարգի սիրավեպերի համար բնորոշ ողբերգական վախճանն է, իբրև հետևանք միջնադարի պայմաններում հասարակության տարբեր խավերի միջև գոյություն ունեցող սոցիալական խորը անջրպետի։*

*Սարգիս Պիծակի մասին ասում են, թե նա մի անգամ ծաղիկ է նկարելիս լինում, երբ հանկարծ մի պիծակ է մտնում սենյակը և նստում դիմացի լուսամուտին։ Նայելով պիծակին «ճարտար» նկարիչը ծաղկի վրա մեծ վարպետությամբ դուրս է բերում նրա պատկերը։ Նկարչի մոտ գտնվող մարդիկ կարծում են, թե դա կենդանի պիծակն է, որ նստել է ծաղկի նկարի վրա և փորձում են ձեռքով քշել նրան։ Այդ տեսնելով նկարչի հայրը՝ Գրիգորը սկսում է ծիծաղել և մարդիկ նոր միայն գլխի են ընկնում, որ դա կենդանի պիծակ չէ։ Այդ օրվանից նկարիչ Սարգսին կոչում են Սարգիս Պիծակ (№ 780)։*

---

[1] Տե՛ս Ս. Բարխուդարյան, *Դիվան հայ վիմագրության*, պրակ. Գ., Երևան, 1967, էջ 29, 39, 210, 228 և հաջ.։

*Ավանդության մեջ կենսագրական մի քանի տվյալների (նկարչի և նրա հոր անունները, նրա «ճարտար» ածականը)[1] և պիծակի հորինած պատմության[2] միջոցով բացահայտված է Սարգիս Պիծակի կերպարը իբրև փորձված ու հմուտ մի նկարչի, որը կենդանի գծերի և վառ գույների միջոցով կարողացել է իր նկարներում ստեղծել իրականության պատրանքը՝ արժանանալով ժամանակակիցների զարմանքին ու հիացմունքին։*

*Հայ աշխարհիկ ու հոգևոր ճարտարապետությունն ու մանրանկարչությունը չի սահմանափակվում միայն Վարպետ Մոմիկի և Սարգիս Պիծակի անուններով։ Ինչպես նրանցից առաջ, այնպես էլ հետո հայերն ունեցել են Տրդատի, Մանվելի, Թորոս Ռոսլինի պես հռչակավոր վարպետներ, որոնք ստեղծել են ընդհանուր ճանաչում գտած բազմաթիվ գլուխգործոցներ թե ճարտարապետության և թե նկարչության ու քանդակագործության բնագավառում, գլուխգործոցներ, որոնցից շատերը իրենց գեղարվեստական անկրկնելի հատկանիշներով զմայլանք են պատճառել ոչ միայն ժամանակակիցներին, այլև հետնորդ սերունդներին։*

*Հայ հին և միջնադարյան գրավոր աղբյուրները (մատենագիրներ, հիշատակարաններ, վիմական արձանագրություններ), ցավոք, շատ ժլատ ու կցկտուր տեղեկություններ են պահպանել մեր մշակույթի այդ գործիչների վերաբերյալ, անհայտության ու ստվերի մեջ թողնելով նրանցից շատերի անունները։*

*Երախտագետ ժողովուրդը իր ավանդախոսների բերանով, հաճախ առանց անունները տալու, պատմել է նրանց կյանքի ու գործի մասին, հիացել է նրանց կատարած հրաշագործություններով, դառնացել նրանց բաժին ընկած հաճախ շատ դժվարին կյանքի ու ողբերգական ճակատագրի համար։*

*Հայոց ավանդական առաջին քարագործ վարպետն ու քանդակագործը եղել է Հայկ նահապետի թոռան՝ Պասքամի տոհմից սերող դյուցազն Տորքը։ Մ. Խորենացու վկայությամբ հին Հայաստանում տարածված է եղել առասպելական մի ավանդություն, ուր երգելով պատմվել է, թե ինչպես Տորքը եղունգներով արծիվներ է փորագրել ապառաժներից պոկված որձաքարերի վրա։*

[1] Ղ. Ալիշան, *Սիսական*, Վենետիկ, 1885, էջ 517։

[2] *Նմանօրինակ պատմություններ են հյուսվել նաև աշխարհահռչակ այնպիսի նկարիչների մասին, ինչպիսիք են Միքել-Անջելոն, Լեոնարդո Դա Վինչին և այլն։*

*«Երգէին նմա բուռն հարկանել զորձաքար վիմաց ձեռօք, ուր ոչ գոյր գեղութիւն, և ճեղքել ըստ կամաց մեծ և փոքր և քերել եղնգամբքն և կազմել որպէս տախտակ, և գրել նոյնպէս եղնգամբք խրովք արծուիս և այլս այսպիսիս»*[1]։

*Որոշ գիտնականների կարծիքով Խորենացու բերած այս առասպելական երգ-ավանդությունը պարունակում է իր մեջ քարեդարյան շրջանի բնորոշ տարրեր։ Նրա մեջ պահպանվել են հետքեր այն վաղնջական ժամանակներից, երբ մարդիկ իրենց ճարտար արվեստն արտահայտում էին միայն սեփական ձեռքով ու քարով*[2]։ *Ուրիշների հավաստմամբ՝ ժողովրդական դիտողությունը դեռ հնուց նկատել է Հայկական լեռնաշխարհի զանազան կողմերում լեռնային ապարների վրա սառույցի հոսելուց առաջացած խորագծեր և վերագրել է այդ «Անգեղ հսկայի» եղունգների վարպետությանը*[3]։

*Գեղամա և Սյունիքի լեռներում, Արագածոտնում և Հայաստանի մի շարք ուրիշ վայրերում վերջին տարիներս հնագետների կողմից հայտնաբերած հազարավոր հիանալի ժայռապատկերները, մեր կարծիքով, ավանդական Տորքին վերագրված քարարվեստի այդօրինակ նմուշներից են, որն այնքան տարածված ու ծաղկած է եղել Հայկական լեռնաշխարհի հնագույն բնակիչների մոտ*[4]։

*Միջնադարյան Հայաստանի ճարտարապետական ամենաուշագրավ հուշարձաններից է Գեղարդավանքը կամ Այրիվանքը, կառուցված 13-րդ դարի երկրորդ կեսին։ Ժողովրդական ավանդությունն ասում է, թե Գեղարդավանքը կառուցել են ազնվական ծագում ունեցող քույր ու եղբայր, ցանկանալով իրենց մահվանից հետո անմոռաց հիշատակ թողնել աշխարհում։ Չիմանալով, թե ո՞րտեղից պետք է սկսել գործը, եղբայրը դիմում է աստծու օգնությանը։ Լուսաբացին քնից զարթնելով, նա իր կռանը գտնում է դրված ապառաժի ծայրին։ Գլխի է ընկնում, որ վանքի շինությունը այդտեղից էլ պետք է սկսել։ Եվ քույր ու եղբայր*

---

1 Մ. Խորենացի, *Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1913, գիրք Բ., գլուխ Ը, էջ 115*։

2 Խ. Սամուելյան, *Հին Հայաստանի կուլտուրան, Ա. հատոր, էջ 307—308*։

3 Թ. Հակոբյան, *Ուրվագծեր Հայաստանի պատմական աշխարհագրության, Երևան, 1960, էջ 11*։

4 Ս. Սարդարյան, *Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, Երևան, 1967, էջ 113, 118*, Գր. Կարախանյան, Պ. Սաֆյան, *Ժայռապատկերներ Սյունիքում, «Սովետական արվեստ», 1967, № 1, էջ 31—38*։

*անմիջապես գործի են անցնում։ Եղբայրը ջարդում է ապառաժը, իսկ քույրն էլ ջարդված քարերը մազերի մեջ դնելով, բարձրացնում է ձորից վեր։ Նրանց աշխատանքը այսպես տևում է երկար տարիներ, մինչև որ քույր ու եղբայր ժայռի մեջ փորում, պրծնում են իրենց ուխտած վանքը (№ 609)։*

*Անկասկած է, որ Հրաշապատում այս ավանդության ծնունդ է տվել այն զմայլանքն ու սքանչացումը, որ առաջ է բերել ժողովրդի մեջ Գեղարդավանքը, որը Թորամանյանի խոստովանությամբ, «ամենեն ավելի փորձված արվեստագետներուն անգամ անհավատալի պատրանք թվալու չափ նրբությամբ, համաչափությամբ ու վայելչությամբ կերտված է ընդհանրապես»*[1]*։*

*Համապատասխան գրավոր հավաստի վկայություն չունենալով ձեռքի տակ, մենք չենք կարող որոշակի ասել, թե իրականում ովքե՞ր են հանդիսացել Գեղարդա վանքի ծրագրող ճարտարապետն ու նրա կառուցող քարագործ վարպետները և առհասարակ ինչ կերպ է գլուխ բերվել գեղարվեստական այդ հիասքանչ հուշարձանը։ Հայտնի է միայն նրա ժամատներից մեկի կառուցող վարպետի անունը (Գալձագ), որն արձանագրված է նրա գմբեթի նռնազարդ երիզի վրա և մեկ էլ այն, որ վանքը* կառուցել է տվել *Պռոշ իշխանի որդի Պապաքն իր Ռուզուքան կնոջ հետ, հայոց ՉԼԷ (= 1288) թվականին, ի հիշատակ իրենց հոգու*[2]*։*

*Կարելի է ենթադրել, որ ավանդության մեջ իբրև Գեղարդը ստեղծող անձինք հիշվող քույրն ու եղբայրը հիշյալ Պապաքն ու Ռուզուքանն են, որոնք իրականում* ոչ թե ստեղծել, *այլ* միայն կառուցել են տվել *այն, իրենց տրամադրած դրամի ուժով, ավանդախոսների երևակայության մեջ գրավելով վանքը կերտող ճարտարապետի և քարագործ վարպետների տեղը։*

*Տաթևի վանքը կառուցող ճարտարապետի մասին պատմում են, որ երբ նա ավարտելով իր գործը, հասնում է վանքի գմբեթի ծայրին, վերևից ցած է նայում և տեսնելով ձորի ահավոր խորությունը, սարսափահար սկսում է մտածել, թե ինչպե՞ս է ինքը գետին իջնելու։ Ստիպված նա դիմում է աստծուն և թևեր խնդրում, որպեսզի թռչի, անցնի ձորի մյուս կողմը։ Լսելով ճարտարապետի աղաչանքը, աստված թևեր է տա-*

---

1 Թ. Թորամանյան, *Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, հատ. Ա., Երևան, 1942, էջ 349։*

2 Գ. Հովսեփյան, *Խաղբակյանք կամ Պռոշյանք, մասն Ա., Վաղարշապատ, 1928, էջ 114, 143, 291։*

լիս նրան, որոնցով նա թռչում, գնում է հեռու աշխարհներ։ Ճարտարապետի անհայտանալուց հետո, ոչ ոք չի իմանում, թե ինչպե՞ս պետք է հանել այն գերանները, որոնց վրա հենված էր վանքի կամարակապ կտուրը։ Գնում են ճարտարապետի ետևից։ Երկար որոնելուց հետո նրան գտնում են մի հեռավոր տեղում, իմանում փայտամածը հանելու եղանակը, վերադառնում Հայաստան, հանում են փայտերը և վանքի անունը դնում են Տաթև (= տա թև...) ի հիշատակ այն թևերի, որ տվել էր աստված նրա ճարտարապետին (№ 618)։

Մի ուրիշ ավանդության համաձայն, երբ սկսում է կառուցվել Տաթևի վանքը, սրա ճարտարապետն ու վանքի համար առու փորող վանականը գրազ են գալիս, թե իրենցից ո՞վ ավելի շուտ կվերջացնի իր գործը։ Երկուսն էլ թափով սկսում են աշխատել։ Ժամանակ անց, վանականը հեռվից նկատելով, որ ճարտարապետը ավարտելու վրա է վանքի կառուցումը, գրազը տանուլ չտալու համար, որոշում է խաբել նրան։ Ջրի հակառակ կողմից նա կախում է մի մեծ ու երկար սավան, որը քամուց ալիքաձև ծածանվելով, հեռվից ջրի է նմանվում։ Վանքի գմբեթի վերջին քարերը շարելիս, ճարտարապետը հանկարծ տեսնում է այդ և կարծելով, թե վանականը իրենից առաջ արդեն վերջացրել է իր գործը, պարտված չլինելու համար, ինքնասպան է լինում՝ իրեն ձորը նետելով գմբեթից (№ 243)։

Բերված երկու ավանդությունների մեջ բանահյուսական պատկերավոր դրսևորում է գտել մի կողմից Տաթևի վանքի բարձր դիրքը, ճարտարապետական վեհությունը, շրջապատի լեռնային բնանկարի հետ ունեցած նրա ներդաշնակությունը, մյուս կողմից՝ վանքը կառուցող ճարտարապետի ազնիվ հոգին ու վեհանձնությունը և ջրի առուն փորող վանականի նենգավոր սիրտն ու տմարդությունը։

Արարատյան դաշտից դեպի Կարին տանող ճանապարհին, Արաքսի և Մուրցի գետախառնուրդի վրա, Վերին Բասենի մոտ կա մի մեծ կամուրջ, որը հայ աշխարհիկ ճարտարապետության կոթողներից մեկն է և հայտնի է Չոբանի կամուրջ անունով։ Ավանդությունն ասում է, թե սրա մոտ ապրող բնակիչները շատ անգամներ փորձ են արել ամրացնել կամուրջը, բայց Արաքսը գետը միշտ ավերել է այն։ Կամուրջը միայն այն ժամանակ է անխախտ մնացել իր տեղում և դիմադրել Արաքսի կատաղի ջրերին, երբ մի ճարտար հովիվ մեծ հմտությամբ դրել է նրա հիմքի քարը, որի համար էլ այն դրանից հետո կոչվել է Չոբանի կամուրջ (№ 586)։

Իր բնույթով լինելով տիպիկ հնարածին-բանահյուսական ստեղծագործություն, տվյալ ավանդությունը զերծ չէ պատմական որոշ հիմքերից և բնութագրական է ժողովրդական ավանդախոսների հասարակական հոգեբանության համար։

Գրավոր աղբյուրներից մեկի հավաստմամբ «Այս գեղեցիկ կամուրջը, ընկած է Արաքս գետի վրա և պահպանվում է յոթ քարե գեղեցիկ կամարներով»[1]։ Ըստ մի այլ վկայության, այն բաղկացած է «Համակ սպիտակ և գորշագույն որձաքարէ, յորս նշմարին և գիծք քանդակեալք առ նշանակէ ինչ։ Արդարև ճարտար և ամուր շինուած, որոյ զդէմ կալեալ է այնքան բուռն բախման ալեաց դարս յոլովս»[2]։

Վերոհիշյալ երկու վկայություններն էլ յուրովի հաստատում են խնդրո առարկա կամուրջի կառուցման հետ կապված դժվարությունների վերաբերյալ ժողովրդական ավանդության մեջ եղած համապատասխան ակնարկների ճշմարտացիությունը։ Ուշագրավ է հատկապես այն հանգամանքը, որ ժողովուրդը կամուրջի կառուցումը կապել է ոչ թե որևէ նշանավոր իշխանի կամ թագավորի, այլ մի «ճարտար» հովվի անվան հետ, անկախ այն բանից, թե ովքեր են եղել իրականում նրա ճարտարապետն ու կառուցող քարագործ վարպետները։

Հայաստանի աշխարհիկ ու հոգևոր ճարտարապետական կառույցների մասին պատմող ժողովրդական ավանդությունների մեջ նշանակալից տեղ են գրավում այն պատումները, ուր խոսվում է մեր հնօրյա ճարտարապետների, քարագործ վարպետների ու նրանց աշակերտների անձնական ու աշխատանքային փոխհարաբերությունների մասին։ Այսպես.

Սանահնի հռչակավոր վանքը կառուցող վարպետի մասին ավանդությունն ասում է, որ նա մի անգամ վեճի է բռնվում հարազատ որդու հետ։ Սա թողնում է հոր հետ աշխատելը և մի ենթավարպետի հետ Հաղբատ գյուղում, տեղի իշխանի պատվերով ինքնուրույն կերպով սկսում է մի նոր վանք շինել։ Լսելով այդ մասին, վարպետ հայրը ժամանակ անց գալիս է Հաղբատ՝ տեսնելու համար որդու ձեռքերի աշխատանքը։ Ուշադիր ու լավ զննելով որդու բարձրացրած պատի շարվածքը, վարպետը դիմելով որդուն, գոհունակությամբ ասում է. Հախ պատ է (այսինքն՝ լավ, ամուր պատ է) և փաթաթվելով նրան համբու-

[1] *В. Потто,* Кавказская война, Тифлис, 1888, *հատ. 4, պրակ. 3, էջ 261։*
[2] Ղ. Ալիշան, *Այրարատ, Վենետիկ, 1890, էջ 24։*

*րում ու հաշտվում է հետը։ Այդ օրվանից էլ վանքի անունը մնում է Հախպատ (№ 647)։*

*Մի ուրիշ ավանդության մեջ պատմվում է, որ Մակարավանքը կառուցող վարպետը ուխտ է անում՝ մինչև ամբողջ վանքը չավարտի, շենքից ցած չիջնի։ Նրա որդին քարտաշություն էր անում հոր հետ նույն տեղում։ Շենքի քարերը տաշելով նա դրանք ուրիշների ձեռքերով հանձնում էր հորը։ Երբ ավարտվելու վրա է լինում վանքի կառուցումը և մնում է միայն գմբեթը, քարտաշ որդին հիվանդանալով մեռնում է։ Հարազատները որոշում են այդ մասին ոչինչ չասել շինարարության վրա գտնվող հորը և մեռած որդու փոխարեն կանչում են մի ուրիշ քարտաշի։ Սրա ուղարկած քարերի տաշվածքից վարպետ հայրը տեսնում է, որ դա իր որդու ձեռքի գործը չէ և գլխի է ընկնում, որ նրա հետ դժբախտություն է պատահել։ Չկարողանալով դիմանալ ծանր վշտին, նա վանքի գմբեթից իրեն ցած նետելով ինքնասպան է լինում (№ 644)։*

*Ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ ավանդության մեջ իր ճշմարտացի արտացոլումն է գտել հայ հնօրյա ճարտարապետների, քարագործ վարպետների և նրանց աշակերտների կյանքն ու աշխատանքը, ազգակցական կապերը, համագործակցությունն ու հակամարտությունը, շրջապատի իրականության հետ ունեցած շփումը և այլն։*

*Հայտնի է, որ Հայաստանում, ինչպես հին դարերում, այնպես էլ ավելի ուշ շրջանում, տարբեր տիպի արհեստավորները, այդ թվում նաև քարագործ վարպետները, որմնադիրներն ու քարտաշները աշխատել են մեծ կամ փոքր խմբերով, ընդ որում հաճախ հայր ու որդի միասին։ Ղեկավար ունենալով իրենց վարպետագլխին, նրանք շրջել են վայրից վայր, կառուցելով ինչպես աշխարհիկ, այնպես էլ հոգևոր բազմաթիվ մեծ շենքեր (բերդեր, կամուրջներ, պալատներ, վանքեր), դրա համար նախապես պատվեր ստանալով երկրի տերերից (թագավոր, իշխան, կաթողիկոս)[1]։*

*Մաշտոցից ու Նարեկացուց հետո հայ մշակույթի երրորդ նշանավոր դեմքը, որի մասին առանձնապես շատ ավանդություններ ու զրույցներ են հյուսվել ու պատմվել մեզանում՝ դա Սայաթ-Նովան է։ Այդ տեսակետից բնորոշ են մեծ գուսանի հայերեն խաղերի անդրանիկ հրա-*

---

[1] *Տե՛ս* Բ. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում 9—13-րդ դարերում, Երևան, 1958, էջ 192—193։*

*տարակիր, նրա կենսագրության ու ստեղծագործության առաջին ուսումնասիրող, բազմերախտ բանասեր ու բանահավաք Գևորգ Ախվերդյանի հետևյալ խոսքերը. «Մեծերուց լսածն ասելով պատմում են», «Լսել եմ ծերերուց», «Էսպես պատմում են նրա Թաղման պատահողները», «Սայաթ-Նովու տոհմի ավանդութենն ու նրա մասին դարսված զրույցքը ասում են» և այլն[1]: Դժբախտաբար այդ ավանդությունների ու զրույցների մի զգալի մասը, ժամանակին գրի չառնվելու պատճառով, կորել է: Սակայն, դրանց մեզ հասած սակավաթիվ նմուշներն էլ բավական են, որպեսզի մենք որոշակի պատկերացում կազմենք այն մասին, թե ի՞նչ է մտածել ու զգացել հայ ժողովուրդը սիրո ու արդարության ջատագով իր գուսանի մասին և առհասարակ ի՞նչ տեղեկություններ է ունեցել նա Սայաթ-Նովայի կյանքի ու ստեղծագործության վերաբերյալ: Այդ ավանդությունների մեջ պատմվում է, թե ինչպես Սայաթ-Նովան իր դյութական երգ ու նվագով հոգեկան ծանր վիճակից դուրս է բերում վրաց Հերակլ թագավորին (783 Գ), չնայած իր հոգևորականի կոչմանը, Հաղբատից շտապ կարգով Թիֆլիս է գալիս՝ իր հայրենի քաղաքը եկած համբավավոր օտարական աշուղի հետ մրցելու համար (№ 783Ա, 783Բ), թե ինչպես նա սրախողխող է արվում Թիֆլիսի Ս. Գևորգ եկեղեցում՝ քաղաքը գրաված Աղա-Մահմադ խանի սարվազների կողմից (№ 783Ե) և այլն:*

*Վերոհիշյալ ավանդությունների մեջ դրոշմված են իրական հիմքեր ունեցող և ճշմարտապատում այն պատկերացումներն ու կարծիքը, որ ունեցել է հայ ժողովուրդը Սայաթ-Նովայի վերաբերյալ, իբրև երգ ու նվագի բնատուր արտակարգ ձիրքով օժտված մի արվեստագետի, իբրև մեծ ժողովրդականություն վայելող հայրենասեր ու ազնիվ մի գուսանի, որի համար հարազատ քաղաքի պատիվը ավելի բարձր է, քան ակամայից իրեն բաժին ընկած կրոնավորի սև սքեմը, իբրև համեստ ու մեծահոգի մի մարդու, որը չի ամբարտավանում իր տարած հաղթանակով և ետ է վերադարձնում պարտված արվեստակցի սազը:*

*Իրական ու ճշմարտացի է նաև քննության առարկա ավանդությունների մեջ արտացոլված պատմատեղագրական և ազգագրական ու կենցաղային միջավայրը, որտեղ իբրև գործող անձ հանդես է գալիս Սայաթ-Նովան: Դա, ամենից առաջ, հին Թիֆլիսն է իր ուրույն կոլորիտով, իր Կուր գետով, «քաղքի տղերքով» ու աշուղական մրցումներով, որոնք ժամանակին այնքան բնորոշ են եղել Մերձավոր արևելքի ու Անդրկով-*

[1] Գևորգ Ախվերդյան, *Սայաթ-Նովա*, *Մոսկվա*, *1852*, *էջ ԺԲ*, *ԺԳ և ԺԵ*:

կասի քաղաքների ու գյուղերի, այդ թվում նաև Թիֆլիսի համար։ Դա, այնուհետև, Վրաց Հերակլ 2-րդ թագավորն է, որի մոտ, ինչպես հայտնի է, Սայաթ-Նովան հանդես է եկել իբրև աշուղ, մոտիկից շփվելով պալատական մարդկանց և անձամբ Վրաց թագավորի հետ[1]։

Դա Սայաթ-Նովայի կրոնավորելն է Հաղբատի վանքում, որը տեղի է ունեցել հակառակ նրա կամքի, Հերակլ թագավորի կարգադրությամբ՝ վերջինիս պալատական մարդկանց սարքած խարդավանքների հետևանքով[2]։ Դա Սայաթ-Նովային հետապնդող Դավիթ եպիսկոպոսն է, որը ըստ եղած վավերագրերի 1771 թվականի դեկտեմբերի 25-ին նշանակվել է Հաղբատի վանքի միաբան և մինչև 1795 թվականը հիշվել է իբրև վերջինիս առաջնորդ[3]։ Դա, վերջապես, Սայաթ-Նովայի սպանվելու փաստն է Թիֆլիսի բերդի Ս. Գևորգ եկեղեցում (ուր, ինչպես հայտնի է, Թիֆլիս գալիս միշտ իջևանել է Սայաթ-Նովան) Աղա-Մահմադ խանի սարվազների ձեռքով, որը հաստատվում է դեպքերին ժամանակակից ու ականատես մարդկանց վկայություններով և նրա ժա-

---

[1] Հայտնի է, որ Սայաթ-Նովան իր գուսանական արտակարգ տաղանդի շնորհիվ ժամանակին դարձել է Վրաց արքունիքի և անձամբ Հերակլ 2-րդի պալատական երգիչը, այդ դերում բավական երկար ժամանակ մնալով պալատում (մոտավորապես 1744—1759 թթ.)։ Ուշագրավ է այս տեսակետից Սայաթ-Նովայի հետևյալ խոստովանությունը, որ արել է նա իր կյանքի վերջին տարիներին. «Երբ Հերակլ թագավորն ուզեց մեջլիս սարքել և երաժիշտներիս այնտեղ տարան, ես այն ժամանակ պարսկական եղանակով վրացերեն երգեցի։ Պարոնին այդ շատ դուր եկավ և ինձ խալաթ շնորհվեց։ Դրանից հետո շատերը երգեցին ինձ նմանվելով։ Ես ամենքի մոտ լավ էի ընդունված ոչ միայն իմ երգով, այլև կատակներով ու այլ աշխարհային բաներով» («Սայաթ-Նովան Հաղբատում», հատված վրաց Իվանե արքայազնի «Կալմասոբա» գրքից, տես «Գրական թերթ», 1936, № 3)։

[2] Այդ մասին թափանցիկ ակնարկներ կան Սայաթ-Նովայի վրացերեն խաղերից մեկի մեջ, որ նա հորինել է Հաղբատի վանքում կրոնավոր եղած ժամանակ։ Ահա մի քառյակ այդ խաղից.

«Թաքավուրաց կամքով մեջլիս կանչվողիս,
Թավաղներուց միձըրվող ու հարգվողիս,
Կարմիր կապան արք ու փառքով հաքնողիս,
Աբիղայի սիվ քուրձը բաժին էլավ...»։

(Գ. Աստվածատրյան, Սայաթ-Նովայի անհայտ երգերից, «Ազգագրական հանդես», գիրք Ժ., 1903, էջ 110)։

[3] Դիվան հայոց պատմության, գիրք Դ., 1899, էջ 582, 588—591, գիրք ԺԱ., 1913, էջ 458։

*ռանգների թողած համապատասխան գրավոր անուղղակի ակնարկնե-րով*[1]*։*

**28. Նոր և նորագույն շրջան։**—*Հայ ժողովուրդը քիչ ավանդություն-ներ չի ստեղծել նաև իր մշակույթի նոր և նորագույն շրջանի գործիչների մասին։ Ի տարբերություն հին և միջնադարյան հեղինակներին նվիրված ավանդությունների, որոնք ժողովրդական լայն խավերի մեջ իրենց ապ-րած երկար դարերի բանավոր կյանքի և ավանդախոսների պատմակա-նորեն ավելի սահմանափակ աշխարհայացքի հետևանքով ներթափանց-ված են ոչ սակավ հրաշապատում պատկերներով ու կերպարներով և ի հայտ են բերում ժամանակագրական ու պատմական հակասություն-ներ ու խախտումներ, նոր և նորագույն շրջանի գործիչներին նվիրված ավանդությունները՝ հյուսված լինելով դեպքերին ու դեմքերին ժամա-նակակից ու ականատես, առավել սթափ աշխարհայացքի տեր մարդ-կանց կողմից և ապրած լինելով համեմատաբար կարճատև բանավոր կյանք, աչքի են ընկնում իրականության երևույթների առավել ճշմար-տացի վերարտադրությամբ, ժամանակագրական և պատմական հա-վաստիությամբ։ Դրանք ոչ այլ ինչ են, բայց եթե յուրօրինակ անգիր հուշապատումներ, որոնք ժամանակի հոլովումով և համապատասխան իրադրության մեջ կարող են դառնալ և հաճախ դառնում են բուն ժո-ղովրդական ավանդություններ և ավանդական զրույցներ։*

*Այս առումով հիշարժան են, նախ և առաջ, հայոց աշխարհաբար լեզվի և նոր գրականության հիմնադրի, 19-րդ դարի հայ մեծ լուսավոր-չի՝ Խաչատուր Աբովյանի մասին մեզանում ստեղծված ժողովրդական ավանդություններն ու բանավոր հուշապատումները, որոնց մեջ յուրովի բացահայտված է այն ըմբռնումը, որ ունեցել է հայ ժողովուրդը նրա կատարած պատմական առաքելության վերաբերյալ։*

*Այդ ավանդությունների և ավանդական զրույցների մեջ պատմը-վում է, թե ինչպես Գրիգոր Լուսավորիչը երազում երևում է պատանի*

---

[1] **Գ. Ախվերդյան**, *Սայաթ-Նովա, էջ ժԳ.,* **Գ. Ասատուր**, *Մի պատառիկ իմ հուշերից, «Գրական թերթ», 1936, № 3, «Ազգագրական հանդես», գիրք Ժ, 1903, էջ 100։ Ոչ մի լուրջ հիմք չկա կասկածի տակ առնելու կամ ժխտելու Սայաթ-Նովայի սպանության մասին պատմող ավանդության ճշմարտացիությունը, ինչպես այդ արել են որոշ սայաթ-նովագետներ, հարկ եղածից ավելի նշանակություն տալով իրենց հայտնաբերած կաս-կածելի գրավոր հիշատակություններին և հանիրավի թերագնահատելով ժողովրդական ավանդությունների պատմական արժեքը (տե՛ս* **Պրոֆ. Լ. Մելիքսեթ-բեկ**, *Նոր նյութեր Սայաթ-Նովայի առասպելական նահատակության շուրջը, «Պրոլետար», 1935, № 189)։*

Աբովյանին և պարգևում նրան վարժ կարդալու շնորհք (№ 787), թե ինչպես Աբովյանի խորհրդին հետևելով քանաքեռցիք քշում են իրենց հանդը զավթած բեգերին[1], թե ինչպես Երևանի Սարդարը լսելով Աբովյանի քրոջ գեղեցկության համբավը՝ իր սարվազներին քանաքեռ է ուղարկում նրան առևանգելու համար[2], թե ինչպես ռուսաց թագավորի պաշտոնյաները բռնում են Աբովյանին և սև կառետի մեջ նստեցնելով նրան Սիբիր են աքսորում (№ 787 Գ), թե ինչպես մի քանի գերմանացի ճանապարհորդներ Սիբիրի մի հեռավոր գյուղում հանդիպում են Աբովյանի ռուս աշակերտներին, որոնք նրանց հետ հիանալի գերմաներեն են խոսում (№ 787 Դ) և այլն։

Առաջին ավանդության մեջ ավանդախոսի ստեղծագործական երևակայության նյութ է մատակարարել Աբովյանի բացառիկ ընդունակությունների տեր մարդ լինելու հանգամանքը, որին նրանք տվել են յուրահատուկ գերբնական հիմնավորում։

Երկրորդ ավանդության մեջ դրոշմվել է այն մտահոգությունը, որ հանդես է բերել Աբովյանը իր հայրենակից քանաքեռցիներին հուզող հողային հարցի առնչությամբ։

Երրորդ ավանդության մեջ Աբովյանը հանդես է բերված «Վերքի» հերոս Աղասու դերում։ Բնազդաբար զգալով այն հոգեհարազատությունը, որ գոյություն է ունեցել գրողի և նրա սիրած հերոսի միջև, ավանդաստեղծ ժողովուրդը նույնացրել է նրանց՝ հերոսի գլխին եկածը վերագրել հեղինակին։

Չորրորդ ավանդությունը ամենայն հավանականությամբ ծագել է Աբովյանի Սիբիր աքսորվելու վերաբերյալ մեզանում գոյություն ունեցող հայտնի վարկածի հիման վրա, ստանալով բանահյուսական երանգավորում։ Անկախ այն հանգամանքից, թե որքանով է ճշմարիտ տվյալ վարկածը, հետևաբար և նրա հիման վրա ծագած բանահյուսական պատումը, վերջինիս մեջ իր դրսևորումն է գտել այն պատկերացումը, որ ունեցել է հայ ժողովուրդը Աբովյանի մասին իբրև մեծ հայրենասերի և Հայաստանի անկախության մասին մտածող անձնվեր գործչի։

Հինգերորդ ավանդությունը հավանորեն ծագել է այն շփոթությունից, որով խաչատուր Աբովյանը ոմանց կողմից նույնացվել է իր ազգանվանակից և իրենից ժամանակով ոչ շատ հեռու ապրած ոչ անհայտ

---

[1] Տե՛ս «Գրական թերթ», 1938, № 18 (199)։

[2] Պատմել է Աշտարակի շրջանի Դովրի գյուղի բնակիչ Հովհաննես Հովհաննիսյանը (70 տարեկան)։ Գրի է առել Վարդ Բդոյանը 1938 թ.։

հայ ուսուցիչ և գրող Գևորգ Աբովյանի հետ, որը, ինչպես հայտնի է, իր հակացարական գործունեության համար ժամանակին աքսորվել է Սիբիր[1]։

Րաֆֆու մասին պատմում են, որ նա ժամանակին եղել է Աղթամարի կղզում, որտեղ մի բարձր քարի վրա նստած գրել է իր «Ջայն տուր, ով ծովակ» նշանավոր բանաստեղծությունը։ Ասում են նաև, որ կղզու վարդապետները ուզեցել են բռնել ու ծովը նետել նրան՝ փոսո (բողոքական) քարոզչի տեղ դնելով։ Իմանալով այդ մասին, Րաֆֆին թողել է Աղթամարը ու փախել։ Այն քարը, որի վրա նստած նա գրել է «Ջայն տուր, ով ծովակ»-ը, դրանից հետո կոչվել է Րաֆֆու քար (№ 187)։

Մի ուրիշ ավանդությամբ Րաֆֆին ժամանակին եկել է Ղարաբաղի Դահրավ գյուղը՝ տեղի քաջերի պատմությունը գրելու համար։ Նա շրջել է տնե-տուն, հարց ու փորձ արել ծերերին, կարդացել է մամռակալած գերեզմանաքարերի վրա եղած գրերը։ Րաֆֆու խնդրանքով գյուղացիները շուռ են տվել գյուղամիջին ընկած հսկայական սալ քարը և նա կարդացել է նաև այդ քարի հակառակ երեսին եղած հայերեն գրերը։ Նրա մեկնելուց հետո սալ քարի ընկած տեղից մի առատ աղբյուր է բխել, մեծ ուրախություն պատճառելով դահրավցիներին, որոնք ջրի համար ստիպված էին իջնել մոտակա ձորը։ Այդ աղբյուրը մինչև հիմա էլ կա և կոչվում է Րաֆֆու աղբյուր (№ 265)։

Երկու ավանդություններն էլ հյուսված են իրական-կենսագրական հենքի վրա։ Առաջինը՝ յուրահատուկ մի արձագանք է այն ուղևորության, որ կատարել է Րաֆֆին 1858 թ. Վասպուրականի և Տարոնի շրջաններում, և որի արդյունքը հանդիսացավ նրա «Աղթամարա վանքը» ակնարկը, տպագրված «Հյուսիսափայլի» 1860 թ. № 11-ում, ուր կրքոտ քննադատության է ենթարկված հայ կղերի թանձրամտությունն ու խավարամոլությունը։ Երկրորդը՝ նույնպիսի մի արձագանք է այն ուղևորության, որ կատարել է Րաֆֆին 1881 թ. հուլիս և օգոստոս ամիսներին Ղարաբաղում, իր պատմական վեպերի համար համապատասխան նյութեր հավաքելու նպատակով[2]։

---

[1] Հայկ Տեր-Աստվածատրյանց, Բառարան հայ կենսագրությանց, պրակ Ա., Թիֆլիս, 1904, էջ 23—24։ Տե՛ս նաև Երվ. Շահազիզ, Խաչատուր Աբովյանի կենսագրությունը, Երևան, 1945, էջ 176։

[2] Տե՛ս Րաֆֆու «Աղթամարա վանքը» ակնարկը տպագրված «Հյուսիսափայլ» ամսագրի 1860 թ., № 11-ում։ Տե՛ս նաև Խ. Սամվելյան, Րաֆֆի, Երևան, 1957, էջ 114—117։

*Կենսագրական փաստերի արտացոլումից ավելի, նշված ավանդությունների մեջ կարևոր են Հայաստանի տարբեր վայրերում Րաֆֆու անունով մկրտված աղբյուրի ու քարի փաստերը։ Վերջիններիս մեջ խորհրդանշված և յուրովի ընդգծված է այն վերաբերմունքը, որ ունեցել են Հայաստանի բնակչության լայն զանգվածները սիրելի գրողի նկատմամբ, մի գրող, որն իր ողջ գիտակցական կյանքն ու հզոր տաղանդը, առանց մնացորդի, ի սպաս է դրել հարազատ ժողովրդի ազգային ազատագրական պայքարի սրբազան կրակի բորբոքման նվիրական գործին։*

*Հովհաննես Թումանյանի մասին ասում են, թե նա 1915 թվականին Թիֆլիսից էջմիածին է գալիս՝ Արևմտյան Հայաստանի զանազան գավառներից այստեղ հավաքված և սովից ու հիվանդություններից մեռնող հազարավոր հայ գաղթականներին օգնելու համար։ Կարիք է լինում վանքին պատկանող ինչ-որ մի տուն տրամադրել գաղթականներին։ Թումանյանն այդ խնդրով անձամբ դիմում է կաթողիկոսին։ Կաթողիկոսը հրաժարվում է տունը տալ գաղթականներին։ Վրդովված Թումանյանը իր դժկամությունն է արտահայտում կաթողիկոսին նրա մերժման համար։*

*— Հիշեցեք, պարոն Թումանյան, որ ես Ամենայն Հայոց կաթողիկոսն եմ,— ասում է դժկամ կաթողիկոսը։*

*— Իսկ ես ամենայն հայոց բանաստեղծն եմ,— պատասխանում է նրան Թումանյանը*[1]*։*

*Մի ուրիշ ավանդության համաձայն, երբ 1919 թվականին Թումանյանի տանը նշվելիս է եղել նրա ծննդյան 50-ամյակը, հրավիրվածների մեջ լինում է նաև Զորավար Անդրանիկը։ Անդրանիկի կենացի ժամանակ Թումանյանն իր բաժակաճառի մեջ ասում է. Երեսուն տարի առաջ մի հայ ժողովուրդ էր, մի Խրիմյան. անցավ երեսուն տարի՝ հիմի էլ մի հայ ժողովուրդ է, մի Անդրանիկ... Ընդհատելով Թումանյանի խոսքը, Անդրանիկը նստած տեղից վրա է բերում. Կանցնի էլի երեսուն տարի, ո՛չ Խրիմյան կլինի, ո՛չ Անդրանիկ, կմնա... Տունն ու կատուն*[2]*։*

*Երկու ավանդություններն էլ հիմնված են ժամանակակիցների հուշապատումների վրա և ունեն իրական հող։ Առաջինի կենսագրական*

---

[1] Ստ. Զորյան, *Հուշերի գիրք, Երևան, 1958, էջ 40—41։*

[2] Վ. Թոքովենց, *Հուշեր Հովհաննես Թումանյանի մասին (տե՛ս «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», գիրք Ա. (ձեռագիրը գտնվում է Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտի տեքստաբանության բաժնում)։*

տաղձը այն ինքնակամ առաքելությունն է, որ կատարել է Թումանյանը իր երկու դուստրերի ուղեկցությամբ 1915 թվականի հուլիս ամսին, Թիֆլիսից էջմիածին գալով՝ այստեղ կուտակված թուրքական յաթաղանից մազապուրծ բազմահազար անօթևան ու սովալլուկ արևմտահայ գաղթականներին իր ուժերի ներածին չափ օգնություն ցույց տալու, նրանց կացարանի, սննդի, հագուստի և բուժման գործը կազմակերպելու համար[1]: Երկրորդինը՝ բանաստեղծի ծննդյան 50-ամյա տարելիցն է: Ժամանակակիցների վկայությամբ Թումանյանը կտրականապես դեմ է եղել հոբելյանական մեծ հանդես կազմակերպելու գաղափարին, նկատի ունենալով իր ժողովրդի ինչպես նյութական, այնպես էլ քաղաքական ու բարոյական անբարենպաստ վիճակը այդ օրերին, և դրա փոխարեն իր տանը, սեփական սուղ միջոցներով մի փոքր հավաքույթ է կազմակերպել մտերիմ մարդկանց համար, որոնց մեջ է եղել նաև այդ ժամանակ Թիֆլիսում գտնվող Զորավար Անդրանիկը[2]:

Կենսագրական տաղձ ունեցող վերոհիշյալ երկու ավանդությունհուշապատումներն էլ շատ բնորոշ ու տիպական են ոչ միայն հայ ժողովրդի ազգային մեծ բանաստեղծի քաղաքացիական և հասարակական դիմանկարի բնութագրման, այլև Թումանյանի ստեղծագործության անմահության համար:

Հայ մշակույթի բնաշխարհիկ գործիչներից բացի, որոնք ծնվել, ապրել ու ստեղծագործել են իրենց բուն հայրենիքում, մենք ունեցել ենք նաև ոչ քիչ թվով հայազգի գիտնականներ, գրողներ ու արվեստագետներ, որոնք պատմական ճակատագրի բերումով ստեղծագործել են Հայաստանից դուրս: Իրենց երկերի նյութով ու թեմայով առնչված լինելով օտար միջավայրի հետ, հայազգի այդ գործիչների լավագույն ներկայացուցիչները հոգեկան ամուր ու անխզելի կապերով միշտ կապված են մնացել մայր հայրենիքի ու հարազատ ժողովրդի հետ, պահպանել են իրենց ազգային ոգին, կենդանի հետաքրքրություն են ցուցաբերել Հայաստանի անցյալի ու ներկայի նկատմամբ, իսկ առիթը ներկայանալիս

---

1 Լեո, Հիշողություններ Թումանյանի մասին (տե՛ս «Նորք» ամսագիր, Երևան, 1923, № 3, էջ 220): Տես նաև Ա. Ինճիկյան, Անծանոթ էջեր Հ. Թումանյանի գրական ժառանգությունից, «Բանբեր Երևանի համալսարանի», 1968, № 2, էջ 164, 167:

2 Վերահիշումներ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի կյանքեն (Զորավար Անդրանիկի հուշերը), տես «Պայքար» թերթը, Բոստոն, 1923, մայիս: Նույնը արտատպված՝ «Գրական թերթ»-ում, 1964, № 51, 18 դեկտեմբերի:

*էլ, չեն զլացել թե խոսքով և թե գործով յուրովսանն օգտակար լինել նրան։ Այս առումով շատ բնորոշ է Վիլյամ Սարոյանի հետևյալ խոստովանությունը, որը, ավել կամ պակաս չափով, կարող է վերաբերվել նաև տարաշխարհիկ մյուս հայ լավագույն գործիչներին։*

*«Թեև ես գրում եմ անգլերեն, և թեև ծնունդով ամերիկացի եմ, բայց ես ինձ համարում եմ հայ գրող։ Իմ գործածած բառերը անգլերեն են։ Միջավայրը, որի մասին գրում եմ, ամերիկյան է։ Ոգին, սակայն, որ մղում է ինձ գրելու, հայկական է։ Ուստի ես հայ գրող եմ։ Ես խորապես սիրում եմ հայ գրողների մեծ ընտանիքին պատկանելու պատիվը»*[1]*։*

*Երախտագետ հայ ժողովուրդը իր հուշապատումների և ավանդությունների մեջ չի մոռացել պատշաճ տեղ հատկացնելու նաև տարաշխարհիկ հայ գիտնականներին, գրողներին ու արվեստագետներին։ Նրա այդօրինակ ստեղծագործությունների բնորոշ օրինակներից են հետևյալ երկու հուշապատում-ավանդությունները։*

*Հովհաննես Այվազովսկու մասին պատմում են, որ նա Թեոդոսիայում լսելով հայկական կոտորածների բոթը, ատելությամբ է լցվում թուրք ջարդարարների դեմ։ Նկարիչը զայրացած վերցնում է Սուլթան Աբդուլ Ազիզի կողմից իր նկարների համար տարիներ առաջ տրված ադամանդյա շքանշանները, կապում է դրանք շան վզին և դուրս գալով տանից ուղղվում է դեպի ծովափ։ Այստեղ նա նստում է մի ձկնորսական նավակ, հեռանում դեպի բաց ծովը, հանում շան վզից թուրքական շքանշանները և, ի նշան բողոքի, դրանք նետում է ջուրը*[2]*։*

*Վիլյամ Սարոյանի մասին ասում են, թե նա Հայաստան կատարած իր այցելության ժամանակ, հայ գրողների հետ հանդիպելիս ասել է. Ես շատ կսիրեմ Մասիս, դուք ալ կսիրե՞ք, թե ձեզի համար ան սովորական է դարձեր։ Գրողներից մեկը պատասխանում է. Ինչ օգուտ, որ մերը չէ։ Ատիկա կարևոր չէ,— ասել է Սարոյանը և պատմել հետևյալ զրույցը.*

*Ատենոք, երիտասարդ մը կսիրահարի թագավորին աղջկան. բայց աղքատ կըլլա, դերվիշ, շորերը չլուա, էրեսը աղտոտ։ Ամբողջ օրը սազը ձեռին թագավորի պալատի պատուհանին տակը կչալե. մեկ օր, էրկու*

---

[1] Վ. Սարոյան, *Մարդկային կատակերգություն, Երևան, 1959, էջ 9—10 (քաղվածքը բերում ենք գրքի թարգմանիչ Խ. Դաշտենցի առաջաբանից)։*

[2] Լ. Վազգեր, *Պատմություն նկարիչ Այվազովսկու մասին, Երևան, 1962, էջ 271—272։*

օր, իրեք օր... Թագավոր դուս կուգա կասե. Տղա, աղվոր կչալես, բայց իմ աղջիկ քեզ չի սիրեր... է,— Թող չսիրե,— կպատասխանե տղան, բայց ես անոր կսիրեմ։— Հիմա՝ մենք ու Մասիսը...[1]։

Տարբեր ժամանակ և տարբեր պայմաններում Հայաստանում նմանօրինակ ուշագրավ ավանդություններ, ավանդական զրույցներ և անգիր հուշապատումներ են հյուսվել ու պատմվել նաև Մովսես Խորենացու, Անանիա Շիրակացու, Հովհան Օձնեցու, Հովհաննես Իմաստասերի, Ներսես Շնորհալու, Հովհան Որոտնեցու, Գրիգոր Տաթևացու, Հակոբ Պարոնյանի, Պետրոս Ադամյանի, Կոմիտասի, Թորոս Թորամանյանի, Մանուկ Աբեղյանի, Ավետիք Իսահակյանի, Եղիշե Չարենցի, Վ. Համբարձումյանի և գիտության, գրականության ու արվեստի ուրիշ նշանավոր գործիչների մասին։

Մերթ վաղնջական դարերից եկող հրաշապատում պատկերներով ու կերպարներով, մերթ էլ դեպքերին ու դեմքերին ժամանակակից ու ականատես մարդկանց իրապատում հուշերի ձևով ու ճշմարտացի տըվյալներով, վերոհիշյալ ավանդությունների, ավանդական զրույցների ու անգիր հուշապատումների մեջ մեր աչքի առջև հառնում են հին ու նոր ժամանակների հայ գիտնականների, գրողների ու արվեստագետների կերպարները՝ ժողովրդի դիրքերից, նրա հայեցակետով և չափ ու կշիռով դիտված ու գնահատված իրենց մարդկային նկարագրով, ստեղծագործական խառնվածքով և հասարակական վարքագծի բնորոշ կողմերով։

Ինչքան ավելի բախտորոշ ու կարևոր է եղել այս կամ այն գիտնականի, գրողի ու արվեստագետի կատարած առաքելությունը հարազատ ժողովրդի գաղափարական, կուլտուրական և գեղարվեստական զարթոնքի ու լուսավորության համար, այնքան ավելի մեծ ու նշանակալից է եղել և նրա կյանքի ու ստեղծագործության արձագանքը ժողովրդական ավանդություններում։

Հայ ժողովուրդն իր ավանդությունների մեջ առանձնակի ուշադրություն է հատկացրել և իր խոր երախտագիտությունն է դրսևորել հատկապես այն գիտնականների, գրողների ու արվեստագետների նկատմամբ, ովքեր բանիվ և գրչով մաքառել են իրենց ազգի գիտության, գրականության ու արվեստի զարգացման, նրա ազատ ու անկախ գոյության և ինքնորոշման համար, ովքեր իրենց բնատուր տաղանդն ու

---

[1] Գրի է առել Սարգիս Հարությունյանը 1960 թ. հոկտեմբերին, Երևան քաղաքում։

*գիտակցական ողջ կյանքը բոլորանվեր ի սպաս են բերել նրա լինելության իրավունքը հաստատելու և մարդկային մշակույթի պատմության մեջ նրա համար պատվավոր տեղ ապահովելու գործին։*

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԵՎ ԽԿԱՄՈՒՏ ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ

**Միջազգային ավանդություններ։**—*Հայկական ավանդությունների շարքում բուն* ազգային *ստեղծագործություններից բացի առկա են նաև այսպես կոչված* միջազգային *ավանդություններ։ Դրանք այն ավանդություններն են, որոնց զուգահեռներն ու տարբերակները մենք գտնում ենք ոչ միայն Հայաստանին հարևան ժողովուրդների, այլև նրանից աշխարհագրորեն ու էթնիկապես շատ հեռու ազգերի մոտ, և որոնք հայկական համապատասխան ավանդություններին հիշեցնում են երբեմն լոկ իրենց սյուժեներով, թեմաներով ու կերպարներով, իսկ երբեմն էլ՝ իրենց բովանդակությամբ, կառուցվածքով և գեղարվեստական հատկանիշներով։*

*Վերոհիշյալ կարգի ավանդությունների բնորոշ օրինակներից մեկն է* համաշխարհային ջրհեղեղի ավանդությունը, *որի այլազան տարբերակները ցրված են ինչպես Ասիայի ու Եվրոպայի, այնպես էլ Աֆրիկայի ու Ամերիկայի բազմաթիվ հին ու նոր ժողովուրդների մոտ։ Ահա դրանցից մի քանիսը.*

Հայկական տարբերակ։ *Իմանալով, որ մեծ ջրհեղեղ է լինելու, Նոյ նահապետը մի տապան է շինել տալիս։ Երբ ջրերը սկսում են ծածկել գետնի երեսը նա ընտանիքով տեղավորվում է տապանի մեջ, իր հետ վերցնելով նաև մեկական նմուշ զանազան կենդանիներից։ Երկար ժամանակ ջրերի վրա լողալուց հետո, Նոյի տապանը վերջապես հասնում է Մասիս սարին և կանգ է առնում նրա վրա։ Ժամանակ անց, պարզելու համար, թե իջե՞լ են արդյոք ջրերը, Նոյ նահապետը տապանից բաց է թողնում ագռավին։ Ագռավը գնում և այլևս չի վերադառնում։ Երկրորդ անգամ Նոյը բաց է թողնում աղավնուն։ Սրանից առաջ արձակված ագռավը հարձակվում է աղավնու վրա և կծում է նրա լեզուն։ Ձնած դրան աղավնին դարձյալ գտնում է Նոյին ավետիք տալու հնարը։ Նա կտրում է ծառի կանաչ ոստը և բերանն առած վերադառնում է տապանը։ Նոյը տեսնելով կանաչ ոստը, գլխի է ընկնում, որ ջրերն արդեն ցամաքել են։ Նա իր ընտանիքով Մասիսի գագաթից իջնում է ցած (Նախիջևան) և պատվիրում է որդիներին՝ ջուր ցողել իրար վրա, որ-*

*պեսզի դրանով մարդիկ անմոռաց պահեն ջրհեղեղի հիշատակը (№ № 360, 789Բ)։*

**Կովկասյան տարբերակ:** *Մեծ ջրհեղեղի ժամանակ Նոյ նահապետը իր գերդաստանով մտնում է տապանը և սկսում է լողալ ջրերի վրա։ Քամին տապանը քշում է Կազբեկ լեռան կողմը։ Տապանի հատակը քսվում է Կազբեկի գագաթին և երկու կեսի է բաժանում այն, թամքի ձև տալով նրան։ Հետո տապանը գալիս հասնում է Արարատ սարին և դադար է առնում նրա վրա։ Պարզելու համար, թե ի՞նչ վիճակում է ջրհեղեղը, Նոյը տապանից բաց է թողնում աղավնուն։ Սա որոշ ժամանակ անց հետ է վերադառնում՝ կտցին մի կանաչ շյուղ։ Նոյը դրանից հասկանում է, որ ցամաքն արդեն երևացել է, ուստի իր գերդաստանի հետ ցած է իջնում Արարատ լեռից*[1]։

**Հունական տարբերակ:** *Երկրի վրա եղած մարդկանց ոչնչացնելու համար, Զևսը տեղատարափ անձրև է թափում երկնքից, որը հեղեղում է Հունաստանի կեսը։ Պրոմեթեոսի որդին՝ Դևկալիոնը, հոր խորհրդով մի տապան է պատրաստում և կնոջ հետ, անհրաժեշտ պաշար առնելով իրենց համար, մտնում են նրա մեջ։ Ինն օր և ինը գիշեր ջրերի վրա լողալուց հետո, Դևկալիոնն ու կինը հասնում են Պառնաս լեռանը և ի նշան իրենց փրկության՝ զոհ են մատուցում Զևսին։ Վերջինիս հրամանով նրանք սկսում են քարեր հավաքել գետնից և մեկ-մեկ նետել իրենց գլխավերևով։ Դևկալիոնի նետած քարերը տղամարդիկ են դառնում, իսկ կնոջը՝ կանայք։ Սրանց միջոցով նորից շենացվում է ջրհեղեղից ավերված երկիրը*[2]։

**Շումերա-բաբելական տարբերակ:** *Քրոնոս աստվածը զգուշացնում է Քսիսուտրուս թագավորին մոտալուտ ջրհեղեղի մասին։ Սա մի նավ է պատրաստել տալիս, և երբ սկսվում է ջրհեղեղը, հարազատների ու բարեկամների հետ մտնում է նրա մեջ, չմոռանալով վերցնելու նաև անհրաժեշտ կենսամթերք և զանազան տնային թռչուններ ու կենդանիներ։ Ժամանակ անց, երբ ջրհեղեղը սկսում է նվազել, Քսիսուտրուսը հերթով բաց է թողնում նավում եղած թռչուններից մի քանիսին, նրանց միջոցով պարզելու համար, թե երևացե՞լ է արդյոք ցամաքը։ Դրսում*

---

[1] Сборник материалов для описания местностей и племен Кавказа, *հատ. 26, բաժ. 3, էջ 102։*

[2] *Фрезер*, Фольклор в Ветхом завете, М.-Л., 1931, *էջ 65—66։*

ապաստան ու կեր չգտնելով թռչուններն անմիջապես հետ են վերադառնում։ Մի քանի օր անց Քսիսուտրուսը կրկնում է իր փորձը։ Թռչունները վերադառնում են՝ ոտներին կավի հետքեր։ Երբ Քսիսուտրուսը երրորդ անգամ է բաց թողնում թռչուններին, նրանք իրենց համար ապաստան ու կեր գտնելով ջրից ազատված ցամաքի վրա, այլևս հետ չեն վերադառնում։ Ջրհեղեղի վերջանալու նշան համարելով դա, Քսիսուտրուսը նավը ուղղում է դեպի ցամաք և յուրայինների հետ իջևանում է Հայաստանի լեռներին։ Ի նշան իրենց փրկության Քսիսուտրուսն իր մարդկանց հետ սկսում է զոհեր մատուցել աստվածներին[1]։

**Աֆրիկյան տարբերակ**։ Ժամանակին գետերը հեղեղում են ողջ երկիրը։ Աստծու ցուցումով երկու մարդ վերցնելով իրենց հետ զանազան արմտիքներ, մեկական զույգ տեսակ-տեսակ թռչուններ ու կենդանիներ, մտնում են մի նավի մեջ և սկսում են լողալ ջրերի վրա։ Երբ ջրհեղեղը կամաց-կամաց սկսում է նվազել, նրանք բաց են թողնում աղավնուն՝ պարզելու համար, թե երևացե՞լ է արդյոք ցամաքը։ Աղավնին անմիջապես հետ է վերադառնում։ Ավելի ուշ նրանք թողնում են բազեին, որը այլևս հետ չի գալիս։ Դրանից կռահելով, որ ցամաքն արդեն երևացել է, նավի մարդիկ վերցնում են իրենց հետ եղած արմտիքն ու կենդանիներին և ցամաք են դուրս գալիս[2]։

**Մեքսիկական տարբերակ**։ Երբ սկսվում է ջրհեղեղը, Տեցպի անունով մի մարդ իր հետ վերցնելով կնոջը, երեխաներին և զանազան կենդանիների ու սերմերի նմուշներ, մտնում է մի մեծ նավի մեջ և սկսում է լողալ ջրերի վրա։ Բավական ժամանակ անց, երբ Տեցպին նկատում է, որ ջրերն աստիճանաբար իջնում են, բաց է թողնում նավի մեջ եղած անգղին։ Սա ջրի տակից դուրս եկած ցամաքի վրա դիակներ գտնելով, սկսում է հոշոտել դրանք և այլևս չի վերադառնում։ Տեցպին հերթով բաց է թողնում ուրիշ թռչունների, որոնք նույնպես հետ չեն գալիս։ Վերջին անգամ նա բաց է թողնում կոլիբրի անունով թռչնակին։ Սա շուտով հետ է վերադառնում, կտցին մի կանաչ ոստ։ Դրանից իմանալով, որ ջրերն արդեն լրիվ իջել են, Տեցպին նավն ուղղում է դեպի հեռվում երևացող ցամաքը[3]։

1 Նույն տեղում, էջ 48—49։

2 Նույն տեղում, էջ 125։

3 Նույն տեղում, էջ 103։

**Հյուսիս-ամերիկյան տարբերակ:** *Աշխարհի ստեղծման առաջին օրերին երկիրը ծածկվում է ջրով։ Խեղդվելուց ազատվելու համար մի քանի մարդիկ վերցնելով իրենց հետ որոշ թվով կենդանիներ, մտնում են նավը և սկսում են լողալ ջրերի վրա, սնվելով ձկներով։ Երբ հետզհետե ջրերն իջնում են, նավորդները հեռվում նկատում են ինչ-որ լեռներ։ Նավն ուղղելով դեպի այդ կողմը, նրանք իջևանում են լեռների վրա։ Շատ չանցած երևում է նաև իսկական ցամաքը։ Նավորդները վերցնելով իրենց հետ նավի մեջ եղած կենդանիներին, լեռներից իջնում են երկրի վրա և սկսում են աճել ու բազմանալ*[1]։

*Քննության առարկա ավանդությունը, բացի վերը նշվածներից, ունի նաև իր չինական, հրեական, հին հնդկական, ավստրալիական, հարավ-ամերիկյան և այլ տարբերակները*[2]։

*Համաշխարհային ջրհեղեղի վերաբերյալ տարբեր ժողովուրդների ավանդությունների մեջ եղած անուրանալի նմանությունների ու ընդհանրությունները որոշ գիտնականների կողմից բացատրվել է այդ ավանդությունների մի ընդհանուր ու միասնական սկզբնաղբյուրից սերած լինելու հանգամանքով։ Նրանց կարծիքով դրանք ոչ այլ ինչ են, բայց եթե Նոյան տապանի բիբլիական հայտնի ավանդության աղավաղված վարկածները, որոնք ծնունդ են առել Աստվածաշնչի ազդեցությամբ։ Ինչ վերաբերում է Նոյան տապանի բիբլիական ավանդությանը, ապա այս վերջինն էլ նույն այդ գիտնականների հավաստմամբ՝ յուրօրինակ մթագնված մի արձագանքն է հեռավոր դարերում տեղի ունեցած մի այնպիսի իրական ջրհեղեղի, որն ընդգրկել է ողջ աշխարհը*[3]։

*Չի կարելի ուրանալ այն փաստը, որ քննության առարկա ավանդության առանձին տարբերակներ որոշ ժողովուրդների մոտ իրոք սերում են Աստվածաշնչից և հանդիսանում են Նոյան տապանի բիբլիական ավանդության ավելի կամ պակաս հարազատ արձագանքները։ Այդպիսիք են ամենից առաջ քրիստոնեություն ընդունած կամ վերջինիս ազդեցության ոլորտներում գտնվող մի շարք ազգերի, այդ թվում և հայերի ու ասորիների համապատասխան ավանդությունները։ Հայանի*

---

[1] *Նույն տեղում*, էջ 121—122։

[2] *В. Б. Никитина, Е. В. Паевская,* Литература древного Востока, М., 1962, 346—347. *Фрезер*, Фольклор в Ветхом завете, М.—Л., 1931, էջ 56—65, 76—77, 85—86, 93—102.

[3] *Фрезер*, Фольклор в Ветхом завете, М.—Л., 1931, էջ 126։

*է, որ և՛ հայերի, և՛ սրանց հարևան ասորիների մոտ Աստվածաշնչից անկախ, հնագույն ժամանակներից գոյություն են ունեցել ջրհեղեղի մասին ավանդություններ, որոնք հետագայում, Աստվածաշնչի ազդեցությամբ կենդանացել ու նորոգվել են։ Այդօրինակ ավանդություններից է մեզանում 5-րդ դարում ստեղծված՝ Հակոբ Մծբնեցի հայրապետի հետ կապված ավանդությունը՝ բերված Փ. Բուզանդի Պատմության մեջ*[1], *ուր պատմվում է այն փորձերի մասին, որ կատարում է հիշյալ հայրապետը Նոյան տապանը տեսնելու նպատակով (№ 813 Ա)։ Այդպիսիք են մասամբ նաև հին արաբների և արևելյան այլ ժողովուրդների ջրհեղեղի վերաբերյալ որոշ ավանդություններ, որոնք Աստվածաշնչի ուրիշ առասպելների ու ավանդությունների հետ մուտք գործելով Ղուրանի մեջ, վերջինիս միջոցով հայտնի են դարձել իսլամություն ընդունած շատ ժողովուրդների*[2]*։*

*Ընդունելով հանդերձ Նոյան տապանի բիբլիական ավանդության տարածման փաստը մի շարք ժողովուրդների մեջ, միաժամանակ անհնար է համաձայնել այն պնդումին, ըստ որի ջրհեղեղի վերաբերյալ աշխարհով մեկ տարածված նմանատիպ բոլոր ավանդությունների միակ և եզակի սկզբնաղբյուրը եղել է Աստվածաշունչը, քանի որ գիտության կողմից համապատասխան համոզիչ փաստերով հաստատված է, որ Նոյան տապանի բիբլիական սկզբնաղբյուր կոչվածը իրականում ոչ թե սկզբնաղբյուր է, այլ համեմատաբար ուշ ժամանակի մի կրկնօրինակ՝ ավելի հին շումերա-բաբելական համապատասխան ավանդության։*

*Տարբեր երկրներում ու մայրցամաքներում, հեռավոր անցյալում, իբրև հետևանք այնտեղ կատարված տեղատարափ անձրևների, ձնհալի, երկրաշարժների, ծովերի ու օվկիանոսների ջրերի տեղաշարժման, եղել են և զանազան դարերում, զանազան ժողովուրդների մոտ, իրարից անկախ ստեղծված վերոհիշյալ ավանդությունները*[3]*։*

*Ինչ վերաբերում է նշված ավանդությունների մեջ եղած նմանությունների ու ընդհանրությունների, ապա դրանք հետևանք են այն բանի, որ տարբեր երկրներում և մայրցամաքներում ապրող մարդկանց*

---

[1] Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, գիրք Ա., Երևան, 1944. էջ 91։*

[2] *В. Б. Никитина, Е. В. Паевская*, Литература древного Востока, М., 1962. *էջ 347.*

[3] *Фрезер*, Фольклор в Ветхом завете, М.—Л., 1931, *էջ 132—136։*

*վրա, բնական տարբեր պատճառներից առաջ եկած ջրհեղեղներն ունեցել են նույն ազդեցությունը և նրանք հար և նման ձևով են մտածել՝ փրկվելու բնության այդ տարերային աղետի ահավոր վտանգից, ապաստան գտնելու ջրից ազատ մնացած բարձունքների վրա և շարունակելու իրենց նախկին բնական կյանքը։*

*Միջազգային ավանդությունների ոչ պակաս բնորոշ մի ուրիշ օրինակ է* շղթայված կամ արգելափակված դյուցազնի կամ հերոսի ավանդությունը, *որի տարբերակները հայտնի են ինչպես Արևելյան, այնպես էլ Արևմտյան շատ ժողովուրդների բանավոր ստեղծագործությունների մեջ։ Ահա դրանցից մի քանիսը.*

**Հայկական տարբերակ:** *Արտավազդ թագավորազնը հոր անեծքով երկաթե կապանքներով շղթայված է Մասիս լեռան քարանձավներից մեկում։ Երկու շներ անդադար կրծում են նրա շղթաները։ Արտավազդը ջանք է թափում ազատվելու արգելարանից, սակայն դարբինների կռանահարությունից նորից ամրանում են նրա շղթաները, և Արտավազդը մնում է գամված իր տեղում (№ 805)։*

*Մի ուրիշ ավանդությամբ՝ Մհերը ձիու հետ միասին հոր անեծքով փակված է Վանի մոտ գտնվող Ագռավա քարում։ Տարին մի անգամ, Համբարձման գիշերը, բացվում է Ագռավա քարի դուռը։ Մհերը ձիով դուրս է գալիս քարանձավից։ Նա փորձում է գետնի ուժը և համոզվելով, որ այն չի կարող դիմանալ իր ծանրությանը, նորից հետ է վերադառնում։ Նա դուրս կգա այն ժամանակ, երբ գարին դառնա մասուրի չափ, ցորենի հատիկն էլ՝ ընկուզի (№ 98Ա)։*

**Վրացական տարբերակ:** *Ամիրանին մարդկանց ազատում է դևերի սպառնալիքից, սովորեցնում կրակ ձեռք բերելու և մետաղը մշակելու միջոցը։ Նույն մարդկանց համար նա կռվի է բռնվում աստծու (Քրիստոսի) հետ, որի համար աստված (Քրիստոսը) չարաչար պատժում է նրան՝ շղթայելով Կովկասյան ժայռերին։ Ամիրանի սուրը ընկած է նրա կողքին, իսկ հավատարիմ շունն էլ անվերջ կրծում (լիզում) է տիրոջ շղթաները՝ նրան ազատելու համար։ Ամեն Ավագ Հինգշաբթի՝ երկրի ընդերքից մի դարբին է դուրս գալիս, նորից ամրացնում է Ամիրանի մաշված շղթաները և չի թողնում, որ նա ազատվի կապանքներից*[1]*։*

---

[1] **Տե՛ս** *В. Ф. Миллер,* Кавказские предания о великанах, прикованных горам („Журнал Министерства народного просвещения", СПБ 1883, № 1, էջ **110, 116։ Հմմտ.** *М. Я. Чиковани*, Народный грузинский эпос о прикованном Амирани, М., 1966, էջ **205, 311։**

**Հունական տարբերակ**: *Զևսը զայրանալով մարդկանց վրա խլում է նրանցից կրակը։ Դյուցազն (տիտան) Պրոմեթեոսը կրակի ետևից գնում է Օլիմպոս և գողանալով այն աստվածներից, բերում հանձնում է մարդկանց: Պրոմեթեոսին պատժելու համար Զևսը նիզակով ճեղքում է նրա կուրծքը և գամում Կովկասյան ժայռերին։ Մի հսկայական արծիվ ամեն առավոտ կտցահարում է Պրոմեթեոսի լյարդը, որը գիշերը նորից վերականգնվում է։ Պրոմեթեոսի տառապանքները տեսնելով, Զևսի որդի Հերակլեսը սպանում է արծվին և ազատագրում է շղթայված տիտանին*[1]:

**Իրանական տարբերակ**: *Եռագլուխ վիշապ Աժդահակին (Զոհակ) պարտության է մատնում դյուցազն Ֆրեդունը (Հրուդեն) և Կավե դարբնի օգնությամբ շղթայում է Դըմավենդ լեռան վրա։ Արյունը կաթիլ-կաթիլ հոսում է շղթայված Աժդահակի վերքից դեպի գետին, իսկ երբ նա ցնցվում է՝ երկրաշարժ է լինում։ Աժդահակը մինչև աշխարհի վերջը դատապարտված է շղթայված մնալու, որովհետև նրա ազատությունը մեծ չարիք կարող է պատճառել մարդկանց։ Իրանի Դըմավանդ քաղաքի բնակիչները ամեն տարի իբրև տոն նշում են Աժդահակի շղթայման օրը*[2]:

**Սերբական տարբերակ**:—*Դյուցազն Մարկո Կրալևիչը հարազատ հոր փառքին նախանձելու համար անիծվում է նրա կողմից։ Այդ անեծքի պատճառով Մարկո Կրալևիչը մի անգամ շատ նեղ դրության մեջ է ընկնում պատերազմի դաշտում և խնդրում է աստծու օգնությունը։ Աստված խղճում է Մարկոյին և փակում է նրան մի քարայրի մեջ՝ իր ձիու և թրի հետ։ Մարկո Կրալևիչը այն ժամանակ կ դուրս գալու քարայրից և փրկելու Սերբիան թշնամիներից, երբ նրա սուրը կազատվի քարի միջից և Շարան ձին էլ՝ կրծելով կսպառի քարայրում եղած ամբողջ մամուռը*[3]:

**Գերմանական տարբերակ**: *Թոռ աստվածը՝ դյուցազն Բալդրին խարդավանքով սպանելու համար՝ քարայրի մեջ շղթայում է հսկա Լուցիֆերին։ Վերջինիս գլխավերևում գտնվող օձերը անընդհատ լորձ ու թույն են արտադրում, որոնք թափվում են նրա երեսին։ Լուցիֆերի ցնցումներից*

---

[1] „Вестник древней истории“, 1947, № 1, էջ 295, 302, 303։

[2] *Fr. Spiegel*, Eranische Alterthumskunde, I, էջ 532։

[3] *М. Халанский*, Южно-славянские сказания о Кралевиче Марке, հատ. 1, Варшава, 1893, էջ 159։ Հմմտ. *И. Кравцов*, Сербский эпос., М.—Л., 1933, էջ 78։

*դողում է ամբողջ երկիրը։ Նա մինչև աշխարհի վերջը պետք է մնա շղթայված վիճակում, որ չկարողանա պատժել աստվածներին ու մարդկանց։ Դրա համար է, որ Զալցբուրգի և Տիրոլի բոլոր դարբինները օրվա վերջում, իրենց աշխատանքն ավարտելուց հետո, մուրճով խփում են սալին, որ նորից ամրանան Լուցիֆերի շղթաները և նա չկարողանա դուրս գալ իր քարայրից*[1]*։*

*Բացի նշված տարբերակներից շղթայված դյուցազնի ավանդությունը ունի նաև իր՝ չինական (Գունյ)*[2]*, հնդկական (Միթրա)*[3]*, հրեական (Մեսսիա)*[4]*, ռուսական (Միխայիլ Պոտիկա)*[5]*, աբխազական (Աբրսկիլ)*[6]*, նարտական (Ամրան)*[7] *և այլ տարբերակները։*

*Շղթայված (արգելափակված) դյուցազնի (հերոսի) վերաբերյալ աշխարհով մեկ տարածված ավանդությունների մեջ եղած նմանությունների փաստին, ինչպես այլուր, այնպես էլ մեզանում տրվել են տարբեր բացատրություններ։*

*Առանձնապես բնորոշ են այս առումով հայ և վրաց մի քանի բանագետների կարծիքներն ու տեսակետները։*

*Դեռևս անցյալ դարի առաջին կեսերին, Մկրտիչ Էմինը ելնելով հայոց Արտավազդի և վրաց Ամիրանիի ավանդությունների մեջ եղած նմանության փաստից, նշել է, որ երկրորդը «ոչ այլ ինչ է, բայց եթե հատուած ինչ ի հին վիպասանութեանց հայոց, որ անցեալ առ Վերիացիս, սակաւ մի այլեայլութեամբ ընկալեալ եղև ի նոցունց։ Յերկոսին յաւանդութիւնսդ տարբերութիւն տեսանի միայն յանուանս Արտաւազդայ և Ամիրանայ և լերանց, յորս նոքա կալեալ կան կալանաւոր, առաջինն ի Մասիս, երկրորդն ի Կովկասեան լերինս։ Իսկ այլ ամենայն հանգամանք առասպելին վրաց նոյն են ընդ որոց յերգս Գողթան զարքայէն հայոց պատմին»*[8]*։*

---

[1] *E. H. Meyer*, Germ. Muthol., էջ 107. 163։

[2] *В. Б. Никитина, Е. В. Паевская*, Литература дрерного Востока, М., 1962, էջ 347։

[3] БСЭ, 2-րդ հրատ., հատ. 27, էջ 600։

[4] *И. Крывелев*, Книга о библии., М., 1958, էջ 185։

[5] *Ор. Миллер*, Илья Муромец и богатырство Киевское, СПБ, 1869, էջ 499։

[6] *В. Гарция*, Из абхазских народных преданий и поверий, СМОМПК, հատ. 13, պրակ. 2, էջ 32—43։

[7] *А. Кайтмазов*, Сказания о нартах, СМОМПК, հատ. 7, պրակ. 2, էջ 3—36։

[8] Մ. Էմին, Վէպք հնոյն Հայաստանի, Մոսկվա, 1850, էջ 42։

Միակ անուղղակի և բավական խախուտ փաստարկը, որ բերում է Էմինը իր կարծիքը հիմնավորելու համար, դա այն է, որ Արտավազդի ավանդությունը կապված է հեթանոսական հավատալիքների հետ, իսկ Ամիրանինը՝ քրիստոնեական։ «Եւ զի զրոյցն վրաց ի մերոց ի փոխ առեալ է՝ յայտ անտի է,— գրում է նա,— զի մայր Ամիրանայ՝ որպէս և յետինս այս, քրիստոնեայք են. իսկ մերն Արտավազդ և քաջք և երգք զնոցունց ի հեթանոսութեան անդ ունին զսկիզբն»[1]։

Նույն դարի 60-ական թվականներին, վրաց Ամիրանիի հայկական ծագման վերաբերյալ Էմինի վերոհիշյալ կարծիքին հար և նման կարծիք է հայտնել և մի ուրիշ հայ բանագետ՝ Ստ. Պալասանյանը, գրելով. «Վրաց Ամիրանի զրույցը, որ մինչև այժմ էլ պատմվում է նույն ժողովրդի մեջ, մեր Արտավազդի զրույցի գրեթե նույն և նմանն է, և ինչպես երևում է, հին ժամանակներից Հայաստանից Վրաստան է անցկացել։ Այս երկու զրույցների մեջ եղած զանազանությունը էնդուրումն է երևվում, որ առաջինը հեթանոսական ժամանակների պատկանելով՝ հեթանոսական կարծիքներ է բովանդակում, իսկ երկրորդը քրիստոնեության ժամանակների վերաբերելով՝ քրիստոնեական կարծիքներ է պարունակում»[2]։

Քննության առարկա ավանդությունների վերաբերյալ տրամագծորեն հակառակ տեսակետ են արտահայտել վրաց բանագետներից մի քանիսը։

Ա. Ծերեթելու տեսակետով, օրինակ, ինչպես Յազոն-Մեդեայի, այնպես էլ Պրոմեթեոսի ավանդությունները Վրաստանի արգասիքն են. «այստեղ են նրանք ծնվել, այստեղ են հասակ առել, և հեքիաթների կերպարանք ընդունած, Կոլխիդայից անցել են Հելլադա»[3]։ Հաստատելով Ա. Ծերեթելու վերոհիշյալ վարկածը Պրոմեթեոսի վրացական ծագման վերաբերյալ, վրաց բանագետ Պ. Ինգորոզվան, ավելի հեռուն է գնում, գտնելով, որ հայկական Մհերի ավանդության սկզբնաղբյուրը ևս եղել է վրաց Ամիրանիի ավանդությունը[4]։ Մի ուրիշ ժամանակակից վրաց բանագետ, նշելով հանդերձ, որ ինքը՝ «չի բաժանում այն տեսակետը,

---

1 Նույն տեղում։

2 Ստ. Պալասանյան, *Պատմություն հայոց գրականության*, հատ. Ա., Թիֆլիս, 1865, էջ 186։

3 Ա. Ծերեթելի, *Երկեր*, հատ. 3, Թիֆլիս, 1940, էջ 679 (վրացերեն)։

4 Պ. Ինգորոզվա, *Սաասունցի Դավիթ հայկական էպոսը*, Թիֆլիս, 1934, էջ XXVIII (վրացերեն)։ Տե՛ս նաև «Մնաթոբի», 1939, № 1, էջ 184 (վրացերեն)։

*որի համաձայն կրտսեր Մհերի ցիկլի սկզբնաղբյուրը իբր թե եղել է Ամիրանիի ավանդությունը[1]», մի փոքր ավելի զգուշավոր ու նուրբ ձևակերպմամբ, բստ էության կրկնում է Պ. Ինգորողվայի տեսակետը, գրելով. «Ամիրանի ցիկլը, լայնորեն տարածված է Վրաստանում և նրա սահմաններից դուրս։ Շղթայված հերոսի վերաբերյալ զրույցը ժողովրդականացած է վրացերեն, սվաներեն, մեգրելերեն, աբխազերեն,* **հայերեն**, *օսեթերեն, չերքեզերեն, լակերեն և կաբարդիներեն լեզուներով։ Սակայն, կենտրոնական տեղը պատկանում է վրացականին։ Զրույցը վրացականից անցել է մյուս ժողովուրդներին։ Այդ բանը հաստատվում է նաև այնու, որ Ամիրանի մասին երգեր և ոտանավորներ հանդիպում են միայն վրացերեն լեզվով։ Արմատավորվելով Կովկասի մյուս ժողովուրդների մեջ, վրացական զրույցը աստիճանաբար ձուլվել է տեղականների հետ և վեր է ածվել ազգային էպոսի»։ Եվ ապա. «Ժամանակակից կովկասյան ժողովուրդների մեջ տարածված վիպական սյուժեների ուսումնասիրությունը, մեզ կանգնեցրեց մի կողմից վրացական «Ամիրանի», «Տարելիանի» և «Ռոստոմիանի», և մյուս կողմից Մհերի մասին եղած հայկական վիպական զրույցների փոխհարաբերության պրոբլեմի առաջ։ Որոշակի շրջաններում ժողովրդականացած այդ սյուժեները* **ներկայումս** *կապված են տարբեր ժողովուրդների հետ, բայց, ինչպես հայտնի է, լեզվական բազմազանությունը միշտ չէ, որ ենթադրում է սյուժեների բազմածագումայնություն»[2] (ընդգծումները մերն են—Ա. Ղ.)։*

*Եղել են և ուրիշ կարծիքներ ու տեսակետներ, որոնց ներկա դեպքում հարկ չենք համարում մի առ մի անդրադառնալ[3]։*

*Բացառված չհամարելով ինչպես վրացիների ու հույների, այնպես էլ մանավանդ վրացիների ու հայերի քննության առարկա ավանդությունների (Ամիրանի, Պրոմեթեոս, Արտավազդ, Մհեր) փոխադարձ ազդեցության ու ներգործության հնարավորության հանգամանքը, նկատի*

---

[1] *М. Чиковани*, Народный грузинский эпос о прикованном Амирани, Москва, 1966, *էջ 70—71*։

[2] *Նույն տեղում, էջ 16, 200*։

[3] *Տե՛ս Г. Потанин*, Восточные мотивы в средневековом европейском эпосе. М., 1899, *էջ 395*, **Լ. Մելիքսեթբեկ**, *Արտավազդի և Մհերի հետքերը Վրաստանում («Բանբեր Հայաստանի գիտական ինստիտուտի», Վաղարշապատ, 1921—1922, գիրք Ա. և Բ., էջ 93—104)*, *Н. Марр*, Кавказоведение и абхазский язык, "Избраные работы,, *հատ. 1, 1933, էջ 74 և այլն*։

*ունենալով հիշյալ ժողովուրդների միջև գոյություն ունեցած պատմական հարաբերությունների ու կուլտուրական հաղորդակցությունը, որոնց պայմաններում նշված ավանդություններից մեկի կամ մյուսի այս կամ այն մանրամասնը կարող էր փոխ առնվել և հարմարեցվել այս կամ այն ժողովրդի ազգային հերոսի կերպարին, մենք միաժամանակ անընդունելի և իրական, պատմական կռվաններից զուրկ ենք համարում այն կարծիքներն ու տեսակետները, որոնց համաձայն՝ վրաց Ամիրանին իբր թե* ծագել է *հայկական Արտավազդից (Մ. Էմին, Ստ. Պալասանյան), հունական Պրոմեթեոսը՝ վրաց Ամիրանից (Ա. Ծերեթելի, Պ. Ինգորոզվա), հայկական Մհերը՝ վրաց Ամիրանից (Պ. Ինգորոզվա, Մ. Չիկովանի)։ Այդ կարծիքներն ու տեսակետները ավելի շատ խարսխված են դրանք պաշտպանող հայ և վրացի հեղինակների ցանկության, քան համապատասխան առարկայական փաստերի վրա։ Նման տրամագծորեն իրար հակառակ կարծիքների ու տեսակետների գոյության հանգամանքն, ինքնին, խոսում է վերջիններիս խախուտ լինելու մասին։*

*Արձանագրելով հանդերձ ինչպես հայ, այնպես էլ վրաց բանագետների կարծիքների ու տեսակետների հավասար չափով հիմնազուրկ լինելը, միաժամանակ չի կարելի չնշել այն էական տարբերությունը, որ գոյություն ունի դրանց հեղինակների դիրքորոշման և մեկնակետերի մեջ։ Մինչդեռ Էմինի և Պալասանյանի կարծիքները հայտնվել են անցյալ դարի 50—60-ական թվականներին, բանագիտական մտքի զարգացման համեմատաբար ցածր աստիճանի պայմաններում, բանահյուսական սյուժեների ու մոտիվների փոխառության տեսակետի տիրապետության շրջանում, Ինգորոզվայի և Չիկովանու տեսակետները արտահայտվել են մեր օրերում։*

*Ուստի, եթե Էմինի և Պալասանյանի կարծիքները կարելի է դիտել որպես հայ հեղինակների յուրահատուկ տուրքը ժամանակի իշխող փոխառության տեսությանը, պարուրված նրանց ազգային ռոմանտիզմի պարզամիտ հավատով, ապա վրաց բանագետների և հատկապես Պ. Ինգորոզվայի տեսակետը պետք է համարել ժամանակավրեպ և ըստ ամենայնի միտումնավոր մի տեսակետ, որը իրավացիորեն խստագույն քննադատության է ենթարկվել ակադեմիկոս Հովսեփ Օրբելու կողմից՝ իբրև «յուրատեսակ ռեանշիստական պահանջի մի անանկ փորձ»*[1]։

[1] *Ակադ.* Հ. Ա. Օրբելի, *Սասունցի Դավիթ էպոսը (տպված է «Խորհրդային գրականություն» ամսագրում, 1939, № 8—9, էջ 13)։ Տե՛ս նաև նույն հեղինակի՝*

*Եթե առաջնորդվելու լինենք Ինգորոզվայի տրամաբանությամբ, ապա կարելի կլինի պնդել, որ վրացական ծագում ունեն նաև վրացիների հետ կուլտուր-պատմական քիչ թե շատ երկարատև շփման ու հարաբերության մեջ եղած՝ աբխազների Աբռսկիլը, նարտերի Ամրանը, իրանցիների Հրուդենը, և սրանց պես էլի ուրիշներ, քանի որ վերջիններիս և վրաց Ամիրանի միջև ևս առկա են հար և նման ընդհանրություններ՝ ինչ կա մի կողմից հունական Պրոմեթևոսի, հայկական Արտավազդ-Մհերի և մյուս կողմից վրացական Ամիրանի միջև։*

*Պատմական փաստը, սակայն, այն է, որ շղթայված (արգելափակված) դյուցազնի (հերոսի) ավանդության վերևում հիշատակված բոլոր տարբերակները յուրաքանչյուր առանձին ժողովրդի ինքնուրույն ստեղծագործության արգասիքն են, և զանազան երկրներում ծագել են իրարից բոլորովին անկախ, այդ նույն երկրների բնակչության անցած տնտեսական զարգացման հար և նման փուլերում։ Խոսքը վերաբերում է քննության առարկա ավանդության էությանն ու հիմնական նկարագրին և ոչ նրա առանձին մանրամասներին (հերոսի անունը, բնավորության այս կամ այն մասնակի գիծը և այլն), որոնք տարբեր ժողովուրդների միջև տեղի ունեցած կուլտուր-պատմական փոխհարաբերությունների ու շփման պայմանների ազդեցությամբ կարող են մի ժողովրդից անցնել մյուսին։*

*Ինչպես հունական հռչակավոր Պրոմեթևոսը, այնպես էլ վերջինիս բազմազգի տարբերակ-զուգահեռները ստեղծվել են պատմական մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ դեռևս չէին ձևավորվել ոչ միայն այդ ավանդությունների տեր ժողովուրդները, այլև հետագայում նրանց կազմի մեջ մտած տոհմերն ու ցեղերը։ Մարդկային պատմության վաղնջական այդ փուլը գիտության մեջ հայտնի է «բարբարոսության»*

---

«Армянский героический эпос», Ереван, 1956, *էջ 113։ Նույնը նաև հայերեն՝ Հայկական հերոսական էպոսը, Երևան, 1956, էջ 105—106։*

*Ի միջի այլոց նկատենք, որ հունական Պրոմեթևոսի և հայկական Արտավազդի ու Մհերի վրացական ծագման մասին վերը բերված տեսակետները մեզ հիշեցնում են ռուս նշանավոր երգիչ Ֆ. Ի. Շալյապինի վրացի լինելու վարկածը, որը ամենայն լրջությամբ «հիմնավորված» և ի լուր աշխարհի հայտարարված է վրաց ժամանակակից արվեստաբաններից մեկի կողմից (տե՛ս Шалва Кошмадзе,* Тбилисский театр оперы и балета в 1851—1921, Тбилиси, 1950: *Սրա քննադատությունը տե՛ս К. Ляско, В. Пуртов,* Шаляпин, легенды и быль, «Советская культура», 1968, *№ 121, 12 հոկտեմբերի, էջ 4)։*

շրջան անունով։ Դա այն ժամանակներն էին, երբ մարդը առաջին անգամ սկսում է մտածել երկաթը կռելու և կոփելու մասին՝ նրանից գործիք ու զենք պատրաստելու նպատակով, երբ այդ հողի վրա ձևավորվում է առաջին արհեստներից մեկը՝ դարբնությունը, և դարբինները կապվում են պաշտամունքի առարկա դարձած երկաթի ու կրակի տերերի հետ, որոնց վերագրվում է գերբնական և մոգական զորություն, իբրև մարդու տնտեսական և արտադրական կյանքում խոշորագույն դեր խաղացող արարածների, իբրև առաջին մետաղագործների[1]։

Հունական Պրոմեթեոսը և նրա այլազգի զուգահեռ-տարբերակները մարմնավորում են իրենց մեջ տարբեր երկրներում ու մայրցամաքներում ապրող զանազան ժողովուրդների բարեկեցիկ ու ապահով կյանքով ապրելու շատ բանով իրար նման ու հարազատ ձգտումներն ու ակնկալությունները։ Ըստ այդմ և իրար նման են տարբեր ժողովուրդների այդ ձգտումներն ու ակնկալությունները մարմնավորող ու իրականացնող՝ մարդկանց կրակ, լույս ու ջերմություն պարգևող բարի դյուցազներն ու հերոսները (հունական Պրոմեթեոսը, հայկական Արտավազդն ու Մհերը, վրացական Ամիրանը, իրանական Հրուզենը, սերբական Մարկոն, գերմանական Թորը և այլն) և վերջիններիս հակառակորդ՝ մարդկանց վնաս ու կործանում սպառնացող չար ուժերը (զանազան չարքեր, դևեր, վիշապներ, սատանաներ և այլն)։

Միջազգային բնույթի հայկական ավանդությունների շարքին է պատկանում նաև զանազան շինվածքների (բերդ, պարիսպ, աշտարակ, կամուրջ և այլն) շարվածքի (պատ, հիմք) մեջ կենդանի վիճակում թաղված զոհի (աղջիկ, կին, տղա և այլն) ավանդությունը, որի տարբերակներին մենք հանդիպում ենք աշխարհի տարբեր վայրերում ապրող ժողովուրդների մոտ։ Ահա այդ ավանդություններից մի քանիսը.

Հայկական տարբերակ: Ախալցխայի բերդը կառուցելիս շարունակ քանդվել են նրա պատերը։ Ոմանք խորհուրդ են տվել վարպետներին փլուզումը կանխելու համար պատի մեջ կենդանի վիճակում մի աղջիկ թաղել իբրև զոհ։ Շլանալով խոստացված առատ ոսկուց, մի անգութ պառավ այդ նպատակի համար տալիս է հարազատ քրոջ իր խնամքին մնացած որբ աղջկան։ Բերդի պատի մեջ դրված աղջիկը շարելու ընթացքում աղերսագին խնդրում է մորաքրոջը փրկել իրեն վերահաս մա-

[1] Համա. Սամուելյան Խ., Հին Հայաստանի կուլտուրան, հատ. Բ, Երևան, 1941, էջ 276, Հ. Օրբելի, Հայկական հերոսական էպոսը, Երևան, 1956, էջ 106—107։

*հից։ Սակայն նա անդրդվելի է մնում այնքան, մինչև որ քարերը ծածկում են աղջկա ամբողջ մարմինը։ Մեռնելուց առաջ հուսահատ աղջիկը անիծում է անգութ մորաքրոջը, և նա սև ագռավ դառնալով սկսում է սավառնել ու կռավել բերդի պատերի մոտ (№ 571)։*

*Նույն ավանդության հայկական մի ուրիշ տարբերակի համաձայն՝ հինգ եղբայրներ Ատապազար քաղաքի մոտով հոսող Սաքարիա գետի վրա սկսում են կառուցել հինգ կամարներով մի մեծ կամուրջ։ Եղբայրները հազիվ են բարձրացնում կամուրջի կամարների հիմքերը, երբ գետի կատաղի ալիքները քանդում և տանում են ամեն ինչ։ Նույն բանը կրկնվում է մի քանի անգամ։ Եղբայրներին հայտնում են, որ մինչև նրանք մարդկային զոհ չմատուցեն, կամուրջը կանգուն չի մնա։ Որոշում են զոհել նրան, ով առաջինը կերևա իրենց։ Շատ չանցած եղբայրներին հաց է բերում նրանցից կրտսերի կինը։ Որոշման համաձայն նրան կենդանի թաղում են կամուրջի հիմքում, որից հետո միայն կամուրջի շինարարությունը անխափան հասնում է իր ավարտին... (№ 593)*[1]*։*

**Վրացական տարբերակ։** *Սուրամի բերդը կառուցելիս հազիվ հինգ գազ բարձրացած, չար ոգու թելադրանքով, փլվում են նրա պատերը։ Ոչ մի միջոց (քահանայի մաղթանք և այլն) չի կարողանում կասեցնել բերդի պատերի կրկնվող փլուզումը։ Գրբացի խորհրդով ստիպված են լինում պատի մեջ կենդանի վիճակում թաղել Զուրաբ անունով մի երիտասարդի, որից հետո միայն անխափան գլուխ է գալիս բերդի շինարարությունը։ Լսելով որդու ողբերգական մահվան բոթը, Զուրաբի մայրը տեղն ու տեղը խելագարվում է և «Վա՜յ իմ որդի Զուրաբ» կանչելով սկսում է խելակորույս թափառել Սուրամի բերդի պարիսպների տակ*[2]*։*

**Բուլղարական տարբերակ։** *Երեք եղբայրներ որոշում են Սթրումա գետի ափին միացյալ ուժերով կառուցել Սմիլեն ամրոցը։ Սակայն նրանց ցերեկվա շինածը գիշերը քանդվում է։ Եղբայրները միաժամանակ երազ են տեսնում, և մի աներևույթ ոգի հուշում է նրանց ամրոցի պատի մեջ իբրև զոհ թաղել իրենց կանանցից նրան, ով առաջինը կբերի ճաշը, որպեսզի ամրոցը կանգուն մնա։ Ավագ և միջնակ եղբայրները կրտսեր*

---

[1] *Նման բնույթի առեղծագործություններ են նաև № № 572, 578, 581, 592, 594, 598 հայկական ավանդությունները։*

[2] **Գ. Ճոնքաձե,** *Սուրամի բերդը, Երևան, 1929, էջ 84—102։*

*եղբորից գաղտնի իրենց կանանց վաղօրոք զգուշացնում են այդ մասին։ Անգիտակ կատարված դավին, կրտսեր եղբոր կինը ինքն է առաջինը տանում ամուսնու ճաշը։ Եղբայրները անմիջապես բռնում են նրան և աներևույթ ոգու թելադրանքի համաձայն, ուշադրություն չդարձնելով նրա լաց ու կոծին, կենդանի-կենդանի թաղում են ամրոցի պատի մեջ, որից հետո այն այլևս չի քանդվում*[1]*։*

**Սերբական տարբերակ:** *Երեք եղբայրներ (Վուկաշին, Ուգլեշա և Գոյկո Մըլյավչևիչ) երեք հարյուր վարպետներով ձեռնարկում են կառուցելու Սկանդրա քաղաքը։ Սակայն նրանց ցերեկվա շինածը, երեք տարի շարունակ, քանդվում է գիշերով։ Քաղաքի փլուզումը կանխելու համար Վիլա անունով ոգին պահանջում է եղբայրներից Սկանդրայի պարիսպների մեջ թաղել նրանց կանանցից մեկին, ով առաջինը կբերի վարպետների ճաշը։ Ավագ և միջնակ եղբայրները այդ մասին, կրտսեր եղբորից գաղտնի, լուր են տալիս իրենց կանանց։ Վերջիններս հիվանդ ձևանալով խնդրում են կրտսեր եղբոր կնոջը, որ այդ օրը նա տանի վարպետների ճաշը։ Անգիտակ նյութված դավին, կրտսեր եղբոր կինը կատարում է նրանց խնդիրքը և... կենդանի թաղվում կառուցվող քաղաքի պարիսպների մեջ։ Մինչև հիմա էլ նրա ստինքներից կաթ է հոսում, որով բուժվում են կաթ չունեցող ծննդկանները*[2]*։*

**Ռումինական տարբերակ:** *Մեշթեր-Մանոլե անունով ճարտարապետը Ռումինիայի Արճեշ քաղաքի տաճարի հիմնադրման նախորդ գիշերը երազ է տեսնում։ Մի ձայն նրան ասում է, թե տաճարը կկառուցվի ու անխախտ կմնա միայն այն դեպքում, եթե նրա հիմքում թաղվի կառուցող վարպետներից մեկի կինը, ով առաջինը կբերի ամուսնու ճաշը։ Մանոլեն այդ մասին հայտնում է բոլոր վարպետներին, որոնք ուխտում են կատարել իրենց ճարտարապետի երազի պահանջը։ Առավոտյան առաջինը ամուսնու համար ճաշ է բերում Մանոլեի կինը՝ գեղատի Ֆլորան։ Հավատարիմ իրենց ուխտին, տաճարի վարպետները բռնելով վերջինիս, կենդանի թաղում են ապագա տաճարի հիմքում, որի վրա հետագայում*

[1] *Straus*, Bulgarische Volkschichtungen, Wien, 1895, *էջ 407։*

[2] *Вука Караджич*, Сербские народные песни, *հատ. Հ, էջ 115, № 26, Буслаев Ф.*, Русская народная поэзия, СПБ., 1861, *էջ 304—306։*

*եղբորից գաղտնի իրենց կանանց վաղօրոք զգուշացնում են այդ մասին։ Անգիտակ կատարված դավին, կրտսեր եղբոր կինը ինքն է առաջինը տանում ամուսնու ճաշը։ Եղբայրները անմիջապես բռնում են նրան և աներևույթ ոգու թելադրանքի համաձայն, ուշադրություն չդարձնելով նրա լաց ու կոծին, կենդանի-կենդանի թաղում են ամրոցի պատի մեջ, որից հետո այն այլևս չի քանդվում*[1]*։*

**Սերբական տարբերակ:** *Երեք եղբայրներ (Վուկաշին, Ուգլեշա և Գոյկո Մռլյավչևիչ) երեք հարյուր վարպետներով ձեռնարկում են կառուցել Սկանդրա քաղաքը։ Սակայն նրանց ցերեկվա շինածը, երեք տարի շարունակ, քանդվում է գիշերով։ Քաղաքի փլուզումը կանխելու համար Վիլա անունով ոգին պահանջում է եղբայրներից Սկանդրայի պարիսպների մեջ թաղել նրանց կանանցից մեկին, ով առաջինը կբերի վարպետների ճաշը։ Ավագ և միջնակ եղբայրները այդ մասին, կրտսեր եղբորից գաղտնի, լուր են տալիս իրենց կանանց։ Վերջիններս հիվանդ ձևանալով խնդրում են կրտսեր եղբոր կնոջը, որ այդ օրը նա տանի վարպետների ճաշը։ Անգիտակ նյութված դավին, կրտսեր եղբոր կինը կատարում է նրանց խնդիրքը և... կենդանի թաղվում կառուցվող քաղաքի պարիսպների մեջ։ Մինչև հիմա էլ նրա ստինքներից կաթ է հոսում, որով բուժվում են կաթ չունեցող ծննդկանները*[2]*։*

**Ռումինական տարբերակ:** *Մեշթեր-Մանոլե անունով ճարտարապետը Ռումինիայի Արճեշ քաղաքի տաճարի հիմնադրման նախորդ գիշերը երազ է տեսնում։ Մի ձայն նրան ասում է, թե տաճարը կկառուցվի ու անխախտ կմնա միայն այն դեպքում, եթե նրա հիմքում թաղվի կառուցող վարպետներից մեկի կինը, ով առաջինը կբերի ամուսնու ճաշը։ Մանոլեն այդ մասին հայտնում է բոլոր վարպետներին, որոնք ուխտում են կատարել իրենց ճարտարապետի երազի պահանջը։ Առավոտյան առաջինը ամուսնու համար ճաշ է բերում Մանոլեի կինը՝ գեղանի Ֆլորան։ Հավատարիմ իրենց ուխտին, տաճարի վարպետները բռնելով վերջինիս, կենդանի թաղում են ապագա տաճարի հիմքում, որի վրա հետագայում*

---

[1] *Straus*, Bulgarische Volkschichtungen, Wien, 1895, էջ 407։

[2] *Вука Караджич*, Сербские народные песни, հատ. 2, էջ 115, № 26, *Буслаев Ф.*, Русская народная поэзия, СПБ., 1861, էջ 304—306։

*իր բարեհաջող ավարտին է հասնում Արճեշի շքեղ տաճարի շինարարությունը*[1]*։*

**Գերմանական տարբերակ:** *Թյուրինգիայի բնակիչները իրենց կառուցած Լիբենշտեյնի ամրոցը հաստատուն և անմատչելի դարձնելու համար, մեծ գումար վճարելով, հարազատ մորից գնում են նրա աղջկան, որպեսզի շարեն ամրոցի պատի մեջ։ Երբ բանվորները պատի մեջ դնելով աղջկան, սկսում են շարվածքը, աղջիկը դիմելով մորն ասում է. «Մայրիկ, ես դեռ տեսնում եմ քեզ»։ Ժամանակ անց նա ասում է՝ «Մայրիկ ես դեռ մի քիչ տեսնում եմ քեզ»։ Իսկ երբ դրվում է պատի վերջին քարը, աղջիկն ասում է. «Մայրիկ, ես այլևս չեմ տեսնում քեզ...»*[2]*։*

**Դանիական տարբերակ:** *Կոպենհագեն քաղաքի պարիսպները կառուցելու ժամանակ շարվածքը շարունակ փուլ է գալիս։ Վարպետներին խորհուրդ է տրվում զոհաբերություն անել։ Այդ նպատակով նրանք գտնում են մի փոքրիկ անմեղ աղջիկ, նստեցնում են նրան ուտելիքներով ու խաղալիքներով ծածկված սեղանի մոտ։ Եվ երբ աղջիկը սկսում է տարվել ուտելիքներով ու խաղալիքներով, 12 վարպետներ արագ-արագ բարձրացնում են պարիսպի պատերը՝ աղջկան իբրև զոհ կենդանի թաղելով շարվածքի մեջ։ Այնուհետև նրանք երաժշտության աղմուկի տակ բարձրացնում են քաղաքի մյուս բոլոր պարիսպները ևս, որոնք այլևս չեն փլվում և մնում են անխախտ իրենց տեղում*[3]*։*

**Իտալական տարբերակ:** *Իտալիայի Արտու գետի վրա որմնադիր վարպետները սկսում են կամուրջ կառուցել։ Նրանց ցերեկվա շինածը շարունակ քանդվում էր գիշերով։ Վարպետներին խորհուրդ են տալիս կամուրջի հիմքում կենդանի-կենդանի թաղել իրեն կանանցից մեկն ու մեկին, որպեսզի կամուրջն այլևս չքանդվի։ Այդպես էլ անում են։ Դրանից հետո կամուրջի շինարարությունը հասնում է իր բարեհաջող ավարտին*[4]*։*

---

[1] *Barberot E.*, Histoire des styles d' Architecture, Paris, 1891, հատ. 2, էջ 268—269։ Հմմտ. Շրջիկ, Նյութեր Արճեշ քաղաքին, Պուքրեշ, 1942, էջ 52։

[2] *Тэйлор Э.*, Первобытная культура, М., 1939, էջ 60։

[3] Նույն տեղում։

[4] Նույն տեղում։

Նմանօրինակ ավանդություններ ունեն նաև՝ ռուսները[1], շոտլանդացիք, անգլիացիները և ուրիշ շատ հին ու նոր ժողովուրդներ[2]։

Շինվածքների շարվածքի մեջ կենդանի թաղված զոհի վերաբերյալ զանազան ժողովուրդների մոտ պատմվող համապատասխան ավանդությունների մեջ առկա նմանությունների փաստը թե կուլտուր-պատմական և թե մեթոդաբանական տեսակետից մասնագիտական գրականության մեջ ստացել է տարբեր մեկնաբանություններ։

Գիտնականներից մեկն, օրինակ, տվյալ փաստը բացատրել է զարգացող երկրագործության ազդեցության հետևանքով երբեմնի քոչվորական ցեղերի նստակեցության անցնելու երևույթով, որը, խոշորագույն բեկում հանդիսանալով ժողովուրդների կյանքում, իր անդրադարձումը չէր կարող չունենալ նրանց դիցաբանական հասկացությունների մեջ՝ առաջ բերելով մի շարք հավատալիքներ կապված որևէ ցանկապատի, աշտարակի, պատվարի կամ ամբողջ քաղաքի կառուցման դիցաբանական նշանակության հետ[3]։

Մի ուրիշը գտնում է, որ տվյալ դեպքում մենք գործ ունենք ոչ միայն հաճախակի կրկնվող ու փոփոխվող դիցաբանական թեմայի, այլև՝ բանավոր ու գրավոր ավանդությունների մեջ պահպանված արյունալի ու բարբարոսական մի սովորույթ-ծեսի հետ, որը ծագած լինելով վաղնջական ժամանակներում, գոյատևել է նաև հետագա դարերում՝ հասնելով մինչև նոր ժամանակները։ Դա մի ծես է, որի նպատակն է եղել զոհաբերության միջոցով հայցել երկրային ոգիների գթասրտությունը կամ էլ իրեն իսկ զոհի հոգին կերպարանափոխության միջոցով վեր ածել հովանավոր-դեմոնի[4]։

Մի երրորդ գիտնականի կարծիքով բերդերի, կամուրջների, պարիսպների հիմքում կամ պատաշարի մեջ կույս աղջիկներին (ծնողների միամորիկ զավակներին) կենդանի-կենդանի թաղելու սովորությունը Ասիայի ու Եվրոպայի բազմաթիվ ժողովուրդների մոտ ոչ այլ ինչ է, բայց եթե աղոտ մի հիշողություն այնոր հնությունից մնացած մարդկային զոհաբերությունների մասին[5]։

---

[1] Տե՛ս *Драгоманов М.*, Малорусские народные предания и рассказы, Киев, 1876, էջ 246։

[2] Տե՛ս *Тэйлор Э.*, Первобытная культура, М., 1939, էջ 60—62։

[3] Տե՛ս *Буслаев Ф.*, Русская народная поэзия. СПБ., 1861, էջ 303.

[4] *Тэйлор Э.*, Первобытная культура, М., 1939, էջ 61—62։

[5] Սամուելյան Խ., *Հին Հայաստանի կուլտուրան*, հատ. 2, Երևան, 1941, էջ 315։

Գրականության մեջ արտահայտվել է նաև այն տեսակետը, ըստ որի բերդերի, կամուրջների, աշտարակների ու այլ շինությունների հիմքի կամ պատերի մեջ կենդանի թաղված մարդկանց մասին տարբեր ժողովուրդների մոտ պատմվող ավանդություններում առկա նմանությունները փոխառության հետևանք են։

Այդ տեսակետի արտահայտությունն է մեզանում այն բացատրությունը, որ տվել է հայ նշանավոր գիտնական-ճարտարապետ Թ. Թորամանյանը՝ Ռումինիայի Արճեշ քաղաքի եկեղեցին կառուցող Մանոլ ճարտարապետի և Վասպուրականի Աղթամար կղզու ծովային պարիսպների հեղինակ հայազգի Մանվել ճարտարապետի մասին պատմող ավանդությունների մեջ եղած նմանությանը։

«Արդյո՞ք դիպվածական է այս նույն ավանդության գտնվելը իրարմե անհունապես հեռու երկրներու մեջ»,—գրում է Թորամանյանը, և անմիջապես պատասխանում է. «Անշուշտ ոչ։ Ամենայն հավանականությամբ Հայաստանի անընդհատ գաղթականություններու միջոցով այս ավանդությունը հասեր է մինչև Ռումինիա։ Որևիցե հետադարձ գաղթականության հոսանք չէ եղած, որ պահ մը մտածենք, թե Ռումինիայեն դեպի Հայաստան եկավ։

Գեղարվեստական ոճերու պատմագիր Barberot, Ռումինիայի Արճեշի եկեղեցվո մասին խոսած ժամանակ, որդեն ժամանակագրական շփոթություն մը կգտնե եկեղեցվո շինության և ավանդության մեջ մատնանշված իշխանին նկատմամբ։

Եկեղեցին շինվեր է 1513—1521 թվին, Negru Voda անուն իշխանի մը ձեռքով։ Այս իշխանն ապրած է 1250-ին, այսինքն եկեղեցվո շինութենեն 268 տարի առաջ։ Ուրեմն նախքան եկեղեցվո շինությունը, ավանդությունը շատ կանուխեն գոյություն ունեցեր է Ռումանիայի մեջ, որ գլխավոր գիծ մըն է հայոց գաղթականության։ Վասպուրականի Սենեքերիմ թագավորի ժամանակակից Վասիլ Բ. կայսրն է, որ հայերու մեծ գաղթականություն մը տարավ Մակեդոնիա, որուն մասին վերև տեսանք Ստեփաննոս Ասողիկի վկայությունը։ Կարելի է, որ նույնիսկ այդ Վասպուրականի գաղթականության մեկ հատվածն էր, որ Վասիլ Բ. գաղթեցուց, որոնց մեջ, անշուշտ, կգտնվեին Հայաստանցի արճեշցիներեն ալ։

Արդյոք կապ չունի՞ այս ավանդությունը Հայաստանի Արճեշին հետ և Արճեշով ալ շատ մոտիկ Աղթամար կղզվույն մեջ շինված ծովային պարիսպներուն հետ, որ ըստ Թովմա Արծրունվո, գերմարդկային

հրաշքներ էին ճարտարապետ Մանվելի ձեռքով իրագործված։ Արդյոք Հայաստանի, մասնավորապես Վասպուրականի մեջ համբավ ու հռչակ ունեցող Մանվելը չէ՝ Ռումանիայի Արճեշի ավանդության պատմած Մանոլը։ Ժամանակագրական դեպքերը և ավանդության պատմվածի նմանությունները այնչափ համոզիչ են, որ ես կուզեմ հավատալ, թե վասպուրականցի հրաշագործ Մանվելն է քանի մը դար հետո Ռումանիայի ժողովրդի բերնին մեջ Մանոլի փոխված։ Այս մասին քննությունը հառաջ տանիլ և ավելի լուսաբանել կթողում մասնագետներուն»[1]։

Վերևում շարադրված տեսակետներից հավանականն ու ընդունելին, մեր կարծիքով, առաջին երեքն են։ Այդ տեսակետները ճիշտ լուսաբանություն տալով խնդրո առարկա ավանդությունների զանազան ազգերի տարբերակ-զուգահեռների մեջ առկա նմանությունների փաստին, ոչ միայն չեն հակասում իրար, այլ ըստ էության յուրովի լրացնում են մեկը մյուսին։

Գալով Թորամանյանի առաջ քաշած ուշագրավ վարկածին (չորրորդ տեսակետ), ապա վերջինս, մեր կարծիքով, հավանական ու խելամիտ է միայն իր այն մասով, որ վերաբերում է հայկական ավանդության Արճեշ և Մանվել անունների ռումինական ավանդության մեջ ներթափանցելու հնարավորությանը (այդ են հաստատում հայերի գաղթի վերաբերյալ բերված կուլտուր-պատմական փաստերը)։ Նույնը չի կարելի ասել, սակայն հիշյալ վարկածի այն մասի վերաբերյալ, որ վերաբերում է ռումինական ավանդության հայկականից սերվելուն։

Համաշխարհային ջրհեղեղի, շղթայված դյուցազնի և շինվածքների շարվածքի մեջ կենդանի թաղված զոհի վերոհիշյալ ավանդությունների նման միջազգային բնույթի ստեղծագործություններ են նաև՝ արևի, լուսնի ու հարդագողի, ցորենի, լոշտակի, արջի ու չղջիկի ծագման, անեծքով քար դարձած մլատ ու չար մարդկանց մասին պատմող և շատ ուրիշ հայկական ավանդություններ[2]։ Վերջիններիս ավելի կամ պակաս մոտիկ զուգահեռները մենք գտնում ենք՝ հնդիկների, չինացիների, հրեաների, հույների, գերմանացիների, ռուսների, լատիշների, վրա-

---

[1] Թորամանյան Թ., Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, հատ. II., Երևան, 1942, էջ 76—77։

[2] Տե՛ս «Ավանդապատումի» մեջ № № 1—4, 32, 63, 83, 154 Բ, 162, 164, 177—179, 186 Ա—Գ, 201, 203, 331, 337, 354, 359, 885 ավանդությունները։

ցիների, մենգրելների, չեչենների, օսերի, թաթարների[1] և արևելյան ու արևմտյան բազմաթիվ այլ հին ու նոր ցեղերի, ժողովուրդների ու ազգերի մոտ։

Բերված օրինակ-փաստերը և կուլտուր-պատմական տեսանկյունից նրանց տրված համեմատական լուսաբանությունը հիմք է տալիս եզրակացնելու, որ քննության առարկա հայկական ավանդությունները, ուրիշ ժողովուրդների նույնատիպ ավանդությունների հետ, արդյունք են մի կողմից մարդկային մտածողության բովանդակությունը որոշող բնա-ֆիզիկական և սոցիալ-տնտեսական կյանքի նման պայմանների, մյուս կողմից՝ մարդուն հատուկ զուգորդական մտածողության ընդհանուր օրենքների։ Հանդիսանալով առարկայական իրականության անդրադարձումը, մարդկային մտածողությունը տարբեր երկրներում անցնելով տնտեսական և հասարակական զարգացման հար և նման փուլեր, արտաքին աշխարհի նկատմամբ առաջ է բերում նույնօրինակ վերաբերմունք։ Այդ է պատճառն ահա, որ պատմական, հասարակական և գեղարվեստական զարգացման նույն ուղիով անցած մարդկանց ու ժողովուրդների ավանդությունները (և ոչ միայն ավանդությունները) հանդիսանալով նույն այդ մարդկանց ու ժողովուրդների **ինքնուրույն ստեղծագործությունները**, նման են իրար և իրենց գաղափարական բովանդակությամբ և թե իրենց մոտիվներով, սյուժեներով, թեմաներով ու կերպարներով, չնայած այն հանգամանքին, որ նրանք հաճախ իրարից բաժանված են աշխարհագրական անանցանելի տարածություններով, ժամանակի առումով բազմաթիվ դարերով, երբեմն նույնիսկ հազարամյակներով։ Աշխարհով մեկ տարածված այդ ավանդությունների նմանությունները ունեն հիմնականում տիպաբանական բնույթ։ Նրանց բոլորի հիմքը հասարակական գիտակցության զարգացման և իրականության գեղարվեստական ընդհանրացման միևնույն մակարդակն է։

---

[1] Տե՛ս *Драгоманов М.*, Малорусские народные предания и рассказы, Киев, 1876, էջ 14, 56 (№№ 10, 39), *Миллер Вс.*, Осетинские этюды, СПБ, 1881, մասն 1, էջ 157, Կիշմիշյան Ալ., *Բույսերի մեծարանքը*, Թիֆլիս, 1891, էջ 24, *Афанасьев А. И.*, Народные русские легенды, Казань, 1914, էջ 5, *Индийские сказки*, пер. Клягиной и Крашенникова, М., 1956, էջ 19—20, *Мифологический словарь*, Л., 1956, էջ 76, *Анцелане А.*, Латышские народные предания, Рига, 1962, էջ 68, 77, 80—81, *Crimm Br.*, Kinder und Hausmarchen, մասն 2, №194, *Сборник материалов для описания местностей и племен Кавказа*, հատ. 12, բաժ. 2, էջ 140, հատ. 26, բաժ 2, էջ 9, բաժ. 3, էջ 246—253։

**Եկամուտ ավանդություններ:**—*Հայկական ավանդությունների մեջ առկա են նաև այնպիսի ստեղծագործություններ, որոնք իրենց ծագումով կապված են հայ ժողովրդի հետ էթնիկական, կրոնական, տնտեսական, մշակութային և ռազմա-քաղաքական շփման մեջ գտնվող ցեղերի ու ազգերի ավանդությունների հետ: Եվ դա բնական ու հասկանալի է:*

*Ոչ մի ժողովրդի մշակույթ չի զարգանում ու բարգավաճում բացարձակ անկախ ու մեկուսի, առանց ուրիշ ժողովուրդների հետ փոխազդեցության ու կապերի: Պատմական որոշակի փոխհարաբերությունների ու շփման պայմաններում նրա ազգային մշակույթի (հավատալիքներ, առասպելներ, ավանդություններ և այլն) ու լեզվի բազմաթիվ տարրերը մուտք գործելով տվյալ ժողովրդի մեջ և համապատասխան կերպարանափոխության ու ստեղծագործական վերամշակման ենթարկվելով նրա մտաշխարհում, իրենց խորը արմատներն են բռնում այնտեղ:*

*Հայերը ապրելով Հայկական լեռնաշխարհում՝ Արևելքն ու Արևմուտքն իրար հետ կապող մեծ ճանապարհի վրա, վաղնջական դարերից սկսած մոտիկ հարաբերություններ է ունեցել ինչպես Կովկասի, այնպես էլ Միջագետքի ու Փոքր Ասիայի բազմաթիվ ժողովուրդների հետ (խեթեր, ուրարտացիներ, ասորեստանցիներ, բաբելացիներ, եբրայեցիներ, իրանցիներ և այլն): Այդ հանգամանքի շնորհիվ դարերի ընթացքում հիշյալ ժողովուրդների նյութական և հոգևոր մշակույթի (ճարտարապետություն, քանդակագործություն, խեցեգործություն, բանահյուսություն, դիցաբանություն, գիր, գրականություն և այլն) բազմաթիվ ստեղծագործություններ, այդ թվում նաև նրանց բանավոր ավանդություններն ու ավանդական զրույցները իրենց բովանդակությամբ, գործող անձերով, հերոսներով, սյուժեներով ու մոտիվներով նկատելի ազդեցություն են թողել մեր ժողովրդի վրա: Այդպիսի ավանդություններից են.*

**Տուրք-անգեղի ավանդությունը (№ 804):** *Արագիլ թռչունի վերաբերյալ Հայաստանում տարածված հնօրյա հավատալիքների ու ավանդությունների նման*[1], *այս ավանդությունը ևս խեթական ծագում ունի և հանդիսանում է խեթերի Տարկու, Տարքու կամ Տուրգու անունով բուսականության և պտղաբերության աստծու պաշտամունքի յուրահատուկ մի արձագանքը մեզանում: Փոքր Ասիայում և այլուր շատ տարածված այդ*

[1] Ղափանցյան Գր., *Խեթական մի առասպելի մասին, Երևան, 1945:*

*պաշտամունքը ժամանակին անցել է նաև հարավային Հայաստան՝ իր հետքերը թողնելով Եփրատից մինչև Վանա լիճը ձգվող տարածության վրա։*

*Վերոհիշյալ հանգամանքը, հենվելով էթնո-կուլտուրական և պատմա-լեզվաբանական համապատասխան տվյալների վրա, հավաստել ու հաստատել են մի քանի հեղինակավոր հայագետ-խեթագետներ։ Ահա թե ինչ է գրել այդ առթիվ Ն. Ադոնցը։ «Հայտնի է, որ հաթյան (իմա՝ խեթական—Ա. Ղ.) ցեղի բազմաթիվ աստվածների մեջ առանձնապես հռչակված էին երկուսը, իբր ազգային աստվածներ, Տարկու և Տիշուպ,* tarqu, tisup. *Երկուսն էլ տարածված պաշտամունք էին ամբողջ Առաջավոր Ասիայում։ ... Ուշադրության արժանին այն է մանավանդ, որ հաթյան աստվածության անունը պատահում է Հայաստանի այն մասում, ուր ընկնում է նաև Անգեղ գավառը, հին Նայիրի աշխարհում։ Ազգային ավանդությունը, կապելով Տորքը Անգեղ աստվածության հետ, մեզ հիմն է տալիս կարծելու, որ Տորքը ոչ այլ ինչ է, եթե ոչ հինավուրց Տարկուն։ ... Մեկնության բնավ կարոտ չէ, թե ինչու հեթանոսական հզոր աստվածը քրիստոնեական շրջանում պահպանվել է հրեշավոր պատկերով։ Կրոնական մտքի նույնօրինակ բեկման արդյունք է դև բառը, որ արիական լուսավոր աստվածության գաղափարից դարձել է չարության և խավարի ոգի»[1]։*

*Ադոնցի կարծիքը պաշտպանել և լրացուցիչ փաստերով հաստատել է նաև Աս. Խաչատրյանը[2]։*

**Խիկար Իմաստունի ավանդությունները (№ 802)**: *Խիկար Իմաստունին նվիրված ավանդությունների առկայության փաստը հայ իրականության մեջ բացատրվում է այն մոտիկ հարաբերությամբ, որ ունեցել են հայերը մեր թվականությունից դարեր առաջ Ասորեստանի բնակիչ արամեացիների հետ, կրելով նրանց կուլտուրական ազդեցությունը։ Պակաս կարևոր դեր չի խաղացել տվյալ գործում նաև այն հանգամանքը, որ Հայաստանի սահմանակից ասորաբնակ գավառները մասամբ մտել են մեր երկրի մեջ, և հետագայում հիշյալ գավառների աս-*

---

[1] Ադոնց Ն., *Տորք աստված հին հայոց, «Հուշարձան», գրական ժողովածու, Վիեննա, 1911, էջ 393։*

[2] Խաչատրյան Աս., *Տորք Անգեղյա հայ հին մատենագրության և բանասիրության մեջ, «Տեղեկագիր գիտության և արվեստի ինստիտուտի», № 5, Երևան, 1931, էջ 4 և հտվ.։*

*րի բնակչության որոշ մասը հայերի քաղաքական ազդեցությանը են-թարկվելով, խառնվել է վերջիններիս հետ։*

*Խնդրո առարկա ավանդությունները Հայաստանում տարածվել են «Խիկարի պատմություն» կոչված ասորա-բաբելական հայտնի գրական հուշարձանի ազդեցությամբ և հանդիսանում են նրա բանահյուսական յուրօրինակ արձագանքները։ Որ այդ հուշարձանը իրոք լայն ժողո-վրդականություն է ունեցել Հայաստանում, ցույց են տալիս՝*

*1. Աշխարհի զանազան գրապահոցներում և առաջին հերթին ու ամենից շատ Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում եղած 14, 17, 18 և 19-րդ դարերի նրա մի քանի տասնյակ հայերեն գրչագիր օրինակները՝ «Խրատք Խիկարայ Իմաստնոյ» և այլ խորագրե-րով։*

*2. Նրա բազմաթիվ հայերեն հրատարակությունները լույս տեսած զանազան ժամանակ (1708, 1731, 1792, 1820, 1834, 1857, 1898 թթ.) տարբեր վայրերում (Պոլիս, Թիֆլիս, Լոնդոն և այլն)։*

*3. Նրա հերոսի մեծ համբավը Հայաստանի տարբեր շրջանների հայերի մեջ, ուր խելոք մարդուն բնորոշելու համար հաճախ ասել են՝ «Խիկարի պես խելացի խրատներ կուտա», «թե հերը Սողոմոն Իմաս-տունն է, տղեն Խիկարի խելքն ունի» և այլն*[1]*։*

**Աղեքսանդր Մակեդոնացու ավանդությունները (№ 744)**: *Ինչպես շատ ուրիշ ժողովուրդներ, այնպես էլ հայերը բազմաթիվ ավանդություններ են պատմել Աղեքսանդր Մակեդոնացու մասին։ Այդ ավանդությունները մեզանում տարածվել են արևելյան տարբեր ժողովուրդների և մասնա-վորապես պարսիկների միջոցով, թե այն ժամանակ, երբ Պարսկաս-տանի մեջ մտնող մյուս երկրների հետ Հայաստանը ևս գտնվում էր Մա-կեդոնյան իշխանության տակ, և թե հետագա մի շարք դարերում, երբ մեր երկիրը աշխարհագրորեն ու քաղաքականապես մոտիկ հարաբերու-թյան ու կապի մեջ է եղել Պարսկաստանի հետ։*

*Աղեքսանդրյան ավանդությունների ստեղծմանն ու տարածմանը մեզանում զգալի ազդակ են հանդիսացել նաև անտիկ աշխարհի մի շարք հեղինակների՝ մեծ աշխարհակալի կյանքին ու ռազմական սխ-րանքներին նվիրված երկերը։ Վերջիններս ժամանակին թարգմանվել և օգտագործվել են միջնադարյան հայ հեղինակների պատմագրական*

---

[1] Ղանալանյան Ա., *Հայկական առածների հնագույն գրավոր սկզբնաղբյուրները (տե՛ս «Բանբեր Մատենադարանի», 1958, № 4, էջ 31—33)։*

*գործերի մեջ, իսկ այնտեղից էլ անցել ու տարածվել են ժողովրդի լայն խավերում: Այս տեսակետից հիշարժան է հատկապես «Աղեքսանդրի պատմության» այն հայերեն հին թարգմանությունը, որի հեղինակությունը վերագրվում է Կալիսթենես Ոլյունթացուն, և որը մեզանում հայտնի է Սուտ Կալիսթենես անունով*[1]:

**Լոքման հեքիմի ավանդությունները** (№ 803): *Հայերից բացի, նմանօրինակ ավանդություններ ու ավանդական զրույցներ շատ տարածված են նաև բազմաթիվ ուրիշ արևելյան ազգերի մեջ (արաբներ, պարսիկներ, միջին ասիական ժողովուրդներ, թուրքեր և այլն): Դժվար է որոշակի ասել, թե տվյալ ավանդությունները ո՞րտեղից են մուտք գործել Հայաստան, քանի որ տակավին վերջնականապես պարզված չեն ոչ Լոքմանի ազգային պատկանելությունը, ոչ էլ նրա ապրած ժամանակի հարցերը: Ըստ մի վարկածի՝ Լոքմանը կամ Լոկմանը նուբիացի կամ եթովպացի գերի է եղել, որն ապրել է Դավթի ժամանակներում: Կուրանի մեկնաբան Աբու-Սաուդը գտնում է, որ նրա հայրը (Բաուրան) Հոբի մորիկ ազգականն էր: Ըստ մի այլ վարկածի Լոքմանը Սողոմոն Իմաստունի մակդիրն է արաբերեն: Ոմանց կարծիքով նա դերձակ է եղել, ուրիշները նրան համարել են հյուսն, մարգարե կամ բժիշկ: Կան պնդողներ էլ, թե նա առաջին սիրաք առակախոսն է և Եզովպոսին վերագրված առակները իբր թե Լոքմանի առակներն են՝ թարգմանված հունարենի: Ուրիշները գտնում են, որ Լոքմանի առակները կապված են Սինտիպի առակների հետ և ըստ այդմ պետք է դասվեն «թափառիկ սյուժեների» կարգը, և այլն*[2]:

*Վերը նշված բոլոր վարկածներից առավել հավանական է համարվում այն վարկածը, որի համաձայն Լոքմանն ու նրան վերագրվող բանահյուսական նյութերը (ավանդություն, առակ, ասած և այլն) ծնունդ*

---

[1] *Տե՛ս «Պատմութիւն մեծի աշխարհակալին Աղեքսանդրի Մակեդոնացւոյ», Վենետիկ, 1842:* Տաշյան Հակ., *Ուսումնասիրութիւնք. Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի, Վիեննա, 1892, էջ 173—179:* Աճառյան Հ., *Հայկական մատենագիտություն, հատ. Ա., Երևան, 1959, էջ 566—574:*

[2] *Տե՛ս Aemilio Roedigero*, Locmani fabulae quae circumfer untur... Halis Saxonum, 1830, *Ch. Schier*, Fables de Loqman surnomme le Sage... Leipsic, 1839, *В. М. Бидкай и Локман*, Индийские басни и сказки (перев. на русский с франц. перевода *Галланда*), Киев, 1876, *Rene Basset*, Loqman berbere, Paris, 1890, *Jos. Derenbourg*, Fables de Loqman le sage, Berlin-London, 1890, *V. Chauvin*, Bibliographie des ouvrages arabes ou relatife aux arabes... 1898; *C. H. Toy*, The Loqman legend, Journal of the American Oriental Society, XIII, 1899.

*են արաբական միջավայրի։ Այս հիման վրա էլ կարելի է ենթադրել, որ Լոզմանի մասին Հայաստանում տարածված ավանդությունները հայերը վերցրել են արաբներից, որոնց հետ նրանք, ինչպես հայտնի է, քաղաքական, տնտեսական, կենցաղային և կուլտուրական բազմակողմ սերտ կապերի ու շփման մեջ են եղել 7—10-րդ և հետագա դարերում։ Դրա ապացույցներից մեկն էլ արաբների մոտ այնքան տարածված Լոկման անունն է հեքիմ բառի հետ, որը բուն արաբերեն բառ է և նշանակում է բժիշկ։ Վերջինս նույն նշանակությամբ հայերին ծանոթ է եղել տակավին միջին դարերից*[1]։

*Լոզմանյան ավանդությունների Հայաստանում տարածվելու գործում չի բացառված նաև եթովպացի, հրեա, պարսիկ և մուսուլմանական զանազան ժողովուրդների ազդեցության հնարավորությունը, ժողովուրդներ, որոնց հետ զանազան դարաշրջանում նույնպես շփման առիթ են ունեցել հայերը։*

**Բիբլիական ավանդություններ (№ № 788—796)**: *Սրանց ներթափանցումը հայ իրականության մեջ կատարվել է Մեսրոպ Մաշտոցի կողմից հայերեն նշանագրերի ստեղծումից հետո, երբ քրիստոնեական ուսմունքի տարածման նպատակով մեզանում հայերենի է թարգմանվել Աստվածաշունչը և եկեղեցական հայրերի միջոցով սկսել է ամենօրյա համառ ու տևական պրոպագանդման ենթարկվել ժողովրդի մեջ։ Այդ ճանապարհով ահա, դարերի ընթացքում մոտիկից ծանոթանալով Աստվածաշնչի բովանդակությանը, Հայաստանի հասարակական լայն խավերը հետզհետե անգիր են անում նրա մեջ տեղ գտած հին եբրայեցիների այն ավանդությունները, որոնք հասկանալի ու հարազատ էին իրենց բարոյական հասկացություններին ու ճաշակին, և որոնց մեջ վեր էր հանվում իմաստությունը, հանճարը, ճշմարտությունը, արդարությունը, աշխատանքը, սերը, ազգերի համերաշխությունը, խաղաղությունը, ընտանեկան հավատարմությունը, բարոյականությունը, դատապարտվում էր՝ անիրավությունը, չարիքը, սուտը, կեղծիքը, խարդախությունը, թշնամանքը, անառակությունը, ամբարշտությունը, շահագործումը, հարստահարությունը և այլն։*

*Հին կտակարանից սերող այդօրինակ ավանդություններից են մեզանում՝ Ադամի և Եվայի, Նոյ նահապետի, Կայենի ու Աբելի, Հայր Աբրահամի, Մովսես մարգարեի, Դավիթ մարգարեի, Սողոմոն Իմաս-*

---

[1] *Տե՛ս.* *Марр Н. Я.*, Сборники притч Вардана, *մաս 1*, СПБ., 1899, *էջ 261*։

*տունի, Եղիա մարգարեի, Հոբ Երանելու և նմանների մասին պատմող ավանդություններն ու ավանդական զրույցները*[1]*։*

*Ժողովրդական ավանդությունների ուղղակի աղբյուր հանդիսանալուց բացի, «Աստվածաշունչը» դրդում է տվել հայ ավանդախոսներին բիբլիական ծանոթ նյութերի հիման վրա ստեղծելու իրենց նոր ավանդությունները։ Այդպիսի ստեղծագործություններից են մեզանում Նոյ նահապետի, Սողոմոն Իմաստունի, Ունայի եղբայրների և այլոց մասին պատմված ավանդական զրույցների մի շարք տարբերակները, որոնք միայն իրենց անունով և հեռվից-հեռու են հիշեցնում հիշյալ կերպարների մասին Աստվածաշնչի մեջ եղած մեզ ծանոթ ավանդություններին։*

*Բիբլիական համապատասխան նյութերից հար և նման եղանակով օգտվել են նաև մեր միջնադարյան առակագիրները (Վ. Այգեկցի, Մ. Գոշ), որոնք փոխ առնելով Աստվածաշնչից վերջինիս մեջ եղած այս կամ այն առակը, դարձվածքը, մոտիվը, դրանց հիման վրա ստեղծել են իրենց ինքնուրույն գրական երկերը*[2]*։*

**Պարականոն ավանդություններ (№ № 788 Ա, Ը, Թ, 789 Ա, Գ, Դ, Ե. 792 Բ, 793, 794 Դ—Ը, 795 Ա, Բ, 799 Ա—Ե, 801 Գ—Է)։** *Այս անունով ենք կոչում Հայաստանում բավական լայն տարածում ունեցող այն ավանդությունները («Ադամն ու Ալը», «Նոյ նահապետի պարտապանը», «Կնոջից խաբված Սողոմոն Իմաստունը», «Ունայի կալը» և այլն), որոնք սերում են այսպես կոչված* պարականոն *կամ* արգելված *գրքերի մեջ («Ադամգիրք», «Սողոմոն արքայի մասին», «Հիսուսի մանկությունը», «Աստվածածնի պատմությունը», «Եղիա մարգարեի պատմությունը» և այլն) տեղ գտած հին եբրայեցիների և արևելյան ուրիշ ժողովուրդների համապատասխան ավանդություններից։ Իրենց գործող անձանց մի մասով և բովանդակության առանձին մոտիվներով որոշ չափով հիշեցնելով բիբլիական ավանդություններին, պարականոն ավանդությունները հիմնովին տարբերվում են նրանցից իրենց աշխարհիկ սյուժեներով և հակակրոնական բովանդակությամբ ու սոցիալական միտվածությամբ։ Այդ է պատճառն ահա, որ նրանք իբրև «հերետիկո-*

---

[1] *Տե՛ս Աստուածաշունչ մատեան Հին և Նոր կտակարանաց, Ծնն., Բ—Ե, Ե—Ժ. Գ, Դ—Ե, ԻԲ, Ելք. Բ—Խ, Ա. Թագ., ԺԶ—Լ, Բ. Թագ., Ա—ԻԴ, Գ. Թագ., Ա—ԻԲ, Դ. Թագ., Ա—Գ, Թ, Ժ, Ա. Մնաց., ԻԱ, Յովբ, Ա—Գ, ԺԵ, ԼԲ—ԼԷ, ԽԲ։*

[2] *Հմմտ.* *Марр Н.*, Сборники притч Вардана, *մասն 1,* СПБ., 1899, *էջ 394—395։*

*սական» նյութեր դուրս են մնացել Աստվածաշնչից և հալածվել են պաշտոնական եկեղեցու կողմից*[1]։

*Հայտնի է, որ պարականոն կամ արգելված այդ գրքերը 7-րդ դարի վերջերից, ասորի, արաբ և հույն հեղինակների միջոցով տարածվել են ողջ արևելքի և բյուզանդական ընդարձակ պետության սահմաններում, այդ թվում նաև Հայաստանում, առանձնապես լավ ընդունելություն գտնելով աղանդավորների շրջանում, իբրև վերջիններիս քարոզած ուսմունքներին հարազատ ու համահնչուն գրականություն։*

Վկայաբանական և սրբախոսական ավանդություններ (№ № 603, 604, 665, 667, 688, 809—817)։ *Այս շարքին են պատկանում զանազան սրբերի և եկեղեցական գործիչների (Սուրբ Սարգիս, Սուրբ Գևորգ, Գրիգոր Լուսավորիչ, Թադեոս առաքյալ, Հռիփսիմե, Մարիանե և Վառվառե կույսեր, Հովհան Ոսկեբերան, Պետրոս Գետադարձ, Մծբնեցի Հակոբ հայրապետ և այլն) վերաբերյալ Հայաստանում պատմված ժողովրդական ավանդությունները ու ավանդական զրույցները, որոնց մեջ յուրովի պատկերված են հեթանոսական կրոնի և վերջինիս ներկայացուցիչների դեմ նրանց մղած պայքարն ու ագորումները՝ հանուն նոր կրոնի։ Հիշյալ ավանդությունների համար մեզանում սկզբնաղբյուրի դեր են կատարել այլազգի ծագում ունեցող մի շարք վկայաբանական, վարքաբանական և սրբախոսական գրքեր, որոնք հին և միջին դարերում մեր հեղինակների կողմից հայերենի թարգմանվելով մուտք են գործել մեր եկեղեցական գրքերը («Ճաշոց», «Ճառընտիր», «Այսմավուրք» և այլն) և սրանց միջոցով տարածվել ժողովրդի մեջ*[2]։

---

[1] *Տե՛ս Անկանոն գիրք Հին և Նոր կտակարանաց, Վենետիկ, 1896, էջ 308—313, 317, 333—342, Անկանոն գիրք Նոր կտակարանաց, Վենետիկ, 1898, էջ 91—99, 294—295, 354—355,* Անասյան Հ., *Հայկական մատենագիտություն, հատ. Ա, Երևան, 1959, էջ XXXIX—XLIII։ Հայկական պարականոն ավանդությունների մեջ կան և այնպիսիք, որոնց զուգահեռները բացակայում են մեզ հայտնի տպագիր ու ձեռագիր պարականոն գրքերի մեջ։ Դրանք ամենայն հավանականությամբ հայերը փոխ են առել հին եբրայեցիներից և ասորիներից, որոնց հետ նրանք մոտիկ հարևանության ու շփման մեջ են եղել քրիստոնեությունն ընդունելուց առաջ։*

[2] *Տե՛ս Լիակատար վարք եւ վկայաբանութիւն սրբոց, ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեան, Վենետիկ, 1811, հատ. Բ, էջ 3—44։ (Սարգիս զորավար), հատ. Դ. էջ 14—58 (Թադեոս առաքյալ), հատ. Զ., էջ 120—131 (Մարիանե կույս), էջ 165—200 (Սուրբ Գևորգ), էջ 465—485 (Վառվառե կույս), հատ. Ը., էջ 356—422 (Հովհան Ոսկեբերան), հատ. Ժ., էջ 5—54 (Սուրբ Հակոբ) և այլն։*

**Եկամուտ ավանդությունների տեղայնացումը:** *Եկամուտ ավանդությունները բանավոր ձևով անցնելով բերանից-բերան ու սերնդից սերունդ և դարերի ընթացքում արմատ բռնելով հայկական հողի վրա, ներծծել են իրենց մեջ մեր ժողովրդի ապրած միջավայրի ու կյանքի բնորոշ գծերը, ենթարկվել են ստեղծագործական վերամշակման և տեղային գույն ու երանգ ստանալով ձուլվել են բուն հայկական ավանդությունների հետ։ Տեղային ու ազգային է դարձել, ամենից առաջ, այդ ավանդությունների ձևը (լեզու, ոճ, պատմելու եղանակ և այլն)։ Տեղային ու ազգային է դարձել, այնուհետև, նրանց մեջ վերարտադրված բնաշխարհը (սարեր, ձորեր, քարեր, գետեր, աղբյուրներ, բույսեր, կենդանիներ, գավառներ, քաղաքներ, գյուղեր, բերդեր, ամրոցներ, վանքեր և այլն)։ Տեղայնացվել ու ազգայնացվել են հիշյալ ավանդությունների մեջ հանդես եկող դեպքերի ու դեմքերի (ռազմա-քաղաքական անց ու դարձեր, պետական, զինվորական, մշակութային, եկեղեցական գործիչներ) մի զգալի մասը։ Տեղային ու ազգային նկարագիր է ընդունել զգալի չափով և նրանց ընդհանուր մթնոլորտը (գործող անձանց վարքն ու բարքը, կենցաղն ու հավատալիքները, աշխարհայացքն ու հոգեբանությունը, ձգտումներն ու ակնկալությունները)։*

*Տեղայնացված եկամուտ ավանդությունների բնորոշ օրինակներ են.*

1. Աղեքսանդր Մակեդոնացուն նվիրված ավանդությունների հայկական տարբերակներից մեկը (№ 587), *ուր եկամուտ ծագում ունեցող ավանդության հիմնական բովանդակությունը (Արաքս գետի վրա Աղեքսանդրի կողմից կամուրջ կառուցել տալը) կապվել է Հայոց թագավորի, չուղայեցի հայ մեծահարուստների, վարպետ նկարիչների և փորձված այգեպանների անվան ու գործերի հետ։*

2. Խիկար Իմաստունին նվիրված ավանդությունների հայկական մի տարբերակը (№ 802Բ), *որի մեջ Խիկարի ուսուցիչն իր աշակերտին աշխատում է սովորեցնել հայերեն այբուբենը։*

3. Լողման Հեքիմին նվիրված ավանդությունների հայկական տարբերակներից մեկը (№ 803Ը), *ուր պատմվում է արևելյան համբավավոր բժշկի ու իր աշակերտի Շիրակի դաշտում հայ հնձվորների հետ ունեցած հանդիպման մասին, և մի շարք ուրիշ ավանդություններ (տե՛ս №№ 676Ա, 725Ա, 801Բ, 813Գ և այլն)։*

# ԱՎԱՆԴԱՊԱՏՈՒՄ

*Հարց զհարսն քո և պատմեսցեն քեզ.*
*և ծերս քո, և ասասցեն քեզ:*

*(Բ. օրինաց։ ԼԲ)*

# ԱՐԵՎ, ԼՈՒՍԻՆ, ԱՍՏՂԵՐ

## 1. ԱՐԵՎ

### Ա

*Մի կին իր որդու համար գուլպա է գործելիս լինում։ Երբ քիչ է մնում վերջացնելու, արևը պատրաստվում է մայր մտնել։ Որդին խնդրում է արևին սպասել, մինչև մայրը կվերջացնի գուլպան։ Արևը կատարում է նրա խնդիրքը։ Երբ ուշ երեկոյան արևի մայրը հարցնում է արևին, թե ինչո՞ւ այդքան ուշացավ, արևը պատմում է եղածի մասին։ Արևի մայրը անիծում է տղային, որ նա ցերեկը մեռնի, գիշերը կենդանանա, իսկ նրա մայրն էլ երբեք չվերջացնի գուլպան։ Տղան ցերեկները մեռնում է, գիշերները կենդանանում, գալիս է մոր մոտ և խնդրում իր գուլպան։ Մայրը չի կարողանում վերջացնել գուլպան, որովհետև գործածը ինքն իրեն քանդվում է, և տղան ստիպված թափառում է ուտաբոբիկ։*

### Բ

*Մի աղջիկ արևը մայր մտնելուց հետո տունն ավելել և աղբը դուրս է ածել։ Ցերեկը արևի մոտ սևերես լինելով, նա մեռած է մնում, գիշերը՝ կենդանանում։ Աղջկա հայրը հագնում է երկաթե տրեխներ, ձեռքն է առնում երկաթե գավազան և ճանապարհ ընկնում արևի մոտ՝ նրանից խնդրելու այն ջրից, որով արևը լվանում է իր երեսը։ Ասում են, թե դեռ մինչև այսօր էլ աղջկա հայրը շարունակում է թափառել և չի կարողանում գտնել արևի բնակարանը։*

### Գ

*Առավոտյան, երբ արևը դուրս է գալիս ծովից՝ երկրին շատ մոտիկ է լինում, ջերմությունը սաստիկ։ Նա կարող է այրել ու մոխիր դարձնել երկիրը, եթե դեմը դուրս չգա մի մեծ թռչուն, որն իր հսկայական թևերով*

հովանի է անում երկրին, մինչև արևը բարձրանում է երկնքի մեջտեղը, հեռանում երկրից, որով պակասում է նրա ջերմությունը։ Թռչունի թևերը խանձվում են. նա կիսակենդան ընկնում է ծովի մեջ, զովանում, բուժում թևերը և մյուս առավոտը կազդուրված նորից դուրս է գալիս արևի դեմ՝ երկրին հովանի անելու։

Դ

Արևը առյուծի մեջքին նստած սլանում է երկնակամարի վրայով և երեկոյան գնում հանգստանում է մոր գրկում։ Առյուծն իր վիթխարի թրով պաշտպանում է նրան քաջքերից։

2. ԼՈՒՍԻՆ

Ա

Լուսինը մի անհամբեր երեխա է եղել։ Երբ մայրը խմոր էր հունցում, նա մի անգամ լալով հաց է խնդրում։ Մայրը խմորոտ ձեռքով մի ապտակ է տալիս լուսնին ու անիծում, որ նա երբեք չկշտանա։ Ապտակի հարվածից լուսինը երկինք է թռչում, երեսին խմորի ահագին կտորներ։ Երբ լուսին-երեխան կուշտ է լինում, փայլում է պայծառ, երբ քաղցում է՝ խավարում է։

Բ

Մի օր լուսնի մայրը խմոր էր հունցում։ Լուսինը գալիս է և խնդրում մորից, որ իր համար էլ բլիթ (կարկանդակ) պատրաստի։ Մայրը բարկանում է երեխայի վրա և խմորոտ ձեռքով խփում է նրա երեսին։ Մինչև հիմա էլ լուսնի երեսին երևում են մոր մատների հետքերը։

Գ

Լուսինը կաթնակեր ժամանակ մի չար տղա է եղել։ Մոր խմոր շաղախած ժամանակ պահանջում է նրանից, որ իրեն կաթ տա։ Մայրը բարկանալով խմորոտ ձեռքով ապտակում է նրա երեսին։ Լուսինը խռովում է մորից և երկինք բարձրանում։ Մինչև հիմա էլ լուսնի վրա երևում է մոր խմորոտ ձեռքի հետքը։

## 3. ԱՐԵՎ ԵՎ ԼՈՒՍԻՆ

### Ա

*Աստված երկու զավակ ունի. մի տղա՝ Լուսինը, և մի աղջիկ՝ Արևը։ Իրենց հոր հրամանով սրանք պարտավոր էին գիշեր-ցերեկ հերթով հսկել աշխարհին։ Քույր ու եղբայր վիճակ են գցում, իմանան՝ թե ով է իրենցից գիշերը հսկելու։ Վիճակն ընկնում է քրոջը։ Եղբոր և քրոջ միջև վեճ է ծագում։ Աղմուկի վրա գալիս է հայրը, նախատում տղային, և կարգադրում է, որ նա իբրև տղամարդ գիշերները հերթապահի։ Լուսինը խոստանում է ճշտությամբ կատարել հոր կամքը։ Այնուհետև, դիմելով աղջկան, աստված առաջարկում է նրան հերթապահել ցերեկները։ Արևը հրաժարվում է, պատճառաբանելով, որ ինքը ամաչում է երևալ մարդկանց աչքին։ «Վերցրու ձեռքերիդ մեջ մեկական խուրձ սուր ասեղներ, և ով որ համարձակվի նայել քեզ, ծակծկիր նրա աչքերը»,—ասում է աստված։ Արևը կատարում է հոր հանձնարարությունը։*

### Բ

*Արևն ու Լուսնակ քուր ու ախպեր ին։ Արև քուրն ա, Լուսնակ՝ ախպեր։ Մեկ օր Արևի ու լուսնակի մեր խմոր կշաղա։ Արևն ու Լուսնակ կկռվին. Արև կասը՝ Ես գիշերով դուրս չեմ էլնի, Լուսնակ կասը՝ Ես ցերեկ դուրս կէլնիմ։ Շատ որ կկռվին, մերը կէլնի, խմորոտ ձեռով՝ առ հա՝ տղի երեսին։ Տղին գիշերով կհանի, քցի դուրս։ Մինչև մգա (հիմա) էլ Արև ցերեկով կէլնի, Լուսնակ՝ գիշերով։*

### Գ

*Արևն ու Լուսինը քույր և եղբայր են եղել. Արևը՝ գիշերը, իսկ Լուսինը ցերեկն են շրջել։ Արևը վախեցել է գիշերը շրջելուց և հայտնել է դրա մասին մորը. սա էլ պատվիրել է Լուսնին գիշերը շրջել, և երբ նա դիմադրել է, մայրը մի ապտակ է տվել երեսին։ Խռոված Լուսինը սկսել է գիշերը շրջել և իր կամակորության պատճառով մեկ-մեկ թաքնվել ամպերի ետևը։ Հիմա էլ Լուսնի երեսին նկատելի են մոր տված ապտակի հետքերը։*

### Դ

*Արևն ու Լուսինը քույր ու եղբայր են. քույր Արևը շատ ամաչկոտ ու վախկոտ է, դրա համար էլ երկու պահապան հրեշտակ ունի, որոնք նրան ցերեկը երկրի երեսով, իսկ գիշերը՝ տակով ման են ածում։*

Արևն ու Լուսինը մի մայր ունեն, որն ապրում է երկնքում, աստղատանը։ Սա մի անգամ խմորոտ ձեռքով ապտակում է Լուսնի երեսին, որի վրա այժմ էլ նկատելի են խմորի տեղերը։ Գիշերները արևը «մեր է մըտնում» (=գնում է հանգստանալու մոր ծոցում)։

Ե

Արևն ու Լուսինը քույր ու եղբայր են եղել. սկզբում Արևը գիշերը, իսկ Լուսինը ցերեկն է ման եկել։ Մի օր Արևը խնդրել է Լուսնին, որ իրեն ազատի գիշերը շրջելուց, որովհետև վախենում է, ցերեկն էլ չի կամենում շըրջել, որովհետև բոլորը իրեն են նայում։—Լավ,—ասում է Լուսինը,—դու ցերեկը շրջիր, որ չվախենաս, իսկ ես գիշերը կշրջեմ. և որպեսզի քեզ չնայեն, առ այս ասեղները և ցցիր նայողի աչքերը։ Դրանից հետո Արևը սկսել է շրջել ցերեկը և ասեղներով ծակել իրեն նայողներին։

Զ

Արևը շարունակ պտույտ է գալիս։ Նա երկնքի երեսով գնում, գետնի տակով վերադառնում է։ Մի անգամ նա իր եղբայր Լուսնին ասել է. Ես գիշերները վախենում եմ ման գալ, ցերեկն էլ ամաչում, բոլորը ինձ են նայում։ Լուսինը մի թուփ մեծ դնդասեղներ է տվել Արևին և ասել. «Առ, ով քեզ նայի՝ աչքը խրիր, և համարձակ շրջիր ցերեկը, իսկ ես գիշերը կշըրջեմ»։

Է

Արևն ու Լուսինը քույր ու եղբայր են եղել։ Մի անգամ նրանք գնացել են գետը լողանալու։ Լուսինը շուտ դուրս է եկել ջրից և սպասել է, որ Արևն էլ դուրս գա, որպեսզի տեսնի նրան մերկ վիճակում։ Արևը իմանալով Լուսնի դիտավորությունը՝ ամոթից երկինք է բարձրացել։ Լուսինը հետևել է նրան և մինչև հիմա էլ դեռ ետևից ընկած ուզում է հասնել, բայց չի կարողանում։ Արևն իր սուր ասեղներով ծակծկում է թե Լուսնի և թե բոլոր նրանց աչքերը, ովքեր փորձում են նայել իրեն։

Ը

Արևն ու Լուսինը քույր ու եղբայր են։ Մի օր մայրն ասում է նրանց. Գնացեք աղբյուրից ինձ համար ջուր բերեք, ծարավ եմ. ձեզանից ով առաջ

*բերի, նրան պիտի օրհնեմ։ Երկուսն էլ վեր են կենում, գնում ջուրը։ Եղբայրը քրոջից առաջ է անցնում և իր կուժը դնում է աղբյուրի խողովակի տակ, որ լցվի։ Քույրը ետևից թաքուն ծակում է եղբոր կժի տակը։ Ճանապարհին ջուրը հոսում է։ Քույրը լցնում է կուժը և տալով մորը՝ ստանում է նրա օրհնությունը։*

Բ

*Արևը՝ աղջիկ, Լուսինը տղա է։ Երբ նրանք հանդիպում են իրար, Լուսինը խելակորույս է լինում, խավարում է։ Նրա վզին մի արյունոտ տիկ կա. Լուսինը երբեմն այդ տիկը գցում է արևի վիզը, որից նա խավարում է։*

## 4. ՀԱՐԴԱԳՈՂԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ

Ա

*Ոմանք յառաջնոցն հայոց ասացին, թէ ի խիստ ձմերայնի, Վահագն նախնին հայոց գողացաւ զյարդն Բարշամայ ասորւոց նախնոյն, զոր և մեք սովորեցաք բնախօսութեամբ Յարդգողի հետ անուանել։*

Բ

*Գարնան զըլոխ որ գիկա, խեղճ կընկա դարման կպակսի։ Դե՛ս կզարկվի, դե՛ն կզարկվի, ոչ մեկ դարման չի տա։ Ճարեն որ կկտրի, երեսի արուն (ամոթ) կթափի, մալ ու մողու (անասունների) բոռոց կլսի, կելնի կերթա իրա քավորոչ մարագ։ Փեշ կբանա, լիք դարման կլցնա ու կդառնա ետ։ Քամին կիտա, փեշի դարման կցանա գետին։*

*Էս անամոթություն կտենա աստված. երկնքու երես նշան կցուցու, որ աշխարհք տեսնին սանամոր գողություն։*

Գ

*Սանամայրն իր քավորի հարդանոցից միշտ գողնոցով հարդ է գողացել, որովհետև աղքատ է եղել և չի կարողացել փողով գնել։ Մի անգամ էլ քավորը նկատել է այդ։ Սանամայրը ամոթից երկինք է բարձրացել, փախչելիս թափելով հարդը։ Մինչև հիմա էլ երկնքի վրա երևում է այդ հարդի հետքը։*

Դ

*Մի ագահ ու հարուստ գյուղացի, որի մարագները լիքն են եղել դարմանով, աչք է դրել անճար պառավի այծերի և ուլերի բաժին դարմանին և գողացել է այն։ Հրեշտակը գաղտնի ծակել է նրա քթոցի տակը և հարդը մաս-մաս թափվել է գետնին։ Իմանալով այդ մասին, պառավը անիծել է ագահ հարուստին։ Դեպքը պատահել է Սբ. Սարգսի պասին. օդը պայծառ ու տաք է եղել. հարուստը խաբվելով օդից, արածելու է ուղարկել իր ոչխարների հոտը. վրա է հասել Սբ. Սարգիսը և այնպիսի փոթորիկ է բարձրացրել, որ կոտորվել է հարուստի ամբողջ հոտը։ Սուրբ Սարգսի բարձրացրած այդ փոթորիկը (թիփի) Պառավի ցուրտ է կոչվում, իսկ երկնքում եղած աստղերի մի խումբն էլ՝ Հարդագողի ճանապարհ։*

Ե

*Ուղտապաններից մեկը 45 ուղտ ուներ. մի անգամ պակասեց նրա հարդը. գնաց 30 ուղտի համար դրացիներից փոխ վերցրեց, իսկ 15-ի համար էլ գնեց։ Երկրորդ անգամ այլևս երես չունենալով փոխ ուզելու, նա փորձեց գողանալ, բայց սաստիկ քամի բարձրացավ և ամբողջ հարդը ցրիվ տվեց երկնքով մեկ, որ մինչև հիմա էլ երևում է։*

Զ

*Մարդագայլ հարսը հյուրի ոտները լվանալիս տեսել է, որ դրանք շատ փափլիկ են։ Երբ բոլորը քնել են, նա գնացել է, որ ուտի։ Իմանալով այդ՝ հյուրը դաշույնի մի հարված է տվել հարսի կրծքին։ Իսկույն կաթը կրծքից ցայտել է երկինք և իր հետքը թողել երկնքի վրա, որը մինչև հիմա էլ երևում է։*

Է

*Ծիր կաթինի համար ասում են, թե դա երկնքի այն տեղն է, որ պատռվել է ժամանակին և հեղեղը թափվել է երկրի վրա։ Այդ հեղեղի հետքը հավիտյան մնում է երկնքում ի տես մարդկանց։*

Ը

*Հարսն անցել է քավորի երդիկից և նրա հետքը մնացել է երկնքում, որ կոչվում է Սանամոր քաշ (հետք)։*

Թ

*Ջրաղացպանը գողացած ալյուրը տուն տանելիս, ճանապարհին թափում է։ Երկնքի վրա մինչև հիմա էլ երևում է ալյուրի հետքը։*

### 5. ՔԱՐՎԱՆ ԿՈՏՐՈՂ ԱՍՏՂԸ

Ա

*Լեռների մեջ հանգստացող քարավանը կարծելով, թե արևելքից ելնողը Լուսաստղն է, գիշերով ճանապարհ է ընկնում։ Սակայն, անտառների մեջ մոլորվելով, կողոպտվում ու ոչնչացվում է ավազակներից։ Դրա համար էլ այդ աստղը Քարվան կորուստ (կորցնող) կամ Քարվան կոտրող է կոչվում։*

Բ

*Քարվան կոտրող աստղին շատ անգամ Լուսաստղի տեղ ընդունելով, քարավանը ճանապարհ է ընկնում և ոչնչանում՝ կամ մթությունից մոլորվելով, կամ էլ առավոտյան ցրտից սառչելով։*

### 6. ՏՈՒՅԼ ՀՈՏԱՂԻ ԱՍՏՂԸ

*Տերը պատվիրում է հոտաղին, որ մինչև աստղերի երևալը եզները տանի արածացնելու և նոր բերի տուն։ Տույլ հոտաղը արևի մայր մտած ժամանակ երկնքում տեսնելով մի փայլող աստղ, քաղցած եզներին բերում է տուն։ Դրանից հետո այդ աստղը կոչվում է Տույլ հոտաղի աստղ։*

### 7. ՅՈԹ ՍԱՆԱՄՈՐ ԱՍՏՂԵՐԸ

*Ժամանակին յոթ սանամայր են եղել։ Նրանց ընդհանուր քավորը մեռել է քաղցից, որովհետև սանամայրերից ամեն մեկը մտածել է, թե մյուսը կհոգա նրա մասին։ Աստված բարկանալով՝ յոթ սանամայրերին էլ աստղեր է դարձրել, որոնք կոչվում են Յոթ սանամոր աստղեր (Մեծ արջի համաստեղություն)։*

### 8. ԽԵՔԵՐ

*Հայկ նահապետը ունեցել է երեք որդի և երեք աղջիկ, որոնք աստղեր են դարձել։ Երբ հորիզոնի վրա բարձրանում են Կշիռ կոչված աստղերը, ասում են՝ «Խեքեր (=հեքեր, հայքեր) ելան», երբ նրանք թեքվում են դեպի արևմուտք, ասում են՝ «Խեքեր մտան»։*

## ԼԵՌՆԵՐ, ԺԱՅՌԵՐ, ԲԼՈՒՐՆԵՐ

### 9. ՀԱՅՈՑ ԼԵՌՆԵՐԸ

*Ասում են, թե հայոց լեռները շատ առաջ հաղթանդամ ու հսկա եղբայրներ են եղել։ Ամեն օր առավոտ վաղ արթնանալով նրանք սովորություն են ունեցել նախ կապել իրենց գոտիները և հետո միայն բարևել իրար։ Ժամանակ անց, երբ եղբայրները ծերանում են, էլ չեն կարողանում վաղ վեր կենալ։ Մի օր էլ, ուշ արթնանալով, նրանք մոռանում են կապել գոտիները և հակառակ իրենց սովորության, այնպես բարևում են իրար։ Աստված տեսնելով այդ՝ պատժում է եղբայրներին. նրանք քարանալով լեռներ են դառնում, գոտիները՝ կանաչ դաշտեր, իսկ արցունքներն էլ՝ անմահական աղբյուրներ։*

### 10. ԱՐԱԳԱԾ

*Յայսմ խորութեան դաշտի բնակեալ Արամանեկայ՝ շինէ զմասն ինչ ի հիւսիսոյ կողմանէ դաշտին, և զոտն լերինն ի նոյն կողմանէ, և զլեառնն անուանէ յանկագոյն յիւր անուն Արագած։*

### 11. ՄԱՍԻՍՆ ՈՒ ԱՐԱԳԱԾԸ

*Ժամանակով Մասիսն ու Արագածը շատ սիրով քույրեր են լինում։ Մի օր, ինչպես է պատահում, նրանք կռվում են. մեկն ասում է՝ «Ե՛ս եմ լավը և քեզանից էլ բարձր», մյուսը թե՝ «Ես քեզանից և՛ լավն եմ, և՛ ավելի մեծ ու բարձր»։ Այդ միջոցին վրա է հասնում Մարութա լեռը և փորձում է հաշտեցնել քույրերին, բայց չի կարողանում։ Նա թողնում հեռանում է և անիծում է, որ Մասիսն ու Արագածը այնպես բաժանվեն իրարից, որ այլևս երբեք չհանդիպեն։ Մասիսն էլ անիծում է Արագածին, որ ամբողջ տարին*

*դարդը դուրս չգա նրա սրտից, և արտասուքն էլ չպակասի աչքերից։ Արագածն իրեն հերթին անիծում է Մասսին, որ աշխարհի երեսին մարդ չբարձրանա նրա կատարին, վրան մատաղ չմորթվի։*

*Այդպես էլ լինում է։ Արագածի կատարին արտասուքից լիճ է գոյանում, իսկ Մասսի վրա էլ մինչև օրս մարդ չի բարձրացել, ոչ էլ մատաղ է մորթվել։*

## 12. ԱՐԱՅԻ ԼԵՌ

Գտնվում է Արագածոտն գավառում

*Յայամ դաշտի և յատորոտի լեռնաձև ոստոյս այսորիկ՝ ասեն բնակեալ Գեղեցկին Արայի զօրօք իւրովք ընդդէմ ճակատու զօրացն Շամիրամայ, յոյր անուն կոչի ցարդ լեառն Արայի։*

## 13. ԴԺՎԱՐԱԴԵՄ

Գտնվում են Արզնի գյուղի մոտ

*Ասում են, թե Սուլթան Մուրադի արշավանքի ժամանակ, նրա զինվորները բռնում են երկու հայ մանուկների և ձեռները կապած բերում են Արզնի գյուղը՝ Սուլթանի մոտ։ Երբ հասնում են Դժվարադեմ կոչված քարաժայռերի կատարին, մանուկները խնդրում են, որ մի փոքր ժամանակ իրենց ձեռները ազատ արձակեն։ Զինվորները խղճահարվելով կատարում են նրանց խնդիրքը։ Հարմար առիթ որսալով, մանուկները իրենց գցած են նետում ժայռերից և ինքնասպան լինում (թշնամու ձեռքից ազատվելու համար)։ Ջրի մեջ թաքնված քրիստոնյաները վերցնելով նրանց մարմինները, տանում և թաղում են Արզնի գյուղում։*

## 14. ՕՁԱՍԱՐ

Գտնվում է Հին Նախիջևանի շրջանում

### Ա.

*Երբ երկիրը դեռ ծածկված էր ջրով, Նոյան տապանը գիշերը լողալիս, դիպել է այս սարին։ Հարվածն այնքան ուժեղ է եղել, որ սարը բաժանվել է երկու մասի։ Նոյը վրդովված անիծել է, և սարը բնակեցվել է օձ ու վիշապով։ Դրա համար էլ այն կոչվում է Օձասար (=Իլանդաղ)։*

Բ

*Մասիս վրա ապրում է օձերի թագավորը՝ գլխին թանկագին թագ։ Յոթ տարին մեկ շրջապատի բոլոր օձերը գալիս են նրան տեսության։*

*Մի անգամ օձերի թագավորը որոշում է զբոսանքի դուրս գալ իր հրեղեն կառքով։ Ճանապարհին կառքը դիպչում է մի սարի և երկու մասի է բաժանում նրա կատարը, որոնք այլևս երբեք չեն միանում։ Այդ օրվանից սարը կոչվում է Օձասար։*

Գ

*Օձասարի վրա ապրում են յոթ օձ եղբայրներ, որոնք այնքան սիրով ու ամուր են կապված իրար հետ, որ եթե վեցին սպանես, յոթերորդը ետևից ընկնելով անպատճառ պիտի հանի եղբայրների վրեժը։ Այստեղ է ապրում նաև օձերի թագավորը, որը երկու եղջյուր ունի։ Ամեն օր, երբ արևը երկնքից թափում է իր կրակը, նա հավաքում է իր հպատակներին և խմբեր կազմած իջնում է դեպի ցած, աղբյուրի մոտ։ Նրանք ջուր են խմում և նորից ետ դառնում դեպի Օձասարը։*

## 15. ՏԱՊԱՆԱՍԱՐ

Գտնվում է Գողթան գավառի Մարվանիս գյուղի մոտ

*Նոյ նահապետի տապանը դիպել է սրա գագաթին և կտրել է իր մի քանի տախտակները։ Սարն ասել է տապանին. Ե՛րթ ի Մասիս, նա բարձր է քան զիս։ Դրանից հետո սարի անունը մնացել է Տապանասար (Գյամիղայա)։*

## 16. «ԳԱԼԻՍ ԵՄ, ԳԱԼԻՍ» ՔԱՐԱԺԱՅՌԸ

Գտնվում է Գողթան գավառի Մարվանիս գյուղի արևմտյան կողմում

*Ժամանակին սրա ստորոտում գյուղ է եղել, որի բնակիչները բարոյապես սաստիկ փչացել են։ Քարաժայռը երեք անգամ կանչել է՝ գալիս եմ, գալիս եմ, գալիս եմ, որպեսզի գյուղացիներն զգաստանան և ապաշխարեն, բայց նրանք ոչ մի ուշադրություն չեն դարձրել և շարունակել են իրենց անբարոյական վարքը։ Ուստի քարաժայռը փուլ է եկել նրանց վրա և բոլորին ոչնչացրել է։ Այդ օրվանից էլ այն ստացել է՝ Գալիս եմ, գալիս (գյալում-գյալում) անունը։*

## 17. ՇԱՀԱՆԴՈՒԽՏԻ ՔԵՐԾ

Գտնվում է Տաթևի ճարավային կողմում, Որոտան գետի ափին

*Շահանդուխտ անունով մի աղջիկ հարս գնալիս ենթարկվել է անօրենների հարձակմանը։ Սրանք կամեցել են հափշտակել Շահանդուխտին։ Թշնամիների ձեռքը չընկնելու համար աղջիկը ձիով թռել է բարձր ժայռի գագաթից և անվնաս իջել Որոտան գետի ափը։ Դրանից հետո այդ ժայռը կոչվել է Շահանդուխտի քերծ։*

## 18. ԴԱՏ — ՄԵԼԻՔ

Գտնվում է Գորիսի շրջանի Խնածախ գյուղի մոտ

Ա

*Խնածախ գյուղի իշխան Մելիք-Հայկազը շատ չարասիրտ ու խստաբարո մարդ է եղել։ Նա հանցավոր գյուղացիներին դրել է կողովի մեջ, փակել բերանը և գլորել է մոտակա բարձր լեռան գագաթից։ Գլորվող գյուղացիների «դատ-մելիք» (վայ մելիք) բացականչությունից լեռը ստացել է Դատ-Մելիք անունը։*

Բ

*Զանգեզուրում մի մելիք է լինում։ Օր ու արև չի տալիս գյուղացիներին։ Մի պատրվակ է փնտրում, որ դատ ու դատաստան տեսնի նրանց հետ։ Դատն էլ անում է մի սարի գլխի, տեղն ու տեղն էլ պատժում։ Մեղավորին դնում են քթոցի մեջ, սարի գլխից գլորում ցած։ Մի օր, երբ մելիքն էլի նստում է դատի, գյուղացիները կանչում են. «Դա՞դ ենք մելիք, դա՞դ, դա՞դ» ու հարձակվում են մելիքի ու նրա մարդկանց վրա։ Որին սպանում են, որին էլ քշում սարերից դենը, կորցնում։ Եվ ազատվում են մելիքից։ Սարի անունն էլ մարդ կա՝ Դատ մելիք է ասում, այսինքն՝ որ մելիքն այնտեղ է դատ ու դատաստան արել, մարդ էլ կա՝ Դադ մելիք է ասում, այսինքն՝ որ մելիքից զզված, դադ եղած գյուղացիներն են նրան քշել այդ սարից։*

## 19. ԳՅԱԶԲԵԼ

Գտնվում է Զանգեզուրում

*Սրա ամենաբարձր տեղում ճեղքվածք կա, ուր ապրում են երկնքի փերիները։ Երբ սարերը թխպում են, նրանք դուրս են գալիս, իրար հետ*

կովում մի տղայի համար. ով որ հաղթում է՝ մեկ տարով դառնում է տղայի կինը։ Երկնքի որոտը փերիների թրերի ձայնն է, կայծակն էլ՝ նրանց թուրը։

## 20. ԳԱՆՁԱՍԱՐ

Գտնվում է Զանգեզուրում, համանուն լեռնաշղթայի ճյուղավորումներից մեկի վրա

Ասում են, թե շատ դարեր առաջ հայոց Արտավազդ թագավորը հռոմեական զորքերից իր գանձերը փրկելու համար, հրամայում է դրանք թաքցնել Բաղաց աշխարհի լեռներից մեկի մեջ։ Գանձերը պահպանելու համար նույն լեռան վրա կառուցվում է մի ամուր բերդ։ Սրա պատերի տակ հռոմեական զորքերի և մի խումբ հայ քաջերի միջև տեղի է ունենում արյունահեղ կռիվ։ Թշնամիները գրավում են բերդը, ավերում այն, բայց գանձերը չեն գտնում։ Դրանից հետո ուրիշ շատ նվաճողներ էլ են գալիս այստեղ, բայց նրանցից ոչ մեկին չի հաջողվում գտնել գանձերը։ Եվ սարի անունը գանձերի պատճառով մնում է Գանձասար։

## 21. ՍԱՌՆԸԾԱԿԵՐ ՍԱՐ

Գտնվում է Սիսիանի Դարաբաս գյուղի արևմտյան կողմում

Ասում են, թե այս սարը Սառնըծակեր է կոչվել, որովհետև նրա գագաթին մի ժայռ կա, որի անցքերի (ծակերի) մեջ սառույցը (սառնը) մնում է նաև ամառ ժամանակ։

## 22. ԲՈՁԻԻ ՔԱՐ

Գտնվում է Զանգեզուրում, Եզան ուխտատեղի (Օքյուզ-զիարեթ) կոչված վայրից մի փոքր ցածր, անտառի խորքում

Պարսիկների ժամանակ Տաթև գյուղացի մի քաջ՝ Բոզի անունով, փախչել է այս ժայռի խոռոչներից մեկում և այնտեղից ահ ու սարսափի մեջ է պահել մոտակա կածանով անց ու դարձ անող թշնամիներին։ Դրա համար էլ ժայռը կոչվում է Բոզիի քար։

## 23. ՍՈՒՐԲ ՔԱՐ

Գտնվում է Զանգեզուրի գավառում, Խնձորեսկ գյուղից դեպի հյուսիս

Մի երիտասարդ տան կարիքների համար որոշում է ջարդել այս ժայռը։ Երբ նա սկսում է մեծ մուրճով խփել, ժայռի խորքից լսվում է.

«Թող կուրանա նա, ով կհամարձակվի ձեռք բարձրացնել ինձ վրա»։ Երիտասարդն անմիջապես զրկվում է աչքի լույսից։ Այդ օրվանից ժայռը կոչվում է Սուրբ քար։

## 24. ՄՌԱՎ

Գտնվում է Արցախում

Ա

Ի սմա մեռան և նահատակեցան արք անուանիք և յիշատակաց արժանաւորք, ուստի յայնմանէ առեալ ասի Մռաւու սար՝ այսինքն մեռելոց սար։

Բ

Պարսիկները որ գալիս են Ղարաբաղն առնելու, Մռավ անունով մի հայ զորավար իր մարդկանցով ամրանում է այստեղ և դիմադրում է նրանց։ Թեև թշնամին թվով ավելի շատ է լինում, բայց Մռավի մարդիկ նրան ջարդ ու փշուր են անում, ողջ մնացածներին էլ փախցնում։ Կռվի ժամանակ սպանվում է Մռավը, որի անունով և սարը կոչվում է Մռավ։

## 25. ԴԱՂՍՏԱՆԻ ԼԵՌՆ ՈՒ ՄՌԱՎԸ

Դաղստանի լեռն ու Մռավը վիճում են իրար հետ։ Դաղստանի լեռն ասում է. Դու ինձ մոտ ինչ ես որ, ես քեզանից շատ ավելի բարձր եմ։ Մռավն էլ ասում է. Ոնց կարող ես դու ինձանից բարձր լինել, երբ իմ դիրքս այնքան վեր է քեզանից։ Դաղստանի լեռն ասում է. Զայնդ կտրի, թե չէ ձեռիս ափսեն կտամ երեսիդ։ Այս ասելով նա ափսեն շպրտում է Մռավի վրա, բայց ափսեն չի հասնում Մռավի գագաթին, այլ ընկնում է մոտիկ մի հարթ տեղ։ Մռավն էլ ասում է. Որ դու ինձ վրա ափսե շպրտեցիր, անիծում եմ քեզ՝ թող գլխիդ ձյունը երբեք չհալչի։

## 26. ՔԱՓԱՍՆ ՈՒ ՄՌԱՎԸ

Քափասը գտնվում է Գանձակի մոտ

Առաջ Քափաս լեռն այնքան բարձր է եղել, որ իր ստվերով ծածկել է Գանձակ քաղաքը։ Քափասին սաստիկ նախանձել է Մռավը և առաջարկել է մենամարտել իր հետ։ Քափասն իսկույն նետն ուղղել է Մռավին և

*կոտրել նրա ձախ կողը, իսկ Մռավը բարկությամբ ու նախանձով լցված՝ նետով այնպես է տվել նրան, որ գլուխը փշուր-փշուր է արել։*

## 27. ԱՎԱՆԱ ՔԵՐԾ

Գտնվում է Շուշի քաղաքից հարավ-արևելք, ձորի մեջ

*Սրա սարոտի ավերակները Ամարաթներ (ապարանքներ) են կոչվում։ Ժամանակին այստեղ է բնակվել Վարանդայի հայ զինվորության գլխավոր հրամանատար Ավան Յուզբաշին, որի անունով և ժայռը կոչվել է Ավանա քերծ։*

## 28. ԴԻԶԱՓԱՅՏ

Գտնվում է Արցախում

*Հեթանոսք ժողովեալ ի գլուխ լերինս զբազումս ի քրիստոնէից, և դիզեալ զփայտ բազում, հրոյ ճարակ ետուն զամենեսեան, ուստի անուանեցաւ Դիզափայտ։*

## 29. ԱՐՈՒԹՅՈՒՆԱ ՍԱՐ

Գտնվում է Արցախում. համանուն լեռնաշղթայի ամենաբարձր գագաթն է

*Ասում են, թե Արություն անունով մի ճգնավոր ձմեռները բնակվելիս է եղել այս լեռան կատարին՝ իր անձը անտանելի սառնամանիքների մեջ նեղելու նպատակով։ Դրա համար էլ սարը կոչվել է նրա անունով։*

## 30. ԱՍՏՂԱԲԼՈՒՐ

Գտնվում է Արցախում

### Ա

*Յայսմ լերին բազումք ի քրիստոնէից կատարեցան նահատակութեամբ, որոց ոսկերք բոցանիշ փայլեցան զաւուրս բազումս, յորմէ և ընկալաւ զանունս Աստղաբլուր։*

### Բ

*Ի վերայ մարմնոյ Թագուհի անուն մեծազգի կնոջ, որ սպանաւ ի զօրագլխէն հոնաց, էջ լոյս աստղաձև։ Աստղապէս ցոլացեալ խաղայր*

*լոյսն ի վերայ կաթուածի արեան Թագուհւոյն։ Եւ ժողովեցին զնշխարս Թագուհւոյն՝ ամփոփեցին և եդին ի բլրակին, և անուանեցին զայն Աստղաբլուր։*

## 31. ՔԱՌԱՍՈՒՆ ԱՂՋԻԿՆԵՐ

Գտնվում է Արցախի Պտրեցիք գյուղի դիմաց

Ա.

*Ժամանակս գերեվարութեան Լանկթամուրայ քառասուն օրիորդք ի նմանէ փախուցեալ, ամրացեալ են անդ և կացեալ անվնաս. և ապա յետ անդորրութեան, երբ գտեալ են զօրիորդսն, յանուն նոցա կոչեալ են զտեղին Քառասուն աղջիկք (Ղըրխ-ղզլար)։*

Բ

*Ղարաբաղի խաներից մեկը գերի է տանում քառասուն հայ աղջիկների, որպեսզի պահի իր հարեմում։ Աղջիկները ոչ մի կերպ չեն ուզում ենթարկվել խանի կամքին։ Խանը քառասունին էլ ուղարկում է մոտակա բարձր լեռը և գագաթից անդունդը գլորել տալիս։ Դրանից հետո այդ սարի անունը դնում են Քառասուն աղջիկ։*

## 32. ՀՈՎՎԻ ՍԱՐ

Գտնվում է Արցախ գավառում, Տիգրանակերտ ավանի մոտ։
Սրա ստորոտում կա մի մեծ աղբյուր

*Աղքատը ոչխարի կաթ է խնդրում հովվից և մերժում է ստանում։ Չոքում է գետին և դիմելով աստծուն ասում է. Աստված, եթե մի հոտ ոչխար տաս ինձ, ամեն խնդրողի կաթ կտամ։ Շրջապատի բոլոր սպիտակ քարերը անմիջապես ոչխար են դառնում։ Աղքատը ուրախացած սարն է քշում ոչխարներին։*

*Քրիստոսը ծերունու կերպարանքով մոտենում է հարստացած աղքատին և կաթ է խնդրում։ Աղքատը մերժում է։ Քրիստոսը խաչակնքում է, և նա իր ոչխարներով քար են դառնում։ Այդ օրվանից սարը կոչվում է Հովվի սար (Չոբան դաղի)։*

## 33. ՕՐՈՐՈՑԱՍԱՐ

Գտնվում է Արցախի Տիգրանակերտ ավանում

*Մի ամուլ արաբ կին արու զավակ ունենալու խնդիրքով ուխտի է գալիս այստեղ գտնվող վանքը։ Ուխտը կատարվում է։ Կինը զավակ է ունենում և մկրտվելով, քրիստոնեություն է ընդունում։ Արաբները ուզում են սպանել նրան ու երեխային։ Կինը խնդրում է Քրիստոսին փրկել իրեն։ Քրիստոսի հրամանով օձերը խայթում են սարը բարձրացող արաբներին և ազատում կնոջն ու երեխային։ Արաբ կինը վանքի մեջ մի քարե օրորոցում մեծացնում է իր երեխային, որի պատճառով և սարի անունը դնում են Օրորոցասար (Բեշիկլու)։*

## 34. ՍԵՎ ԵՎ ԿԱՐՄԻՐ ՍԱՐԵՐԸ

Գտնվում են Գեղամա լեռնաշղթայի վրա

*Սև սարը ժամանակին եղել է մի բռնակալ մարդ, որը քար է դարձել ժողովրդի անեծքով, իսկ Կարմիր սարը՝ մուրազաբեր մի աղջիկ, որին ուժով տիրացել է բռնակալը։ Չկարողանալով վայելել աղջկա սերը՝ Սև սարը մինչև հիմա ամպի պես որոտում է, գոռում, գոչում նրա վրա ու չի կարողանում մոտենալ։ Ասում են, թե դրա համար Սև սարը լալիս է անզոր կատաղությունից և իր վրեժը հանում մարդկանցից։ Ամառվա կեսին մեկ էլ տեսար մթնում է, բուք ու բորան անում, խեղդում մարդ ու անասուն։ Առաջին սարի հողը սև է, դրա համար էլ Սև սար է կոչվում, երկրորդինը՝ կարմիր, դրա համար էլ Կարմիր սար է կոչվում։*

## 35. ՊԱՀԱԿԱՍԱՐ

Գտնվում է Շամշադինի Նավուր գյուղի մոտ

*Լեզգիների ժամանակ մարդիկ հերթով պահակ են կանգնել այստեղ։ Թշնամու երևալուն պես նրանք իմաց են տվել գյուղացիներին, և սրանք զինված գնացել են սարը։ Մի գիշեր էլ լեզգիները թաքուն սպանել են պահակին։ Դրանից հետո սարի անունը դրել են Պահակասար (Ղրավուլլի)։*

## 36. ՋԱԼԱԲԻ ՄԱՍ

Գտնվում է Իջևանի Վերին-Աղդան գյուղից դեպի հարավ-արևելք

*Ջալաբ անունով լավ շվի ածող մի աղքատ հովիվ է լինում, շատ տեսքով, խելքով ու շնորհքով մարդ։ Սա սիրահարվում է՝ աղայի աղջկան,*

*աղայի աղջիկն էլ նրան է սիրում։ Աղան իմանում է այդ, կանչում է Չալարին և ասում. Ես իմացել եմ, որ դու սիրում ես իմ աղջկան. ինքդ լավ գիտես, որ ես աղա մարդ եմ, իսկ աղան էլ իր աղջիկը մի հասարակ հովվի չի տա, եթե նա մի մեծ շնորհք չունենա։ Ա՜յ, թուրքի քոչը սարն է բարձրանում, քոչի ետևից էն ձիավոր կնոջը տեսնո՞ւմ ես. եթե կարողացար այնպես շվի նվագել, որ էդ կինը ձիու աջ կողմից իջնի, ձախ կողմից նորից նստի, աղջիկս կտամ քեզ։ Չալարը համաձայնվում է։ Նա շվին դնում է բերանին և մի մեծ քարի վրա նստելով սկսում է նվագել։ Հավք ու կենդանի հիացած լսում են Չալարի նվագը։ Ձիավոր կինն էլ կանգնում և սկսում է լսել. հետո նա ձիու աջ կողմով իջնում է, ձախով նորից բարձրանում։ Աղան մնում է շվարած։ Կանչում է երկու հաղթանդամ տղաների, կաշառում է նրանց և ստիպում, որ գնան կտրեն Չալարի մատները։ Սրանք գիշերը քնած ժամանակ կատարում են աղայի պատվերը։ Դրանից հետո սարի անունը դնում են Չալարի մատ։*

### 37. ԱՄՈՒՐԻՆԵՐԻ ՍԱՐ

Գտնվում է Նոյեմբերյանի Կողբ գյուղի մոտ

*Լեզգիների հարձակման ժամանակ, երբ գյուղը լուր են բերում, թե թշնամին գալիս է, տասնութ ամուրի (ազապ) քաջ տղաներ զենքով դուրս են գալիս այստեղ դիրք մտնում, կտրում լեզգիների առաջը, մինչև ետևից հասնում է օգնական ուժը։ Ազատելով գյուղը թշնամիներից, տասնութ կտրիճներն էլ զոհվում են կատաղի կռվում։ Դրանից հետո այդ սարը ի հիշատակ ամուրի քաջերի կոչվում է Ամուրիների սար (Ազափլար)։*

### 38. ԿԱՐԾԱԽ

Գտնվում է Լոռու Թեղուտ գյուղի ճանապարհին

*Սրա մոտ առաջ գյուղ է եղել։ Տարին երաշտ է լինում և գյուղացիք ստիպված ծախում են իրենց անասունները։ Աղքատ այրին իր միակ կովը տալիս է որդուն և ասում է. Բալա ջան, տար ծախ։ Դրանից հետո սարի անունը դնում են Տարծախ, որը բերնե-բերան դառնում է Կարծախ։*

### 39. ԱՐՈՒԼ

Գտնվում է Ջավախքում։ Բաղկացած է երկու գագաթներից՝
Մեծ Արուլ և Փոքր Արուլ

*Մարդիկ խմելով այս սարից բխող աղբյուրի քաղցրահամ սառը ջուրը, ասել են. «Իսկական ապուր է»։ Հավանելով ջրին, նրանք բնակություն են*

*հաստատել այստեղ և գյուղն ու սարը կոչել են Ապուր, որը հետո բերնեբերան դարձել է Աբուլ։*

### 40. ԲԱՄԲԱԿԻ ԼԵՌ

Գտնվում է Հին Բայազետի ճանապարհի արևմտյան կողմում,
Բարղող լեռներից դեպի հարավ-արևելք

*Կոչեցաւ յայս անուն ի բնակչացս, քանզի երկրագործք սերմանեն զունդ բամբակի մինչ չև է սպառեալ ձիւն ի գագաթանէ սորին, այլ ի սպառիլն ոչ ևս սերմանեն, զի ոչ գայ ի հասունութիւն։*

### 41. ԲԱԼԱԲԱՆ

Գտնվում է Հին Բայազետի մոտ

*Ռուս-թուրքական պատերազմի ժամանակ, Բայազետի բերդում պաշարված ռուսական զորքերին օգնության հասնող Տեր-Ղուկասովի բանակը այս լեռան վրայից առաջին անգամ թմբկահարությամբ ավետեց իր գալուստը պաշարվածներին, և այդ օրից լեռը կոչվեց Բալաբան։*

### 42. ԳՈՀԱՆԱՄ

Գտնվում է Կարնո գավառում

*Նոյան տապանը երկար ժամանակ ջրերի վրա ծփալուց հետո, հոգնած մի կայան է փնտրում։ Եվ առաջին անգամ տապանը հանդիպում է Կարնո Փալան թեոքեն կոչված լեռան կատարին, ուր մի վայրկյան իսկ չմնալով անցնում է։ Այստեղ Նոյը զգում է, որ ջրերը հետզհետե քաշվում են, հուսահատությունը փարատվում է և թևերը պարզելով աստծուն, բացականչում է՝ «Գոհանամ քեզանից, տեր»։ Դրանից հետո այդ լեռը կոչվում է Գոհանամ։*

### 43. ՀԱՎԱՏԱՄՔ

Գտնվում է Կարնո դաշտի Մերկամերկ գյուղից դեպի հյուսիս

*Երբ Գրիգոր Լուսավորիչը շրջապատված մեծամեծ իշխաններով գնում էր դեպի Արարատյան աշխարհը, ճանապարհին լսում է, որ Տարոնում կան Գիսանեի և Դեմետրեի կուռքերը, որոնք պաշտվում են տեղացի հայերի կողմից։ Լուսավորիչը փոխում է ճանապարհը, զորքով գնում կռատը-*

*ները կործանելու։ Դարան մտած քրմապետի որդին իր մարդկանցով պաշարում է Լուսավորչին։ Հանկարծ վրա է հասնում Ռշտունյաց Արձան իշխանը, կոտորում քրմապետի զորքը և ազատում Լուսավորչին։ Լեռան վրա, ուր գտնվում էին կռատները, լուսեղեն մի խաչ է երևում, որը երեք օր, երեք գիշեր փայլում է արեգակի պես։ Տեսնելով այս հրաշքը, շատ հեթանոս հայեր գոչում են՝ «Հավատամք» (=հավատում ենք)։ Այդ օրվանից էլ լեռան անունը մնում է Հավատամք։*

### 44. ՀԱՄԵՏ ԹՈԹԱՓՈՂ

Գտնվում է Կարնո գավառում

*Սակս սաստիկ զաու ի թափ գոլոյն ընկալաւ զայս անուն, որպէս թէ յելանելն ուղիղ ի վեր, թօթափին համետք գրաստուց (Փալան թէօքէն)։*

### 45. ԲՅՈՒՐԱԿՆ

Գտնվում է Բարձր Հայքում, Խնուսի մոտ

Ա

*Այստեղ եղած աղբյուրներից մեկի մեջ մի նետահար լոր, լվացվելու ժամանակ, կենդանացել և ֆոֆռալով թռել, գնացել է։ Երբ այդ մասին հարցրել են ականատես հովվուհուն, սա չկարողանալով գտնել կենսատու աղբյուրը, բացականչել է. Բյուրակն, հազար ակն, ես ինչ իմանամ թե որն է այդ ակը։ Դրա համար էլ սարը կոչվել է Բյուրակն (Բինգյոլ)։*

Բ

*Քուրդ հովիվը ոչխար է արածեցնում այստեղ։ Նրա փոքրիկ տղան ու աղջիկը մի ճնճղուկ են բռնում, մորթում, փետրահան անում և տանում են մոտակա աղբյուրը լվանալու։ Հանկարծ ճնճղուկը կենդանանում թռչում է։ Զարմացած երեխաները պատմում են իրենց հորը։ Հովիվը կռահում է, որ դա անմահական աղբյուրի ջրից է։ Որոշում է հայտնել քոս հիվանդությամբ տառապող իր աղային։ Հրաշագործ աղբյուրի տեղը չկորցնելու համար հովվի երեխաները թեշի են խրում հողի մեջ։ Երեկոյան հիվանդ աղային սարն են բերում, բայց ինչքան փնտրում են աղբյուրը, չեն գտնում։ Պարզվում է, որ թեշին կանաչել, ծառ է դարձել։ Բարկացած աղային հովիվը պատասխանում է. Բինգյոլը հազար գյոլ ունի, ես ինչ իմանամ, թե ո՞րն էր այն գյոլը։*

Դ

*Քուրդ հովիվն այստեղ զառներ է արածեցնելիս լինում։ Մեկ էլ տեսնում է, թե ինչպես երեք օձեր (մեկը վիրավոր, մեկը ջախջախված, մեկն էլ քոսոտ) գալիս են մոտիկ ջրերից մեկի ակունքի մոտ, այստեղ բուսած ծաղկից մեկական թերթ պոկում, ուտում են և մտնելով ջրի մեջ սկսում են լողանալ։ Հովիվը, որ անթարթ նայում էր օձերին, հանկարծ տեսնում է, որ երեքն էլ միանգամից առույգ ու առողջ, դուրս են սողում ջրից։ Այդ մասին պատմում է իր հիվանդ (քոսոտ) աղային և վերցնելով նրան հետը բերում է դեպքի վայրը, բայց ինչքան փնտրում է, այլևս չի կարողանում գտնել այն ծաղիկն ու ջուրը, որով բուժվել էին օձերը։ Եվ երբ աղան նախատում է հովվին, թե ինչու նա չի հիշել ծաղկի ու ջրի տեղը, հովիվը պատասխանում է. Բյուրակն, հազար ակն, ես ինչ իմանամ թե որն է այն ակը։*

Դ

*Մե քոռ աղջիկմ աղբորը հետ Մշու ու Էրզրումի միջի սարերն ի՞նչ է, օչխար կարծե էղե։ Մե օրմ աս աղջիկը քոռ-քոռընա (կուրորեն) կէրթա մե աղբուրմ գտնի կը, աչքերը բացվի կը։ Աշխարհք իրան կուտան, աթալթափալ (հապշտապ) գըլնի տուն։ Հարն ու մարը օր տեսնին կը՝ մաթ մնան կը (զմայլվել). հարցնեն կը թը՝ «Աղջի, ատ ի՞նչըղ էղավ օր աչքերուտ լուսը բացվավ»։ Անա թե՝ «Սարին գլոխը աղբուրմ կա, լվացվա, աչքերս բացվավ»։ Վազզեն կ'օր մեկ չէ՝ հազար աղբուր գլգըլան կը։ Ատոր համար ա սարին անունը դնեն կը Բինգյոլ (Բյուրակն)։*

Ե

*Փաշին մեկը կերթա Բինգյոլու սարերը քեֆ էնելու։ Նեոքյարը (ծառա) դոխմ (աղավնի) մորթե, տանի կը աղբուրը լվալու։ Բիրտան (հանկարծ) դոխը սաղնա թռի կը։ Վրայեն կաթկթած ջուրը մե-մե աղբուր դառնա, հազար ակե բխա կը. ատոր հըմար ա Բյուրակն (Բինգյոլ) կըսվի։*

### 46. ՔՈՒՅՐ ՈՒ ԵՂԲԱՅՐ

Գտնվում է Շապին-Գարահիսարի Թամզարա գյուղախաղաքի ճանապարհին

*Հին ժամանակ քույր ու եղբայր որբ են մնացել և երկար ժամանակ հեռու են ապրել իրարից։ Տարիներ անց նրանք անգիտությամբ ամուս-*

*նացել են իրար հետ։ Աստված բարկանալով անիծել է նրանց և քար դարձրել։ Դրա համար էլ այս ժայռը կոչվում է Քույր ու եղբայր։*

### 47. ԳԱՎՌԱ

Գտնվում է Տիվրիկի Գավռա գյուղի մոտ

*Սրա գագաթին ժամանակին գանձ է պահվել։ Երբ Ալիս գետի ջուրը հասներ այնտեղ՝ գանձը պիտի հայտնվեր։ Նախորդն իր չորացած տրեխները գետում փափկացնելիս տեսնում է, որ նախիրը բարձրացել է այս լեռը. նա ջրով լի տրեխները ձեռքին վազում է, և ջուրը թափվելով այնտեղ, հայտնի է դարձնում գանձի տեղը։*

### 48. ԴԵՏ

Գտնվում է Հայոց Ձորի Հայկաբերդ ամրոցի հարավային կողմում

*Հայկ նահապետը սրա գագաթին է դրել Բելի նետահար մարմինը, որպեսզի բոլորը դիտեն։ Դրա համար էլ լեռը կոչվել է Դետ։*

### 49. ԱՄԵՆԱՓՐԿԻՉ

Գտնվում է Վասպուրականի Լեգf գյուղում

*Շամիրամ թագուհին այստեղ դրել է Արա Գեղեցիկի դիակը, որպեսզի հարալեզները կենդանացնեն նրան։ Սրա լեռան հանդեպ բարձրանում է մի սար։ Սարը տեսնելով, որ հազարավոր մարդիկ են բարձրանում Ամենափրկչի գագաթը աղոթելու, նախանձում է նրան և սկսում է ինքն էլ բարձրանալ, որպեսզի հավասարվի։ Ամենափրկիչը ձեռքով խփում է նրա գլխին և նախկին դիրքն ընդունել տալիս։ Ամենափրկչի ձեռքի տեղը ամառ ձմեռ միշտ կանաչ է մնում։*

### 50. ՁԱԳՐՈՇ

Գտնվում են Վանա լճից հարավ արևելք

*Այս լեռները առաջ եղջյուրներով վիշապ են եղել։ Ձագրոշը ուզում է ունել Տավրոսին, և կռվի է ելնում նրա դեմ։ Կռիվը տեղի է ունենում Հաքյարի մեջ, Արզենի և Ջուտիի կողմերում։ Տավրոսը թեև տարածությամբ փոքր, բայց ավելի ուժեղ լինելով, այնպես է հարվածում Ձագրոշի ճակա-*

տին, որ նրա եղջյուրները պոկվում են։ Մի եղջյուրը թռչում, ընկնում է Արգեոյից հեռու և ցցվում է գետնի մեջ, որ մինչև այսօր Մասիուս է կոչվում, իսկ մյուս եղջյուրը թռչում և խրվում է Արարատի կողը, որ մինչև այսօր Մասիս է կոչվում։ Զագրոշը շշմած՝ մեջքը դեմ է տալիս Տավրոսի Առնոս և Արտոս եղջյուրներին։ Տավրոսը բարկացած՝ այնպես ուժեղ է խփում նրա մեջքին ու փորին, որ մի մեծ ձոր է բացում Կոթուտից սկսած մինչև Տիարտխուբ։ Այդ ձորը, իբրև վկա, մինչև օրս էլ մնում է, որով հոսում է Զաբ գետը։ Ասում են, թե այդ գետը Զագրոշի արյունն է, որը թեև վշշում է, բայց անուշ ու անմահական ջուր է։ Նրա հարվածից նոր լեռներ են բարձրանում ու բաժանում իրարից ջրերը, և Զագրոշի փորոտիքի աղի ջրերի մի մասը գնում է Վան ու կազմում Վանա ծովը։ Այդ օրվանից սկսած, Զագրոշը իր գլուխն առած քաշվում է մի կողմ։ Նրա մարմնի մի ծայրը հասնում է Արարատ, իսկ գլուխը՝ Շիրազ և Հնդստան։

## 51. ԱՐՏՈՍ ԵՎ ԱՌՆՈՍ

Գտնվում են Վասպուրականում

### Ա

Երբ Նոյ նահապետի տապանը հասել է Արտոս լեռանը, նա արտասվել է, որի համար էլ կոչվել է Արտոս։ Իսկ երբ տապանը հասել է Շատախի լեռանը, ասել է՝ Առ Նոյս, առ Նոյս, դրա համար էլ սա ստացել է Առնոս անունը։

### Բ

Նոյան տապանը լողալով գնացել է Կոռապաշ լեռան մոտ և կամեցել է նրա վրա հանգչել, սակայն վերջինը կռվելով (կռանալով) ճանապարհ է տվել նրան դեպի դիմացի լեռը։ Նոյը մոտենալով այդ լեռանը, ասել է. Առ զՆոյս, առ զՆոյս, որից և առաջացել է նրա Առնոս անունը։

## 52. ՏԸԳԱՄ — ՏԸԳԱՄ

Գտնվում է Մոկսի Սեպ գյուղի մոտ

Ժամանակին սրանից շարունակ լսվել է՝ «Տը գամ, տը գամ» (պիտի գամ, պիտի գամ) ձայնը։ Գյուղացիք մատաղ են արել և աղաչել են նրան չգալ և չտրորել գյուղը։ Սակայն ժայռը դարձյալ ասել է. «Իկը, իկը» (եկա, եկա)։ Այդ միջոցին գյուղի երիտասարդներից մեկը կանչել է՝ «Թե չգա՛ս...»։ Եվ քարաժայռի ձայնն անմիջապես կտրվել է։

### 53. ԸՆՁԱՔԻԱՐՍ

Գտնվում է Ուշտունյաց Ընձակ գյուղի մոտ

*Մծբինի Հակոբ Հայրապետը բարձրանալով սրա կատարը անիծել է Ուշտունյաց գավառի բնակիչներին, որովհետև Մանաճիհր մեծ իշխանը, հակառակ ծերունի հայրապետի թախանձանքներին, ծովն էր նետել նրա անմեղ սարկավագներին։ Այդ անեծքից հետո Ուշտունյաց գավառում երեք տարի անձրև չի եկել։*

### 54. ԽՆՁՈՐԻ ՍԱՐ

Գտնվում է Սպարկերտի և Մոկսի արանքում

*Ժամանակով մի բեռ խնձոր են տարել այստեղով. մինչև սարի մի կողմից բարձրացել են նրա գագաթը և անցել են մյուս կողմը, գրույցով տարված, մեկ-մեկ կերել են բոլոր խնձորները։ Դրա համար էլ սարի անունը դրել են Խնձորի սար (Բանա-սևա)։*

### 55. ՃԱՇՏՐԵ

Գտնվում է Սպարկերտի արևմտյան կողմում, Խիզանի թիկունքին

*Ժամանակով մի գայլ Գիռեն սարից նայելով այս սարին, տեսել է, որ սրա վրա մաքին ծնել է և գառնուկը տակին ծիծ է ուտում։ Երկու օրվա ճանապարհ կտրելով նա հասել է այդ սարը և կերել է թե՛ մաքուն և թե՛ գառանը։ Դրա համար էլ սարի անունը մնացել է Ճաշտրե, որ նշանակում է՝ ճաշը դնել ուտել։*

### 56. ԴԵՂԱՌ

Գտնվում է Սպարկերտի Հյուրուկ գյուղի մոտ

*Մի հովիվ ոչխարները տանում է այս սարը՝ արածացնելու։ Ոչխարները ուտում են տեղի խոտը և խոտի մեջ եղած թույնի պատճառով բոլորը սատկում են։ Դրանից հետո սարի անունը դնում են՝ Դեղառ, որովհետև վրան դեղ (թույն) կար։*

## 57. ՍՐՈՑ ՍԱԼԵՐ

Գտնվում է Սպարկերտի Սուրս գյուղի մոտ

*Սրա վրա կան թրի բերանի պես սուր քարեր, որոնց Սուրս են ասում, իսկ սարին էլ՝ Սրոց սալեր։*

## 58. ԳՐԳՈՒՌ, ՍԻՓԱՆ ԵՎ ՄԱՍԻՍ

*Նոյան տապանը Գրգուռ լեռան վրայով անցնելիս դիպել է նրա գագաթին և գրգռոցի ձայն է հանել։ Դրանից սարն ստացել է Գրգուռ անունը։ Ապա տապանը լողալով գնացել է Սիփան սարի մոտ և ասել է. «Սիփան, ա՛ռ զիս, ա՛ռ զիս»։ «Գնա մոտ Մասիս, որ բարձր է քան զիս»,—պատասխանել է Սիփանը։ Եվ տապանը լողալով հասել է Մասիսին ու ասել. «Մասիս, ա՛ռ զիս, ա՛ռ զիս»։ «Դե թռի՛ վեր վզիս, թռի՛ վեր վզիս»,—պատասխանել է Մասիսը։ Այդ խոսքի վրա տապանը նստել է Մասսի կատարին, ուր և մնում է մինչև հիմա։*

## 59. ԲԼԵՋԱՆ

Գտնվում է Բուլանըխում։ Գավառը բաժանում է երկու մասի՝
Վերին և Ներքին Բուլանըխներ

*Ումն Բլեջան ժամանակին տիրապետել է այս կողմերում, որի անունով և լեռը կոչվել է Բլեջան։*

## 60. ԳԱՄ — ԳԱՄ

Գտնվում է Բուլանըխի գավառում

*Ժամանակով մեկ ճամբու վրա մեծ ծիլ պալ (միակտոր քարաժայռ) մե կէղի. ինչխդար (ինչքան) օր մարդ կեներ, օր հընցներ հառջեւով, պալ կըռռեր հեռվանց, կըսեր. Հիգա՛մ, հիգա՛մ (գամ). մարդ կզարհուրեր, կփախներ, չըր կընի հընցնի հառջեւով։ Օրերուց օր մե, մարդուն մեկ շատ դարտլի (դարտոտ) կէղնի, կըսե. Կէլնամ էրթամ էդ ճամբով. ուր քեֆն է. իմալ կէղնի, թող էղնի. բլքեմ (գուցե) շըջի վըր ընձի էդ պալ, մեռնիմ պրծնամ, ազատիմ։ Մարդն է, կէնի օր մոտենա պալին, պալ կըռռա. Հիգա՛մ, հիգա՛մ։ Տո արի,—կըսե մարդ,—օր էկար իմալ պտի էղնի։ Ես լե ատծուց զէն կուզեմ, գաս վրես մեռնիմ, պրծնամ, ազատիմ։*

*Ասածու հրամանքով պտղ կեղնի էրկու տապակ, կբացվի, բեհսաբ (անհաշիվ) ոսկի կիգա թափի ցած. մարդ գոսկիք կքոմե (հավաքի) բերե տուն, կպրծնա ամեն դարդ ու ցավից։*

### 61. ԿՈՐՅԱ

Գտնվում է Տարոնում

*Վահան ընդ յառաջ գնացեալ զօրացն Պարսից, ասէր. Իջէք ամենեքեան և թողէք զերիվարս արածել մինչև յերեկոյ և յերեկոյն իջանեմք ի վերայ զաւրացն Յունաց։ Եւ արարին այնպէս։ Եւ դարանակալք դիմեցին ի վերայ նոցա, և կտրեցին զերիվարսն ի զաւրացն, և փախստական արարին ընդ յԱրածանի, և հանին ի Քարքէ։ Իսկ զաւրքն Պարսից տեսեալ զիրսն, աղաղակեցին միաբան. վա՜յ մեզ, կորեաք։ Եւ եղաւ անուն լեռան Կորեայ։*

### 62. ՃԵՐՄԱԿ ԼԵՌ

Գտնվում է Զարսանճագի գավառում

*Մլանասրատին խռճա կուգա Ղուրիչա գյուղ։ Կնիկը կըսե. Գցեր (գնա) ջաղացը մաղե ցորեննին։ Կերթա կուգա, կմառնա (մոռանա) օ մաղե. կուգա էադ (այդ) Ղուրիչայու վերդիու (վերևի) լեռան գլուխը օ կելլա, պիրաեն (հանկարծ) միտքը կըյնի. ութ բեռ ալիրը կբերե, կհոսե, կտանե հողուն երեսը կկորսնցնե։ Հիմա էան (այն) հողը ուսկա (որտեղից) օր նայեա ճերմակ է՝ նե՛ (ոչ) ալիր է, նե՛ հող է։*

### 63. ԱԺԴԱՀԱ

Գտնվում է Քղիի արևելյան կողմում

*Հովիվն այստեղ եղած յայլաներից բերատեղ (կթելու վայր) է բերում իր հոտը։ Կթվորները պատրաստվում են կթելու ոչխարները։ Հանկարծ նրանք սարսափով նկատում են մի զարհուրելի վիշապի՝ դեպի հոտն առաջանալիս։ Աղերսագին դիմելով հոտի պաշտպան Փիրի (սուրբ) օգնությանը, հովիվը խնդրում է նրանից փրկել իրենց, խոստանալով իր հոտի լավագույն խոյերից 12-ը մատաղ անել։ Հովվի խնդիրքն անմիջապես կատարվում է։ Աժդահան քարանում է տեղն ու տեղը։ Հովիվը մի պահ տատանվում է իր խոստումը կատարելու մեջ և մտածում է 12-ի փոխա-*

*րեն միայն երկու խոյ զոհաբերել։ Նույն վայրկյանին թե հովիվը և թե հոտն ու կթվորները քար են դառնում։*

### 64. ՄՆՁՈՒՐ

Գտնվում են Դերսիմի Օվաճըգ գյուղի լեռնադաշտում

*Օվաճըգի Գետակ գյուղացի Ջեմշիտ անունով մի կտրիճ պատերազմ է գնում թշնամիների դեմ։ Պատերազմի դաշտում նա հանկարծ փափագում է ուտել իր կնոջ ձեռքով պատրաստված հալվան։ Տերսիմում գտնըվող նրա հովիվը ինքնաբերաբար զգալով այդ բանը, գալիս է Ջեմշիտի կնոջ մոտ և խնդրում է նրանից հալվա պատրաստել տիրոջը տանելու համար։ Ջեմշիտի կինը կասկածելով պատրաստում է մի ափսե հալվա և տալիս է հովվին։*

*Ժամանակ անց, երբ Ջեմշիտը վերադառնում է պատերազմից, նրան դիմավորելու են գալիս իր ցեղակիցները։ Ինձ դիմավորելուց առաջ հովիվ Մունզուրին պատվեցեք,—ասում է Ջեմշիտը, և տեղի ունեցածի մասին պատմելուց հետո ներկաներին ցույց է տալիս հալվայի դատարկ ափսեն։*

*Այդ միջոցին ժողովուրդը նկատում է, որ իրենից փախուստ տվող Մունզուրի ձեռքի դույլից կաթը տեղ-տեղ թափվում է գետին և նրա թափված տեղից ջրի ակեր են ժայթքում, իսկ ինքը Մունզուրն էլ աներևութանում է մի ժայռում...։ Ի հիշատակ Մունզուր հովվի, դրանից հետո, այստեղի լեռները կոչվում են Մնձուրի լեռներ։*

### 65. ՏՈՒԺԻԿ ՊԱՊԱ

Գտնվում է Արևմտյան Դերսիմում

*Երբ Սբ. Սարգիսը ձիով դեպի երկինք է սուրացել, Տուժիկ պապա լեռան գագաթին նրա ձին ծառս է եղել, ձիու ոտքերը խրվել են ապառաժի մեջ և թողել այնտեղ իրենց խոր հետքերը։*

### 66. ՊԱՂՐ ՊԱՊԱ

Գտնվում է կենտրոնական Դերսիմի հյուսիսային կողմում

*Երբ Տուժիկ պապա լեռը թշնամուն հարվածելու ազդանշան է տալիս, առաջինը պատասխանում է Պաղր պապան, վրա հասնելով իր փոթորիկներով, որից հետո օգնության են գալիս մյուս լեռները (Մայր, Սուրբ լույսը, Մնձուրը և Սեմը)։*

## 67. ՅՈԹ ԵՂԲՈՐ ԳՈՌ

Գտնվում է Դերսիմի շրջանի Քաշարան գյուղի մոտ

*Այստեղ պաշարվել և կռվի ժամանակ տեղացիներից սպանվել են յոթ հարամի (ավազակ) եղբայրները։ Դրանից հետո սարը ստացել է Յոթ եղբոր գոռ անունը։*

## 68. ՄԱՍՏԱՐԱ

Գտնվում է Խարբերդից դեպի հարավ-արևելք, Կոլճք լճի հարավային եզրին

*Նոյ նահապետին կեմին (տապան) գնըց Մաստարու գլոխը կայնեցավ։ Նոյ նահապետ տումանը (դեկ) օլրեց, կեմին գետինը դպավ, խրխըրաց, ըսըց. Տղաք, աչուանդ (աչքերդ) լոս, ջուրը էջեր է։ Բերին մաստարտըղնեցին (բաժանել, ցրել), անունը մնաց Մաստարու լեռ։*

## 69. ՄԱՐՈՒԹԱ ԵՎ ԱՆԴՈԿ

Գտնվում են Սասնո գավառում

*Մարութա սարի պաշտամունքը զայրացնում է Անդոկին և նա մարտի է հրավիրում Մարութա սարին։ Անդոկն իր կայծակի թրով խփում, ճեղքում է Մարութայի գլուխը։ Դրա համար է, որ նրան չղլագլուխ (զույգ գլուխ) Մարաթուկ են անվանում։ Անդոկի հարվածից վիրավորված Մարութա սարը հսկա մի ժայռ է պոկում իր կողերից և խփում նրան։ Ժայռը խրվում է Անդոկի կուրծքը, թաղվում կողերի մեջ. դուրս է մնում միայն ժայռի երկու ջաղացաքարի չափ մակերեսը, որի վրա այժմ էլ, ասում են, մնում է Մարաթուկի ձեռքի դրոշմը։*

## 70. ԾՈՎԱՍԱՐ

Գտնվում է Սասնո գավառում

*Հովիվմ՝ գերթա վըր Ջովասրու գոլուն (լիճ), պիր (գազանակ) գդնե ըր գուշտ, վըր լվացվը։ Գիկա էձըմ, գլիզե պիր, պիրը գըսըլա (սահել) գընգընը գոլը մեջ, գըսըգը (սուզվել) ու գըդորնը (կորչել)։ Աղ հովիվ բաթմանցը գեղնը։ Աշուն վըր գտառնա, գտեսնա զըր պիր իրանց կեղը ջըվորիմ ձեռք։ Պիր կացըր էր Բաթմանա ճուր (գետ), տուրս էլը։ Ջհովվի պիր գիդան իրին։*

## 71. ՍՅԱՎ ԿԱՄ ՄԹԻՆ ԼԵՌՆԵՐ

Գտնվում են Տավրոսյան լեռնաշղթայի հարավային կողմում, Անտեռունի, Կապանի և Տոնկալայի շրջաններում

*Այս լեռները Սյավ կամ Մթին են կոչվում այն բանի համար, որ ծածկըված են խիտ և մացառուտ անտառներով, որոնք փակում են ճանապարհները, անտեսանելի դարձնում երկնքի կապույտը և մթության մեջ պահում ուղևորներին։*

## 72. ՄԵԾ ՄԱՍԻՍԻ ԲԼՈՒՐՆԵՐԸ

Գտնվում են Մեծ Մասսի արևելյան լանջին

*Ժամանակին մի հարուստ վաճառական իր քարավանով գնալիս է եղել Պարսկաստան։ Այստեղ, մի սառն աղբյուրի մոտ, նա կանգ է առել հանգստանալու։ Կուշտ ուտելուց հետո, վաճառականը խմել է աղբյուրի ջրից և ապա թքել մեջը։ Աստծու հրամանով նա իր ուղտերի հետ տեղն ու տեղը քար է դարձել, որից և կազմվել են այս բլրանման բարձունքները։*

## 73. ՄՈՒԽԱՆՆԱԹ ԹԱՓԱ

Գտնվում է Երևանի երկաթուղային կայարանից դեպի հարավ

Ա

*Այս բլուրը մի գիշերվա մեջ ստեղծել են գեներալ Պասկևիչի բանակի զինվորներն ու տեղացի հայերը, իրենց գլխարկներով բերած հողով, որպեսզի նրա վրայից ռմբակոծեն պարսկական Սարդարի պալատը։ Դրա համար էլ պարսիկներն այն կոչել են Մուխաննաթ թափա (Նենգ բլուր)։*

Բ

*Նենգորեն խաբվելու պատճառով այստեղ ինքնասպան է եղել գեղեցկուհի Աբու-Հայաթը։ Դրա համար էլ բլուրը ստացել է Մուխաննաթ թափա անունը։*

## 74. ԴԻՏԻ ԿՈՆԴ

Գտնվում է Օշականից հյուսիս արևելք

*Է բարձրաւանդակ քարոտ բլրակ, յորում են բազում բնական և արհեստական քարայրք, և գագաթ նորին է իբրև դիտանոց՝ յոր անուն յորջորջեն և բնակիչքն զայն բլրակ՝ Դիտի Կոնդ։*

### 75. ՇԱՄԻՐԱՄԻ ԲԼՈՒՐ

Գտնվում է Գեղամա լեռան արևմտյան ստորոտում

*Ի գալ տիկնոջն Շամիրամայ պատերազմաւ ի վերա գեղեցկին Արայի հայկազնոյ՝ յստորոտի այսր բլրակի բանակեցաւ նա զօրօքն ասորւոց։ Յայս անուն անուանեցաւ ըստ հին աւանդութեանն։*

### 76. ԾԱԿ ԳԼՈՒԽ ԲԼՈՒՐ

Գտնվում է Վայոց ձորի Քեռօղլու և Հիրճեր գյուղերի արանքում

*Գագաթն սորա ծակ է, և ունի ի միջի զլայնածոց ջուր։ Բլուրս այս իւրով խորագոյն գբովն ազատեալ է զբազումս ի ձեռաց թշնամեաց։*

### 77. ԱՐՓԱ — ԴԱՂ

Գտնվում է Զանգեզուրում

*Շահ-Աբասի խաներից մեկը մեծ զորքով գալիս է Զանգեզուր՝ շահի զորքի ձիերի տարեկան կերը տանելու, այն հաշվով, որ մի մեծ գարու սար (արփա դաղ) գոյանա։ Մելիքները բացատրում են խանին, որ իրենք չեն կարող այդ անել, քանի որ տարին շատ պակաս է և ժողովուրդը ուտելու հաց անգամ չունի։ Խանը սպառնում է հայերի դիակներից սար շինել, եթե չկատարվի հրամանը։ Մելիքները հավաքվում են Անգեղակոթ գյուղում, խորհուրդ են անում և որոշում են զենքի դիմել։ Գիշերով հարձակվում են խանի զինվորների վրա, կոտորում բոլորին, դիակներից մի մեծ բլուր շինում և վրան հող ածելով՝ անունը դնում են Արփա դաղ (Գարու սար)։*

### 78. ԵՂՆԻԿԻ ԲԼՈՒՐ

Գտնվում է Զանգեզուրում

*Արաբները կողոպտում են Շաղատի վանքը։ Կողոպտված հարստությունն ու սրբությունները նրանք պահում են գաղտնի տեղում և վրան հող ածելով դարձնում են մեծ բլուր։*

*Տարիներ անց, երբ կառուցվում է Տաթևի վանքը, տեղացիները սկըսում են փնտրել Շաղատի վանքի թաքնված հարստություններն ու սրբու-*

*թյունները՝ դրանք նոր վանքը տեղափոխելու համար, սակայն չեն կարողանում գտնել։*

*Մի օր էլ, երբ երկու որսորդներ ձիով հետապնդելիս են լինում եղնիկին, մի բլուրի վրայով վազելիս՝ եղնիկի ոտը խրվում է հողի մեջ։ Վրա հասած որսորդները տեսնում են, որ դա այն բլուրն է, ուր ժամանակին թաղվել են Տաղատի հարստությունները։ Հանում են բոլորը և տեղափոխում Տաթևի վանքը։*

*Դրանից հետո բլուրի անունը դնում են Եղնիկի բլուր։*

### 79. ՂԱՐԱ ՔՅՈՓԱԿ ԿԱՄ ՂԱՐԻ ՔՅՈՓԱԿ

Գտնվում է Ջիբրայելի Ղարաքուլաղ գյուղի մոտ

Ա

*Այստեղով անցնելիս, Շահ-Աբասը տեսել է, թե ինչպես մի ծերունի միայնակ հնձում է իր արտը։ Խղճալով նրան, շահը հրամայել է զինվորներին՝ օգնել ծերունին։ Երբ արտը հնձվել է, Շահ-Աբասը հարցրել է. Լա՞վ է արդյոք ընկերովի աշխատանքը։ Ծերունին պատասխանել է. Լավ է ընկերովի աշխատել, բայց մենակ ուտել։ Բարկացած ծերունու պատասխանի վրա, Շահ-Աբասը հրամայել է զինվորներին՝ մեկական քար նետել նրա վրա, որից և գոյացել է Ղարա քյոփակ (Սև շուն) անունով բլուրը։*

Բ

*Ժամանակին այստեղով անցել է մի թագավոր մեծ զորքով. նրա հետ է եղել նաև իր հավատարիմ շունը, որը կռիվներից մեկի ժամանակ փրկել էր տիրոջ կյանքը։ Գետն անցնելիս շունը հանկարծ հիվանդացել է ու սատկել։ Թաղելով նրան, թագավորը հրամայել է զինվորներին, որ ամեն մեկը մի բուռ հող լցնի շան դիակին։ Գոյացել է մի ահագին բլուր, որը ի հիշատակ իր հավատարիմ շան, թագավորը կոչել է Ղարա քյոփակ (Սև շուն)։*

Գ

*Նադիր-Շահը այստեղ հանդիպելով մի պառավ կնոջ հունձ անելիս, հարցնում է նրան. Հը՛, պառավ, օգնությունը ե՞րբ է հարկավոր, աշխատելու, թե ուտելու ժամանակ։ Պառավը պատասխանում է. Օգնությունը*

*պետք է ուտելու ժամանակ։ Զայրացած պառավի այդ խոսքից, Շահը հրամայում է զինվորներին մեկական բուռ հող լցնել նրա վրա, որից շուտով գոյանում է «Շուն պառավ» (Ղառի քյոփակ) կոչված հողաբլուրը։*

## 80. ԿԱՐՄԻՐ ԲԼՈՒՐՆԵՐ

Գտնվում են Խոյից դեպի հարավ, Սալմաստի սահմանի մոտ

*Այստեղից Վարդան Մամիկոնյանը հրամաններ է տվել Տղմուտ գետի ափերի մոտերքում մարտնչող իր զորքերին։ Այստեղ էլ ընկել է ինքը՝ Վարդան զորավարը։ Վարդանի և նրա զինվորների արյունով են ներկված այս բլուրները, դրա համար էլ կոչվում են Կարմիր բլուրներ։*

## 81. ՂԱՌԸՆԸ ՅԱՐԸՂ

Գտնվում է Սալմաստի Սոմայի կոչված լեռների ստորոտում,
Ուրմիո լճից դեպի հարավ-արևմուտք

*Երեք եղբայրներ սիրահարվում են մի աղջկա. յուրաքանչյուրը նրանցից առաջարկում է գեղեցկուհուն իր սիրտը։ Աղջիկն ապրելիս է լինում Ղառընը յարըղ (փորը ճղած) անունով բլրի գագաթին գտնվող ամրոցում։ Նա եղբայրներին առաջարկում է հետևյալ պայմանը. թող երեք եղբայրներն էլ բլրի տակից փորելով գան, ով շուտ հասնի բլրի գագաթին՝ ինքը նրան էլ կառնի։ Եվ երեք եղբայրները սկսում են փորելով բարձրանալ դեպի վեր։ Առաջինը հասնում է փոքր եղբայրը, և աղջիկը իր խոստման համաձայն առնում է նրան։ Մյուս երկու եղբայրները տեսնելով այդ ընկնում և մեռնում են ճանապարհին։*

## 82. ԷԼԵՁՈՒՍԱ

Գտնվում է Տրապիզոնի մոտ

*Երբ հայոց Արտաշես թագավորն իր բազմաթիվ զորքերով՝ թշնամու հանդեպ դիրք բռնելու համար Էրզերումից իջել է Տրապիզոն, նա զինվորներին հրամայել է բարձրանալ այս բլուրը, ասելով. էլեք հուզա։ Դրանից հետո բլուրը կոչվել է էլեքհուզա կամ էլեձուսա։*

### 83. ՇԵՂՋԱ ԴԱՐ

Գտնվում է Վանի հյուսիսային կողմում, Դոլաշեն գյուղի մոտ

*Կալի ժամանակ մի ագահ և հարուստ տանուտեր խստությամբ հսկել է իր ցորենի շեղջը, որպեսզի սարյակներն ու արտուտներն անգամ չկրտցահարեն այն։ Աստված անեծելով այդ՝ տեղն ու տեղը հողակույտ է դարձնում ցորենի շեղջը, իսկ տանուտիրոջը՝ իր սայլորդներով, սայլին լծված գոմեշներով, սայլով ու օրանով (ծղոնով), քարի է վերածում։ Դրանից հետո բլրանման այդ բարձունքը կոչվում է Շեղջա դար։*

### 84. ՄԱՀՈՒ ԲԼՈՒՐ

Գտնվում է Տարոնում

*Եւ դարձաւ Սմբատ մեծաւ յաղթութեամբ ի բլուրն։ Եւ զաւրքն շուրջանակի պատեալ ի վայր լցին զպարսիկք. և մի ի նոցանէ ոչ մնաց, բայց միայն այնոքիկ, որ առ ուղտքն էին, արք չորեք հարիւր, զոր ոչ հրամայեաց սպանանել, բայց առ ի նոցանէ ՌԽԴ ուղտ և ութ հազար ձի և ջորի։ Իբրև վճարեցաւ պատերազմն, հրամայեաց ի ձորս և ի հեղեղատսն լնուլ զնոսա։ Եւ կոչեցաւ անուն բլերն Մահու բլուր։*

### 85. ՎԱՐԱԶԱԲԼՈՒՐ

Գտնվում է Տարոնում

*Սմբատ հրամայեաց զմեռեալ դիակունսն զորացն Վարազայ (պարսից) կուտել ի վերայ իրերաց ի բլեր մի, և վասն կոտորածին Վարազայ կոչեցաւ տեղին այն Վարազաբլուր։*

## ՔԱՐԱՅՐՆԵՐ, ՁՈՐԵՐ, ԴԱՇՏԵՐ

### 86. ԱՐԴԱՐ ԴԱՎԻԹ

Գտնվում է Վաղարշապատից Օշական տանող ճանապարհի աջ կողմում

*Դավիթ անունով մի մարդ ճգնելու տեղ է ընտրում այս այրը։ Երեկոյան ժամերգություններին գալիս է էջմիածնի տաճարն ու վերադառնում։ Կարճ ժամանակում արդար ու սուրբ մարդու անուն է վաստակում։*

էջմիածնի աշակերտներից և գյուղի երեխաներից մի քանիսը անհայտանում են։ Մի անգամ էլ, երբ Արդար Դավիթը սովորականի պես աղոթելիս է լինում տաճարում, լուսարարը նրա վերարկուի թիկունքին կարդում է հետևյալ մակագրությունը. «Ես այստեղ եմ»։ Պարզվում է, որ «արդար» կոչված այդ մարդը որսալով մանուկներին, տարել է իր այրը և մորթել ու կերել։ Դավթին հրավիրելով մի սենյակ զբաղեցնում են, իսկ ուղարկված մարդիկ գնում բերում են կենդանի մնացածին և շատ մարդկային ոսկորներ։ Դավթին քարկոծում են։ Դրանից հետո քարանձավը կոչվում է Արդար Դավթի անունով, իսկ կեղծ արդարներին էլ ասում են «Արդար Դավիթ»։

## 87. ԾԱՂԿԵՎԱՆՔ ԿԱՄ ՎԱՌՎԱՌԱ ԿՈՒՅՍ

Գտնվում է Աշտարակից Ապարան տանող ճանապարհին

Ա

Քրիստոնեություն ընդունելու համար հալածանքի ենթարկվելով իր հարազատ հորից, Վառվառա կույսը թաքնվում է այս այրի մեջ։ Հովիվներից իմանալով աղջկա տեղը, հայրը գտնում է նրան և տեղն ու տեղը նահատակում։ Մեռնելուց առաջ Վառվառան անիծում է մատնիչ հովիվներին, որոնք ոչխարների հետ քար են դառնում։ Դրա հետ միասին Վառվառան խնդրում է աստծուն, որպեսզի ծաղիկ հիվանդություն ունեցողները բժշկվեն։ Դրանից հետո քարայրը կոչվում է Ծաղկեվանքի կամ Վառվառա կույսի քարայր։

Բ

Իրեք քուր են ըլե (եղել), իրեքն էլ կույս՝ Գայրանեն, Շողակաթը, Ծաղիկը։ Տրթատ թաքավորը ուզըմ է, որ առնի իրեքին էլ, ախչիկները չեն հոժարվըմ (համաձայնվում), փախչըմ են։ Տրթատը կռապաշտ ա էլել, կուսերը՝ քրիստոնյա։ Ըտու (դրա) հըմար էլ փախեր են։ Տրթատը ետևից վազեր ա, քարով տվեր ա Գայրանին ու Շողակաթին՝ սըպաներ ա։ Ծաղիկը փախեր ա, էկեր ա բանցըր սարի գլուխը, չոբանի (հովվի) կուշտը։ Ասեր ա. Չոբան ախպեր, էտևիցս մարթ ա գալըմ, իմ տեղը չասես, թե որ ասես՝ քար դառնաս։ Տրթատն ու իրա զորք գալըմ են (գալիս են) Ղառնիյարաղա գլուխը, չոբանին հարցնըմ են, թե՝ ախչիկը դո՞ր (ուր) փախավ։ Չոբանը ասըմ ա. Չեմ իմանում։ Որ շատ նեղութուն են տալըմ (տալիս),

ասըմ ա. «Լավն էն ա քար դառնամ, քան տանջըվեմ։ Ասըմ ա՝ Ախչիկը վեր էկավ ձորը, մտավ զաղեն (այր)։ Ասելուն պես՝ ոչխարով, կծոտողով (շներով) բանով քար դառավ մնաց։ Տրթառն ու զորքը հիշան զաղեն, քթան ախչկան ու սպանեցին, էնտեղ թաղեցին, թողին գնացին։ Ծաղիկը սպանվելուց առաչ, ասավ. Իշքան քոռ ըլի, իշքան ծուռ ըլի, իմ դուռը գա, լավանա։ Ըտուց ետը զաղեն կոչվավ Ծաղկեվանք։ Իշքան որ քոռ ու ծուռ ըտու (դրա) դուռը էթան (գնան)՝ կլավանան, ետ կդառնան։

Գ

Երբ Վառվառա կույսը ճգնելու համար գալիս մտնում է Ծաղկեվանքի քարայրը, տեղացի հայերը սրա բերանին մի դուռ են պատրաստում։ Քյորդալու գյուղից մի թուրք գնում, քանդում է դուռը և շալակով տեղափոխում է տուն, որ գոմի դուռ շինի։ Երբ տուն է հասնում, ինչ անում է, չի անում, դուռը մեջքից չի պոկվում։ Նրան հասկացնում են, թե սրբադուռը պետք է տանել տեղում կախել, թե չէ՝ տուն ու տեղ ավերակ կդառնա։ Թուրքը դուռը տանում, կախում է տեղը և այնուհետև ամբողջ գյուղը ուխտի է գնում ճգնուհուն։ Դրանից հետո թուրքերն ու քրդերը հավատալով Ծաղկեվանքի զորությանը՝ մատաղ են անում։

## 88. ԱՊՐԱՆՔԱՓՈՍ

Գտնվում է Երևանից Ետնաբեր տանող ճանապարհին

Մի անգամ այստեղով անցնում է մի գյուղացի և լեռան մեջ նկատում է դեպի քարայրը տանող անցքը։ Մտնում է այրի մեջ և ահագին ոսկի ու թանկարժեք քարեր է գտնում։ Նա լցնում է դրանք տոպրակի մեջ, բարձում էշին ու դուրս գալիս։ Հանկարծ հիշելով իր ձեռնափայտը, գյուղացին հետ է վերադառնում։ Դռան բացվելու ժամանակն անցնում է, քարայրը փակվում է և նրան այլևս ոչ ոք չի տեսնում։ Էշն իր բեռով մենակ վերադառնում է տուն։

## 89. ԹԱՓԱԳՅՈՂԻ ՔԱՐԱՅՐԸ

Գտնվում է Մասսի կողին

Ասում են, թե այստեղ ապրող թափագյողի մոտ մի անգամ մի մարդ է եկել, որին նա փակել է այրի մեջ, որպեսզի քնի, վեր կենա և հետո ուտի

*նրան։ Մարդը երկաթե շամփուրը տաքացրել է, և խրելով թափագլողի աչքը՝ կուրացրել է նրան։ Հետո վրան է առել մի ոչխարի մորթի և խառնվելով ոչխարների հետ՝ մի կերպ դուրս է պրծել այրից։*

### 90. ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ ԱՅՐԸ

Գտնվում է Գողթան գավառի Մսրվանիս գյուղի մոտ, Կոնակոչ լեռան ստորոտին

*Այստեղ աշակերտների հետ մոտ 17 տարի ապրել է Մեսրոպ Մաշտոցը։ Գյուղացիք հաճախ տեսության են եկել Մեսրոպին, լսել են նրա քարոզները, կաթ, պանիր, յուղ և լավաշ հաց բերել նրա համար։*

### 91. ԾԾԵՐ

Գտնվում է Գանձակի Ամենափրկիչ գյուղի մոտ

*Հուպ ի գիւղս ի ձորամիջի գոյ այր խորանկեալ, ուր ի վերուստ իջանեն կաթ առ կաթ ջուրք սառնորակք և բարեհամք, և կազմեալ են անդ գծծաձև քարինս, վասն որոյ և ի բնակչաց կոչին Ծծեր։*

### 92. ՎՈԹՈՅԻ ԲՈՒՆ

Գտնվում է Սևանի շրջանի Դդմաշեն գյուղից դեպի ճյուսիս

*Այս քարայրում ապրել է Վոթո (Վարդան) անունով մի ավազակ (ղաչաղ)։ Նա մարդկանց ոչ մի վնաս չի հասցրել, փախել է իշխանությունից ու օրենքից։ Քարայրի ներսը, քարի վրա հրացանաձև բնական մի երկարուկ փոս կա։ Ասում են, թե դա Վոթոյի հրացանի տեղն է։ Այսօր էլ այդ քարայրը կոչվում է Վոթոյի բուն։*

### 93. ԱՂԵԿԻ ԱՅՐ

Գտնվում է Լոռում, Աղեկի կոչված ավերակ գյուղատեղի մոտ

Ա

*Երբ լեզգիները հարձակվում են Լոռու վրա, բնակիչներից շատերը ապաստանում են այս այրում։ Թշնամին փեթակներ է այրում։ Ծուխը և զայրացած մեղուները դրան անցքերից մտնում են քարայրը և խեղդում ու կծում են ապաստանածներին. ոմանք էլ ուշաթափ վայր են ընկնում։ Լեզ-*

գիները սանդուղ դնելով մտնում են այրը, ուշաթափվածներին սպանում, իսկ կենդանի մնացածներին գերի են տանում։ Ոմանք էլ ասում են, թե մոտակա ջրաղացի Աղեկ անունով ջրաղացպանին մահվան սպառնալիքի տակ ստիպել են, որ նա խնդրի քարայրում եղողներին՝ բանալ դուռը և գիշերով ներս առնել իրեն, և երբ նրանք բացել են այրի դուռը, լեզգիները ներս են խուժել և սկսել են կոտորել այնտեղ ապաստանած մարդկանց։ Դրա համար էլ կոչվում է Աղեկի այր։

Բ

Լեկզիք յետ բազմադիմի մարտից գտին զգաղտնի ճանապարհ սորա, վառեցին անդր հուր սաստիկ, ի վերայ նորա եդին զգի մեռելոց, յորմէ պատճառեաց զազիր հոտ և դառնացոյց զօդ տեղւոյն, ուստի մեռան ամենեքին։

## 94. ՀՈՌՈՄԱՅՐ

Գտնվում է Լոռում

Կոչեցաւ Հոռոմայր, քանզի յաւուրս Յոհաննու Իմաստասիրի իշխան ոմն հոռոմոց եկն դեսպան ի կայսերէն, և ճգնեցաւ ի սմին այրի։

## 95. ԴՐՍԵՎԱՆՔԻ ՋԱՌՆԵՐԸ

Գտնվում են Ալավերդու շրջանում

Դրսեվանքի (Կայան բերդ) դեմուդեմը (հանդիպակաց կողմում) ղառներ են ըլե (քարայրներ են եղել)։ Ջառների ժողովուրթը տապարած (թաքնված) ա ըլում։ Դրսեվանքի հետ նրանք լեզվով են կապ պաշտպանում, դի տալով (պայմանական խոսքերով)։ Երբ հաղթվում են, ասում են՝ «երկանքը մաշվել ա», Դրսեվանքի մարթիկ հասկանում են, որ լեզգին նրանց վերցրուց։ Լեզգին որ վերցնում ա (հաղթում է), դրանց միչիցը մի հայ ախչկա գնում են ձիու թըրքին (թարեք-գավակ), իբրև գերի փախցընում։ Էդ ախչկա տերը դի ա տալի իր ախչկանը՝ «ախչի գլուխդ պահե» (թեքվի ձիուցը). ախչիկը թեքվում ա. հերը գնդակով խփում ա լեզգուն, ախչկան ազատում։

## 96. ԲԱՆՁՐԵԼ ՔԱՐԱՅՐՆԵՐԸ

Գտնվում են Շիրակի Բաշ-Շորագյալ գյուղից դեպի հյուսիս

*Շորագյալցիների ասելով այս քարայրները եղել են շատակեր Շարայի ամբարները, որը ապրել է Ղարսա-չայի և Արփա-չայի միջև ընկած բարեբեր հարթության վրա։*

## 97. ԾՐՇԱԿԱՎԱՆԻ ՔԱՐԱՅՐ

Գտնվում է Տանկա-պարսկական ճանապարհի վրա,
Խարաբախաշ և Ձեյվա գյուղերի արանքում

*Հայոց թագավորը այստեղ ժամանակին մի քաղաք է շինել քաջ տղամարդկանց համար, որը գնալով օր-օրի մեծացել է։ Աղնվականները նախանձելով հարձակվել են այդ քաղաքի վրա, ավերել են այն և կոտորել բնակիչներին։ Դեռ պաշարումից առաջ, իմանալով իրենց գլխին գալիքի մասին, քաղաքացիք իրենց ունեցվածքը պահել են այս քարայրում։*

## 98. ՄՀԵՐԻ ԴՈՒՌ ԿԱՄ ԱԳՌԱՎՈՒ ՔԱՐ

Գտնվում է Վանից դեպի հյուսիս, փոքրիկ լեռնագոտու վրա

Ա

*Մհերը մոր գերեզմանից հրաման ստանալով՝ գալիս է Վանա քաղաք։ Երբ հասնում է Վանա դաշտ, տեսնում է «մեկ ագռավ կեր կը խոսեր»։ Նետով վիրավորում է ագռավին, որ թռչում մտնում է մի քարայր. Մհերը ձին քշում է ետևից, մտնում այրը և էլ ետ չի դառնում. ձիու ոտքը թաղվում է հողի մեջ, դուռը փակվում է, և նա այնտեղ մնում է մինչև աշխարհքի վերջը։ «էն տեղաց անունն էլ Ագռավու քար կասեն. ինչ ագռավ մտավ էն տեղ, էն դիմաց կասեն Ագռավու քար»։*

Բ

*Ամեն տարի Համբարձման և Վարդավառի գիշերը, Վանա միջնաբերդից ոչ հեռու գտնվող Ագռավու քարը բացվում է, Մհերը դուրս է գալիս քարանձավից, փորձում է հողի ուժը և համոզվելով, որ այն չի կարող դիմանալ իր ծանրությանը, վերադառնում է հետ։*

*Մի անգամ ինչ որ հովիվ տեսնում է, որ ժայռը բացվել է, բայց Մհերը դուրս չի գալիս։ Նա հարց է տալիս, թե ե՞րբ պետք է դուրս գա։ Մհերը*

պատասխանում է, որ դուրս կգա այն ժամանակ, երբ ցորենի հատիկն ավելի խոշոր կլինի, քան ընկույզը, և երբ գարին ավելի խոշոր կլինի, քան մասուրը։

Գ

Մի վանեցի մտնում է Մհերի քարը (այրը), տեսնում է մի վեմ մարդ (հսկա), որն ասում է. Ջիուս պարկը բեր գլուխն անցրու։ Բայց որովհետև պարկը ծանր է, նա էլ բերում է ձին պարկի մոտ, գլխին կապում։ Մհերն այս տեսնելով ասում է. Ես այն ժամանակ դուրս կգամ հայու աշխարհն ազատելու, երբ կլինի աշխարհը շեն, և ռամկությունը աշխարհք կուգա...։

Դ

Այստեղ աստծու հրամանով փակվել են Մհերն ու իր ձին։ Այստեղ է կուտակված աշխարհի ոսկին և մարդկանց բախտը գուշակող ճախրի ֆալակը (=բախտի անիվ)։ Ասում են, թե երբ այդ անիվը դադարի պտտվելուց, Մհերը դուրս է գալու և ավերելու է աշխարհը։

Ամեն տարի Համբարձման գիշերը երկինքն ու գետինը համբուրվում են։ Հենց այդ ժամանակ բացվում է Մհերի դուռը։ Ով տեսել է դա՝ կատարվել է նրա սրտի ուզածը։ Մի քանի ագահ մարդիկ ներս են մտել Մհերի դռնից և փորձել են ինչքան կարելի է շատ ոսկի վերցնել։ Ագահության պատճառով նրանք ուշացել են դուրս գալ, դուռը փակվել է և մնացել են ներսը։

Մհերի դռան վերևից կաթ-կաթ սև ջուր է հոսում։ Ասում են, թե դա Մհերի ձիու մեզն է։

Ե

Ասում են, թե մի հովիվ քնելով այս դռան տակ երազ է տեսնում։ Երազում մի բարի ոգի հայտնում է նրան կախարդական դուռը բանալու գաղտնիքը։ Այդ գաղտնիքը այն մի քանի խորհրդավոր բառերն էին, որոնք քանդակված էին դռան վրա։ Հովիվն արթնանալով արտասանում է այդ բառերը և քարայրի դուռը անմիջապես բացվում է, նրա առջև փռելով ոսկու և ադամանդի կույտեր։ Երբ հովիվը ներս է մտնում քարայրից, դուռը փակվում է. նա լցնում է տոպրակը թանկագին քարերով, կրկնում է կախարդական բառերը, դուռը բացվում է և դուրս է գալիս։ Հանկարծ հիշում

*է, որ մանուկը մոռացել է քարայրում։ Նորից է արտասանում նույն բառերը, դուռը նորից բացվում է, հովիվը մտնում է ներս, վերցնում մանուկը և ուզում է դուրս գալ, բայց մոռացած լինելով ասելիք կախարդական բառերը, մնում է փակված քարայրում։ Ասում են, թե նա մինչև հիմա էլ քարայրում է և մեկ-մեկ այնտեղից լսվում են նրա ողբի ձայները։*

Զ

*Տարին մեկ անգամ, Համբարձմանը, բացվում է այս քարայրի դուռը և մի ժամի չափ մնում է բաց...։ Այնտեղից դուրս է գալիս Մհեր անունով մի հաղթանդամ հսկա։ Հրեղեն նժույգի վրա նստած նա պտույտ է անում երկնքում ու երկրում և նորից վերադառնում է իր տեղը։ Դուռը փակվում է մինչև հաջորդ տարվա նույն օրը։ Ասում են, թե ով այդ միջոցին կարողանա ներս մտնել, կստանա ցանկացածը։*

*Մեկը, որ Համբարձման գիշերը հսկելիս է լինում այդ տեղում, դռան բացվելուն պես ներս է նետվում։ Քարայրի մի անկյունում նա տեսնում է ահագին քանակությամբ ոսկի, արծաթ և ադամանդ, մյուս անկյունում՝ հուրի փերիներ (հավերժահարսներ)։*

*— Ի՞նչ ես փնտրում,—լսում է նա մի ձայն։*

*— Բախտս եմ ուզում, բախտս,—պատասխանում է ներս մտնողը։*

*— Առ այն թիակը և վերցրու ուզածդ հարստությունը։*

*Մարդու ձեռներն ու ոտները ուրախությունից սկսում են դողդողալ, աչքերն այնպես են մթնում, որ նա թին հակառակ կողմով է խրում ոսկու կույտի մեջ... Երբ բարձրացնում է՝ տեսնում է ընդամենը մեկ հատ ոսկի խրված թիի կոթի ճեղքի մեջ։ Զգում է իր սխալը, ուզում է ուղղել, բայց արդեն ուշ է լինում։ Անծանոթ ձայնն ասում է. «Դա էր քո բախտը, ավելին չունես. դե՛հ դուրս...», և աներևույթ ձեռներ նրան դուրս են հրում քարայրից։*

Է

*Մի չքավոր կին, որ օր ու գիշեր ճախարակ մանելով էր զբաղված, Համբարձման գիշերը, երբ բացվում է Մհերի դուռը, փոխանակ ասելու «իլիկ ոսկի» (խոսքը ճախարակի իլիկի մասին է), ասում է «էրիկ ոսկի» (=էրիկ, ամուսին)։ Տուն վերադառնալիս, նա տեսնում է, որ իր էրիկը (ամուսին) դարձել է ձույլ ոսկի։ Նույն տարին երաշտ ու թանկություն է լինում։ Կինը ստիպված կտրում է ամուսնու ոսկի ճկույթներից մեկը և*

դրանով ապրում։ Հաջորդ տարին, Համբարձման տոնին նորից է գնում Մհերի դռան մոտ և սպասում։ Երբ դուռը բացվում է, կինն ասում է. «Իրիկ (էրիկ)՝ մարդ, իրիկ՝ մարդ»։ Իսկույն կատարվում է կնոջ խնդիրքը։ Տուն վերադառնալիս նա տեսնում է, որ ոսկի դարձած ամուսինը նորից կենդանի մարդ է դարձել, մենակ առանց մի ճկույթի։

## 99. ՈՒՐԲԱԹԱՅՐՔ

Գտնվում է Վասպուրականում, Վարագա լեռան մոտ

Երկուք ոմանք ի քահանայիցն սրբոց բնակեցան ի նմին տեղւոջ, մինչև ցօր կոչման և կատարման իւրեանց առ Քրիստոս։ Եւ տեղիք նոցա կոչին Ուրբաթայր, քանզի ի յուրբաթ մատուցանէին զսրբութեան պատարագն, և բաշխէին արժանաւորապէս սուրբ կանանցն (ընկերացն Հռիփսիմեանց՝ որք մնացին ի լերինն Վարագ) զմարմինն և զարիւնն տեառն։

## 100. ՎԻՇԱՊԻ ԱՅՐ

Գտնվում է Աղբակում, Բարդուղիմեոս առաքյալի վանքից դեպի արևելք

Այս քարայրում բնակվել է մի վիշապ, որը մի օր կուլ է տվել այստեղից անցնող աղջկան։ Այդ տեսնելով՝ Բարդուղիմեոս առաքյալը ձիով հարձակվել է վիշապի վրա։ Սա դուրս է փախել այրից և փախել աղջկան։ Այդ փախուկն է, ահա, որ դարձել է սպիտակ քարակոշտերի մի մեծ բազմություն, որ սփռված է այրից դեպի հարավ, բլրի լանջին։ Այրը կոչվում է Վշբու էր (Վիշապի այր)։

## 101. ԱՐԾՎԱՔԱՐ ԱՅՐԸ

Գտնվում է Մոկսի հարավային կողմում

Այստեղ ապրում են հուրի-փերիներ. Սրանք տարին մի անգամ Համբարձման գիշերը դուրս են գալիս քարայրից և պարում են խոտերի նուրբ ծայրերի և ծառերի բարակ ճյուղերի վրա։ Քարայրի մեջ կան նաև մի ոսկե օրորոց և շատ գանձեր ու հարստություն։

## 102. ՄԱՇՏՈՑԻ ԱՅՐ

Գտնվում է Բալուի բերդի մոտ

*Սա եղել է Սուրբ Մեսրոպի դպրոցը։ Ունի սևացած առաստաղ ու պատեր, մեջն էլ բեմի նման անկոփ քարերով շարված։ Քարայրի մոտ կա տաշածո երեսով գրատախտակի պես մի քար։ Ասում են, թե սրա վրա Մաշտոցը գրել է հայկական տառերը։*

## 103. ՄԱՆԻԻ ԱՅՐԸ

Գտնվում է Դարանաղյաց գավառում, Սեպուհ լեռան ապառաժների մեջ

*Էր կին ոմն անուն Մանի, յընկերաց սրբոց Հռիփսիմեանց... գիտելով զամենայն տեղիս աստուծոյ, բնակեցաւ ի լերինս յայսոսիկ, յայրս ինչ քարանց. վասն որոյ կոչեցաւ անուն լերինն Մանեայ այրք...։*

## 104. ՊՈՉԻԿ ՁՈՐ ԿԱՄ ՆՇԽԱՐԱՁՈՐ

Գտնվում է Թալինի Մաստարա գյուղից հյուսիս արևելք

*Կոչեն նմա անուն Պոչիկ ձոր, զի երկարութիւն նորա է կարի կարճ։ Ի մէջ այսր ձորակի ի հարաւակողման է փոքրիկ մատուռն աւերեալ, և տեղի երկուց սենեկաց, ուր ասեն բնակէր երբեմն վարդապետ ոմն ազգային կամ եղբայր տեառն գեղջս՝ որում տուեալ ըստ հայրենի ժառանգութեանն զփոքրիկ սահման արտօրէից՝ յարևելակողմն գեղջս, ի պէտս նշխարի սուրբ խորհրդոյն և ապրուստի նորա՝ կոչեն զձորակն և Նշխարաձոր։*

## 105. ՇԱՀԲԵԿԻ ՁՈՐ

Գտնվում է Երնջակի Շահկերտ գյուղի արևելյան կողմում

*Ղազանչեցի Խոջա-Դոստին Շահ-Աբասին այստեղ արքայավայել սեղան տալով, հրաման է առնում շահից որևիցե շնորհ խնդրելու։ Դոստին խնդրում է շահից իրավունք տալ իրեն այստեղ մի գյուղ շինել։ Շահը ընդունում է նրա խնդիրքը և թույլ է տալիս կատարելու ցանկացածը։ Դրա համար էլ այդ տեղը կոչվում է Շահի կամ Շահբեկի ձոր։*

## 106. ԱԼԴԱՐԱ

Գտնվում է Մեղրու շրջանում

*Ասում են լվացել է ոտները այս ձորով հոսող Արաքս գետի մեջ, և որովհետև նրա ոտները շատ կեղտոտ են եղել, ջուրը սաստիկ պղտորվել է։ Դրանից հետո ձորը կոչվում է Ալդարա (Աստծու ձոր)։*

## 107. ՄԹՆԱՁՈՐ

Գտնվում է Հին Գորիս գյուղից վերև, սարերի մեջ

*Ժամանակին մի սիրուն աղջիկ է եղել, աղքատի աղջիկ։ Երբ նա ծիծաղել է՝ չորս կողմը վարդեր ու ծաղիկներ են բացվել, երբ լաց է եղել՝ անձրև է եկել։ Դևերը գողացել են նրան, տարել ձորի ամենամութ տեղը՝ ուր արևի լույս չի ընկնում և չկա կենդանի շունչ։ Ասում են, թե մինչև հիմա էլ կա այդ աղջիկը։ Նա միշտ լաց է լինում, դրա համար էլ Մթնաձորում (Ղարանլուխ) շարունակ թուխպ ու անձրև է լինում։ Մեկ-մեկ էլ, որ այնտեղ եղանակը պարզվում է, ասում են, թե խեղճ աղջիկը քնի մեջ ծիծաղում է։*

## 108. ԲԱՐՍԵՂԱՄԵՌ

Գտնվում է Որոտան գետի ափին, Կըզկալա կոչվող ժայռի մոտ

*Ժամանակին Զանգեզուրում եղել է Բարսեղ անունով մի քաջ մարդ։ Նա ունեցել է մի հավատարիմ շուն, որը լիզել է նրա վերքերը և առողջացրել։ Մի անգամ էլ, կռվի ժամանակ, երբ շունը տիրոջ հետ չի լինում, Բարսեղը վիրավորվելով արյունաքամ է լինում ու մեռնում։ Գալիս է շունը, տեսնում տիրոջը մեռած և սրտաճաք է լինում։ Այն ձորը, որտեղ մեռնում է քաջ Բարսեղը, դրանից հետո կոչվում է Բարսեղ-օլան (Բարսեղամեռ)։*

## 109. ՍԱԽԿԱԼ-ԹՈՒԹԱՆ

Գտնվում է Որոտան գետի ակունքի մոտ

*Տաթևից Հալիձոր գնալիս Դավիթ-բեկը պատահում է Ֆաթալի-խանի օգնականին։ Սա ծաղրելով Դավթին, ասում է. Դավիթ-բեկ, մորուքդ բռնիր, նամազդ արա, վերջդ եկել է։ Դավիթ-բեկը պատասխանում է. Մենք*

այսպիսի տեղերում ոչ նամազ ենք անում, ոչ էլ մորուք բռնում, մենք թրի կոթ ենք բռնում, տղամարդ ես դիմացիր։ Ասում է, թուրը քաշում, վրա է տալիս խանի ձիավորներին, բոլորին կոտորում է, և դառնալով խանին, ասում. Մորուքդ բռնիր, այ շուն, նամազդ արա, վերջդ եկել է, և թռցնելով նրա գլուխը նետում է Որոտան գետի մեջ։ Դրանից հետո այդ ձորի անունը դնում են Սախկալ-թութան (Մորուսակալ)։

## 110. ԲԱՄԲԱԿԻ ԾՈՎ

Գտնվում է Տաթևի վանքի առջևում

Այս ձորը հաճախ լցվում է փափուկ և սպիտակ ամպերի քուլաներով, որոնք նման են բամբակի։ Դրա համար էլ կոչվում է Բամբակի ծով։

## 111. ԿԱՆԼԸ — ԴԱՐԱ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանում

Առաջ ինչքան որ թուրք, թաթար զորքեր են եկել Ղարաբաղի վրա, այստեղով են անցել։ Ամեն անցնող արյուն ու կոտորած է արել։ Դրա համար էլ ձորի անունը դրել են Կանլը-Դարա (Արյունոտ ձոր)։

## 112. ՋՈՀՐԱԲԻ ՋՈՐ

Գտնվում է Մարտունու շրջանի Եռանոս գյուղից հյուսիս արևելք

Սոթի շրջանում ապրել է Հակոբ անունով մի մելիք։ Սա ունեցել է Սելիմ-խան անունով մի պարսիկ ծանոթ։ Մի անգամ Հակոբի որդի Ջոհրաբը գնում է Սելիմ-խանի տունը։ Խանի աղջիկը (Զեյնաբ), տեսնելով Ջոհրաբին՝ սիրահարվում է։ Ջոհրաբն էլ իր հերթին հավանում է Զեյնաբին։ Ամուսնանում են և գաղտնի ապրում իրար հետ։ Խանը մեծ զորքով գալիս է Սոթ, ավերում հայկական գյուղերն ու կոտորում անմեղ ժողովրդին։

Ջոհրաբն իր փոքրաթիվ խմբով ամրանում է Ջաղա կոչված վայրում և սկսում է նեղել Սելիմ-խանին։

Սելիմին օգնության է գալիս մի ուրիշ խան։ Գիշերելու համար նա իջևանում է Երանոսի դաշտում։ Լսելով այդ մասին Ջոհրաբը իր խմբով հարձակվում է խանի քնած զորքերի վրա, կոտորում նրանց և վերցնելով Զեյնաբին անհայտանում է։

Դրանից հետո այն վայրը, ուր Ջոհրաբը կոտորել էր պարսիկ խանի բանակը, կոչվում է Ջոհրաբի ձոր։

### 113. ՇԱՎՈՅԻ ՁՈՐ

Գտնվում է Սևանի շրջանի Դդմաշեն գյուղի մոտ

Շավոն քուրդ է եղել։ Ապրելով հայերի մեջ՝ նա որոշում է ընդունել քրիստոնեություն։ Շավոյի հետ քրիստոնեություն են ընդունում նաև նրա կինն ու տղան՝ Հովհաննեսը։ Դրանից հետո Հովհաննեսն ամուսնանում է տեղացի մի հայ աղջկա հետ։ Թե՛ Շավոն և թե նրա որդին շատ քաջ ու անվախ մարդիկ են եղել։ Քուրդ Շավոյի անունով՝ ձորը կոչվել է Շավոյի ձոր։

### 114. ՄԱՆՅԱԿԻ ՁՈՐԸ

Գտնվում է Իջևանի Աչաջուր գյուղից դեպի արևելք

Պատմում են, որ Աչաջուր գյուղից մի անգրագետ հողագործ ամուսնանում է քաղաքացի մի կրթված կնոջ հետ, Մանյակ անունով։ Մանյակը գյուղում դպրոց է բացում, երեխաներին տառաճանաչություն սովորեցնում, ներկայացումներ կազմակերպում։ Չար մարդիկ ամուսնու առաջ բամբասում են Մանյակին, թե նա անբարոյական է, դրա համար էլ բոլորը, մանավանդ տղամարդիկ միշտ սիրալիր ժպտում են նրան։ Խանդից կուրացած ամուսինը, հերանց տանելու պատրվակով Մանյակին հեռացնում է գյուղից և սպանում ձորում։ Այդ օրվանից էլ ձորը կոչվում է Մանյակի ձոր։

### 115. ՍԽՎՈՐԴՎՈՅ ՁՈՐ

Գտնվում է Սանահնի վանքի արևմտյան կողմում

Բնակիչք սորա էին հատուած ի քաղաքէն Անւոյ, գաղթականութեամբ վերաբնակեալ... ի սոյն ձորամիջի։ Անմատչելի խոխոմք տեղւոյս ազատ պահեցին զնոսա յերեսաց թշնամեաց։ Սոքա սևացան ի ոօթոյ երկրին, ուստի և անուանեցաւ ձորս այս Սևորդւոց ձոր։

## 116. ԽՈՌՎԿԱՆԻ ՁՈՐ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի հողամասում

*Ասում են, թե մի մարդ մի աղջիկ է ունենում։ Որ փեսացուն ուզում է՝ չի տալիս։ Ի՞նչ ունի, որ տամ,—ասում է ու հաշվում ունեցվածքը։ Մի անգամ էլ ուրիշ գյուղից մի տղա է գալիս խնամախոսության։ Նստում են զրուցում։ Աղջկա հայրն ուզում է խոսքամիջի իմանալ, թե ինչ ունի, չունի փեսացուն։ Սա էլ թե.—Որ մի հարյուր կով լինի, լա՞վ է։*

*— Լավ է,—ասում է աղջկա հայրը։*

*— Որ մի էգքան էլ ձի լինի, լա՞վ է։*

*— Լավ է,—ասում է աղջկա հայրը։*

*— Որ մի չորս-հինգ էդքան էլ ոչխար լինի, լա՞վ է։*

*— Լափ լավ է,—ասում է աղջկա հայրը։ Համաձայնվում է։ Հարսանիք են անում։ Գնում է տղայի տուն։ Պարզվում է ճշմարտությունը։ Անեբը փեսայից է նեղանում, թե նա խաբել է իրեն, փեսան՝ աներոջից։ «Խոսքը խոսք է բերել,—ասում է,—խոսքի օրինակ եմ ասել»։ Աղջկա հայրը ամոթից էլ գյուղ չի վերադառնում։ Գնում է մի ձորում տուն-տեղ շինում, ապրում փեսայից խռոված։ Դրա համար էլ ձորի անունը մնացել է Խռովկանի ձոր կամ Խռովկան։*

## 117. ՀՐԱՑԱՆԱ ՁՈՐ

Գտնվում է Նոյեմբերյանի Բարանա գյուղի մոտ

*Թուրքերը գալիս են բարանացիների տավարը հափշտակելու։ Գյուղի հանդում նրանք հանդիպում են տեղի տավարածին։ Ծաղր ու ծանակի են ենթարկում նրան և ստիպում պարել հայի ձևով։ Տավարածը պարում է և պարելով կամաց-կամաց մոտենում այն տեղին, ուր պահված էր իր հրացանը։ Վերցնելով հրացանը նետվում է մոտիկ թփի տակ և սկսում է կրակ տեղալ թուրքերի վրա։ Թուրքերը խուճապահար փախուստի են դիմում։ Դրանից հետո այս վայրը կոչվում է Հրացանա ձոր։*

## 118. ԻՄԻԼԱՐԻ

Գտնվում է Խնուսի Քաղքիկ գյուղի մոտ

*Կայենին սպանելու համար, երբ նրա զարմիկ Ղամեքը լարում է աղեղը, մի աներևույթ ձայն ասում է. Մի՛ լարի։ Դրանից հետո այն ձորը, որտեղ տեղի էր ունեցել դեպքը, կոչվում է Իմիլարի։*

### 119. ԱՐՋՈՒՑ ՁՈՐ

Գտնվում է Տարոնում

*Իշխանն Արջոց փախուցեալ թագեաւ, զոր տեսեալ իշխանին Արծրունեաց՝ որպէս ընդ չտեսիլս արար, և գնաց մերձեցաւ առ նա և յանկարծակի յարձակեցաւ ի վերայ նորա։ Իսկ նա փախուստ դարձեալ ընդ յանտառն՝ կորաւն փայտի էանց ընդ սիրտ նորա և անդէն մեռաւ։ Եւ անուանեցաւ տեղին այն Արջոց ձոր։*

### 120. ԹՄԲՐԱՁՈՐ

Գտնվում է Տարոնում

*Եւ իբրև ի մուտ եղև արևն, մնացին ի պարսից չորեք հարեւր այր, որք ընդ միջոցն ելեալ փախեան. և քանզի մնացեալք էին երիվարք նոցա, երթեալ մտին ի ձոր մի, և թագեան ննջեցին խոյս առեալ մինչև ի մեւս աւուր հասարակն։ Զոր եկեալ զօրացն գտին, և ջուր ցանեալ ի վերայ նոցա՝ զարթուցին, և առեալ տարան գնոսա ի Մեղտի։ Եւ կոչեցաւ տեղին այն Թմբրաձոր։*

### 121. ԵՂՍԱՆԻ ՁՈՐ

Գտնվում է Դերսիմի Քաջարան գյուղի սահմանում

*Այստեղ մահացել է սարվոր աղջիկների և հարսների առաջնորդ Եղսան նանը, անձնազոհությամբ հեղեղից փրկելով երեսունից ավելի երիտասարդների կյանքը, և նրա անունով ձորը կոչվել է Եղսանի ձոր։*

### 122. ՄԵՂՐԱՁՈՐ

Գտնվում է Սասնո Գելիեգուզան և էղգարդ գյուղերի մոտ

*Գելիեգուզան և էղգարդ գյուղերի ճամփին, Գելիեսանի աջ ափից, անցնում է մի վիշապ՝ սարի լանջին քսվելով. ժայռերը փշրվում են և ձյան պես սպիտակ քարերից մի ճամփա է բացվում (Հուշփի ճամփա)։ Վիշապն անցնելով այդ սարից, իջնում է մի ձոր և այնտեղ փչում շունչը։*

*Մոտիկ էղգարդ գյուղից մեղուները դուրս են գալիս փեթակներից և գնում թափվում վիշապի հսկա դիակի վրա։ Գյուղի բնակչությունը հետեվում է նրանց և Մեղրաձորում հանդիպում վիշապի դիակին, որ ծածկված*

*է լինում մեղուների ամպով։ Հնար չգտնելով նրանց տուն վերադարձնել, գյուղացիները երեկոյան գնում են գյուղ։ Մի քանի օր անց բոլոր մեղուները վերադառնում են և դրանից հետո միշտ թռչում են դեպի վիշապի դիակը, մինչև որ այն սպառվում է։ Այդ պատճառով ձորը կոչվում է Մեղրաձոր։*

### 123. ՍԵՈՅԼԵՄԵԶ ԴԱՐԱՍԻ

Գտնվում է Ջեյթունի Սբ. Կարապետ վանքի մոտ

*Թեճիրլիցի վրանաբնակ թուրքմենները այս կողմերից անցնելիս՝ չարչարում և խոշտանգում են Սբ. Կարապետ վանքի վանահորը, որպեսզի նա ցույց տա պահված դրամների տեղը։ Տեսնելով, որ վանահայրը լռում է, թուրքմենները մերկացնում են նրան և բլուրի գագաթից քաշքշելով հասցնում են մինչև ձորը, արյունլվա անելով նրա մարմինը։ Վանահայրը դարձյալ ոչ մի ձայն չի հանում։ Թուրքմենները ստիպված թողնում են նրան և հեռանում։ Ճանապարհին հեղեղանման անձրև է տեղում, ողողում չորս կողմը և քշում տանում թուրքմենների մեծ մասին։ Այդ բանը վերագրելով չխոսկան վարդապետի դեմ գործած իրենց հանցանքին, կենդանի մնացած թուրքմենները դրանից հետո տվյալ վայրը կոչում են Սեոյլեմեզ դարասի (Չխոսկանի ձոր) անունով։*

### 124. ԴԱՎԱ — ՅԱԹԱՂ

Գտնվում է Սևանի Դդմաշեն գյուղի յայլայում

*Ուղտերի քարավանը շատ հոգնած լինելով դադար է առել այս հովտում։ Ուղտապանը հանգիստ է տվել ուղտերին և գիշերը քնել նույն տեղում։ Դրանից էլ հովտի անունը մնացել է Դավա-յաթաղ (Ուղտ[illegible] իջևան)։*

### 125. ՆԱՐԳԻՍՆԵՐԻ ԴԱՇՏ

Գտնվում է Սյունիքի Եղվարդ գյուղի մոտ

*Երբ Զավնդուրի Թորոս իշխանը Մելիք-Ֆրանգյուլի դավաճանությամբ սպանվում է Ֆաթալի խանի կողմից, նրա դիակի շուրջը մեծ կռիվ է տեղի ունենում։ Թորոսի զինվորները վիրավորում են Ֆաթալի խանին*

*և սպանում նրա եղբորը՝ Աղասի խանին։ Գիշերը երկու կողմն էլ սկսում են հավաքել իրենց վիրավորներին ու մեռածներին։ Ճակատամարտից հետո կռվի վայրը կոչում են Նարգիսների դաշտ (Նարգիզլու ղամի), որովհետև հայ քաջերի թափած արյան կաթիլներից այնտեղ սկսում են շուշաններ և նարգիսներ բուսնել։*

## 126. ՂԱՆԼԻ–ՂԱՄԻՆ

Գտնվում է Զանգեզուրում, Բաղաբերդի ճանդեպ

*Տեղական իշխանի գեղեցիկ աղջկան սիրում է հարևան իշխանը։ Մի անգամ սա վիրավորում է սիրածի հորը։ Այդ պատճառով իշխանը հրաժարվում է նրան կնության տալ իր աղջկան։ Աղջկա օգնությամբ տղան փախցնում է նրան։ Աներոջ և փեսայի միջև պատերազմ է ծագում։ Աղջիկը համոզում է հորը հաշտվել իր փեսացուի հետ։ Տեղի է ունենում նրանց տեսակցությունը։ Զայրանալով աներոջ համառությունից, երիտասարդ իշխանը գրգռված սպանում է նրան։ Այդ հողի վրա երկու կողմերի մեջ երկար ժամանակ կռիվ է տեղի ունենում, որի ընթացքում շատ մարդիկ են զոհվում և արյուն թափվում։ Դրանից հետո պատերազմի վայրը կոչվում է Ղանլի-ղամին (Արյան դաշտ)։*

## 127. ԳՅՈՒՆԱՇԻ ՀԱՆԴ

Գտնվում է Շամշադինի Նորաշեն գյուղի մոտ

*Այստեղ ապրել է Գյունաշ անունով մի հաղթանդամ ու քաջ կին։ Սա գոտեմարտել է շահի փահլևանի հետ և հաղթել նրան։ Լսելով այդ մասին շահը առատորեն պարգևատրել է Գյունաշին։ Այդ օրվանից հանդը, ուր գոտեմարտել է Գյունաշը, կոչվել է Գյունաշի հանդ։*

## 128. ԱՋՈ ԱՐՏ

*Եւ մշակն եկաւ մօտ վարդապետին, և ասաց, թէ՝ զոմէշն մեռաւ առ գութանին։ Սուրբ Գրիգոր Նարեկացին առեալ զվարդապետսն գնաց ի գութան՝ տեսանել թէ զինչ եղև։ Եւ տեսև զի զգոմէշն մորթեալ էին ի մէջ արտին։ Յայնժամ սուրբն Գրիգոր առեալ հող խաչակնքեաց ցիշելով զանունն աստուծոյ, և ցանեաց ի վերայ գոմշին։ Յայնժամ զենեալ գոմէշն*

*յարեաւ ի մէջ արտին։ Երկու գեղի մարդիկ եկին, որ զմիսն և զկաշին տանին։ Եւ տեսին զգոմէշն կենդանի, զի վարէր ի գութանին։ Ամենեքեան եկին աջ առին ի սուրբ վարդապետէն, և զարտի անուն Աջոյ արտ անուանեցին։*

## ՆՇԱՆԱՎՈՐ ՔԱՐԵՐ

### 129. ԱԳՌԱՎԱՔԱՐ

Գտնվում է Մասիսից դեպի հարավ

*Նոյ զագռաւն արձակեաց։ Եւ նա գնացեալ ոչ եկն վերստին ի տապանն, վասն զի ընդ հարաւ գնաց։ Եւ լեառն՝ ուր նստաւ և բոյն արար՝ կոչի մինչ ցարդ Ագռաւուց քար։*

### 130. ՕՁԻ ՔԱՐ

Գտնվում է Թալինի Մաստարա գյուղի մոտ

*Ժամանակին այստեղ մեծ կռիվ է եղել։ Տեղացիները գաղթելուց առաջ, հավաքել են յոթ գյուղերի ունեցվածքը, թաղել մի մեծ փոսի մեջ, վրան էլ մի ահագին քար գցել։ Քարի վրա օձ են քանդակել, որպեսզի սատանաները նրանից վախենան և գանձը չգողանան։*

### 131. ՍՈՒՐԲ ՍԱՐԳՍԻ ՔԱՐ

Գտնվում է Թալինի Մաստարա գյուղի ձորի մեջ

*Սուրբ Սարգսի ձին այստեղից անցնելիս, կոխել է այս քարը և պայտն ու պայտի մեխերը իրենց հետքն են թողել նրա վրա։*

### 132. ԼԱԳԼԱԳԻ ՔԱՐ

Գտնվում է Օշական գյուղում

*Սրա վրա ժամանակին արագիլի բույն է եղել, ուր ապրել է մայր արագիլն իր ձագերով։ Մոտակա տան բնակիչները սպանել են արագիլին և քանդել բույնը։ Դրա համար էլ այդ գերդաստանը համագյուղացիներից ստացել է «Լագլագ ուտողանք» մականունը։ Գյուղացիք խորշել են նրան-*

*ցից և չեն խոսել հետները։ Ասում են, թե այս քարի տակ է թաղված Մո-րիկ հայազգի կայսեր մայրը։*

### 133. ՀԱՐՍՆԱՔԱՐ

Գտնվում է Ապարանի շրջանում, Ամբարլի աղբյուրի մոտ

*Մի աղջիկ հրաժարվում է սիրածից և հարս է գնում ուրիշի տուն։ Երբ նորահարսը ջրի է գնում, աղբյուրի մոտ հանկարծ սափորն ուսին քար է դառնում։ Այդ քարը կոչվում է Հարսնաքար։*

### 134. ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՆԻ ՔԱՐ

Գտնվում է Հրազդանի շրջանի Ալափարս գյուղում

*Այս քարը տեղացիները գաղթի ժամանակ իրենց հետ բերել են Մա-կուից։ Ասում են, թե այս քարի վրա ժամանակին թափվել է Վարդան զո-րավարի արյունը։*

### 135. ՔԱՎՈՐԻ ԵՎ ՍԱՆԱՄՈՐ ՔԱՐԵՐ

Գտնվում է Հրազդանի շրջանի Ծաղկաձոր գյուղի մոտ

*Սանամերը զուլպաները հանե ոտ է վլանալիս ըլլում։ Քավորը էկեր ընցեր ա ախպրի մոտով։ Սանամերն ասում ա. Աստված, որ իմ աստված ըլես՝ իմ քավոր ըստե ոտերս բաց ընձի չտեսեր (չէր տեսնի), ընձի քար դարցրա ըստե։ Քավորն էն յանից (կողմից) իշկում ա (նայում է), որ սա-նամերը քար ա դարձե, ասում ա. Աստված, որ էդպես իմ սանամոր քար դարձրիր, ինձ էլ քար դարձրա, ես իմ սանամոր ոտները բաց չտենամ։ Աստծու կամքով քավորը ձեռքերը դոշին (կրծքին) խաչ արուկ քար ա դառնում։*

### 136. ՔԱՐԱՑԱԾ ՎԻՇԱՊԸ

Գտնվում է Արենի գյուղից ճարավ, Արփա գետի աջ ափին

*Քահանայի գեղեցիկ աղջիկը մի օր Արփա գետի ափի մոտ, սարա-լանջին բանջար է հավաքելիս լինում։ Հանկարծ գետից մի վիշապ է դուրս*

*գալիս և երախը բացած ուզում է կուլ տալ նրան։ Սարի գագաթին գտնվող քահանան տեսնելով այդ անիծում է, և վիշապը տեղն ու տեղը քար է դառնում։*

### 137. ՇԱՀԻ ՔԱՐ

Գտնվում է Կարենանի և Մեղրու միջև, Ալանգյազ լեռնաշղթայի դիմաց

*Շահ-Աբասը տեսնելով, թե ինչպես ապառաժ քարը ամուր կանգնած տեղում, իրեն դեմ է տվել զարնվող ալիքներին, որոնք փրփրալից ջարդվում, փշրվում են նրան դիպչելով, բացականչում է. Տղամարդը ահա այսպես պիտի կուրծքը դեմ տա թշնամուն։ Շահի ուղեկիցներից մեկը ասել է. Դա շատ հեշտ բան է, եթե մարդ այսպիսի թիկունք ունենա, և ձեռքով ցույց է տվել շրջապատող հուժկու զանգվածները։ Այդ օրվանից հիշված քարը կոչվել է Շահի քար։*

### 138. ՀԱՐՍԻ ՔԱՐ

Գտվնում է Ագուլիսից դեպի արևելք, Վաղանճնաձորում

*Հարսը լվանալիս է լինում գլուխը, երբ հանկարծ գալիս է կեսրայրը։ Ամոթից նա իսկույն քար է դառնում։*

### 139. ՀԱՐՍԻ ՈՒ ՓԵՍԻ ՔԱՐ

Գտնվում է Գողթնի Ցղնա գյուղի մոտ

*Տղա ու աղջիկ սիրահարվելով փախել են, որպեսզի ազատվեն ծնողների բռնությունից։ Ծնողները իմանալով նրանց փախուստի մասին՝ անիծել են։ Եվ նրանք անմիջապես քար են դարձել։*

### 140. ԿՈՒՋԻԿ ՄԱՄԻ ՔԱՐ

Գտնվում է Ջուղայի գերեզմանատան արևմտյան կողմում,
Ամենափրկիչ վանքի ճանապարհին

*Կուզիկ պառավը սոխ է գողանում Ամենափրկիչ վանքի մարգերից, որի համար և նա պատժվում է աստծուց՝ քար դառնալով։*

## 141. ՀՌՈՄ ՔԱՐ

Գտնվում է Քաջարանում

*Ասում են, թե հին հռոմները հրով ու սրով անցնելով Հայոց աշխարհի դաշտերն ու ձորերը, հասել են մինչև այս քարը և... մնացել են այդ քարի տակ։*

## 142. ՊՏՂԱԲԵՐ ՔԱՐԸ

Գտնվում է Քաջարանում, Խորխորի կապից վերև

*Սա՝ ցից, կապույտ, ոսկե երանգներով պլպլացող մի մեծ քար է ժայռեղեն պատվանդանի վրա։ Ասում են, թե սատծուց խռոված չբեր կանայք իրենց պորտերը քսել են այդ քարին՝ նրանից պտուղ հուսալով, դրա համար էլ կոչվում է Պտղաբեր քար։*

## 143. ՆՈՅԻ ՏԱՊԱՆԻՑ ԸՆԿԱԾ ՔԱՐԸ

Գտնվում է Քաջարան գյուղից փոքր-ինչ ձախ, Ձյունաճարս լեռան
քարե գոտերի մեջ

*Ասում են, թե այստեղ մի վճիտ աղբյուր կա՝ մեջը հազար ձեռք կպած մի մուգ, սև քար։ Այդ քարը ընկել է Նոյ նահապետի տապանից, երբ նրա նավն այս կողմերով անցնում էր դեպի Մասիս կատարը։*

## 144. ՁՅՈՒՆԻԿԻ ՔԱՐԵ ԱՐՁԱՆԸ

Գտնվում է Քաջարանում, Ձյունական գետի մեջ

*Ասում են, թե Ձյունիկ անունով մի աղջկա Քաջարանից հարս են տարել չուզած գյուղը, չուզած մարդու համար։ Կես ճամփին Ձյունիկն իրեն նետել է Ձյունական գետի փրփուրների մեջ և... հրաշքով դարձել է քարե արձան։*

## 145. ԱԳՌԱՎԱՔԱՐ

Գտնվում է Գորիսի հյուսիս-արևելյան կողմում, Շոր-ձորում

*Պառավը ունեցել է մի ագռավ, որի հետ հարյուր տարի սիրով ապրել է։ Մի օր ագռավը անգիտությամբ սպանել է պառավի հավի ճուտերից*

*մեկին։ Պառավն անիծել է նրան և ասել. «Քար դառնաս, այ ագռավ»։ Ագռավն իսկույն քար է դարձել և մնացել է ժայռի վրա։*

## 146. ԽՉԱՆ ՈՒԽՏԱՏԵՂԻ

Գտնվում է Տաթևի վանքի ճանապարհին, լեռնաշղթայի վրա

*Այս քարաբլուրը կազմված է անտաշ քարերի կիտվածքից, որը օր-օրի մեծանում է, որովհետև ամեն անցորդ ճանապարհից մի քար է վերցնում և նետում նրա վրա։ Ասում են, թե քարակույտի տակ թաղված է մի եզ, որը առանց մարդու օգնության շրջակայքից մեջքով կրել է Տաթևի վանքի համար անհրաժեշտ շինանյութերը։*

## 147. ՀԱՐՍՆԱՔԱՐ

Գտնվում է Տաթևի ձորում, Սատանի կամուրջի մոտ

*Շահ-Աբասը գալիս է Տաթև։ Նա մարդ է ուղարկում, որ գնան Մեծ անապատից մի կույս բերեն։ Ճանապարհին շահի համար ընտրված կույսը իրեն նետում է ձորը և տեղն ու տեղը քար է դառնում։ Ասում են, թե ամեն տարի նույն օրը ձորից մի ծվոց է լսվում։*

## 148. ԾԱԿ ՔԱՐ

Գտնվում է Գորիսի շրջանում, Որոտան գետի ափին

*Մի չար վարդապետ ուզում է տիրանալ գեղեցիկ Շուշանին։ Սա փախչում է դեպի ժայռերը։ Երբ քիչ է մնում որ վարդապետը հասնի Շուշանին, վերջինս օգնության է կանչում աստծուն։ Ժայռը իսկույն ծակվում է, և աղջիկը մտնում է նրա մեջը։ Իսկ վարդապետն էլ աստծու հրամանով թագի է դառնում ու ընկնում չոլերը։*

## 149. ԱՆԻԾՎԱԾ ՔԱՐԸ

*Որոտանի ձորահովիտներից մեկում, ճամփեզրի մոտ, կան ցցված և թեքված վիթխարի ժայռեր, որոնցից մեկը հիշեցնում է արձանացած մի մարդ, մյուսը՝ կալ անելիս քարացած եզներ. իսկ կենտրոնի ավազահատիկ բարձրությունը՝ կալսած հացահատիկի մի կույտ։*

ժողովուրդը «Անիծած քար» է կոչում ձորահովտի այս կանաչագուրկ, գորշ մասը։ Այստեղով անցնելիս, մարդիկ, հնավանդ սովորության համաձայն, կանգ են առնում մի պահ, ատելությամբ նայում ժայռերին և անեծքի խոսքեր շպրտելով քարացած մարդուն՝ շարունակում են ճանապարհը։

Ասում են, թե քարացած այդ մարդը մի ագահ հարուստ է եղել, որը իմանալով, որ իր կալվոր-ծառան մի բուռ ցորեն է տվել կալատեղով անցնող աղքատ մարդուն, վռնդել է նրան աշխատանքից։ Յոթ երեխի տեր կալվորի պառավ մայրը անիծել է ագահ հարուստին և նրա անեծքով քար են դարձել թե՛ ագահ հարուստը, թե՛ եզները և թե՛ հացահատիկը։

## 150. ՀԱՅՐԻԿԻ ՔԱՐ

Գտնվում է Տաթևից Հալիձոր տանող ճանապարհին

Տաթևից Հալիձոր գնալիս Խրիմյան Հայրիկը նստել է այստեղ՝ հանգստանալու համար։ Ի հիշատակ Հայրիկի, գանգեզուրցիք այդ տեղում մի մեծ քար են կանգնեցրել, որը և կոչվում է Հայրիկի քար։

## 151. ՅՈԹ ՔՈՒՅՐԵՐԻ ՔԱՐ

Գտնվում է Սիսիանում

Սիսիանում կա մի վիթխարի ժայռ, որի ճեղքից հաճախ երևում են խմբով մողեսներ։ Ասում են, թե առևանգիչներից հալածված յոթ քույրեր խնդրում են աստծուն, որ իրենց ազատի։ Աստված նրանց մողես է դարձնում, և մտնելով ժայռի ճեղքից ներս, փրկվում են։ Դրանից հետո այդ ժայռի անունը մնում է Յոթ քույրերի քար։

## 152. ՍՍԱՔԱՐ

Գտնվում է Սիսիանի Շնաթաղ գյուղից դեպի ճարավ

Ասում են, թե այս քարը կաթ տալու հատկություն ունի։ Սակավակաթ կանայք ուխտ են գալիս նրան, մոմ վառում և նրանից կաթացող ջրից քսում ստինքներին, որ իրենց կաթն ավելանա։

## 153. ՕՒՏՆ ԱՂՋԿԱ ՔԱՐ

Գտնվում է Սիսիանի Ղարաքիլիսա գյուղում

*Յոթ աղջիկներ չուզենալով ընկնել թուրքերի ձեռքը, խնդրել են աստծուց և մոխս դարձել: Ժայռն էլ ճեղքվել է և նրանց իր մեջ առել:*

## 154. ՔԱՐԱՑԱԾ ՀՈՎԻՎՆ ՈՒ ՈՉԽԱՐՆԵՐԸ

Գտնվում են Վարանդայի Լուսավորչի Ըերծ կոչված վայրում

### Ա

*Գրիգոր անունով ճգնավորը խույս տալով ավազակներից, թաքնվում է այստեղ: Մի հովիվ հայտնում է ավազակներին նրա տեղը: Նախքան նահատակվելը ճգնավորը անիծում է հովվին, և նա կնոջ ու ոչխարների հետ խսկույն քար է դառնում:*

### Բ

Գտնվում են Վարանդայի Խազազի լեռան վրա

*Հովիվների ողորմածությունը փորձելու համար աստված ուղարկում է նրանց մոտ աղքատի շորեր հագած հրեշտակին: Հովիվները ոչ մի բան չեն տալիս աղքատին և քարկոծում են նրան: Աստված անիծելով քար է դարձնում հովիվներին իրենց ոչխարների ու շան հետ միասին:*

## 155. ՑԻՑ ՔԱՐ

Գտնվում է Վարանդայի Քիրս լեռան մոտ

### Ա

*Ժամանակին մի հարս երեխան գրկած անցնելիս է եղել այս տեղով: Հանկարծ հարձակվում են ավազակները: Չկամենալով ընկնել նրանց ձեռքը, հարսը խնդրում է Քիրս լեռից և անմիջապես քար է դառնում:*

Բ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանի
Աշան և Ղզղալա գյուղերի մեջ ընկած ձորում

*Պերսը (պարսիկները) վեր կյամ ա (գալիս է), փրխեփախը ընգյնում ա։ Մին կնեգյ խոխան (երեխա) ծերքին յուղածու ընելիս ա ինում (լինում)։ Հենց տի (այդպես) կթավերը (տապակ) ծերքին, խոխան խատին (գրկին) փախչում ա։ Վեր հասնում ա ըստե (այդտեղ) ետ ա եշում (նայում), տեսնում վեր քմական (ետևից) կյամ ըն (գալիս են)։ Ասսուն ըղաչանք ա անում, վեր ինքը քար տեռնա, թշնամուն ծերքը չինգնի։ Հենց ըստե (այդտեղ) էլ քար ա կտրում, մնում։*

## 156. ՔԱՐԱՑԱԾ ՀԱՐՍԸ ԵՎ ՀԱՐՍՆԵՎՈՐՆԵՐԸ

Ա

Գտնվում է Վարանդայի Քիրս լեռան վրա

*Ժամանակին այս տեղով հարս են տարել։ Հանկարծ պատռվել է հարսի զգեստը և նա առանձնացել է կարելու։ Մի աղքատ պառավ մոտեցել է հարսին և ողորմություն է խնդրել։ Հարսը բարկացել է, որ նեղ ժամանակ ողորմություն են ուզում իրենից։ Պառավը անիծել է նրան և հարսն ու հարսնեվորները քար են դարձել։*

Բ

Գտնվում է Վարանդայի Քափաս լեռան ստորոտում

*Հարսնևորները հարս ու փեսայի հետ անցնում էին Քափաս լեռով, երբ արևն սկսեց մայր մտնել։ Փեսան խնդրեց արևին մի քիչ սպասել, մինչև իրենք կանցնեն վտանգավոր տեղից։ Արևը կատարեց նրա խնդիրքը, բայց երբ վերադարձավ մոր մոտ, սա սաստիկ բարկացավ նրա վրա ուշանալու համար։ Արևը հայտնեց պատճառը, բայց մայրը ավելի ևս բարկացավ ու անիծեց հարսնևորներին, որ նրանք քար դառնան։ Հարսնեվորները իսկույն քար դարձան և մինչ այսօր էլ կանգնած են Քափաս լեռան ստորոտում։*

Գ

*Մի հարսնացու ցանկանալով անպայման ավարտել իր փեսացուի գուլպան, խնդրել է արեգակից մի քիչ ուշ մայր մտնել։ Բարի արեգակը կատարել է հարսնացուի խնդիրքը։ Սակայն, արեգակի չար մայրը իմանալով արևի ուշանալու պատճառը՝ անիծել է հարսնացուին, որ նա քար դառնա։ Եվ խեղճ հարսնացուն իսկույն քար է դարձել։*

### 157. ԾԾԱՔԱՐ

Գտնվում է Վարանդայի Խերխան գյուղի մոտ

*Մայրը երեխային կուրծք տալիս՝ խնդրել է Քիրս լեռից, որպեսզի իրեն քար դարձնի՝ սկեսրոջ ձեռից ազատվելու համար։ Քիրսը կատարել է նրա խնդիրքը, և կինն իսկույն քար է դարձել։*

### 158. ԿՈՒԶ ՔԱՐ

Գտնվում է Գանձակի գավառի Գետաշեն գյուղից
ոչ հեռու, անտառի մեջ

*Ասում են, թե մի վիշապ ժամանակին Քափազ լեռան վրայից վերցնում է մի հսկայական ապառաժ քար և շալակին դրած բերում է, որ գցի Գետաշեն գյուղի վրա և ավերի այն։ Աստված տեսնելով այդ, բարկանում է վիշապի վրա, անիծում նրան և տեղն ու տեղը ապառաժը շալակին քար է դարձնում։ Մինչև հիմա էլ կա այդ քարը, որը հեռվից սապատավոր (կուզ) մարդու է նմանվում և դրա համար կոչվում է Կուզ քար։*

### 159. ՔԱՐԵՋԱՆԻ ՔՌԱ

Գտնվում է Սևանի շրջանի Դդմաշեն գյուղի դաշտում

*Քարեջան անունով մի քարհատ է եղել, աղքատ, բայց քարի պես ամուր ու աշխատավոր մարդ։ Դրա համար էլ նրան տվել են Քարեջան անունը։ Երկար ժամանակ զբաղվելով քարհատությամբ, Քարեջանը քար է մատակարարել գյուղի քարտաշներին ու տներ կառուցողներին։ Այն տեղը, որտեղից ժամանակին քարեր է կտրել Քարեջանը, կոչվում է Քարեջանի քռա (բնական քարակույտ, կապան)։*

## 160. ԱՅՎԱԶԻ ՔՌԱ

Գտնվում է Սևանի շրջանի Դդմաշեն գյուղի հյուսիսային կողմում

*Այվազ անունով մի մարդ մանգաղը վերցրած գալիս է այստեղից խոտ քաղելու։ Հենց որ մոտենում է քռային, քարերի տակ բուրդ է տեսնում։ Կարծում է, թե հովիվները խուզել են ոչխարը և աղայից թաքցրել, որ մութն ընկնի գան, տանեն։ Բուրդը գրկում է թե չէ, տեսնում է ի՜նչ բուրդ, արջ։ Իրար են հասնում։ Այվազին հաջողվում է ետևի կողմից բռնել և սեղմել արջի ամորձիքները։ Արջը թուլանում է և ուժեղ գոռում։ Մոտիկ տեղից օգնության են հասնում։ Սակայն մինչև մարդկանց գալը Այվազը վերջացնում է արջի հաշիվը և շալակով բերում գյուղ։ Քարքարոտ այդ տեղը դրանից հետո կոչվում է Այվազի քռա։*

## 161. ՎԻՇԱՊԻ ՔԱՐԵՐԸ

Գտնվում են Գեղամա լեռների ստորոտում, Կալադիպի բերդի մոտ

*Էստեղ չորսը խատ (հատ) վիշապի քար կա (խոսքը վիշապ կոչված քարակոթողների մասին է), գնչլներ (շղթաներ) վրեն քցուկ (գցած)։ Ոնց որ օցը գա պառկի։ Մեծերն ասում ին վիշապ էրկնքից իչե, որ ժողովուրթը վերջացնե, ըդրա խամար (դրա համար) աստվածությունը ըդրանց (դրանց) դարցրեր ա քար։*

## 162. ՔԱՐԱՑԱԾ ՔԱԿՈՐ ԿԱՄ ԱԺԱՐԻ ԴԵԶ

Գտնվում է Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի ձորում

*Սա մի ժամանակ քակորի ամբոց է եղել, որ պատկանել է մի շատ հարուստ մարդու։ Աղքատը եկել է այդտեղից մի երկու կտոր քակոր տանելու։ Ագահ հարուստը չի թողել։ Աղքատն անիծել է և ամբողջ քակորը քար է դարձել։*

## 163. ՊԱՌԱՎԱՔԱՐ

Գտնվում է Շամշադինի շրջանում

*Ասում են, թե մի պառավ է լինում, չոր գլուխ մի պառավ։ Հոգնում է աշխարհից էլ, կյանքից էլ։ Որոշում է քարից իրեն գցել ձորը, մեռնել,*

*պրծնել։ Գնում է բարձրանում մի քարի, աչքերը փակում, ընկնում ցած։ Հագին լայն շորեր են լինում։ Քամուց փեշերը բացվում են, պառավը կամա՛ց իջնում է ցած։ Աչքերը բացում է, տեսնում ողջ, առողջ։*

*— Ա՜խ, աստված,— ասում է,— աչք չունե՞ս, թե՞ ականջ։ Ով կյանք է ուզում՝ մահ ես տալիս, ով մահ է ուզում՝ մահ չես տալիս։*

*Եվ գյուղի անունը մնացել է Պառավաքար։*

## 164. ՔԱՐ ԴԱՐՁԱԾ ՀՈՎԻՎՆ ՈՒ ՈՉԽԱՐՆԵՐԸ

Գտնվում են Շամշադինի շրջանում, Մուրղուզ լեռան կատարին

*Հովիվն այս լեռան վրա ոչխարներ արածացնելիս ծարավում է։ Տեսնելով, որ շրջապատում ջուր չկա, դիմելով Մուրղուզի խաչին, նա ասում է. «Ա՛յ Մուրղուզի խաչ, եթե դու զորությո՛ւն ունես, մի ջուր բաց արա, քեզ համար սև ու սպիտակ ղոչեր մատաղ կանեմ»։ Իսկույն մի հորդ աղբյուր է բացվում։ Հովիվն ու ոչխարները խմելով ջրից հագեցնում են իրենց ծարավը։ Շատ չանցած հովիվը շորերից երկու ոջիլ է հանում, կոտրում և ասում. Ա՛յ խաչ, էս էլ քո մատաղը։ Նույն վայրկյանին հովիվը ոչխարների հետ քար է դառնում։*

## 165. ԱԴՋԿԱ ՔԱՐ

Գտնվում է Շամշադինի Չինար գյուղում

*Վեր (որ) Աշոտ Երկաթը թշնամու հետ կռիվ անիլիս նեղն ա ընգնմ, սաղ (ամբողջ) ժողովուրթի հետ հվաքվըմ ա պերթը։ Մի ախչիկ տենըմ ա, վեր տեղերնուն շատ նեղ ա, ինքն էլ մեծ հուսեր ա ունենըմ, էն քարը տնըմ ա հուսերի ղաթըմը (մեջը), պտըտըմ ու պերթի կլխիցը քցըմ տհանց վրա։ Թշնամիները, վեր տակիցը տենըմ են, փախչըմ են. ասըմ են՝ էս վեր սրանց ախչիկը իրան հուսովը էսքան մեծ քար քցեց, բա տղամարթը իրան բլակներովը (բազուկ) ինչքան մեծ քար կը քցի, բըրախըմ են (թողնում), փախչըմ։ Հա սրա հմար (համար) էլ էն օրից ըսօր էտ քարի անըմը մնացել ա Ըխչկա քար։*

## 166. ՀԱՐՍՆԱՔԱՐ

Գտնվում է Իջևանի շրջանի Աչաջուր գյուղից դեպի արևմուտք
ընկած տարածության վրա

*Պատմում են, որ մի քանի օր առաջ ամուսնացած նորահարսն ամուսնուն ուղարկում է գյուղի վրա հարձակված թշնամիների դեմ և ինքը մի բարձր լեռան գագաթից դիտում է դաշտավայրում տեղի ունեցող կատաղի կռիվը։ Ժամանակ անց հեռվից տեսնելով ամուսնու սպանվելը, հարսն իրեն լեռան գագաթից ցած է նետում և մեռնում։ Այդ օրվանից էլ լեռը կոչվում է Հարսնաքար։*

## 167. ՀԱՐՍ ՈՒ ԿԵՍՈՒՐ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղից դեպի արևելք

*Պատմում են, որ մի հարս ու կեսուր են լինում։ Չեն ուզում չխոսկան մնալ։ Թաքուն խոսում են իրար հետ։ Մի օր էլ կեսարը գնում է գործի։ Տանից մի քիչ հեռանում է թե չէ, հիշում է, որ բան է մոռացել։ Չեն է տալիս, ձեն, ոչ հարսն է լսում, ոչ կինը։ Ետ է դառնում, գալիս տուն։ Դուռը բացում է, տեսնում հարս ու կեսուր դեմ դիմաց նստած, կտուց-կտցի խոսում են, ո՞նց են խոսում։—Այ լալ. կարեք հա՞,—գոռում է կեսարը,—քա՞ր դառնաք, քա՛ր։ Խոսքը դեռ բերանում, հարսը հաղիվ ոտքի կանգնած, կեսուրը նստած, երկուսն էլ քար են դառնում։ Էվ քարի անունն էլ մնացել է Հարս ու կեսուր։*

## 168. ՔԱՐԱՑԱԾ ՎԻՇԱՊՆԵՐ

Գտնվում է Լոռու Արդվի գյուղի մոտ

### Ա

*Եւ եղև օր մի՝ զի յաղօթս էր սուրբն Յովհան (Օձնեցի). երկու վիշապք ահագինք յարձակեցան ի տեղին, ուր կայանքն առաքինւոյն. և տեսեալ պաշտօնէին նորա՝ զարհուրեցաւ, աղաղակեաց առ սուրբն օգնել։ Եւ նա կնքեաց ընդդէմ նոցա, և առ ժամայն քարացան, և են մինչև ցայսօր, և ջուր բղխեաց և պորտոյ վիշապին, և բժշկութիւն է ամենայն Օձահարի։*

Բ

*Մի անգամ, երբ Օհան Օձնեցին պատարագ էր անում վանքում, դրսից ֆշշոց է լսում։ Նա իր յոթ սարկավագներից մեկին ուղարկում է, որ իմանա թե ինչ ձայն է։ Սարկավագը գնում է և չի վերադառնում։ Օձնեցին երկրորդ, ապա երրորդ, չորրորդ, վերջապես յոթներորդ սարկավագին է ուղարկում։ Երբ ոչ մեկը չի վերադառնում, նա առանց զգեստը փոխելու դուրս է գալիս վանքից. տեսնում է երկու ահագին օձ և մի կին՝ գութանին հաց տանելիս։ Կռահելով, որ այդ օձերն են կլանել իր սարկավագներին, և բարկանալով, որ գութանին հաց տանող պառավը իրեն իմաց չի տվել դրա մասին, Օձնեցին ասում է. «Վիժեցեք սարկավագներիս և բոլորդ էլ քար դարձեք»։ Իսկույն օձերը վիժում են յոթ սարկավագներին, սակայն մեռած, և իրենք էլ քար են դառնում։ Քար է դառնում նաև գութանին հաց տանող պառավ կինը։*

169. ՄՈՆԴԱՔԱՐ

Գտնվում է Հաղբատի մոտ, Հաճարկուտի ճանապարհին

*Մեծ բռնակալն Լանկ-Թամուր հիմն ի վեր կործանեալ զկոլով աշխարհս եմուտ ի Հայաստան և յոլով նախճիրս արեան գործեալ՝ քանդեաց, կործանեաց զբազում քաղաքս և զգիւղս, եհաս ցսահմանս Հաղբատայ... Բնակիչք Հաղբատայ և կուսակրոն միաբանք վանիցն՝ ի ձեռս առեալ սուրբ Նշանն, ելին ընդ առաջ բռնակալին առ ի համոզել զմիտս նորա և խնդրել զգթութիւն։ Լանկ-Թամուր տեսեալ զհանդէս միաբանական թափորի՝ զարհուրեալ դողացաւ յաներևոյթն հրաշից աստուածընկալ Փայտին կենաց, և աճապարեալ դարձաւ յետս զօրօք հանդերձ ի փախուստ։*

*Իսկ մի ոմն ի դպրաց Մոնդ անուն՝ տեսեալ զփախուստ նոցա, պնդեցաւ զհետ փախստէիցն՝ քանի մի զինավառեալ արամբ, ...և վանեալ հալածեաց զնոսա մինչ զկէս ճանապարհն Հաճարկուտի, ուրանոր յետս հայեցեալ թշնամեաց՝ տեսին քանի մի արս, որք հալածէին զնոսա, ուստի յարձակեալ ի վերայ նոցա, նահատակեցին զնոսա. և ապա կալեալ զՄոնդըն ի մէջ ճանապարհին հարին զգետնի. և վէմ մի մեծ եդեալ ի վերա նորա, ճխլեալ, ճմլեալ ջարդեցին զնա... Յօրէ աստի մնացեալ է կոչումն տեղւոյս Մոնդաքար։*

## 170. ԽՈԼՆԻ ՔԱՐ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի հանդում

*Մաղաթուլի կռվի ժամանակ է լինում։ Մի գյուղացի բինայից քշում է գյուղ։ Ճամփին ձիավոր ռուս զինվորներ են հասնում։ Բարև են տալիս, բարև առնում։ Ուզում են իմանալ հո բան չի պատահել։*

*— Էտը,— ասում են,— շտո՞ տակոյ ա։*

*Գյուղացին էլ թե.*

*— Եզներն իմն են,— ասում է,— սելը՝ Ակոյինն ա։*

*— Սելո սպակոյնա, սպակոյնա,— ասում են ռուսները և գնում գյուղացու հետ։ Հասնում են մի աղբյուրի։ Գյուղացին մի գառ է բռնում, որ մորթի։*

*— Բառաշկա՞, բառաշկա՞,— ասում են զինվորները։*

*Գյուղացին ծիծաղում է։*

*— Բա արաղ չկա՞,— ասում է, կա՛, կա՛։*

*Տիկը մեջտեղ է դնում, խորովածն անում։ Ուտում են, խմում։ Մեկ էլ մի զինվոր նայում է սար ու դաշտի։*

*— Լեսա,— ասում է,— խոլմի՞, խոլմի՞...*

*Գյուղացին էլ թե.*

*— Բա է՞ն,— ու ցույց է տալիս մի բլրի ցից քարը,— էն էլ մեր ղոլի (կողմի) քարն ա, էն էլ մեր ղոլն ա, թուրքինը չի։*

*Ու բաժանվում են ծիծաղելով։*

*Եվ դրանից հետո գյուղացու ավելի անունը մնում է խոլի, քարինը՝ խոլնի քար։*

## 171. ՀԱՐՍՆԱՔԱՐ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանում

*Հին ժամանակ Լեզգենին էկել են էստեղից էրեխա փախցրել։ Մի անգամ էլ սարումը քաշ Մամին են բռնել, հետն էլ մի կարմիր չուչուկով (շոր) էրեխա։ Հարսը գնացել ա, որ ազատի նրանց։ Լեզգիները բռնել են էդ հարսին սպանել։ Դրա համար էլ էդ սարի անունը կպել ա Հարսնաքար։*

## 172. ՋՈՒՀԱՐ ԽԱՉ

**Գտնվում է Խրամ և Ճավճավ գետերի արանքում,
Շամշուլդայի բերդի եկեղեցու մեջ**

*Այս քարը բուսել է ինքն իրեն, և սկսել է օրեցօր երկարել։ Մեկին երևացել է երազում և ասել. Եթե ինձ վրա եկեղեցի չշինեք, այնքան կբարձրանամ, որ գլուխս երկինք կհասնի։ Երազատեսը պատմել է ժողովրդին, և ժողովուրդն էլ վախենալով, թե մի գուցե իսկապես շատ բարձրանա և ժամանակին ընկնի իրենց գլխին, շտապել են շինել եկեղեցին, և քարը դադարել է աճել։*

## 173. ՔԱՎՈՐ—ՍԱՆԱՄԵՐ

**Գտնվում է Աղինի շրջանի Սառնաղբյուր (Սոկոլի) գյուղի մոտ,
Ջոջ ձոր կոչված վայրում**

*Խին վախտ Սոկըթլու գեղի մեջ կապրին մեկ խատ քավոր, մեկ խատ սանամեր։ Ավուր մեկին քավորն ու սանամեր կեթան Ջոջ ձոր։ Քավոր սանամոր խետ սիրող կենա (սիրաբանում է)։ Աստված կբարկանա ընտոնց վրեն ու էրկուսին էլ իրար գրկած վախտն քար կդարձու։ Ջուրի մըկա էլ (մինչև հիմա էլ) էտ քարն կա, անուն՝ Քավոր-սանամեր։*

## 174. ԿԱԹ ՔԱՐ

**Գտնվում է Ջավախքի Մուրճախեթ գյուղի գերեզմանոցում**

*Վախթովմ (ժամանակին) Մուրճախեթու դյուզը (դաշտ) Լազերը ընկնին կը հարսիմ էտևեն՝ օր բռնեն։ Աս հարսը կաշե օր (նայում է) չարա (ճար) չկա ատոնց ձեռքեն խլըսելու (փրկվելու), խնդրե կը աստծմեն, օր իրեն քար դարձնե ու ազատե ատ անօրեններու ձեռքեն։ Աստված լըսե կը ատոր խնդիրքը ու քար դարձնե կը։ Ասիկ օր կես քար դառնա կը, աղաչե կը աստծուն, օր իրեն զորություն տա՝ օր վեվ օր կաթ չունենա, գա իրմեն խընդրե, ինքը տա։ Աստված կատարե կը ատոր խնդիրքը։ Տեյմ՝ օր հիմի (մինչ այժմ) ա. կաթ չունեցողները կերթան կը ատ սուրբին ոտքը ուխտ։*

### 175. ՀԱՐՍ ՈՒ ՓԵՍԻ ՔԱՐ

Գտնվում է Ալաշկերտի շրջանում, Կոավի ձոր կոչված վայրում

*Երբ հարսն ու փեսան եկեղեցում պսակվելիս են լինում, թշնամիները հանկարծ պաշարում են գյուղը։ Նրանք փախուստի են դիմում։ Թշնամու ձիավորները հետապնդում են փախչող զույգին։ Հենց հասնելու վրա են լինում, հարսն ու փեսան խնդրում են աստծուց, որ իրենց քար դարձնի։ Աստված կատարում է նրանց խնդիրքը։*

### 176. ՍՈՒՐԲ ՍԱՐԳՍԻ ՔԱՐ

Գտնվում է Կարինի Մուտուրկան գյուղից ոչ հեռու

*Սուրբ Սարգսի ձին անցնելիս, կոխել է այս քարը և ոտքի ու պայտի հետքը թողել է նրա վրա։*

### 177. ՔԱՐ ԴԱՐՁԱԾ ՀԱՐՈՒՍՏԸ

Գտնվում է Խնուսի Պրզըրխանե գյուղում

*Մի հարուստ մարդ տանելիս է եղել ոչխարների կեսօրվա խոտը։ Գալիս է մի աղքատ և խնդրում նրանից իր կովի համար մի քիչ խոտ։ Հարուստն ասում է. Չկա։ Աղքատն ասում է. Խնդրում եմ աստծուց, որ դու և քո դեզը քար դառնաք։ Անմիջապես կատարվում է նրա խնդիրքը և հարուստն իր դեզի հետ քար են դառնում։*

### 178. ԱՆԳՈՒԹ ԵՂԲՈՐ ՔԱՐԸ

Գտնվում է Խնուսի Յաճյա գյուղի հյուսիս-արևելյան կողմում, մի մեծ բլրի վրա

*Երկու եղբայր են լինում, որոնցից մեկը առատ խոտ է ունենում անասուններին կերակրելու համար, մյուսը՝ ոչ։ Սա մի օր խոտ է ուզում եղբորից և մերժվում է։ Աստված անմիջապես քար է դարձնում անգութ եղբորը։*

## 179. ՔԱՐ ԴԱՐՁԱԾ ՈՒՂՏԱՊԱՆԸ

Գտնվում է Սեբաստիայի (Սվազ) Իշխանի կոչված ուխտավայրի մոտ

*Այստեղով անցնելիս ուղտապանը ջուր է խնդրել տեղի սրբից, խոստանալով փոխարենը մի ուղտ մատաղ անել։ Ջուրը բխել է, սակայն ուղտապանը խոստացած ուղտի տեղ ոչխար է մատաղել։ Ինքն էլ, ուղտերն էլ անմիջապես քար են դարձել։*

## 180. ԽՂԼԱՐ

Գտնվում է Արաբկիրից մեկ ժամ հեռավորության վրա

*Հարսը երեկայան արտից տուն է դառնալիս լինում։ Ճանապարհին մեկը փորձում է բռնաբարել նրան։ Անպատվությունից ազատվելու համար, հարսը խնդրում է աստծուն ճեղքել մոտակա ապառաժ քարը և իրեն մեջն առնել։ Իսկույն կատարվում է նրա խնդիրքը։ Հարսն անմիջապես ապառաժ է դառնում՝ դուրս ցցված քարացած ստինքներով։ Նույն վայրկյանին ապառաժի կողքից սկսում է բխել մի սառն ու անապական աղբյուր։ Այդ քարացած հարսին խղլար են ասում։*

## 181. ՍՈՒՐԲ ԹՌՉՈՒՆ

Գտնվում է Թոզատի Գրիգորիս գյուղի մոտ

*Գրիգոր Սքանչելագործը վերցրել է մի ահագին վեմ, որը տեղից չէին կարող շարժել հարյուր հոգի, և լեռան կատարից նետել Իրիս գետի մյուս ափը։ Այդ վեմ քարն է ահա, որ ժողովրդից ստացել է Սուրբ Թռչուն անունը։*

## 182. ՄԱՏՈՒԽԱ ՔԱՐԵՐ

Գտնվում է Վանի հյուսիս-արևմտյան կողմում

*Այս հսկա քարերը մայրը տվել է աղջկան, որ աղջիկը դրանցով շարի ամրոցի պատերը։ Երբ քարն ուշացրել է, աղջիկն ասել է. Մա, տուր (մայրիկ, տուր), որը բերանից բերան դարձել է Մատուխ։*

## 183. ՀԱՐՍ ՈՒ ՓԵՍԻ ՔԱՐ

Գտնվում է Վանի Ագրփու-fար կոչված ժայռի մոտ

*Երիտասարդն ու աղջիկը, առանց ծնողների կամքի, գնացել են պսակվելու: Հակառակ ընդունված սովորության, նրանք եկեղեցուց դուրս են եկել արևածագից առաջ, որի համար և աստված պատժել ու քար է դարձրել նրանց:*

## 184. ՋՈՐԱՔԱՐ

Գտնվում է Վերին Վարագում

*Վարագա վանքի համար ոսկի դուռ բերելիս, ջորու ոտքը հանկարծ խրվում է մի քարի մեջ: Այս քարի անունը դրանից հետո մնում է Ջորաքար:*

## 185. ԹԱԴԵՈՍ ԱՌԱՔՅԱԼԻ ՔԱՐ

Գտնվում է Թիմարի Առեր գյուղից դեպի ճարավ

*Թադեոս առաքյալը անցնելիս մի մեծ բևեռ է մեխել այս քարի վրա, որպեսզի, ըստ իր սովորության, դրանով հայտնի դարձնի իր անցած ճանապարհը: Դրա համար էլ քարը ստացել է նրա անունը:*

## 186. ՔԱՐ ԴԱՐՁԱԾ ՀՈՎԻՎՆ ՈՒ ՈՉԽԱՐՆԵՐԸ

Գտնվում են Առնոս լեռան վրա

### Ա.

*Ծարաված հովիվը Առնոս լեռան սրբից խնդրում է մի աղբյուր բխեցնել, խոստանալով դրա փոխարեն մի անծին գառ մատաղ անել: Հովվի խնդիրքն անմիջապես կատարվում է: Հագենալուց հետո, հովիվը հանելով ծոցից մի ոչխ՝ կտրում է: Բարկացած սուրբն անմիջապես քար է դարձնում նրան: Հովվի քույրը ժայռի գագաթից ցած է նետվում, խնդրելով սրբից ընդունել իրեն՝ եղբոր խոստացած մատաղի փոխարեն և ազատել նրան, սակայն ինքն էլ ընկած տեղում անմիջապես քար է դառնում:*

Բ

Գտնվում են Վասպուրականի Սոխան և Ծափանց գյուղերի միջև

*Գայլն ընկնելով ոչխարների մեջ՝ սկսել է հոշոտել նրանց։ Հովիվը աղաչել է Առնոս լեռան Աստվածածին վանքին՝ հեռացնել գայլին, խոստանալով մի ոչխար մատաղ անել։ Երբ գայլը հեռանում է, հովիվը հանելով իր ծոցից մի ոջիլ, ասում է. Սա էլ քո մատաղը։ Աստվածածնի անեծքով հովիվն իր ոչխարների ու գառների հետ անմիջապես քար է դառնում։*

Գ

Գտնվում են Հայոց ձորում, Պաճանց գյուղից Բութ գյուղը տանող ճանապարհին, Պաշեքա լեռների մոտ

*Ճգնավորն այստեղ հանդիպում է մի հովվի ոչխար արածացնելիս։ Շատ քաղցած լինելով, նա մի քիչ կաթ է խնդրում նրանից։ Հովիվը մերժում է. ճգնավորը անիծում է նրան, ասելով. Չիք լինես և ոչխարներիդ հետ քար դառնաս։ Տեղն ու տեղը բոլորը քար են դառնում։*

## 187. ՐԱՖՖՈՒ ՔԱՐԸ

Գտնվում է Աղթամարի կղզում

*Ասում են, թե երբ Րաֆֆին եղել է Աղթամարի կղզում, մեն-մենակ և տխուր-տրտում նստել է մի բարձր քարի վրա և հյուսել է «Ձայն տուր, ո՜վ ծովակ» իր հայտնի բանաստեղծությունը։ Կղզու վարդապետները ուզեցել են բռնել և ծովը նետել նրան՝ փոտ (բողոքական) քարոզչի տեղ դնելով։ Բայց Րաֆֆին իմանալով այդ՝ թողել ու փախել է։ Այն քարը, որի վրա նստած նա գրել է իր «Ձայն տուր, ո՜վ ծովակը», դրանից հետո կոչվել է Րաֆֆու քար։*

## 188. ԾԱՄՔԱՐ

Գտնվում է Վասպուրականի Արտամետ գյուղի մոտ

Ա

*Թագուհին Շամիրամ, որ մի ի հզօր և ի մեծագործ ինքնակալացն էր, շրջագայեալ, ասեն, երբեմն զբօսանաց աղագաւ յերկրին Վասպուրականի՝ տեսանէ ուրեք մանկունս խմբեալ ի մի. և մերձ եղեալ առ նոսա տեսանէ*

զի գտեալ նոցա ուլումս ի գետնի՝ ի զնին կան նոցին. խսկոյկ ծանուցեալ զպատուականութիւն նոցա՝ առնու ի ձեռաց մանկանցն և պարգևս տուեալ արձակէ զնոսա։ Ուլամբքն այնոքիւք սկսանի Շամիրամ մոգել և կախարդել, և ըստ ապականեալ սրտի իւրոյ զամենայն չարութիւն գործել ընդ երկիրն համօրէն. զոր կամէր առ ինքն կոչել ի լրումն տռփանացն՝ զօրութեամբ ուլանցն ոչինչ դժուարէր, և զոր կամէր կորուսանել՝ և յայնմ յաջողէր անաշխատ, մինչև սասանել ամենայն ումեք և չկարել ճիկ հանել։ Տերոյ ուրումն որ երթևեկէր առ նա և ամենայն իրաց նորա հմուտ և իբր խորհրդական էր, բազում ժամանակս խորհելով ի մտի թէ զիարդ զերծուցէ զերկիրն ի ձեռաց նորա կամ ի զօրութենէ ուլանցն, յաւուր միում մինչդեռ յԱրտամետ քաղաքին էր ընդ թագուհւոյն, ժամ դիպող գտեալ՝ յափշտակեալ ի ձեռաց նորա զուլումս փախչի։ Զայրացեալ Շամիրամայ և ի ցասման մեծի եղեալ յարձակի զհետ նորա, և չկարացեալ հասանել՝ առ անհնարին կատաղութեանն զգէսսն պարսատիկ գործեալ, քանզի յոյժ երկայն և թաւ էին, և ապառաժ մի ահեղ մեծութեամբ եդեալ ի նմա արձակէ զհետ ծերոյն. և առ մեծի բռնութեան զերծեալ հերացն ի գլխոյն՝ և ապառաժն մեծ գլորեալ անկանի ի փոս մի առ Արտամետաւ, զոր և ցուցանեն մինչև ցայսօր։ Իսկ ծերն առեալ զուլումսն փախչի ի ծովեզերս Դատվանայ և անդ արկանէ ի ծով, և զերծանի երկիրն առ հասարակ ի մոգական չարութենէն Շամիրամայ։

Բ

Շամիրամը տղամարդու շորեր հագած թագավորություն է անում։ Նա Վանի կողմերից շարունակ աղջիկներ է տանում և առագաստի երկրորդ օրը սպանել է տալիս, որպեսզի իր կին լինելը չհայտնվի։ Մի անգամ էլ մի ներքինի (քոսա) տղա, սպանված աղջիկների համար կամենալով վրեժխնդիր լինել Շամիրամից, կանացի շորեր հագած մուտք է գործում պալատը։ Այստեղ նա նկատում է, որ Շամիրամը կին է, և պալատից դուրս վազելով, կանչում է. «Շամիրամը կին է, Շամիրամը կին է»։ Շամիրամը ընկնում է նրա ետևից և իր քառասուն հյուսակ մազերից պարսատիկ շինելով, մի մեծ քար է շպրտում նրա կողմը։ Սաստիկ բարկացած լինելով՝ Շամիրամը փոխանակ «վըր քոսին» (քոսայի վրա) ասելու, սխալմամբ «մեջ փոսին» է ասում, որով և քարը ընկնում է Արտամետի ձորը, փոսի մեջ։

Գ

*Իր անվան առուն փորել տալիս, Շամիրամը ճանապարհին մի մեծ քար է տեսնում։ Քառասուն հյուսավոր իր մազերից պարսատիկ շինելով՝ նա այդ քարը նետում է Արտամետ գյուղի կողմը։*

## 189. ԿԱՏՎԱՆ ՔԱՐԻԿ

Գտնվում է Վասպուրականի Արտամետ գյուղում

*Հարուստ մարդը հոգեհաց է տալիս, ժամ ու պատարագ անում։ Այդ միջոցին կատուն մի հաց է թռցնում և փախչում։ Հետապնդողներից ազատվելու համար նա մտնում է քարաժայռերի մեջ և տեղն ու տեղը քարանում։*

## 190. ՆԱՐԵԿԱՑՈՒ ՔԱՐԵՐԸ

Գտնվում են Վասպուրականի Խարզիթ գյուղի մոտ

Ա

*Պատմեն զսրբոյն Գրիգորէ Նարիկացւոյ հովւութիւն արարեալ ի գիւղս յայս մինչև էր կրօնաւորեալ։ Եւ յաւուր միում թշնամեաց ոմանց ի վերայ յարձակեալ՝ հարկանել զնա։ Յորոց խոյս տուեալ նորա ի կապան կոյս արտաքոյ գեղջն՝ գա և թագչի ընդ կողիւք վիմի միոյ որ է առ ճանապարհաւ ծովափին. և վէմն սքանչելեօք գոգաւորեալ ընդունի զնա։ Եւ թշնամեացն անցեալ առ նովաւ չտեսանեն զնա և զերծանի ի նոցանէ։ Իսկ վէմն այն կա այնպէս մինչև ցայսօր գոգաւոր ըստ ձևոյ թիկանց մարդոյ և բազկաց, և ծառ մի առընթեր։*

Բ

Գտնվում են Նարեկա վանքի մոտակայքում

*Գրիգոր Նարեկացին հանգստանալու համար նստել է այս քարերին և հրաշքներ գործել։ Տեղացիք դրանց միջոցով գուշակություն են անում։*

Գ

Գտնվում են Նարեկ գյուղում

*Այստեղ մի բարձր ու մեծ ժայռի վրա գտնվում է Նարեկացու աղոթատեղին։ Սրա հատակի քարերը տեղ-տեղ մարդու ոտքի մեծությամբ փոս են ընկած։ Ասում են, թե դրանք Նարեկացու ոտքերի տեղերն են։*

## 191. ՔԱՐԱՑԱԾ ՔՈՒՅՐ ՈՒ ԵՂԲԱՅՐ

Գտնվում է Վասպուրականի Շատվան գյուղի հյուսիսային զառիվայրի վրա

*Մի աղջիկ փոքր եղբորը շալակած գնալիս է եղել։ Քրդերը սկսել են հետապնդել նրան։ Աղջիկը խնդրել է աստծուց՝ քար դարձնել իրենց, որպեսզի չընկնեն քրդերի ձեռքը։ Աստված կատարել է նրա խնդիրքը՝ երկուսին էլ իրար հետ քար է դարձրել։*

## 192. ԴԱՐԲՆԱՑ ՔԱՐ

Գտնվում է Անձևիք գավառում

*Դևք բազումք բնակեալ էին անդ և պատրէին զմարդիկ տեղւոյն, տուեալ յայնմ տեղւոջէ դեղս ախտականս առ ի կատարել զպղծութիւնս ախտից, կռանաձայնս դարբնաց ահաւոր հրաշիւք արհաւիրս գործէին. յորս մարդիկ աշխարհին սովորեալք, անդ առ քրային դեգերէին, առեալ ի չաստուածոցն ծրարս թարախածորս ի պատիր ախտիցն, որպէս զծրարսըն Կիպրիանոսի առ ի պատիր Յուստինեա կուսին. և անուանէին զանուն տեղւոյն այնորիկ Դարբնաց Քար։*

## 193. ԱՍՏՎԱԾԱՄՈՐ ՔԱՐ

Գտնվում է Մոկսի Դաշտ քաղում

*Աստվածածինը հղի ժամանակ մեջքը տվել է այս քարին և հանգըստացել։ Դրա համար էլ հղի կանայք գալիս են այստեղ, մեջքները տալիս քարին, որպեսզի հեշտությամբ ազատվեն (երեխա ունենան)։*

## 194. ՆԵՄՐՈՒԹ ԹԱԳԱՎՈՐՆ ՈՒ ՔԱՐԱՑԱԾ ՈՒՂՏԵՐԸ

Գտնվում են Վասպուրականի Շամիրամ գյուղի մոտ

Ա

*Նէմրութ ոմն թագաւոր հզօր բռնակալեալ զբազումս ի գաւառաց կողմանցն հարաւոյ, և անտի այսր եկաւորեալ, և կամեցեալ զի ամենեքեան զնա աստուած գիտասցեն, շինէ դաստակերտս ի գագաթան լերինդ ահեղ բարձրութեամբ. ուր ամենայն ատաղձք շինուածոյն պատրաստեալ, և երամակ ուղտուցդ աւազս բեռնաւորեալ ի ծովեզրէն Դատվանայ, ածէին*

*ի լեառնն։ Իբրև յաւարտել եհաս շինուածն ահեղ ի հիացումն տեսողաց, կամեցեալ նորա տպաւորել ի միտս ամենեցուն եթէ ինքն իսկ իցէ աստուածն և չիք այլ ոք աստուած յաղթող քան զնա։ Ելեալ ի տանիս շինուածոյն յարեաց զաղեղն ի վեր՝ զի աստուած սպանեալ ինքն միայն կացցէ։ Իսկ աստուածոյն ճշմարտի տեսեալ զամբարտաւանութիւն նորա, առեալ ի ծովէ ձուկն մի մեծ և կալաւ հանդէպ լերին Նէմրութայ, ընդ որ հարեալ և հոսեալ արեանն վերուստ ի վայր, կարծեաց անօրէնն և կարծեցոյց զամենեսեան եթէ ահա սպանաւ աստուածն։ Մինչդեռ յայնպիսի անօրէն խորհուրդս ղուարթանայր ինքն և ամենայն որ ի զնին կային իրացն, շարժեցաւ բարկութիւն աստուծոյ։ Եւ ի կայծականց թօթափելոց յերկնից անդրէն և անդ ուղտերամակքն ի քար դառնան ի տեղւոջ իւրեանց, և ինքն հանդերձ շինուածովքն գետնասոյզ եղեալ ի գագաթան լերինն, և ջուր բխեալ ի տեղւոջն յորդառատ՝ ծածկեալ անհետ առնէ զյիշատակս անօրինին։*

Բ

*Նեմրութ թագավորը Նեմրութ լեռան վրա սկսում է կառուցել մի բերդ, որի ծայրը մինչև երկինք պիտի հասներ։ Այդ ամբարիշտ մտադրության համար աստված սոսկալի փոթորիկ է բարձրացնում, ստորերկրյա ցնցումներ կատարում և բերդը կործանում։ Բերդի քարերից մեկը թռչում, ընկնում է Ուրֆա քաղաքը՝ փոշի ու մառախուղ բարձրացնելով (այդ է պատճառը, որ անիծելիս ասում են՝ «Քու թողն ի Ուրֆա հելնե»)։ Իսկ քար ու ավազ կրող ուղտերի քարավանն էլ քարանում է։*

Գ

*Կռապաշտ թագավոր Բելը մեծ զորքով կռիվ է եկել Հայոց թագավորի վրա։ Սա սպանել է Բելին, հանել Նեմրութ սարի գագաթը և այնտեղ թոնիր շինելով մեջը կախել, վառել է։ Աստծու հրամանով կրակը ջուր է դարձել, թոնիրը իջեցրել հողի տակը, որ քամին նրա փոշին չտանի։ Բելի մարդիկ և ուղտերն էլ վախից քար են դարձել։*

Դ

*Նամրութ մե կռապաշտ մարդ էղեր ա։ Դավաքներով (ուղտերով) խող կկրեր Նամրութա սարի կողմեն, օր բլուլ (բլուր) շիներ, բանձրներ աստծու խետ կռվեր։ Աստծու խրամանով էդ դավաքներ քար դարձան։ Նամրութն էլ բլուլի վրեն խողի տակն անցավ։ Հեռևանց որ իշկես (նայես), կըսես դավեք են, գնաս մոտ՝ քար են. էդ բլուլն էլ Նամրութ լեռն է։*

## 195. ՄԵՂՐԻ ՔԱՐԵՐ

Գտնվում են Մուշ քաղաքի հարավային կողմում,
Տիրկատար լեռան լանջին

*Տիրկատար լեռան վրա գտնվելիս է եղել Տիր աստծու մեհյանը։ Տիրը սովորություն է ունեցել նստել այս քարերի վրա և ուտել մեղուների կողմից հատուկ իրեն համար պատրաստված մեղրը, որը պահվում էր մոտիկ քարայրի 10 կարասների մեջ։*

## 196. ՋՈՐԱՀԵՏԻԿ

Գտնվում է Մշո Ս. Կարապետ վանքից քառորդ ժամ հեռու, դեպի Փակաձի տանող ճանապարհին

*Այս քարի մեջ ցույց են տալիս ջորու ոտքի հետքը։ Ասում են, թե երբ Սուրբ Կարապետի նշխարները ջորու վրա բարձած տանելիս են եղել, այս քարի մեջ խրվել է ջորու ոտքը և նա մնացել է անշարժ։*

## 197. ՍԱՆԴԻ ՔԱՐ

Գտնվում է Մշո Ս. Կարապետ վանքի մոտ

*Սա գիշերները երևում է և ցերեկը աներևութանում։ Մի քանի անգամ գնացել են, որ սայլին բառնան, բերեն գյուղ, անտես է եղել։ Ասում են, թե այս քարի տեղում գանձ կա թաղված, մինչև չիմացվի գանձի գաղտնիքը, քարը չի հանվի։*

## 198. ԿՈՒՍԱՆԱՑ ՔԱՐԵՐ

Գտնվում են Մշո Վարդենիս գյուղի սահմանում, Ջրի ձոր կոչված վայրում

*Գայանե, Հռիփսիմե և Շողակաթ քույրերը միաժամանակ մնացել են այստեղ՝ Ջորեմանքիկ կոչված երեք քարափոր սենյակներում և կերակրվել լեռան բանջարով, որ եփել են փոստ քարի ամանների մեջ։ Վանքի շուրջը մնում են այդպիսի 3—4 ամաններ, որոնք կոչվում են Կուսանաց քարեր։*

## 199. ՊԱՌԱՎԻ ՔԱՐ

Գտնվում է Մշո գավառում, Սբ. Աքանազինե վանքի ճանապարհին

*Չար պառավը սարում բանջար է հավաքելիս լինում։ Դիմացից գալիս է մի ճամփորդ, որը շատ քաղցած լինելով, պառավից հաց է ուզում։ Մերժվում է։ Մի քիչ բանջար է ուզում և դարձյալ մերժվում։ Աստված տեսնելով այդ, անմիջապես քար է դարձնում ժլատ ու չար պառավին։*

## 200. ՏՐԴԱՏԻ ՔԱՐ

Գտնվում է Մշո Առաքելոց վանքի Գլխաշրիկ կոչված աղբյուրի մոտ

*Այս քարը Մասիս լեռից, գլխի վրա դրած, բերել է Տրդատը։ Ջերմ ունեցողները բուժվելու համար նրա վրա Գլխաշրիկ կոչված աղբյուրի սառը ջրով լոգանք են ընդունում։*

## 201. ՔԱՐԱՑԱԾ ՀՈՎԻՎՆ ՈՒ ՈՉԽԱՐՆԵՐԸ

Գտնվում է Խարբերդից ճարավ-արևելք, Շնորհալու ծովակից դեպի հյուսիս ձգվող լեռնաշղթայի վրա

*Հովիվը նեղվելով շոգից ու ծարավից, աղաչել է աստծուն, որ աղբյուր բխեցնի՝ իր և հոտի ծարավը հագեցնելու համար, խոստանալով մի պարարտ ոչխար մատաղ անել։ Աստված կատարել է նրա խնդիրքը, սակայն հովիվը հագենալուց հետո՝ ափսոսացել է իր ոչխարը և փոխարենը մորթել է ծերացած շանը։ Աստված բարկացել է և հովվին իր հոտի հետ քար է դարձրել։*

## 202. ԴԱՎԹԻ ՔԱՐԸ

Գտնվում է Մշո դաշտում, Սև կամ Սեղան սարի ստորոտում

*Սասունցի Դավիթը հովիվ եղած ժամանակ սարից Մշո դաշտն է իջեցնում ոչխարները։ Ճաշին, երբ կանայք զբաղված էին ոչխարների կթով, Սև սարի կողերից մի հսկա ժայռ է պոկվում և գլորվում դեպի ոչխարներն ու հավաքված մարդիկ։ Տեսնելով, որ ժայռը կարող է ճզմել բոլորին, Դավիթը ցատկում է տեղից և աջ ձեռքը դեմ տալիս ժայռին, որը տեղն ու տեղը կանգ է առնում։*

## 203. ՔԱՐԱՑԱԾ ՀՈՎԻՎՆ ՈՒ ՀՈՏԸ

Գտնվում է Քղիի Խարապեկ և Հեռլանկի գյուղերի միջև ընկած լեռնաշղթայի վրա

*Կթվոր կանայք գնում են լեռան սարոտը այծերը կթելու։ Հանկարծ հանդիպակաց բլուրին երևում է մի վիշապ, որը ահռելի աղմուկով գալիս է նրանց վրա։ Տեսնելով այդ, հովիվը ծունկի է գալիս և աղոթում աստծուն՝ հոտի և կանանց փրկության համար, խոստանալով մատղել երկու ոչխար։ Աստծու կամքով վիշապը պոչի կողմից սկսում է քարանալ։ Մինչև գլուխը չհասած, հովիվը զղջում է տված խոստումի համար և երկու ոչխարի փոխարեն, ձեռքը ծոցը տանելով՝ երկու ոջիլ է ջարդում։ Վիշապի հետ նույն վայրկյանին քարանում են հովիվը, հոտը և կթվոր կանայք։*

## 204. ՉԱԼՈՅԻ ՔԱՐ

Գտնվում է Դերսիմի Քաչարան գյուղի սահմանում

*Չալո անունով մի գայլխեղդ գամփռ այստեղ խեղդել է երեք գայլ և պառկելով նրանց կողքին, սպասել է տիրոջ վերադարձին։ Դրա համար էլ շան պառկած տեղը կոչվում է Չալոյի քար։*

## 205. ՍՈՒԼԹԱՆ-ՄՈՒՐԱՏԻ ՔԱՐ

Գտնվում է Մալաթիա քաղաքի մոտ

*Մի աղջիկ մեկ ձեռքով բռնած այս քարը՝ ելել է Սուլթանի դեմ։ Ի հիշատակ նրա քաջության Սուլթանը հրամայել է կանգնեցնել այս կոթողը։ Ասում են նաև, թե քարի գլխի փոսի մեջ Սուլթան-Մուրատը դրել է մի բուռ ոսկի և Բաղդադից վերադառնալիս տեսել է, որ ամբողջը նույնությամբ մնում է... Նա զարմացել է Մալաթիայի բնակիչների քաջության և հարըստության վրա, որոնց մի տկար աղջիկը քարե սյուն է բռնում մեկ ձեռքով, և սրանց մեջ չկա՞ մեկը, որ աղքատ ու կարոտ լինի։*

## 206. ՔԱՐԱՑԱԾ ՋՈՒՅԳ

Գտնվում է Կեսարիայից երկու և կես ժամ հեռավորության վրա, Ելանլը լեռան կատարին

*Տղամարդ ու կին բարձրանում են այս լեռան վրա քեֆ անելու։ Հարբած վիճակում, գինու բաժակը գավազանի ծայրը կապելով՝ նրանք երկա-*

*րում են դեպի երկինք՝ առաջարկելով աստծու կենացը։ Աստված զայրանալով երկուսին էլ տեղն ու տեղը քար է դարձնում։*

## 207. ՇԱՐԱՆ ՔԱՐԵՐ

Գտնվում են Սասունի Մարաթուկ լեռան լանջին

*Հովիվը Մարաթուկի լանջին, ամառվա շոգ ժամանակ, ոչխարներն արածացնելիս խմելու ջուր չի գտնում։ Նա վերցնում է իր սրինգը և ժայռի վրա նստելով սկսում է նվագել և խնդրել «բարձրիկ սուրբ Մարաթուկին», որ իր ոչխարներին մի պաղ աղբյուր տա, խոստանալով դրա համար մատաղ անել։ Նրա խնդիրքը անմիջապես կատարվել է, բայց հովիվն իր խոսքը դրժել է, որի համար և հոտի հետ քար է դարձել։*

## 208. ՖՈՖՐՈ ՔԱՐ

Գտնվում է Սասնո Փուրխ գյուղից դեպի հյուսիս, Հոսնուտ գյուղի մոտերքում

*Մշտապես փչող քամին այս ժայռին հանդիպելիս «ֆոֆրո» ձայն է հանում, որի համար և այն կոչվում է Ֆոֆրո քար։*

## 209. ՍԱՏԱՆԻ ԵՂՈՒՆԳ

Ա

*Կայենը նախանձում է իր եղբայր Աբելին։ Խաբում, տանում է դաշտ, որ սպանի, սակայն չի իմանում ինչով կտրի նրա գլուխը։ Սատանան սև ագռավի կերպարանքով ներկայանում է Կայենին և ցույց է տալիս սատանի եղունգ կոչված կայծքարը (օբսիդիան), որով Կայենը մորթում է Աբելին։*

Բ

*Սատանան մի օր սև ագռավ է դառնում և սկսում է կռվել մի ուրիշ ագռավի հետ։ Նա մի սև սուր քարով կտրում է այդ ագռավի վիզը։ Կայենը նրանից օրինակ վերցնելով, առնում է այդ քարը և կտրում է իր եղբոր (Աբելի) վիզը։ Այդ քարին սատանի եղունգ են ասում։*

## 210. ԱՍՏՎԱԾԱԾՆԻ ՔԱՐ

*Աստվածածնի կաթն այնքան առատ է լինում, որ մանուկ Քրիստոսը ծծելով չի կարողանում սպառել։ Աստվածածինը մի այրի մոտ միշտ կթում է իր կաթը, որպեսզի ստինքներն հանգստանան։ Դրանից էլ ահա գոյացել են այն փխրուն, կավճանման քարերը, որ Երուսաղեմ գնացող ուխտավորները բերում են իրենց հետ։*

# ԼՃԵՐ, ԳԵՏԵՐ, ՋՐԱՆՑՔՆԵՐ, ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## 211. ԹՈԽՄԱԽԱՆ ԳՅՈԼ

Գտնվում է Երևանի երկաթուղային կայարանից դեպի հարավ

*Լսելով գեղեցկուհի Արու-Հայաթի ինքնասպանության լուրը, նրա փեսացու Թոքմաք խանը իրեն նետել է այս լիճը և խեղդվել, որը և նրա անունով կոչվել է Թոխմախան լիճ (գյոլ)։*

## 212. ԲԱԴԵՐԻ ԼԻՃ

Գտնվում է Երևանից Արտաշատ տանող խճուղու եզրին

*Ձմռան ամիսներին այստեղ ժամանակին մեծ քանակությամբ վայրի բադեր են իջել, իրենց կողմը գրավելով որսորդների ուշադրությունը։ Դրանից էլ լիճը կոչվել է Բադերի լիճ։*

## 213. ՄԵԾԱՄՈՐԻ ԼԻՃ ԿԱՄ ԱՅԳՐ ԳՅՈԼ

Գտնվում է Արագած լեռան հարավում

Ա

*Մի անգամ հովիվը այծի ետևից նետում է գավազանը, որն ընկնում է Արագածի գագաթին գտնվող լճի մեջ։ Մինչև նա մոտենում է լճին՝ տեսնում է, որ գավազանն անհայտացել է։ Մի շաբաթից, ոչխարները գաշտ իջեցնելիս, հովիվն իր գավազանը տեսնում է Մեծամորի լճում։ Շալակում է մի չվալ դարման, բարձրանում Արագածի վրա և դարմանը դատարկում*

*այնտեղի լճի մեջ։ Երկու օր անց հովիվը դարմանի հետքը գտնում է Մեծամորի լճում (Այղր-գյոլ)։*

Բ

*Այս լիճը լիքն է հրեղեն ձիերով, սպիտակ գոմեշներով, մարդաձրկներով և ուրիշ կենդանիներով։ Հրեղեն ձիերի ցեղից է նաև Քյոռ-օղլու թևավոր Ղռաթը։ Խառատ (հյուսն) Մուրատը ականատես է եղել, որ երբ Քյոռ-օղլու մատակ ձին արածելիս է եղել Մեծամորի ափին, մի հրեղեն սպիտակ որձ ձի (այղր) դուրս է եկել լճից, թռել է մատակի վրա և նորից մտել ջրի հատակը։ Դրանից հետո լիճը կոչվել է Այղր-գյոլ։*

## 214. ՍԵՎ ԼԻՃ ԿԱՄ ՂԱՐԱ-ԳՅՈԼ

Գտնվում է Գորիս քաղաքից վերև՝ Իշխլու կոչված սարերի մեջ

Ա.

*Ժամանակին քառասուն գլխանի մի վիշապ եկել, խմել է այս լճի (Ղարա-գյոլ) ջրի կեսը, հետո պառկել, որ հանգստանա, մյուս կեսն էլ խմի, ցամաքեցնի։ Աստծու հրամանով՝ սարերը մոտեցել են, վերցրել այդ լիճը, բարձրացրել, հասցրել են մինչև երկինք, ազատելով վիշապից։ Վիշապն այլևս չի կարողացել վերև բարձրանալ ջուր խմելու. ծարավել է, ճաքճքել, տրաքել, ցրիվ եկել չորս կողմը։*

Բ.

*Այստեղ ապրում են ջրի խոզեր, շներ, ձիեր և մեծ-մեծ ձկներ։ Սև լճում ապրում է նաև մի գեղեցիկ աղջիկ։ Երբ արև է լինում նա դուրս է գալիս ջրի երեսը և խաղում է ալիքների հետ։ Այս աղջիկն է, որ կպչելով լճի մեջ ընկած կենդանու ոտից, չի թողնում, որ նա դուրս գա ջրից։*

## 215. ՏՈՎՔ

Գտնվում է Վարանդայի Նոր-Շեն, Աշան և Ղզղալա գյուղերի սահմանում, մի բարձրադիր բլրի վրա

*Մի գեղեցիկ ու քաջ աղջիկ դառնում է հարսի չարության ու նախանձի զոհը՝ սպանվելով սրա եղբոր կողմից։ Նրան թաղում են բլրի կատա-*

րին գտնվող մատուռի մեջ։ Նույն գիշերը լույս է իջնում աղջկա գերեզմանին։ Չար սիրտ հարսը ծանր հիվանդանում է։ Նա ուխտի է գնում զոհված աղջկա սրբավայր դարձած գերեզմանին։ Սակայն հարսի ուխտը չի ընդունվում։ Դառն տանջանքների մեջ նա մեռնում է մատուռի դռանը։ Այդ տեղում հարսի մահվան քրտինքներից լճակ է գոյանում, որին տալիս են Ծովք անունը։

## 216. ՕԽՆԱԾ ԳՅՈԼ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ստեփանակերտի շրջանի
Սեյդիշեն գյուղի մոտ

Սեյդիշեն գյուղի մոտով հոսող գետի հատակին կա մի քերծ, իսկ քերծի մեջ էլ՝ մկրտության ավազանի մեծությամբ ջրով լցված մի քարափոս, որին տեղացիները Օխնած գյոլ են ասում՝ ջրի սրբազան ու բուժիչ հատկության համար։

## 217. ՍԵՎԱՆԱ ԼԻՃ

Ա

Սևանա լճի տեղում առաջ ցամաք է եղել՝ անտառապատ բլուրներով, ծաղկավետ դաշտերով ու բերրի վարելահողերով։ Գյուղին մոտիկ բլրի տակ եղել է մի առատ աղբյուր, որից ջուր վերցնելիս գյուղացիները հանում էին ակունքի ահագին փակիչը և ապա զգուշությամբ հարմարեցնում իր տեղում։

Մի երեկո գյուղի հարսներից մեկը ջրի է գնում աղբյուրը, հանում է փակիչը, կուժը լցնում ու գալիս տուն՝ մոռանալով փակել ակունքը։ Ջուրը դուրս է հորդում, ծավալվում չորս կողմ. երբ այն հասնում է տնակներին, բնակիչները փախչում են, ասելով՝ «Քար դառնա՝ ով բաց է թողել ակունքը»։ Եվ մոռացկոտ հարսը քար է դառնում, իսկ ջուրը անընդհատ հոսելով կազմում է Սևանա լիճը, որի երեսից հազիվ վեր է բարձրանում քարացած հարսի գլուխը (Հարսնաքարը)։

Բ

Վանեցիները գաղթում և վերաբնակվում են Սևանի ափերին, որոշելով որ դա էլ մի Վան է։ Բայց հետո, տեղի ցուրտ ու դաժան կլիման դուր չի գալիս նրանց։ Նրանք հիշում են իրենց երկրի մեղմ ու տաք բնությունը,

*իրենց բարեկեցիկ կյանքը և դառնորեն կանչում. Սև վա՛ն եկավ մեր գլխին, սև Վա՛ն։ Ու այդպես էլ լճի անունը մնում է Սևան։*

### 218. ԱՐՅՈՒՆՈՏ ԼԻՃ ԿԱՄ ՂԱՆԼԻ ԳՅՈԼ

Գտնվում է Նոր-Բայազետի Քերիմբեկը գյուղի սարերում

*Ժամանակին այստեղ մարդ է խեղդվել, որից և լիճը ստացել է Ղանլի գյոլ (Արյունոտ լիճ) անունը։*

### 219. ՋԱԼԹԸՐ

Գտնվում է Ախալքալաքի շրջանում

*Բարձր լեռներով շրջապատված հովտում, զառիթափ լեռան կրծքին դուրս է ժայթքել սառնորակ ջուրը։ Մոտիկ գյուղի բնակիչները, վախենալով, որ ջուրը կարող է լցվել հովիտը և քշել գյուղը, ամեն անգամ ջուր վերցնելուց հետո փակել են անցքը։*

*Մի անգամ գյուղի պատանիներից մեկը թողնում է ծեր մորը և քրոջը ու հեռանում։ Երկար տարիներ չի վերադառնում։ Ընտանիքը տխրում է, ողբում՝ որոշելով, որ նա մեռել է։ Օրերից մի օր քույրը գնում է ջուր բերելու և հանկարծ լսում է՝ «Վազիր տուն, վերադարձել է եղբայրդ»։ Ուրախացած վերցնում է կուժը և դառնում տուն։ Եղբորը հանդիպելուց հետո հանկարծ հիշում է, որ բաց է թողել ակունքը։ Վազում է դեպի աղբյուրը։ Բայց ուշ էր։ Ջուրն արդեն լցվել և լիճ էր կազմել հովտում ու դանդաղորեն մոտենում էր գյուղին։ Վերջապես ծածկվում է և գյուղը։ Ասում են, թե այսօր էլ, պարզ օրերին, թափանցիկ ջրերի տակ կարելի է տեսնել հին գյուղի պատկերը։*

### 220. ԳԱՅԼԱՏԱՎԱ ԼԻՃ ԿԱՄ ԲԱԼԸՂ-ԳՅՈԼ

Գտնվում է Հայկական-Պարի Սինակ գագաթի մոտ

*Այստեղ առաջ եղել է մի առատ աղբյուր։ Ամեն անգամ հարս ու աղջիկ ջրի գնալիս՝ պիտի բացեին աղբյուրի ակը և կուժը լցնելուց հետո նորից փակեին։ Մի անգամ երկար տարիներ օտարության գնացած մի երիտասարդ տուն է վերադառնում։ Հոգնած ու քրտնած եղբոր ոտները լվանալու համար՝ քույրը ջրի է վազում, բայց կուժը լցնելուց հետո շտապ տուն է դառնում, մոռանալով փակել աղբյուրի ակը։ Երբ աղջիկը լվանում*

է եղբոր ոտները, հաց տալիս նրան, քաղցր զրույց անում հետը, մեկ էլ էն է տեսնում, որ ջուրը բռնել է սար ու ձոր, փոքրիկ աղբյուրի փոքրիկ ակից մի մեծ լիճ է գոյացել։

## 221. ՎԱՆԱ ԼԻՃ

### Ա

Նախքան զմեկնել Յունաց ի կողմանց աստի՝ ի հարաւային եզերս նորա ընդերկրեայ, գաղտնի ճանապարհաւ, հոսեալ ջուր ծովուն և ընդ ճանապարհ գաւառին Կարճիքանայ անցեալ բաժանէր յայլ գաւառս, որով հաւասարակշիռ մնայր նա։ Այլ ի մեկնել նոցա՝ առ չարութեան, ասեն, քեռինս բրդոյ մեծամեծս հնարիւք խցեալ ի մուտս նորա, արգելին զընթացս ջրոյն, և մուտքն անհետ եղեն և անգի և այս աճեաց և աճէ միշտ։ Իսկ ոմանք ասեն, եթէ ամս եօթն միանգամայն աճէ և ի միւս եօթն ամսն նուազէ. սակայն աճումն առաւել քան զնուազումն։

### Բ

Վանա լճի մեջ ահռելի վիշապներ կան, որոնց հետ միշտ պատերազմում են հրեշտակները։ Երբ վիշապը հազար տարեկան է դառնում, հրեշտակները ջրից վեր են քաշում նրան, մոտեցնում են արեգակին, որի տաքությունից նա մոխիր է դառնում և փոշիացած թափվում գետին։

Այդ օրերին լճի շրջակայքում այնպիսի թանձր մառախուղ է տիրում, որ մարդիկ ցերեկով, մի քանի քայլի վրա իրար չեն տեսնում, օդը դղրդում է, գետինը շարժվում և երկնքից մոխիր է թափվում։

### Գ

Վանա լճի մեջ վիշապի բույն կա. այնտեղ ապրում է մի ահագին վիշապ, որ բռնել է լճի ամբողջ հատակը։ Հրեշտակները միշտ հարվածում են նրա պոչին, վիրավորում, որպեսզի վիշապը չմեծանա և լիճն ու ցամաքը կուլ չտա։ Վիշապը մազեր ու թևեր ունի, երբեմն սաստիկ ջուր է փչում երկրի վրա։

### Դ

Վանա լճի ափին, Նարեկա վանքի մոտ մի ահագին վիշապ կա, որ երբեմն երևում է հովիվներին։ Սրանք անմիջապես փախչում են և թաք-

*նրվում մոտակա այրերի ու թփերի մեջ։ Վիշապն անցնելիս այնպիսի ֆշշոց է հանում, որ սար-քար դողում են նրա ձայնից, իսկ պոչի շարժվելուց էլ՝ ամպի նման փոշի է բարձրանում։ Ինչ կենդանի պատահի՝ մարդ, անասուն, վիշապն ամբողջապես կուլ է տալիս և հետո գնում փորը խփում ժայռերին, մեծ-մեծ քարերին, որ կուլ տվածը կարողանա մարսել։*

## 222. ԱՐՃԱԿ

Գտնվում է Վանա լճի ավազանում

*Սրա մեջ ապրում են՝ մի հրեղեն տղամարդ, մի հրեղեն կին և մի հրեղեն ձի։ Ասում են, թե շատերը լսել են հրեղեն ձիու խրխինջը, եղել են նաև նրան տեսնողներ։ Իսկ մարդուն ու կնոջը ոչ ոք չի տեսել։*

## 223. ԱԽԹԱՄԱՐ ԿՂԶԻՆ

Գտնվում է Վանա լճի հարավային ափի մոտ

Ա

*Այս կղզու վրա ապրել է Թամար անունով մի գեղեցիկ աղջիկ։ Նա սիրահարված է եղել մի վաշիկ (աշտունի) ազնվականի, որը ամեն գիշեր լողալով՝ այցելության է եկել նրան։ Մի փոթորկալի գիշեր վաշիկը կրկին ծովն է նետվել՝ Թամարի մոտ գնալու համար, սակայն ալիքները խանգարել են նրան։ Երիտասարդը ամեն կերպ ձգտել է հաղթահարել ալիքների դիմադրությունը, բայց չի կարողացել և, «Ա՜խ Թամար, ա՜խ Թամար» բառերը շուրթերին, զոհ է գնացել կատաղի ալիքներին։ Դիմացի կղզուց ականատես լինելով այս սրտաճմլիկ տեսարանին, Թամարը ևս «ա՜խ ու վա՜խ» անելով ավանդել է հոգին։ Այդ դեպքից հետո կղզին կոչվել է Ախթամար։*

Բ

*Մի գյուղացի երիտասարդ հաճախ գալով այս կղզին՝ սիրահարվում է Թամար անունով մի գեղեցիկ աղջկա։ Պայմանավորվում են գիշերով թաքուն տեսակցել իրար։ Թամարն ամեն օր գնում է կղզու մի հեռավոր անկյունը, կրակ վառում ու սրտատրոփ սպասում իր սիրածին։ Երիտասարդը բազուկներով ճեղքելով ծովի ալիքները ընթանում է առաջ՝ աչքերը հառած Թամարի վառած լույսին։ Անցնում են շաբաթներ ու ամիսներ և սիրահարները անարգել անձնատուր են լինում իրենց զգացմունքներին։*

*Կղզեցիները ընկնելով սիրահարի հետքերին, մի խավար գիշեր հանգցրնում են կրակը: Դժբախտ լողորդը կորցնելով ճանապարհը, մոլորվում է ծովի ալիքների մեջ... «Ա՜խ Թամար, ա՜խ Թամար, այս ինչ արիր ինձ...»,—մրմնջում է նա և սիրած աղջկա անունը շուրթերին, զոհ գնում ծովի ալիքներին: Եվ այդ օրվանից կղզին կոչվում է Ախթամար:*

## 224. ԱՌՏԵՐ

Գտնվում է Նարեկ գյուղի մոտ

### Ա

*Գրիգոր Նարեկացին մեծ ցանկություն է ունենում տեսնելու Տիրամորը՝ մանուկ Հիսուսը գրկին: Եվ մի անգամ աղոթատեղի դիմացը գտնըվող այս փոքրիկ կղզուց նրան երևում է իր փափագածը: Հափշտակված տեսիլով՝ Նարեկացին անցնում է ծովը, չոքում Տիրամոր առաջ... որը ձայնում է նրան. Ա՛ռ զտէր քո, զոր խնդրէիր... Այստեղից էլ կղզու անունը մնում է Առտեր:*

### Բ

*Գրիգոր Նարեկացին ուր աղոթատեղաց մեջ կիշեր-ցերեկ կուլեր, կաղոթեր, էնկանտար (այնքան), որ քարեր մաշան ուր ծնկներաց տակ: Ինոր խնդիրքն էն էր՝ մեյ խատ ուր աչքով տեսներ մայր Աստվածածին Հիսուսը կիրկ: Շատ տարի կիշեր-ցերեկ իլաց-աղաղակեց, ձեռք զարկաց կետնի քարերաց վերեն, կժերով արտասունք թափեց... Մեյ կիշեր էլ նակյախտան (հանկարծ) տեսավ, որ Վանա ծովու երկնուց լուսմ՝ կաթավ (լույս իջավ). պարակ քամիմ փչեց, մայր Աստվածածին երևաց տիմացի կղզու վերեն, ուր կըրկանոց (գրկանոց) կիրկ: Նարեկացին, եբ տեսավ, ասաց. Ա՛ռ տեր խոկիս, առ մկա (այժմ), քանի որ ես իմ փափաքին խասա: Տեսիլք վերցավ, էտա կղզու անուն մնաց Առտեր:*

## 225. ՔԱՀԱՆԱՅԻ ԼԻՃ ԿԱՄ ՔԵՇԻՇ-ԳՅՈԼ

Գտնվում է Վարագա լեռան արևելյան ստորոտին

### Ա

*Այս լիճը կառուցել է տվել գյուղի քահանան՝ փակելով դեպի մերձակա ձորակը վազող ջրերի առաջը, որի համար և կոչվում է Քահանայի լիճ (Քեշիշ կյոլ):*

**Բ**

*Վախտով-ժամանակով կ՚ելնի մեկ տերտեր։ Էտա (այդ) տերտերն ի ունի քյառսուն լաճ (որդի)։ Անապատանավերով մեկ վարդապետմ՝ կուգա տերտերոջ տուն հյուր։ Երեկոյան վարդապետ կնստի սեղան հաց ուտելու։ Այդ ժամանակ դռնեն մարդմ՝ ներս կմտնե, հայր սուրբին աջն առնելով՝ կնստի։ Վարդապետ կհարցուցի տերտրոջ, կ՚ասի. էս մարդն ո՞վ է։ Տերտեր կ՚ասի. Ծառա եմ, ծառէտ իմ որդին է։ Այսպես քառասուն որդիներ կուգան հայր սուրբին աջն առնելով սեղանին չորս բոլոր կնստին, և ամենին համար կ՚ասի վարդապետին, թե՝ «Ծառատ քո որդին է, ծառատ քո որդին է»։ Նվիրակ վարդապետը զարմացած կմնա, տեսնելով, որ մեկ կրոնավորին քառասուն հատ լաճ կա. մեծ շնություն (անբարոյականություն) կսեպե (համարել) և, տերտերի հացն հարամ (անարժան) համարելով, կըելնե տունեն, կհեռանա։ Տերտերն ի, կինի (կընկնի) վարդապետի ետևեն կկանչե։ Բայց վարդապետը ամենևին չուզեր ո՛չ ետև նայել և ոչ շնացյալ քահանայի հետ խոսել։ Վարդապետը կուգա կխասնի գյուղի մոտ։ Էտա գյուղի մեջն էլ խազար-խազա՛ր գորտեր կկռան։ Ձեն չի խասնի վարդապետի ականջ։ Տերտերն ի, կդառնա գորտերաց կ՚ասի. Ա՜յ օրհնածներ, ձեներդ կտրեք, ես նվիրակ հայր սուրբին բանմ՝ պիտի ասեմ։ Էն գյախ ինի (հենց նույն ժամին) էտա զըմեն (բոլոր) գորտեր ձեները կկտրեն։ Վարդապետը կդառնա իտև (ետև) կիրիշկա (կնայի), որ տերտերը իրեն կըկանչի, գորտերն էլ ձեները կտրեր ին, լուռ ու մունջ։ Տերտերը կխասնի վարդապետին կասի. Հայր սուրբ, ինչի՞ կնացիր իմ տնեն, իմ խացն (հաց) ինչի՞ խարամ արիր. ես քառսուն տարի ի, որ կարգվեր իմ, ամա տարին մեկ անգամ իմ տիրուհու մոտ պառկեր իմ, աստված տարին մեկ տղա տվեր ի ինձ։ Վարդապետ-Նվիրակ կտեսնե, որ իր պիղծ կարծված տերտերն իրմե (իրանից) ավելի սուրբ է, մանավանդ որ ինոր (նրա) հրամանով գյուղի գորտերը ձեները կտրեցին... մեղայի կուգա են տերտրոջ և կդառնա ետ, նոր կնստի տերտրոջ հաց կուտի։ Էն ժամանակից էսա գյուղին կասեն՝ Քահանայի լիճ (Քեշիշ-գյոլ)։*

## 226. ՍՊԱՀԱՆԻ ԼՃԱԿԸ

Գտնվում է Բերկրիի արևելյան լեռներում

*Երուսաղեմի նվիրակներից մեկը ժամանակին այս լճակի ափին խոստովանեցնում է Գործոթ գյուղի 40 զավակի տեր քահանային։ Այդ միջո-*

ցին ջրի մեջ գտնվող գորտերը սկսում են կռկռալ։ Նվիրակը դիմելով գորտերին, ասում է. Լռեցե՛ք։ Եվ գորտերը իսկույն լռում են։ Մինչև հիմա էլ այս լճակը ազատ է գորտերի աղմուկից։

## 227. ԿԱՐԱՊՆԵՐԻ ԼԻՃ

Գտնվում է Գերսիմի շրջանում, Խուբաց ձորից դեպի հյուսիս

Ասում են, թե ամեն գիշեր լճափնյա անտառների խորքից լսվում են երգեցողության և սրնգի ձայներ։ Սրնգահարը գեղադեմ, արիասիրտ պատանի այն հովիվն է, որ շատ տարիներ առաջ լճափին քնած ժամանակ առևանգվել է կույսերի կողմից և կերպարանափոխվելով Անղուտի (արուկարապ), ամուսնացել է իր առևանգիչ փերու հետ և մնացել նրա մոտ։ Այդ դեպքից հետո լիճը կոչվել է Կարապների լիճ։

## 228. ԱՅԴԸՐ ԳՅՈԼ

Գտնվում է Սալանունյաց գավառում (Պալապանի լեռնաշխարհ)
Քըշտըրմա կոչված յայլաներից դեպի վեր

Մի օր լճափին հանգստացող հովիվները ջրի խորքից ձիու զորավոր խրխինջ են լսում և սարսափից ուշաթափվում են։ Երբ ուշքի են գալիս, ավազների վրա տեսնում են ձիու սմբակների թարմ հետքեր... Ասում են, թե Սբ. Սարգիսն ու Սբ. Գևորգը հեծած այս լճի մեջ ապրող իրենց ձիերին՝ խելահեղ թափով հասնում են այնտեղ, ուր գլուխ է բարձրացնում և ավերներ է գործում չարը։

## 229. ՁԿՆԳՈԼ

Գտնվում է Սասնո Տալվորիկ գետի աջ ափին

Մոտակա քարանձավի դռնից մինչև գետը եղած տարածության վրա մի աղբյուր է հոսում և թափվում գետը։ Ջրի հետ, քարանձավում եղած լճից, ձկներ են դուրս գալիս, գնում թափվում մոտակա գետը. և այստեղից նույն ճանապարհով նորից մտնում քարանձավի լիճը։ Դրա համար էլ կոչվում է Ձկնգոլ (Ձկների լիճ)։

## 230. ԱՐԱՔՍ

### Ա

*Հայոց Արաքս թագավորը պարսիկների հետ պատերազմելու ժամանակ մեկի միջոցով նախազգուշացվում է, որ ինքը միայն այն ժամանակ հաղթանակ կտանի, երբ աստվածներին զոհ կմատուցի երկու լավագույն ու գեղեցիկ կույսերի։ Խնայելով իր դուստրերին, Արաքս թագավորը զոհաբերում է հպատակներից մեկի աղջիկներին։ Սրանց հայրը մի առ ժամանակ խեղդում է իր մեջ դառնության ու վիրավորանքի զգացումը, սակայն հենց որ հարմար առիթ է ներկայանում, թաքստոցից սպանում է Արաքսի աղջիկներին և լքելով իր հայրենիքը, գնում է օտարություն։ Իմանալով այդ մասին, Արաքս թագավորը նետվում է Հայմոս գետը, որն այնուհետև նրա անունով, կոչվում է Արաքս։*

### Բ

*Այլազգի առևանգիչը փախցնում է հայ երիտասարդի սիրած աղջկան։ Երիտասարդը գնում է նրան ազատելու։ Երկար որոնումներից հետո, նա սիրածին գտնում է առևանգիչի գրկում։ Տեղն ու տեղը սպանելով նրան, երիտասարդն ազատում է սիրածին։ Վրա են հասնում բռնավորի ծառաները և սպանում են թե՛ տղային և թե՛ աղջկան։ Տեսնելով, որ որդին ուշանում է, տղայի մայրը գնում է նրան որոնելու և գտնում է տղայի ու հարսնացուի դիակները։ Վշտահար ընկնում է դիակների վրա և ինքն էլ ավանդում հոգին։*

*Ասում են, թե Արաքս գետը գոյացել է սպանված երիտասարդի, նրա սիրածի և մոր թափած արյուն-արցունքներից, որոնք հազարավոր աղբյուրներ են դարձել և ցած իջել հայոց լեռներից։*

## 231. ԿԱՆԱՉ ԳԵՏԸ

Գտնվում է Նոր Բայազետի գավառի Վերին Ադյաման գյուղի հարավային կողմում

*Ժամանակին, երբ հայերը գերեվարվում են այստեղից, գետի ձորը անմարդաբնակ դառնալով, ամբողջապես ծածկվում է կանաչով։ Նադիր Շահը այս կողմերով անցնելիս՝ տեսել է այս գետը և շրջակա կանաչի համար անվանել է Գյոլ-չայ (Կանաչ գետ)։ Նույն գետին տեղացիները, ջրի հանած ձայնի համար, ասում են նաև Ճրռան։*

## 232. ԳԱՅԼ ԳԵՏ

**Բխում է Վարագա սարի տակից, Վան քաղաքի մոտ**

### Ա

*Առաջներում այս գետի ջրով ծածկված է եղել ամբողջ Վանա հովիտը՝ ծովի բերանից մինչև Վարագա սարը։ Այնքան մեծ է այն, որ եթե դուրս գա իր ստորերկրյա հունից կարող է հեղեղել ողջ շրջապատը։ Գետնի երեսից ականջ դնողը կարող է լսել նրա շառաչյունը։ Մարդ կամ անասուն սրա բացված տեղերից ջուր խմելիս կամ լվացվելիս, կուլ են գնացել կամ խեղդվել։ Դրա համար էլ անունը դրել են Գայլ գետ։*

### Բ

*Շամիրամ թագուհու օրոք Գայլ գետը Շամիրամի բերդի արևմտյան ստորոտում մի նեղ անցք բաց անելով, հոսում և ողողում է անհամար տներ։ Իմանալով այդ մասին, Շամիրամը իսկույն գալիս է դեպքի վայրը (Արտոս լեռան մոտ), իր ոսկեթել մազերից պարսատիկ հյուսում և մի քանի մեծ ժայռեր է նետում գետի մեջ, մինչև բերդի ստորոտը։ Ապա իր նազնազ աղջկա հետ, հազար հակ բամբակ է խրում ջրի բերանը, ահագին ժայռեր շարում բամբակի վրա, որպեսզի այդպիսով ահաբեկված ժողովուրդը ապահովվի վտանգից։*

### Գ

*Մի անգամ Շամիրամ թագուհու տղան այս գետում լողանալիս խեղդվում է։ Շամիրամը զայրացած ուզում է կործնել գետը։ Յոթ հակ բամբակ է խցում նրա ակի մեջ, քար ու հող է լցնում վրան, մեծ-մեծ քարեր դարսում։ Գայլ-գետը սակայն հողի տակից իրեն համար նոր ճանապարհ է բաց անում, անցնելով Վանի քաղաքամիջով։*

## 233. ՄԵՂՐԱԳԵՏ

**Գտնվում է Տարոնում, Զախուրի դաշտում**

### Ա

*Այստեղ առաջ թոնիր է եղել։ Գյուղի երեցկինը հաց թխելիս՝ մի աղքատ է գալիս և Քրիստոսի սիրու համար թարմ հաց խնդրում։ Տիրուհին*

*տալիս է հացը, ապա աղքատը պանիր է խնդրում, տիրուհին պանիրն էլ է տալիս։ Աղքատը Քրիստոսի սիրու համար համբույր էլ է խնդրում, տիրուհին դեմքը մոտեցնելով համբույր էլ է տալիս։ Այդ միջոցին քահանան տուն է մտնում և ականատես լինելով՝ զայրանում տիրուհու արարմունքի համար։ Տիրուհին ասում է, թե աղքատը Քրիստոսի սիրուն հաց խնդրեց, տվի, պանիր խնդրեց, տվի, համբույր խնդրեց, չկարողացա մերժել։ Քահանան ասում է. Քրիստոսի սիրու համար քեզ նետիր վառ թոնիր։ Տիրուհին իրեն նետում է թոնիրը։ Բոցավառ թոնիրն իսկույն լցվում է մեղրահամ ջրով և գետ է դառնում։ Տիրուհին ձուկ է դառնում, մնում գետի ակունքի մեջ։*

Բ

*Ժամանակին մի հովիվ Նեմրութ լեռան կատարին իր ոչխարներն արածացնելիս, ձեռքի գավազանը պատահմամբ գցում է այնտեղի լճակներից մեկը։ Մի քանի ամիս անց նա իր գավազանը տեսնում է ուրիշի մոտ և իմանում, որ այն գտնվել է Մեղրագետի մեջ։ Բոլորի համար պարզ է դառնում, որ Մեղրագետի ջուրը իր ակիզբը առնում է Նեմրութ լեռան վրա եղած լճակներից։*

### 234. ԵՓՐԱՏ

*Եփրատը մի ոգի է կնոջ կերպարանքով՝ ծածկված քուրձերով և ունի խռիվ մազեր։ Ամեն տարի նա բազմաթիվ մարդկանց է կուլ տալիս։ Երբ գալիս է Վարդավառը, ոգի-ջրահարսը նայելով դիմացի ժայռին, ասում է. Վարդևորն եկավ, մեկը չեկավ...*

### 235. ԵՓՐԱՏ ԵՎ ԱՐԱԾԱՆԻ

*Տարին մի քանի անգամ հրեղեն սյան նման երկնքից լույս է իջնում այս գետերի այն մասում, ուր բնակվում են ջրի փիրերը (ոգի)։ Լույսը տեսնող հավատավորը կարող է բժշկել ամենածանր հիվանդին, եթե նրա դեմքին ու կրծքին սրսկի իր ձեռքով Եփրատից կամ Արածանիից կավե կուժով բերված ջուրը։*

### 236. ԱՐԳԵՈՍ

Սկիզբ է առնում Թումարզա գավառի ճամանում լեռներից

*Քելկին անունով թուրքական գյուղի բնակիչները Սուլթանի հրովարտակով այս գետի մեջ մեծ անցք ունեցող մի վեմ են դնում, որի միջով*

անցած ջուրը համարում են իրենց սեփականությունը։ Ձբավարարվելով դրանով, նրանք մի քանի անգամ փորձում են լայնացնել այդ անցքը և կամ բոլորովին անհայտացնել վեմը, որպեսզի դրանով տեր դառնան ամբողջ գետին։

## 237. ՄԵՂՐԱԾՈՐ

Բխում է Արգենսի բլուրներից

Սրա եզերքին կան անմատչելի սեպ ժայռեր, որոնց մեջ հնուց միլիոնավոր մեղուներ իրենց փեթակներն են շինել։ Երբ ամառվա մեջ, արևը խփում է այդ ժայռերին և տաքացնում դրանք, փեթակների մեղրը հալչում, հոսում է դեպի ներքևից անցնող գետակը և քաղցրացնում նրա ջուրը։ Դրա համար էլ այս գետակը կոչվել է Մեղրաձոր։

## 238. ԴԱԼՄԱ

Գտնվում է Երևանի մոտ, Հրազդան գետի աջ ափին

Երևանի Հյուսեին-ղուլի խանը ժամանակին կանչում է իր խանության բոլոր հմուտ առու հանողներին և հրամայում է նրանց որոնել և գտնել վաղեմի ջրանցքի ակը։ Բազմաթիվ վարպետ-արհեստավորների բոլոր ջանքերը կատարելու խանի հրամանը՝ ապարդյուն են անցնում։ Կատաղած խանը կարգադրում է գլխատել բոլորին։

Այնուհետև վարպետներ են կանչվում Մակվից, Թավրիզից, Սպահանից։ Զորաբաշի տակ գետի եզերքը բռնելով, նրանք գնում են ջուրն ի վեր և, վերջապես, հասնում այն տեղը, ուր երևում էին վաղեմի ջրանցքի հետքերը։ Սկսում են օր ու գիշեր աշխատել, մինչև որ կարողանում են խցված ակը բանալ («դեռմլե» անել), քանդված վերաշինել, լցվածը մաքրել։ Դրանից հետո ջուրն առատ հոսում է դաշտն ի վեր ու ոռոգում գետի մյուս ափին տարածված անծառ, անտունկ անապատը։ Ջրանցքի անունը դնում են Դալմա (Դեռլմե), որ նշանակում է պեղած, ծակած։

## 239. ԽԱԹՈՒՆ-ԱՐԽ

Գտնվում է Էջմիածնի շրջանում

Առաջներում խաթունարխ գյուղի տեղում անապատ է եղել, ուր ապրել են միայն օձեր ու կարիճներ։ Ժամանակին այստեղով անցնում է մի

*ձիավոր երիտասարդ՝ Խաթուն անունով սիրած աղջիկը գավակին։ Աղջիկը սաստիկ ծարավում է։ Երիտասարդը ջուր է փնտրում, բայց ոչ մի տեղ չի կարողանում գտնել, և Խաթունը ծարավից նվաղում է սիրածի գրկում։ Երիտասարդը որոշում է նրա հիշատակին ջրանցք կառուցել։ Ծախսում է ամբողջ կարողությունը, կառուցում ջրանցքը և Խաթունի անունով կոչում Խաթուն-արխ։*

### 240. ԱԿԱՆԱՏԵՍԻ ԱՌՈՒ

Գտնվում է Աշտարակի շրջանում

*Հին ժամանակ Աշտարակը ջուր չի ունեցել։ Սբ. Ականատես անունով մի վարդապետ գնում է Մուղնի գյուղի տակը, մտնում Քասախ գետի ձորը և ձորալանջով քարշ տալով իր գավազանը, ասում է. Թող այստեղով ջուր բարձրանա Քասախից։ Եվ ջուրը Ականատեսի գավազանի հետքով դանդաղ սկսում է հոսել դեպի Աշտարակ։ Մարդիկ այգիներ են տնկում և շենացնում գյուղը։ Ականատեսը ետ է դառնում, գնում Սաղմոսավանք, ճգնություն անում։ Ջրանցքը նրա անունով կոչվում է Ականատեսի առու։*

### 241. ՄԵԾԱՄՈՐ

Գտնվում է Արտաշատի շրջանում

*Երևանի Հյուսեին խանը ցանկանալով իրար խառնել Մեծամորի լիճն ու գետը (Սև ջուր), նրանց մեջ եղած թմբի վրա մի առու է փորել տալիս։ Վերջին օրը, երբ քիչ է մնում, որ ջուրը հոսի, հանկարծ լճի երեսը կրակ է դառնում, միջից գազաններ են դուրս թռչում և ուզում են բոլորին կուլ տան։ Տեսնելով այդ՝ խանը հրամայում է նորից լցնել առուն։*

### 242. ՅՈԹ ԵՂԲՈՐ ԱՌՈՒ

Գտնվում է Գառնիի ձորում, Ազատ գետի ձախ կողմում

*Յոթ եղբայր և յոթ քույր են լինում։ Դրանք գրազ են գալիս՝ եղբայրները Դվինի, իսկ քույրերը Աղբաշի կողմերը մեկական առու հանել։ Տարին լրանալու մոտ եղբայրները տեսնում են, որ քույրերն առաջ են ընկել։ Գիշերն անավարտ առվի տեղը սպիտակ կտավ են փռում ու առավոտը հայտնում են քույրերին, որ իրենք արդեն փորել են առուն ու ջուրը բաց թողել։ Քույրերը տեսնելով հեռվից պսպղացող կտավը կարծում են, որ*

դա ճիշտ է։ Դարդից բոլոր յոթն էլ նետվում են գետը և խեղդվում։ Եղբայրների փորած առաջին առուն այժմ կոչվում է Յոթն ախպոր առու։

## 243. ՔԱՀԱՆԱՅԻ ԱՌՈՒ ԿԱՄ ՔԵՇԻՇ ԱՐԴ

Գտնվում է Զանգեզուրում

Տաթևի վանքը կառուցում է մի անվանի վարպետ։ Մի կրոնավոր էլ որոշում է վանքի համար ջուր բերել։ Նրանք գրազ են գալիս, թե ով ավելի շուտ կավարտի։ Առուն փորելիս վարդապետը հանդիպում է մի հսկայական քարի, որն անհնար է լինում տեղից շարժել։ Աղոթում է և քարը կտոր-կտոր է լինում։ Տղան զարմանում է հոր չար աչքի վրա, և կրոնավորի մի աչքը կուրանում է։ Շարունակում են աշխատանքը, բայց այս անգամ էլ կանգ են առնում մի մեծ վիհի առաջ։ Ինչ անել։ Իսկ վարպետն արդեն հասնում է աշխատանքի ավարտին։ Կրոնավորը որոշում է խաբել նրան։ Վիհի հակառակ կողմից կախ է տալիս մի մեծ սպիտակ սավան, որը քամու տակ ծածանվում է ալիքաձև և հեռվից թափվող ջրի պատրանք է ստեղծում։ Վարպետը դնում է գմբեթի վերջին քարը. վեր նայելով հանկարծ նկատում է հեռվում երևացող սպիտակ ալիքները և կարծում է, թե գրազը տանում է ավել։ Իրեն ցած է նետում գմբեթից և ջարդ ու փշուր լինում։ Վարպետին թաղում են վանքի մոտ։ Մինչև այսօր էլ ցույց են տալիս նրա գերեզմանը։ Խաբեբա կրոնավորի անունով վանքի առուն կոչվում է Քահանայի առու (Քեշիշ արդ)։

## 244. ՇԱՔԱՐԱՋՈՒՐ

Սկիզբ է առնում Գորիսի ճանդերի աղբյուրներից
և թափվում Վարարակ գետը

Մի հովիվ ունենում է Շուշան անունով մի աղջիկ, որի նմանը չկար աշխարհում։ Նա որ ծիծաղում էր՝ սարերում շուշաններ էին բացվում, որ լաց էր լինում՝ արտասուքները աղբյուրներ էին դառնում։ Ասում են, թե այս առուն Շուշանի արտասուքներից է գոյացել։ Ջրի քաղցրության համար առուն կոչվել է Շաքարաջուր։

## 245. ՇՐՈՌԱՆ

Գտնվում է Զանգեզուրի Քարահունջ գյուղի հյուսիսային կողմում

*Այս ջրվեժը աղմուկ հանելով ցած է թափվում մեծ բարձրությունից։ Տեղական բնակչությունը ջրի հանած բարձր շրռոցի համար ջրվեժը կոչել է Շրռան։*

## 246. ՇԱՔԻ

Գտնվում է Սիսիանի կիրճում, որտեղ Շաքի գետակը խառնվում է Որոտան գետին

*Թշնամիները Գեղարքունի գավառից 93 կույս աղջիկ են ուղարկում Մուղանում բանակ դրած իրենց առաջնորդին։ Երբ գերի աղջիկների քարավանը հասնում է այստեղ, դիմելով իրենց առևանգիչներին, նրանք ասում են. Մենք երկար ճանապարհին շատ փոշոտվել ու կեղտոտվել ենք, թույլ տվեք գետում լողանանք, նոր ներկայանանք ձեր մեծին։ Առևանգիչները համաձայնում են։ Աղջիկները մերկանալով նետվում են Որոտանի ալիքների մեջ և սուզվելով անհետանում։ Միայն Շաքե անունով մի կապուտաչյա աղջիկ Որոտանը թափվող գետակի միջով փախչելով, փորձում է ազատվել։ Թշնամիները հասնում են նրա ետևից, սակայն նույն վայրկյանին գետակի մեջ հրաշքով մի ժայռ է խոյանում, և ջուրը նրա վրայով գահավիժելով, իր ճերմակ փրփուրների տակ թաքցնում է Շաքեին։ Դրանից հետո այդ ջրվեժն ու նրա մոտ գտնվող գյուղը կոչվում են Շաքեի անունով։*

## 247. ԴԵՎԻ ԱՌՈՒ ԿԱՄ ԴԵՎ ԱՐԴ

Գտնվում է Արցախում

*Ղարաբաղի մելիքն ունեցել է մի աննման աղջիկ, որին սիրահարվել են երկու երիտասարդներ. մեկը շատ հարուստ, իսկ մյուսը՝ ուժեղ ու քաջ, Դև անունով։ Մելիքի աղջիկը պայման է դրել. ով կարողանա Թարթառ գետից մինչև մոտիկ մարգագետինները ավելի շուտ ջրանցք փորել, ինքը նրան էլ կուզի։ Երիտասարդները տարբեր կողմերից միաժամանակ սկսում են աշխատանքը։ Հարուստը մարդիկ է վարձում։ Չնայած դրան Դևը գիշեր ու զօր աշխատելով՝ կարողանում է ավելի շուտ ավարտել։*

Հաջորդ օրը նա պատրաստվում է թողնել ջուրը։ Հարուստը տեսնելով, որ գրազը տանուլ տվեց, մի պառավի խորհրդով սպիտակ սավան է փռում ջրանցքի մեջ։ Առավոտյան տեսնելով այդ՝ Դևը կարծում է, թե հարուստն արդեն ավարտել է։ Դաշույնը խրում է իր կրծքի մեջ։ Աղջիկն իմանալով Դևի ցավալի մահը և հարուստի խարդախանքը, վշտից հիվանդանում է և մեռնում։ Նրանց թաղում են իրար մոտ՝ Դևի փորած ջրանցքից ոչ հեռու։ Հարուստը գերեզմանում էլ հանգիստ չի տալիս նրանց։ Դևի և աղջկա արանքում թաղում է չար պառավի դիակը։ Դևի և աղջկա գերեզմաններից վարդի թփեր են բուսնում, իսկ պառավի գերեզմանից՝ փուշ։ Վարդի թփերը ուզում են միանալ, գրկել իրար, բայց փուշը չի թողնում։ Մինչև հիմա էլ ցույց են տալիս դժբախտ տղայի փորած ջրանցքը, որ նրա անունով կոչվում է Դևի առու (Դև արդ)։

## 248. ՀՈՒՍԵՓԿԻ ՔԱՐԻ ԱՌՈՒ

Գտնվում է Սպարկերտում

Հուսեփ անունով մի հովիվ, ոչխարները քշել է այս քարի առջևը, կաթ է կթել, որ նստի ուտի։ Հանկարծ նրա վրա հարձակվել են երեք գողեր, բռնել, բերանը լաթ կոխել, որպեսզի չկանչի և սպանելով՝ ոչխարը տարել են։ Դրանից հետո քարի անունը մնացել է Հուսեփկե (Հուսեփկի) քար, իսկ առվինն էլ՝ Հուսեփկե քարի առու։

## 249. ԵՂԿԸՆՈՒՏԱ ԱՌՈՒ

Գտնվում է Սպարկերտում

Մի կին գնացել բերել է այս առվի ջրից և դրանով լվացել է իր խնոցին, որից հետո շատ կարագ է ստացել։ Դրա համար էլ առվի անունը դրել են Եղկընուտա (եղ բառից) առու։

## 250. ԱՐՔԱՎՈՆԱ ԱՌՈՒ

Գտնվում է Սպարկերտում

Սրա եզերքին բուսնում են ամեն տեսակ ծաղիկներ ու բույսեր (սուսին, խավրծիլ...)։ Արքայության պես գեղեցիկ մի վայր է սա, դրա համար էլ կոչվում է Արքավոնա առու։

## 251. ՔԱՐԲԵԿԻ ԱՌՈՒ

Գտնվում է Սպարկերտում

*Այս առուն հանել են քարերի միջից։ Պոկելով կամ բեկելով քարերը, ջրի համար ճանապարհ են բացել, որի համար և այն կոչվել է Քարբեկի առու։*

## 252. ՋՐՈՎ ԹՈՆԻՐ

*Իրիցկինը թոնրի առաջ հաց է թխելիս լինում։ Մի աղքատ տեսնելով նրա գեղեցկությունը՝ ողորմություն խնդրելու փոխարեն աստծու սիրուն մի համբույր է խնդրում։ Լսելով աստծու անունը, իրիցկինը կատարում է աղքատի ցանկությունը։ Տուն գալով և իմանալով կնոջ արարմունքի մասին, քահանան ասում է. Եթե այդքան սիրում ես աստծուն՝ նրա սիրուն թոնիրն ընկիր։ Իրիցկինն անմիջապես նետվում է թոնիրը։ Աստծու կամքով թոնրի կրակը ջուր է դառնում, իսկ իրիցկինն էլ՝ մի սիրուն ձուկ և սկսում է լողալ ջրի մեջ։*

## 253. ԼՈՒՍԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Թալինի արևելյան կողմում

*Մի կույր մարդ լվացվելով այս աղբյուրի ջրով՝ վերականգնում է տեսողությունը, որի համար և աղբյուրը կոչվում է Լուսաղբյուր (Կեոզլու)։*

## 254. ԿԱԹՆԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Էջմիածնից Օշական տանող ճանապարհին

*Երբ Մեսրոպ Մաշտոցը վախճանվում է Էջմիածնում, Վահան Ամատունին համաձայնություն է ստանում նրան իր հայրենի Օշականում թաղելու։ Ճանապարհին նեղվելով շոգից ու ծարավից, հուղարկավորները դագաղը իջեցնում են գետին՝ մի փոքր հանգստանալու։ Հանկարծ հրաշքով պատռվում է այնտեղ ընկած քարը և միջից սկսում է մի զուլալ ու կաթնահամ ջուր բխել։ Բոլոր հուղարկավորները խմում են այդ ջրից և հագեցնում իրենց ծարավը։ Այդ աղբյուրին Կաթնաղբյուր են ասում։*

## 255. ԳԱՐԱՊԱՅԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Հին Նախիջևանի շրջանում, Գարապաղլար գյուղի մոտ

*Ասում են, թե քաղցր ջրով այս աղբյուրը քարի միջից բխեցրել է Նոյ նահապետի Սեմ անունով որդին։*

## 256. ԿԱԹԱՆՔ

Գտնվում է Հին Նախիջևանի Ապրակունիս գյուղի
Սբ Կարապետի վանքի արևելյան կողմում

*Սրա սառը ջուրը այնքան առատ է եղել, որ բավարարել է պարսիկներից հալածական և Սբ. Կարապետի վանքում ապաստան գտած շրջակա գյուղերի շատ հայ բնակիչների։ Աղբյուրը ցամաքել է մի վատաբարո մարդու մեղքերի պատճառով, որն իր անվայել արարմունքով Վարդավառի տոնին անարգել էր նրան։*

## 257. ՄԱՀՏԵՍԻ ՄԵԼՔՈՒՄԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Ներքին Ագուլիս գյուղում

*Շահ-Աբասը հավանելով Մահտեսի Մելքումի գեղեցիկ կնոջը, նրան բռնությամբ տանում է իր հարեմը։ Ժամանակ անց, կարոտելով կնոջը, Մելքումը գնում է Սպահան և ծպտված սկսում է իբրև որմնադիր աշխատել շահի պալատի մոտ։ Շահ-Աբասն ու կինը դուրս են գալիս պատշգամբ նարդի խաղալու։ Մելքումը կնոջ ուշադրությունը գրավելու համար երգով մրմնջում է. «Հին դարդերս նորոգվեցին, այ տղա կիր բեր»։ Կինը ճանաչելով ամուսնուն, նետում է զառը և երգով պատասխանում. «Անցյալը պետք է մոռանալ, ա՜յ թե զարս հինգ ու վեց գար»։*

*Շահը կասկածում է այդ խորհրդավոր հարց ու պատասխանին և փորձելու համար թույլ է տալիս կնոջը կես ժամով տեսակցել ամուսնու հետ։ Հասկանալով այդ, Մելքումի կինը խորհուրդ է տալիս ամուսնուն՝ հեռանալ շահի պալատի մոտից, և իր հոգու փրկության համար յոթ եկեղեցի և յոթ աղբյուր շինել։ Մելքումը կատարում է կնոջ ցանկությունը։ Ներքին Ագուլիսի Դաշտի բազարի մոտ գտնվող աղբյուրը՝ այդ յոթ աղբյուրներից մեկն է, որը շինողի անունով կոչվում է Մահտեսի Մելքումի աղբյուր։*

### 258. ՍԲ. ՀԱԿՈԲԱ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Մասիս լեռան ստորոտին

*Երբ մորեխ ու թրթուռ է լինում, շրջակա բնակիչները այստեղից ջուր են բերում և ցրում դաշտերում։ Ջուրն իր հետ բերում է վնասակար միջատներին ոչնչացնող սև և սպիտակ փետրավոր թռչուններ (թթի ղուշ կամ Սբ. Հակոբա սարյակ անունով)։*

### 259. ԿԱՔԱՎԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Գորիսի Քարահունջ գյուղի դիմաց

*Մի որսկան այստեղ կաքավի բուն է գտնում՝ ձագերը միջին։ Սատանայի թելադրանքով նա քանդում է բույնը և ոչնչացնում կաքավի ձագերին։ Մայր կաքավը տեսնելով ավերված բույնն ու ոչնչացված ձագերին, սկսում է սուգ ու լաց անել։ Նրա արտասուքներից աղբյուր է գոյանում, ինքն էլ շատ չանցած անշնչանում է։ Բարեխիղճ մարդիկ թաղում են կաքավին, քար գցում գերեզմանին, քարի տակից նով անցկացնում, որից սկսում է հոսել այս սառն աղբյուրը։*

### 260. ԱԳՌԱՎԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Տաթևից Շնհեր տանող ճանապարհին

*Գրիգոր Տաթևացին երեխա ժամանակ արածացնելիս է եղել Տաթևի վանքի գառները։ Մի օր աղբյուրից ջուր խմելիս օձը ուզում է խայթել նրան։ Տեսնելով այդ, ագռավը նետվում է իրեն աղբյուրի մեջ։ Օձը Գրիգորի փոխարեն խայթում է ագռավին։ Տաթևի վանահայրը օրհնում է անձնազոհ ագռավին և թաղել է տալիս նրան աղբյուրի կողքին, որի անունը դրանից հետո տեղացիները Ագռավի աղբյուր են դնում։*

### 261. ՅՈԹՆ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Գորիսի շրջանում

*Ժամանակին այստեղ յոթ սյուների վրա հանգչող մի վանք է եղել, Լենկ-Թեմուրը եկել քանդել է վանքը, որի ամեն սյան տակից սկսել է մի աղբյուր բխել։*

## 262. ԽԱՉԱԼ ԿԱՊԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Զանգեզուրում, Խոտ գյուղի ճանապարհին

*Սա զուլալ ու հորդ մի աղբյուր է. մոտը կա «Թաք ծառ» կոչված մի չինարի, որ սուրբ է համարվում։ Իշխանա սարի արոտները գնացող տափաստանի քոչվորները իրենց քոչերով, աղբյուրի ջրի հույսով, միշտ եկել են այս կողմերը՝ չորացրել արոտները և թալանել շրջակա բնակիչներին։ Քոչվորների ոտքն իրենց կողմերից կտրելու համար՝ Խոտ, Շինուհայր և Քարահունջ գյուղերի բնակիչները հավաքել են իրենց ոչխարների մի տարվա խուզած բուրդը և նրանով խցել են աղբյուրի ակը։ Զրկվելով ջրից տափաստանի քոչվորները այլևս չեն եկել այս կողմերը և ժողովուրդըն ազատվել է նրանց ասպատակությունից։*

## 263. ՋՐՈՎ ԹՈՆԻՐԸ

Գտնվում է Գորիսից ճարավ արևմուտք

*Մըն (մի) հացթոխ ա իլալ։ Մըն օր մինակ հաց թխելիս, մըն օղուղ (աղքատ) եկալ ա՝ հաց օզալ։ Խեղճ հարսը մըն հաց ա տուվալ օղուղին։ Օղուղը ղանչանք (աղաչանք) ա ըրալ, թա մնհետ էլ թող թոշատ (այտիցըդ) պաչեմ։ Հարսը, հախ սասու (սատծու սիրուն), մեխկն ա եկալ, թուղացալ ա։ Օղուղը պչիլիս, ըսկեսուրը նի ա մտալ տուն (ներս է եկել)։ Հարսը հմնչիլան (ամոթից) ինգյալ ա թորենը (թոնիր)։ Ամմա ըսսու (սատծո) ծեռքին ա իլալ, թորենը ճիրավ (ջրով) լցվալ ա, հարսն էլ մըն կյոռթունկ (գորտ) ա տառալ, մնացալ գյոլումը։ Համան էտ տեղիտ են ասում Թորնատափ։ Տատ թորեննի կա՝ վերը (որը) ճրավ, վերն անճուր։*

## 264. ԱՆԱՀԻՏԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանի Հացի գյուղում

*Ասում են, թե Աղվանից Վաչագան թագավորը այս աղբյուրի մոտ առաջին անգամ հանդիպել է Հացի գյուղացի գեղեցիկ ու իմաստուն Անահիտին և սիրահարվել նրան։ Այդ օրվանից էլ աղբյուրը կոչվել է Անահիտի աղբյուր։*

## 265. ՐԱՖՖՈՒ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Ղարաբաղի Դահրավ գյուղում, Շնահար կոչված բարձրադիր լեռան ճակատին

*Տարիներ առաջ Րաֆֆին գալիս է Դահրավ գյուղը՝ տեղի քաջերի պատմությունը գրելու։ Նա շրջում է տնետուն, հարց ու փորձ անում ծերերին, կարդում մամռակալած քարերի գրերը։ Րաֆֆու խնդրով գյուղացիները շուռ են տալիս Աբրահամենց այգու մոտ ընկած հսկայական սալ քարը՝ նրա վրա եղած գրերը կարդալու համար։ Րաֆֆու մեկնելուց հետո, այդ սալ քարի տեղից սկսում է առատ ջուր բխել։ Դահրավցիների ուրախությանը չափ չի լինում, քանի որ մինչ այդ ջուր բերելու համար նրանք ստիպված էին իջնել մոտակա ձորը։ Այդ ջուրը հիմա էլ կա և կոչվում է Րաֆֆու աղբյուր։*

## 266. ԱՐՋԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Արցախի Դիզափայտ լեռան վրա

*Մի արջ դուրս գալով գյուղի ծմակից՝ սկսում է բարձրանալ Դիզափայտ լեռը։ Ճանապարհին սաստիկ ծարավելով նա ուժասպառ ընկնում է, սկսում է լիզել գետինը և երեսը դեպի երկինք հառած աղեկտուր ոռնալ։ Այդ միջոցին գետնից հանկարծ մի աղբյուր է բխում։ Արջը խմում է գոհարար ջուրը և շարունակում բարձրանալ լեռն ի վեր։ Հասնելով լեռան գագաթին նա կայծակնահար եղած ընկնում է գետին։ Դրանից հետո այդ ջուրը կոչվում է Արջի աղբյուր։*

## 267. ԵՂՆԻԿԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Ջիվանշիրի շրջանի Կասապետ գյուղից արևելք

*Այստեղ ամեն տարի մի եղնիկ է եկել ու պառկել ջրի մոտ. գյուղացիները մորթել են եղնիկին և միսը հավասար բաժանել իրար մեջ, իբրև աստծուց ուղարկված մատաղ։ Մի անգամ էլ, երբ ըստ սովորության էլի եկել է եղնիկը, գյուղացիները չեն սպասել, որ նա պառկի, այլ հարձակվելով սպանել են, միսն էլ յուրացրել, առանց բաժին հանելու մյուսներին... Դրանից հետո աստված դադարել է այլևս մատաղացու եղնիկներ ուղարկել։*

## 268. ԹՈԽՈՊՎԱ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Վարանդայի Խաչմազ գյուղում

*Մի կին երեխայի հետ աղոթելու է գալիս այս մատուռը։ Աղոթքի ժամանակ երեխան լաց լինելով ջուր է խնդրում։ Աղոթքը չընդհատելու համար մայրը խնդրում է աստծուն հագեցնել երեխայի ծարավը։ Աստված լսում է նրա խնդիրքը և աղբյուր է բխեցնում մատուռի մեջ։*

## 269. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ՎԱՆՔԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Գանձակի Խաչակապ գյուղից ճյուսիս ընկած սարաճարթի վրա

*Մեսրոպ Մաշտոցը այս կողմերում քարոզելիս, գավազանը խփել է քարին ու հրամայել է, որ ջուր բխի։ Եվ նրա խոսքով իսկույն բխել է այս աղբյուրը։*

## 270. ՔՈՍԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Գանձակի գավառում

*Քոս (բորոտություն) ախտով բռնված մի կռապաշտ հալածվելով յուրայիններից, գալիս է այս աղբյուրի մոտ։ Նրան երևում է մի ծերունի և խոստանում բուժել վերքերը՝ եթե քրիստոնեություն ընդունի։ Հիվանդը համաձայնում է։ Ծերունին գավազանով խփում է ժայռին և այնտեղից աղբյուր է բխում։ Հիվանդը լվացվում է այդ ջրով և բժշկվում։ Աղբյուրի անունը մնում է Քոսի աղբյուր։*

## 271. ՇԱՓԱՌԻԿԻ ՋՈՒՐԸ

Գտնվում է Փայտակարանում

*Պատանի ոմն էր և քույր ունէր և երթային ի Շափառին կոյսն և յանկարծակի փոթորիկ եհաս և քոյր մանկանն վերացոյց մինչև ժամ մի ընդ ուժ և տանէր վերամբարձ, իսկ եղբայրն կշիռ երթայր ներքև ոչ ինչ ձեռնըհաս ուգնել. միայն ասէր. Վա՜յ, քոյր իմ, և արտասուէր… Եւ թուլացաւ փոթորիկն և աղջկանն յերկիր անկեալ բոլորովին մարմնով, անդամաւք ջախջախեալ։ Իսկ եղբայրն բերեալ զնա ի Շափառիկ, իջոյց զնա ի ջուրն, և եաւթներորդ աւուրն բժշկեցաւ։*

### 272. ԳՅԱԼ-ՋԱՐԱՋՈՒՐ

Գտնվում է Հին Նախիջևանի շրջանում

*Քրիստոնյաների հալածանքի ժամանակ Կոստանդնուպոլսից Հայաստան են փախչում մի քանի կույսեր, դրանց հետ նաև Հռոոմսիմեն (Հռիփսիմե)։ Սա իր հետ բերած նշխարները թաքցնում է Գյալ կոչված տեղում։ Երբ անհավատները գտնում և սպանում են Հռիփսիմեին, նույն տեղում, նշխարների հրաշագործ զորությամբ մի աղբյուր է գոյանում, որը պետք է լվանար անմեղ զոհի արյունը։ Այդ աղբյուրը հայտնի է Գյալ-ջարաջուր անունով։*

### 273. ԱՂՄԱՂԱՆԻ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Գտնվում են Գեղամա լեռներում

*Այստեղ ժամանակին բազմաթիվ աղբյուրներ են եղել։ Նադի-խանը ուղտերի քարավաններով բուրդ է կրել տալիս և խցում բոլոր աղբյուրների ակունքները, որպեսզի իր հակառակորդները աչք չդնեն այդ ջրառատ վայրերին։*

### 274. ՎԱՐԴԵՆԻԿԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Մարտունու Վարդենիկ գյուղի մոտ

*Այս աղբյուրի ջրի մասին ասում են, թե ունի հրաշալի զորություն. ով որ լվացվում է և խմում, մազերը ոսկեզօծվում են և փափկում աբրեշումի պես։ Քար ունեցողներն էլ գալիս են, խմում այս աղբյուրի ջրից, որից հետո քարը մաշվում ու ընկնում է։*

### 275. ԶԱՄԶԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Կարմիրի շրջանի Հին Բաշքենդ գյուղում

*Մի տղա սիրելիս ա ըլել մի ախչկա, համա (բայց) հերն ու մերը տալիս չեն ըլմ։ Էս տղեն քնըմ ա, չամիչը ածըմ ջրերը (գրպան), կյալի ըխչըկանը վեր ունըմ, տանըմ էտ ըխպրի (աղբյուր) կուշտը, ըտի չամիչ ա տալի ու իրան նպատակին հասնըմ։ Տրա մհար էլ (համար) էտ ըխպրի անըմը մընըմ ա Զամչի ախպուր։*

## 276. ԼԵԶԳՈՒ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Շամշադինի Վերին Կարմիր աղբյուր գյուղի հանդամասում, Մուրղուզի լեռնաշղթայի ճանապարհին

*Լեզգիների ժամանակ հայերը փախչում են սարը, օթևան շինում իրենց համար ու թաքնվում։ Սարի վրա մի լավ աղբյուր են գտնում, թփերով ծածկում ու թաքուն օգտվում նրա ջրից։ էդ աղբյուրին մինչև հիմա Լազգու աղբյուր են ասում։*

## 277. ՔԱԼՈՅԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Իջևանի շրջանի Ծաղկավան գյուղում

*Ասում են, թե այս գյուղն առաջ աղբյուր չի ունեցել։ Գյուղացիք տառապել են առանց ջրի և փորձել են մի ելք գտնել։ Քալո անունով մեկի կինը երազ է տեսնում, որ իրենց տնից ներքև հողի տակ աղբյուր կա։ Քալոն մի քանի օր շարունակ փորում է այդ տեղը և գտնում աղբյուրը։ Գյուղը դուրս է գալիս ծանր վիճակից։ Մինչև հիմա էլ կա այդ աղբյուրը և գտնողի անունով կոչվում է Քալոյի աղբյուր։*

## 278. ԿԶՎԵՐ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Իջևանի Ուզունթալա գյուղից դեպի հարավ, անտառի խորքում

*Ժամանակին Ուզունթալա գյուղում ապրել է մի գեղեցիկ հայ աղջիկ։ Հարևան գյուղի թուրք բեկը ծառաներով գալիս է նրան առևանգելու։ Հայերը թաքցնում է աղջկան անտառի խորքում, աղբյուրի մոտ։ Բեկի ծառաներն ասում են. Աղջիկդ տուր (կըզ վեր)։ Սա զենքով դիմադրում և կոտորում է բոլորին։ Բեկը թողնում փախչում է։ Դրանից հետո աղբյուրը կոչվում է Կզվեր։*

## 279. ԳԵՐԱՆԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Իջևանի Աչաջուր գյուղի մոտ, Մակարավանքից հյուսիս-արևմուտք, մի անտառապատ սարի վրա

Ա

*Գերան անունով մի կին է եղել։ Սրա ամուսինն ու որդին կառուցել են Մակարավանքը, իսկ ինքը մոտակա աղբյուրից կժով ջուր է կրել շաղախի*

համար։ Շատ աշխատելուց Գերանի ուսերը ծակծկվել են և ինքն էլ տանջամահ է եղել, որից հետո այդ աղբյուրը նրա անունով կոչվել է Գերանի (Գայանեի) աղբյուր։

Բ

Մակարավանքը շինելու վախտը (ժամանակ) Գյարան անունով մի ախչիկ աստծու առաջին ուխտ ա արել, որ վանքը շինելու համար հարկավոր բոլոր ջուրը ախպուրից ինքը կրի կժով։ Կրել ա ու դրա համար էլ ուսերը ծակծկվել, յարա (վերք) են դառել ու ինքն էլ մեռել է ու թաղվել վանքի պատի տակին։ Մինչև հիմի էլ էդ ախպրին ասըմ են Գյարանի ախպուր։

Գ

Ասում են, թե Մակարավանքը կառուցելու համար ընտրվել էր տեղը, հավաքել էին շինանյութերը, բայց մոռացել էին ջրի մասին։ Մոտակայքում ջուր չկար, և շինարարները մնացել էին շվարած։ Գյուղի եկեղեցու փոքրավորներից մեկը՝ Գերանը երազ է տեսնում, թե կառուցվելիք վանքից մի փոքր հեռու, հողի տակ աղբյուր կա։ Գնում է, փորում և գտնում աղբյուրը։ Սկսում է վանքի շինարարության համար ուսով ջուր կրել։ Չի թողնում ուրիշներին օգնել իրեն, քանի որ աստված իրեն էր վերապահել այդ բախտը։ Եվ տարիներ շարունակ, մինչև վանքի ավարտվելը Գերանը ջուր է կրում, որից նրա ուսերը ծակծկվում են։ Աղբյուրը նրա անունով կոչվում է Գերանի աղբյուր։

## 280. ՍԲ. ՍԱՐԳՍԻ ՋՈՒՐԸ

Գտնվում է Իջևանի Կոթի գյուղի սարի վրա

Կոթի գեղի սարը Սբ. Սարգսի բերդն ա ըլել։ Վաղ ժամանակ, երբոր ղըզըլբաշի (պարսիկների) Ուշաբ թագավորն ու Ուլխանսը ջարդելիս են ըլել հայերին, Սուրբ Սարգիսը նրանց ճանգերից ազատված եսիրներին (գերիներ) փախցրել, բերել ա էն բերդըմը պահել։ Առ ու փախի վախտն (ժամանակ) ընպես ահ ու երգյուղ ա ըլել, որ մարդ կրացել չի թե գլուխը ծակիցը հանի։ Խեղճ խալխը (ժողովուրդ) բերդըմը ծարավից կոտորվելիս են ըլել։ Սբ. Սարգիսը կաղնել ա մի տեղ ու ասել. էստեղ փորեցեք, ջուր դուս գա։ Վեր են կալել մի քանի գազ փորել են թե չէ, սառը ջուրը ախմիշ ա ըլել (հորդել)։ Սբ. Սարգիսը կաղնել խաչակնքել ա, թե՝ «Սրանից դենը ով

*որ գա էս ջրիցն երեսովը տա, ինչ հիվանդութին ունենա, թողնելու ա ու գնա»։*

*Հմի էն ջուրը նրա հրամանով չվել (մինչև) օրս էլ կա ու հիվանդի դեղ ա։*

## 281. ԹՆԴՈՑ

Պատմվում է Լոռու Օձուն գյուղի մոտ

*Հունաց Վասիլ զորավարը մեծ զորքով գալիս է Հայաստան։ Օհան Օձնեցին մի սաստիկ ցավ է զգում նրա մարմնի մեջ։ Երկար տառապելուց հետո Վասիլն իմանում է, որ իրեն կարող է բուժել միայն Օձնեցին։ Մարդ է ուղարկում և կանչել է տալիս նրան։ Օձնեցին, ձին հակառակ կողմից պայտել տալով, գալիս է Վասիլի մոտ, մի գիր է տալիս, որ ջրով կուլ տա։ Վասիլը կատարում է Օձնեցու պատվերը և անմիջապես ազատվում է ցավից։ Վասիլը զորքերին կարգադրում է հեռանալ Հայաստանից, իսկ ինքն էլ առանձնանալով Սբ. Նշան վանքում սկսում է ճգնել։*

*Մի օր Օձնեցին այցելության է գալիս Վասիլին և տեսնելով, որ նա ջրի նեղություն է կրում, խաչակնքում է և այրի մեջ խսկույն ջուր է բխում, որը կոչվում է Թնդոց։*

## 282. ԽԱՉԱՓԱՅՏԻ ՋՈՒՐ

Պատմվում է Կարինից չորս ժամ ճնռավորության վրա, Խաչկա վանք մենաստանի մոտ

*Հերակլ կայսր զկնի առնլոյն զԽաչափայտն ի Թշնամեաց, իբրև հարկ լինէր դարձեալ պատերազմ տալ ընդդէմ արշաւանաց նոցա, յայս լեառն թագուցանէր զգուշութեամբ զպատուական խաչն, քանզի յայսմ սահմանի գտանէր յայնժամ Հերակլ։ Եւ ինքն զհետ երթեալ Թշնամեաց, յետ դարձ առնելոյն, բղխեալ գտանէր, ասեն, սքանչելեօքն զայս ջուր պատուական։*

## 283. ՇԽՆՈՑ

Պատմվում է Կարնո Շխնոց գյուղում

*Այս ջրհորում ապրող մեծ գորտի միջոցով մարդիկ այստեղ գալով գուշակություն են արել ապագայի վերաբերյալ։ Եթե գորտը ջրից դուրս գար և մի վայրկյան ջրհորի եզրին մնալուց հետո, նորից անհետանալ ջրի մեջ, ապա նրանց մտադրությունը կամ ուխտը անպայման կիրակա նանար։*

## 284. ՀՆՁԱՆ

Գտնվում է Շապին-Գարահիսարի Թամզարա գյուղաքաղաքի մոտ

*Այս աղբյուրի ավազանի մեջ կա մի պահապան օձ։ Երբ մարդիկ ջուր են խմում, օձը մեկ-մեկ գալիս է ծորակի բերանը։ Իրենց բախտը փորձելու համար, ոմանք այդ աղբյուրից ջուր էին խմում. եթե ջուր խմելու ժամանակ օձը երևար, նշանակում էր, որ նրա բախտը լավ է և ուխտը կատարված։*

## 285. ՕԽՏՆ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Շապին-Գարահիսարի Թամզարա գյուղաքաղաքի մոտ

*Սրա ջուրը խենթացնող հատկություն է ունեցել։ Այստեղ եղել են մի քանի թեթևամիտ մարդիկ, որոնց համար ասել են, թե նրանք օխտն աղբյուրի ջուրն են խմել, դրա համար էլ ցնորվել են։*

## 286. ԼՈՒՍ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Եվդոկիայի Ջիլե քաղաքից դեպի հարավ

*Արիստակես հայրապետը Նիկիայի ժողովին գնալիս՝ եղել է այստեղ. աղոթքով ու հրաշքով մի աղբյուր է բխեցրել, որի ջրով մկրտվում և բուժվում են։*

## 287. ԱԿՆ

Գտնվում է Մանազկերտի շրջանում

*Ամեն տարի, Համբարձման տոնին, առավոտ վաղ հրեշտակները մի անմահական խնձոր են դնում այս ջրի մեջ։ Ով լուսաբացին շուտ գա՝ նա կտեսնի այդ խնձորը, բայց հենց որ ձեռքը երկարի վերցնելու, խնձորն իսկույն կանհետանա։*

## 288. ՍԲ. ԿԱՐԱՊԵՏԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Սեբաստիայի Կովտուն գյուղի մոտ

*Երբ Գրիգոր Լուսավորիչը Հայաստան է եկել, նրա ջորու ոտը այստեղ խրվել է գետնի մեջ, որտեղից և սկսել է աղի ջուր բխել։ Դրա համար էլ կոչվում է Սբ. Կարապետի աղբյուր։*

## 289. ՋՐՈՎ ԹՈՆԻՐԸ ԿԱՄ ՅՈԹ ԹՈՆԻՐ

Գտնվում է Վասպուրականի Լեզք գյուղի հյուսիս-արևելյան կողմում

*Այստեղ մի ժամանակ մի բարեպաշտ քահանայի տուն է եղել, ուր ամեն օր վառվել է յոթ թոնիր։ Մի օր քահանան պատարագ անելիս նկատում է, որ նշխարը սովորականի պես չի կտրվում։ Մտածում է, որ տանը որևէ մեղք է գործվել։ Շտապում է տուն և այդ մասին հարցնում տիրուհուն։ Տիրուհին ասում է, որ առավոտը մի աղքատ է եկել և Քրիստոսի սիրուն՝ նախ մի կտոր հաց է ուզել, ապա՝ պանիր, իսկ վերջում էլ՝ համբույր։ Քահանան բարկանալով ասում է. Եթե ոչինչ չի կարելի մերժել Քրիստոսի սիրույն, նետիր քեզ վառված թոնրի մեջ։ Եվ տիրուհին անմիջապես նետվում է թոնիրը, որն իսկույն ջրով լի ավազանի է փոխվում։ Քահանան այս հրաշքը տեսնելով ինքն էլ է նետվում ավազանի մեջ, ուր երկուսն էլ ձուկ են դառնում։*

## 290. ԿԱԹՆԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Վարագա լեռան մոտ

*Սանատրուկ թագավորն ու իր շունը բորոտ են եղել։ Մի օր շունը գալիս անցնում է Աղբակա ջրով, մտնում Կաթնաղբյուրի մեջ։ Դրանից հետո Սանատրուկը տեսնում է, որ շան բորը անցել է։ Հետևյալ օրը ինքն էլ է մտնում Աղբակա ջուրը, լողանում Կաթնաղբյուրի մեջ և ազատվում է բորից։*

## 291. ԱՐՃԱԿԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Վասպուրականի Արճակ գյուղի մոտ

*Արճակ լճում ապրող հրեղեն հարսը լողացել է այս աղբյուրում։ Ասում են, թե այս աղբյուրի ջուրը խմողը կբորբոքվի անարատ սիրով, իսկ ձայնն էլ անուշ կդառնա։*

## 292. ՍԲ. ԱԲՐԱՀԱՄԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Վասպուրականում, համանուն վանքի մոտ

*Աբրահամ խոստովանողը խուժաստանից գալով, այստեղ մատուռ է շինել և ապրել այնտեղ ճգնավորի կյանքով։ Ջուր խմելու համար նա*

*ստիպված էր գնալ մեկ ժամվա հեռավորության վրա գտնվող աղբյուրը։ Մի օր էլ ճանապարհին նեղվելով շոգից ու ծարավից, Աբրահամը սկսում է արտասվել։ Երբ մատուռ է վերադառնում, տեսնում է, որ այնտեղ աղբյուր է բխում։*

### 293. ՍԲ. ՀԱԿՈԲԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Ռշտունյաց գավառում, Ընձաքիսար լեռան ստորոտին

*Գայր հասանէր սքանչելի եպիսկոպոսն Յակոբ, և որ ընդ նմայն էին, ի լեռան երկաթահատացն և կապարահատացն, ընդ Ռըշտունիս։ Եւ բաժանէր լեռան բարձր, ուստի երեւէին գաւառքն բովանդակ, որում անուն Ընձաքի սար կոչէին։ Իբրեւ հուպ եղեւ յայն լեռան ի ստորոտ լերինն, քանզի բազում աւուրք էին զի չէր բնաւ ամենեւին ճաշակեալ, և ծարաւեաց խիստ ծարաւով։ Եկաց յաղօթս առ տէր, դնէր ծունր, և եդ զգլուխ իւր ի վերայ երկրի, և բղխեաց աղբիւր, ուստի արբ ինքն և որք ընդ նմայն էին։ Եւ եղեւ այս ըստ առաջին օրինակին. որպէս արար ի Սարարադ լերինն, սոյնպէս և առ ոտին Ընձաքիարս լերինն ի ծովեզերն Ռըշտունեաց ծովուն, որ ըստ առաջնոյն օրինակի կոչի և այս աղբիւր Յակոբայ մինչև ցայսօր ժամանակի։*

### 294. ԱԿԱՆՋԱՑԱՎԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Մոկս գետի ակունքի դիմացի քարայրում

*Այստեղ ապրելիս է եղել մի ճգնավոր։ Հոգեվարքի ժամանակ նա հովվին ուղարկել է դիմացի այրում գտնվող վարդապետի մոտ, որպեսզի հաղորդություն ստանա նրանից։ Վարդապետը չի եկել։ Ճգնավորի անեծքով նա քար է դարձել և բերանից սկսել է հոսել Մոկս գետը։ Տեսնելով, որ աստված կատարեց իր խնդիրքը, ճգնավորը խնդրել է, որ իր ապրած այրում էլ աղբյուր բխի և այն լինի ականջացավի դեղ։ Աստծու կամքով կատարվել է ճգնավորի երկրորդ խնդիրքը ևս, և սկսել է բխել Ականջացավի աղբյուրը։*

### 295. ՁԻԱՎՈՐԻ ՃՈՒՌ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Մոկսից դեպի Հաղին տանող ճանապարհի վրա

*Սասունցի Դավթի ձին սաստիկ ծարաված ժամանակ սմբակով խփել է և գետնից բխել է այս աղբյուրը, որ կոչվում է Ձիավորի ճուռ։*

## 296. ԿԱՃԵԹԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Շատախի Կաճեթ գյուղում

*Սրա ջուրը, ըստ ավանդության, խենթացնելու հատկություն ունի։ Դրա համար էլ կաճեթցիք թեթևամիտ կամ ծուռ են համարվում և նրանց մասին պատմվում են զանազան ծիծաղաշարժ պատմություններ։ Ասում են, թե խրիմյան Հայրիկը փակել է տվել այդ վնասակար աղբյուրը, որից հետո կաճեթցիք խելոքացել են։*

## 297. ԼՈՒՍԱՂԲՅՈՒՐ ԿԱՄ ՕՁԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Շատախի Գեղաշեն և Սեմալ գյուղերի միջև

*Ծերացած և հիվանդ օձերը գիշեր ժամանակ գալիս մտնում են այդ ջրի մեջ, բուժվում և երիտասարդանում։*

## 298. ԾԱՊՈՒԿՈՐԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Բաղեշի ճամանում գյուղի մոտ. մի ապառաժ
լեռան ստորոտին

*Վէճ բազում լինէր ի գիւղականսն վասն ոռոգելոյ զարտորայս ի նոյն ջրոյ, մինչև ի պատճառս նորա սպանանել առն զընկեր։ Եւ ի միում գիշե-րի վէմ մեծ գլորեալ ի լեռնէ և անկեալ ի վերայ աղբերականն՝ յերկուս առաջս բաժանէ, և դադարի ամենայն կռիւ։ Եւ մինչև ցայսօր տեսանի նոյն քար ահագին և առաջք ջրոյն։*

## 299. ԳՈՒՌԳՈՒՌԱ

Գտնվում է Մշո դաշտի արևմտյան ծայրին, Ողական բերդի մոտ

*Էնդուր համար կըսեն Կուրկուռա՝ չումքի (որովհետև) ձեն կիտա, ուր ձեն երեք սհաթվա (ժամվա) ճամփա կերթա, ու էտ տեղաց բոլորն էլ գիտեն, որ շատ անձրև պիտի գա։*

## 300. ՄԱՄՈՒՇԵՂԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Բալուի շրջանում

*Եւ էր մօտ ի գետն Մամուշեղ աղբեւր մի, և ձուկն բազում ելանէր ընդ ակն աղբերն, և բազում մարդիկ հանեալ զձուկն, օգտէին ի նմանէ։ Ապա*

*երկու եղբայրք ի վերայ ձկանն հակառակեալք, էսպան մինն զմինն. և իբրև գիտաց սուրբն Եփիփան, ասէ. Յայսմ հետէ այտի ոք ձուկն մի կերիցէ։ Եւ անդէն դառնացաւ ձուկն տեղւոյն, և եղև իբրև զլեղի դառն մինչև ցայսօր ժամանակի. և ոչ ոք որսաց զնա մինչև ցայսօր ժամանակի։*

## 301. ԱՐԵԳԻ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Գտնվում են Դերսիմի Թորուտ գյուղի մոտ

*Այս աղբյուրների ջրերը կենարար են և զավակատուր։ Արու զավակ ունենալ ցանկացողները խմում են արևելյան ակից, իսկ աղջիկ ուզողները՝ արևմտյանից։ Դրանից էլ ծագել է աղբյուրների՝ Արեգի (արուի և էգի) անունը։*

## 302. ԼՈՒՍԱԲԵՐ ԱԿԸ

Գտնվում է Սեպուհ լեռան վրա

*Ի լեռան Սեպուհոյ Գրիգոր աղօթեր, անտես ի մարդկանէ՝ միշտ առաստուած էր... Յանկարծ հրեշտակն երկնից առ նայ իջանէր, և առագաստ վերին ընդ նա հրաւիրէր։ Իսկ նայ անգուն կացեալ զձեռն տարածէր, զմաքուր հոգին առ տէր Յիսուս աւանդէր...*

*Յանկարծ հովիւ մ՚ետես, որ յազգաւ քուրդ էր, զի լույս պայծառագոյն անդ փայլատակէր։ Գնացեալ հովին եգիտ, զի անդ կանգուն էր, վերա զաւազանին նա հաստատեալ էր։*

*Զբոլորն քարիւ շինէր, զվերևն ծածկեր, չի գիտէր, թե ոք է կամ որ ազգէ էր։ Զենոն կայսրն խնդիր նմայ ելանէր, և զլուսատուն հայոց սիրով հարցանէր։ Հովին, որ զնայ ծածկեաց, դեռ կենդանի էր, այլ երկօքին աչօքն խաւարեալ էր։ Նըշանաց ի տեղի սրբոյն ցուցանէր, եւ զինքն ի նոցայ տանել պատուիրէր։ Գնացեալ մերձ ի լերին, որ սուրբ մարմինն էր, անդ էր աղբեր ջրոյ, որ քաղցրահամ էր։ Լուացեալ զերեսն անդէն հովին, որ կոյրն էր, շնորհօք Լուսաւորչին աչքըն տեսանէր. զմարմին աստուածավարդ փութով ցուցանէր, իսկ ակն՝ Լուսաբեր յայնժամ զնայ անուանէր։*

## 303. ՎԱՐԴԱՇԵՆՔԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Գտնվում է Խարբերդի դաշտի հարավային կողմում

*Մի հարուստ աղջիկ և աղքատ տղա սիրահարվում են և ուխտում՝ միասին ապրել, միասին մեռնել։ Աղջկա ծնողները գտնում են մի ուրիշ, հարուստ փեսացու։ Նշանդրեքից մի քանի օր առաջ աղջիկը մոր և տան հարսների հետ գնում է Վարդաշենք կոչված բլրաձև բարձունքը՝ դաշտային աշխատանք կատարելու։ Այստեղ նա գտնում է իր սիրած տղային և առանձնանում է նրա հետ։ Մայրը տեսնելով նախատում ու անիծում է նրանց։ Տղան ու աղջիկը հուսահատ դիմում են աստծուն և խնդրում իրենց վարդի թփեր դարձնել։ Անմիջապես կատարվում է նրանց խնդիրքը։ Աղջըկա մայրը վրեժխնդրությամբ լցված դիմում է չար ոգիներին, որոնց կամքով երկու վարդենիների արանքում մի փուշ է բուսնում, խանգարելով նրանց մոտենալ իրար։ Սիրահարների արցունքներից Վարդաշենքում աղբյուր է գոյանում, որին բուժիչ հատկություն է վերագրվում։*

## 304. ՉՈՐՍ ԾՈՐԱԿ

Գտնվում է Ակնի Կամարակապ գյուղում

*Հնում, կաղանդի օրը գյուղի հարսները զարդարվում էին և մկրատները բռնած, իջնում աղբյուրի մոտ երգելով հետևյալը.*

*Ջրին բարին, ջրին մորին.*
*Անդնդային թագավորին.*
*Ջուր կաղընտեր ես։*

*Վերջին խոսքն արտասանելիս ձևացնում էին, թե կտրում են ջուրը։ Այս աղբյուրը ժամանակին ունեցել է չորս ծորակ, որից և ստացել է իր անունը։*

## 305. ԿՈՎԿՈՒԼ

Գտնվում է Ակնի Ապուշեխ գյուղի մոտ

*Կովը մտնում է սրա ակի մեջ և այլևս չկարողանալով դուրս գալ, կորչում է։ Դրա համար էլ այս աղբյուրին Կովկուլ (կով կուլ տվող) են ասում։*

## 306. ՕՁԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Սասնո Շուշնամերկ և Գեղաշեն գյուղերի մոտ

*Վերքերով ծածկված օձը գալիս է այս աղբյուրը, մտնում ջրի մեջ և լողանում։ Դրանից հետո նրա մարմինն առողջանում է, կաշին թողնում և մի աշխույժ շահմար (արքայօձ) դառնալով, դուրս է գալիս ջրից ու գնում։*

## 307. ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՂԲՅՈՒՐ

Գտնվում է Նիկոմիդիայի Ջաֆար-բեոյ գյուղից մեկ ժամ
հեռավորության վրա

*Ասում են, թե այս աղբյուրը գավազանի հարվածով բխեցրել է պարտիզակցի Հովհաննես անունով մի մենակյաց ու մաքրաբարո վարդապետ։ Դրա համար էլ այն կոչվել է Վարդապետի աղբյուր։*

## 308. ՄԱՐԱՇԻ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Գտնվում են Մարաշ քաղաքում

*Ժամանակին թաթարները հարձակվում են Մարաշի վրա և թալանում ու կոտորում։ Հանկարծ տեղատարափ անձրև է սկսվում և հեղեղում է քաղաքի բոլոր փողոցները։ Օգտվելով դրանից մարաշցիք հարձակվում են թաթարների վրա և դուրս վռնդում նրանց քաղաքից։ Երբ ամեն ինչ խաղաղվում է, մարաշցիք վախենալով, որ թաթարները կարող են նորից վերադառնալ, թողնում են քաղաքը և բարձրանում մոտակա լեռան գագաթը։ Այստեղ նորից հեղեղանման անձրև է տեղում որոտումներով ու կայծակներով։ Երբ ամեն ինչ հանդարտվում է, մարաշցիք իջնում են քաղաք, ուր երկու նոր աղբյուր են գտնում։*

## 309. ՆԱՀԱՏԱԿ

Գտնվում է Զեյթունում

*Այս աղբյուրի մոտ Իպիշ անունով մուսուլմանը սպանել է Հակոբ անունով հայ կոշկակարին։ Վախենալով զեյթունցիների վրեժխնդրությունից՝ մարդասպանը փախել է Մարաշ։ Այդ դեպքից հետո աղբյուրը ստացել է Նահատակ անունը։*

## ԲՈՒՅՍԵՐ

### 310. ՄԱՆՈՒՇԱԿ

Ա

*Մանուշակը ժամանակին մի գեղեցիկ, բայց շատ խաբարբզիկ աղջիկ է եղել։ Իրենց տան գաղտնիքները նա հայտնել է ուրիշներին, ուրիշներինն էլ՝ տանեցիներին։ Մայրը երկար խրատելուց հետո, երբ տեսել է, որ չի ուղղվում, անիծել է նրան, ասելով. «Զոլերն ընկնես, լեզուդ ծոծրակովդ դուրս գա»։ Եվ նա անմիջապես ծաղիկ է դարձել։*

Բ

*Ճանապարհից հոգնած Հիսուսը նստում է մի թփի տակ հանգստանալու։ Մանուշակը չճանաչելով նրան, ասում է. Բարեկամ, մի քիչ հեռու ինձանից, շունչս կտրեցիր, հոտս առար։ Հիսուսն անիծում է մանուշակին ասելով. Դեռ չզորացած՝ չորանաս։ Դրա համար էլ մանուշակը բացվելուց հետո շուտ թառամում է։*

Գ

*Տեսնելով իր մոտով անցնող Քրիստոսին, մանուշակն ասել է. Հեռացիր մոտիցս, չխենթանաս հոտիցս։ Բարկացած Քրիստոսն անիծել է նրան ասելով. Լեզուդ տակիցդ դուրս տա։ Դրա համար էլ մանուշակի գլուխը միշտ դեպի ցած է խոնարհված։*

### 311. ՎԱՐԴՆ ՈՒ ՄԱՆՈՒՇԱԿԸ

Ա

*Վարդն ու մանուշակը քույր ու եղբայր են եղել։ Վարդը փշերով միշտ ծակոտել է մանուշակին, սա էլ ծծել է նրա արյունը և քսել իր երեսին։ Տեսնելով քրոջ ու եղբոր անվերջ կռիվները, մայրն անիծել է նրանց, որ միմյանց կարոտ մեռնեն։ Այդ օրվանից վարդն ու մանուշակը այլևս մեկ մեկի երես չեն տեսնում։ Ասում են, թե ով որ նրանց իրար մոտ բերի, մուրազաշոր կմեռնի։*

Բ

*Վարդն ու մանուշակը քույր ու եղբայր են։ Նրանք միշտ իրար կարոտ են մնում։ Եթե մեկը կարողանա պահել մանուշակին և ցույց տալ քրոջը՝ ցանկացածն անմիջապես կկատարվի։*

### 312. ԱՂԲՐԱՆՑ ԱՐՈՒՆ

Ա

*Յոթ եղբայրներ լեռներում սպանվել են քուրդ ավազակներից։ Նրանց թափած արյունից բուսել է մի տխուր, արյունագույն ծաղիկ։ Սրա մոտ գրեթե միշտ լինում է լալան, որն իր զանգակաձև պսակը կախած, միշտ լաց է լինում սպանված եղբայրների համար։*

Բ

*Յոթ եղբայրներ ժամանակին սպանվել են չարագործների կողմից։ Նրանց թափած արյան կաթիլներից գոյացել է աղբրանց արուն կոչված ծաղիկը։*

### 313. ՆՈՒՆՈՒՓԱՐ

*Սասունցի Դավիթը Մեղրագետում լողանալիս նետահար է լինում դարանակալ թշնամուց։ Դավթի թափած արյան կաթիլներից բուսնում է Նունուֆար ծաղիկը։*

### 314. ՀԱՐՍԻ ԼԵԶՈՒ

*Հարս ու սկեսուր շարունակ կռվելիս են լինում։ Մի օր սկեսուրը անիծում է հարսին, ասելով. Հարսնուկ, թող լեզուդ ծոծրակիցդ դուրս գա։ Հարսն իսկույն ծաղիկ է դառնում, լեզուն ծոծրակից դուրս եկած։*

### 315. ՁԻՑՏԵՄ

*Երբ Մարիամ աստվածածինը զբաղված էր բաղարջների վրա ձվի դեղնուց քսելով, հանկարծ իմանում է սիրելի որդու մատնության և բռնվելու լուրը։ Առանց ձեռները լվանալու նա վազում է՝ ժամ առաջ տեսնելու Հիսուսի վիճակը։ Ճանապարհին նրա ձեռքերից կաթկթած դեղնուցքից հա-*

զարավոր ծաղիկներ են բուսնում: Այդ ծաղիկները երևում են ամեն տարի Զատկի տոնին և հայտնի են Զիյտեմ անունով:

## 316. ՊԱՌԱՎԻ ԾԱՂԻԿ

Կա մի խոտաբույս, որի ծաղիկներին պառավի ծաղիկ են ասում: Ասում են, թե հարսը կռվել է սկեսուրի հետ: Զար սկեսուրը բարկացած՝ ծռծրակից դուրս է քաշել նրա լեզուն: Հարսն իսկույն ծաղիկ է դարձել:

## 317. ՍԻՐԻ-ՍԻՐԻ

Երեք եղբայր միաժամանակ սիրահարված են եղել միևնույն աղջկա վրա: Խանդելով ու նախանձելով մեկ-մեկի՝ եղբայրները կոտորել են իրար: Սիրի-սիրին եռատերև բույս է, որ գոյացել է այդ երեք եղբոր արյունից:

## 318. ԱՄԱՆԿՈՏՐՈՒԿ

Ասում են, թե տեսնելով սրա գեղեցկությունը ամանները նախանձից կոտրվում կամ ճաքում են: Դրա համար էլ այս ծաղիկը ստացել է ամանկոտրուկ անունը:

## 319. ԱՐԱՔՍԱ

Ասում են, թե հնում Արաքս գետի մեջ աճելիս է եղել մի բույս, որին տեղացիները Արաքսա են կոչել, որ նշանակում է կույսերին արհամարհող: Երբ աղջիկները գտել են այդ բույսը, նա արյունահոսություն է պատճառել նրանց և ինքն էլ անմիջապես թառամել է:

## 320. ԵՂԵՎՆԻ

Քրիստոս գալիս է եղևնու ծառի մոտ: Եղևնին զգուշացնում է նրան, ասելով. Հեռացիր մոտիցս, կվնասվես հոտիցս: Քրիստոս օրհնում է եղևնուն, որպեսզի նա միշտ կանաչ մնա:

## 321. ՍՈՍԻ

### Ա

*Երբ Քրիստոսին որոնում են բռնելու համար, նա պահվում է սոսի ծառի սաղարթների մեջ։ Հետապնդողները գալիս են մոտ. սոսու վրայից խուլույն կանչում է կկուն։ Հետապնդողները հեռանում են, մտածելով, որ եթե ծառի մոտ մարդ լիներ՝ կկուն չէր թառի ծառին։ Ազատվելով թշնամիներից, Քրիստոսը օրհնում է սոսի ծառը, որ նա ամառ-ձմեռ կանաչ մնա, իսկ կկվին էլ օրական երեք ձիտ բաժին է նշանակում, որոնցից մեկին նա միշտ մատաղ է անում՝ բաց թողնելով, իսկ մյուս երկուսին ուտում է։*

### Բ

*Մեղրու շրջանում, կան չորս հսկայական սոսիներ։ Սրանց մասին ասում են, թե 400—600 տարեկան են։ Դրանց մոտ ժամանակին հանդիպել են Գավիթ բեկն ու Մխիթար սպարապետը։ Մի սոսու փչակի մեջ հայ զինվորները պահել են իրենց սրերը, նետերն ու վահանները։ Մյուսի մեջ աշխատել է մի կոշկակար, որը չորս հաճախորդ է ընդունել միանգամից։*

## 322. ԳԻՀԻ

### Ա

*Հրեաներից հալածվելիս Քրիստոս փախչում, մտնում է գիհու (գենու) անտառը և պահվում է ծառերի խիտ ճյուղերի տակ։ Երբ ազատվելով թշնամիների հետապնդումից, նա դուրս է գալիս անտառից, ասում է. Օրհնյալ լինես գիհի, միշտ կանաչ մնաս, քաղցր հոտը քեզանից անպակաս լինի։ Դրանից է, որ գիհին միշտ կանաչ է և քաղցր հոտ ունի։*

### Բ

*Նարեկացին հոտաղ է լինում մի գեղցու մոտ։ Մի անգամ տան պառավը բարկանալով՝ անթրոցը (թոնիրը խառնելու երկաթե ձողը) նետում է նրա ետևից։ Նարեկացին վերցնում է անթրոցը, տնկում գետնի մեջ և ինքը անհայտանում։ Անթրոցը ծաղկում և դառնում է գիհի ծառ։*

Գ

Նարեկացին բարակ ճիպոտով յոթ տարի արածեցրել է տիրոջ եզները՝ առանց նրանց մեկ հատիկ վառ խոտ ուտելու ու ծեծելու։ Ջեվիկ գյուղի մեջտեղ բուսած կանաչ ու փարթամ գիհի ծառը, որ շուք է անում չորս կողմը, հոտաղ Նարեկացու ճիպոտն է, որ նա ժամանակին տնկել է այդտեղ։

## 323. ՓՇԱՏԵՆԻ

Հովհաննես Մկրտիչը մի անգամ փողոցում պատահում է Մարիամ Աստվածածնին։ Իր կնքահոր (Հովհաննեսի) աչքից թաքնվելու համար Մարիամը մտնում է մոտակա փշատենու տակ, որ կռացնելով ճյուղերը՝ ծածկում է նրան։ Այդ օրվանից էլ փշատենու դեպի վեր պարզված ճյուղերը կռանում են ցած։

## 324. ՈՒՌԵՆԻ

Ուռենին ժամանակին երիտասարդ աղջիկ է եղել։ Նա երկար սպասել է սիրած տղային, բայց տղան չի եկել… Խեղճը մտածմունքից կռացել, ուռենի է դարձել։ Ասում են, թե նա այդ օրվանից գլուխը կախ կանգնած է ջրերի վրա և լուռ հեկեկում է։

## 325. ՀՈՆԻՆ ՈՒ ԲԱԼԵՆԻՆ

Հրեշտակն ու սատանան գրազ են գալիս, թե ում ընտրած ծառն ավելի շուտ պտուղ կտա։ Հրեշտակն ընտրում է բալենուն, իսկ սատանան՝ հոնին։ Նա հոնու տակ նստած երկար սպասում է պտղին, բայց պտուղը չի հասնում։ Մեկ էլ տեսնում է, դիմացից գալիս է հրեշտակը՝ բաան մեջ լիքը բալ։

## 326. ԽԱՂՈՂԻ ՈՐԹԸ

Հրեշտակը հյուր է գալիս Աբրահամի մոտ։ Տանը ուտելու բան չի լինում։ Աբրահամը մորթում է հորթը։ Կովը երեկոյան տուն գալով, բառաչելով սկսում է փնտրել հորթին։ Կովի ձայնն ընկնում է հյուրի ականջը։ Նա պատվիրում է տանտիրոջը՝ բերել մորթված հորթի կաշին ու ոսկորները։ Աբրահամը կատարում է նրա պատվերը, միայն չի գտնում հորթի

*ազգրոսկրը։ Հրեշտակն օրհնում է, և հորթը իսկույն ոտի է կանգնում։ Քիչ անց Աբրահամը գտնում է նաև կորած ոսկորը և բերում է հրեշտակի մոտ, որը պատվիրում է Աբրահամին այն թաղել այգում։ Աբրահամը կատարում է հրեշտակի պատվերը։ Մի տարի անց հորթի ոսկորից բուսնում է խաղողի որթը։*

## 327. ԽԻՆԴԵՂՆ ՈՒ ԽՆԴՈՂԸ[1]

*Խինդեղն ու խնդողը ուրուր (իրար) նման բույսեր են իլալ (եղել)։ Պտուղներն ուրուր ռանգի (գույնի), մի ջուռա (տեսակ) համով, հոտով։ Մե հետ (անգամ) մին մարթ կյամ ա, ուտում տահանց պտուղներան, հիանում ու սկսում ա թարիփ անել (գովաբանել)։ Էտ թարիփան խինդեղնը գոռզանըմ ա, ծըքյվում, պըցրանում, էլ մտածում չի ուրան պտուղները քըղծրցնելու հետի (համար)։ Խնդողնը հակառակն ա անում։ Մարթու թարիփան հըմանչում, լուզուն կպչվում ա, ասում ա. «Ես հունց արժանի տառնամ մարթու թարիփին»։ Կլոխը քաշ, մտածըմ ա ուրան պտուղնեն ավելի քըղծրցնելու հետե (համար)։*

*Մարթը մե հետ էլ ա կյամ նահանց կոշտը (մոտ)։ Տեսնըմ ա խինդեղնը պըցրացած, քեթը երգինք ցցած, պտուղնեն աղու, լղե։ Խնդողնին՝ խաղողըն քա՛ղծր, քա՛ղծր, ինքն էլ կլոխը քաշ, կռացած։*

## 328. ԾԽԱԽՈՏ

### Ա

*Սրտի հիվանդություն ունեցող մեկը դաշտում ման գալիս, մի բույս է տեսնում, ոսկու պես դեղին տերևներով։ Նա հավանում է այդ տերևներին, պոկում, մանրում է և թղթի կտորի մեջ փաթաթելով, սկսում ծխել։ Շատ չանցած նրա հիվանդությունն անցնում է։ Ասում են, թե ծխախոտ ծխելու սովորությունը դրանից հետո է մնացել։*

### Բ

*Թագավորի աղջիկը հիվանդանում է բորով։ Բուժելու բոլոր փորձերը զուր են անցնում։ Հիվանդին ստիպված տանում են ծովափ և թողնում*

[1] *Առաջինը խաղողի նման բույս է, դառն պտուղներով, որից սև գույնի ներկ են պատրաստում։ Երկրորդը՝ սև գույնի ընտիր խաղող է, որից գինի են պատրաստում։*

այնտեղ, որպեսզի շուտ մեռնի։ Բորոտ աղջիկն այստեղ ծխախոտի տերևներ է գտնում. քաղցած լինելով, ուտում է և բուժվում բորից։

Գ

Քրիստոսը քարոզելով շրջել է դաշտերում։ Բոլոր բույսերն ու խոտերը երկրպագություն են տվել նրան, չեն շարժվել տեղից միայն ծխախոտի տերևները։ Տեսնելով այդ, Քրիստոսը անիծել է ծխախոտին, որ նրա տերևները միշտ այրվեն։ Դրանից հետո է, որ մարդիկ սկսում են ծխել ծխախոտը։

### 329. ԲԱՄԲԱԿ

Աստված մարդուն կավից պատրաստելուց հետո, ձեռքերը իրար է քսել։ Կավի մնացորդները թափվել են գետին և նրանցից գոյացել է բամբակը։

### 330. ՉՄԵՐՈՒԿ

Գագիկ թագավորի ծառաները պալատի առաջ մի օձ են տեսնում, որը անհանգիստ գետնին էր քսում եղջյուրները։ Թագավորը կարգադրում է կտրել օձի եղջյուրները։ Դրանից հետո օձը հանգստանում է և գոհ հեռանում։ Ժամանակ անց նա նորից երևում է պալատի մոտ և բերանից մի կորիզ գցելով, անհայտանում է։ Գագիկի ցուցմունքով կորիզը տնկում են և հետևում նրան։ Ամռանը այդ կորիզից մի հսկայական կլոր պտուղ է աճում։ Փորձելու համար մի կտոր տալիս են ուտելու մերձիմահ ծերուկի։ Սա անմիջապես կազդուրվում է ու երիտասարդանում։ Գագիկն իր պալատականների հետ՝ վայելում են պտուղի մնացած մասը և նույնպես կազդուրվում ու երիտասարդանում։ Դրանից հետո այդ պտուղի անունը դնում են չմեռուկ, որը բերանից-բերան անցնելով, դառնում է ձմերուկ։

### 331. ԼՈՇՏԱԿ

Լոշտակ անունով մի փոքրավոր է եղել։ Իր վարդապետից սաստիկ տանջվելով՝ նա մի օր քնած ժամանակ կանթեղից ձեթ է լցրել նրա մորուքին և կրակ տվել։ Վարդապետը զարհուրած զարթնել է և տեսնելով Լոշտակին, ասել. Գետինը մտնես։ Լոշտակն իսկույն գետինն է մտել։ Վարդապետը զղջալով ասել է. Ամենայն հիվանդության դեղ լինես։ Սակայն, քիչ անց, զգալով այրվածքի ցավը, նորից է անիծել Լոշտակին, որ

*ով նրան հանի՝ ինքը մտնի տեղը։ Այդ է պատճառն ահա, որ մարդիկ շանն են հանել տալիս նրան։*

### 332. ՀՐԱՇԱԳՈՐԾ ԲՈՒՅՍԸ

*Մի բորոտ, Լաթար (Բուլանըխի շրջան) գյուղի սարերով անցնելիս, պատահում է հնձվորներին։ Տեսնելով գերանդու լվացուկը նա վերցնում է այն և մեկ ումպով խմում. խմելն ու ուշագնաց լինելը մեկ է լինում։ Մի ժամ անց, ուշքի է գալիս և, օձի նման շապիկը թողնելով, դառնում է մորե մեկ (բոլորովին առողջ)։*

### 333. ՋՀՈՒԴԻ ԾԱՌ

*Այս անունն են տալիս այն փոքր թփերին, որոնք բուսնում են գյուղերի մոտ և հաճախ էլ ճանապարհների վրա։ Ցավագարներն ու դարդ ունեցողները իրենց հագուստի փեշերից մի կտոր պոկելով կախում են այդ թփուտներին, որպեսզի իրենց հիվանդությունն ու հոգսն անցնի։*

### 334. ԱՍՏՂԱՓՈՒՇ

*Սրա ցողունը կտրելիս կաթի նման հեղուկ է դուրս գալիս, որը բաց օդում կարմրում է և արյան գույն ստանում։ Ասում են, թե այդ հեղուկը արյունն է Քրիստոսի, որին ծեծել են նույն բույսով։*

### 335. ԱՍՏՎԱԾԱԾՆԻ ԹԱԹ

*Աստվածածինը երկունքի ժամանակ, ձեռքը պարզել է այս արմատին և բռնելով նրանից՝ խսկույն ազատվել է։ Այդ արմատը գցում են ջրի մեջ և տալիս են խմելու այն կանանց, որոնք օրերով տանջվում են երկունքի ցավերից։*

### 336. ԱՌՎՈՒՅՏ

*Մայրան Աստվածածինը մըն հետ (մի անգամ) ըղանձատ (աղանձ) ա ուտում։ Քրիստոս ալ հալում հեն ա ընում խոտեն (գրկին)։ Մարդ ալ, որ ըղանձատ ուտե, կաթնը շատ կքըցըրանա, Քրիստոս մտնում ա մորը գյուրգը (գիրկ) ծեծ ուտում (կուրծք ուտում), թա. Նանե, էս հինչ ըս ըլալ*

*կերած, որ կաթնդ էշուքեն (այգան) քաղցր ա։ Էն ալ օղում չի դյուղ աստ, թա. Դե յանչա (առվույտ) ըմ կերած։ Քրիստոս թա. Դե որ ըտի ա՝ թող մըն տարե վարին, օխտը տարե հարին (հնձել)։ Մարը փշմանում ա, որ խաբալ ա, թա. Յոնչա չիմ ըլալ կերած է, ըղանձատ ըմ ըլալ կերած։ Թա՝ Ալ ընցած ա. հինչ ասալ ըմ, ասալ ըմ։ Ըտուր հետե ա (դրա համար էլ), որ յոնչան մըն հետ (մի անգամ) որ վարում ըս, օխտը տարե (յոթ տարի) հարվում ա (հնձվում է)։*

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐ

## 337. ԱՐՋ

### Ա

*Քրիստոսը աղքատի կերպարանքով եկել է այգեպանի մոտ և մի ճութ խաղող է խնդրել։ Այգեպանը մերժել է նրան։ Քրիստոսը անիծել է այգեպանին, և նրա այգին՝ անտառ, իրեն էլ արջ դարձրել։*

### Բ

*Մի հույն ծառին նստած տանձ է ուտելիս լինում։ Պատահմամբ մոտովն անցնում է Քրիստոսն իր աշակերտներով։ Քրիստոսը տանձ է ուզում հույնից։ Սա տանձի փոխարեն՝ չէչ է գցում։ Քրիստոսը երեք անգամ կրկնում է խնդիրքը և երեք անգամին էլ նույնը ստանում։ Դրա համար էլ անիծում է հույնին ասելով. Գլխիվեր ելար, գլխիվայր իջնես։ Հույնը իսկույն արջ է դառնում (արջը գլխիվայր է իջնում ծառից)։*

### Գ

*Արջը ժամանակին ջրաղացպան է եղել։ Շատ գողություններ անելու համար աստված զայրացել է նրա վրա և արջ դարձրել նրան։*

### Դ

*Ըն ժմնակ հեպ ըշխար տըր (դեռ) արտար էր, կել ու կաւ հորար (իրար հետ) կապրեն, ըն ժմնակ կեղ մը գեղնը, ըտ կեղը մեճ զապրեր շատ խելոկ հարս մը։ Սաղ օր գաշխատեր մըճ տան՝ լեզու դդրուկ (անխոս)։ Երգանք աղեն վըր կլխուն ծեն չըր էնր։ Ըդ հարսին սկեսուր մի գեղ-*

*նը, ըմլը (այնքան) չար գեզնը, ըր աստված եւո ու հեռու բըհեր (պահեր)։ Ըդ հարս գեղնը երգուհոկավ (հղի). բըլե (բայց) սկեսուր շատ կչարչըրեր զինկ (իրեն), սաղ օր կաշխատծեր ու պան չըր իդը (տալ) ուտեր։ Էդ հարսու սիրտ միս շատ կուզը, բըլե սկեսուր չիդը ուտը։ Օրմ՝ յը գերտը ուր արկծու (հարևան) դուն, կտեսնը՝ միս ը էպե, մըջ ուր մտկին կըսը. «Ախ, խոզի (երանի) իդեն (տային) քիչ մը ուտենք ու մեռնենք»։ Գը նստը, գը նստը՝ չըն իդը ուտը, գելը տուռ, գըսը. «Ախ աստված, խոզի ես էղնեք (լինեի) արջ մը, էրտեք (գնայի) ընկնեք (ընկնեի) սարեր, բռնեք ընծը ջուն ու ջնվար (վայրի գազաններ), ղուր միս ուտեք, ըմ հվես ընծծեք»։ Աստծու հրամանով գեզնը արջ ու գընգնը սարեր։*

## 338. ԳԱՅԼ

### Ա

*Մովսես մարգարեն խնդրում է աստծուն, որ նա թույլ տա իրեն մի բան ստեղծելու։ Աստծու թույլտվությամբ Մովսեսը գետնից հող վերցնելով ստեղծում է գայլին։ Սա իսկույն հարձակվում է իր ստեղծողի վրա և ուզում է ուտել նրան։ Մովսեսը բողոքում է աստծուն, ասելով, Տե՛ր, ազատիր ինձ սրա ձեռքից։ «Մի բան ստեղծելուց առաջ՝ նրա բաժինը պետք է ստեղծել»,—ասում է նրան աստված, և դառնալով գայլին, հրամայում է. Քաշվիր անտառ, այնտեղ փթրակով կկերակրվես, մեկ-մեկ էլ մարդկանց բաժինը կփախցնես։ Այդ օրվանից գայլը հաստատվում է անտառում և կերակրվում է փթրակով, մեկ-մեկ էլ փախցնում է մարդկանց բաժին զառները։*

### Բ

*Մեկը կալում նստած ժամանակ տեսնում է, թե ինչպես մի խումբ գայլեր դնչները դեպի երկինք բարձրացրած ոռնում են, իսկ երկնքից էլ ինչ-որ բաներ են թափվում, որ իսկույն ուտում են գայլերը։ Մարդն ասում է ինքն իրեն. «Մեկն էլ ես ուտեմ, տեսնեմ ինչ բան է»։ Վերցնում է երկընքից ընկած պտղի պես բանը և դնում բերանը, որից ինքն էլ գայլ է դառնում և խառնվում մյուս գայլերի խմբին։*

## 339. ԳԱՅԼՆ ՈՒ ՇՈՒՆԸ

### Ա

*Սկզբում գայլերն էին բնակվում մարդկանց մոտ, իսկ շները ապրում էին անտառում։ Մի օր էլ շները խնդրեցին գայլերին, որ թույլ տան իրենց մնալ մարդկանց մոտ։ Գայլերը խղճացին հիվանդ շներին և կատարեցին նրանց խնդիրքը։ Շներին շատ դուր եկան մարդիկ և չուզեցին այլևս անտառ վերադառնալ։ Մինչև հիմա էլ գայլերը հարցնում են նրանց. Առողջացա՞ք, դե՛ վերադարձեք։ Իսկ շները ոռնոցով պատասխանում են, որ իրենք դեռ չեն առողջացել և ուզում են մնալ մարդկանց մոտ։*

### Բ

*Կենդանիներին ստեղծելիս աստված գայլին հոտառություն տվեց, իսկ շանը՝ ուժ։ Գայլը հարձակվեց ոմեշի վրա և ուզեց պատառոտել։ Չկարողանալով այդ անել, գայլը գնաց աստծու մոտ և հոտառության փոխարեն ուժ խնդրեց։ Աստված առավ գայլի հոտառությունը և տվեց շանը, իսկ շան ուժն էլ տվեց գայլին։ Դրանից հետո շունը հոտառությամբ ավելի ապահով վիճակ ստեղծեց իր համար, քան գայլը՝ ուժով։*

### Գ

*Շների մի մասը նախկին գայլեր են։ Բարի ոգիների թելադրությամբ նրանք հեռացել են գայլերի ընտանիքից և մտել մարդկանց մոտ ծառայության։ Նրանք պայքարում են իրենց ցեղակիցների դեմ և պաշտպանում մարդուն նրանցից։*

## 340. ՇՈՒՆ

*Մըն օրի շները հվաքվալ են, ժողով ըրալ, թա՝ էս էլ մըն (մի) արդարութուն չի, վեր (որ) աստոծ մեզ ա ըրալ. ամեն օր զինջիլում (շղթայի տակ), մհակի տակ. մընը մզանա ղարկենք, քինա աստուծու կոխկը մեր բողոքն անի, բալքի (մի գուցե) մեզ էլ օրիշ հեյվաններէ (կենդանիների) նման շինի։ Մնին հնդրում են, համ էլ վերբեգի աման տեղ շները էտ պատգամավերիտ թող անեն, հաքվին (պոչի) տակը լավ վետ (հոտ) անող եղ են քյուցում, վեր ճնանչվի։ Մինչև մհեկ էլ (հիմի) էտ պատգամավերտ քյացալ ա (գնացել է), ետ չի եկալ։ Մհեկ էլ ըշտեղ (որտեղ) վեր շոնը շոն*

*ա տեսնում, հաքվին տական վեր ա օնում, գիտա (իմանա) են պատգամավերն ա, թա վեչ։*

### 341. ԿԱՊԻԿ

Ա

*Սա մի ժամանակ մարդ է եղել և պարապել է ներկարարությամբ։ Աստված անիծելով նրան կապիկ է դարձրել, որովհետև աշխատելուց առաջ ոչ երեսն է խաչակնքել, ոչ էլ աղոթել է։ Կապիկի եղունգների կապույտ գույնը մնացել է նրա ներկարար եղած ժամանակվանից։*

Բ

*Կապիկը ժամանակին մարդ է եղել և պարապել է ներկարարությամբ։ Նա մի օր նեղացրել է իր մահամերձ մորը, որի համար և մայրը անիծել է նրան։ Այդ օրվանից էլ կապիկն անհանգիստ ու անհույս թափառում է անտառներում։*

### 342. ԿԱՏՈՒ

Ա

*Նոյի տապանում ապաստան գտած ժամանակ առյուծը հանկարծ փռշտացել է։ Նրա քթից դուրս է ընկել կատուն։ Դրանից է, որ կատուն շատ նման է առյուծին։*

Բ

*Երբ Քրիստոսին չարչարում էին փշե պսակով, արցունքը առատ հոսում էր աչքերից և նա թաշկինակով սրբում էր։ Մեկը խլում է Քրիստոսի ձեռքից թաշկինակը և նետում աղբանոց։ Թաշկինակն իսկույն կատու է դառնում։*

Գ

*Քրիստոս հասարակ մարդու կերպարանքով հյուր է լինում մեկի տանը։ Մկները նեղում են թե՛ նրան և թե՛ տանեցիներին։ Քրիստոս թաշկինակը նետում է մկների վրա, որը կատվի փոխվելով բռնում է մկներին։*

Դ

Հիսուսը մի գյուղում մեծ մկներ է տեսնում, որոնք շատ վնաս էին տալիս բնակիչներին։ Գյուղացիները խնդրում են նրան ազատել իրենց այդ չարիքից։ Հիսուսը ծալծլելով թաշկինակը նետում է մկների վրա։ Թաշկինակն իսկույն կատու է դառնում և խեղդում է բոլոր մկներին։ Ասում են, թե կատուն Քրիստոսի թաշկինակն է, դրա համար էլ նրան չի կարելի սպանել։

Ե

Կատուն բստուծու յայլուխն (թաշկինակ) ա։ Մըն օր աստոծ ասալ ա. Ա կատու-յայլուխ, հինչ ես օզում, վեր քըզ հետի ինի (քեզ համար լինի)։ Կատուն ասալ ա. Ես օզում եմ, վեր տներումը չիմ (բոլոր) մարթխոխա (մեծ ու պստիկ), կնեկ կուտորվեն, մնան մըն թաք (միայն) պառավ, քու կնանիք, վեր ունդունք (դրանք) ճաշ ուտելիս՝ ես ուրանց փայն (բաժին) ոտեմ, տեսնան վեչ (չտեսնեն)։ Ըտա հետի էլ (դրա համար էլ) աստոծ ըշըըվալ ա (բարկացել), կատվին դրախտան տուս բրալ, քցալ երգիրը. համ էլ ասալ, որ աման եր կեննող (վեր կացող) կլխին տա, ծիշտ անի։

Զ

Հեղ մե (մի անգամ) սուտ մարգարե մե (Մահմետ) կփոնկտա (փորշտալ) Քրիստոսի հառեջ (առաջ), ջուխտ մե (մի զույգ) մուկ կպատի (ընկնել) պնչներուց։ Քրիստոս զուր (իր) դաստմալ (թաշկինակ) կթալե մկներու հետև, կըսե. Օրհնած, բռնե զիդա (այդ) անիծած։ Դաստմալ կեղնի կատու, կբռնե զմկներ։ Էդ հապով (այդ պատճառով) ոն (ով) որ կատու մե սպանե, հարի (մինչև) յոթ պատարագ չիտա, ուր հոգուն քավութեն ու թողութեն չեղնի (չի լինի)։

343. ՈՋԽԱՐ

Աշխարհում առաջ ոչխար չի եղել։ Իսահակի համար մի ոչխար են կախում ծառից, որի զույգ ոլորուն եղջյուրների մեջ էր գտնվում սրինգը։ Վերցնելով այդ սրինգը՝ Իսահակը նվագում է։ Դրախտում գտնվող ոչխարները սրնգի ձայնից սկսում են լաց լինել և դուրս գալով դրախտից, տարածվում են Բյուրակն (Բինգյոլ) լեռներում, այնտեղից էլ աշխարհով մեկ։

## 344. ԱՅԾ

*Ոչխարն աստծու ստեղծածն է, իսկ այծը՝ սատանայի։ Աստված հենց որ ոչխարին հոգի է տալիս, սա իսկույն վեր է կենում, սկսում է ման գալ, իսկ սատանան ինչքան աշխատում է՝ չի կարողանում այծին հոգի տալ։ Ճարը հատած գնում է աստծու մոտ գանգատ։ Աստված ասում է. Գնա, ասա՝ աստծու հրամանով վեր կաց, քայլիր։ Սատանան գնում է այծի մոտ, ասում. Իմ հրամանով վեր կաց, քայլիր։ Այծը տեղից չի շարժվում։ Երկրորդ անգամ է գնում աստծու մոտ։ Աստված դարձյալ ասում է. Գնա, ասա՝ աստծու զորությունով ել, կանգնիր։ Սատանան գալիս է այծի մոտ և ասում աստծու խոսքերը։ Այծն իսկույն ոտի է կանգնում։ Սատանան զայրանում է, քացով խփում այծի պոչին։ Դրանից է, որ այծի պոչը վեր է ցցված։*

## 345. ԽՈԶ

*Հիսուսն ու Մահմետը գրազ են գալիս գետնից աղբյուր հանելու։ Հիսուսը խփում է գավազանը գետնին և իսկույն մի զուլալ աղբյուր է բխում։ Հերթը հասնում է Մահմետին։ Սա Հիսուսին տանում է այն տեղը, ուր ինքը թաքուն ջրով լի տկեր էր թաղել։ Խփում է մեկին, մյուսին, երրորդին, ջուր դուրս չի գալիս։ Դու մի ասա, խոզը եկել, հողը փորել, տիկը ծակել և ջուրը հանել էր։ Գնում է վերջին տկի տեղը. տեսնում է, որ խոզը պառկել է տկի փոխարեն։ Բարկացած Մահմետը բռնում է խոզի պոչից, ճվճվացնում ու ասում. Ա՛յ անիծված լինես դու։ Հիսուսն իսկույն վրա է բերում. Քո բռնած տեղը միայն թող անիծված լինի։ Այդ է պատճառն ահա, որ թուրքերը խոզի միս չեն ուտում, իսկ հայերն էլ միայն խոզի պոչն են դեն գցում։*

## 346. ՎԱՐԱԶ

*Հայոց Տրդատ թագավորը Գրիգոր Լուսավորչին չարչարելու պատճառով խոզ է դառնում և ընկնում սարերը։ Մահվանից հետո նրա հոգին մտնում է վարազի մեջ և շրջում է սարերում, մինչև վերջին դատաստանի օրը։ Ասում են, թե վարազին սպանելը մեղք է, որովհետև դրանով սպանած կլինես Տրդատ թագավորին։ Մեղք է նաև խոզի միս ուտելը, որովհետև դրանով կերած կլինես Տրդատի միսը։*

## 347. ԷՇ

Ա

*Սատանան էշի ականջին ասում է, որ ինքը գետն է նետել նրա էգին։ Էշը սաստիկ վշտանում է ու սկսում է բարձրաձայն լաց լինել։ Նրա ղռռոցը այնքան անախորժ է լինում, որ սատանան շտապում է հայտնելու, որ ինքը սուտ է ասել։ Էշն իսկույն «հա՜, հա՜, հա՜» անելով կտրում է ձայնը։ Մինչև հիմա էլ, երբ էշը զռալ է սկսում, մտաբերում է սատանայի վերջին խոսքը՝ և «հա՜, հա՜, հա՜» անելով դադարեցնում ձայնը։*

Բ

*Աստված մի օր կանչում է կենդանիներին, որ խելք բաժանի։ Ամեն կենդանի գալիս է իր բաժինը վերցնում։ Բոլորից վերջը ներկայանում է էշը։ Աստված տալիս է նրան իր մոտ մնացած մի փոքր կտոր խելքը։ Էշն ասում է. Բա ես էս փոքր կտոր խելքով ինչ պիտի անեմ։ Վնաս չունի,— ասում է աստված,—վաղը շուտ կգաս, ականջներ եմ բաժանելու։ Էշը հետևյալ օրը բոլորից շուտ է ներկայանում։ Աստված մեծ-մեծ ականջներ է տալիս նրան։ Դրա համար էլ էշի խելքը փոքր է, ականջները՝ մեծ։*

## 348. ՋՈՐԻ

*Երուսաղեմ գնալիս Քրիստոսը պատվիրում է աշակերտներին, որ մոտակա գյուղից մի էշ և մի ջորի բերեն։ Աշակերտները կատարում են նրա պատվերը։ Քրիստոս նստում է ջորուն, բայց սա աքացի է տալիս նրան։ Քրիստոսը անիծում է ջորուն, ասելով. Անիծյալ լինես և երբեք չծնես։ Այդպես էլ լինում է։*

## 349. ԳՈՄԵՇ

Ա

*Նոյ նահապետը բոլոր կենդանիներից մեկական նմուշ վերցրեց իր տապանի մեջ, մոռանալով միայն գոմեշին։ Երբ ջրհեղեղն սկսվեց և տապանը լողաց ջրի երեսին, գոմեշը կիսախեղդ վազեց դեպի տապանը և սկսեց կանչել՝ «Նո՜յե, Նո՜յե...»։ Նոյը խղճաց գոմեշին և օրհնեց, որ լավ*

*լող տա, ազատվի։ Այդ օրվանից էլ գոմեշը սիրում է ջուրը և բառաչելիս «նո՞յե, նո՞յե...» է կանչում։*

Բ

*Իսկանդերը (Ալեքսանդր Մակեդոնացի) ամբողջ ցամաքին տիրելուց հետո, ծովին ևս հարկ նշանակեց։ Եվ ծովն իբրև հարկ իր հատակից սկսեց գոմեշներ նետել դեպի ափ։ Դրանից է, որ գոմեշները լավ լող գիտեն և սիրում են երկար մնալ ջրի մեջ։*

### 350. ՈՒՂՏ

Ա

*Ջրհեղեղից հետո, երբ Նոյը տապանից դուրս եկավ, ազատ արձակեց տապանում եղած բոլոր անասուններին։ Մարդիկ բազմանալով սկսեցին օգտվել ձիու, ջորու, էշի, գոմեշի, կովի և մյուս անասունների ծառայությունից, միայն ուղտն էր, որ փախել էր և ծովի ափին նստած՝ հիանում էր ինքն իրենով։ Անասունները գանգատվում են առյուծին, որ ուղտը ոչ մի գործ չի ուզում անել։ Առյուծը գալիս է ուղտի մոտ և առաջարկում է նրան անմիջապես աշխատանքի անցնել։ Ուղտն ասում է. Ո՞ւզ, ո՞ւզ... Առյուծը ջղայնացած քաշում է փայտը և հարվածելով ուղտին, ասում. Ես քեզ ցույց կտամ քո ո՞ւզը, ո՞ւզը, դու հիմա մեջքիդ կունենաս կո՞ւզը, կո՞ւզը։ Ուղտը առյուծի հարվածից իսկույն բարձրանում է տեղից և կուզը մեջքին գնում է աշխատելու...*

Բ

*Կենդանիներին հասակներ բաժանելիս աստծուն առաջինը ներկայանում է ուղտը և ստանում է ամենամեծ բաժինը։ Դրա համար է, որ նա բոլոր կենդանիներից բարձր է։*

### 351. ՕՁ

Ա

*Օձն առաջ թևեր է ունեցել։ Աստված մի օր կանչում է նրան և ասում. Թռի՛ր գնա մեռածին ասա՝ «պատանդ մաշի, տուն արի»։ Օձը թռչում է, գնում ասում՝ «Քարդ մաշի, տուն արի»։ Դրանից հետո նորից գնում է*

*ստածու մոտ։ Աստված հարցնում է. Ասեցի՞ր։ Օձը, թե՝ Այո՛։ Աստված թե՝ Ի՞նչ ես ասել։ Օձը թե՝ Ասել եմ՝ քարդ մաշի տուն արի։ Աստված բարկանում է, անիծում օձին, ասելով. Ոտներդ հող լինի, շարժվելդ էլ փորսող։ Դրանից հետո օձի թևերը վերանում են և նա սկսում է փորսող տալով շարժվել ու հող ուտել։*

Բ

*Օձն ու մարդն առաջ բարեկամ են եղել և ապրել են հաշտ ու խաղաղ։ Մի օր մարդու զավակը կացնով սպանում է օձերի թագավորի գեղեցկուհի կնոջը։ Դրանից հետո օձերը թշնամանում են մարդու հետ և աշխատում են վրիժառու լինել նրանից։*

Գ

*Մի հայ հրացան է արձակում կատաղած ուղտի վրա, բայց չի դիպչում։ Ուղտը ընկնում է նրա ետևից։ Հայը շունչը կտրած ցանկապատից իրեն այգի է նետում։ Խոտերի միջից հանկարծ մի լոկ (լորտու) է դուրս գալիս և խայթելով՝ սպանում է կատաղած ուղտին։ Դրանից հետո հայերը սկսում են պաշտել լոկին՝ նրան ազգակից համարելով։*

### 352. ԻՇԽԱՆ ՁՈՒԿ

Ա

*Ժամանակին Գյոկ-չայ կամ Ծրռան գետից միայն մի տեսակ սև ձուկ էր դուրս գալիս, որը վնասում էր ուտողին։ Այս կողմերում ապրող մի մարդ՝ Իշխան անունով, որ թողնելով աշխարհային կյանքը, ճգնավոր էր դարձել, փայտից ձուկ է շինում և նետում գետը։ Ժամանակ անց նույն գետից սկսում է դուրս գալ մի նոր հրաշալի ձուկ, որը ճգնավորի անունով կոչվում է Իշխան։*

Բ

*Դէպ լինի երբեմն ելանել փոխանակ ձկան՝ բազմութեան օձից ի ծովակէ անտի ընդ գետն, յորոյ տեսլենէ զարհուրեալ հասարակութեան՝ տարակուսին։ Այլ իշխան ոմն բարեպաշտօն ժողովեալ զհասարակութիւնն դիմէ առ Աստուած աղօթիւք և տրովք առ տնանկս. և հայցէ խնայել ի մարդիկ ի սնունդս նոցա՝ զոր առատացուցեալ է նախախնամութեամբն.*

ապա թէ զայն կամի, եղիցին կամք բարձրելոյն։ Ի ջերմեռանդութենէ աստի ըստ խնամոց տեառն դառնան օձք անդրէն ի ծովակն և ելանէ ձուկն առատութեամբ ըստ անցելոցն։ Ապա հասարակութիւնն ի տրիտուր ջերմեռանդութեան իշխանին, անուանէ զձուկն մի ի տեսակաց անտի Իշխանաձուկ յանուն նորա։

## 353. ԼԵԿԵՈՆ—ԼԵՎԻԱԹԱՆ

### Ա

Օվկիանու մեջ ձուկմ կա՝ անունը Լեկեոն է։ Ատ ձուկը անքան էրկան է, որ ինքն իրեն պոչը չի ճանչէ, գիտե թը ուրիշինն է, միշտ կէնե թը (անում է, թե) բռնե։ Ատոր գեոքսն ա (կուրծքը) զառ վարաղ (ոսկեզօծ) է, եփոր կէնե թը պոչը բռնե՝ գեոքսը դառնա կը էրկինք, փայլխտե կը (փայլփլում է)։ Եփոր ատիկ պոչը բռնե, աշխարհս վար պտի անցնի։ Աս ձուկը Ղաֆար ղոճա (ահագին) սարին բոլրտիքը (չորս կողմը) պտըտի կը։ Վեց ամիսը ժումըմ (մի անգամ) մե պտուտըմ կէնե։ Եփոր պտըտի պրծնի կը՝ անօթնա կը (քաղցում է), բանա կը բերանն ու ազմ (բավականին) ջուր կուլ կուտա, եթե դունչը դնե կը սարին, ջուրը թափլե կը (նետել) սարի գլուխը։ Թափլե կը սարի գլոխը թը չը՝ սարի գլխեն սելաֆմ (հեղեղ) պրծնի, ծառ, քար, գալ, առջ, ասլան (առյուծ), ինչ օր ռաստ գուգա՝ քշե բերե ատ ձկան բերանը լըլե կը (լցնում է)։ Ձուկը ուտելուն կուտե, մնացածը առկները խփե ու ֆնչալեն դուս ֆչե կը (փչել), Սամի քամին (սամում) ինչ է, օր Մեռած ծովի ղըրաղեն (կողմից) փչե կը, ըշտը (հենց) ատ ձկան շունչն է։

### Բ

Կա Լևիաթան անունով մի ձուկ, որը պատել է երկրի չորս կողմը, այնպես որ գլուխը հասել է պոչին, հազիվ մեկ թզաչափ հեռավորությամբ։ Նա չգիտի, որ իր քթի առջևինը սեփական պոչն է, ուստի շարունակ թշնամաբար հետամտում է կծել ու բռնել այն։ Սակայն, Լևիաթանը չի կարողանում հասնել պոչին, որովհետև ստեղծված օրից մինչև աշխարհի վերջը մազաչափ անգամ չի աճում։ Եթե նրան հաջողվի բռնել իր պոչը, այն ժամանակ աշխարհը ջարդ ու փշուր կլինի։ Երբ Լևիաթանն իր պոչը բռնելու համար ջանքեր է անում, երկիրը ցնցվում է և երկրաշարժներ են լինում։ Լևիաթանի գլխին մի շատ մեծ ադամանդ կա, որը գիշեր-ցերեկ

լույս է տալիս։ Երբ նա շարժվում է ջրի մեջ, գլխի ադամանդի լույսը փայլփլում է աշխարհի այս ու այն կողմում։

### 354. ԿՐԻԱ

Ա

Կրիան առաջ գող և շատ վարձ առնող ջրաղացպան է եղել։ Աղքատի մեկը մի օր անիծում է նրան անիրավ վարձ վերցնելու համար և ասում. Քեզ տեսնեմ այդ կոկոշը (դդմի աման, որով վարձն են չափում) գլխիդ ման գալիս։ Աղքատի անեծքը անմիջապես կատարվում է, և ջրաղացպանը կրիա է դառնում։

Բ

Ժամանակին կրիան մարդ է եղել։ Մի անգամ ճանապարհ գնալիս Քրիստոսն ընկերանում է նրան։ Գետի ափին նստում են հանգստանալու։ Մարդը հանում է պաշարը և հյուրասիրում է Քրիստոսին։ Հացի ժամանակ Քրիստոս հարցնում է նրան, թե ինչ կցանկար ունենալ։ Մարդը նայում է շուրջը, տեսնում է գետափի անհամար քարերը և ասում. Կուզենայի, որ այս քարերը ոչխար դառնային, ես էլ հովիվ, թասը բաշլուղիս (գլխանոց) մեջ դրած ման գայի և որ ոչխարից ուզեի՝ կթեի, ուտեի։ Քրիստոս խաչակնքում է ու անհետանում։ Գետափի բոլոր քարերը ոչխար են դառնում։ Մարդը հավաքում է նրանց և սկսում է ապրել հարուստ և երջանիկ։ Ժամանակ անց Քրիստոս աղքատի կերպարանքով գալիս է այս մարդու մոտ և մի քիչ կաթ ուզում։ Հովիվը բաց է թողնում շներին, որ պատառոտեն նրան։ Քրիստոս անիծում է՝ և ոչխարները քար, հովիվը կրիա, իսկ նրա սիրած թասն էլ կրիայի մեջքի պատյանն է դառնում։

### 355. ԳՈՐՏ

Սա առաջ ծոցվոր (հղի) հարս է եղել։ Սկեսրայրը նկատելով, որ հարսն առանց քաշվելու վերցնում և ուտում է սրտի ուզածը, թքել է երեսին։ Խեղճը ամոթից իսկույն գորտ է դարձել և մտել ջուրը։

### 356. ԲԱԶԵ

Մի պառավ (Տիրամայրը) աղբյուրի ջուրը վերևից պղտորելու համար անիծել է բազեին, որ ամառվա երեք ամիսներին ջուր չկարողանա խմել

*(ջուրն աչքին արյան երևա)։ Այդ է պատճառը, որ բազեն ամառվա ամիսներին ծարավից միշտ ծվում է։*

### 357. ԲՈՒ

#### Ա

*Եկեղեցուց տուն դառնալով պառավը մնացած է տեսնում իր Պողոս անունով միունճար որդուն։ Ծանր վշտից ձեռները գլխին խփելով նա խնդրում է աստծուն, որ իրեն թռչուն դարձնի։ Աստված լսելով պառավի խնդիրքը նրան բու է դարձնում։ Այդ օրվանից պառավը ո՛չ հանգիստ ունի, ո՛չ էլ քուն։ Նա գիշերները աղիողորմ ձայնով շարունակ կանչում է որդուն՝ «Պողո՜ս, Պողո՜ս...» ասելով։*

#### Բ

*Կույր բուն ժամանակին եզնարած է եղել։ Կյուրղի անունով իր ընկերոջ հետ նա մի անգամ կորցնում է եզները։ Երկար որոնում են, բայց չեն գտնում։ Երբ գիշերը վրա է հասնում, երկուսն էլ ցավից ու երկյուղից բու են դառնում։ Դեռ մինչև հիմա էլ նրանք որոնելով կորած եզները, հարցնում են իրար.*

*— Կյուրղի հե՜յ։*
*— Հե՛յ, հա, հե՜յ։*
*— Եզը գտա՞ր։*
*— Չէ՛, հա չէ՜։*
*— Վա՜յ, հարա՜ հա՜...*

#### Գ

*Եզն արածացնելիս Սհակը խոսքով է ընկնում քրոջ հետ և կորցնում է եզանը։ Երկար որոնումներից հետո, քույր ու եղբայր դատարկ տուն են գալիս և եզածի մասին պատմում խորթ մորը։ Սա անիծում է նրանց և դուրս անում տնից, պատվիրելով առանց եզան տուն չվերադառնալ։ Երկար և զուր որոնումներից հետո, քույր ու եղբայր հուսահատ դիմում են աստծուն, թևեր խնդրելով նրանից։ Աստված լսելով նրանց խնդիրքը՝ բու է դարձնում։ Ասում են, թե մինչև հիմա էլ քույր ու եղբայր փնտրում են իրենց կորած եզանը, հարցնելով իրար.*

— Սհա՞կ...
— Հե՞յ...
— Գտա՞ր...
— Չէ՛...

Դ

Վար անելիս լծան տակից անհայտանում է երկու գյուղացիների եզներից մեկը։ Նրանք սարերում ու անտառներում երկար փնտրում են իրենց կորուստը, շարունակ կրկնելով միևնույնը.

— Գտա՞ր...
— Չէ՛...։

Ճակատագիրը խղճալով նրանց՝ փիշերային բու է դարձնում։ Նրանք շարունակում են փնտրել կորած եզը հարցնելով իրար.

— Գտա՞ր...
— Չէ՛...։

Ե

Երկու եղբայրներ կորցնում են իրենց միակ քրոջը։ Գնում են նրան գտնելու։ Փնտրելիս շարունակ կրկնում են.
— Գտա՞ր...
— Չէ՛...։ Երկար որոնումից հետո, նրանք բու են դառնում և շարունակում են կրկնել նույն հարց ու պատասխանը։

Զ

Եղբայր ու քույր կորցնում են իրենց գառանը։ Գնում են գտնելու։ Փնտրելիս շարունակ հարցնում են իրար։
— Գտա՞ր։
— Չէ՛...։ Երկար որոնումից հետո, նրանք բու են դառնում։

Է

Բուն առաջ մի ծույլ ու անպետք մարդ է եղել, որը չի կարողացել իրեն շոր անգամ ճարել։ Մոտիկները մի օր նրան շոր են տալիս և հետները եկեղեցի տանում։ Հանկարծ նրանք հարձակվում են ծույլի վրա, հետ վերցնում տված հագուստները և ակլոր վիճակում թողնում բազմու-

*թյան մեջ։ Ծուլլին օգնության են հասնում թռչունները։ Ամեն մեկը մի-մի փետուր տալով, ծածկում են նրա մերկությունը և բու դարձնելով թռցնում իրենց հետ։ Սակայն, ապերախտ ծույլը թռչունների պարտքը տալու փոխարեն ամեն գիշեր ուտում է նրանցից մեկին։ Թռչունները որոշում են, որ ծուլլին տեսնելուն պես մի լավ պատժեն նրան։ Դրա համար է, որ բուն փախչում է լույսից և միայն գիշերներն է երևում։*

### 358. ՎԱՅԱՆ ՀԱՎՔ

*Ջրհեղեղեն էտև աստված հրամայեց օր հավքերը փոսեր փորեն, ջրերը անտեղանք (այնտեղ) լցվին։ Բիտտուն (բոլոր) հավքերը թափան փոսեր փորեցին, սալթ (միայն) Վայան հավքը չեկավ, չաշխատավ. ըսաց (ասեց). Ինչո՞ւ է պետք ջուրն, օր Վարդևորի շոքին փոս փորեմ։ Աստված հրամայեց, օր իրեք ամիս ատ հավքը ջուր չխմե։ Տեյմ՝ օր հիմի ա (մինչև հիմա էլ) Վարդևորի ամսեն տեյ (մինչև) Ղոչի ամիսը, ատ Վայան հավքը հեչ ջուր չի խմե։ Ջայի (գետ) վրա օր գիշնի, չայը արուն-թարախ կտռի կը. սալթ (միայն) քարերի մեջ մնացած անծրևի ջրեն խմե կը, գելլե (բարձրանում է) երկնքի էրեսը, «Վա՜յ, վա՜յ» էնելով պտըտի կը (պտույտ է գալիս)։*

### 359. ՉՂՋԻԿ

#### Ա

*Մկան թագավորը հրաման է տալիս, կանչում մոտ չղջիկին և ասում է. Ա՛յ անպիտան, դու որ մուկ ես, ո՞ւր ես թաքնվում, ինչի՞ տուրք չես տալիս։ Չղջիկը բաց է անում թևերը և ասում. Ես ինչի պիտի տուրք տամ քեզ, չես տեսնում սրանք, ես թռչուն եմ, ես ո՞րտեղի մուկն եմ։ Մկան թագավորը գրում է թռչունների թագավորին, թե. էս տեսակ մի թռչուն կա, ինչի՞ դու նրանից տուրք չես վերցնում։ Թռչունների թագավորը էս որ լսում է, կանչում է չղջիկին, ասում է. Թե որ թռչուն ես, մեր օրենքը ինչի՞ ես խախտում, ինչի՞ տուրք չես տալիս։ Չղջիկը բաց է անում բերանը, ցույց տալիս ատամները և ասում։ Ես մուկ եմ, թռչունը բա ատամներ կունենա՞։ Թռչունների թագավորը մնում է շվարած, գլուխը կորցրած։ Էսպես չղջիկը երկուսին էլ խաբելով, մինչև հիմի էլ իր համար հանգիստ ապրում է առանց տուրք տալու։*

Բ

*Հավք մի կա, թև ունի, բնբուլ չունի, բերանը կմանի (նման է) մկան. նեա (ոչ) շիտակ (իսկական) մուկ ա, նեա շիտակ հավք։ Էսի (սա) թռավ գնաց հավքորեից մոտ. հավքեր իշեցին (նայեցին) էդոր (դրա) բերան, էդոր ղըլըղ (կերպարանք), ըսեցին. Դու իսկի լե (բոլորովին էլ) մեզնից չես։ «Օր ձեզնից չիմ, պա հորի՞ն (ինչու) կթռչիմ»։ Հավքերու մեկն ըսեց՝ մեզնից ա, մեկն ըսեց՝ մեզնից չէ. հըտ իրուր (իրար հետ) կռվեցան։ Խել-քով հավք մի կեր (կար) հոնի (այնտեղ), ըսեց. Աղբեր, մեզնից-մեզնից, օր թա (եթե) հավք ա, թըղ խետ մզի (թող մեզ հետ) խարճ (հարկ) տա։ Օ խարճ ուզին, չղջիկ փախավ գնաց մկներու մոտ. «մուկ իմ», ըսեց։ Մըկ-ներն էլ օ խարճ ուզին, էլավ ընկավ չոլը։ Մկա (հիմա) էնոքի (դրա) հա-մար) գիշերը կթռնա։*

### 360. ԱՂԱՎՆԻ

*Սա լեզու չունի, կարողանում է միայն «Վո՜ւ, վո՜ւ» անել։ Երբ Նոյը տապանից բաց է թողել նրան լուր բերելու, նրանից առաջ արձակված ագռավը հարձակվել է աղավնու վրա և կծել է նրա լեզուն։ Ջնայած դրան, աղավնին գտել է հնարը Նոյին ավետիք տալու. կտրել է ծառի կանաչ ճյուղ և տարել, որից Նոյը հասկացել է, որ ջուրն արդեն ցամաքել է։ Այս պատճառով էլ Նոյն անիծել է ագռավին և օրհնել աղավնուն։*

### 361. ՏԱՏՐԱԿ

Ա

*Սա ժամանակին աղջիկ է եղել։ Մի անգամ հայրը քաղաքից նրա հա-մար շորացու կտոր (շիլա) է բերել, բայց աղջիկը չհավանելով՝ չի կարել։ Հայրը բարկացել է և անիծել, ասելով. Երբ իմ բերած կտորիս չես հավա-նում, գնա թող աստված քեզ բմբուլից շորեր տա։ Աստծու հրամանով աղջիկն իսկույն տատրակ է դարձել և շարունակ կրկնել է.*

*«Գուքը կու-գու, ամին էկել ա,*
*Գուքը կու-գու, ինչ բերել ա.*
*Գուքը կու-գու, թոփով շի՜լա.*
*Գուքը կու-գու էրեսն ի՞նչ ա։*
*Գուքը կու-գու, ես ուզում չեմ։*

Բ

Քույր ու եղբայր իրիկնապահին անտառ են գնում կորած հորթերը որոնելու։ Այնքան են ման գալիս, որ ուշ գիշեր է դառնում։ Մնում են անտառում և տատրակ դառնում։ Մինչև հիմա էլ նրանք «թֆյո՜ւ-թֆյո՜ւկ» անելով ձայն են տալիս իրար և փնտրում են կորած հորթերը։

### 362. ԿԱՔԱՎ

Ա

Սա ժամանակին հարս է եղել։ Մի օր, խմոր հունցելիս սկեսուրը բարկացել է վրան, թե ինչու է խմորը պինդ հունցել։ Հարսը հակառակել է սկեսուրին, ասելով, որ խմորը կակուղ է։ Սկեսուրը անիծել է հարսին, և նա իսկույն կաքավ է դարձել։ Մինչև այսօր էլ հարսը հակառակում է սկեսուրին, անդադար կրկնելով՝ «կակո՛ւղ ա, կակո՛ւղ ա»։

Բ

Երգ չսիրող և խռպոտ ձայն ունեցող թռչունները նախանձից գնացին արծվի մոտ գանգատ, թե՝ կաքավները անբան, անգործ, շարունակ երգում են և մեր հանգիստը խանգարում։ Արծիվն ինքն էլ երգ չէր սիրում, ուստի հրամայեց, որ կաքավներն այլևս չերգեն։ Եվ կաքավները լուռ ու մունջ մնացին։ Երբ հետագայում արծիվը նորից թույլ տվեց կաքավներին երգելու, նրանք միայն «կըղ-կըղա» կարողացան անել։

Գ

Կռապաշտ Սուրեն իշխանը, երբ փնտրում էր քրիստոնեություն ընդունած իր որդուն, կաքավները մատնում են նրան, և հայրը գտնում ու սպանում է որդուն։ Մատնիչ կաքավները իրենց կտուցներն ու ոտները թաթախելով նահատակի արյան մեջ, այդ օրվանից դառնում են կարմրատոտիկ և կարմրակտուց։ Ասում են, թե դրանից հետո կաքավները զղջացել են իրենց արարքի համար, և ներում են խնդրել Լուսավորչից, երբ սա նահատակի մարմնի ընկած տեղում վանք էր կառուցում։ Այդ է պատճառն ահա, որ կաքավները ամբողջ օրը իրենց կտուցները քսում են հողին ու քարին, նրանց վրա եղած արյան հետքը ջնջելու, բայց իզուր... Թեև նրանք ներում ստացել են, բայց արյան գույնը մնացել է կտուցներին, որպեսզի ամեն օր հիշեն իրենց սխալը։

### 363. ԲԼԲՈՒԼ

*Աստված Ադամին ստեղծելուց հետո, տեսնելով որ նրա համար միայնակ ապրելը շատ տխուր է, ասում է, որ նա իր համար մի ընկեր ընտրի։ Եվ Ադամն ընտրում է բլբուլին։ Սակայն, այս անգամ էլ բլբուլի ընկերն է մնում միայնակ ու սկսում է տխրել։ Դրա համար էլ աստված ստեղծում է Եվային, և բլբուլին վերադարձնում իր նախկին ընկերոջը։*

### 364. ԿՌՈՒՆԿ

*Ասում են, թե կռունկ սպանելը մեծ մեղք է։ Երբ հրացանը աչքից առնես նշան բռնելու, կռունկն իսկույն դառնում է գեղանի հարս՝ ծծկեր մանուկը կրծքին։*

### 365. ՄԻՄԵՌՆԱԿ

#### Ա

*Սա ժամանակին մի ճարտար ու քաղցրախոս երեխա է եղել։ Խորթ մայրը, ատելով նրան, սուտ հիվանդ է ձևացել և պահանջել է ամուսնուց, որ կտրի զավակի ճկույթը և տա իրեն ուտելու, որպեսզի առողջանա։ Ամուսինը ակամայից կատարել է չար կնոջ կամքը. կտրել է երեխայի ճկույթը, որից նա մեռել է։ Երբ ամուսինը երեխայի ճկույթը տարել է կնոջը, որ նա ուտի և առողջանա, ճկույթը հանկարծ ծիծեռնակ է դարձել ու թռել է, երգելով.*

*Ծիծեռն եմ հա, ծիծեռն եմ,*
*Հորը մորթած ծիծեռն եմ,*
*Մորը կերած ծիծեռն եմ.*
*Թռել, ծիծեռնակ եմ դառել։*

#### Բ

*Ճնճղուկը գնացել, հանգցրել է աստծու վառած ճրագը։ Ծիծեռնակն իսկույն վրա է հասել ու նորից վառել։ Դրա համար էլ նա սուրբ է համարվում։ Ծիծեռնակին ոչ միայն սպանել, հալածել էլ չի կարելի։ Նրան դիմելով այսպես են ասում.*

*Ծիծեռնակ, ծիծեռնակ,*
*Աստծու արդար հավիկ.*

*Ով քեզ քար նետի,*
*Թող ճկույթից արյուն նետի։*

Գ

*Մի անգամ խայթող սողունները հավաքվում և խորհուրդ են անում, որոշելու համար, թե ո՞ր կենդանու արյունն է ամենից քաղցր։ Երկար վիճելուց հետո, ուղարկում են մոծակին, որ գնա և փորձի բոլոր կենդանիների արյունը։ Մոծակը խայթում է բոլորին և գտնում, որ ամենից քաղցրը մարդու արյունն է։ Երբ մոծակը վերադառնում է զեկուցելու, ծիծեռնակը հարձակվում և սպանում է նրան։*

Դ

*Ասում են, թե սա ղարիբ-ղուրբանի (պանդուխտ) նման գարունը բացվելուն պես գալիս է մեր կողմերը, իրեն համար տուն ու բուն շինում, ձագ հանում։ Իսկ երբ վրա է հասնում ուշ աշունը, հավաքում է դերդաստանը և գնում Երուսաղեմի կողմերը։ Աստծու անմեղ թռչունն է, մարդկանց բախտի ու հաջողության նշանը։ Ով վնաս տա ծիծեռնակին, չի ապրի։*

### 366. ԱՐԱԳԻԼ

Ա

*Ասում են, թե արագիլներն իրենց երկրում մարդ են։ Երբ մոտենում է չվելու ժամանակը, նրանք գալիս են գետի մոտ, լողանում ջրերում, թռչունի փետուրներ հագնում և ճանապարհ ընկնում դեպի մեր երկիրը։ Վերադարձի ժամանակ նրանք հավաքվում են մի բարձր սարի, մատաղ անում աստծուն, լողանում գետում և նորից մարդ դառնալով, գնում իրենց երկիրը։ Ասում էլ են, որ արագիլն ամեն տարի խեղդում է իր ձագերից մեկին՝ աստծուն մատաղ անելու համար։*

Բ

*Մի կին լվացվելիս ապարանջանը թողնում է աղբյուրի մոտ։ Վերադառնում է վերցնելու, բայց ապարանջանը այլևս չի գտնում։ Ընկնում է երկրե-երկիր։ Հանդիպում է հերկ անող մի գյուղացու։ Սա մտերմաբար*

խոսում է կնոջ հետ, տալիս նրա անունը։ Պարզվում է, որ գյուղացին կնոջ բակի ծառին բույն ունեցող արագիլն է, որ հասնելով արագիլների երկիրը, նորից հողագործ է դարձել...

— Մի՛ փնտրիր ապարանջանդ,—ասում է հողագործը,—ես եմ վերցրել, որ ուրիշները չգողանային։ Թաքցրել եմ բնիս տակ, հանգիստ կաց։

Երբ գարունը մոտենում է, արագիլների երկրի հողագործները գալիս են գետի ափը, լողանում, թևեր հագնում, իրենց հյուրին էլ մի զույգ թևեր են պարգևում, բոլորն էլ դառնում են արագիլներ և երամ կապած վերադառնում են Բուլանըխ։

## 367. ՀՈՊՈՊ

### Ա

Հարսը խմոր հունցելիս գործը կիսատ թողած սկսում է սանրել մազերը։ Հանկարծ վրա է հասնում սկեսուրը և տեսնելով նրան այդ վիճակում, ասում է. Հո՛, պո՜, պո՜, պո՜..., էդ ինչ ես անում։ Հարսն ամոթից ու վախից դառնում է հոպոպ թռչուն, սանրը գլխին։ Մինչև հիմա էլ նա կրկնում է սկեսրոջ ասածը. «Հո՛, պո՜, պո՜, պո՜...»։

### Բ

Ժամանակին հարսը տանը լողանալիս է լինում, երբ հանկարծ ներս է մտնում սկեսրայրը։ Սաստիկ ամոթից նա հոպոպ թռչունն է դառնում և սանրը գլխին երդիկից դուրս թռչում։

### Գ

Հոպոպը ժամանակին գեղեցիկ աղջիկ է եղել, սիրահարված մի կտրիճ երիտասարդի։ Ծնողները, հակառակ իր կամքի, նրան ամուսնացնում են մի ուրիշի հետ։ Հարսնաբաղնիքի միջոցին աղջիկը հիշում է սիրածին և ինքն իրեն ասում է. «Ա՜խ, երանի թե թռչուն լինեի, սար ու ձոր ընկնեի, սիրածիս գտնեի»։ Աստված անմիջապես կատարում է նրա խնդիրքը։ Աղջիկը սանրը գլխին թռչուն է դառնում և դուրս թռչում բաղնիքից։ Մինչև հիմա էլ նա հառաչելով թափառում է սար ու ձոր, փնտրում սիրածին և կանչում. Իպի՛պ... կուկո՜ւ...։

## 368. ՍՀԱԿ ԹՌՉՈՒՆ

*Լինում են երկու որբեր՝ քույր ու եղբայր։ Մի երեկո, երբ եղբայրը (Սահակ անունով) սանրելիս է լինում քրոջ մազերը, հանկարծ նրան հափշտակում են։ Դժբախտ քույրը խնդրում է աստծուն իրեն հավքի թևեր տալ, որպեսզի գնա գտնի եղբորը։ Աստված անմիջապես կատարում է նրա խնդիրքը։ Թռչուն դառած քույրը, սանրը գլխին, այն օրվանից շրջում է լեռներում ու անտառներում, շարունակ կրկնելով եղբոր անունը. Սըհա՛կ, Սըհա՛կ, Սըհա՛կ...։*

## 369. ԿԿՈՒ

Ա

*Հարսը ծառերից ճոճք է կապում, երեխային դնում մեջը և գնում քաղհան անելու։ Երբ ժամանակ անց վերադառնում է, երեխային այլևս չի գտնում։ Ցավից և սկեսուրի վախից նա թռչուն է դառնում և «կո՛ւ-կո՛ւ» կանչելով սկսում է փնտրել երեխային։*

Բ

*Խորթ մայրը փայտ բերելու համար տղային ու աղջկան անտառ է ուղարկում։ Սև օձը խայթում է եղբորը։ Երկար ողբալուց հետո նրա դիակի վրա, քույրն ինքն իրեն ասում է. «Եղբորիցս հետո ես այլևս ինչ պետք է անեմ. ավելի լավ է կկու դառնամ, ընկնեմ սարերը»։ Խոսքը դեռ բերանին, աստծու հրամանով, կկու է դառնում և ընկնում սարերը՝ «կո՛ւ-կո՛ւ»-«պո՛ւ-պո՛ւ» կանչելով։*

## 370. ԲԵԲՈՒԿ ՈՒ ԴԱԴՈ

Ա

*Տանջահար մի որբ աղջիկ է եղել՝ անունը Բեբուկ։ Հազիվ ձնհալը սկսած, երբ դեռ տեղ-տեղ նոր էին ծլում լեռնային բանջարները, խորթ մայրը ստիպում է քրոջն ու եղբորը, որ կիսամերկ ու բոբիկ ման գան սարերում և առաջինը իրենք տուն բերեն գարնան բանջարը։ Եվ թշվառ որբուկները սար ու ձոր ընկած բանջար հավաքելիս, չեն նկատում, որ Բեբուկի շալակի տոպրակի տակի կարը քանդված է, և քույր ու եղբայր, ինչքան լցնում են տոպրակը, քիչ հետո տեսնում են, որ դատարկ է։ Եղ-*

*բայրը զայրացած քրոջ վրա, բանջարահավաքի բութ դանակը խրում է նրա կողը։ Հետո, տեսնելով, որ քրոջ կողից արյուն է հոսում, սկսում է լալ ու ողբալ, նույն դանակով ինքն իրեն վիրավորել և հուսահատ կանչել. Բերո՜ւկ, Բերո՜ւկ, Բերո՜ւկ, խղճա եղբորդ, արթնացի՛ր…*

*Նա աղեկտուր ձայնով այնքան է տալիս քրոջ անունը, ծնրադրում, համբուրում և աղերսում նրան, որ Բերուկը թռչուն դառնալով թառում է եղբոր ուսին և ինքն էլ նրա նման ողբում ու կանչում է. Բերո՜ւկ, Բերո՜ւկ, Բերո՜ւկ…*

*Անտառների փիրը (սուրբ), խղճալով, եղբորն էլ է թռչուն դարձնում։*

*Այդ օրվանից քույր ու եղբայր որբերը սկսում են Բերուկ կոչվել, և թևածելով սար ու ձոր՝ Բերուկ, Բերուկ… կանչել։*

Բ

*Խորթ մայրը տղային ու աղջկան ուղարկում է կանկառի (փշի մի տեսակ)։ Երկար որոնումներից հետո հազիվ մի քիչ կանկառ են հավաքում և լցնելով խորթ մոր տված ծակ տոպրակը, գալիս են տուն։ Ճանապարհին աղջիկը եղբոր ձեռքից առնելով տոպրակը, զարմանքով տեսնում է, որ մեջը կանկառ չկա։ Կարծելով, որ եղբայրն է կերել, սկսում է դատապարտել նրան։ Սա իր անմեղությունն ապացուցելու համար միամտորեն ասում է. Քույրիկ, եթե չես հավատում, փորս բաց արա, տես։ Քույրն էլ նույնպիսի միամտությամբ սրածայր քարով ճեղքում է եղբոր փորը և համոզվում, որ այնտեղ իրոք կանկառ չկա։ Ձայն է տալիս եղբորը, որ նորից գնան կանկառի։ Բայց ոչ մի պատասխան չի լսում։ «Գա՛գո, գա՛գո, գա՛գո» (եղբա՛յր, եղբա՛յր, եղբա՛յր) կրկնում է նա շարունակ, դիմելով եղբորը, բայց իզուր, եղբայրն արդեն մեռած էր։ Խեղճ աղջիկը օրերով լաց է լինում և մի օր էլ թռչուն է դառնում, և ծառից-ծառ թռչելով, ողբագին կանչում է. Գա՛գո, գա՛գո, գա՛գո…։*

## 371. ՀԱՎԱԼԱՍԱՆ

*Մի կին է եղել, որը չափազանց սիրել է իր ամուսնուն։ Սա գնացել է պանդխտություն և այլևս չի վերադարձել։ Կինն իր սերն ամբողջովին տվել է նորածին որդուն։ Մի օր էլ արծիվը օրորոցից փախցնում է երեխային։ Ահավոր վշտից ճնշված խեղճ կինը դառնում է Հավալասան թռչունը։ Նա թռչում է շարունակ ու ողբագին կանչում, և հանգիստ է առնում միայն այն ժամանակ, երբ սրտից երեք կաթ արյուն է կաթում։*

### 372. ԱԳՌԱՎ

Ա

*Երբ Կայենը սպանում է Աբելին, Ադամն սկզբում կարծում է, թե Աբելը քնած է։ Սակայն, շուտով տեսնելով, որ նա մեռած է, պատանում է ու թաղում։ Աստված խղճալով Ադամին, ուղարկում է ագռավին, որ ասի Աբելին, թե՝ «Պատանդ մաշիր եկ»։ Ագռավը փոխանակ այդպես ասելու, ասում է. «տապանդ մաշիր եկ»։ Աստված բարկանում է ագռավի վրա, անիծում նրան և ասում. Բերանդ դրած յոթ պատառից մեկը միայն կուլ գնա։ Դա է պատճառը, որ ագռավն այնքան անկուշտ է. նրա կերած յոթ պատառից միայն մեկն է կուլ գնում։*

Բ

*Երբ Նոյ նահապետը տապանից ուղարկում է ագռավին լուր բերելու, նա գնում և այլևս չի վերադառնում։ Ուստի Նոյը անիծում է ագռավին և ասում. Կերածդ փորդ չգնա, բողազդ ծակվի, թափվի։ Այդպես էլ լինում է։*

### 373. ԿԱՉԱՂԱԿ

Ա

*Կաչաղակը մարդուն բարեկամ է եղել, հասկացել է նրա լեզուն։ Նա վաղօրոք իմացել է, թե ինչ է կատարվելու (տունը հյուր է գալու, ղարիբից լուր է ստացվելու) և այդ մասին հայտնել է մարդուն։ Մի անգամ կաչաղակն անգիտությամբ հանում է երեխայի աչքը։ Մարդը զայրանալով տանից դուրս է անում կաչաղակին։ Սա ընկնում է չոլերը, բայց չի մոռանում իր հին բարեկամությունը։ Նորություն իմանալիս գալիս նստում է մարդու տան պատին կամ ծառի ճյուղին և այնքան չըրթ-չըրթում, մինչև որ մեկը դուրս է գալիս տանից և շնորհակալություն է հայտնում կաչաղակին նրա բերած նոր լուրի համար, որից հետո կաչաղակը թռչում գնում է։*

Բ

*Մի անգամ կաչաղակը նստելով պառավի տան կտուրին ավետում է նրան, որ որդին վերադառնալու է օտարությունից։ Առանց հասկանալու նրա ավետիքը, պառավը մի կտոր հաց է նետում։ Կաչաղակն իսկույն*

*տանում, տալիս է պառավի որդուն, որը սաստիկ քաղցած է լինում։ Հետո վերադառնալով նորից նույն բանն է անում և մի կտոր հաց ևս ստանալով, տանում է պառավի որդուն։ Նույնը կրկնվում է մի քանի անգամ, մինչև որ պառավը ձանձրանալով, քար է նետում կաչաղակին։ Սա առնում է քարը, և տանում նետում պառավի որդու գլխին, որը իսկույն մեռնում է։ Պառավը գալիս է մեռած որդու մոտ և ճանաչում իր նետած քարը։ Դրանից հետո այլևս քար չեն նետում կաչաղակին, այլ միշտ հաց են տալիս ու ասում. Բարին մեզ, չարը թշնամուն։*

## 374. ԱՆԾԵՂ

*Տղամարդկանց երկու կին առնելու սովորության առիթով կանայք ժողով են անում, թե ինչու պետք է նրանք երկու կին առնեն, իսկ իրենք չպետք է երկու ամուսին ունենան։ Աղերսագիր են պատրաստում, կնքում և անծեղի ոտքին կապելով ուղարկում աստծուն։ Այդ օրվանից մինչև հիմա, երբ անծեղը սկսում է խոսել, կանայք իրար հուսադրելով ասում են. «Բարի լուր կա, բարի լուր կա»։*

## 375. ՃՆՃՂՈՒԿ

### Ա

*Նոյ նահապետը կենդանիներին տապանի մեջ առնելիս բոլորի ոտքերը կապել էր։ Ջրհեղեղից հետո, նա մեկ-մեկ արձակելով կենդանիների կապած ոտքերը, բաց է թողնում նրանց։ Ճնճղուկը չհամբերելով իր հերթին՝ կապած ոտներով դուրս է թռչում տապանից, և դրանից հետո մնում միշտ այդպես ոստոստող։*

### Բ

*Երբ Քրիստոս դրված է լինում տապանի (շիրիմ) մեջ, ճնճղուկը սկսում է ջքուջ անել այնտեղ։ Քրիստոս բարկանում է և ասում. Ոտքերդ կանգնեն փորիդ, քայլել չկարողանաս։ Դրանից է ահա, որ ճնճղուկը մինչև հիմա էլ դժվար է քայլում։*

## 376. ՉԱՓԱՐԾԻՏ

### Ա

*Աստված հայտարարում է, թե՝ թռչուններից ով որ ամենից շուտ հասնի ինձ մոտ, ես նրան թագավոր կնշանակեմ։ Արծիվն իսկույն սկսում է թռչել դեպի երկինք, բայց ճանապարհին հոգնելով, նստում է մի տեղ՝ հանգստանալու համար։ Այդ ժամանակ չափարծիտը կամ չըչտթանը, թաքնված արծվի թևի տակ, հանգիստ վեր էր բարձրանում, անմիջապես դուրս է թռչում և ներկայանում է աստծուն։ «Ինչո՞ւ ես եկել»,—հարցնում է աստված այդ փոքրիկ թռչունին։ «Եկել եմ, որ ինձ թռչունների թագավոր նշանակես»,—պատասխանում է չափարծիտը։ «Դե՛հ, որ այդպես է,—ասում է աստված,—գնա մի ճիպոտ բեր, որ ոչ կարճ լինի, ոչ երկար, ոչ ծուռ, ոչ ուղիղ»։ Այդ օրից սկսած փոքրիկ ծիտը չափարների (ցանկապատների) տակ ճիպոտներ է փնտրում, և երբ գտնում է, ասում է. «Չի՛, չի՛. էս չի՛, էն չի՛...»։*

### Բ

*Թռչունների թագավորը հրաման է տալիս՝ ով շուտ հասնի իր մոտ նրան կպարգևատրի։ Սև թռչունը լսելով այդ, անմիջապես ճանապարհ է ընկնում։ Չափարծտին թաքուն նստում է սև թռչունի պոչին և մտնում նրա թևի տակը։ Սև թռչունը որ տեղ է հասնում, ուզում է մի քիչ հանգստանա, լվացվի և նոր ներկայանա թռչունների թագավորին։ Այդ միջոցին չափարծիտը պոկ է գալիս նրա պոչից և անմիջապես ներկայանում թագավորին։ Թռչունների թագավորը նրան մեկի փոխարեն երկու պարգև է տալիս, որ իր փոքր տեղովը այդպիսի մեծ շնորհք է ցույց տվել։ Չափարծտի երկու ուսերին եղած սպիտակ նշանները՝ թռչունների թագավորի տված այդ պարգևներն են։*

## 377. ՀԱՎ

### Ա

*Հավաքվում են բոլոր թռչունները և որոշում են, եթե աստված հաջողի, միասին թռչել մի տեղ։ Հավը վեր է կենում տեղից և ամբարտավանամբարտավան ասում. Ուզում է աստված հաջողի, ուզում է չհաջողի, միևնույն է, ես թռչելու եմ։ Լուսաբացին բոլոր թռչունները թևերին տալով*

օդ են բարձրանում։ Միայն հավը ինչքան թափահարում է թևերը, չի կարողանում գետնից կտրվել։ էն օրվանից մինչև հիմա էլ հավն այլևս չի կարողանում թռչել, չնայած առաջ նա էլ բոլոր թռչունների պես իմացել է թռչել։

Բ

Հավն ու ճնճղուկը մի անգամ եկել են իրար մոտ։ Ճնճղուկն ասել է. Եթե աստված հրաման տա, ես կթռչեմ։ Հավը պարծենալով ասել է. Աստված հրաման տա, թե չտա, մեկ է, ես պիտի թռչեմ։ Ճնճղուկը դրանից հետո փորձել է թռչել և հաջողությամբ օդ է բարձրացել, իսկ հավը ինչքան փորձել է, չի կարողացել կտրվել գետնից։

Գ

Հավը չէչել չերքեզին ըսըց. Ըսօր թռինք։ Չէչել չերքեզ ըսըց. Կեցիր աստուծու մինե (աստծուց) խապար առնիմ (լուր ստանալ), տեսնամ ինչ կը հրամայե, ընանկ (այնպես) կը թռինք։ Հավը մտիկ չըրըց (չնայեց), թռավ, ընկավ գետին։ Չէչել չերքեզ բարըըցավ էրկինք, շատ օ էլավ ու՝ արևը զարկեց, էրավ (այրեց) գլուխը։ Ընու (նրա) համար չէչել չերքեզ կըսեն։

## 378. ՄԵՂՈՒ

Ա

Հոբ Երանելին շատ հարուստ մարդ էր. յոթ որդի, աշխարհի հարըստությունն ուներ։ Աստված ուզեց, որ նրա հավատը փորձի, դրա համար հարստությունը, զավակներին ձեռքից խլեց, իրեն էլ հիվանդացրեց։ Հոբն այնպես հիվանդացավ, որ որդերը եկան մարմինը կերան։ Նա մեկ-մեկ վերցնում էր որդերը, դնում վերքերի վրա և ասում. Կերեք, աստված իմ փուչ մարմինը ձեզ համար է ստեղծել։ Ասում են, թե մեղուները Հոբ Երանելու այդ որդերից են, որ թռչուն դառնալով թռել են։

Բ

Մի անգամ մեղուներն ասում են Սողոմոն Իմաստունին. «Մենք ոսկի կշինենք, միայն թե դու թույլ տուր, որ ում կծենք մեռնի»։ «Չէ՛,— ասել է Սողոմոն Իմաստունը,— մարդկանց կյանքի գնով չեմ ուզում ոսկի ստա-

*նալ. ավելի լավ է դուք մեզր շինեցեք և եթե որևէ մեկին կծեք, ինքներդ մեռեք: Այդ օրվանից մեղուները զգուշանում են մարդկանց կծել, որպեսզի իրենք չմեռնեն:*

### 379. ԹԻԹԵՌ

Ա

*Թիթեռը գնում է սատանայի մոտ, որ նրա աղջկան կին ուզի: Սատանան ասում է. Գնա ինձ համար ճրագ բեր, աղջիկս տամ քեզ: Թիթեռը գնում է, ճրագի շուրջը ման գալիս, ընկնում ճրագի մեջ և այրվում: Դրա համար է, որ թիթեռները շարունակ ճրագի շուրջն են պտտվում:*

Բ

*Թագավորներից մեկը մի շատ սիրուն աղջիկ է ունենում. երբ գալիս է նրա ամուսնանալու ժամանակը, հայրն ասում է. Աղջիկս կտամ այն կտրիճին, ով կկարողանա բերել անհանգչելի կրակը: Շատերն են փորձում կատարել թագավորի պայմանը, որ տիրանան աղջկան, սակայն չեն կարողանում. բոլորն էլ ընկնում են կրակի մեջ և այրվում: Ասում են, թե կրակի շուրջը պտտվող թիթեռները, որ Փարվանա են կոչվում՝ թագավորի աղջկա այդ ուզնկաններն են:*

### 380. ՍԱՐԴ

*Հրեաները ընկնում են Քրիստոսի ետևից, որ բռնեն, սպանեն: Քրիստոս փախչում է և թաքնվում մի քարայրի մեջ: Սարդերը ոստայն են գործում քարայրի դռանը, փակելով այն: Հրեաները գալիս են և տեսնելով սարդոստայնը, մտածում են, որ Քրիստոսն այստեղ մտած չի կարող լինել, քանի որ դուռը փակ է, թողնում ու հեռանում են: Նրանց գնալուց հետո Քրիստոսը դուրս է գալիս և գնում:*

### 381. ԿԱՐԻՃ

*Աստված կարիճ չի ստեղծել: Նրանք գոյացել են հետո, դավաճանների և ազգուրացների գերեզմաններից: Սրանք մեռնելով ժառանգություն են թողել կարիճներին, որոնք խայթելով ոչնչացնում են մարդկանց:*

### 382. ԲՉԵՉ

*Մովսես մարգարեն աստծուց իրավունք է ստացել, որ մի բան էլ ինքը ստեղծի, և անասունների աղբից ստեղծել է բզեզին (օթիզ)։ Բզեզները անմիջապես թափվել են Մովսեսի վրա։ Մովսեսը վախենալով բացականչել է. Սա ինչ բան է, իմ ստեղծածներս ինձ վրա են թափվում։ Աստված լսելով Մովսեսի խոսքը, ասել է. Թող առաջ նրանց բաժինը (ղսմաթ) ստեղծեիր, հետո իրենց, որ տված բաժինով ապրեին։*

### 383. ԲՈՒՉ

*Ժամանակին բուզը (կովերին ու եզներին խայթող ու խրտնեցնող ճանճ) կանչում է իր մոտ անասուններին։ Բոլորը գալիս են, բացի կովից ու եզից։ Բուզը չի մոռանում այդ և մինչև հիմա էլ բզզեցնում է (խայթում ու խրտնեցնում) նրանց։*

## ԳԱՎԱՌՆԵՐ, ՔԱՂԱՔՆԵՐ, ԳՅՈՒՂԵՐ

### 384. ԱՊԱՐԱՆ

Ա

*Արագածի չորս գագաթներին, առանց պարանի (անպարան) կախված է Գրիգոր Լուսավորչի արտասուքներով լի կանթեղը։ Այդ կանթեղը մշտավառ է և միայն արդարներին տեսանելի։ Դրա համար էլ այս գավառը կոչվել է Անպարան, որ բերանից-բերան դարձել է Ապարան։*

Բ

*Ասեն, թէ օրհնեալ և օծեալ նշան տէրունական՝ շնորհաբաշխ աջովն սուրբ Լուսաւորչի լերինքն այն։ Եւ է ի մէջ հովտին քարաժերպ այր մեծ, ի նմին այրի շինեալ տաճար փոքրիկ խորան, և կախեալ կանթեղս առանց չուանի, և փոխանակ ջրոյ՝ արտասուօք լցեալ, և հրով երկնային վառեալ. և մնա մինչև ի գալուստն Քրիստոսի ի դատաստան, որ բազմաց յարժանաւորացն տեսեալք են և տեսանեն զհրաշն զայն։*

Գ

*Արագածի լեռնագագաթները հաճախ ամպամած են լինում, դրա համար էլ գավառը կոչվում է Ամպարան—Ապարան։*

## 385. ՎԱՅՈՑ ՁՈՐ

### Ա

*Ժամանակին մի հարուստ իշխան իր հազարավոր անասուններով գալիս է այս գավառի արոտները։ Ամբողջ ամառը նա լավ կերակրում է հոտերը։ Վրա է հասնում խիստ ձմեռը։ Վախեցած իշխանը կարգադրում է՝ անասուններին քշել տաք տեղեր։ Սարերից իջնելիս մի ձորաբերանի մոտ, գիշերով սկսվում է բուքը։ Անասուններից շատերը խեղդվում են, մնացածներն էլ սոված մնում։ Իրար հետևից հիվանդանում ու մեռնում են նաև իշխանի տանեցիները։ Հովիվներն ու նախրապանները փախչում են։ Ձորաբերանին մնում է իշխանն իր հիվանդ կնոջ հետ։ Կորցրած փրկվելու ամեն մի հույս՝ նա գլխին է տալիս և նայելով շրջապատի խոր ձորին, աղաղակում է. «Ախ, վա՜յ ձոր, ախ, վա՜յ ձոր»։ Այդ օրվանից էլ այս գավառի անունը մնում է Վայոց ձոր։*

### Բ

*Վայոց ձորի Թանահատ գյուղացի մի մարդ սիրահարվում է իր սանամոր քրոջը։ Ամուսնության համար նա մի քանի անգամ իրավունք է խնդրում տեղի առաջնորդից, սակայն մերժում է ստանում։ Սիրահարները որոշում են սպանել առաջնորդին։ Գյուղացին բարձրանում է եպիսկոպոսի պատշգամբի առջև գտնվող ծառը, որպեսզի այնտեղից իջնի ցած և կատարի իր միտքը։ Բայց տեսնելով, որ եպիսկոպոսը հանգիստ քնած է և բերանից լույս է բարձրանում, հետ է դառնում։ Երկրորդ անգամ նույն փորձն անում է նրա սիրուհին։ Նա պարանով կտուրից ներքև է կախվում և մոտենալով քնած եպիսկոպոսին, դաշույնը խրում է սիրտը։ Եպիսկոպոսը քնից վեր թռչելով բացականչում է. «Վա՜յ ձոր, վա՜յ ձոր, քար մաղվես դու»։ Երկնքից իսկույն քար է թափվում և ավերում այս գավառի Մոզ քաղաքը։ Հուլիս ամսին էլ ահագին ձյուն է գալիս և կոտորում բոլոր անասուններին։ Այդ օրվանից գավառը կոչվում է Վայաձոր կամ Վայոց ձոր։*

### Գ

*...Իսկ երանելին Ստեփաննոս կացեալ յեպիսկոպոսութեան ամ մի, շրջէր յամարայնի ի մէջ երկոտասան գաւառաց մեծավիճակ գաւաղանի իւրոյ. և քարոզէր զբանն ճշմարտութեան։ Որ և հանդիպեալ սորա սակս հոգևոր հարկին ի գաւառս բարելից ի ձորն Եղեգեաց յաւանն Մոզան. յո-*

րում բնակեալ էր կին մի սեղեխ արբեալ յիմարութեան ախտին, զոր յառաջ քան զայն երիցս անգամ զգուշացուցեալ էր զնա ըստ Տեառն հրամանի. և ոչ էր զղջացեալ։ Վասն որոյ այն անգամ սաստիկ ցասուցեալ սրբոյն և վճիռ հատեալ մեծ պատուհասի՝ ելանէ ի գեղջէն, և վասն ոթժամուն գնայ յակն քաղցրահամ աղբերն զոր ասագ ակն կոչէին, զովանալ ի նմա. և հրամայէ հարուն զխորանն իւր. և ինքն ի վերայ ուռոյ միոյ դնէ զմահիճան հանգստեանն։ Եւ ելեալ առանձինն աղօթէ ժամս յոլովս. և ննջէ ի վերայ նորա։

Իսկ կինն հերատուկ շարժեալ ի կատաղի բոցոյ ցանկութեանն՝ առնու ընդ իւր զհոմանին իւր և գայ սպանանել զսուրբն զի համարձակ լիցին ի գործն։ Եւ մերձեալ ի ծառն՝ հանէ ի վեր զայրն եդեալ զսուրն ի ձեռն զի սպանցէ զսուրբն։ Ելեալ առնն տեսանէր զսուրբն ննջեալ, և իբր զբոց ցոլանայր շունչն ի վեր և ճախր առեալ ղառնայր անդրէն. և հրեշտակ մի կացեալ ի սնարսն հովանի ունէր նմա թևօքն։ Տեսեալ զայն առնն կարկեալ թուլանայր. և ամենայն յօդուածքն խաղայր, շարժէր, դողայր մեծաւ սոսկմամբ։ Եւ այնչափ ուշաբերէր՝ մինչ անդրէն իջանէր ի ծառոյն և պատմէր կնոջն։ Ապա կրկին յորդորէր կինն և սադրէր քաղցր բանիւք պոռնկութեան և քաջալերեալ անդրէն յուղարկէր։ Եւ նորա հրաշափառագոյն իմն տեսեալ տեսիլ քան զառաջինն՝ սաստկապէս ևս թուլանայր. և անզգայ մարմնով իբր մեռեալ անկանէր ի ծառոյն։ Ապա կինն մինչ ետես յանհնարին պատուհաս ըմբռնեալ զայրն, փոխանակ զղջման առաւել ևս զչարեալ, և սրեալ ի բանսարկուէն՝ առեալ զսուրն հոլանեալ ելանէր ի ծառն. և հարեալ զսուրն ի փողսն սրբոյն՝ հեղոյր զարիւնն ամբիծ ի վերայ փայտեղէն մահճին։

Ապա յանկարծակի եհաս ի վերուստ պատուհաս Տեառն. և կայաւխաւար շօշափելի զգաւառն ամենայն զաւուրս 40, և շարժումն և դղրդումն սաստիկ. զի եռայր երկիրն ահեղ դողացմամբ յանդնդոց և բարձրանայր մինչև ի վեր. և անդէն իբր զալիս ծովու փլուզանիւր. լերինք տապալէին. վէմք ի հիմանց քակտէին, տունք և ապարանք գեղեցիկք լինէին գերեզմանք բնակչաց. աղբիւրք խցէին. գետք կորնչէին. և ամենայն տեղի երբեմն տատանմամբ. և ձայնք մարդկեղէն բարբառոյ լսելի լինէին ի ներքուստ յանդնդոց և ի վերուստ յօդոց «վայ ձոր, վայ ձոր». և կենդանւոյն նում է Արաքսը։ Իմանալով այդ մասին, վանահայրը կանչում է զանգանօթիցն ոչ ոք գիտէր զհամարն. յաղագս որոյ կոչեցաւ անուն գաւառին Վայոց ձոր։

### 386. ԶԱՆԳԵԶՈՒՐ

Ա

*Երբ Լենկ-Թեմուրը գալիս հասնում է Արաքսի ափը, դեռ գետը չանցած, նրան ներկայանում է Մեհրի անունով մի իշխան և ասում. Լենկ-Թեմուրն ապրած կենա, եկել եմ քեզ ծառայեմ։ Թեմուրի հարցին, թե՝ ի՞նչով նա կարող է ծառայել իրեն, իշխանը պատասխանում է. Քանի Խոտ գյուղի գլխին գտնվող վանքի մեծ զանգը կա, դու չես կարող գրավել այս երկիրը, թշնամուն հեռվից տեսնելուն պես, տալիս են այդ զանգը և ժողովրդին հանում նրա դեմ։ Լենկ-Թեմուրը մի քիչ մտածելուց հետո, ասում է. Գնա՛ էդ զանգը վառի, փչացրու, ես քեզ շատ ոսկի ու իշխանություն կտամ։ Դավաճանը գնում է, իր նման մի քանի ուրիշների հետ՝ գիշերով զանգի տակ կրակ են վառում և կտրում նրա ձայնը։ Լենկ-Թեմուրը զորքով անցնում է Արաքսը։ Իմանալով այդ մասին, վանահայրը կանչում է զանգահարին և կարգադրում շտապ զանգը տալ։ Զանգահարը ինչքան փորձում է՝ զանգը ձայն չի հանում։ Վազում է վանահոր մոտ և ասում. Ամեն բան զուր է, զանգը ձայն չի տալիս...։ Լենկ-Թեմուրը գիշերով գալիս գրավում է ամբողջ երկիրը։ Գյուղերում մարդիկ զարմանքով հարցնում են իրար. «Բա ինչո՞ւ զանգը չտվին»։ Ոմանք էլ պատասխանում են. «Զանգը զո՛ւր է, զանգը զո՛ւր է...»։ Դրանից հետո գավառի անունը մնում է Զանգեզուր։*

Բ

*Որոտանի ձորում շատ գյուղեր են եղել, ամեն գյուղում էլ մեկ-երկու եկեղեցի։ Առավոտները, որ զանգերը տվել են, ձորը լցվել է նրանց ձայնով։ Լսողներն ասել են. Զանգի ձո՛ր է, զանգի ձո՛ր է։ Դրանից հետո գավառի անունը դրել են Զանգեձոր, որը բերանից-բերան դարձել է Զանգեզուր։*

Գ

*Տաթևի վանքը կառուցելուց հետո, զանգակատանը մի մեծ զանգ են կախել։ Սրա ձայնն այնքան ուժեղ է եղել, որ երբ ղողանջել է, լսվել է ամբողջ գավառի լեռներում ու ձորերում։ Ժողովուրդն ասել է. էս ի՞նչ զոռ զանգ է, զանգը զո՛ռ է, որից և առաջ է եկել Զանգըզոռ կամ Զանգեզուր անունը։*

Դ

Նոր Գորիսի մոտ գտնվող վանքում ժամանակին եղել է մի շատ մեծ զանգ։ Երբ տվել են այդ զանգը, ձայնը լսվել է հեռուներում։ Ժողովուրդն ասել է. «Զանգը զորավո՛ր ա, զանգը զո՛ռ ա», դրանից էլ առաջ է եկել Զանգեզուր անունը։

Ե

Սյունյաց երկրի քարանձավներին տեղացիներն առաջ ծակեր են ասել, իսկ ձորերին էլ՝ ծակերի ձոր։ Այստեղից էլ գավառի անունը մնացել է Ծակերի ձոր, որը հետո դարձել է Զագեձոր, Զանգեզուր։

Զ

Զանգեզուրի ձորերում տեսակ-տեսակ, գույնզգույն և շատ ծաղիկներ են եղել։ Դրա համար էլ գավառի անունը դրել են՝ Ծաղիկների ձոր, Ծաղկաց ձոր, որը հետո դարձել է Զանգեզուր։

387. ԱՂՎԱՆՔ

Իսկ ի զաւակէ սոցա (Սիսականացն) ընտրեալ այր մի յոյժ արի և գեղեցիկ և քաղցր բարուք՝ զԱռան (Առան) անուն. և կարգէ նահապետ ի վերայ մեծ դաշտին Առանայ, յԵրասխայ մինչև ցՀունարակերտ։ Եւ վասն քաղցր բարուցն աղու ձայնէին զնա. որ և աշխարհն յանուն նորա Աղուանք (Աղվանք) կոչեցաւ։

388. ՇԻՐԱԿ

Եւ զորդի իւր զՇարայ, զյոլովածին և զշատակեր, առաքէ (Արամայիս) ամենայն աղխիւն իւրով ի դաշտ մի մօտաւոր, արգաւանդ և բերրի, յորում գնան ջուրք ոչ սակաւք, ի թիկունս հիւսիսոյ լերինն, որ անուանեցաւ Արագած. յորոյ անուն և զգաւառն ասեն անուանեալ Շիրակ։ Վասն որոյ թուի արդարանալ առասպելին, որ ասի ի մէջ գեղջկաց. «Թէ քո Շարայի որկորն է՝ ասեն, մեր Շիրակայ ամբարքն չեն»։

389. ՍՈՒՐՄԱԼՈՒ

Ա

Այստեղ եղել է Սուրբ Մարի (Մարիամ) անունով մի եկեղեցի, դրանից էլ գավառը ստացել է Սուրբ Մարի անունը, որ հետո բերանից-բերան դարձել է Սուրմալու։

բ

*Այս գավառը հայտնի է նաև Սհաթափոս անունով, որովհետև Երևանի նահանգի համեմատությամբ սա ամենախոր հարթավայրն է, ուր ժամը մի անգամ փոխվում է եղանակը։*

### 390. ՀԱՅՈՑ ԶՈՐ ԵՎ ՀԱՅՔ

*Ի հաստատել Տիտանեանն Բելա զթագաւորութիւն իւր առ ամենեսեան՝ առաքէ ի կողմն հիւսիսոյ զմի ումն յորդւոց իւրոց առ Հայկ արամբք հաւատարմօք, գալ նմա ի հնազանդութիւն և կեալ խաղաղութեամբ։... Եւ ի բաց դարձուցեալ Հայկա զպատգամաւորսն Բելայ՝ խստութեամբ պատասխանեաց։*

*Ապա զօրաժողով լինի ի վերայ նորա Տիտանեանն Բէլ ամբոխիւ հետեւակ զօրաց. գայ հասանէ ի հիւսիսի, յերկիրն Արարադայ, մերձ ի տունն Կադմեայ։ Փախստական լինի Կադմոս առ Հայկ, քաջընթացիկս առաջի իւր առաքէ. «Գիտեա՛, ասէ, ո՛վ մեծդ դիւցազանց, զի դիմեալ գայ ի վերայ քո Բէլ յաւերժիւք քաջօք և երկնադիզօք հասակօք սկայիւք մրցողօք»։*

*...Իսկ Բէլն, յանդուգն և անճոռնի զօրութեամբ ամբոխին, որպէս յորձան ինչ սաստիկ ընդ զառ ի վայր հեղեղեալ՝ փութայր հասանել ի սահմանս բնակութեանն Հայկայ... Աստ ուշիմ և խոհեմ սկայն..., անճապարեալ հաւաքէ զորդիս իւր և զթոռունս, արս քաջս և աղեղնաւորս, թուով յոյժ նուազունս, և զայլսն ևս որ ընդ իւրով ձեռամբ. հասանէ յեզր ծովակի միոյ, որոյ աղի են ջուրքն, մանունս ունելով յինքեան ձկունս։ Եւ կոչեցեալ զզօրս իւր՝ ասէ ցնոսա. «Յելանելն մեր հանդէպ ամբոխին Բելայ՝ դիպել ջանասցուք տեղւոյն, ուր անցեալ կայցէ ի մէջ խռան քաջացն Բէլ։ Ձի կա՛մ մեռցուք, և աղխ մեր ի ծառայութիւն Բելայ կացցէ, կամ զաջողութիւն մատանց մերոց ի նա ցուցեալ՝ ցրուեսցի ամբոխն, և մեք եղիցուք յաղթութիւն ստացեալք»...*

*Եւ հասեալ երկոցունց կողմանց սկայիցն ի միմեանս՝ ահագին դըղրդմունս ի վերայ երկրի առնէին շահատակելով, և ահս պակուցանողս տարազուք յարձակմանցն սկայազունքն զմիմեամբք արկանէին։ Անդ ոչ սակաւք յերկոցունց կողմանց արք յաղթանդամք բերանոյ սրոյ դիպեալք՝ տապալ յերկիր կործանէին, և մարտն յերկոցունց կողմանց մնայր անպարտելի։ Զայսպիսի անակնունելի դիպուած տարակուսանաց տեսեալ արքայն Տիտանեան զարհուրեցաւ, և ի նոյն բլուր ուստի էջն՝ վերջոտնեալ ելանէր. քանզի խորհէր ի միջոցի ամբոխին ամրանալ, մինչև հասցէ բո-*

վանդակ զօրն, զի միւսանգամ ճակատ յօրինեսցէ։ Զայս իմացեալ աղեղնաւորին Հայկայ՝ յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն, լի քարշէ զլայնալիճն, զիպեցուցանէ զերեքթեւեանն կրծից տախտակին, և շեշտ ընդ մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր հարաւ սլաքն, և այսպէս ճոխացեալն Տիտանեան կործանի յերկիր զարկուցեալ, և փչէ զոգին։ Իսկ ամբոխն տեսեալ զայսպիսի ահագին գործ քաջութեան՝ փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց։

Բայց զտեղի ճակատուն շինէ դաստակերտ, և անուն կոչէ Հայք, վասն յաղթութեան պատերազմին. այսօրիկ աղագաւ և գաւառն այժմ անուանի Հայոց ձոր։ Իսկ զբլուրն, ուր քաջամարտիկօքն անկաւ Բէլ՝ անուանեաց Հայկ Գերեզմանս, որ այժմ ասին Գերեզմանակք։ Բայց զդիակն Բելայ պաճուճեալ դեղովք, հրամայէ Հայկ տանել ի Հարք և թաղել ի բարձրաւանդակ տեղւոջ, ի տեսիլ կանանց և որդւոց իւրոց։ Իսկ աշխարհս մեր կոչի յանուն նախնւոյն մերոյ Հայկայ՝ Հայք։

### 391. ԲԵՐԿՐԻ

Ասում են, թե այստեղ հին ժամանակներից շատ ծառաստաններ են եղել, որոնք ամեն տարի առատ բերք են տվել։ Գավառի բնակիչները իրար հանդիպելիս՝ բերկրի՛ (ուրախացիր) են ասել, տարվա բերքի առատությունը ավետելով։ Դրանից էլ գավառի անունը մնացել է Բերկրի։

### 392. ՄՈԿՔ ԿԱՄ ՄՈԿՍ

Արևելքի երեք մոգեր (մոգք), երբ այցելության են գնում նորածին Քրիստոսին, երեք ամիս մնում են այստեղ։ Նրանցից մեկը, Գասպար անունով՝ մեռնում ու թաղվում է նույն տեղում, ուր և ցույց են տալիս նրա գերեզմանը։ Ի հիշատակ այդ մոգերի գավառի անունը դնում են Մոկք, որը հետո բերանից-բերան դառնում է Մոկս։

### 393. ՇԱՏԱԽ

#### Ա

Ասում են, թե Շահ-Աբասի ժամանակ մի խումբ հայեր, փախչելով նրա հալածանքներից՝ ապաստան են գտնում այս կողմերում։ Շահի մարդիկ հետապնդելով փախչողներին՝ դարան են մտնում կասկածելի վայրերում։ Իրենց տեղը չմատնելու համար հայերը կծկվում են երկու սարերի

միջև ընկած գետի ափին և ձայն-ծպտուն չեն հանում։ Օրեր անց հարսներից մեկը գիշերով երեխա է ունենում։ Աշխարհ եկած նորածինը սկսում է հչալ և լաց լինել։ «Ա՜խ, ք ոտուն քանդվի, ի՞նչ կանես», սարսափած շշնջում է նորածնի մայրը։ «Դեռ շատ ա՜խ կանեք», ասում են դարանակալած թշնամիները, որոնք նորածնի ձայնից իմանալով հայերի տեղը՝ սկսում են կոտորել նրանց։ Դրանից հետո այդ տեղի անունը մնում է Շատախ։

Բ

Այստեղ ապրող Արջուց իշխանը սիրել է շատ խոսել, որի համար էլ տեղացիք նրան Շատախոս մականունն են տվել։ Բայց ինքը իշխանն էլ պակաս չի սիրել այդ անունը, ուստի և պատվիրել է, որ հին Արջք գավառը անվանեն Շատախոսի գավառ, որը հետագայում ժողովրդի բերանին դարձել է Շատախ։

394. ՍՊԱՐԿԵՐՏ

Աշխարհը շրջագայելիս Քրիստոսը գալիս հասնում է այս կողմերը։ Խիզանի ջրի վրա կա մի կամուրջ՝ Կնդինքու կամուրջ անունով. այստեղից Քրիստոսը իր պատկերը ուղարկում է մոտակա գավառը, որի համար և այն կոչվում է զՊատկերք, իսկ հետո բերանից-բերան դառնում է Սպարկերտ։

395. ՏԱՐՈՆ—ՄՈՒՇ

Ա

Նոյի Տարքան անունով որդին բաժանվելով հորից, վերցնում է իր գավակներին ու թոռներին և գալիս է այս կողմերը։ Նա բնակություն է հաստատում Եփրատ գետի ճյուղերից մեկի վրա և այդ տեղը իր անունով կոչում է Տարքան, որը հետո բերանից-բերան դառնում է Տարոն։

Բ

Աստղիկ դիցուհին սովորություն ուներ գիշերադեմին լոգանք ընդունել Գրգուռ լեռան ստորոտին գտնվող Համանուն գետում։ Իմանալով այդ, տեղացի կտրիճները կրակ են վառում մոտակա բլուրների վրա, որպեսզի կրակի լույսով հեռվից տեսնեն Աստղիկի գեղեցիկ մարմինը։ Իմանալով այդ Աստղիկը թանձր մշուշով պատում է ամբողջ շրջապատը։ Դրանից հե-

տռ գավառը կոչվում է Մշուշ, որը բերանից-բերան հետագայում դառնում է Մուշ։

Գ

Բարսիգ զարգուց (հարվածեց) զհայիր. զհայիր ճարտ ու պուրտ արից (կոտորել), պերից, կոխից Զարբուհր խնուսնիր։ Խաբար էգավ Արտոնաց սար, ըր (որ) քառսուն օր արիվ չառնը վերեն։ Մուշեղ Սասնու պերտ գեղնի. Արտոնաց ռես լը հեռու գեղնի։ Ատ ռեսի խըսուրնին (տոհմակիցներ, ցեղակիցներ) շադ են։ Մուշեղ խաբար գը ջամփը (ուղարկել) մըդ ռես. «Ինչ գասիս, բարսիգ էգավ հար (մինչև) Սուլուխ. ինչ ըր քու խազանը ասքար էնեք (զորաժողով անել), ես լը գը գանչիմ զըմ շըխան (կողմնակիցներ)»։

Հասան իրար դուրան (հարթ) դիխ ըմ, ժաժ գասին։ Էրգու ասքար (զինվոր) ատ դիխաց լախաց (շարժվեց), էլավ, զանուն տրեցին ժաժան։ Էգան, էգան, հասան Խասկեղ. հարան (գնացին) Մկրակում, Քրդակում։ Պռնեցին զՄկրակում, Քրդակում։ Մուշեղ ասեց ռեսին. Ռես, մըք իմալ (ինչպես) էնինք. բարսիգ լցվավ Սուլուխ. բարսիգ լցվավ Մկրակում, Քրդակում։ Էլան գըզըըցին ճրի առեւ (առաջը)։ Էլան զԽասկեղու, զՄկրակումու նախիր թողեցին. հատ մեգ (յուրաքանչյուր) դավրի (անասուն) գոդշին (եղջյուր) մում ըմ (մոմ) տրեցին, գըըցին (ամրացրին)։ Իրընգուն մթան զերգու կեղի նախիր շիդգեցին (ուղղեցին) Քրդակումու ծուրն (ձոր) ու Դըվնըգա չոլ տաշտի մեչ։ Թափուր ըմ (գունդ, գումարտակ) ասքար հադ նախրին (նախրի հետ) տրեցին. մնացած ասքար էդվից (հետևվից) կնաց, զբարսից էդիվ առան։ Բարսիգ մեղաց (մտածեց), ըր Աշու տաշդ էլավ լուս. բարսիգ հանչի (մինչև) լուս զգուիվ արից վըր դավրին (անասունների հետ). լուսուն էդիվ ընցնող ասքար գռվավ։ Բարսից գողըրվավ, փախավ հանչի Կուրասու. Մուշեղի զուրքն ու Արտոնաց ռեսին դվեցին էդիվ բարսից հանչի Ցըխառու։ Ասդիխ (այստեղ) բարսից ասքար ցխաց (իրարից բաժանվել). և անուն մնաց հարի մըգա (մինչև հիմա) Ցըխառու։ Մգա բարսիգ լա զհայու հաց չուդը ըն ավուրց պուն (այն օրերից սկսած)։

Մուշեղ լը Սասուն չկնաց. կնաց, նստավ Մուշ. Մուշեղի անունով էղավ Մուշ։ Տապեւ ծուրի քով սարի վերեն Մուշեղի պերտ գը հարի մըգա լը (մինչև հիմա էլ)։

## 396. ՏԵՐՍԻՄ

*Ջալալիների ապատակալթյունից ազատ մնալու համար այստեղի հայերը իրենց Տեր-Սիմոն անունով բանիմաց ու քաջ քահանայի խորհրդով, խալամանալու փոխարեն, նախընտրում են ընդունել դրացի Ալևիի քրդերի կրոնը և մնում են անվտանգ։ Իրենց առաջնորդի անունը հավերժացնելու համար տեղացի հայերն իրենց լեռնաշխարհն անվանում են Տերսիմոն, որը ժամանակի ընթացքում փոխվում և դառնում է Տերսիմ։*

## 397. ՍԻՐՊԻՀԱՆ

Գտնվում է Հին-Բայազետից խոզաթ տանող ճանապարհի ձախ կողմում

*Այստեղ առաջ եղել է մի մեծ գյուղ Սիրպիհան անունով։ Սա շատ առաջ կրակի է տրվել թշնամիների կողմից և բնակչությունն էլ բոլորովին ջնջվել է, բացի մի ընտանիքից, որից և հետագայում գոյացել է Սիրպիհան անունով ամբողջ գավառը։*

## 398. ՍԱՍՈՒՆ

*Տալվորիկցի Մրդոյի ու Պետոյի տան գերաններից մեկը ճնշվելով հողի ծանրությունից, կախ է ընկնում օդում։ Մոտիկ գտնվողները սարսափահար գոռում են. «Սյո՛ւն բերեք, սյո՛ւն»։ Մինչև սյուն բերելը, եղբայրներից մեկը, որը ներկաների մեջ ամենաբարձրահասակն էր, տեղից վեր ցատկելով՝ ձեռքը դեմ է անում օդում կախված գերանին և ասում է. «Հայդա՛, ես մսա սուն» (մսե սյուն)։ Բոլորը միաբերան կրկնելով ձայնում են. «Մզրոն մսա սուն է, մսասուն...»։ Դրանից հետո այդ գավառը կոչվում է Մսա-սուն, որը հետո բերանից-բերան դառնում է Սասուն։*

## 399. ՁԵՅԹՈՒՆ

### Ա

*Այստեղ ապաստան գտած հայ գաղթականները իրենց համար կառավարիչ են ընտրում Սեթ անունով մի բարձրահասակ ու հսկա մարդու։ Սեթն իր ազնվությամբ ու արդարադատությամբ այնքան մեծ հռչակ է ստանում, որ շրջակա գյուղերի բնակիչները, Մարաշի փեյին դիմելու*

փոխարեն՝ սրան են դիմում, ասելով. «Սեթի՛ն երթանք, Սեթի՛ն երթանք»: Դրանից էլ հետագայում գավառի անունը դնում են Սեթին, որը բերանից-բերան դառնում է Զեյթին—Զեյթուն:

Բ

Երբ Հեթում իշխանի կին Զարմանուհին տիրանում է Կոկիսոնի և Կապանի բերդերին, այդ անառիկ հողերի վրա նա մի նոր իշխանություն է հիմնում և երեք հարյուր կտրիճներով իշխում այնտեղ:

Զարմանուհու զարմիկներից Սեթ անունով մի իշխան հաստատվելով Զեյթունի միջնաբերդի մեջ, իր բարի համբավով մեծ ազդեցություն է ունենում շրջանի բնակչության վրա: Ամեն անգամ, երբ մի արտակարգ դեպք է պատահում, ժողովուրդն ասում է. «Սեթի՛ն դիմենք, Սեթի մոտ գնանք...»: Սեթ և Սեթին բառերը կրկնվելով, աղավաղվում և դառնում են Զեթին կամ Զեյթուն:

Գ

Սրա բնակիչները սովորություն են ունեցել այգիներում շատ ձիթենիներ (զեյթուն կամ զեյթին) տնկել, որի համար և գավառի անունը կոչվել է Զեյթուն:

Դ

Զեյթունի առաջին բնակիչները եղել են Անիից եկած յոթ տուն հայ գաղթականներ: Սրանք առաջին անգամ հաստատվել են այժմյան Շեհիրձոկ քաղաքից մի քանի մղոն հեռու, ձորի մեջ, որ կոչել են Անիձյուր (Անի-ձոր):

## 400. ԵՐԵՎԱՆ

Ա

Ջրհեղեղի ժամանակ Նոյ նահապետը Մասիս վրա իջած տապանից դիտում է շրջակայքը և հեռվում տեսնելով մի անջուր տարածություն, բացականչում. «Երևա՜ց անդ...» (այնտեղ երևում է): Դրանից հետո այդ վայրը կոչվում է Երևան:

Բ

*Երբ Նոյ նահապետը դուրս է գալիս տապանից, ամենից առաջ տեսնելով այս վայրը, ասում է. Ահա երևացին լեռներ ու բլուրներ..., որի համար և այն կոչվում է Երևան։*

Գ

*Սա աշխարհի ամենամեծ ու հին քաղաքն է։ Այստեղ ջրհեղեղից առաջ և հետո ընտանիքով ապրել է Նոյ նահապետը, երբ դուրս է եկել Մասսին իջած իր տապանից։ Այստեղ էլ Նոյը առաջին անգամ տնկել է խաղողի որթը։*

## 401. ԱՐՄԱՎԻՐ

Ա

*Իսկ որդի Արամենակայ որդւոյ Հա:յկա՝ Արամայիս, շինէ իւր տուն բնակութեան ի վերայ ոստոյ միոյ առ եզերբ գետոյն, և անուանէ զնա յիւր անուն Արմաւիր։*

Բ

*Զկնի Արամենակայ՝ որդի նորա Արամայիս շինէ ի վերայ գետեզերն տուն բնակութեան, և անուանէ զանուն նորա ըստ անուան իւրոյ Արմայիր, այսինքն՝ Արամայ իր։*

## 402. ՆԱԽԻՋԵՎԱՆ

*Նոյը ջրհեղեղից հետո տապանից դուրս գալով, առաջին անգամ ընտանիքով իջևանել է այստեղ, ուր և դրել է ապագա քաղաքի հիմքը, որի համար և այդ տեղը ստացել է Նախիջևան անունը։*

## 403. ԱԳՈՒԼԻՍ

*Այստեղ քարակույտի տակ մի գիշեր քնել է Թադեոս առաքյալը։ Երբ նա արթնացել ու բաց է արել աչքերը, տեսել է լուսաբացը և ասել. Ակն ի լույս, որը հետագայում փոխվելով դարձել է Ագուլիս։*

### 404. ՇՈՒՇԻ

*Իրանի Փանահ խանը ժամանակին հյուր է գալիս Բարդայի խանին։ Անվանի հյուրին սիրաշահած լինելու համար, սա շքեղ որս է կազմակերպում նրա պատվին։ Ղարաբաղի գովաբանված նժույգներին նստած, որսկան շներով, ծառաներով ու օգնականներով, երկու խաները դուրս են գալիս շրջակա բարձրաբերձ ու գեղեցիկ լեռներն ու խիտ անտառները՝ որս անելու։ Այդ լեռներից դիտելով շրջապատը, Փանահ խանը հիացմունքով բացականչում է. Այս ի՜նչ հրաշալի տեղ է, ի՜նչ պարզ ու մաքուր օդ, կարծես շուշից (ապակուց) լինի. հեռվից-հեռու ամեն ինչ երևում է հայելու պես. այստեղ պետք է անպայման մի լավ քաղաք կառուցել։ Այդպես էլ լինում է։ Հետևելով Փանահ խանի խորհրդին Ղարաբաղի բարձրադիր ու գեղատեսիլ այդ վայրում, որտեղ օդը մաքուր ու թափանցիկ է ապակու պես, կառուցվում է մի քաղաք Շուշի անունով։*

### 405. ԱՆԻ

*Սրա բնակիչները ժամանակին այնքան են գոռոզանում իրենց հարստությունով ու փառքով, որ մոռանում են անգամ աստծուն։ Եկեղեցում կարճ վարդապետ տեսնելիս՝ նրանք բարձր գրքակալ էին դնում, իսկ բարձր եպիսկոպոս տեսնելիս՝ ցածր, որպեսզի նրանք կամ ձգվեն, կամ կռանան և իրենք ծիծաղեն նրանց վրա։ Տեսնելով այդ Հովհաննես Երզընկացին անիծում է անեցիներին։ Նրա անեծքով մեծ երկրաշարժ է լինում, որը տակն ու վրա է անում Անի քաղաքը։*

### 406. ԱՐՏԱՆՈՒՋ

*Աւերակք ի գլուխ քարալերին ի վաղ ժամանակս էին ապարանք թագաւորին կամ մեծի իշխանի, զոր շինեաց վասն հարսանեաց, և ի բերելն զհարսն Արտանոյշ՝ դիպաւ անդէն մահ հարսին, ուրանօր շինեցաւ այս գերեզման։ Անունս Արտանուչ է աղաւաղումն անուանս Արտանոյշ։*

### 407. ԱՐԹՎԻՆ

*Առաշ Արթվին շենլիկը (շեն) տասնըհինգ տուն է էղե. բոլորը (շուրջը) մեշա (անտառ). էն մեշումը սավեթումեն կու աշին օրը (նայում-տեսնում են, որ) Արթվինումեն մուխ (ծուխ) կու դուս գա. գուզան կու փոին խիտը (կամուրջ). չեն կա (չեն կարողանում) գտնի օրա (որպեսզի) Ճորոխը*

*անցնին։ էտեվ (հետո) մեկ ավչին (որսորդ) գեյիգի (գալիս է) հետնեմեն (եռևից) օրը զարնա. առաչեվան (առջևից) կայբ է ըլնելի (անհայտանում) է. կայբ էղած վախտին փնտռելիս է վօրանց (որ կողմը) գնաց։ Աշից (նայեց) օրը խիտը գտավ. խիտն էլ փուրցելը (մացառ) փաթըթած է. էնղադուր (այնքան) արավ օրա խիտը անցավ էնթին (մյուս կողմը)։ Վեր անցավ օրմընումը (անտառ?), փնտռից ու շենլիկի տեղը գտավ։ Իշտե էնդոր էտեվ (դրանից հետո), էֆենդիմ, օրմանը կտրեցին, էնդեղը քաղաք շինեցին, իշտե էնդեղը էղավ Արթվին։ էն գտնող մարթու անունն էլ Արութեն է էղե, էնդոր վրա (այդ պատճառով) դրել է Արթվին։*

## 408. ԿԱՐԻՆ

*Դավիթ Անյաղթ և Մովսէս քերթողահայրն որպէս զարս քաջս անդադար սկիզբն արարին շինել զքաղաքն Կարնոյ։ Կանգնեցին բուրգն խոսրովային, և անահ ի մեքենայից. և պարիսպ երեք ի վերայ միոյ հիման. քերեալ և պեղեալ զհող երից պարսպին՝ զոր ի միջին և եթ կայր պեղել հրամայեցին մինչև ի պորտ քաղաքին, և վէմս անշարժս կրով զերեսս անդընդոց փակեցին, և ի վերայ միոյ հիման կանգնեցին երիս պարիսպս, և ի ներքս ի կողմ քաղաքին աստիճանս երկերիւրս մի առ միով յետոյ յետս՝ զի մի գայթակղեսցի պարիսպն ի փորողացն. նոյնպէս և ի դրանց կուսէ պարսպին աստիճանս երկերիւր մի առ միով յետոյ յետս, զի անահ լիցի ի փորողաց թշնամեաց քաղաքին։ Եւ այլ հնարս հնարեցան, զի թէ գուցէ գայցեն թշնամիք, և նեղեսցեն զքաղաքն և մուտ և ել ոչ տան առնել՝ արարին ներքնափոր ի մէջ քաղաքին, փորել ի ներքոյ գետնոյ խորագոյն, և գնացեալ ի մէջ դաշտին ճաշոյ մի գնաց ճանապարհ, ի տեղին, ուր ժողով ջրոցն է և շամբ յոյժ, զի թէ նեղեսցեն զքաղաքն կարող են բերել անասնոց խոտ և այրելոյ եղէգն. և թշնամիքն զայս ոչ կարասցեն իմանալ։ Եւ միւս կողմն քաղաքին նոյնպէս գետնափոր փակած մեծամեծ վիմօք, մինչև ի լեառն, որ կոչի Այծուպտկունք, թէ կարիք հասանիցեն հեծելոտ՝ կարող են բերել ձիօք և հեծելօք և մտանել ի քաղաքն առանց գիտելոյ թըշնամեացն։ Եւ վասն ջրոցն կարի գեղեցիկ է և վայելուչ, զի ոչ ոք է ի քաղաքիդ՝ ոչ հարուստ և ոչ աղքատ, որ ոչ ունի ջուրս անոյշս բերեալ զերես ի անդնդոց. ապարանք և աշտարակք գեղեցկաշէնս և սրբագործս, փողոցք, և վաճառանոցք, սրբատեսիլ եկեղեցիք՝ հրաշալիք տեսողացն, և դրունք քաղաքին բարձրասեմս և լայնանիստ և կատարեալ պարսպաւ վայելուչս, և բուրգքն ամենայն խոսրովայինք...։*

## 409. ԴԱՎՐԵԺ

*Ասեն, թէ զառաջինն շինեաց զնա Խոսրով՝ հայրն Տրդատայ, եւ անդ նստեալ առնոյր զվրէժ արեանն որդւոյ իւրոյ՝ Արտաւանայ եղբօր որդւոյ իւրոյ, զոր եսպան Արտաշիր՝ որդին Սասանայ, եւ տասն ամ աւերեաց զտունն Պարսից, եւ կոչեաց զանուն քաղաքին Դա վրէժ։ Յետոյ Հուլաւու խանն շինեաց և նորոգեաց, վասն որոյ Հուլաւու Թախտ կոչի այժմ։*

## 410. ՄԱՐԱՆԴ

*Իսկ ի մէջ գիշերին պարսիկ մի, որ էր գուշակ զօրացն, տեսանէր զերկինս բացեալ և լոյս սաստիկ հեղեալ ի վերայ սպանելոցն, և կառք մի ոսկեղէն բարձր յոյժ, յորոյ վերայ նստէր կին մի ծիրանազգեստ թագաւորակերպ, և ամբոխք աՀագին զօրաց լուսեղինաց շուրջ զնովաւ։ Եւ նա հայէր ի վերայ կոտորածին, և լայր ողբով, և մի մի զգուէր ի նոցանէ։ Իսկ պարսիկն այն զարհուրեալ կամեցաւ ազդ առնել զօրացն, և կապեցան ոտքն և լեզուն. ապա մերձենայր ի նա մի ի սրբոց զօրացն։ Եւ նա հարցանէր. «Ով է այդ»։ Ասէ հրեշտակն. «Այդ մայրն է երկնաւոր թագաւորին. և իջեալ էառ զվկայսն և սիրելիսն որդւոյն իւրոյ. և մի մի կամի փառաւորել զնոսա»։ Կացեալ տեսլեանն մինչև յառաւօտն և աներևոյթ լինէր։*

*Իսկ ի լուսանալ առաւօտուն կամեցան զօրքն գնալ ի տեղւոյն. և գտին զայրն թուլացեալ, անկեալ. և հարցանէին ցնա զպատճառն. և նա այլ ինչ ոչ կարէր պատասխանել. միայն մատամբն ցուցանէր և լեզուաւ ասէր՝ «Մայր անդ այ, մայր անդ այ», վասն որոյ և անուն տեղւոյն մինչև ցայժմ Մարանդ կոչի։*

## 411. ԲԱՂԵՇ

*Սրա բնակիչներից մեկի գոմի դուռը ձմռանը պատահմամբ բաց է մնում։ Էշը դուրս է գալիս գոմից և կամաց-կամաց հեռանալով, իջնում է Ջլիֆտա կոչված ձորը։ Խրվելով ձյան մեջ նա երկար մնում է այստեղ ու սառչում։ Մեկ շաբաթ անց տերը գտնում է պաղած (սառած) իշու դիակը։ Դրանից հետո այս տեղի անունը դնում են Պաղեշ, որը հետո բերանից-բերան դառնում է Բաղեշ։*

## 412. ՏԻՃԵՌՆ

Գտնվում է Մշո դաշտում, Ողական ամրոցի հյուսիս-արևմտյան կողմում

Ասում են, թե երբ այս քաղաքն ավերվում է պարսից ասպատակություններից, նրա բնակիչներն իրենց զեռն (ոսկին) և զիվը (արծաթը) լցնում են մի խոր հորի մեջ և դուռը փակում։ Դրանից հետո քաղաքի անունը մնում է Զիվզեռն (արծաթ և ոսկի), որը բերանից-բերան դառնում է Տիճեռն։

## 413. ԱՐԱԲԿԻՐ

Սա ժամանակին ամուր ու անմատչելի պարիսպներով շրջապատված մի քաղաք է եղել։ Թշնամիները եկել, պաշարել են այն։ Քաղաքացիք երկար ժամանակ դիմադրել են։ Երբ վերջապես թշնամիներին հաջողվում է ճեղքել պարսպի մի կողմը, նրանց հրամանատարը խրամատի մոտ գտնվող սև ձիավորին բարձրաձայն կարգադրում է. Արաբ կի՛ր... (արաբ մտի՛ր...)։ Ասում են, թե դրանից հետո քաղաքի անունը մնում է Արաբկիր։

## 414. ԱԿՆ

### Ա

Անիի կործանումից հետո, նրա բնակիչների մի մասը ապրելու նոր տեղ փնտրելու համար, դուրս գալով իրենց ավերված հայրենիքից, հասնում է մի ձորի, և լեռնային ջրառատ վտակի։ Երկար որոնումներից հետո գտնում են այդ վտակի ակը ու նրա վրա հիմնում իրենց նոր քաղաքը և անունը դնում Ակն։

### Բ

Քաղաքի կենտրոնում ապառաժի վրայից ցած է հոսում լեռնային վճիտ ու առատ մի ջուր և թափվում է Գատավորի ավազան (Գատը գեոլ) կոչված ջրամբարի մեջ։ Ասում են, թե այս լեռնային ջրի (ակն) անունով է, որ քաղաքը կոչվել է Ակն։

## 415. ԳԸՐԳԱՂԱՃ

Գտնվում է Զմյուռնիայի հյուսիս-արևելյան շրջանում

Ա

Ասում են, թե քաղաքի նախկին հիմնադիրները այստեղ քառասուն ծառ են տնկել, որոնց մոտ էլ շինել են իրենց տները։ Ծառերի շվաքը շատ դուր է եկել բոլորին, դրա համար էլ քաղաքը քանի գնացել ընդարձակվել է և սկսել է կոչվել Գըրգաղաճ կամ Քառասուն ծառ։

Բ

Ասում են, թե մոտիկ լեռան ստորոտին ժամանակին եղել են քառասուն խրճիթներ. մի ճանապարհորդ իջևանել է այստեղ, և քաղցած լինելով մի քիչ հաց է խնդրել տեղացիներից. սրանք զլացել են տալ՝ ասելով. Մենք բոլորս էլ հացի կարոտ ու քաղցած ենք, քեզ ի՞նչ տանք։ Օտարական ճանապարհորդը զարմանալով բացականչել է. Ուրեմն քառասուն տունդ էլ քաղցա՞ծ եք (Գըրգը տա ա՞ճ), և դրանից հետո վայրի անունը կոչվել է Գըրգաղաճ։

## 416. ԱՏԱՊԱԶԱՐ

Սա առաջ գյուղ է եղել, որը կզղու է նմանվել և շրջակա հարթության համեմատությամբ ունեցած իր բարձր դիրքի շնորհիվ անվնաս է մնացել մոտակա գետի (Սաքարիա) ողողումներից։ Հայերն այստեղ զարգացրել են արհեստն ու առևտուրը, և գյուղը աճելով վեր է ածվել մեծ քաղաքի։ Կղզու նմանվելու և վաճառատեղի լինելու պատճառով թուրքերը կոչել են Ատապազար (ատա=կղզի, պազար=շուկա)։

## 417. ՍԵՎԵՐԱԿ

Ասում են, թե սրա բնակիչները շատ անպետք ու կեղտոտ են եղել։ Դրա համար էլ աստված երկնքում ամպերի սև երակ է առաջացրել և քարե կարկուտ է թափել նրանց վրա։ Այդտեղից էլ քաղաքի անունը մնացել է Սևերակ (սև երակ)։

## 418. ԴԶԼԱՐ

*Երբ ի Հայաստանէ առաքեցին Թագաւորին Թաթարաց զկոյս աղջըկունս, նոքա եկեալ հասին աստ և չկամելով մատնել զանձինս իւրեանց ի կամս Թագաւորին, գտին զհնարս, ուստի խնդրեցին պահապանաց մեկուսանալ անտի, զի ինքեանք լուասցին ի ջուրն։ Եւ ի մեկուսանալ անտի պահապանաց այնոքիկ, օրիորդք հոսեցին զինքեանս ի կամրջէ անտի ի ջուր և հեղձան։ Պահապանք ի ճղփմանէ ջուրց վերադարձեալ՝ տեսին զսոսկալի հետևանս և այնպէս տրտմութեամբ գնացեալ պատմեցին արքային։ Վասն որոյ, յանակնունելի պատահմանէս այսմանէ՝ տեղին այն անուանեցաւ Դզլար։*

## 419. ՄԱՍՏԱՐԱ

Գտնվում է Թալինի շրջանում

### Ա

*Երբ այստեղով տանելիս են եղել Սբ. Հովհաննեսի դիակը, գյուղացիք խնդրել են, որ նրանից մի մաս տրվի իրենց։ Ստանալով այն, նրանք գյուղում եկեղեցի են շինում և աջը դնում մեջը։ Դրանից հետո գյուղի անունը կոչում են Մաստարա։*

### Բ

*Որպէս աւանդութեամբ հասեալ է առ մեզ, սուրբն Գրիգոր Լուսաւորիչ ի բերելն ընդ իւր ի Կեսարիոյ զմասունս Սբ. Յովհաննու, մասն մի ամփոփեալ է անդէն, յորոյ վերայ կառուցեալ է եկեղեցին յանուն սրբոյն Յովհաննու և գիւղն կոչեցեալ Մաստարայ, զոր նշանակէ մասն տարա։*

## 420. ՎԺԱՆ ԿԱՄ ՈՒՋԱՆ

Գտնվում է Թալինի շրջանում

*Այս գիւղ է ի լանջի անդ մեծի լերին։ Անունս Վժան ընկալաւ ի ձայնէ ջուրց սորին, որ իջանէ ի վերուստ անտի զառընդթափ զգլխով վիմաց ընդ քարուտ առուակս վժալով կարի սրընթաց։*

## 421. ԵՂՎԱՐԴ

Գտնվում է Աշտարակի շրջանում

Ա

*Ջրհեղեղի ժամանակ Նոյի տապանում գտնվող մարդիկ անհամբեր սպասում են ջրի իջնելուն և երկրի երևալուն։ Ժամանակ անց, երբ նրանք տեսնում են Արայի լեռան ստորոտը, ուրախացած բացականչում են. եղեւ արդ...։ Դրանից հետո այդ տեղը կոչվում է Եղվարդ։*

Բ

*Եղվարդը ժամանակին շատ մեծ գյուղ է եղել, հողով առատ։ Նրա մի ծայրը հասել է Քանաքեռ, մյուսը՝ Աշտարակ։ Ունեցել է չորս ջրանցք, որոնցից մեկը ջուր է առել Զանգվից, մյուսը՝ Բուժականից, երրորդը՝ Սաշըլվից, չորրորդը՝ Քացախից։ Գյուղի բոլոր հողերը ծածկված են եղել անտառներով ու այգիներով։ Եղել է ծաղկով, վարդով ու յուղով առատ։ Դրա համար էլ անունը դրել են Եղվարդ (եղ-վարդ)։*

## 422. ՕՇԱԿԱՆ

*Թէպէտ և երևումն Եղուարդայ յոյս մեծ ծնանէր յոգի նախահարց, սակայն տակավին զդաշտն մեծ ծովացեալ ջուրբք զառաջեաւ տեսեալ՝ ոչ ինչ կարէին համարձակել ի փոփոխումն վիճակի իւրեանց։ Բայց իբրև վերըստին հայեցեալ տեսին զբլուրն ծիրանափայլ չէչաքարանց, որ մինչև ցայսօր բոսորափայլ երանգէ զաւանն Օշականայ՝ զուարճացեալ խրախուսանօք իմն ձայնեցին. Օ՜շ ական, Օ՜շ ական... Այսինքն է՝ երանի աչաց մերոց՝ զի տեսաք և զայս բացեալ։*

## 423. ՄԱՆԿԱՆՈՑ

Գտնվում է Օշականից դեպի հյուսիս

*Եղեալ երբեմն աստ յՕշական եղբարք երեք և բաժանեալ ի միմեանց, մին ի նոցունց՝ որոյ անուն Մանուկ, եկեալ աստ արկանէ բնակութիւն, և յորէ անտի ցայսօր անուանի տեղիդ յանուն նորա՝ Մանկանոց։*

## 424. ԱԽԹԱՄՈՒՐ

Գտնվում է Աշտարակի մոտ

*Այստեղ ժամանակին մի բարեշեն գյուղ է եղել։ Լենկ-Թեմուրը եկել է նվաճելու։ Գյուղացիները պահվել են բերդի ամուր պարիսպների հետևը։ Լենկ-Թեմուրը երկար ժամանակ պաշարել է գյուղը, բայց չի կարողացել առնել։ Մի պառավ մաղով կիր է թափում պարիսպներից դուրս։ Լենկ-Թեմուրը մնում է զարմացած, թե ինչքան հարուստ են այս գյուղացիները, որ երկար պաշարումից հետո էլ, ալյուր են թափում աղբի հետ։ Որոշում է անպայման գրավել գյուղը։ Այդպես էլ անում է։ Ամեն ինչ ավերում է և բնակիչներին սրի քաշում։ Սարսափած գյուղացիները բացականչում են. Ա՜խ, Թամուր, կաղ Թամուր։ Եվ դրանից հետո տեղի անունը մնում է Ախթամուր։*

## 425. ՂԶԼԹԱՄՈՒՐ

Գտնվում է Աշտարակի մոտ

*Ախթամուր գյուղը առնելուց և ավերելուց հետո, Լենկ-Թեմուրը շարժվում է Հարևան գյուղի վրա։ Սրա բնակիչները սարսափած հանձնվում են։ Լենկ-Թեմուրը ներում է նրանց և չի կոտորում։ Ի նշան երախտագիտության՝ փրկված գյուղացիները նրան Ղզլթամուր (ոսկի Թամուր) են անվանում։ Դրանից հետո գյուղի անունը դնում են Ղզլթամուր։*

## 426. ՂԱՐԱՔԻԼԻՍԱ

Գտնվում է Ապարանի շրջանում, Քասաղ գետի արևմտյան կողմում

*Աստ եղեալ է յառաջագոյն ի կոփածու խարտեալ քարանց եկեղեցի, որ այժմ իսպառ աւերեալ կայ. և քարինք շինուածոյ նորին գոլով սեաւ՝ կոչեցեալ է այս գիւղ յայն յանուն։*

## 427. ՉԱՄՌԼՈՒ

Գտնվում է Ապարանի շրջանում

*Երևանի սարդարի որդին որսի է գալիս այս կողմերը։ Վրան է խփում Քուչակ գյուղի ներքին հանդամասում։ Լուսադեմին բաց անելով աչքերը, խանը եղնիկի մի մոլորված ձագ է տեսնում Քասաղի կողմը վազելիս։*

*Նստում է ձին, ընկնում նրա ետևից։ Եղնիկն իրեն գցում է մոտակա ճահճուտը։ Խանի ձին խրվում է ցեխի մեջ և ցած գցում տիրոջը։ Ծառաները ուշ երեկոյան գտնում են խանին և տանում մոտիկ գյուղը։ Երբ նրա ուշքը գլուխն է գալիս, բարկացած հրամայում է տունը մի սայլ լծել, հող ու քար լցնել ճահիճը, որ չորանա։ Շատ լծկան է խեղդվում, վար ու ցանքը մնում է, սուգ ու շիվանը երկինք է բարձրանում։ Դրանից հետո գյուղի անունը դնում են Ջամռլու (Ցեխավան)։*

### 428. ՔԱՆԱՔԵՌ

*Այստեղ ժամանակին բնակվել է Քանան անունով մի թագավոր (կամ իշխան) իր քրոջ հետ։ Սրա մասին խոսելիս տեղացիք հաճախ ասել են «Քանանի քույրը», «Քանանի քրոջը» (Քանանա քեռ)։ Դրանից էլ գյուղի անունը մնացել է Քանաքեռ։*

### 429. ՋԱՐԲԱԽ

Գտնվում է Երևանի մոտ

*Այստեղ ժամանակին մի երկու մեծահարուստ մարդիկ ունեցել են սեփական խաղողի այգիներ։ Նրանց մոտ բանվորություն են արել տեղում գտնվող չքավոր գաղթականները։ Չկարողանալով ապրուստի միջոց հայթայթել իրենց կատարած այդ աշխատանքով, գաղթականները օրավարձով աշխատել են նաև Երևանի կաշու արհեստանոցում և գինու գործարանում։ Երեկոները հոգնած տուն դառնալիս, նրանք տնքալով ասել են. «Ջա՛ր է, չա՛ր է մեր բախտը», դրանից էլ գյուղի անունը մնացել է Ջարբախ։*

### 430. ԱՐԶՆԻ

Գտնվում է Արայի լեռան արևելյան փեշին

*Այստեղ ժամանակին ճակատամարտ է տեղի ունենում Արա Գեղեցիկի ու Շամիրամի միջև։ Արան ընկնում է պատերազմի դաշտում։ Շամիրամը հրամայում է զինվորներին գտնել նրա դիակը։ Որովհետև բացի Շամիրամից ուրիշ ոչ ոք չէր ճանաչում Արային, դիակները բերում են*

*նրա մոտ, որ զննի։ Ամեն անգամ դիակը Շամիրամին ցույց տալիս, զինվորներն ասում են. Ա՛ռ զննի։ Դրանից հետո այդ տեղը կոչվում է Արզնի։*

## 431. ՋՐՎԵԺ

Գտնվում է Կոտայքի (Աբովյան) շրջանում

*Մի տարի այս կողմերում երաշտ է լինում։ Արտերը չհասած չորանում են։ Գյուղի ծերերը որոշում են լայնացնել մոտակա առվի հունը։ Մի երկու օրում հունը բավական լայնացնում են։ Ջուրը թեև ավելանում է, բայց դարձյալ չի բավարարում երկու գյուղի։ Սրանց բնակիչները սկսում են վիճել, թե ով առաջ ջրի։ Ծերերից մեկը առաջարկում է ջուրը տալ նրան, ով առաջինը կարողանա մատաղ անել աղբյուրի ակին։ Երկու գյուղից էլ երիտասարդները թռչում են դեպի իրենց նախիրները։ Անցնում է մի փոքր ժամանակ։ Բոլորը սրտատրոփ սպասում են, թե ով առաջինը կբերի։ Հանկարծ երևում է հարևան գյուղից մի երիտասարդ՝ ուսին մի ոչխար։ Այդ տեսնելով ջրվեժցի երիտասարդներից մեկը հանում է գրպանից դանակը և մորթում ինքն իրեն։ Ջուրը հասնում է ջրվեժցիներին։ Այն տեղը, ուր ընկնում է ջրվեժցի երիտասարդը, համագյուղացիները խաչարձան են կանգնեցնում։ Դրանից հետո գյուղի անունը դնում են Ջրվեճ, որը բերնից-բերան դառնում է Ջրվեժ։*

## 432. ՄԱՔՐԱՎԱՆՔ

Գտնվում է Կոտայքի (Աբովյան) շրջանում

*Երբեմն դիպեալ աստ ուրումն շահ արքայի պարսից, և այն ինչ կամեցեալ նորա տալ քակել զայս եկեղեցի և քարամբք նորա կառուցանել ի վերայ Հրազդան գետոյն զկամուրջ, պատահի կատաղութեան իմիք և այնու արգելեալ լինի քակումն եկեղեցւոյն. որոյ աղագաւ անուանի յայնժամ Շահ ղուտուրան (շահ կատաղ). իսկ մահմետականք վասն բառնալոյ յինքեանց զայս նախատինս՝ փոխեն զայն և անուանեն մինչև ցայժմ էշէք ղուտուրան (էշ կատաղ)։*

## 433. ԿԵՉԱՌԻՍ ԿԱՄ ԺՆՋՐԼՈՒ

Գտնվում է Հրազդանի շրջանում

*Ասում են, թե օտար մի բռնակալ ավերելով ու ավարելով իր շուրջը, գալիս հասնում է Մաքրավանք և Կեչառիս գյուղերին։*

— Ի՜նչ լավ վանքեր ունեն,—ասում է նա, երբ տեսնում է այս գյուղերի գեղեցիկ վանքերը։

— Ես լսել եմ, որ այս վանքերին տեղացիք քույր ու եղբայր են համարում,—ասում է նրա զորավարներից մեկը։

— Հա՜,—մռնչում է բռնակալը... Դե որ այդպես է, հրամայում եմ քարե շղթաներ պատրաստել և կապել իրար քրոջն ու եղբորը, որպեսզի նրանք բանտարկված լինեն և հայերը չկարողանան մոտենալ և միայն հեռվից նայեն նրանց ու մղկտան։ Այդպես էլ անում են։ Քարե շղթայի ծայրը մի վանքից բերում, միացնում են մյուսին։ Դրանից հետո Կեչառիս գյուղը կոչվում է Ժնջրլու (շղթայված կամ շղթայակիր), մինչև որ հայերը հանում են քարե շղթաները և ծաղկաշատ բնակավայրն անվանում են Ծաղկաձոր։

## 434. ԱԶԱՏԱԿ

Գտնվում է Վայոց ձորի Փոր գյուղից արևմուտք

Մի հայ իշխան նեղվելով արյունարբու թշնամուց, իր մարդկանցով ապաստանել է այստեղի ամրոցում։ Երբ թշնամին հեռացել է, իշխանն իր մարդկանց հետ դուրս է եկել բերդից և լեռան ստորոտին հիմնել այս գյուղը, որը ի նշան իրենց ազատության կոչվել է Ազատակ։

## 435. ԱՍՏԱՊԱՏ

Գտնվում է Հին Նախիջևանից դեպի հարավ

Ավարայրի ճակատամարտից հետո Վարդան Մամիկոնյանի ու նրա նահատակ զինվորների դիակները բերել են այստեղ թաղելու։ Մինչև նրանց պատանքելը, Մակուի մեծամեծները եկել և դիակները տարել են։

Գյուղը Աստապատ է կոչվել, որովհետև նահատակների դիակներն այստեղ են պատվել (պատանքվել)։

## 436. ՅԱՐՄՋԱ

Գտնվում է Նախիջևանից դեպի հյուսիս արևելք

Սրա բնակիչները անխնա կեղեքվել են Նախիջևանի խաների կողմից։ Դրա համար էլ նրանց յարմ ջան (կես մարդ) են ասել, որից և առաջացել է գյուղի Յարմջա անունը։

## 437. ԱԿՈՌԻ

Գտնվել է Հին Նախիջևանի շրջանում, Մեծ Մասսի հյուսիս-արևմտյան լանջին

*Նոյ նահապետը տապանից դուրս գալուց հետո այստեղ առաջին անգամ տնկել է խաղողի որթը («արկ ուռի»), որտեղ և հետո Ակոռի անունով գյուղ է հիմնվել։*

## 438. ՄԵՍՐՈՊԱՎԱՆ ԿԱՄ ՄՍՐՎԱՆԻՍ

Գտնվում է Գողթնի Բստաձոր կոչված վայրում

*Մեսրոպ Մաշտոցը այստեղ հալածել է կռապաշտներին և հիմնել մի փոքր վանք, ուր նա աղոթել է և քրիստոնեություն քարոզել։ Մաշտոցի անունով գյուղը հետագայում կոչվել է Մեսրոպավան կամ Մսրվանիս։*

## 439. ՋՈՒՂԱ

Գտնվում է Ջուլֆայի մոտ, Հին Ջուղա գյուղի արևելյան կողմում

*Սրա անվան ծագման մասին ավանդությունն ասում է, թե իբր երբ Անին սկսել է ավերվել և Ջուղան ճոխանալ, սա համարվել է նրա մի մասը կամ ճյուղը, այստեղից էլ ծագել է Ջուղա (ճյուղ ա) անունը։*

## 440. ՆԱԽԿՈՐՋԱՆ

Գտնվում է Սյունիքում

*Եւ անցեալ ընդ Երասխ գետ Բաբիկ իշխանն Սիւնեաց, շինէ գեղաքաղաք մի՝ կոչելով զանուն տեղւոյն Նախկորղան, որ թարգմանի՝ նախ զնա կորզեալ առ յինքն յիւր հայրենեացն։*

## 441. ՑԱՑՋԻ

Գտնվում է Զանգեզուրում

*Թշնամիների հարձակման ժամանակ Որոտանի ձորերի բնակիչները ամրանում են Լծեն գյուղի ժայռերում։ Երկար ամիսներ տևող պաշարման ընթացքում սպառվում է պաշարվածների աղը։ Մի երիտասարդ որսորդ*

*հանձն է առնում գնալ Շենհեր աղի: Անտառի մեջ հանդիպում է Յայցիկ անունով կիսավայրենի մի աղջկա, որը տեսնելով որսորդին, փախչում է: Աղը Լծեն հասցնելուց հետո, որսորդը նորից գնում է Յայցիկի հետևից: Գտնելով նրան ամուսնանում է հետը և կիրճի խորքից բարձրանալով լեռան կատարը, տուն է հիմնում, ընտանիք կազմում: Ժամանակ անց, որսորդը նեղվելով թշնամիներից, գերդաստանով իջնում է ձորը, թաքնվում անմատչելի տեղերում և այնտեղ գյուղ հիմնում, որը անտառաբնակ աղջկա անունով կոչվում է Յայցի:*

## 442. ԿԱՐՄՐԱՔԱՐ

Գտնվում է Զանգեզուրում

*Այստեղ առաջ անտառ է եղել: Մի գնչու՝ կնոջ ու էշի հետ անցնելիս է եղել անտառի նեղ արահետով: Հանկարծ բռնում են կնոջ ցավերը: Գնչուն խոսք է տալիս, որ եթե կինը տղա բերի, ինքը ձեռք է քաշելու թափառական կյանքից: Իշու պարանը ետ է տալիս, ծառից կապում: Կինն էլ գնում է ծառի շվաքում պառկում և տղա բերում: Իր տված խոստման համաձայն գնչուն մնում է ապրելու նույն տեղում: Այստեղ հետո հիմնվում է Կարմրրաքար գյուղը:*

## 443. ԼԾԵՆ

Գտնվում է Զանգեզուրում

*Ասում են, թե երբ մոնղոլները Չար-Ղաթայի առաջնորդությամբ հասել են այս կողմերը, տեղացիները լեռների կատարներից քարե կարկուտ են թափել ձորում գտնվող թշնամու վրա: Ժողովրդին խրախուսելու համար մենաստանում ապրող Ներսես քերթողը շարունակ կրկնել է՝ «Լցե՛, լցե՛...», և ինքն էլ քարեր է գլորել վերևից: Հետևելով Ներսես քերթողին, գյուղացիները եզներ են լծել քարքաշաններին, քարե կույտեր են բերել, քարե հեղեղ են տեղացել թշնամու վրա և չեն թողել, որ նա ոտք դնի գյուղը տանող արահետին: Իսկ Ներսես քերթողը շարունակել է կրկնել՝ «Լցե՛, լցե՛...»: Դրանից էլ, ասում են, գյուղի անունը մնացել է Լծեն:*

## 444. ՍՎԱՐԱՆՑ

Գտնվում է Սյունիքում

*Պատմում են, որ երբ Լենկ-Թեմուրն ուզում է նվաճել Հայաստանը, մի ծեր զինվոր նրան ասում է. «Ուր ուզում ես գնա, միայն Սյունիք չմտնես»։*

*— Ինչո՞ւ,—զարմանում է Լենկ-Թեմուրը։*

*— Այնտեղ ճամփա ու կածան բոլորը դեպի ժայռ են տանում,—պատասխանում է ծեր զինվորը։ Նրանց տներն էլ քերծերում են, բերդերը՝ ժայռերի գլխին, վանքերը նրանցից էլ բարձր։ Ամպերը ցածր են նրանց օջախներից։ Նրանց ո՛չ նետ կհասնի, ո՛չ սուր ու թուր։*

*— Լա՛վ,—ասում է Լենկ-Թեմուրը, ես ամենից առաջ նրանց կնվաճեմ։ Եվ հարձակվում է Սյունիքի վրա։ Կռվում է մեկ օր, հինգ օր, տասն օր... Սյունեցիները չեն հանձնվում։ Ցերեկը ծուխ է բարձրանում նրանց օջախներից, գիշերը վառվում են նրանց կրակները։ Լենկ-Թեմուրը խոստումներ է շռայլում, երդումներ անում... Սյունեցիները չեն հանձնվում։ Միայն մի գյուղի մարդիկ ուզում են հանձնվել։ Լենկ-Թեմուրը խոստանում է նրանց սրի չքաշել։ Գյուղի վարդապետը չի թողնում հանձնվեն։ Ինչ անում՝ չի անում, չեն լսում։ Հանձնվում են։ Լենկ-Թեմուրը նրանց քշում է մի դաշտ, ասում. Ես խոստացա ձեզ սրի քաշել։ Ես խոսքիս տերն եմ։ Բայց ես երդվել եմ ձեզ կենդանի չթողնել։ Եվ հրամայում է մի խանդակ (փոս) փորեն, թաղեն կենդանի։ Այդպես էլ անում են։ Վարդապետը լսում է այդ մասին, վերցնում է ծխամատյանը՝ գյուղի հին անունը ջնջում, տեղը գրում է՝ Սև արանց չեն, այսինքն՝ սև մարդկանց, սևերես արարածների գյուղ։ Եվ այդ օրվանից գյուղի հին անունը մոռացվում է, մնում է Սև արանց, որ հետագայում դառնում է Սվարանց։*

## 445. ԼՈՐ

Գտնվում է Սիսիանի շրջանում

*Ասում են, թե երբ հայոց Լորիկ իշխանը թշնամու դեմ հերոսաբար կռվելով զոհվում է, նրան թաղում են գյուղից ոչ հեռու և վրան մատուռ կառուցում, իսկ գյուղին էլ տալիս են իշխանի անունը՝ Լոր։ Մինչև հիմա էլ կանգուն է Լորիկ իշխանի մատուռը։*

## 446. ԱԶՈՒԳԻ ԵՎ ՎԱԶՈՒԳԻ

Գտնվում է Սիսիանի շրջանում

*Հայ իշխանի երկու որդիներն իրենց զորքով քաջաբար կռվում են թշնամու դեմ և դուրս են շպրտում նրան երկրից, բայց իրենք էլ զոհվում են կատաղի կռվում։ Այն տեղը, ուր ընկնում են նրանք, հետագայում երկու գյուղ են կառուցում, և ի պատիվ եղբայրների, մեկը կոչում են Ազուգի, մյուսը՝ Վազուգի։*

## 447. ՄԻՆՔԵՆԴ

Գտնվում է Լաչինի շրջանում

*Լենկ-Թեմուրը զորքով գալիս է Հայաստան։ Ամեն ինչ քար ու քանդ անելով, նա հասնում է Զանգեզուրի գյուղերից մեկը։ Երբ ավերում է այն էլ, սկսում է հաշվել, թե քանիերորդ գյուղն է, որ ինքը ավերում է։ Հաշվելով-հաշվելով, հասնում է հազարի ու ասում է. «Մին քենդ» (հազար գյուղ)։ Այստեղից էլ գյուղի անունը մնում է Մինքենդ։*

## 448. ԱՎԵՏԱՐԱՆՈՑ

Գտնվում է Շուշուց ոչ հեռու

*Վաչագան թագավորը, զղջալով, որ ուրացել է քրիստոնեությունը, առանձնացել է այստեղ և իր կյանքի մնացած օրերը անց է կացրել ավետարան կարդալով։ Դրա համար էլ գյուղը կոչվել է Ավետարանոց։*

## 449. ՄԱՐՏԱԿԵՐՏ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի համանուն շրջանում

*Ասում են, թե այս գյուղի բնակիչները եղել են շատ քաջ և համարձակ մարդիկ։ Ամեն անգամ, երբ թշնամիները հարձակվել են Ղարաբաղի վրա, նրանք մի մարդու պես դուրս են եկել թշնամու դեմ, որի համար և ստացել են մարդ (իգիթ) անունը, իսկ նրանց գյուղն էլ կոչվել է Մարտակերտ (մարդ, իգիթ մարդկանց գյուղ)։*

## 450. ՍԵՅԴԻՇԵՆ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ստեփանակերտի շրջանում

*Ասում են, թե առաջներում Ղարաբաղի միակ դպրոցը գտնվել է այս գյուղում։ Դրա համար էլ գյուղը կոչվել է Սեյդիշեն (սեյիդի կամ ուսումնականի, ուսուցչի գյուղ)։*

## 451. ԴԱՀՐԱՋ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ստեփանակերտի շրջանում

*Էս շենումը (գյուղում) սուվթա (սկզբից) մին քանե տուն ըն իլալ (եղել)։ Շենին անուն չի իլալ. գիդալիս չըն իլալ, թա հինչ անուն տինին։ Մին օր շինըմաչում շենացիք նստած զրուց ընելիս, յեշըմ (նայում) տեսնում ըն ներքե ունգյունան (այն կողմից) մին մարթ ա կյամ։ Էտ մարթը կյամ ա, ուրանց անա մուտանում, պարի րիգյում ասում, վեննը կենում (կանգ առնում)։ Ըտանա ետը մին կնեգ ծիյին յիտա նստած, ծին քիշած, էտ մարթին հետան (ետևից) կյամ ա։ Վեր մարթին անա մուտանում ա, մարթը կընգանն ասում ա. Դահ ըրա (կանգ առ), ագի։ Էտ մարթը վեր իտի յա ասում, շինըմաչումը նստած մարթիկ ասում ըն. էս շենին անումը կինի Դահրաղի։ Ետնան Դահրաղին տեռալ ա Դահրաղ։*

## 452. ԶԱՐԴԱՐԱՇԵՆ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանում

*Սա առաջ կոչվել է Վերին Թաղավարդ։ Ներքին Թաղավարդից տարբերելու համար տեղացիք որոշում են նոր անուն տալ իրենց գյուղին։ Մեկը առաջարկում է դնել Շմակաշեն, մյուսը՝ Սարի շեն, երրորդը՝ Բարձր։ Ըռքեշ անունով մի ծերուկ էլ նայելով շուրջը և տեսնելով, որ գյուղը չորս կողմից զարդարված է ծաղկած ծառերով ու այգիներով, առաջարկում է նրա անունը դնել Զարդարաշեն։ Այդպես էլ անում են։*

## 453. ԱՇԱՆ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանում

*Խանը կղնված ա իլալ (չղայնացած է եղել) մարդկանց յըրա (վրա)։ Մարդկանց պարան ըն քցալ (պառկեցրել են), ծին գիրավ (վրաներով)*

*քշալ։ Ժողովուրդն ասալ ա. Պա՛հ, պա՛հ, էս հինչ օրենք ա, մարթկանցից էլ աշա՞ն (կալսելու հացահատիկ)։ Ըտղա էլ (դրանից էլ) շենի (գյուղի) անունը մնացալ ա Աշան։*

## 454. ՎԱՂՈՒՀԱՍ

Գտնվում է Արցախում, Թարթառ գետի հարավային կողմում

*Երբ ազգ Հոնաց բուռն յարձակմամբ էջ յայս երկիր, զսկիզբն արշաւանաց և աւերութեանց աստի սկսաւ, վասն որոյ և զանունն ի գործոյն առեալ՝ կոչեցին Վաղուհաս։*

## 455. ՎԱՐԴԱՆԱՇԵՆ

Գտնվում է Գանձակի շրջանում

*Լենկ-Թեմուրի հրամանով գյուղի հրապարակում կախաղան են հանում քրիստոնյա հայերին։ Կախաղանի մոտ հավաքվածներից Վարդան անունով մի քաջ որսորդ, հանկարծ մոտենում է դահճին և սպանում է նրան։ Լսելով այդ, Թեմուրը կանչել է տալիս Վարդանին և հարցնում նրա վարմունքի պատճառը։ «Մարդը իրավունք չունի ձեռք բարձրացնելու իր նմանի վրա»,—ասում է Վարդանը։ Վարդանի համարձակության համար Լենկ-Թեմուրը ներում է շնորհում նրան և նվիրում մի գյուղ, որը Վարդանի անունով այնուհետև կոչվում է Վարդանաշեն։*

## 456. ԽԱՉԱԿԱՊ

Գտնվում է Գանձակի շրջանում

*Քրիստոնեության քարոզի ժամանակ շրջակա գյուղերը ընդունել են նոր կրոնը, իսկ այս գյուղացիք իբրև կաղնու ծառեր պաշտողներ, հրաժարվել են։ Դրա համար նոր կրոնի քարոզիչները յուրաքանչյուր պաշտելի կաղնի ծառի տակ խաչեր են կանգնեցրել։ Նույնը արել են նրանք նաև գյուղը շրջապատող բազմաթիվ բլուրների և բարձունքների վրա։ Այսպիսով հետզհետե կաղնիապաշտությունը փոխարինել է խաչապաշտությունը։ Խաչերով շրջակապված լինելու համար գյուղը ստացել է Խաչակապ անունը։*

### 457. ՔԱՐՀԱՏ

Գտնվում է Գանձակի շրջանում

*Սրա սահմանում կան զանազան հանքանյութեր (երկաթ, պղինձ և այլն)։ Բնակիչները ինչպես իրենց երկրագործական գործիքների, այնպես էլ պայտեր շինելու համար հնուց ի վեր այստեղ կտրել ու հանել են երկաթաքարը։ Դրանից էլ գյուղի անունը դրել են Քարհատ։*

### 458. ԲԱՆԱՆՑ

Գտնվում է Գանձակի շրջանում

*Ասում են, թե այս գյուղում ժամանակին երկաթի հանք և երկաթ հալելու գործարան է եղել, որը կոչվել է բան-անոց։ Դրանից էլ գյուղի անունը մնացել է Բանանց։*

### 459. ԱԶԱՏ

Գտնվում է Գանձակի շրջանում

*Լենկ-Թեմուրը այստեղով անցնելիս մտել է գյուղ և կողոպտել եկեղեցին։ Անմիջապես ծռվել է Թեմուրի վիզը և երեսը ետև դարձել։ Իմանալով, որ դրա պատճառը եկեղեցին է, Թեմուրը հրամայել է վերադարձնել ավարը։ Վիզն անմիջապես ուղղվել է։ Դրանից հետո Թեմուրը թե՛ եկեղեցին և թե՛ գյուղը ազատել է ամեն տեսակ հարկից, որի համար և այն կոչվել է Ազատ։*

### 460. ԿԻՍԱՊԱՏ ԿԱՄ ԿԱՍԱՊԵՏ

Գտնվում է Գանձակի շրջանում

*Սրա հիմնադիրները եկեղեցի շինելու համար ժամանակին հրավիրում են մի քարագործ վարպետի։ Մտածելով իր հոգու փրկության մասին, վարպետը հրաժարվում է աշխատավարձից, իսկ գյուղացիներն էլ անպայման ուզում են վճարել։ Եկեղեցին կիսատ՝ վարպետը գիշերով անհայտանում է։ Գյուղացիները գտնում են նրան և ետ վերադարձնում։ Վարպետը կիսատ թողնելով եկեղեցու պատը՝ երկրորդ անգամ է անհայտանում։ Գյուղի անունը դրա համար դնում են Կիսապատ (Կասապետ)։*

### 461. ՄԻՐՁԻԿ

Գտնվում է Գանձակից ոչ հեռու

*Գանձակի խանը այս հողամասը ժամանակին նվիրում է իր միրզային (գրագիր-քարտուղար), նրա կատարած երկարամյա ծառայության համար: Ծերանալով, միրզան խանից ստացած հողամասը 60 արծաթով վաճառում է մոտիկ անապատում ապրող յոթ հայ ընտանիքների: Սրանք տեղափոխվելով միրզայի վաճառած հողամասը, իրենց նոր բնակավայրի անունը դնում են Միրզի քենդ (Միրզի գյուղ), որը բերանից բերան անցնելով դառնում է Միրզիկ:*

### 462. ՄԱԴԱՂԻՍ

Գտնվում է Թարթառ գետի կիրճում

*Այստեղ ժամանակին ապրել է Մադաղիս անունով մի գեղեցկուհի: Երկու եղբայրներ սիրահարվում են նրան: Աղջիկը փոքր եղբորը հանձնարարում է սարի միջով խմելու ջուր բերել իրենց գյուղը, իսկ մեծին էլ՝ Թարթառ գետից առու հանել դեպի գյուղի դաշտերը. ով նրանցից շուտ կատարի տրված հանձնարարությունը, խոստանում է նրան առնել: Փոքր եղբայրը դեռ գործի կեսին, տեսնում է, որ մեծը արդեն վերջացնելու մոտ է: Մադաղիսը ավելի փոքր եղբորը հավանելով, նրան խորհուրդ է տալիս մի մեծ կտավ փռել այն տեղում, որտեղ պետք է հոսեր ջուրը, և կտավի վրա աղ ցանել: Առավոտյան գյուղի հոսքը հավաքվում է աղի վրա: Մեծ եղբայրը հեռվից տեսնելով այդ, կարծում է, թե ոչխարները առվից ջուր են խմում: Հուսահատված դեպի վեր է շպրտում ձեռքի ահագին մուրճը և գլուխը պահելով տակը՝ ջախջախվում: Փոքր եղբայրը ամուսնանում է Մադաղիսի հետ, որի անունով և գյուղը կոչվում է Մադաղիս:*

### 463. ԱՎԱՆԱՇԵՆ

Գտնվում է Աղվանքում

*Սա Ավանաշեն է կոչվել գյուղի հիմնադիր Ավան-Յուզբաշու անունով, որն իր մարդկանցով այստեղ է եկել Արցախի Շոշու գյուղից:*

## 464. ԾԱԿ ՔԱՐ

Գտնվում է Մարտունու շրջանում

*Այստեղ կա մի սառնորակ ու առատահոս աղբյուր, որի ջուրը ձմեռը չի սառչում և որը յոթ ջրաղաց է աշխատեցնում։ Այդ աղբյուրը իրեն համար ճանապարհ է բացել հետզհետե մաշելով ու ծակելով մոտակա ապառաժ քարը, որից և գյուղն ստացել է Ծակքար անունը։*

## 465. ԿՈՒՌՈՒԽԱՐԱԲԱ

Գտնվում է Նոր-Բայազետի շրջանում

*Լընգ-Թըմուրը աշխարքն ավիրելով խասնումա Կուռի-խարաբին։ Էստեղի ժողովրդին ջարդելու վախտը մեծ տերտերն հըլնում ա Լընգ-Թըմուրի դեմը, աղաչում ա, որ ժողովրդին խնայա, չջարդա։ Լընգ-Թըմուրը հիշնում ա ձիանից ու տերտերին ասում ա. Հարի իմ ձինը խեձի։ Տերտերը ձինը որ խեձնում ա, լսում ա, որ երգնքից ձեն են տալում, թե՝ «Կդրա, կդրա...»։ Տերտերը զարմանում, ձիանից հիշնում ա։ Լընգ-Թըմուրը ձինը խեձնում ա, սկսում ա ժողովրդին բրթել (կոտորել)։ Էն օրվանից էտ գեղն ավիրվում ա և անունը մնում ա Կուռի-խարաբա (Կոտորածավեր)։*

## 466. ՄԱՇՏՈՑՆԵՐ

Գտնվում են Սևանա կղզու արևելյան ծայրին

*Լինել տեղւոյն ի ժամանակէ անտի սրբոյն Մաշտոցայ, և տեղի առանձին ճգնութեան նորա, ուր երբեմն առանձնացեալ ի միաբանութեանց անտի՝ աղօթից և խնդրուածոց պարապէր և հազիւ ուրեմն երևէր յետ քանի ինչ աւուրց։ Եւ խրճիթքն այնք իսկ անուանին ցարդ Մաշտոցնէր։*

## 467. ՎԱՐՍԵՐ

Գտնվում է Սևանի շրջանում, կղզուց հարավ-արևմուտք

*Մի աղջիկ մոտակա գետն ընկնելով խեղդվել է։ Ջուրը տարել է նրա դիակը։ Գետի երեսին փռված երևացել են խեղդված աղջկա մազերը (վարսերը)։ Տեսնողները ձայն են տվել իրար. «Վարսե՜րը, վարսե՜րը»։ Դրանից հետո գյուղի անունը դրել են Վարսեր (Նախկին անունը՝ Ջոլըռ)։*

### 468. ԴԻԼԻՋԱՆ

**Ա**

*Ասում են, թե հայրը իր Դիլի անունով որդու հետ՝ գործով քաղաք է գնում։ Ճանապարհին անտառների միջով անցնելիս, որդին կորչում է։ Հայրը սկսում է աջ ու ձախ որոնել նրան, բայց անօգուտ։ «Դիլի ջա՜ն, Դիլի ջա՜ն» կանչելով նա ման է գալիս անտառներում։ Վերջապես, մի տեղ, բացատում նա գտնում է որդու դիակը՝ գայլերի կողմից հոշոտված։ «Դիլի ջա՜ն, Դիլի ջա՜ն» սկսում է սուգ անել հայրը, ընկնելով որդու դիակի վրա։ Եվ այդ օրվանից տեղի անունը մնում է Դիլիջան։*

**Բ**

*Ասում են, թե ժամանակին այս կողմերում եղել է Դելի (Դիլո) անունով մի հովիվ, որին սարում պատառոտում են գայլերը։ Խեղճ մայրը սարերն ու անտառներն ընկած օրերով փնտրում է կորած զավակին և աղիողորմ ձայնով կանչում. Ո՞րտեղ ես Դելի՛ ջան, ձե՛ն տուր, Դելի՛ ջան... Եվ սարերն ու անտառները արձագանքում են նրան՝ Դելի...ջան, դելի... ջան...։ Գայլերի զոհ դարձած այդ հովվի անունով էլ անտառապատ այս վայրը կոչվում է Դիլիջան։*

### 469. ՏԶՐԿԱԾՈՎ

Գտնվում է Դիլիջանից ոչ հեռու, Աղստև գետի ափին

*Շինեցին գիւղ մի մերձ ի ծովակն փոքրագոյն՝ անհնարին խորութեամբ և անուանեցին զգիւղն յանուն ծովակին՝ Տզրկածով, քանզի բազումք մօրասէր և տղմասէր սողանք կային։*

### 470. ԳՈՇ

Գտնվում է Դիլիջանից ոչ հեռու

*Մխիթար Գոշը եղել է այս գյուղից։ Մի անգամ նա երազ է տեսնում. երազում աստված նրան ասում է. «Մխիթա՛ր, յոթ տարի հացի առատություն է լինելու, յոթ տարի էլ՝ չորային. առատության տարիներին պաշար հավաքի, սովի ժամանակ ժողովուրդը նեղություն չքաշի»։ Գոշը մեծ-մեծ ամբարներ է շինել տալիս, վանքի հարստությունով հացի էժան տարին ցորեն է առնում լցնում ամբարները։ Երբ սովը ընկնում է ժողովրդի մեջ,*

նա մի գուշ (փայտե կլոր աման) է շինել տալիս և այդ գուշով ցորեն է բաժանում մարդկանց։ Դրանից հետո նրա անունը մնում է Գուշ Մխիթար։ Երբ Մխիթարը մեռնում է՝ գյուղը նրա անունով կոչում են Գոշ կամ Գոշի գյուղ։

## 471. ՇԱՐԽԱՉ

Գտնվում է Դիլիջանի շրջանում, Գոշա վանքից դեպի հյուսիս-արևմուտք

Գյուղի գերեզմանատան մեջտեղը կա մի բարձր ժայռ, որի վրա շարքով շինված են քանիվեց հատ մեծ ու փոքր խաչեր։ Ասում են, թե գյուղն իր անունը ստացել է խաչերի այդ շարքից (Շար խաչ)։

## 472. ՆՈՐԱՇԵՆ

Գտնվում է Շամշադինի շրջանում

Մի խումբ լեզգիներ անցնելով այստեղով, ծաղրել են տեղացի հայերին և ասել. Ձեռք չտաք սրանց, նոր շեն է, կքանդվի։ Դրանից հետո գյուղի անունը դրել են Նորաշեն։

## 473. ՄՈՎՍԵՍ

Գտնվում է Շամշադինի շրջանում

Հին վախտին վեր լազգենին (լեզգիները) էս կեղի վրա եկել են, կեղացիք փախել են, քյացել (գնացել) Իջևան։ Իրեք ախպեր տեղերնուցը ժաժ չեն կյալի, քնըմ չեն, պցրանըմ են սարի կյլոխը, տիրք փանըմ նըստըմ։ Նհանց մեծ ախպոր անըմն էլ Մուսես ա ըլմ. սա շատ ջանով ու ղոչաղ (հաղթանդամ ու քաջ) ա ըլել։ Էն էրկու ախպերը ասըմ են, վեր էլ օքմին չկա, մենք խի՞ ենք ըստի կենմ, մենք էլ քնանք։ Ասըմ ա. Քնըմ էք քյացեք, ես կյալիս չեմ։ Նհանք քնըմ են, Մուսեսը մնըմ ա տի (այդտեղ)։ Տրա մհար էն սարի անըմը մնըմ ա Մուսեսի սար, կեղի անըմն էլ՝ Մուսես կեղ։

## 474. ՋՈՐԱԹԱՆ

Գտնվում է Շամշադինի շրջանում

*Էս կեղըմը մի Հաթամ անմավեր (անունով) զորբա մարթ ա ըլել. սա համ շատ հարուստ ա ըլել, համ էլ շատ ուժեղ։ Ինքը սոնքըրղ (անզավակ) ա ըլել, չոր, երեխա չի ունեցել։ Տրա մհար (համար) էլ տրան ասել են Ջոր Հաթամ, էս կեղին էլ՝ Ջոր Հաթամի կեղ։ Վեր ոսնին (ուսները) կյալիս են հըրցնըմ են՝ էս վեր կեղն ա, ասըմ են՝ Ջոր Հաթամն ա. նհանք էլ կարըմ չեն ասեն Ջոր Հաթամ, ասըմ են՝ Ջորաթան. ու տըհե էլ (այդպես էլ) մնչև ըսօր հայերն էլ Ջորաթան են ասըմ։*

## 475. ԲԱՐԱՆԱ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանում

*Ժամանակին Ապարանից այստեղ գալով բնակություն են հաստատում մի քանի հայ ընտանիքներ։ Մոտակա գյուղերի բնակիչները նորեկներից հարցնում են. էդ ո՞րտեղից էք եկել։ Սրանք էլ ասում են. Ապարանա։ Դրանից հետո գյուղի անունը մնում է Բարանա։*

## 476. ԱՐՃԻՍ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանում

### Ա

*Դեմի սարում արչ շատ ա էլել, ասել են Արչուտ։ Հետո էկել են էստեղ տուն-տեղ դրել։ Սկզբից երեք տուն ա էլել. ամենից մեծը Մխսկարանք են էլել։ Գեղի անունն էլ Արչուտ են դրել. էնքան են ասել, Արչուտը դառել ա Արչիս։*

### Բ

*Հարևան Ախթալայի հանքերում վրացի աղաները ջուհար են հալելիս ըլում։ Էրկու ախպեր՝ Մինասն ու Առաքելն էլ աշխատըմ են նրանց մոտ։ Երբ վերջացնում են աշխատանքը, տերերն ասըմ են. Ի՞նչ պտի տանք ձեր հախը (վարձ)։ Ասըմ են. Արճիճ։ Դրանից էլ գյուղի անունը մնացել ա Արճիս։*

## 477. ԿՈԹԻ ԳՅՈՒՂ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանում

Ա

*Առաջներում էս գեղի տները կտրավոր են էլել (երդիքով). կտուրի ծակը ծածկել են կոթով (սնամեջ կոճղ), որ ծուխը քաշվի, համ էլ լեզգիները տուն չընկնեն, էրեխա գողանան։*

Բ

*Էս գեղը ամենածերի գեղն ա, Թուրքի սահմանի վրա, դրա համար էլ Կոթի (ծայրի) գեղ են ասել։*

## 478. ՋՈՒՋԵՎԱՆ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանում

Ա

*Թուրքերը գալիս են տենըմ էս պուճուր վանքը, ասըմ են. Սա ինչ վանք ա, ըստեղ հավ մատաղ կըլի։ Ըդենց էլ վանքի անըմը կպչըմ ա Ջուջեվանք, գեղին էլ ասըմ են Ջուջեվան։*

Բ

*Մեր պապերը վեր էկած էն ըլըմ էս ծմակըմը, ծառերը կտրըմ են, խմհատ անըմ (անտառից ազատված տարածությունը վարում)։ Գութանները քցըմ են, վարըմ, տենըմ են էդ վարելահողում անթիվ-անհամար ճիճուներ, դրանից էլ անըմը կպչըմ ա՝ Ճիճվական (Ջուջեվան)։*

## 479. ԴՈՇՂՈԹԱՆ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանում

*Հայերը եկել են էս գեղի տեղը վարել։ Գութանը որ արձակել են հանգըստանալու համար, թուրքերը եկել են, ասել. Դոշ-քյոթան (լծիր գութանը)։ Էդտեղ գեղ են հիմնել, անունը դրել Դոշ-քյոթան, որը հետո դառել է Դոշղոթան։*

### 480. ԱԽՏԱԼԻ

Գտնվում է Լոռում, Ճոճկան գյուղի արևմտյան կողմում,
Լալվար սարի լանջին

*Ոմն վարդապետ կարդաց սմա անէծս, որով ախտաւորեալ բնակիչք մեռան հետզհետէ, և աստի անուանեցաւ Ախտալի։*

### 481. ՈՐՆԱԿ

Գտնվում է Ալավերդու շրջանում

*Դրսեվանքը (Կայան բերդ) շատ ամուր բերդ ա ըլել. միչին դիրքավորված մարթիք են ըլել։ Դրսեվանքի ժողովուրդը ջրով սննդվելիս ա ըլել Որնակա ջրիցը. գնգով ջուր են բերել գետնի տակով բերդը։ Լեզգենին (լեզգիները) որ Դրսեվանքը շրջապատել են, կարենալիս չեն ըլել միչի ժողովուրթին կոտորեն։ Մտածում են, թե էս բերթը ջուր որդի՞ց ա բերում. գնում են Որնակ գյուղը. ըտի քննում են, հարցնում։ Մի ջադու պառավ ջրի ակը ցույց ա տալի, ասում, թե բերթը էս ջրիցն ա սննդվում (սընվում)։ Ըտուց էլ (այդտեղից էլ) մնում է գեղի անունը Որնակ (ո՞րն ա ակը)։*

*Լեզգենին ջուրը կտրում են, մի քանի օրից ետը (հետո) ժողովուրթը անձնատուր ա ըլում։*

### 482. ԱՐԴՎԻ

Գտնվում է Լոռում

*Ասում են, թե այս գյուղի անունը առաջ Մելիք-գյուղ է եղել։ Մի զրպարտության համար Հովան Օձնեցին ծննդավայրից ելնելով գալիս է այստեղ, ուր և իր համար ճգնարան ու եկեղեցի է շինում։ Օձունից հեռանալիս նա անիծել է այն և Մելիք գյուղը գալով անվանել է Առտվի, այսինքն՝ Մելիքն առա և Օձունը տվի։*

### 483. ՃՎՃԸՎԱՆ

Գտնվում է Լոռում

*Լեզգիները ժամանակին այստեղից բռնությամբ գերեվարել են հայերին։ Գյուղացիների ճվճըվոցից, տեղի անունը մնացել է Ճվճըվան։*

### 484. ՆԵՂՈՑ

Գտնվում է Լոռում, Հաղբատի մոտ

*Բնակիչք սորա յամենայն ժամ հուշակեալ են քաջութեամբ ընդդէմ յարձակմանց լեկզեաց, և ցարդ ևս առակօք խօսին ծերունիքն զքաջութենէ նախնի բնակչաց տեղւոյս, թէ՝*

*«Մտի ի Նեղոց՝*
*Ձեռս առայ սղոց.*
*Խերխեցի (սղոցել) լեկզիս,*
*Հանգեաւ սրտից բոց,*
*Լուցաւ ջանիս խոց»։*

### 485. ԳԼԻԶՆԱՁՈՐ

Գտնվում է Լոռում

*Ասեն, թէ երկու տիրող իշխանք յարուցեալ են վէճ և կռիւ վասն կայուածատեղւոյս. մին յաղթեալ միւսոյն ի քարագլխէ անտի ձգեալ է զնա ի ձոր։ Յօրէ անտի մնացեալ է մինչև ցարդ կոչումն տեղւոյս Գլիզնաձոր, որ նշանակէ գլի (գլորեցի) զնա ի ձոր։*

### 486. ԻԳԱՀԱՏ

Գտնվում է Լոռում, Քոբայր վանքի մոտ

*Զայս անուն ընկալաւ սա ի դրից տեղւոյն, զի այծիք ցայս վայր գան, և աղէն դաղարին. ուստիասացաւ Այծեհատ։*

### 487. ԳԶՐԱՎԵՐ

Գտնվում է Գուգարքի Համզաչիման գյուղի մոտ

*Ասում են, թե այս ավերակների տեղում առաջ գյուղ է եղել, որն ունեցել է շատ դաժան մի զզիր։ Հարկ հավաքելիս, զորակոչի կանչելիս և ուրիշ առիթներով զզիրը այնքան է նեղում գյուղացիներին, որ նրանք ստիպված թողնում են իրենց տունն ու տեղը և հեռանում գյուղից։ Ժամանակ անց, երբ զզիրը ծերանում է և զգում, որ մեռնելու օրերը մոտեցել են, որոշում է նորից սարսափ ազդել գյուղացիներին։ Կանչում է գյուղի քահանային, հաղորդություն ընդունում և պատվիրում նրան՝ մեռնելուց*

հետո իրեն թաղելու փոխարեն կախ տալ մի բարձր ծառից։ Երբ գզիրը մեռնում է, քահանան կատարում է նրա պատվերը։ Մոտակա գյուղերի բնակիչները տեսնելով ծառից կախված գզիրին, ուրախանում են և հավաքվելով նրա դիակի շուրջը՝ պար են բռնում ու երգ ասում։

Այդ ժամանակ ծառի մոտով անցնելիս է լինում մովրովը։ Նկատելով կախված գզրին և կարծելով, որ դա գյուղացիների արածն է, նա հրամայում է այրել գյուղը։ Մովրովի հրամանը անմիջապես կատարվում է։ Դրանից հետո գյուղատեղի ավերակները կոչվում են Գզրավեր։

## 488. ՂԱՐԱՔԻԼԻՍԱ

Գտնվում է Շիրակում

Թուրքերը գրավելով Հայաստանը, ասպատակում են և այս գյուղը։ Տղամարդիկ համառորեն դիմադրում են թշնամուն։ Կատաղում է թուրք փաշան և հրամայում բոլոր տղամարդկանց լցնել գոմն ու այրել, իսկ եկեղեցին էլ դարձնել զորանոց։ Գիշերը, երբ թուրք զինվորները քնած են լինում եկեղեցում, գյուղացիք փակում են դռները և կրակ տալիս։ Զինվորների աղաղակներից արթնանում է փաշան և տեսնելով այրվող եկեղեցին բացականչում. Ղարա քիլիսա (սև եկեղեցի), և թիկնապահների հետ հեռանում է այդտեղից։ Դրանից հետո գյուղը կոչվում է Ղարաքիլիսա (սև եկեղեցի)։

## 489. ՂՈՆԱԽՂՐԱՆ

Գտնվում է Շիրակում

Պարսիկ բռնավորները այս գյուղից առևանգում են մի գեղեցիկ հայ աղջկա։ Ժամանակ անց լքված աղջիկը վերադառնում է տուն։ Աղբյուրի մոտ նա մի անգամ լսում է պարսիկ զինվորների խոսակցությունը, այն մասին, որ մեծավորի հրամանով իրենցից ամեն մեկը գիշերը պետք է մորթի այն հայ տղամարդուն, ում տանը որ ինքը գիշերելու է։ Պարսկերեն սովորած հայ աղջիկը լսելով այդ, անմիջապես լուր է տալիս գյուղի քյոխվային։ Հավաքվում են գյուղի մեծերը և որոշում պարսիկ զինվորներին տեղավորել այն տներում, ուր մի քանի տղամարդ կա և գիշերով սպանել նրանց։ Այդպես էլ անում են։ Եվ այդ օրվանից գյուղը սկսում է կոչվել Ղոնախղրան (հյուրասպան)։

### 490. ՃԼՈԽԱՆ

Գտնվում է Շիրակի դաշտում

*Ակնատրը հարսի խոնարհությունը փորձելու համար ձեռքի ճլորը (կավե փոքրիկ կերակրաման) գցում է շիկացած թոնրի մեջ ու խնդրում նրան, որ հանի. «Խա՛րս, ճլորը խա՛ն, ճլորը խա՛ն»։ Հարսը իրեն նետում է թոնիրը և այրվում։ Այդ օրվանից գյուղի անունը մնում է Ճլոխան։*

### 491. ՀՌՈՒՈՄ

Գտնվում է Շիրակում

Ա

*Անիի թագավորի Հռիփսիմե անունով աղջիկը ժամանակին եկել է այստեղ ամառանոց։ Ղալաչի լեռան վրա նա հիմնել է մի փոքրիկ ամրոց։ Այդ աղջկա անունով գյուղը կոչվել է Հռոոմ (Հռիփսիմե)։*

Բ

*Պարսկաստանում ապրող մի հռոմեացի ժամանակին եկել է այստեղ, գյուղ հիմնել, որը նրա անունով կոչվել է Հռոոմ։*

### 492. ՄԱՐԱԼԻԿ

Գտնվում է Անիի շրջանում

*Ամեն տարի մի սարի մարալ (եղնիկ) իրեն կամքով եկել է այստեղ, մատաղվելու համար գլուխը դրել Սբ. Ստեփանոս վանքի դռանը։ Գյուղացիները բռնել են մարալին և մատաղ արել։ Մի անգամ էլ որսորդը հրացանով սպանել է մարալին։ Դրանից հետո մարալները էլ չեն երեվացել։ Գյուղի անունն էլ մատաղվող մարալների հիշատակի համար Մարալիկ են դրել։*

### 493. ՄՍՈՒՐԼԻ-ՄՈՒՍԼՈՒՂԼԻ

Գտնվում է Անիի շրջանում

*Անասուններին ջրելու համար այստեղ առաջ շատ մսուրներ են եղել։ Քրդերը անկվա բրդով փակել են աղբյուրի ակը, որպեսզի ջուրը ցամաքի։*

*Երբ հայերը եկել են այստեղ, բոլոր մսուրները արդեն չորացած են եղել։ Մսուրների անունով գյուղի անունը դրել են Մսուրլի (մսուրներով հարուստ), որը հետո դարձել է Մուսլուղլի։*

## 494. ՎԱԼԵ

Գտնվում է Ախալցխայի շրջանում

*Գորեցի հայ որսորդները հետապնդում են մի եղնիկի։ Գիշեր ու ցերեկ եղնիկը վազում է խիտ անտառներով, առանց դադարի, իսկ որսորդները նրա հետևից։ Մեկ էլ ծառերի միջև հայտնվում է մի բացատ, մեջտեղը եկեղեցի։ Եղնիկը մտնում է եկեղեցին ու ազատվում է հետապնդումից։ Այդ օրվանից որսորդները հրաժարվում են որս անելուց, բնակություն են հաստատում եկեղեցու շուրջը և սկսում են պարս աել վար ու ցանքով։ «Վարե՛, վարե՛...»,—ձայն են տվել նրանք իրար, և դրանից էլ ծագել է գյուղի Վալե անունը։*

## 495. ԹԵԼԱՎ

Գտնվում է Վրաստանում

*Ժամանակին այս կողմերն են եկել բավական թվով հայ գաղթականներ։ Իրենցից մեկին նրանք առաջուց ուղարկել են, որպեսզի նա ծանոթանա շրջակայքին և՝ թե լավ լինի, իրենց էլ իմաց անի, թե լավ չլինի, նորից շարունակեն ճանապարհը։ Պատգամավորը եկել է մի լավ տեղ, հավանել նրա օդին, ջրին, անտառներին ու արոտներին, և իմաց արել մյուսներին։ Գաղթական հայերը եկել են, բնակություն հաստատել այդ տեղում, գյուղ հիմնել և անունը դրել Թելավ։*

## 496. ԳԻՐԿ ԿԱՄ ԳԻՐՔ

Գտնվում է Շամախու շրջանում

Ա

*Ասում են, թե այս գյուղը Գիրկ է կոչվել, որովհետև երեք կողմից շրջապատված է բլրակներով, իսկ առջևը բաց է և նման է գրկի կամ ծոցի։*

Բ

*Ասում են նաև, թե այս գյուղը շատ հարուստ է եղել գրքերով, դրա համար էլ կոչվել է Գիրք։*

### 497. ՍՈՔՄԱՆ

Գտնվում է Մակուի շրջանում

*Նա եղել է խանդուռթ խումուռի երկիրը։ Սասունցի Դավթի զուրզն այստեղ գետինը պատռելով գնացել է առաջ։ Այն օրվանից էլ այս վայրը կոչվել է Սոքման (ճեղքված, քանդված) ավան։*

### 498. ԽԱՉԼՈՒ

Գտնվում է Բագրևանդի դաշտում, ճամանուն բլրակի լանջին

*Գյուղի գերեզմանոցի բարձունքին ժամանակին կանգնած է եղել մի խաչ, որը ճառագայթները տարածել է դաշտով մեկ։ Դրա համար էլ տեղացիները գյուղը կոչել են խաչլուս, որը հետո դարձել է Խաչլու։*

### 499. ԹՎԱՆՃ

Գտնվում է Կարնո դաշտում

*Մի զորավար իր բանակով գալիս է այստեղ, և հիացած տեղի գեղեցկությամբ, ուզում է հիշատակ թողնել։ «Բլուր ստեղծելու համար քանի՞ պարկ հող է պետք»,—հարցնում է նա իր մոտ մարդկանցից մեկին։ Սա մի որոշակի թիվ է ասում։ Զորավարը հրամայում է այդքան պարկ հող լցնել։ Հարյուր հազարավոր պարկերի դատարկումից հետո, բլուրը գոյանում է և ասված թիվն էլ անցնում։ «Թիվն անցավ», «թիվն անցավ»,— աղաղակում են զինվորները և դադարեցնում իրենց աշխատանքը։ Դրանից հետո տեղի անունը մնում է Թիվանց, որ բերնե-բերան անցնելով դառնում է Թվանճ։*

### 500. ԿՐԻԶՔ

Գտնվում է Կարնո դաշտում, Քարվոր լեռան լանջին

*Շիրին անունով մի երիտասարդ կին քղանցքով անդադար մաքուր հող է կրել և այստեղ բարձրացրել է մի բլրակ, որի վրա և ինքը*

հետո թաղվել է։ Երկար ժամանակ հող կրվելու պատճառով, գյուղի անունը դրել են Կրիչք։

### 501. ՕՁՏԵՂ

Գտնվում է Բաքերդում

Առաջներում այստեղ շատ օձեր են եղել, որոնք գնալով ավելացել են։ Մի ճգնավոր աղոթել է և բոլոր օձերը տեղն ու տեղը քար են դարձել։ Օձերի շատության պատճառով գյուղի անունը կոչվել է Օձտեղ (օձերի վայր)։

### 502. ՕԶՈՒՄՉԻ

Գտնվում է Թավրիզի մոտ

Շահ-Աբասի վարած հայ գերիները այստեղով անցնելիս, հանկարծ կանգ են առնում ու ասում. Օզում չենք, այսինքն այլևս չենք ուզում գնալ։ Դրանից հետո գյուղը կոչվում է Օզումչի։

### 503. ՍԱՎՐԱ

Գտնվում է Սալմաստի շրջանում

Նադիր-շահը[1] գալով այստեղ բարձրացել է մոտակա Սբ. Հովհաննես վանքի բլուրը, հիացել գյուղի գեղեցիկ տեսարանով և բացականչել.

Գազդըմ Իրան-Թուրանը,
Ջաննաթ գորդըմ սովրանը։
(Շրջեցի Իրանն ու Թուրանը,
Դրախտ տեսա եավանը)։

Դրա համար էլ գյուղը կոչվել է Սովրա (հետո), որ դարձել է Սավրա։

### 504. ԽՍՇԻՆՈՑ

Գտնվում է Սալմաստի շրջանում

Երկու որբեր, քույր ու եղբայր (Սիմիկ և Սիմոն) ապրելիս են լինում մի գյուղում, որի ջուրը կտրում է վիշապը։ Ջուր ստանալու համար գյուղացիները ստիպված ամեն անգամ երկու մարդ էին զոհում վիշապին։

[1] Կամ՝ Ձաթալի շահը։

Հերթը հասնում է որբերին։ Սբ. Սարգիսը խղճալով խլում է սրանց վիշապի երախից և նիզակով սպանում վիշապին։ Գյուղացիներին հանձնելով որբ քրոջն ու եղբորը, Սբ. Սարգիսը պատվիրում է խնամել նրանց մինչև իր գալը։ Վերադարձին, սակայն, նա տեսնում է, որ գյուղացիները քաղցից խաշել ու կերել են որբերին։ Անիծում է, և բոլորը խաշվում են։ Դրանից հետո գյուղի անունը դնում են Խաշինոց։

## 505. ՔԵՇԻՇ ՎԵՐԱՆ

Գտնվում է Մանազկերտի արևմտյան կողմում

Յաւուր միում 600 աւազակք իջեալ անդէն, բռնադատել կամէին դհարսն երիցու գեղջ. իսկ նորա պատրանօք կալեալ զնոսա անդէն մինչ ի գիշերն, ապա բազմութեամբ գիւղականացն մինչդեռ ի քուն կային, ի վերայ յարձակեալ զամենեսեան սրախողխող առնէր, բաց ի միոյ ձիապանէն, որ մազապուր զերծաւ ի վեց հարիւրոց։ Յայն սակս Քեշիշ վէրան (Քահանայաւեր) կոչեցին զգիւղն։

## 506. ՕԽՉԻՆ

Գտնվում է Մանազկերտի շրջանում

Մի վաճառական այստեղից անցնում է իր բեռներով։ Նկատում է, որ ծառերը ողջունում են իրար։ Մտնում է եկեղեցի և տեսնում, որ այնտեղ «Ողջույնի» արարողությունն է կատարվում։ Պատվիրում է քահանային՝ հետևյալ օրը այնպիսի պատարագ անել, որ բոլոր ծառերը ողջույն տան իրար, խոստանալով նրան երկու ջորի։ Պատարագի ժամանակ քահանան կասկածում է վաճառականի խոստումին, դրա համար էլ ծառերը դադարում են շարժվել։ Վաճառականը յոթ բեռնավորված ջորի է տալիս քահանային։ Նոր պատարագ է արվում և ծառերը խոնարհվում, ողջույն են տալիս իրար։ Դրա համար էլ գյուղի անունը դնում են Օխչին (ողջույն)։

## 507. ԷՐԿԱՆ

Գտնվում է Երզնկայի շրջանում, Մնձուր լեռան արևելյան լանջին

Այս գյուղը հիմնել է Սամվել անունով մի հաղթանդամ ու բարձրահասակ (էրկան) մարդ։ Սամվելի մահվանից հետո, նրա հիշատակը պահելու համար գյուղի անունը դրել են Էրկան։

## 508. ՊԱՐՏԻԶԱԿ ԵՎ ՕՎԱՃԸԽ

Գտնվում են Գերչանի շրջանում

*Սուլթան Մուրադն իր բանակով ժամանակին գիշերել է այստեղ: Առավոտյան պատուհանից նայելով դիմացի բլուրների գյուղերին, նա հարցրել է. Ի՞նչ է այդ երևացողը, կարծես փոքրիկ պարտեզ լինի, իսկ այն մյուսը կարծես փոքր բուն (օվաճուխ) լինի: Դրանից հետո այդ գյուղերի անունները դրել են Պարտիզակ և Օվաճըխ:*

## 509. ՓԱՍՏԻ

Գտնվում է Բաշկալայից դեպի արևմուտք

*Այստեղի հայերն ու ասորիները շարունակ վիճել են իրար հետ հողի համար: Ամեն մեկը աշխատել է նոր փաստեր գտնել և դատարանի միջոցով հող ստանալ: Դրա համար էլ գյուղի անունը դրել են Փաստի:*

## 510. ՇՈՒՇԱՆՑ

Գտնվում է Վանի Այգեստան թաղից դեպի արևելք

*Երբ Սենեքերիմ թագավորն առաջին անգամ գալիս է Վասպուրական, նրա Շուշանիկ դուստրը հավանելով տեղին, ուզում է իրեն համար ամառանոց հիմնել: Հորից ջուր է խնդրում: Նայելով աղջկա ապարանջաններին, Սենեքերիմն ասում է. Ապարանջաններիդ լայնության չափով քեզ ջուր կտամ, և ցույց է տալիս Վարագա լեռան ստորոտից բխող ջրի ակը: Շուշանիկն այդտեղից ջուր է բերել տալիս իր ամառանոցի համար: Նրա անունով ամառանոց-գյուղը կոչվում է Շուշանց:*

## 511. ԿՈՒԽՈՒՊԱՇ

Գտնվում է Վանի Այգեստան թաղից դեպի հարավ-արևելք

*Պարսից թագավորի բանակը գիշերում է այս գյուղում: Ձիերի համար մեծ քանակությամբ գարի են պահանջում ռեսից: Սա տալիս է գյուղում եղած ամբողջ գարին: Զբավարարվելով դրանով, պարսիկները շարունակում են նեղել գյուղացիներին: Ռեսը բացականչում է. «Կուռու պա՛շ, կուռու պա՛շ» (չոր գլուխս է մնացել միայն): Դրանից հետո գյուղի անունը դնում են Կուռուպաշ:*

*Ուրիշների ասելով այստեղ հնում կապալառուների մեհյան է եղել, դրա համար էլ վայրը կոչվում է Կապալաշտ, որը հետո բերանից բերան դարձել է Կուռուպաշ։*

## 512. ՇԱՀ-ԲԱՂ

Գտնվում է Վանից հյուսիս

Ա

*Պարսից Շահը եկել է Վանի վրա կռիվ։ Չկարողանալով գրավել քաղաքը, յոթ տարի պաշարել է այն։ Այդ ընթացքում Շահը խաղողի այգի է տնկել տվել, վայելել է պտուղը, բայց պաշարվածները անձնատուր չեն եղել և Շահի զորքի աչքերի առաջ կճուճներով մածուն են թափել պարիսպներից դուրս։ Շահը հույսը կտրած թողել է պաշարումը և հեռացել է։ Շահի տնկած խաղողի այգու համար գյուղի անունը դրել են Թագավորական այգի (Շահ-բաղ)։*

Բ

*Այսպես կոչեցաւ ասեն զայս գիւղ, որ թարգմանի Արքա այգի։ Իբր զի յառաջ ժամանակաւ Շահ-պուտախ Աղվան պարսիկն ի պաշարել զՎան զամս եւթն, աստանօր բնակեալ պէսպէս այգիս տնկեաց, և յետ եւթն ամաց ոչ կարեցեալ առնուլ, յուսակտուր գնաց, մեկնեցաւ անտի։*

## 513. ՀԱՅԿԱՇԵՆ

Գտնվում է Վասպուրականում

*Այս Հայկ գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ։ Սա ի մէջ սկայիցն քաջ և երևելի լեալ, և ընդդիմակաց ամենեցուն, որք ամբառնային զձեռն՝ միապետել ի վերայ ամենայն սկայիցն և դիւցազանց։ Սա խրոխտացեալ ամբարձ զձեռն ընդդէմ բռնաւորութեանն Բելայ, ի տարածանել ազգի մարդկան ընդ լայնութիւն ամենայն երկրի, ի մէջ բազմակոյտ սկայիցն, անհուն խօլաց և ուժաւորաց։ Քանզի անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր, սուր ի կող ընկերի իւրոյ ձգելով՝ ջանային տիրել ի վերայ միմեանց, ուր պատահմունք ի դէպ ելանէին Բելայ՝ բռնանալ ունել զամենայն երկիր։ Որում ոչ կամեցեալ հնազանդ լինել Հայկայ, յետ ծնանելոյ զորդի իւր զԱրամանեակ ի Բաբելոնի՝ չու ա-*

*բարեալ գնայ յերկիրն Արարադայ, որ է ի կողմանս հիւսիսոյ, համդերձ որդւովք իւրովք և դստերօք և որդւոց որդւոք, արամբք զօրաւորօք, թուով իբրև երեքհարիւր, և այլովք ընդոծնօք և եկօք յարեցելովք ՝ի նա և բոլոր աղխիւ։ Երթեալ բնակէ ի լեռնոտին միում ի դաշտավայրի, յորում սակաւք ի մարդկանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին. զորս հնազանդ իւր արարեալ Հայկ՝ շինէ անդ տուն բնակութեան կալուածոց և տայ ի ժառանգութիւն Կադմեայ որդւոյ Արամանեկայ։ Այս արդարացուցանէ զանգիր հին ասացեալ զրոյցս։*

*Եւ ինքն խաղայ այլով աղխիւն ընդ արևմուտս հիւսիսոյ. գայ բնակէ ի բարձրաւանդակ դաշտի միում, և անուանէ զանուն լեռնադաշտին Հարք, այս ինքն թէ հարք են աստէն բնակեալք՝ ազգի տանն Թորգոմայ։ Շինէ և գիւղ մի, և անուանէ յիւր անուն Հայկաշէն։*

## 514. ՀԱՅԿԱՎԱՆՔ

### Գտնվում է Վանի բերդապարսպից դեպի արևելք

*Բելի դեմ կռվի գնալուց առաջ, Հայկը իր ծանր ու մեծ ՝իրերը թողնում է այստեղ, և այնպես մեկնում մարտի դաշտ։ Նրա անունով գյուղը կոչվում է Հայկավանք։*

## 515. ԽԱՐԱՏԵՆՑ, ՏՇՈՂ, ԲԵԼՈՒ

### Գտնվում են Վասպուրականում

Ա.

*Պատերազմի դաշտում Հայկն իր նետը մխել է Բելի կուրծքը և նա շնչասպառ գետին է ընկել։ Բելի թոռը, որ այդ միջոցին կանգնած է եղել պապի մոտ, հարցրել է, թե ինչ պատահեց։ «Ոհ, գանուկս, խարատեց ինձ»,—պատասխանել է Բելը, որի համար և այդ վայրը կոչվել է Խարատենց։*

*Բելին տարել են թաղելու։ Երբ դիակը ցած են դրել և նետը հանել կրծքից, արևը դիպչելով Բելի կրծքին, դիմացի պատին շող է գցել։ Հայկի թոռը տեսնելով այդ, պապին ասել է. Տե՛ս, շող,—որի համար և վայրը կոչվել է Տշող։*

*Բելի դիակը տարել, թաղել են մի ուրիշ տեղ, որը նրա անունով կոչվել է Բելու։*

Բ

*Ձնեբրովթ, ասեն, սպանեալ Հայկա ի Հայոց ձոր, հրամայէ զդի նորա բառնալ և տանել ի Բէլու։ Եւ յանցանել ընդ գիւղս այս, զի տակաւին ալաքն ի կուրծս նորա մխեալ կայր, իբրև արտաքս քարշեալ հանին, շող արևուն, ասեն, թափ անցեալ ընդ վիրամէջն, անտի անուն գեղջս կոչեցաւ Տշող։*

## 516. ԼԵԶՔ

Գտնվում է Վան քաղաքի հյուսիսային կողմում

Ա

*Ամենափրկիչ կոչված բարձունքի վրա կռատուն է եղել, ուր չաստվածները լիզելով առողջացրել, կենդանացրել են հիվանդներին ու մեռածներին։ Շամիրամի կարգադրությամբ այստեղ է բերվել Արա Գեղեցիկի մարմինը, որպեսզի չաստվածները կենդանացնեն նրան։ Դրանից էլ գյուղի անունը դրել են Լեզք։*

Բ

*Վերոյ քան զՍւանս է գիւղս փոքրիկ, զորմէ ասի յամանց տեղի լինել անկման Արայի ի Շամիրամայ, որոյ զոմն ի հոմանեացն զԱրայ կարծեցուցեալ՝ լուր եհան, եթէ դիք լիզեալ ողջացուցեալ են։ Եւ յայնմանէ, ասեն, մնաց անուն գեղջն Լէզք։*

## 517. ՇԱՀԿԵԼՏԻ

Գտնվում է Թիմարի շրջանում

*Երբ պարսից Շահն իր զորքով հարձակվում է Վանի վրա, այստեղի բնակիչները հեռվից տեսնելով նրան, սկսում են բարձրաձայն իմաց տալ իրար՝ «Շահն եկավ, Շահն եկավ...»։ Դրանից հետո գյուղի անունը դնում են Շահկելտի (Շահը եկավ)։*

## 518. ՆԱՆԻԿ

Գտնվում է Վասպուրականում

*Երբ պարսկական բանակը գալիս է այս կողմերը, նրա զորամասերից մեկի հրամանատարը իր մարդկանցով իջևանում է գյուղից քիչ հեռու*

*գտնվող լճակի մոտ։ Գյուղապետը յոթ տեսակ հաց, յոթ սայլի վրա բառնալով ընդառաջ է գնում պարսիկ զորապետին։ Սրա կրկնվող հարցին, թե «Ինչ բան է սա», գյուղապետը շարունակ պատասխանում է «Նան» (հաց)։ Դրանից հետո գյուղի անունը դնում են Նան, որ հետո փոխվելով դառնում է Նանիկ։*

## 519. ԱՅԼՈՒՐ ԿԱՄ ԱԼՈՒՐ

Գտնվում է Վանա ծովի արևելյան կողմում,
Կտուց անապատի դիմացը

*Ասում են, թե Թադևոս առաքյալը գալով այստեղ և տեսնելով շրջապատի հաճելի դիրքը, ասել է. Այլ ո՞ւր գնանք. և այդտեղից գյուղի անունը մնացել է Այլուր, որը հետո աղավաղվելով դարձել է Ալուր։*

## 520. ԽՈՐԳՈՄ

Գտնվում է Հայոց-Ձորում

*Սրա բնակիչները ժամանակին գժտվում են արտամետցիների հետ և երկար ժամանակ վրեժ են պահում։ Տարիներ անց 40 արտամետցիներ կարծելով թե նրանք մոռացել են իրենց վրեժը, հյուր են գալիս Խորգոմ։ Խորգոմցիք խնջույքի ժամանակ հարբեցնում են իրենց հյուրերին և խեղդելով թաղում են մի թաքուն տեղ։ Դրանից հետո գյուղի անունը մնում է Հյուրգոմ (հյուրերի հավաքատեղի), որ հետո փոխվելով դառնում է Խորգոմ։*

## 521. ՄՈԽՐԱԲԵՐԴ

Գտնվում է Ռշտունյաց գավառում, Վանա ծովի եզերքին

*Այստեղ ժամանակին գտնվել է Հազկերտի ուղարկած մոգերի շինած տաճարը։ Սահակ Պարթևը անիծելով ասել է. «Այն աստվածները, որ չեն ստեղծել երկինքն ու երկիրը, թող կորչեն գետնի տակ»։ Եվ տաճարը իսկույն մոխիր է դարձել ու անհետ ողողվել ծովի ալիքներով։ Այդ տեղում հետագայում շինվել է մի գյուղ, որը ստացել է Մոխրաբերդ անունը։*

### 522. ՉՈՒԽ

Գտնվում է Աղբակի շրջանում

Այս վայրերին տիրող բեկը լեռը ծածկել է տալիս չուխայով, տեսնելու համար թե ով կհամարձակվի մոտենալ նրան։ Ձյունից ու անձրևից չուխան սկսում է փթել։ Գյուղացիները մարդ են ուղարկում բեկի մոտ և թույլտվություն են խնդրում չուխան վերցնելու, քանի որ այն փթել է և մի օր քամին կարող է քշել ու իրենք դրա համար մեղավոր ճանաչվեն։ Բեկը իրավունք է տալիս, և չուխան վերցվում է։ Դրանից հետո գյուղի անունը կոչում են Չուխա, որը ժամանակի ընթացքում դառնում է Չուխ։

### 523. ԹԱՂ

Գտնվում է Շատախում

Մի հայ երիտասարդ իր հարսնացուի առաջին գիշերվա իրավունքը տեղական բեկին չզիջելու համար, ունեցած-չունեցածը բարձում է ջորիների վրա և գիշերով թաքուն դուրս է գալիս հայրենի տնից։ Գալիս է Շատախ և բնակություն հաստատում այստեղ, հիմք դնելով Թաղ կոչված գյուղին։

### 524. ՏԱՐՈՒՆՑ ԿԱՄ ԴԱՐՈՒՆՑ

Գտնվում է Սպարկերտում

Այստեղ եղել է Տարունց կամ Դարունց անունով մի աղբյուր, որի ջրով ոռոգվել են Խիզանի բոլոր գյուղերը։ Այդ աղբյուրի մասին ասել են. «Որ չինի Տարունից ակ, չերևար Խիզնա վաստակ»։ Նույն աղբյուրի անունով գյուղը կոչվել է Տարունց կամ Դարունց։

### 525. ԱՌՃԿԱՆՑ

Գտնվում է Սպարկերտում

Այս գյուղացիք առչկան (աղեկատ) են պատրաստել և տարել ծախել՝ Վանում, Բչերիկում, Շատախում, Շերվանիում և այլն։ Դրա համար էլ գյուղը ստացել է Առճկանց անունը, որ նշանակում է՝ առէչ մանող կամ առէչները ման տվող։

## 526. ԼՃԱՆ

Գտնվում է Սպարկերտում

*Այս գյուղի արտերի ջուրը պակաս է եղել։ Տեղացիք փոքրիկ լճեր են շինել աղբյուրների առջև, որպեսզի նրանց մեջ ջուր հավաքվի և ջրեն իրենց արտերը։ Դրանից էլ գյուղի անունը մնացել է Լճան (լճեր)։*

## 527. ԱՆՁՂԱԹԱՂ

Գտնվում է Սպարկերտում

*Անձեղները գիշեր-ցերեկ վրժվժացել են այս գյուղի բնակիչների տների երդիքների վրա, դրա համար էլ գյուղը կոչվել է Անձղաթաղ կամ Անձղ-թաղ։*

## 528. ՋՐԱՋԱՀ

Գտնվում է Սպարկերտում

*Այստեղ ապրել է մի արդար ջրաղացպան։ Նա ջուր էր լցնում ճրագի մեջ, որն ինքն իրեն վառվում էր։ Դրա համար էլ գյուղի անունը դրել են Ճրրաճախ (Ջրաջահ)։*

## 529. ԽՈՌԽՈՌՈՒՆԻՔ

Գտնվում է Վանա լճի արևմտյան կողմում

*Իսկ Խոռն (որդի Հայկայ) ի կողմանս հիւսիսոյ բազմանայ, կարգէ զշէնս իւր. և ի նմանէ ձգեալ մեծ նախարարութիւն ազգին Խոռխոռունեաց։*

## 530. ԱՇՈՒԽ

Գտնվում է Տարոնում

*...Ապա յայնմ ժամանակի Վարազն արձակէր դեսպան առ արքայն Հայոց, ի հաշտութիւն խաղաղութեան գալով խօսել ընդ նմա. զանձուկ սիրոյ պատճառեալ, համարձակութիւն խնդրէր՝ գալ նմա առ նա։ Իսկ իբրև լուաւ զայն Տիրան արքայն Հայոց, փութապէս վաղվաղակի մեծաւ ուրախութեամբ առ ինքն կոչել հրամայէր։*

...Ապա եկն եհաս Շապուհ Վարազն երիւք հազարօքն, և յանդիման եղև Թագաւորին յերկրին Ապահունեաց. և մեծապէս մեծարեցաւ ի նմանէ։

...Եւ աւուրս սակաւս ուրախ լինէին 'ի միասին։ Այլ իշխանն Պարսից զԹշնամութիւնն, զոր ունէր ի ներքոյ, խորամանգեալ ծածկեալ մեքենայեալ առագաստեալ բերէր, և առնէր սպաս զղաւն կատարել։

...Եւ իբրև ոչ ինչ բաղում աւուրք ընդ մէջ եղեն, յընԹրիս կոչեն ի հաց հրաւիրեալ զարքայն. ի պատիւ մեծարանաց կոչէր։ Ապա իբրև ընդ գինիս մտին, քաջ արբեալ լինէին Թագաւորն և որ ընդ նմայն էին, զօրն դարանակալ յանպատրաստից յանկարծօրէն յայլակարծուց զնոսա յանկարծուստ յիւրաքանչիւր բազմականի ի վերայ հասեալք ըմբռնէին, և վահանափակ շերտաւորացն պատէին զԹագաւորն Տիրան։ Եւ կալեալ կապեալ զոտս և զձեռս նորա ի կապս երկաԹիս, և զբանակն՝ զոր գտանէր՝ աւար հարկանէր. և զգանձս և զստացուածս զկին և զորդիս Թագաւորին, զոր գտին 'ի բանակին, խաղացուցին յերկրէն Ապահունեաց։

Իբրև եկին հասին ի գեւղ մի, որում անուն Դալարիս կոչէին. յորժամ եկն եմուտ զօրավարն Պարսից ի ներքս ի գեւղն Դալարիս, ածէր կապեալ զարքայն Տիրան ընդ իւր։ Եւ ասէ Վարազ, Աղէ՝ տեսէ՛ք ածուխ, որով երկաԹ շողացուցուք, զի զաչս խարեսցուք զարքայիս Հայոց։ Եւ անդէն բերին ածուխ, որով խարէին զաչսն Տիրանայ։ Ապա ինքն խօսել սկսաւ Տիրան, և ասէ. փոխանակ զի իմ երկու աչքս լուսաւորքս խաւարեցան յայս տեղւոջս, արդ փոխանակ Դալարեացս անուան, Ածուխ անուն լիցի սմա մինչև ցյաւիտեանս ժամանակաց. և այս երևոյԹ նշանակս մնասցէ յիմ յիշատակի։

531. ԿՈՒԱՌ, ՄԵՂՏԻ, ՀՈՌՅԱՆ

Գտնվում է Տարոնում

Դեմետր և Գիսանէ իշխանք էին հնդկաց, և եղբարք ցեղովք. դաւ իմն խորհեալ նոցա Դինասքեայ արքային 'իւրեանց, զոր իրազեկ եղեալ արքային՝ առաքէ զօր զհետ նոցա, կամ սպանանել, կամ յերկրէն հալածական առնել։ Իսկ նոցա լեալ մազապուր՝ անկան առ Թագաւորն Վաղարշակ. և նա ետ նոցա զերկիրն Տարօնոյ իշխանուԹեամբ. զոր ինքեանք շինեցին քաղաք, և կոչեցին Վիշապ։ Որք եկեալ յԱշտիշատ, և կանգնեցին զկուռսն զայնոսիկ յանուն կռոցն զոր ի հնդիկսն պաշտէին։ Եւ յետ հնգետասան ամի սպան Թագաւորն զերկոսինն եղբարսն, ոչ գիտեմ Թէ վասն էր, և ետ զիշխանուԹիւն երից որդւոց նոցա Կուառայ և Մեղտեայ և Հոռեանայ։ Իսկ

Կուառ շինեաց զաւանն Կուառս, և վասն անուան նորա կոչեցաւ Կուառս։ Իսկ Մեղտէս շինեաց ի դաշտի անդ իւր աւան, և կոչեաց զանուն նորա Մեղտի։ Իսկ Հոռեանն շինեաց իւր աւան ի գաւառն Պալունեաց, և կոչեաց զանուն նորա Հոռեանս։

## 532. ԾԻԾԱՌՆԵ

Գտնվում է Տարոնում

Իշխանն արջուց կողմանն Գորգ... եկն ի դաշտն Տարօնոյ առ այր մի, որոյ անուն էր Ծիծառնիկ... Աղաչեաց զնա իշխանն և ասէ, թէ՝ ե՛րթ հնարեա՛ և գողացի՛ր զխաչն... և ա՛ռ յինէն զհազար դահեկան։ Եւ նա ասէ. Դրամն քեզ, զխաչն առնում և գամ յերկիրն քո, ընտրեմ ամուր տեղի, և շինեմ աւան, և զիմ անունն դնեմ նմա... Ընտրեաց տեղի, և շինեաց եկեղեցի։ Եւ անդ եդ զտերունեան սուրբ նշանն, և անուանեաց զանուն տեղոյն Ծիծառնէ։

## 533. ԱՌԻՆՋ

Գտնվում է Տարոնում

Իսկ իշխանն Հաշտենից յառաջ մատուցեալ, ասէ (զօրացն պարսից). կամ տուք զԹահան ի մեզ, կամ տուք երեսուն հազար դահեկան։ Եւ նոքա ետուն երեսուն հազար դահեկան, և դարձան։ Իբրև ետես Վահան եթէ գնան ամբողջ, զնախանձն Աստուծոյ նախանձեալ՝ յարձակեցաւ ի վերայ նոցա, և սկսաւ կոտորել զնոսա։ Իսկ նոցա զաղաղակ բարձեալ, ասեն. Առ ի՞նչ դարձայք ի պատերազմ, ո՛վ աւելախօսք։ Եւ կոչեցաւ տեղին այն Առինչս։

## 534. ԱՌԱՂ

Գտնվում է Տարոնում

Եւ միւս ընկերն Վահանայ առեալ աւազ տայր ցմիւսն և ասէր. Պարսից խորտակարարդ, ա՛ռ զաղս։ Եւ կոչեցաւ անուն տեղոյն Ա՛ռաղս, մինչև ցայսօր։

## 535. ԳՐԳՌՈՍ

Գտնվում է Տարոնում

*Եւ Վախտանկ ի վերայ Գոռոզ լերինն, շինեաց անդ աւան, և անուանեաց զնա Գրգռոս, յանուն որդւոյ իւրոյ Գրգռոսի։*

## 536. ՀՈՇԵ

Գտնվում է Զարսաննակի շրջանում

*Դիարբեքիր քաղաքը առաջ ցանկացել են այստեղ շինել։ Դրել են քաղաքի հիմքը և ամեն օր այդ հիմքի վրա շենք կառուցել։ Առավոտը տեսել են, որ գործիքը կորել է։ Վարպետը հարցրել է. Ո՞ւր է գործիքը։ Պատասխանել են. Հոս չէ՛, հոս չէ՛ (այստեղ չէ)։ Ուրեմն մեր շինելիք քաղաքի տեղը հոս չէ,—ասել է վարպետը։ Դրա համար էլ տեղի անունը մնացել է Հոսչե, որ հետո դարձել է Հոշե։ Իսկ բուն Դիարբեքիրը շինում են ավելի հեռուն, այնտեղ, ուր վարպետը առաջ գնալով գտնում է իր գործիքը։*

## 537. ՀԱՐՍԵԿ

Գտնվում է Զարսաննակի շրջանում

*Մինամ թագավորի որդին հաճախ լողալով անցնում էր Եփրատը, ստորերկրյա ճանապարհով բարձրանում մոտակա բերդը, տեսնում իր հարսնացուին և նույն ճանապարհով հետ վերադառնում։ Ասում են, թե թագավորազնի հարսնատեսական այդ այցելությունների պատճառով է, որ գյուղը կոչվել է Հարսեկ։*

## 538. ՕՍՆԱԿ

Գտնվում է Քղիի հյուսիս-արևելյան կողմում

*Այստեղի բնակիչները մի օր հարսանիք են անում և սկսում են կաթսաներով կերակուր եփել։ Հանկարծ օձը աննկատելի մտնում է կաթսաներից մեկի մեջ և թունավորում կերակուրը, որից մահանում են բոլոր ուտողները։ Կենդանի մնացածները որոշում են հեռանալ այդ վայրից՝ քանի դեռ ուրիշ դժբախտություն չի պատահել։ Ամեն ինչ հավաքելով գալիս են երկու լեռների մեջ գտնվող մի ընդարձակ հովիտ, որի միջով հո-*

սում է մի փոքրիկ գետակ և սրա արևմտյան ափերին տներ են կառուցում, հիմնում նոր գյուղ և մեծերի խորհրդով անունը դնում Ծձնակ, որ հետո դառնում է Օսնակ։

## 539. ՀԱՎԱՎ

Գտնվում է Բալուի շրջանում

Երբ Թադեոս առաքյալը քարոզելու է գալիս այստեղ, տեղի կռապաշտները նրան ծաղրելու համար սկսում են շան նման «հա՛վ, հա՛վ» անել։ Առաքյալը անիծում է նրանց, որ կորցնեն իրենց մարդկային բարբառը։ Այդպես էլ լինում է։ Դրանից հետո նրանք խոսելիս անդադար «հա՛վ, հա՛վ» են անում, որի համար և գյուղի անունը դնում են Հավավ։

## 540. ՀԱՅԵԿ

Գտնվում է Կեսարիայից դեպի արևելք՝ Թումարզա գյուղախաղախում

Անիի գաղթականները գալով այս կողմերը բնակություն են հաստատում այստեղ։ Նրանց բնակավայրը ստանում է Հայեկ (հայ եկ) անունը։ Հայոց Գագիկ երկրորդ թագավորը հավանելով վայրի դիրքին, Հայեկում հիմնել է իր բերդերից մեկը։

## 541. ԽՈԶՆԳԵՂ ԿԱՄ ԽՈԶՆՏԵՂ

Գտնվում է Դերսիմի շրջանում

Տրդատ թագավորը խոզ դառնալուց հետո ապրել է մոտակա քարայրում։ Դրա համար էլ ժողովուրդն այս վայրը կոչել է խոզնտեղ կամ խոզնըգեղ անունով։

## 542. ԿԱՄԱՐԱԿԱՊ

Գտնվում է Ակն քաղաքից դեպի հարավ-արևելք

Ա

Այստեղ ժամանակին անտառ է եղել, ուր ապրել է Գևորգ անունով մի ճգնավոր։ Վաճառականներն անցնելիս, անտառի խորքում լույս են

*նկատում և հայտնում են մոտակա Վարդիշ (Վարդենիշ) գյուղի բնակիչներին։ Սրանք գալիս են և գտնում ճգնավորի դիակը, որի վրայից լույսը ճառագայթելով կամարաձև ծիրանի գոտու պես երկարում էր մինչև անտառի մյուս ծայրը։ Տեսնելով այդ հրաշքը, վարդիշցիները թողնում են իրենց հին բնակավայրը և նոր գյուղ են հիմնում այդ տեղում՝ Կամարակապ անունով։*

Բ

*Վարդիշ գյուղի բնակիչները ժամանակին առևտրի են գնում Ակն։ Ճանապարհին մի լուսավոր կամարի են հանդիպում, երկու ծայրերին մեկ-մեկ արտ, ուր թաղված էին երկու ճգնավորներ։ Դրանից հետո վարդիշցիք թողնում են իրենց հին գյուղը և կամարի տեղում նոր գյուղ են հիմնում՝ Կամարակապ անունով, իսկ ճգնավորների գերեզմանների վրա էլ եկեղեցիներ են կառուցում։*

Գ

*Հնում այստեղ հարսն ու փեսան կապվում էին իրար կարմիր ժապավենով կամ կապով, որից և գյուղը ստացել է Կամարակապ անունը։*

## 543. ԲԵՆԿԱՆ

Գտնվում է Ակնի շրջանում

*Սրա անունը առաջ Հաքաթ է եղել։ Սենեքերիմ թագավորի Բենիկ իշխանը նորոգել է այն, որի համար և Հաքաթը վերակոչվել է Բենկա կամ Բենկան։*

## 544. ԳԱԼՏԸ ԿԱՄ ՂԱԼՏԻ ԳՅՈՒՂ

Գտնվում է Սեբաստիայի հարավային կողմում

*Երբ Լենկ-Թեմուրը բազմաթիվ գյուղեր, քաղաքներ ավերելուց հետո, տեսնում է, որ օրը արդեն երեկո է դարձել, ուշ է այս գյուղն էլ ավերելու համար, ասում է. Բու գալտը (սա մնաց)։ Դրանից հետո գյուղի անունը մնում է՝ Գալտը կամ Ղալտի գյուղ։*

### 545. ԲՈԳՆԻՔ

Գտնվում է Սեբաստիայի արևելյան կողմում

*Ի սմանէ ասի՝ յոմանց, թէ էին ի ցեղէն Բագրատունեաց, և եկեալ աստ արարին հիմնարկութիւն, և էին տունք իբր եօթն, և յետոյ ի գունհկաց զարձուցեալ զԲագրատունիքն Բոգնիք։*

### 546. ՃԱԽՐԱԿԱՆ

Գտնվում է Սասունում

*Դավիթը Կոզբադնի և մյուս հարկահանների ձեռքից ազատելով սասունցի կանանց ու աղջիկներին, Սասունի մոտակայքում նրանց համար մի տուն է շինում, պատրաստել է տալիս տասնյակ ճախարակներ ու գզգահներ։ Տարիների ընթացքում այստեղի բնակիչներն ավելանում են և վայրը միանալով Սասունին, դառնում է նրա մի թաղը, ու կոչվում Ճախրական (ճախարականոց)։*

### 547. ՏԱԼՎՈՐԻԿ

Գտնվում է Սասունում

*Կիլիկիայում խռովություն է ծագում։ Յոթ եղբայրներից բաղկացած մի ազգատոհմ այնտեղից գալիս է Մուշ։ Եղբայրներից երկուսը գնում են Էրզրում, որտեղ նրանք հաստատվում ու հռչակվում են։ Սակայն, շուտով տեղի բոլոր հայերի նման իրենք էլ ենթարկվելով թուրքերի հարստահարություններին, որոշում են վրիժառու լինել։ Իրենց տան դռան շեմի տակ մի հսկայական հոր են փորում։ Եղբայրներից մեկը ընդունելով եկող թուրքին, նրան հանձնում էր մյուս եղբորը և ասում. Տղա՛ լաո՛, թըլ հորիկ (այ տղա, նետիր հորը)։ Երբ հորը լցվում է թուրքերով, եղբայրները գաղտնի հեռանում են Էրզրումից։ Գալով Սասունի կողմերը, նրանք այստեղ մի գյուղ են հիմնում և անունը դնում Թալհորիկ, որը հետո փոխվելով դառնում է Տալվորիկ։*

### 548. ԿԱՊԸՐՆԻ

Գտնվում է Սասունում

*Գորգա Բալակ Արզըրոմու Կանա կէղն է էղը, յօթը աղպէր մէգ քուր ըն էղը։ Արզըրոմա պէգ ասըտ ա (ասել է), վըր՝ ղաղճիգ օղարգէք ըմ*

*քօվ (ինձ մոտ)։ Յօթը աղպրդիք խառնըվիր ըն իրար, զմէգուչար քուրն իմալ իդան պէգին. Փօքր աղպէր գասէ. Ըսկը (բոլորովին) մխառնվեք իրար, ադը (դա) ըմ կուրծն է, էլէք զմալիր էդընցքը նալացէք (անասուն-ները հակառակ կողմից պայտեք), ըս (ես) ըմ քուրուչ դխ (տեղ) հարս գէրթամ պէգին։ Փօքր աղպէր գվէրու խանչարըմ գդաբէ շօրէրու դակ, հարսնշօրիր (հարսանեկան հագուստ) գհակնը, գդանըն պէգը դուն հարս։ Պէգ գուրխնա, ըր խուլամնուն (իր ծառաներին) գասէ, վըր զընք (որ իրեն) մինագ թօղըն։ Խուլամնին գէրթան, պէգ զտուռ նէրսըթուն (ներսից), գփագէ, զծէռք գթալէ ադ աղճկան։ Աղճիգ գասէ. Ինչ զծէռքդ գթալըս ջա-նավարը խայդա (գազանի պես), լա էգըլ ըմ քըզը գնիգ (եկել եմ քեզ կին), քումն ըմ (քոնն եմ), հանէ զքու շօրիր քընըք (քնենք)։ Պէգ գհանէ զշօրիր, գբառգը։ Դղեն գքաշէ զխանչար, գհասնը պէկը վրէն, գսպանէ, զտուռ պաց գանէ, տըսը թուն (դրսից) գփագէ ու գէրթա դուն, հասնը աղպըրդոց, զքուր գազադէ։ Գարգա Բալակ զքօճն ու մալիր (շարժական ու անշարժ գույք) գվերու, գփախնը, գիկա Սասուն, Անդօքա քով, կապր (հյուղ) գշինէ, անուն լա զմնա Կապըրնի։*

## ԲԵՐԴԵՐ, ԿԱՄՈՒՐՋՆԵՐ, ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐ

### 549. ՊՌՈՇԻ ԿԱՊ

Գտնվում է Վայոց ձորում, Սպիտակավոր
Աստվածածին վանքի մոտ

*Ի միում նուագի, երբ թշնամիք կամեցան պաշարել զբերդն, Պռօշ իշ-խանն եդ ի գարանի ի նեղուցս ձորոյ զզօրականս. և ի ժամ պաշարման ել ինքն ի դիմաց, և դարանամուտքն ի թիկանց արարին զմեծ կոտորած, վասն որոյ և կապանն այն մինչև ցայսօր ի տաճկաց կոչի Պռօշ քեաբի, և ի հայոց՝ Պռօշի կապ։*

### 550. ՍՄԲԱՏԻ ԲԵՐԴ

Գտնվում է Վայոց ձորի Եղեգիս ավանից դեպի հյուսիս

*Ասում են, թե այս բերդը կառուցել է Սյունյաց Սմբատ իշխանը։ Դրա համար էլ տեղի բնակիչների կողմից ստացել է Սմբատի բերդ անունը։*

## 551. ԲԱՂԱԲԵՐԴ

Գտնվում է Սյունիքում

*Մի ոմն ի զարմիցն Սիսակայ Բաղակ անուն, առեալ զայս գաւառ մասն ժառանգութեան, շինէ զքարն Բաղակու ամրոց, որ կոչի Բաղակի քար. և ամրացուցանէ զբերդն և կոչէ Բաղաբերդ։*

## 552. ԵՐՆՋԱԿԻ ԲԵՐԴ

Գտնվում է Սյունիքում

*Մի ոմն ի կանանց ի զարմիցն Սիսակայ Երնջիկ անուն, շինէ և զանհնարին ամուրն Երնջակ և յիւր անուն բերդն և գաւառն կոչի Երնջակայ։*

## 553. ՋԱԳԵՁՈՐԻ ԲԵՐԴ

Գտնվում է Սյունիքում

*Ի տոհմէ Սիսակայ ի Ջագայ նահապետէ շինեալ ի վերայ գետոյ միոյ՝ կոչէ յիւր անուն զձորն Ջագեձոր և զբերդն՝ Ջագեձորոյ բերդ։*

## 554. ՀՐԱՍԵԿ

Գտնվում է Սյունիքում

*Ի Հրասեկայ շինեալ անհնարին ամրութեամբ աստուածաստեղծ պարըսպօք ամրացեալ։*

## 555. ՇԱՀԱՊԱՎԱՆԻՑ ԲԵՐԴ

Գտնվում է Սյունիքում

*Ի Շահապայ պարսկէ շինեալ. և զձորն յիւր անուն Շահապաւնից ձոր, որ հաստուածի պատճառաւ եկեալ էր առ նահապետքն Սիւնի։*

## 556. ՕՓԱՎԵՐ

Գտնվում է Գորիսի մոտակայքում

Ա

Այստեղ ապրել է մի հարուստ կին, որը կերակրել է հարյուրավոր որբերի ու անտունների։ Նրան ասել են՝ որբամեր։ Այստեղից էլ բերդը ստացել է իր անունը՝ Որբամեր-Օփավեր։

Բ

Այստեղ ապրել է մի հարուստ կին, որը առատ ողորմություն է տվել բոլոր աղքատներին։ Մի անգամ էլ գալիս է մի դերվիշ և կանգնելով բերդի տակին, բաժին է ուզում, ասելով. Օ՜ փաշ վեր, օ՜ փաշ վեր (Օ՜ բաժինս տուր...)։ Դրանից հետո բերդի անունը մնում է Օփավեր։

## 557. ՀԱԼԻՁՈՐԻ ԲԵՐԴ

Գտնվում է Զանգեզուրում, Տաթևի վանքի մոտ

Այստեղ ժամանակին ամրացած է լինում Դավիթ-բեկը։ Պարսից շահի զորքերը ինչքան կռվում են, չեն կարողանում գրավել։ Շուն-Ցրանգյուլը պարսիկներին հայտնում է գետնի տակով անցնող ջրի ճանապարհը։ Թշնամին գնում, կտրում է ջուրը։ Պաշարվածները ծարավից թուլանում են։ Մի գիշեր էլ նրանք գաղտնի ճանապարհով դուրս են գալիս բերդից։ Պարսից շահը հարձակվելով գրավում է դատարկ բերդը։

## 558. ԿԱՐՄՐԱՔԱՐ

Գտնվում է Զանգեզուրում

Ջալաբյալլու թուրքերը հանկարծակի հարձակվում են զանգեզուրցի Մելիք-Նուբարի վրա և պաշարում են Կոնասու բերդը։ Մելիք-Նուբարը վերցնում է կնոջն ու երեխաներին և գիշերով փախչում դեպի Թիֆլիս, բերդի պաշտպանությունը թողնելով գյուղացիներին։ Բերդը շուտով առնվում է, և շատ կանայք չկամենալով ընկնել թուրքերի ձեռքը, նրա պարիսպներից վայր են նետվում և իրենց արյունով ներկում բերդի քարերը։ Դրանից հետո Կոնասու բերդը վերակոչվում է Կարմրաքարի բերդ։

## 559. ՋՐԱԲԵՐԴ

Գտնվում է Արցախում

*Մի անգամ սաստիկ սով է ընկնում թշնամիներից պաշարված այս բերդի մեջ։ Սակայն հնարամիտ մարդիկ չեն թողնում, որ սովը գերության դուռ հասցնի իրենց։ Բերդի պատերից նրանք դուրս են թափում այնտեղ եղած կիրը և սկսում են մաղել։ Թշնամին կարծելով, թե դա ալյուր է, որը դեռ երկար ժամանակ կարող է պահել բերդականներին, հուսահատ թողնում է պաշարումն ու հեռանում։*

## 560. ՄԱՄՌՈՒՏ

Գտնվում է Գանձակի շրջանի Փիփ գյուղի հարավային կողմում

*Թաթարների արշավանքի ժամանակ տեղի հայերը ամրացել են այստեղ և դիմադրել թշնամուն։ Երբ սպառվել է նրանց պաշարը, մի քանի տղամարդիկ դուրս են եկել ուտելիք բերելու։ Նկատելով նրանց, թաթարները բռնել և սպանել են։ Ջոհվածների կանայք իմանալով այդ մասին, բերդի պարիսպներից իրենց ցած են նետել և շամփրվել պարիսպների տակ եղած ծառերի վրա։*

## 561. ԳՅՈՒԼԻՍՏԱՆԻ ԲԵՐԴ

Գտնվում է Շամախուց դեպի հյուսիս-արևմուտ

*Իշխան ոմն հնկայազոր բնակէր ի սմին բերդի, ինքն և քոյր իւր։ Բազմիցս յարեան ի վերայ նորա թագաւորք Պարսից, բայց վնասել կարացին և ոչինչ։ Ըստ որում այրն այն որպէս զսէգ առիւծ երկաթապատ զրահիւք անհնարին զօրութեամբ յարձակէր ի բանակս նոցա առաթուր կոխելով, սրոյ ճարակ առնէր զդիմակացս իւր և յաղթանակաւ վերադառնայր ի պալատ իւր։ Յանհնարինս մտեալ շահին և զօրականաց իւրոց, չկարէին գտանել զելս իրաց, հուսկ յետոյ կոչէ զոմն յառաջաւորաց ի Մէյսարու և հարցանէ ի նմանէ զխորհուրդ։ Այրն այն խոստանայ ինքն վճարել զպատերազմն մահուամբ բերդակալի։ Ուստի միւս անգամ յարդարել պատերազմին հայկազն անպարտելի ուղղէ զնետ իւր ընդ աչամէջս ախոյանին և թաւալէ զնա ի գետին։ Ապա արքային համարձակ մտեալ ի բերդն զրաւէ զնա և վարձահատոյց եղեալ առն հայկազնոյ, շնորհէ նմա*

*զլայնարձակ կալուած, որոյ սերունդք դեռ ևս վայելեն զնոյն կալուած ի գիւղն Մէյսարի։*

### 562. ԳԱՎԱՐՁԻՆ

Գտնվում է Արցախի սահմանակից Գուգարաց Կողբափոր գավառում

*Ասում են, թե մի ճակատագրական ժամանակին պաշարել է այս բերդը. բերդականները նեղվելով բարձրացել են լեռան գլուխը և թաքնվել են քարանձավի մեջ. պաշարողները հետապնդել են նրանց և չկարողանալով դուրս հանել քարանձավից՝ կրակ են վառել և ծխով խեղդամահ արել։*

### 563. ՎԱՐԴԵՆԻՍ ԲԵՐԴ

Գտնվում է Մարտունու շրջանի Վարդենիս (Գյոզալ-Դարա) գյուղի մոտ

*Այստեղ ապրել է Վարդենիս անունով մի գեղեցիկ աղջիկ։ Շատերն են ուզեցել տիրանալ նրան, բայց նա սիրել է միայն Վարդին։ Երբ Վարդենիսն իմանում է, որ Վարդը զոհվել է թշնամու դեմ մղած անհավասար կռվում, նա հայտնվում է բերդի պարիսպների վրա և սկսում է նետահարել թշնամուն։ Պարսից արքայազնը խոստանում է Վարդենիսին դարձնել իրենց աշխարհի տիկնանց տիկինը, եթե նա համաձայնվի իր կինը դառնալ։ Վարդենիսը մերժում է նրա առաջարկը և շարունակում է կռվել պարսից զորքի դեմ։ Երբ կտրվում է նրա վերջին հույսը, բերդի աշտարակից իրեն ձորն է նետում և ինքնասպան լինում։ Դրանից հետո բերդի անունը դնում են Վարդենիսի բերդ։*

### 564. ՏԱՎՈՒՇ ԲԵՐԴ

Գտնվում է Շամշադինի շրջանում

*Երբ արաբները գալիս են այս կողմերը, Աշոտ Երկաթն իր զորքով ամրանում է Ղալի քար կոչված ապառաժին շինված բերդում։ Թշնամին պաշարում է այն, բայց ոչինչ չի կարողանում անել բերդականներին։ Մի պառավ կին թաքուն դուրս է գալիս բերդից, որ պաշարվածների համար ուտելիք բերի։ Արաբները բռնությամբ իմանում են նրանից ջրի ճանապարհը և կտրում ջուրը։ Չնայած դրան, բերդում գտնվող Աշոտ Երկաթը անձնատուր չի լինում։ Մի մութ գիշեր նա իր զորքով դուրս է գալիս բերդից և տեղափոխվում Սևանի կողմերը։*

### 565. ԱՂՋԿԱ ԲԵՐԴ

Գտնվում է Շամշադինի շրջանում,
Թովուզ կայարանի մոտակայքում

*Լենկ-Թեմուրը իմանալով, որ այստեղ մի գեղեցիկ աղջիկ է ապրում, ուղարկում է զինվորներին, որ բերեն իր մոտ։ Երեք զինվոր գալիս, առևանգում են աղջկան։ Մի հովիվ տեսնելով այդ, հետևում է նրանց։ Գիշերը, երբ զինվորները քնում են, հովիվը սպանում է նրանց և աղջկան նորից հետ բերում։ Լենկ-Թեմուրը կատաղած հարձակվում է բերդում ամրացած հայերի վրա։ Մի պառավի մատնությամբ նա կտրում է բերդի ջուրը և նոր միայն հաղթում հայերին։ Տեսնելով այդ, աղջիկը պարսպից գետն է նետում իրեն։ Դրանից հետո բերդի անունը դնում են Աղջկա բերդ (Ղըզ-ղալա)։*

### 566. ԲԱԳԱՎԱՆԻ ԲԵՐԴ

Գտնվում է Աղվանքում

*Ասում են, թե այստեղ առաջներում եղել է կրակի և ծովի աստվածների բագինը։ Եղիշե առաքյալը Աղվանից աշխարհը գալով կործանել է այն և տեղը կանգնեցրել է Քրիստոսի խաչը։ Մեսրոպ Մաշտոցն այստեղ մատուռ է շինել, իսկ Վաչագան թագավորն էլ մատուռի տեղ եկեղեցի։*

### 567. ԿԱՅԱՆ ԲԵՐԴ

Գտնվում է Հաղբատի և Սանահնի արանքում

*Լեզգիները ժամանակին պաշարում են բերդը։ Բերդականները երկար ժամանակ դիմադրում են կատաղի թշնամուն։ Որնակ գյուղում լեզգիները բռնում են մի պառավ կնոջ, մահվան սպառնալիքի տակ իմանում նրանից ջրի ճանապարհը և կտրելով բերդի ջուրը՝ կոտորում բոլորին։*

### 568. ԱՂՋԿԱ ԲԵՐԴ

Գտնվում է Անի քաղաքի հարավ-արևմտյան կողմում,
Ախուրյան գետի ափին

*Ասում են, թե Անիի իշխանի աղջիկը սիրում էր մի հասարակ հովիվի։ Ամեն գիշեր, երբ բոլորը քնած էին լինում, հովիվը մոտենում էր իշխանի բերդին և երգում աղջկա համար, իսկ աղջիկն էլ, պատուհանը բացած, գիշերային հագուստով, լսում էր նրան։ Ու մի անգամ իշխանը լսում է այդ*

*երգը, ապա սիրահարների երգումի խոսքերը և դուրս գալով իր սենյակից, նախատում է աղջկան և արգելում նրան այլևս հանդիպել հովվի հետ։ Աղջիկը, զգալով, որ եկել է իր սիրո վերջը, պատուհանից նետվում է Ախուրյանը։ Նրա հետ և հովիվը։ Այդ օրվանից իշխանի բերդը կոչվում է Աղջկա բերդ (Ղըզ-ղալա)։*

### 569. ՄԱՂԱՍԱԲԵՐԴ

Գտնվում է Շիրակում

*Թագաւորն Յունաց Մորիկ էր ազգաւ հայ, յԱրարատ գաւառէ, յՕշական գեղջէ։ ...Սա առաքեաց ի հայրենի երկիրն իւր ի Հայս այր ոմն, հայ ազգաւ՝ Մաղաս անուն, շինել քաղաք մի յաշխարհին Հայոց յանուն իւր։ Եւ նա երթեալ գտանէ տեղի մի ի Շիրակ գաւառի՝ մերձ ի յԱնի, հարաւակողմն ի վերա Ախուրեան գետո, ի մէջ երկուց լերանցն ի տափարակ տեղի, որ երեք կողմն բարձր քարափք էին. և յարեւմտեան կողմն փոքր ինչ դիւր և սակաւ ինչ զառ ի վայր. և հաւանեալ տեղւոյն, պարսպեալ զայն, և կախեալ դուռն՝ անուանեաց Մաղասաբերդ։*

### 570. ԹՄԿԱԲԵՐԴ

Գտնվում է Ջավախքում

*Ժամանակին սրան տիրել է մի հայ իշխան։ Պարսից շահը երկար պաշարել է բերդը, սակայն չի կարողացել առնել։ Իշխանի կինը սիրահարվել է շահին, սպանել է ամուսնուն, հարբեցրել նրա զորքին և բերդի բանալիները ուղարկել շահին։ Բերդին տիրելուց հետո շահը հարցրել է իշխանուհուն. Ե՞ս եմ գեղեցիկ, թե ամուսինդ։ Իշխանուհին պատասխանել է. Ամուսինս ավելի գեղեցիկ էր։ Շահը հրամայել է կապել նրան ձիու պոչից և սպանել, ասելով. Եթե ամուսինդ շահից գեղեցիկ էր՝ ինչո՞ւ սպանեցիր նրան։*

### 571. ԱԽԱԼՑԽԱՅԻ ԲԵՐԴ

Ա

*Վախտովը եփ հայերը Ախալցխու բերթը շինեին կ՚էղե, պատերը քանի վեր քաշեն կը, վար թափին կը, հեչ չեն բռնե էղե։*

Հարցնեն գիմանան օր թամալին (հիմք) մեջ սաղ-սաղ չորս աղջիկ պիտի դնեն, օր պատերը կայնին։ Գըյնին հավար, հավար (շտապ-շտապ) գուգան, օր աղջիկ գտնին, ու սաղ-սաղ թամալին վրա կայնեցընեն, վրան պատ շարեն, հըմը հեչ մե տեղմ ա չեն գտնի։ Իցուլասա (մի խոսքով) մե կնիկմ իրեն քրոջ եթում (որբ) աղջիկը բերե ծախե կը ատոնց (դրանց)։ Ատոնք ա մե կոտմ օսկի կուտան ատ մորքուրին, կառնեն աղջիկը, տանին կայնեցնեն կը բերթի թամալը ու պատը շարեն կը։ Աղջիկը գուլա ու մորքուրին կըսե.

— Շարեցին, մորքուր, շարեցին,
Տեյ մ'օր (մինչև) ծնկներս հասուցին։

Մորքուրը պատասխանե կը՝

— Թող շարեն, Շողիկս, թող շարեն,
Տեյ մ'օր մեջքդ հասցնեն։

Եփ օր տեյ մ'օր մեջքը շարեն կը՝ աղջիկը կենա կըսե.

— Շարեցին մորքուր, շարեցին,
Տեյ մ'օր մեջքս հասուցին։

Մորքուրը անթիեն (այն կողմից) կըսե.

— Թող շարեն, Շողիկս, թող շարեն.
Տեյ մ'օր ծծերտ հասցընեն։

Աղջիկը նորեն պատասխան կուտա.

— Շարեցին, մորքուր, շարեցին,
Տեյ մ'օր ծծերս հասուցին։
— Թող շարեն, Շողիկս, թող շարեն
Տեյ մ'օր բուկտ հասցընեն։

Մորքուրն օր կըսե, տեյ մ'օր բուկը շարեն կը՝ աղջիկը մեռնի կը։

Իշտե (հենց) ատոր հըմար ալ է, օր բերթին պատերը տեյ մ'օր հիմի գուլան կը (լաց են լինում)։

Բ

Կգտնվի քարսիրտ պառավ մը, որ շլացած իրեն խոստացված առատ ոսկիներու փայլեն, իր խնամքին հանձնված քրոջը որբացած աղջիկը կտանի իբրև զոհ։

Պատին մեջ հյուսվող դժբախտ աղջիկը իզուր կաղաչե մորաքրոջը զինքը ազատել, մինչև որ քարերը կծածկեն ամբողջ մարմինը։ Վերջապես հուսահատ աղջկան անեծքով չար պառավը սև ագռավի մը կփոխվի և մինչև այսօր կղողա այն պատին մոտ, ուր աղջիկը հյուսված է։

## 572. ԱԼԱՇԿԵՐՏԻ ԲԵՐԴԸ

Գտնվում է Ալաշկերտի դաշտի հյուսիսային ծայրում

*Սրա շինության ժամանակ, որպեսզի բերդը չքանդվի, պարսպի մեջ դրել են մի ողջ-ողջ աղջկա։ Շատ ուշ, երբ քանդվել է բերդի պարիսպը, շատերը իրենց աչքով տեսել են աղջկա գլխի տեղն ու մազերը, որոնք երկար ժամանակ կախված են մնացել քարերի միջից։*

## 573. ԽԱՆԴՈՒՏԻ ԲԵՐԴ

Գտնվում է Կաղզվանի մոտ

*է բերդ ի համանուն ձորավայրի, զոր այսպէս կոչեցեալ ասեն յանուն քեռ Թագաւորի ուրուք ի մերոց, որ բնակեցաւ աստէն. զորոյ զպատմութիւն նման պատմութեան Տիգրանուհւոյ յօդեն։*

## 574. ԱՍՏՂԿԱՆ ԲԵՐԴ

Գտնվում է Վան քաղաքի արևելյան կողմում,
Վարագա լեռնաճյուղի մեջ

*Ժամանակին այստեղ եղել է Աստղիկ դիցուհու մեհյանը, ուր ամեն օր կատարվել է նրա պաշտամունքի ծեսը։ Մի մեծ քարաբարձրունք է դա, շրջապատված բնական հրաշալի տեսարաններով, որ կոչվում է Աստղկան բերդ։*

## 575. ԴՈՒՇՄԱՆԱ ՁՈՐԻ ԲԵՐԴԸ

Գտնվում է Աղբակի շրջանում

*Սրան տիրելիս է եղել մի հսկա, որը կախարդ պառավի դյութանքով արծվի կերպարանք էր ստացել։ Նա իր բռնությամբ ճնշում էր ամեն մի կենդանի շունչ, և ուր որ գնում էր, ետևից անապատ էր թողնում։ Բերդի աշտարակից ամեն առավոտ ցածրում գտնվող խոր անդունդն էր գլորվում մի աղջիկ, որից արծվի կերպարանքով հսկան նույն գիշեր խլել էր նրա կուսությունը։*

## 576. ՋԼՄԱՐ ԲԵՐԴ

Գտնվում է Վասպուրականի Աղբակ գավառում

Կին ումն յազգէն Աժդահակայ բնակէ յամուրսն Ջլմար և ի Սրինգ, ի գավառին ի Փոքր Աղբակ, և յանուն կնոջն Ջայլամար, որ և ամուրն յիւր անուն անուանէ։

## 577. ՎԱՐԴԱՆԱ ԲԵՐԴ

Գտնվում է Վանի շրջանի Աստվածաշեն գյուղի մոտ

Աստ երևի բերդն քայքայեալ և անկեալ, զոր կոչեն Վարդանա բերդ, և շինեալ ասեն ի քաջէն Վարդանայ, և բնակեալ ի նմա ժամանակս ինչ։

## 578. ԲԻԹԼԻՍԻ ԲԵՐԴԸ

Երբ սկսում են շինել Բիթլիսի բերդը, հազիվ մի քիչ բարձրացած, աստվածները գիշերը քանդում են այն։ Եվ այսպես մի քանի անգամ։ Պատգամախոսը հայտնում է, թե որպեսզի աստվածները թույլ տան բերդի կառուցումը, մի գեղեցիկ աղջիկ պետք է ողջ-ողջ դրվի բերդի հիմքերի մեջ։ Այդպես էլ անում են։ Եվ բերդի շինությունը հաջողությամբ ավարտվում է։

Ձոհի արցունքներից, որոնք թափվել էին ապառաժի վրա, մի նշենի է ծաղկում։ Այդ ծառը մինչև հիմա էլ կա և ուխտատեղի է համարվում։

## 579. ՈՂԿԱՆ ԲԵՐԴ

Գտնվում է Մշո դաշտի արևմտյան ծայրին

էն վախտ, որ պարսիկներ զորեղցան ու եկան մեր աշխարհ զմզլի թալնելու ու հեսիր (գերի) տանելու, կեր (կար) մեկ Գայլ Վահան անունով մարդ, որ շատ կտրիճ էր։ Տեսավ, որ պարսիկներն շատ նեղություն կիտեն (կտան) ժողովրդին, Գայլ Վահան եկավ, ու Կուրկուռայի սարի գլխին զէտ անառիկ բերդ շինեց ու գետի վրեն էլ կարմունջ շինեց զնճիլներով ու էտ բերդի մեջ պահեց զուր ասքար (զորք)։ Երբոր պարսիկներ կզորեղանային Գայլ Վահանի վրեն, ինքն զժնճիլներ (շղթաներ) կքակեր, որ պարսիկներ չընցնան ուր բերդ, երբոր ինքն կզորեղներ զժնճիլներն ի կթալեր գետի վրեն ու կընցներ էն դին (կողմ)։ Հմկա լե (հիմա էլ) կա ուր կարմնջի օղերը, որ մեկ մաղի չափ է։

## 580. ՔԱՐՀԱՆ ԲԵՐԴ

Գտնվում է Մուշ քաղաքից դեպի հարավ

*Պարսից զորականն Վախտանգ շինեաց ի վերայ լերինն Տաւրոսի ամրոց, և կոչեաց զանուն նորա Քարհան, սակս լինելոյ անդէն հանք երկ-նաքարի։*

## 581. ՍՊԱՐԿԵՐՏԻ ԲԵՐԴԸ

*Սպարկերտու պերտ տարին պիլոր կշինեն. քեանի շինեցին պլավ։ Խլխվե (լուսաբացից) չուր հըրկուն (երեկո) կշինեն՝ հըրկուն կշմրեն (թողնում հեռանում են), խլխուն կըգեն՝ պլյուկ (բլած)։ Չէղավ։ Էտ ամ-րեն, Բող-բեկ, զուր մլաթ (ժողովուրդ) շատ նեղից։ Մեկ կնիկ իրի (եկավ) ըսաց. Ամիրա,—ըսաց,—էն մարտյուն ինչ խորե խալալ (հարազատ), մորե խալալ մեկ տղա էղնի, որ տնիս մանչ քյու պիրտին (քո բերդի մեջ) ու պատ վերեն շարիս՝ քիու պեոտ էլ չը պըլնի։ Գեացին։ Մատ գեղ կեր (կար), զան (այն) տղեն պիրին։ Ան կնիկն էլ ատ տղի մորքիորն էր։ Տղեն էլ 12 տարվընեկ տղա է, զինք փող կփչեր։ Պիրին տրին մանչ պատին՝ առին (սկսեցին) շարել։ Հանդամ ինչ շարեցին, ոտաց ճաներ (ծնկներ), տղեն զինքն էլ խետ կեռ (ահա) փող կփչի մանչ պատին։*

*Ինչ էլավ ծընգներ՝ ըսաց.*
*Շարի, մորքիոր, շարի,*
*էլավ խասավ ծընգնիր...*
*Ինչ շարեց էլավ սիռտ՝ ըսաց.*
*Շարի, մորքիոր, շարի,*
*էլավ խասավ չուր սիռտ...*
*Ինչ շարեց էլավ գիըլոխ (գլուխ), ըսաց.*
*Շարի, մորքիոր, շարի,*
*էլավ ծածկեց գիըլոխ...*

*Ըսաց.*

*Կերար, մորքիոր, կերար,*
*Աստված էր տըվեր՝*
*Խորեն-մորեն մեկ տղա կերար...*
*Տղեն զինք խետ կեռ փող կփչի մանչ պատին։*
*Շինեցին պերտ, կանգնացըցին...*

### 582. ՄԱՀԲՌԱՆՔԻ ԲԵՐԴ

Գտնվում է Սասնո Մահբռանք գյուղում,
Մոկասար լեռան արևելյան փեշին

*Թադեոս առաքյալը գալիս է Խութ-Բռնաշեն։ Մահբռանք գյուղում նա կանգ է առնում ընթրելու։ Գյուղից դուրս գալուց հետո, Սև սարի ճանապարհին առաքյալը ծարավում է. գավազանը գետնին է խփում և գետնից աղբյուր է բխում։ Այդ աղբյուրի ջուրը երբ խմում են այստեղ արածող սև ոչխարները, խսկույն սպիտակում են։ Հովիվը կատարված հրաշքի մասին պատմում է Բռնիկ իշխանին, որը ձիով գալիս է դեպքի վայրը։ Թադեոս առաքյալը վանք շինելու համար տեղ է խնդրում Բռնիկից։ Իշխանը տալիս է, պայմանով, որ նա բուժի իր հիվանդ որդուն։ Առաքյալը լողացնում է Բռնիկի որդուն հրաշագործ աղբյուրի ջրում, և նա անմիջապես առողջանում է։ Իշխանը պատրաստակամություն է հայտնում շինվելիք վանքի պատերը իր հաշվին անել ոսկուց և արծաթից։ Թադեոս առաքյալը չի համաձայնվում, որովհետև ոսկու և արծաթի համար կարող են քանդել վանքը։ Բռնիկը այդ ոսկով ու արծաթով Մահբռանքի վանքից ոչ հեռու բերդ է շինել տալիս, որը վանքի անունով կոչվում է Մահբռանքի բերդ։*

### 583. ԴԱՎԹԻ ԲԵՐԴ

Գտնվում է Հալեպում, մի բարձր բլրի վրա

*Ասում են, թե այս բերդը շինել է Սասունցի Դավիթը։ Նա ամեն օր լուսաբացին նստել է Քուռկիկ Ջալալին և մի ակնթարթում Սասունից հասել է Հալեպ, աշխատել բերդի շինարարության վրա և երեկոյան մի ակնթարթում նորից վերադարձել Սասուն։ Սրա բարձր պարսպից գոթանի շղթայով կախված է Սասունցի Դավթի հսկայական գուրզը։*

### 584. ՀԱՅՈՑ ԲԵՐԴ

Գտնվում է Ղրիմի Կաֆա քաղաքում

Ա

*Նախիջևանցոց նախահայրերը իրենց նոր բնակատեղում (Ղրիմի Կաֆա քաղաքում) քառասուն չորս տարի ապրելուց հետո, նկատելով, որ այս տեղը բոլորովին անպաշտպան է, մտածում են ամրացնել պարիսպներով։ Մեծատուն հայերից ամեն մեկը պիտի հանձն առներ շինելու պարսպի միայն մի մասը և նախապես դրա համար անհրաժեշտ քարն ու*

*տապաղձը հավաքեր նշանակված տեղում։ Այդպես էլ անում են։ Բոլորը մեծ եռանդով գործի են անցնում և կարճ ժամանակում գլուխ են բերում մի հսկայական պարիսպ, որն ուներ բազմաթիվ աշտարակներ ու դարպասներ։ Այդ պարիսպը հայերի կողմից շինված լինելու պատճառով կոչվում է Հայոց բերդ։*

Բ

*Ջենովացի վաճառականներից մեկը ժամանակին Կաֆա քաղաքում վեճի է բռնվում մի թաթար վաճառականի հետ։ Սա սպանում է իտալացուն, իսկ նա էլ սպանում է թաթար վաճառականին։ Ջանիբեկ խանը որոշում է վրիժառու լինել։ Մարդ է ուղարկում դեսպանի մոտ և պահանջում հանձնել մարդասպանին։ Մերժում ստանալով դեսպանից, Թաթար խանը մեծ զորքով պաշարում է Կաֆա քաղաքը։ Տեղացի հայերը նախօրոք իմանալով խանի մտադրության մասին, իրենց ծախսով ծովափի ամենավտանգավոր կողմից պարիսպներ են կառուցում։ Պաշարումը տևում է երկու տարի, բայց խանը ոչ մի վնաս չի կարողանում հասցնել քաղաքին՝ այդ պարիսպների շնորհիվ։ Նա մտածում է մեքենաներով քանդել պարիսպները, բայց քաղաքացիք հանկարծակի հարձակվելով նրա վրա, մեծ ջարդ են տալիս, և խանը ստիպված հաշտության դաշինք է կնքում ջենովացոց հետ։ Այս պարիսպները հայտնի են Հայոց բերդ անունով։*

## 585. ԱՇՏԱՐԱԿԻ ԿԱՄՈՒՐՋԸ

Կառուցված է Քասախ գետի վրա՝ որպես Աշտարակ—Երևան ճանապարհի ագույց

*Պատմում են, որ Աշտարակի հին կամուրջի հիմքը դնելիս, գետը տարել է նրա քարերը։ Ինչքան փորձել են նորից դնել հիմքը, գետը քանդել ու տարել է։ Գյուղի ծերերը խորհուրդ են տալիս կամուրջի վրա աշխատող վարպետներին ու բանվորներին՝ հիմքը նոր տեղից դնել, և որպեսզի այն չքանդվի՝ պատաշարի մեջ կենդանի վիճակում թաղել մի որբ աղջկա։ Բանվորները ման են գալիս գյուղում, հարց ու փորձ անելով գտնում են մի որբ աղջիկ, փողով առնում նրան իր խորթ մորից և շարում են նոր կամուրջի պատի մեջ։ Շարելու ժամանակ աղջիկը հլու-հնազանդ ենթարկվում է բանվորների կամքին։ Երբ պատը հասնում է նրա ծնկներին, աղջիկը ողբաղորմ ձայնով ասում է.*

*«Շարեցին մերի՛կ ջան, շարեցին.*
*Մինչև ծնկներս...»։*

*Երբ պատը հասնում է նրա կրծքին, աղջիկն ասում է.*

*«Շարեցին մերի՛կ ջան, շարեցին,*
*Մինչև դոշս քարեցին...»։*

*Երբ պատը հասնում է աղջկա կոկորդին, նա ասում է.*

*«Շարեցին մերի՛կ ջան, շարեցին.*
*Մինչև բուկս քարեցին...»։*

*Աղջկա ձայնը այլևս չի լսվում և նա մնում է պատի մեջ։ Դրանից հետո կամուրջը չի քանդվում և բարեհաջող հասնում է իր ավարտին։*

*Հիմա էլ Աշտարակի նոր կամուրջից ոչ հեռու երևում են հին կամուրջի հիմքերի հետքերը։*

### 586. ՉՈՊԱՆ-ՔԵՓՐԻՍԻ ԿԱՄ ՀՈՎՎԻ ԿԱՄՈՒՐՋ

Գտնվում է Բասենում, Մուրց և Երասխ գետերի խառնարանում

*Նախնիք բազում անգամ շինէին աստէն կամուրջ, այլ բռնութիւն Երասխայ, որ սաստիկ սրընթաց է յայսմ վայրի, քակէր զամենայն։ Ապա հովիւ ումն բնութեամբ ճարտար յայսպիսիս, զառաջին քար հիման ինքն յանձն էառ դնել այնպիսի իմն ճարտարութեամբ, զի այնուհետև ոչինչ խախտումն լիցի շինուածոյն։ Եւ յայն օրէ հետէ անխախուտ մնայ միշտ հիմն կամրջոյն ի բռնութենէ ջուրց. և վասն այնորիկ կոչեցաւ Հովվի կամուրջ (Չօպան քէօփրիսի)։*

### 587. ՋՈՒՂԱՅԻ ԿԱՄՈՒՐՋԸ

Գտնվում է Հին Ջուղայի դիմաց, Երասխ գետի վրա

Ա

*Հայոց թագավորը լսում է, որ Ալեքսանդր Մակեդոնացին պարսկական արշավանքից հայրենիք վերադառնալիս մտադիր է այցելել Հայաստան։ Ի պատիվ Մակեդոնացու նա որոշում է մի գեղեցիկ կամուրջ կառուցել Արաքսի վրա, որպեսզի Մակեդոնացին այդ կամուրջով այն ափից ուղիղ մտնի Ջուղա։ Այդպես էլ անում է։*

*Ալեքսանդր Մակեդոնացին նոր կառուցված կամուրջով մտնում է Ջուղա։ Հայոց թագավորը մեծ հանդեսով դիմավորում է նրան և մի ճոխ խնջույք տալիս նրա պատվին, որին ներկա են լինում շատ մեծամեծ հա-*

յեր։ Աշխարհակալ կայսրը բաժակ է բարձրացնում Հայաստանի կենացը և ցանկություն է հայտնում վայելելու նրա գովաբանված գինին, խաղողն ու ծիրանը։

Հայոց թագավորը հրամայում է սեղանին դնել մի սկուտեղ լիքը խաղող, ծիրան և ուրիշ պտուղներ։ Սպասավորները անմիջապես կատարում են թագավորի հրամանը։ Մակեդոնացին մեկնում է ձեռքը, որ վերցնի պտուղները, բայց պարզվում է, որ դրանք լոկ նկարներ են, վարպետորեն նախշված սկուտեղի վրա (գարնան ժամանակ էր և հնարավոր չէր թարմ պտուղներ դնել սեղանին)։ Նա քահ-քահ ծիծաղում է և ասում. Ես ուզում էի փորձված այգեպաններ տանել Հայաստանից, որ իմ երկրում խաղող ու ծիրան աճեցնեն. հիմա ուզում եմ, որ դուք ինձ տաք նաև վարպետներ, որոնք այդքան հմուտ նկարել գիտեն։ Եվ Մակեդոնացին Հայաստանին հրաժեշտ տալիս, փորձված այգեպանների հետ տանում է նաև լավ նկարիչների...

Բ

Շինօղ սորա ի նախահարց անտի իւրեանց բերէ ճարտարապետս հմուտս յայն գ:րծ յամենայն կողմանց, և խորհրդով նոցա առաքէ զծառայս իւր գնել հուկիթս ի նիւթ շաղաղոյ կրոյն։ Իբրև ածեն զառաջեաւ, կշռէ մի-մի զամենայն, և զթեթևունս և զփոքրկունսն մեկուսի եդեալ, զլանայ հատուցանել զվճար գնոց, հաւասարութեամբ պարարտացն։ Զայս տեսեալ գործաւորաց ժլատութիւն խորհին զառնէն ի միտս իւրեանց, և խնդրեն պատճառս խափան և արգել տալոյ գործոյն։ Զգայ նա, և հեծեալ ի ձին գնայ ի ծանծաղս գետոյն, ուր հիմն դնել կամէր կամրջոյն, և հանեալ ի պայուսակէ փոքուէ բուռմբ զոսկի դրամս, ամայ ի գետն սսելով. Ասա հիմն ոչ ընդունի. կամ անդ։ Եւ այսպէս չարաչար վատնելով զզանձսն՝ գնէ նովին զընդունելութիւն նոցա, և ասէ. Ես ոչ ի դրամն խնայեմ, այլ վաճառականութեան օրէնս ուսուցանեմ իմայոցն, ձեզ զի՞ փոյթ։

Գ

Ջուղայի կամուրջը շինել է մի ունևոր երիտասարդ, որպեսզի ամեն օր կարողանա անցնել Երասխն ու տեսնել գետի մյուս ափին բնակվող իր սիրածին։

Դ

Ասում են, թե սրա վրա մի պառավ յոթ տարվա քացախ է լցրել և քանդել է կամուրջը։

Ե

*Մի հարուստ պառավ գաղթի նախորդ գիշերը քանդել է տվել Ջուղայի մեծ կամուրջը, որպեսզի Շահ-Աբասը չկարողանա գետն անցկացնել հայերին։*

## 588. ՍԱՏԱՆԻ ԿԱՄՈՒՐՋ

Գտնվում է Շուշի քաղաքից ոչ հեռու

*Շուշան անունով մի աղջիկ ուզում էր տեսության գնալ սիրածին, բայց դժվարանում էր անցնել վարարած Կարկ․․ռ գետը։ Սատանան առաջարկում է իր օգնությունը, պայմանով, որ նա տա իր հոգին։ Մութ ու թխպոտ գիշերով սատանան սկսում է կամուրջ կառուցել գետի վրա։ Շուշանը սթափվում է, զղջում իր տված խոսքի համար, և դիմելով մոտակա Աստվածածին վանքի հովանավոր Սբ. Կույսին, խնդրում է խանգարել Սատանային։ Կույսը արգելում է Սատանային ավարտելու կամուրջը։ Հուսալքված Սատանան իրեն գետն է նետում և խեղդվում։ Դրանից հետո այդ կամուրջի անունը դնում են Սատանի կամուրջ։*

## 589. ՍԱՆԱՄԻ ԿԱՄՈՒՐՋ

Գտնվում է Դիլիջանի ու Իջևանի միջև

*Այս կամուրջի մոտ Աղջկա բերդ անունով մի ամրոց կա։ Թշնամին ժամանակին հարձակվում է նրա վրա։ Ամրոցում փոքրաթիվ մարդիկ հերոսաբար դիմադրում են կատաղի թշնամուն։ Նրանց մեջ աչքի է ընկնում Սանամ անունով մի աղջիկ, որը վերևից հսկայական քարեր է գլորում։ Անհավասար կռիվը երկար է տևում։ Բերդականները ի վերջո պարտվում են։ Թշնամու ամրոց մտած զինվորները ողջ-ողջ բռնում են Սանամին և կախում են կամուրջից ցած։ Դրանից հետո կամուրջը կոչվում է Սանամի անունով։*

## 590. ԽԱՆԴՈՒԹԻ ԿԱՄՈՒՐՋ

Գտնվում է Կաղզվանի շրջանում

*Խանդութ խաթունը այս կամուրջը կառուցել է իր բերդի դիմաց, Երասխ գետի վրա, որպեսզի նրա վրայով անց ու դարձ անի իր սիրածը։*

## 591. ԽԱԹՈՒՆԻ ԿԱՄՈՒՐՋ

Գտնվում է Մանազկերտում, Ակներ գետի վրա

*Մանազկերտի Սբ. Սարգիս գյուղում ապրելիս է լինում մի պառավ իր մինուճար որդու հետ, որը գյուղի հորթարածն էր։ Սա մի օր կորցնում է ռեսի հորթը։ Ռեսը չարաչար պատժում է նրան։ Պառավի տղան օգնություն է խնդրում Սբ. Սարգսից։ Սբ. Սարգիսը նրան ամուսնացնում է Մսրա թագավորի Խաթուն անունով աղջկա հետ, պատվիրելով, որ ամեն անգամ անկողին մտնելուց առաջ աղոթի։ Պառավի տղան մի օր մոռանում է կատարելու Սբ. Սարգսի պատվերը, և նորից վերադարձվում է մոր խրճիթը։ Մայրը խնամքով պահում է որդու ամուսնական մարգարտաշար շապիկը։ Ինն ամիս անց Մսրա թագավորի աղջիկը տղա է ունենում։ Սրա լացը ոչ ոք չի կարողանում կտրել։ Իմաստունների խորհրդով Խաթունը երկրե-երկիր է ընկնում ամուսնուն գտնելու։ Նա շատ բարեգործություններ է անում, շենքեր ու կամուրջներ շինում։ Վերջում հասնում է Մանազկերտ, ուր գետի վրա սկսում է մի նոր կամուրջ կառուցել։ Չորս կողմից բանվորներ են հավաքվում։ Գալիս է նաև պառավի տղան։ Թագավորի աղջկա հրամանով ամեն բանվոր օրավարձն ստանալիս պիտի մտներ նրա սենյակը, օրորեր երեխային և նոր հեռանար։ Հերթը հասնում է պառավի տղային։ Սա հենց որ շարժում է օրորոցը, երեխան դադարեցնում է լացը։ Խաթունը առատորեն վարձատրում է պառավի տղային և պատվիրում է, որ նա առավոտյան նորից գա։ Պառավը խորհուրդ է տալիս տղային ամուսնական շապիկը նվիրել թագավորի աղջկան։ Տեսնելով շապիկը, թագավորի աղջիկը ճանաչում է իր անհետացած ամուսնուն։ Խաթունը կիսատ թողնելով կամուրջի շինարարությունը, վերցնում է ամուսնուն և առատ նվերներ տալով նրա պառավ մորը, մեկնում է Մսրը։ Կամուրջը կոչվում է Խաթունի անունով։*

## 592։ ԿՈԹԵՐԻ ԿԱՄՈՒՐՋԸ

Գտնվում է Դերջանի Կոթեր և Վիժան գյուղերի
միջև, Եփրատ գետի վրա

*Այստեղ շատ փորձեր են կատարվել կամուրջ շինելու, բայց հազիվ դրել են հիմքը, Եփրատի կատաղի ալիքները կործանել են այն։ Կամուրջ կառուցող մի հայտնի վարպետ՝ Տրդատ-Ղալֆա անունով, նույնպես փորձում է իր շնորհքը, բայց իզուր։ Վարպետը քիչ է մնում հուսահատությու-*

*նից ինքնասպան լինի։ Նրա 16 տարեկան աղջկան (Արեգնազանին) ջրերի փերը (սուրբը) երազում ասում է. հայրդ զուր չփորձի նորից կամուրջը կառուցել։ Կամուրջը կանգուն կմնա միայն այն ժամանակ, երբ զոհվի 18 տարին չլրացած և չամուսնացած մի տղա կամ աղջիկ։*

*Տեսիլը կրկնվում է երկրորդ և երրորդ անգամ։ Վարպետի աղջիկը որոշում է զոհել ինքն իրեն։ Հայրը դիմադրում է, բայց Արեգնազանը կանգնում է կամուրջի կամարի մեջ և նրա վրա սկսում են շարել պատը։*

*Պատը հետզհետե բարձրանում է, իսկ աղջիկը երգում է.*

*Շարեցին, հայրիկ, շարեցին,*
*Մինչև ծնկներս շարեցին.*
*Շարեցին, հայրիկ, շարեցին,*
*Մինչև ծծերս շարեցին.*
*Շարեցին, հայրիկ, շարեցին,*
*Մինչև աչերս շարեցին...*

## 593. ՀՆԳԱԿԱՄԱՐ ԿԱՄՈՒՐՋԸ

Գտնվում էր Աստապազար քաղաքի մոտ, Սաքարիա գետի վրա

*Հինգ կամրջագործ եղբայրներ ձեռնարկում են սրա շինությանը։ Հազիվ են բարձրացնում հինգ կամարների հիմքերը, Սաքարիա գետի կատաղի ալիքները քանդում, տանում են ամեն ինչ։ Այսպես կրկնվում է մի քանի անգամ։ Վարպետներին ասում են, որ մինչև նրանք մարդկային զոհ չմատուցեն, կամուրջը չի շինվի։ Եղբայրները որոշում են զոհել առաջին երևացող մարդուն։ Շատ չանցած գալիս է փոքր եղբոր կինը, ուտելիք բերելով աշխատավորներին (այդ օրը նրա հերթն էր)։ Պայմանի համաձայն ստիպված են լինում զոհել նրան։ Դրանից հետո կամուրջի հիմքերը այլևս չեն քանդվում և հինգ եղբայրները անխափան բարձրացնում են նրա հինգ կամարները, և կամուրջը ստանում է Հնգակամար (Պեշ-քեփրի) անունը։*

*Երեկոյան, երբ վարպետները տուն են դառնում, փոքր եղբոր զոքանչը, որ ամբողջ օրը սրտատրոփ սպասել էր իր աղջկա վերադարձին, անհանգստացած հարցնում է. Ո՞ւր է աղջիկս, ինչո՞ւ ուշացավ։ Պատասխան չստանալով, նա խելակորույս դուրս է վազում տանից և դիմելով պատահած անցորդին, գոչում է. Տվե՛ք, տվե՛ք աղջկաս... Այդպես երկար ու անհույս դեգերելուց հետո, նա թաշուն է դառնում և երկինք բարձրանալով շարունակ կրկնում է «տվե՛ք, տվե՛ք...»։*

## 594. ԱՐՃԵՇԻ ԿԱՄՈՒՐՋԸ

Գտնվում է Վասպուրականում

*Նոր է ավարտված լինում սրա շինարարությունը, երբ վրայով անցնում է Սհակ անունով մի երիտասարդ, մոր միակ զավակը։ Որպեսզի կամուրջը չփլչի, մարդիկ բռնում են նրան և զոհում։ Սհակի մայրը երկար սպասում է իր զավակին, բայց իզուր, նա այլևս տուն չի վերադառնում։ Կիսախելագար մայրը ցերեկ ու գիշեր անդադար կանչում է. Սհա՜կ, Սհա՜կ, Սհա՜կ...*

## 595. ԿԱՐՄԻՐ ԿԱՄՈՒՐՋ

Գտնվում է Մոկսի գլխավոր գետի վրա

*Երկու մոկացի վաճառական եղբայրներ առևտրական ճամփորդությունից հարստացած վերադառնում են տուն։ Լսելով որդիների վերադարձի լուրը, վաճառականների մայրն ասում է. Ինձ ինչ օգուտ նրանց հարստանալուց, եթե ես առաջվա նման դիմավորելու համար պիտի ոտքով անցնեմ գետը։ Ազդվելով մոր այդ խոսքից, եղբայրները Մոկսի գլխավոր գետի վրա անմիջապես մի կամուրջ են կառուցում, որով և նրանց մայրը գնում է իր զավակներին դիմավորելու։*

## 596. ԱՐԱԾԱՆՈՒ ԿԱՄՈՒՐՋԸ

Գտնվում է Տարոնում

*Այս կամուրջը շինել են հայերը։ Նրա տակով ժամանակին անցել է Արածանի գետը։ Բայց այն օրվանից, երբ հայերը հալածվում են այս հողից, Արածանին էլ խռովում, փոխում է իր հունը և այլևս կամուրջի տակով չի անցնում։ Ասում են, թե մինչև որ հայերը նորից չվերադառնան իրենց հողերը, Արածանին չի մտնելու իր առաջվա հունի մեջ։*

## 597. ՍԱՏԱՆԻ ԿԱՄՈՒՐՋ

Գտնվում է Սասունում, Փուրխ և Խլիռվիր գյուղերի
միջով անցնող Տալվորիկ գետի վրա

*Սա իր բարձրությամբ սոսկում է պատճառել անցնող-դարձողներին։ Դրա համար էլ կոչվել է Սատանի կամուրջ։*

### 598. ԲԱԹՄԱՆԱ ԿԱՄՈՒՐՋ

Գտնվում է Սասունում

*Բաթման անունով մի վարպետ դնում է այս կամուրջի հիմքը։ Հաջորդ օրը նա տեսնում է, որ ջուրը տարել է այն։ Նույնը կրկնվում է մի քանի անգամ։ Մի օր էլ վարպետը երազ է տեսնում. երազում մի ծերունի ասում է նրան. Կամուրջի հիմքում կենդանի կամ մարդ պետք է դնել, որպեսզի չքանդվի. այդ կենդանին կամ մարդը պետք է լինի նա, ով առավոտյան առաջինը հանդիպի։ Հետևյալ օրը աշխատանքը սկսելիս Բաթմանը նկատում է, որ դիմացից գալիս են սիրած կինն ու որսի շունը։ Հաց բերող կնոջ ոտքը հանկարծ քարին է դիպչում և կերակրամանն ընկնում է նրա ձեռքից։ Մինչև շունը լափում է թափված կերակուրը, կինը հասնում է Բաթմանի մոտ։ Վարպետը շատ է տխրում դրա համար։ Կնոջ հարցումին, թե ինչու է նա տխուր, Բաթմանը պատմում է իր երազը։ Կինն ասում է. Մահը մահ է. դիր ինձ կամուրջի հիմքում, որպեսզի այն չքանդվի։ Բաթմանը ակամա կատարում է կնոջ խոսքը, և կամուրջի պատերը բարձրանում են։ Երբ կամուրջն ավարտվում է, Բաթմանը նրա ճակատին քանդակում է սիրած կնոջ արձանը։ Ասում են, թե այդ արձանի քարե ստինքներից երկու կաթնաղբյուր է հոսում։ Ճամփորդները խմելով այդ ջուրը հագեցնում են իրենց ծարավը։*

### 599. ՄՀԵՐԻ ՃԱՆԱՊԱՐՀ

Գտնվում է Սասնո բերդի և Քաղբիկ գյուղի արանքում

*Ասում են, թե այս գեղեցիկ ճանապարհը շինել է Սասմա Մհերը գայլախազ ու չախմախի քարերից այն ժամանակ, երբ հողը այլևս չի դիմացել նրա ոտքերի տակ։ Այս ճանապարհով են երթևեկել Մհերն ու նրա հաղթանդամ սիրուհին։*

### 600. ՎԻՇԱՊԻ ՃԱՆԱՊԱՐՀ

Գտնվում է Սասնո Կնկահոտ կոչված ձորում

*Այս ճանապարհով ճեղքելով ճայռերը անցել է մի հսկա վիշապ և գնացել Կնկահոտ կոչված ձորում գտնվող իր բույնը։ Դրա համար էլ այն ստացել է Հուշփի ճամփա (Վիշապի ճանապարհ) անունը։*

### 601. ԷՐՄԻՆԱ

Գտնվում է Իսպանիայի Նավարա նահանգում

*Այս ճանապարհը էրմինա է կոչվում, որովհետև այս կողմերում ժամանակին ապրել է Հաբեթի թոռ Թուպալը կամ Աիթոոը, որը աշտարակաշինությունից հետո այստեղ է եկել Հայաստանից։*

## ՎԱՆՔԵՐ, ԵԿԵՂԵՑԻՆԵՐ, ՄԱՏՈՒՌՆԵՐ

### 602. ԷՋՄԻԱԾԻՆ

Ա

*էջմիածնա տեղը տիլ ու տըլտլնոց (ցեխ ու ճահիճ) էր. Լուսավորիչ դիվարեր էր՝ չըր գինի (չգիտեր) հուր գժամու հիմ թալեր (դներ)։ Մըջ տեսիլքին՝ Քրիստոս հիջավ հերկնուց (երկնքից), ոսկի ուռ ի ձեռք, բոլորմանի խազեց (շրջան գծեց), զտեղ ցուցուց։ Լուսավորիչ էն լուսուն հելավ զհիմք թալեց։ Հըման (հիմքի) քարեր Ծրդատ (Տրդատ) Մասիսու սարեն կշալկեր, բերեր. շալկելու վախտ (ժամանակ) Լուսավորիչ հետևանց կկարդեր ու կաղոթեր թագավորի համար։ Անգամ մի Ծրդատու սիրտ կնեղվի էնոր պըտպտիկներուց (աղոթք) ու դառնա կ՚ասի. Չըմ ձանձրանա քարն ի պառեկիս (մեջքիս), կձանձրանամ պտպտիկն ի հետևիս։ Էտ խոսքի վրա Լուսավորիչ ձեն կկտրի։ Ծրդատա ոտքեր չուրի (մինչ) ծնկներ կխըրվին գետնի մեջ, կասի. Դեհ պտպտա, պտպտա, պտպտիկդ ի հոգիս։*

Բ

*Առաչ ժամանակ, երբ որ էջմիածնու վանքը ըսկըսըմ ին շինել, գիշեր անցնըմ ա վըրին, առավոտ վարպետներ գալիս ին Գրիգոր Լուսավորչի հետ, տեսնում ին, որ հիմքը քանդվել ա։ Երազըմ Լուսավորիչ տենըմ ա, որ Հիսուս իրա հետ խոսըմ ա, ասըմ ա. Ըտեղ չարի յըղնաղ ա (խումբ, հոտ), ես ըդրանց ցիր ու ցան կանեմ։ Մեկ էլ տենըմ ա, որ Հիսուս ձեռին մե ոսկե ուռ կա։ Գալիս ա էջմիածնու վանքի հիմքի մոտ, ուռովը ըսկըսըմ ա խփիլ։ Երբ որ խըփըմ ա, չարի յըղնաղը ցիր ու ցան ա ըլըմ։ Ըտրանից ետո վանքը շինըմ ին, նպատակին հասնըմ։*

## 603. ՄԱՐԻԱՆՆ

Գտնվում է Աշտարակի արևմտյան ծայրին

*Երիտասարդ քահանայի ուրումն վախճանեցաւ կին. և այնինչ յայտնեցաւ նա յընկալնուլ զերկրորդ ամուսնութիւն, կաթուղիկոսն աթոռոյ էջմիածնի եդ ի վերայ նորա այսօրինակ ապաշխարութիւն. նախ շինել զեկեղեցի մի ի սրբատաշ քարանց, և այնպէս ընկալնուլ զհրաման երկրորդ ամուսնութեան։ Աշխատեալ նորա ոչ սակաւ ամս՝ եհան ի կատար զայս փոքրիկ տաճար։ Տեսեալ կաթուղիկոսին զերկարատև զանխոնջ աշխատանս նորին, յաւել և զայս, թէ ածցես շուրջ զզովաւ պարիսպ քարեա, յայնժամ ունիս հաւանիլ բաղձանաց քոց։ Յանձն առեալ և զայն կատարեաց, թէպէտ և եհաս յամբոկ գործոյն, այլ երկարատև միջոց գործառնութեանցն խոնարհեցոյց զհասակ նորա յալիս ծերութեան, և գործն բազմածախ թափեաց ի նմանէ զինչս և զհարստութիւնս։ Ապա ի հրամայել կաթուղիկոսին մտանել նմա երկրորդ ամուսնութիւն, եա հրաժեշտ քահանայն ի հրամանէ անտի և թողեալ զառաջին զիտաւորութիւն իւր՝ եկաց բարեկրօնութեամբ ցմահ իւր։*

## 604. ԼՈՒՍԱՎՈՐԻՉ

Գտնվում է Աշտարակի շրջանի Փարպի գյուղում

*Երբ Լուսավորիչը պատարագ է անելիս լինում այստեղ, մի քանի կռապաշտներ կատաղած շներ են բաց թողնում վանքի մեջ և ծաղրելով նրան, ասում են. Եթե քո աստվածը զորավոր է, առողջացրու այս շներին։ Գրիգոր Լուսավորիչը աղոթում է, և շներն անմիջապես առողջանալով դուրս են փախչում վանքից։*

## 605. ԱԳՌԱՎԱՎԱՆՔ

Գտնվում է Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղի մոտ,
Արայի լեռան լանջին

*Մի անգամ ուխտավորներն այստեղ մատաղ են պատրաստում մեծ կաթսայի մեջ։ Օձը թունավորում է մատաղը։ Այդ բանը տեսնում է մի ագռավ և աշխատում է թույլ չտալ ուխտավորին ուտելու մատաղը։ Ուխտավորները գլխի չեն ընկնում, և ագռավը ստիպված իրեն նետում է եռացող կաթսայի մեջ։ Թափում են մատաղը և նոր միայն տեսնում օձին։ Այդ օրվանից անձնազոհ ագռավի հիշատակին վանքը կոչվում է Ագռավավանք (Ղառղառավանք)։*

## 606. ԱՐԴԱՎԱՍԻԿ

Գտնվում է Բյուրականից դեպի արևելք, ձորի մեջ

*Ի հնումն սրբակեաց այր ոմն ի ճգնող արանց վախճանեալ աստէն՝ մնա անթաղ. և ապա հրեշտակ տեառն ի տեսլեան երևեալ քահանայի ուրումն և բերեալ հանդէպ այնմ տեղւոջ ի բարձրաւանդակ ինչ վայր՝ որ է ի մատրանէն յարևմտեան հիւսիս՝ յարևմտեան եզեր ձորակին, ցուցանէ զմարմինն վախճանեալ ճգնաւորի, ասելով. Արդ աւասիկ, երթ և ամփոփեա զայն։ Զարթուցեալ նորա ի քնոյ՝ գնայ անդր և որոնեալ գտանէ զմարմինն յարևելեան եզեր ջրոյ ձորակին և անդ ամփոփէ ի շիրմի. յորոյ վերայ կառուցանեն ապա խաչվէմ մեծ՝ որ կայ և ցարդ, և զմատուռն սրածայր կաթուղիկէիւ հանդէպ այնմ յարևմտեան եզեր այնր ջրոյ։*

## 607. ԱՍՏՎԱԾԸՆԿԱԼ

Գտնվում է Ապարանի շրջանի Ճամանուն գյուղում,
Քասաղ գետի արևելյան եզրին, ձորի մեջ

*Ի կառուցանել զայս տաճար ամփոփեցին ի հիման սեղանոյն սրբոյ զկող սրբոյն Յակոբայ առաքելոյ. նա և զմասն ինչ յաստուածընկալ խաչէն Քրիստոսի. և վասն այնորիկ եկեղեցին՝ Աստուածընկալ սուրբ նշան։ Եւս աւանդի, թէ երբեմն ոմն ի հայազգի բնակչաց տեղւոյս պատահեալ ումեմն այլազգւոյ ի ճանապարհի, հարցեալ եղև, թէ ուստի գաս։ Տայ պատասխանի. Ալլահ տիւշտիւէն (աստված ընկավից)։ Բարկանայ այլազգին ընդ նորալուր պատասխանին և հարկանէ զնա և խոժոռեալ դիմօք ստիպէ ասել զստոյգն։ Այլ նորա խորհրդածեալ ընդ միտս, թէ աստուածընկել, աստուած ընկաւ կամ անկաւ, նոյն է ասել ալլահ տիւշտիւ (աստված ընկավ) դարձեալ զնոյնն պատասխանէ և այլազգւոյն ոչինչ հասկացեալ, թողու զնա ի բաց։ Զի որպէս յայնժամ և այժմ ևս ոմանք ի ռամկաց ասեն Աստուածընկել։*

## 608. ԿԵՉԱՌԻՍ

Գտնվում է Հրազդանի շրջանի Ծաղկաձոր գյուղի մոտ

*Ասում են, թե Պահլավունյաց տոհմի իշխանազն օրիորդներից մեկի ցանկությամբ այս գեղեցիկ ձորահովտում մի մեծ ամրոց է կառուցվում, ամրոցի կողքին էլ մի շքեղ ծաղկանոց։ Օրիորդը պահանջում է, որ հայոց*

*աշխարհի ամենագեղեցիկ ծաղիկներն աճեն իր ծաղկանոցում։ Այդպես էլ արվում է։ Բայց մի գարնան կատաղի քամին ավերում է նրա ծաղկանոցը և ծաղիկները ցրում ձորով մեկ։ Ձորահովիտը լցվում է ծաղիկներով, և ձորն սկսում է կոչվել Ծաղկաձոր։ Իշխանազն օրիորդը պահանջում է հորից, որ նա իր ամրոցի մոտ մի վանք կառուցել տա, որպեսզի վանահայրերը գիշեր ու ցերեկ աղոթեն և ցրված ծաղիկները հետ վերադարձնեն։ Կառուցվում է Կեչառիսի վանքը։ Սակայն աստված չի լսում վանականների աղոթքը, և բուրավետ ծաղիկները տարածվում են ամբողջ գավառում։*

## 609. ԳԵՂԱՐԴ

### Ա

*Քոյր և եղբայր յազնուատոհմ տանէ փափագելով թողուլ յաշխարհի զկիշատակարան անմահ, առանձնանան յայս ձոր և սկսանին կերտել զայս տաճար։ Ի բազում ժամանակս ոչ գիտելով երիտասարդին, թէ ուստի սկսանիցէ զշինութիւն, խնդրէ յաստուծոյ յայտնել նմա զտեղին։ Յառաւօտու միում յարուցեալ ՚ի քնոյ տեսանէ զկոճն իւր եդեալ ի ծայր ապառաժին։ Անդ ի ձեռն տայ հատանել զաւիվայր, ուստի կոյսն աստուածահարսն ի վեր հանէ հերօք իւրովք զամենայն բեկորս քարանց։ Այսօրինակ շարունակելով զբազմաքիրտն վաստակ իւրեանց, բանան հետզհետէ զյարգանդ վիմին ի հրաշակառոյց տաճար աստուածային, յաւարտ որոյ մնան ինքեանք ի սպաս և ի բնակութիւն երկնամասն ձեռագործի իւրեանց, ուր կնքեն ի վախճանի և զկեանս իւրեանց երկնանուէր։*

### Բ

*Աշխարհակալին Լենգթեմուրայ լուեալ զանուանելի հրաշագործութեանց սրբազան վանիցս, անձամբ անձին դիմէ ի փորձ լինել պատմաբանութեանս։ Անթիւ զօրօք յարձակի ի ձորն ամայի, հրամայէ յոխորտանօք ծաղրաբանելով բերել նմա զսուրբ նշանն Գեղարդայ։ Բայց այն ինչ ձեռք բարձրացուցանէն զնիզակն առ հարկանել զսուրբ նշանն, յական թօթափել զունդք բիւրաւոր զօրաց անմարմնոց, զրահաւորեալ և ի զգեստս երփներանգս, յարձակին ի վերա ամենուստեք։ Թշնամին սուրբ հաւատոյ ոչ կարացեալ տանել անգամ և զտեսիլ զայս ահաւոր, տեսանելով մանաւանդ զշփոթ և զհարուած իւրայնոցն, յորոց բազմաց դէմ ի թիկունս դառնայ, այլոց ձեռք գօսացեալ, բազմաց կուրութիւն յաւիտենական փակէ զլոյսն տունջեան, այլք իբրև արկան անկենդան անդ մնան կարկառեալ,*

*դառնայ առ իւրսն ողբագին և գոչէ. Աղամ, գեօր, գեչ (Տեր իմ, տես, անց)։ Ապա մեծաւ հառաչանօք մաղթէ զԹողութիւն, ընծայէ զպարգևս մեծամեծս և դառնայ յետս։*

## 610. ԳՆԴԵՎԱՆՔ

Գտնվում է Վայոց ձորի Գնդեվազ գյուղի մոտ

### Ա

*Մի երիտասարդ իշխանազն խնդրում է Սյունյաց Սմբատ իշխանի դուստր՝ գեղեցկուհի Սոփիայի ձեռքը։ Սա ասում է, որ ինքը համաձայն կլինի միայն այն դեպքում, եթե իշխանազնը մասնակցի իր առաջարկած մրցությանը և կարողանա հաղթել իրեն։ Պայմանը հետևյալն էր։ Իշխանը պետք է 40 օրում ջրանցք անցկացներ Որոտան գետից մինչև Վայոց ձոր, իսկ Սոփիան էլ նույն ժամկետում կառուցեր մի վանք։ Իշխանազնը համաձայնվում է, և երկուսով գործի են անցնում։ 39-րդ օրը լուր է հասնում իշխանազնին, թե Սոփիան ավարտելու վրա է վանքի կառուցումը։ Նա շտապում է հոր մոտ խորհրդի։ Հայրը առաջարկում է վերցնել երկար սպիտակ կտավ և կախել զառիթափից, որպեսզի՝ երբ քամին ծածանի կտավը, թվա, թե ջրանցքն արդեն պատրաստ է և ջուրը տեղ է հասել։ Իշխանազնը կատարում է հոր խորհուրդը։ Ճիշտ է, Սոփիան ավարտելու վրա էր վանքի կառուցումը, բայց նրա ամբողջ կարողությունն արդեն սպառված էր և վանքի գմբեթի վերջին քարերը գնելու համար այլևս փող չէր մնացել։ Նա վաճառքի է հանում իր ականջի գինդերը և փողը տալիս է շինարարությանը։ Այդ պահին լուր է հասնում Սոփիային, թե իշխանազն արդեն ավարտել է ջրանցքը։ Սոփիան նայում է դիմացի քարափից կախված կտավին, որը հեռվից ջրվեժի տպավորություն էր թողնում։ Հուսահատությունից նա բարձրանում է վանքի գմբեթը և այնտեղից իրեն նետում անդունդը։ Եվ վանքն այդ օրվանից կոչվում է Գնդեվանք (Սոփիայի ականջի գինդերի դրամով շինված լինելու համար)։*

### Բ

*Սմբատ Թագավորի կին Սոփիա տիկինը կամեցել է այստեղ մի վանք շինել։ Գիշերը երազում տեսել է մի մարդու, որը նրան ասել է. «Սոփիա տիկին, կատարիր մտածածդ»։ Եվ նա առավոտյան սկսել է վանքի շինարարությունը։ Երբ վանքն ավարտվել է, տիկինը մոտակա ձորի այ-*

բերում ճգնող վանականներին հրավիրել է նոր վանքը։ Վանականների մեջ եղել է նաև Օվանես անունով մեկը, որը ծերության պատճառով չէր կարողանում կանգնել և նստած էր աղոթում, որի համար և նրան Գունտ Օվանես էին ասում։ Օվանեսը դառնում է վանքի առաջին վանահայրը և վանքը նրա անունով կոչվում է Գունտ Օվանեսի վանք, Գնտավանք, հետո էլ՝ Գնդեվանք։

## 611. ՆՈՐԱՎԱՆՔ

Գտնվում է Վայոց ձորում, Արփա գյուղից հարավ, այժմյան Ամաղու գյուղի մոտ

Վարպետ Մոմիկը սիրահարվում է Սյունյաց իշխանի գեղեցիկ աղջկան։ Աղջիկն էլ հավանում է Մոմիկին։ Սյունյաց իշխանը կանչում է Մոմիկին և ասում. «Աղջիկս կտամ քեզ, եթե երեք տարում մի նոր գեղեցիկ վանք շինես ինձ համար»։ Երիտասարդ վարպետը ընդունում է իշխանի պայմանը և գործի անցնում։ Ապառաժներից քարեր կտրելով ու տաշելով քիչ է մնում, որ որոշված ժամկետին ավարտի վանքի շինությունը։ Իմանալով այդ, իշխանն ուղարկում է ծառային, որը տիրոջ հրամանով բարձրանալով վանքի գմբեթը, այնտեղից ցած է հրում Մոմիկին։ Մոմիկի տաշած վերջին քարը շիրմաքար է դառնում նրա համար։

## 612. ԳՐԻԳՈՐ ՆԱՀԱՏԱԿ

Գտնվում է Վայոց ձորում, Արփա գյուղից դեպի արևելք

Թուրքերը ստիպում են Գրիգոր անունով մի հայի, որ նա առաջնորդի իրենց դեպի Արփա գյուղը։ Կռահելով նրանց մտադրությունը, Գրիգորը երկար ման է ածում թուրքերին, գիշերը բերում Արփա գյուղի մոտ գտնվող ապառաժի վրա, և մի կածան ցույց տալով, առաջարկում է ցած իջնել, իսկ ինքն էլ թաքնվում է մոտակա ծերպի ետևում։ Հետևելով Գրիգորի խորհրդին, թուրքերի մեծ մասը ժայռից ցած է գլորվում և ոչնչանում։ Մնացածները գտնում են Գրիգորին, գլորում ժայռից ու փախչում։ Արփացիները ազատվում են կոտորածից ու թալանից։ Գտնելով Գրիգորի դիակը, թաղում են ընկած տեղում և վրան մատուռ կառուցում։ Այդ մատուռը կոչվում է Գրիգոր նահատակ։

## 613. ԿԻՐԱԿՈՍ ՃԳՆԱՎՈՐ

Գտնվում է Վայոց ձորի Հասանի գյուղից դեպի արևմուտք

*Աստ է գերեզման ճգնակիր միայնակեցի, որ ի ժամ պատարագին նահատակեցաւ ի ձեռն թշնամեաց։ Եւ որ յաճախեն ուխտաւորք բազումք, և ըստ հաւատոց իւրեանց ընդունին զբուժումն ի զանազան ցաւոց։*

## 614. ԸՆԳԵՂԻ ՄԱՏՈՒՌ

Գտնվում է Վայոց ձորի Հասանի գյուղից դեպի հարավ

*Մի հայ աղջիկ անտառ գնալիս ենթարկվել է թուրքերի հարձակմանը։ Չկամենալով ընկնել թշնամու ձեռքը, նա տեղն ու տեղը անձնասպանություն է գործել։ Նրա գերեզմանի վրա տեղացիներն՝ իբրև նահատակի՝ մատուռ են կառուցում, որը հայտնի է Ընգեղի մատուռ անունով։*

## 615. ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ

Գտնվում է Հին Նախիջևանի մոտ, Արաքս գետի ձախ ափին

*Ավարայրի ճակատամարտում վիրավորվածներին բերել են այստեղ։ Նրանց վերքերից հոսող արյունից վանքի գավիթն ու սանդուղքները կարմիր գույն են ստացել։ Դրանից էլ վանքի անունը դրել են Կարմիր վանք։*

## 616. ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՆ

Գտնվում է Հին Նախիջևանի Աստապատ գյուղի մոտ, Արաքսի ափին

### Ա

*Վարդանանց պատերազմում նահատակված զինվորներին թաղել են այստեղ։ Դրա համար էլ վանքը կոչվել է Սուրբ Վարդանի վանք։*

### Բ

*Թշնամու հարձակումից վանքն ազատ պահելու համար տեղացիք նրա չորս կողմը մեծ փոս են փորել, լցրել Արաքսից բերված առվի ջրով, ջրի երեսին դարման ածել, որ չերևա։ Երբ Լենկ-Թեմուրի զորքերը հանկարծակի հարձակվել են վանքի վրա, բոլորը ջուրն են լցվել ու խեղդվել, և վանքը մնացել է անվնաս։*

## 617. ՄԱՐԴԱՂԱՎՆՅԱՑ ԿԱՄ ՀԱԶԱՐԱՓՐԿԻՉ

Գտնվում է Հին Նախիջևանի Աոինջ գյուղի մոտակայքում

*Ասում են, թե երբ Լենկ-Թեմուրը գերում է Սյունյաց երկրի բնակիչներին, Հովհաննես եպիսկոպոսը՝ ս. Նշանը ուսից կապած նետվում է գետը և սկսում է ցամաքի նման քայլել գետի վրայով։ Տեսնելով այդ հրաշքը, Թեմուրի զինվորները հայտնում են նրան։ Թեմուրը կանչում է Հովհաննես եպիսկոպոսին և պահանջում բացատրել հրաշքը, երդվելով, որ նրան ոչ մի վնաս չի լինի։ Հովհաննես եպիսկոպոսը հայտնում է, որ հրաշքը ս. Նշանից է։ Թեմուրը առաջարկում է նրան հայտնել իր ուզածը։ Եպիսկոպոսը ցույց տալով մոտակա փոքրիկ վանքը, խնդրում է նրանով մեկ գերիներ։ Եպիսկոպոսի ցանկությունը անմիջապես կատարվում է։ Ս. Նշանի զորությամբ գերիները աղավնի դառնալով, լուսամուտից դուրս են թռչում, և վանքը մնում է դատարկ։ Ահաբեկվելով ս. Նշանի զորությամբ, Լենկ-Թեմուրը հեռանում է Սյունիքից։ Դրանից հետո վանքը կոչվում է Մարդաղավնյաց կամ Հազարափրկիչ անունով։*

## 618. ՏԱԹԵՎ

Գտնվում է Գորիսի շրջանում

### Ա

*Սրա կառուցումն ավարտելուց հետո, քարագործ Վարպետը, դիմելով ցածրում գտնվող բանվորներին, երկու տաշեղ է պահանջում։ Ստանալով տաշեղները վարպետը համբուրում է դրանք և ասում. «Հոգին սուրբ տա թև»։ Խոսքը բերանին, նրա ուսերին թևեր են բուսնում։ Վարպետը թռչում, գնում է անհայտ ուղղությամբ։ Բանվորներն առանց վարպետի չեն կարողանում հանել վանքի փայտյա սկալաները։ Ժամանակ անց, լսելով որ նա Պոլսում է գտնվում, վանքի շրջակայքի բնակիչները մարդ են ուղարկում վարպետի մոտ և խնդրում, որ նա գա և հանի վանքի սկալաները։ Սակայն վարպետը չի վերադառնում։ Միայն հայտնում է հանելու եղանակը։ Վարպետի ասած խոսքից («Հոգին սուրբ տա թև») վանքը կոչվում է Տաթև։*

### Բ

*Լենկ-Թեմուրը կամեցել է հիմնահատակ կործանել Տաթևի վանքը և արմատախիլ անել նրա մոտ գտնվող շարժական Գավազան-սյունը։ Դրա*

համար նա հրամայել է իր հրոսակներին լծել տասը զույգ գոմեշ, գութանի շղթայով կապել սյունը և ձգել։ Հենց որ գոմեշները սկսում են ձգել, շղթան կտրվում է և նրանք տապալվում են ձորը։ Տեսնելով այդ՝ Լենկ-Թեմուրը հեռանում է Տաթևից։

Գ

Գալով Տաթև՝ Լենկ-Թեմուրը կարգադրում է փայտ դիզել վանքի մեջ և այրել։ Կրակը ընկնում է նաև զանգակատունը և փչացնում զանգերը։ Դրանից հետո վանքի զանգերի ձայնը խզվում է։

### 619. ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ

Գտնվում է Զանգեզուրում

Հոչաս գյուղի մելիք Թումանը չարունակ նեղացնում է գյուղի քահանային։ Մելիքից ազատվելու համար՝ սա մի անեծքաթուղթ է գրում, գցում նրա սենյակն ու ինքը փախչում։ Այդ թղթի ուժով մելիքը կորցնում է կնոջը, որդիներին և ողջ հարստությունը։ Հասկանալով, որ բոլոր դժբախտությունների պատճառը քահանայի անեծքն է, մելիքը գնում է նրանից թողություն խնդրելու։ Անցնելով շատ քաղաքներ, հասնում է Հռոմ և իմանում, որ քահանան արդեն վախճանվել է։ Հուսահատված մնում է Հռոմի վանքերից մեկում իբրև լուսարար և միշտ աղոթում իր հոգու փրկության համար։ Ժամանակ անց, մելիքը կծելով Պետրոս առաքյալի ճկույթը (ծիծեռը), պահում է բերանում։ Դրանից վանքի սրբապատկերները գետին են թափվում։ Քահանաները ուզում են հանել մելիքի բերանից մասունքը և իրեն էլ սպանել։ Սեղանից մի ձայն ասում է. «Մի մերձենաք մելիքին»։ Մելիքը անվտանգ գալիս է հայրենի երկիրը։ Պաշտամունքի առարկա մի շլորի ծառի տեղում մելիքը վանք է կառուցում, ուր և ամփոփում է Պետրոս առաքյալի ճկույթը (ծիծեռն)։ Դրա համար է վանքը կոչվում է Ծիծեռնավանք։

### 620. ԿՆԵՎԱՆՔ

Գտնվում է Սյունյաց աշխարհում

Մանկունք անդէորդք արածէին ջոլիրս եզանց, և սկսան խաղալ. և կարեալ կնիւն մի և արարին խաղ և եդին ի վերայ քարի մի և

*սկսան երկրպագել և ասել «զոր ինչ երէցն ասէ և ընթեռնու, այն ի վերայ քո եղիցի. և յայսց եզանցս այս երեքս քեզ մատաղ եղիցի»։*

*Ապա ի ժամ երեկոյան սկսան գնալ. և թէպէտ ջանացին՝ զայն նուիրեալ մատաղսն ոչ կարացին յարուցանել ի տեղւոյն. գնացին և ազդ արարին տէրանցն. և նոքա եկեալ ոչ կարացին շարժել. և հարցեալ պատճառն ի մանկանցն՝ խոստովանեցին զուղիղն։ Կոչեալ այնուհետև քահանայս օրհնեցին զխաչն և զենին զեզինսն և պատուեցին զտեղի կնիւնին։ Ազգ լինէր այս իշխանացն Սիւնեաց. և գային ի տեսութիւն. և հրամայեցին շինել եկեղեցի ի տեղւոջն, և սահմանեցին զնա տուն կրօնաւորաց. բայց զտեղի կնիւնին թողին ի մէջ եկեղեցւոյն փոս մի ղուզնաքեայ և մինչ յաւէր տեղւոյն ձէթ բղխէր ի փոսոյն այնքան՝ զի օտար ձիթոյ ոչ կարօտանային. այլ եկեղեցւոյն կանթեղունքն նովաւ կերակրիւր. և դեռ ևս կայ եկեղեցին և տեղի կնիւնին, և խաչ ևս որք վկայեն անսուտ գոլ։*

## 621. ԹԱՆԱՀԱՏԻ ՎԱՆՔԸ

Գտնվում է Սյունյաց աշխարհում

*Յայնմ ժամանակի պայծառանայր սուրբ և երկնահրաշ կարգօք գերափառ և հռչակելի ուխտն Թանահատի վանից. որ կայ ի վերոյ Սիւնեաց յատորոտ լերինն ի բարձրավանդակի միոջ ի մէջ անտառին։ Եւ էին սահմանաւորք, մշտապաշտօնք հեռացեալք յամենայն փափուկ կերակրոց, միայն աշտուճ հացիւ և լոկ ջրով վճարէին զպէտս իւրեանց, և զայն յաւուրն միանգամ ընդ երեկս. լռիկ, հեզաշարժք, որք իբր կանթեղունս անշէջս կախեալք լինէին յաղօթս զցայգ և զցերեկ, և պաշտօնք իւրեանց երբէք ոչ խափանէին զցայգ և զցերեկ։ Եւ բաց ի սպասաւորացն ընդ դրունս վանիցն ոչ ոք ելանէր արտաքս. և թէպէտ բազում անգամ հարկեցան յիշխանացն և յեպիսկոպոսաց Սիւնեաց՝ ոչ առին յանձն ի կիւրակէքն ի թան կամ ի պանիր կամ յիւղ խթիլ, այլ բանջարօք և ընդով շատանային. վասն որոյ թանահատք կոչեցան։*

## 622. ԼՈՐ ԵՎ ԽՈՏ ԳՅՈՒՂԵՐԻ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԸ

Գտնվում են՝ մեկը Գորիսի, մյուսը՝ Սիսիանի շրջաններում

*Շահ-Աբասը խլում է Խոջա-Պողոսի կնոջը և տանում իր հարեմը։ Տարիներ անց Պողոսի կինը խնդրում է Շահ-Աբասին ազատել իրեն հարեմից։ Շահը ձանձրացած լինելով նրանից՝ ազատում է։ Կինը վերադառ-*

նում է ամուսնու մոտ, սակայն ամուսինը չի ընդունում։ Կինը նորից վերադառնում է Շահ-Աբասի մոտ և նրանից մի մեծ գումար է ստանում, եկեղեցիներ շինելու և մեղքից փրկվելու համար։ Պողոսն այս անգամ ընդունում է կնոջը և նրա բերած գումարով կառուցում է Լոր և Խոտ գյուղերի եկեղեցիները։

## 623. ԵԶՆԱԽԱԶԻ ՄԱՏՈՒՌԸ

Գտնվում է Զանգեզուրում

Ժամանակին այս ձորերում ու բլուրներում խիտ անտառներ են եղել։ Մի որսորդ հալածել է եղնիկներին, որոնք գալով այստեղ, խսկույն աներևութացել են։ Որսորդը սուրբ է համարել այս հողը և դադարել է այլևս որս անելուց։ Նա եգնաւոր է դարձել և կառուցել է մի մատուռ, որին տեղացիները Եղնախաչի մատուռ անունն են տվել։

## 624. ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՆ

Գտնվում է Սիսիանի Շաքե գյուղի մոտ

Այստեղի բնակիչները, երբ գաղթելիս են լինում Պարսկաստանից, հետները տոպրակով հող են բերում Վարդան զորավարի գերեզմանի վրայից և այդ հողի վրա նոր բնակավայրում վանք են շինում՝ անունը Սուրբ Վարդան դնելով։

## 625. ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ

Գտնվում է Սիսիանի Հորբեկյուղ գյուղի մոտ

Այս վանքը շինել են մի աղջիկ ու մի եզ։ Եզը կամովին կրել է քարերը, իսկ աղջիկը մեն-մենակ շարել է պատերը։

## 626. ԱՄԱՐԱՍ

Գտնվում է Արցախում

Լենկ-Թեմուրը այստեղից մինչև Արաքս գետը կողք-կողքի կանգնեցրել է իր զինվորներին, կարգադրելով նրանց մեկ-մեկ տեղահան անել վանքի քարերը և ձեռքից ձեռք տալով թափել գետի մեջ։

### 627. ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՈՍ

Գտնվում է Արցախի Տող գյուղի մոտ

*Այր ոմն ի սերնդոց իշխանացս բռնադատեալ ընկալաւ զկրօնս Մահմետի, և յետոյ զղջացեալ ապաշխարեաց. և ի նշան ճշմարիտ ջերմեռանդութեան կառոյց զեղեկեցին Սուրբ Ստեփանոսի։*

### 628. ԳԱՆՁԱՍԱՐԻ ՎԱՆՔԸ

Գտնվում է Արցախի Խաչեն գավառում, Գանձասար
լեռան հարավային ստորոտին

*Ասում են, թե այս վանքն իր անունը ստացել է Համանուն լեռից, որը տեղացիների պատմելով, Գանձասար է կոչվել՝ արծաթի Հանք ունենալու Համար։*

### 629. ՍՈՒՐԲ ՂԵՎՈՆԴ

Գտնվում է Վարանդայի Ավետարանոց գյուղի
հյուսիս-արևելյան կողմում, բլրի վրա

*Ազգականք Ղևոնդ երիցու, որ նահատակեալ պսակեցաւ յԱպար աշխարհի, որոնեալ ի գաւառին Վարանդու, գտին զմասն նշխարաց նորա և բերեալ եդին աստանօր, յորոյ վերայ կառուցին զեկեղեցի, և յօրէ անտի յատկացեալ է ի մէջ գաւառիս նշանաւոր ուխտատեղի և անուանի Սուրբ Ղևոնդ։*

### 630. ԿՈՒՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏ

Գտնվում է Վարանդայի Չանախչի գյուղի մոտ

*Այստեղ ժամանակին կույսեր են ապրել, դրա Համար էլ կոչվում է Կուսանաց անապատ։ Երբ Աղա-Մահմետ շահի սարվազները (զինվորներ) գալիս են այս կողմերը, կույսերը թողնում են վանքը և փախչում մոտակա անտառը։ Վանքում մնում է միայն նրանցից մեկը (կիսատ աղոթքը վերջացնելու Համար)։ Երբ նա վերջացնելով իր աղոթքը ուզում է դուրս գալ վանքից, գլխին Հանկարծ շողում է պարսիկ սարվազի թուրը։ Օգտվելով Հաջող վայրկյանից, կույսը վազում է դեպի մոտակա բլրի գագաթը*

և այնտեղից իրեն նետում ձորը։ Աներևույթ զորությամբ նա անփորձ իջնում է դետին և թաքնվում անտառում։

## 631. ԵՂԻՇԵ ԱՌԱՔՅԱԼԻ ՎԱՆՔ

Գտնվում է Ջիվանշիրի շրջանի Կասապետ գյուղի մոտ

Երբ թագավորությունը ձանձրացնում է Վաչագանին, նա իր գահը հանձնում է Վահրամ որդուն և Հասարակ մարդու շորեր հագած, գնում աշխարհը շրջելու։ Անցնում են երկար տարիներ և Վաչագանը տուն չի դառնում։ Վահրամը գնում է հոր ետևից։ Մաղաղիս գյուղի մոտ նա հանդիպում է Վաչագանին ցնցոտիների մեջ, տիկով ջուր կրելիս։ Վահրամն իսկույն ձիուց ցած է իջնում և ուզում է վերցնել հոր ձեռքից տիկը, սակայն Վաչագանը չի տալիս։ Երկար քաշքշուկից տիկը պատռվում է և ջուրը թափվում գետին։ Այդ տեղից իսկույն աղբյուր է բխում։ Եղիշե առաքյալի վանքը շինելու համար Վաչագանը այնուհետև ջուր է կրում ոչ թե հեռավոր գետակից, այլ նոր բխած աղբյուրից։

## 632. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ՎԱՆՔ

Գտնվում է Գանձակի Խաչակապ գյուղից հյուսիս

Հիմնվել է Մեսրոպ Մաշտոցի ժամանակ, երբ նա քարոզել է այս կողմերում։ Վանքի բակում կա մի աղբյուր։ Կամենալով հրաշք ցույց տալ ժողովրդին, Մաշտոցը գավազանով խփել է քարին և նրանից ջուր է բխել։

## 633. ՄՌՈՒՏ ԿԱՄ ՄԵՌՈՆՈՒՏ ՄԱՏՈՒՌ

Գտնվում է Գանձակում

Թարգմանիչ հայրն մեր Մեսրոպ օծեալ զխաչ սրբալոյս մեռոնաւ և եդ ի նշանակ պաշտաման ժողովրդոց և զնոյն խաչ ցուցանեն ի ճակատ սեղանոյն, և աստն ատի անուանեցաւ Մռուտ, որ է Մեռոնուտ։

## 634. ՉԱՐԵՔԱ ՎԱՆՔ

Գտնվում է Գանձակի շրջանում, Շամքոր գետի ձորափին

Ա

Սարգիս վարդապետը մի անգամ գնում է Սատամբոլ ժողովի։ Մտնում է եկեղեցի և տեսնում, որ բոլորը սգի մեջ են։ Ժամհարից իմանում է, որ

*ոգի պատճառը Ամիրայի միակ որդու մահն է։ Առաջարկում են Սարգիս վարդապետին մեռելի վրա գիրք կարդալ։ Սա կարդում է բժշկության գրքը և Քրիստոսի անունով կանչում մեռելին։ Մեռելը հարություն է առնում։ Իրարանցումի ժամանակ Սարգիս վարդապետն անհայտանում է։ Ուրախացած որդու հարությամբ, Ամիրան իր հարստության մեկ քառորդը (չարեկ) նվիրում է այն վանքին, որի վանահայրն էր Սարգիս վարդապետը։ Դրանից հետո վանքը կոչվում է Չարեքա վանք։*

Բ

*Լենկ-Թեմուրը*[1] *ժամանակին զորքով իջևանում է այս վանքի մոտ, բանադրում վարդապետներին և ուզում է պատուհասել նրանց։ Լենկ-Թեմուրի ներկայությամբ Սարգիս վարդապետը եկեղեցում կենդանացնում է մեռելին։ Թեմուրը զարմանում է այդ հրաշքի վրա և առաջարկում է վանահորը պահանջել իր ցանկացածը։ Վանահայրը խնդրում է նրանից վանքի դիմացի ծմակը։ Լենկ-Թեմուրը կատարում է Սարգիս վարդապետի խնդիրքը և մի մեծ հողամաս նվիրում վանքին։*

## 635. ԵՂԻՇԵԻ ՎԱՆՔ

Գտնվում է Նուխու Գիս գյուղում

*Կին ոմն մահմեդական ըստ պառաւական փաթութանաց առ ի ծննդական առնել զիւր ամուլ հարսն՝ տանի ի վանս Եղշէի և նստուցեալ զնա ի վերայ շան, \ի մէջ նոյն խսկ տաճարին ջրով լուանայ զբովանդակ մարմին այնր կնոջ։ Բայց ոչ մնայ անպատուհաս ինքն և ամենայն բնակիչքն այնր գեղջ, զի ի նմին գիշերի յանկարծ տարուցեալ յորդահոս հեղեղաց ի լայնարձակ հովտաց և ի ծործորոց լերանց ողողէ զբոլոր գիւղն և ի նմին եղեալ զերկու հարիւր գերդաստանս, և ջրասույզ արարեալ լնու յերեսս լայնարձակ դաշտին, ցիր և ցան առնելով զամենայն կահս և զկարասիս նոցա։*

## 636. ՇԻՐՎԱՆԻ ԿՈՒՍԱՆՈՑԸ

Գտնվում է Շամախուց ոչ հեռու

*Ասում են, թե այս կուսանոցը կառուցել է տվել մի թագավորի աղջիկ։ Հայրը կամեցել է նրան տալ մի թաթար խանի կնության, և աղջիկն այդ անարգանքից ազատվելու համար՝ որոշել է կուսակրոն դառնալ։*

---

[1] *Կամ՝ Սարու Մուստաֆան, տաճկաց խանդքարը։*

## 637. ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ ԵԿԵՂԵՑԻ

Գտնվում է Բաֆվի էրմանի-քենդ թաղամասում

*Այստեղ թաղված է Մեսրոպ Մաշտոցի ճկույթը։ Մաշտոցի հիշատակը հավերժացնելու համար այդ ճկույթի վրա ժամանակին կառուցել են այս եկեղեցին։*

*Հայտնի է Մեսրոպ Մաշտոցի եկեղեցի անունով։*

## 638. ՀՈՎԱՆԱՎԱՆՔ

Գտնվում է Նոր-Բայազետի շրջանի Այրիվանք գյուղում

### Ա

*Լընգ-Թըմուրը, որ գալում մեր երգիրն առնում ա, գեղի սաղ (ամբողջ) ժողովուրդը փախնում մտնում են էս վանքը, դռները փագում են, աբավինում Հայր Օհանին։ Հայր Օհանը ջոջ (մեծ) տերդերն էր։ Աստծուն աղոթում ա, որ հիր (իր) ժողովրդին փրգա (փրկի)։ էնդա (այնքան) ջերմեռանդ ա աղոթում, որ աստծու հրամանով վանքի մչի մարդիկ դառնում են եղունակ (աղավնի), թռնում, ազատվում են գազանի թրից։ էտ օրվանից վանքի անունը մնում ա Հայր Օհանա վանք (Հովանավանք), համա մկա (հիմա) ասում են Այրիվանք։*

### Բ

*էն վախտ (ժամանակ), որ Լընգ-Թըմուրը գալում (գալիս), մեր երգիրն առնում ա, ժողովրդին կոտորելով խասնում ա Այրիվանք։ Վանքի վանախերը հիրանը (իրեն) գցում ա ջուրը, որ ժողովրդի կոտորածը չըտենա։ Համա, աստծու հրամանքով, վանախերը չը սըկում (չի սուզվում), հընգնում ա ծովի հերեսն ու վազնում ա։ Լընգ-Թըմուրը, որ էս բանը տենում ա, ձեն տալում, վանախորը հետ ա կանչում։ Վանախերը, որ ետ ա գալում, Լընգ-Թըմուրն ասում ա. Դու, որ էտ հրաշքը նշանց (ցույց) ավիր, ինչ որ ուզում ես, ասա տամ։ Վանախերն ասում ա. Ես բան չեմ ուզում, ընձի իմ վանքովը մեկ ժողովուրդ տուր։ Լընգ-Թըմուրը հոժարվում ա։ Վանքի դուռը բացում են, ժողովուրդն սկսում ա լցվել։ Ինչքան մարդ կա, հըմեն լցվում են ներս, էլ մարդ չը մնում։ Լընգ-Թըմուրը զարմանում ա, հիշկում տեննում ա (նայում տեսնում է), որ ներսի ժողովուրդը դառնում են եղունակ (աղավնի), թռնում էթում են, սրից ազատվում են։*

## 639. ԳԱՆՁԱՎԱՆՔ ԿԱՄ ԱՆԳԻՐ ՎԱՆՔ

Գտնվում է Գեղարքունիքի Լճաշեն գյուղի մոտ

*Այս ամայի վանքը տեղացիների ասելով կոչվում է նաև Անգիր վանք, որովհետև նրա մեջ ոչ մի գրի նշան չկա։*

## 640. ՊԱՌԱՎԻ ԿԱՄ ԻԼԻԿԻ ՎԱՆՔ

Գտնվում է Նոր-Բայազետի շրջանի Լանջաղբյուր գյուղի մոտակայքում

*Այստեղ թաղված է մի բարեպաշտ պառավ։ Նա իլիկ մանելով փող է վաստակել և վանք կառուցել։ Դրա համար էլ վանքը կոչվում է Պառավի կամ Իլիկի վանք։*

## 641. ՍԵՎԱՆԱ ՎԱՆՔ

Գտնվում է Սևանա կղզում

*Ի կառուցել մեծին Գրիգորի զայս եկեղեցի, կոչեաց և անուն տեղւոյս՝ Այս է վան, որ հոլովելով աղաւաղանօք ի լեզուս, եհաս առ յետագայսն և առ մեզ անուամբս Սևան։*

## 642. ՍՈՒՐԲ ՀՈՎՀԱՆՆԵՍ

Գտնվում է Սևանի Դդմաշեն գյուղի ճյուսխում

*Եղել է Հովհաննես անունով մի մարդ։ Երիտասարդ ժամանակ նա ավազակությամբ է զբաղվել։ Երբ ծերացել է, եկել է այստեղ, աղբյուրների մոտ քոլիկ (տնակ) է շինել, ապրել մեջը, սնվել հովիվների և գյուղացիների տված փշրանքներով։ Քավելու համար իր գործած մեղքերը, Հովհաննեսը դարձել է ճգնավոր։ Մի օր էլ նրան գտել են մեռած։ Հովհաննես ավազակ-ճգնավորի տնակ-մատուռը հետո դարձել է սրբավայր՝ Սարի սուրբ Հովհաննես անունով։*

## 643. ԿԻՐԱՆՑ ՎԱՆՔ

Գտնվում է Իջևանի շրջանում

*Քարագործ վարպետն ունենում է մի շատ ընդունակ աշակերտ։ Նա մեն-մենակ կառուցում է այս վանքը։ Վերջացնելուց հետո կանչում է վար-*

պետին իր առաջին աշխատանքը գնահատելու։ Վանքն այնքան փառահեղ է լինում, որ անվանի վարպետը նախանձում է աշակերտին։ Նա ամեն կերպ աշխատում է որևէ թերություն գտնել, բայց չի կարողանում։ Երկար մտածելուց հետո, ասում է. Կիրը անց էս կացրել... Այստեղից էլ վանքի անունը մնում է Կիրանց վանք։

## 644. ՄԱԿԱՐԱՎԱՆՔ

Գտնվում է Իջևանի Աչաջուր գյուղի արևմտյան կողմում

Ա

Պատմում են, թե այս վանքի շինարարներն էին Մակար անունով վարպետն ու իր միունձար որդին։ Որդին քար էր տաշում գյուղում, նախշում, իսկ հայրը շարում էր։ Վանքի պատերն աստիճանաբար բարձրանում էին, իսկ Մակար վարպետը՝ կտրվում հողից։ Նա գիշերում էր վանքի կիսատ պատերի վրա, որովհետև հնարավոր չէր իջնել այնտեղից, քանի դեռ չէր ավարտվել շինությունը։ Օրերից մի օր Մակար վարպետը նկատում է, որ քարերը չեն բռնում իրար, նախշերն էլ ինչ-որ այն չեն։ Վերևից հարցնում է, թե ինչ է պատահել որդուն։ Պատասխանում են, որ նա հիվանդ է։ Պահանջում է թեկուզ հիվանդ, բերեն ի տես։ Չեն բերում։ Մակարը գլխի է ընկնում, որ որդին այլևս չկա։ Վանքի գագաթից իրեն ցած է նետում ու մահանում։ Վանքը մնում է կիսատ և մինչև հիմա էլ կիսատ է։ Մակար վարպետին թաղում են նրա շինած վանքի պատի տակ, անունն էլ դնում Մակարավանք։

Բ

Այս վանքը կառուցող վարպետը ուխտ է անում՝ մինչև ամբողջ շենքը չվերջացնի, պատից ցած չիջնի։ Նրան օգնում է իր որդին, որը քարերը տաշելով՝ ուղարկում էր հորը։ Աշխատանքը դեռ չավարտած, վարպետի որդին հիվանդանում և մեռնում է։ Հարազատները որոշում են ծածուկ պահել որդու մահը։ Սակայն, վարպետը քարերի տաշվածքից հասկանում է, որ դա որդու աշխատանքը չէ։ Մտածելով, որ նրա հետ վատ բան է պատահել, իրեն ցած է նետում վանքի գմբեթից և տեղն ու տեղը ջարդ ու փշուր լինում։

Գ.

*Էս վանքը շինելիս հերը քարերն ա պատել (շարել), տղեն քարը կտրել, մերն էլ ուսով աղբրից ջուր ա կրել։ Քարը կտրելիս հանկարծ տղեն մահանում ա։ Հորը չեն ասում և նրա տեղակ ուրուշ մարդ ա սկսում քարը կտրիլը։ Հենց որ քարը պիրել են ու հերը պատի վրա յա դրել, տեսել ա, որ չի պռնում. իմացել ա, որ տղեն մահացել ա, ինքն իրան պատից քցել ա ցած։ Վանքն էլ էդպես մնացել ա կիսատ։*

### 645. ՍՐՎԵՂ

Գտնվում է Իջևանի Ուզունթալու գյուղում

*Ընկալաւ զայս անուն ի սրածութենէ, որով մեռան բազմաթիւ քրիստոնեայք ի գաղանաբարոյ ազգէն Ղեկաց ի մէջ մենաստանիս։*

### 646. ՍԱՆԱՀԻՆ

Գտնվում է Լոռում

Ա

*Սրա կառուցողները հայր ու որդի են եղել։ Հայրը պատերն է շարել, իսկ որդին՝ քար կտրել ու տաշել։ Վանքը չավարտած՝ որդին մեռնում է։ Առանց սկալաները քանդելու հայրը թողնում, հեռանում է։ Ժամանակ անց նա օտարության մեջ հանդիպում է մի շնողեցու և հայտնում վանքի սկալաները քանդելու գաղտնիքը։ Շնողեցին գալիս է Սանահին, վարպետի ասած ձևով քանդում վանքի սկալաները և մեծ փող ստանում դրա համար։*

Բ

*Զօրավար Լանկին Ջաղաթայ քակեալ զպարիսպ վանաց Սանահնի, եղև ձեռնամուխ աւերման և հոյակապ վանացն, որպէս և քակեաց զմասն ինչ ի գաւթէն, բայց զօրութիւն վերին խնամոց այնպէս յեղաշրջեաց զմիտս նորա, զի թողեալ զաւերումն վանաց զմիմեանս մաշեցին ի սուր սուսերի։*

### 647. ՀԱՂՊԱՏ

Գտնվում է Լոռում

*Մի իշխան վարպետ է կանչում, որ վանք կառուցի։ Վարպետը գալիս է Սանահին և սկսում աշխատել հարազատ որդու հետ։ Աշխատանքի ժա-*

*մանակ հոր, որդու ու մի ենթավարպետի միջև վեճ է ծագում։ Որդին զըժտըվում է հորից և ենթավարպետի հետ թողնելով շինարարությունը, հեռանում է։ Մի ուրիշ իշխան հրավիրում է սրան, որ գա իր համար վանք կառուցի։ Որդին ընդունում է հրավերը։ Երբ նոր վանքի պատերը բարձրանում են, Սանահնից նկատում են, որ դիմացը ինչ որ շենք է բարձրանում։ Բանվորներն այդ մասին հայտնում են իրենց վարպետին։ Կիրակի օրը, երբ բոլորը հանգստանում էին, վարպետ հայրը գալիս է որդու մոտ, մոտենում կիսակառույց վանքի պատերին և երկար զննում է։ Բոլորը լուռ սպասում են վարպետի գնահատականին։ Վերջապես հայր վարպետը ոտքը դնելով վանքի պատերից մեկին, ասում է. Հա՛խ պատ է (իսկական, ամուր պատ է)։ Այս ասելով, վարպետը փաթաթվում է որդուն, համբուրվում նրա հետ և հաշտվում։ Այդ օրվանից վանքի անունը մնում է Հաղպատ։*

### 648. ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ

Գտնվում է Լոռու Արդվի գյուղից դեպի արևելք

*Լեզգիները կոտորում են այս վանքում ապաստան գտած գյուղացիներից շատերին, որոնց արյունը առվի նման դուրս է հոսում վանքի միջից և ներկում շրջապատը։ Դրա համար էլ վանքը ստանում է Կարմիր վանք անունը։*

### 649. ԱՂԱՎՆԱՏՈՒՆ

Գտնվում է Լոռում

*Հարուստ իշխանազնը հավանելով այս վայրին, որոշում է մի գեղեցիկ շենք կառուցել անտառի բացատում։ Այդ նպատակով նա շատ վարպետներ ու բանվորներ է վարձում, որոնք անմիջապես գործի են անցնում։ Ժամանակ անց, իշխանազնը այցելության է գալիս շինարարության վայրը և տեսնելով, որ գործը ահագին առաջ է գնացել, կարգադրում է ճաշ տալ վարպետներին ու բանվորներին։ Մի ծերունի վառում է օջախը և պղինձը դնում կրակին։ Քարաժայռի մոտ գտնվող Շահմար օձը, նկատելով, որ իր տիրապետության սահմաններում մարդիկ են հայտնվել, հրամայում է իր օձերից մեկին՝ թույն թափել կաթսայի մեջ։ Եռացող ջրի գոլորշին շշմեցնում է օձին, և նա գլխապտույտ լինելով ընկնում է կաթսայի*

*մեջ։ Կեսօրին շենքի վրա աշխատող մարդիկ գալիս են ճաշելու։ Ծերունին կավե ամանների մեջ լցրած ճաշը ուզում է բաժանել բանվորներին։ Հենց այդ ժամանակ հայտնվում է մի սպիտակ աղավնի և թևով ուժեղ հարվածում ծերունու ձեռքին։ Կավե ամանը ընկնում և փշուր-փշուր է լինում։ Ծերունին մի նոր աման է վերցնում։ Աղավնին այս անգամ աղիողորմ ծղրտոցով նետվում է կաթսայի մեջ։ Թափում են ճաշը և ամեն ինչ պարզ է դառնում։ Աղավնուն շուքով թաղում են նույն տեղում, վրան մատուռ կառուցում և անունը դնում Աղավնատուն։*

### 650. ՀՌՈՄՈՑ ՎԱՆՔ

Գտնվում է Շիրակում

*Միաբանք սորա էին ի կրօնաւորացն հայոց, որք փախեան յաշխարհէն հոռոմոց սակս հալածանաց յունաց և Ռոմանոս կայսեր։ Վասն այսորիկ կոչեցաւ Հոռոմոսին կամ Հոռոմոց վանք։*

### 651. ՇՈՒՇԱՆԱ ՎԱՆՔ

Գտնվում է Արշարունիքում, Ախուրյան գետի աջ ափին

*Բագարանցի Տիկին Շուշանը ուզում է ներկա գտնվել քաղաքից մի փոքր հեռու Սուրբ Թեոդորոսի վանքում կատարվող պատարագին։ Մինչև նա զարդարվում է, պատարագն ավարտվում է։ Դրա համար էլ նա իր ծախսով Բագարանին մոտ մի ուրիշ եկեղեցի է կառուցել տալիս, որը նրա անունով կոչվում է Շուշանա վանք։*

### 652. ՀՈՎՎԻ ԵԿԵՂԵՑԻ

Գտնվում է Անի քաղաքում, պարիսպներից դուրս

*Անեցի հովիվը մի կիրակի օր հանդից տուն գալով, իր ընտանիքի անդամներին գտնում է շատ սրտնեղած ու տխուր։ Պարզվում է, որ նրանք այդ օրը հագնելով իրենց ունեցած տոնական համեստ շորերը, ուզեցել են գնալ քաղաքի արքայական տաճարը, բայց նրանց, իբրև հասարակ մարդկանց, ներս չեն թողել։ Հովիվը նույն օրը որոշում է սեփական խնայողություններով մի առանձին եկեղեցի կառուցել իր ընտանիքի համար։ Անցնում է որոշ ժամանակ և Անիի պարիսպներից դուրս բարձրանում է մատուռանման մի փոքրիկ շենք, որն իր գեղեցկությամբ չի զիջում քաղաքի բոլոր մյուս տաճարներին և հայտնի է Հովվի եկեղեցի անունով։*

## 653. ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՆ

Գտնվում է Մակու քաղաքում

*Մակվի հայերը մի ժամանակ ապրելիս են լինում քաղաքի Թուրքական թաղամասում, այստեղ էր նաև նրանց Սուրբ Վարդան անունով եկեղեցին։ Երբ մակվեցիք հաստատվում են «մահլում», այստեղ իրենց համար նոր եկեղեցի են կառուցում նույն անունով։ Վարդան զորավարը մեկին երազում ասում է. «Դուք ինձ թողիք անօրի (անօրեն) ձեռք, ես էլ պտի շուխը դնեմ վարեմ ձեր տուն ու տեղը»։ Ասում են, թե այդ անեծքն է եղել պատճառը, որ կոտորածների ժամանակ Մակուի հայկական թաղամասը ամբողջապես ոչնչացվել է։*

## 654. ՍՈՒՐԲ ԱՍՏՎԱԾԱԾԻՆ

Գտնվում է Ալաշկերտի Խաստուր գյուղի ճյուսխում

*Վայրի ոչխարները ամեն տարի եկել են այստեղ և ինքնակամ մատաղվել եկեղեցու շեմին։ Ի հիշատակ այդ հրաշքի՝ գյուղացիները նրանց եղջյուրները շարել են եկեղեցու որմին։ Մի օր այդ եղջյուրներից մեկին մի թռչուն է թառում։ Գյուղում գտնվող ենիչերիների պետը հրացանն ուղղում է թռչունին։ Գնդակն արձակելուն պես ենիչերին գետին է տապալվում և սկսում է թավալվել փրփուրների մեջ։*

## 655. ՍՈՒՐԲ ԿԻՐԱԿՈՍ

Գտնվում է Ալաշկերտի գերեզմանատան մոտ

*Սրան ժամանակին ինքնահոժար ծառայել է մի արջ։ Երբ վանքում հաց էր թխվում, արջը տաք-տաք հասցնում էր հարևան Սուրբ Վարդեներ վանքի միաբաններին, որոնք տարվա մեծ մասը գտնվելով ձյան կույտերի մեջ, առանց այդ օգնության սովահար կարող էին լինել։*

## 656. ԼՈՒՍԱՎՈՐԻՉ

Գտնվում է Կարնո Մոստուրկան գյուղի մոտ

*Յորժամ Տրդատ առաքեաց զԼուսաւորիչն ընկենուլ ի խոր վիրապն յԱրտաշատ, ի ճանապարհորդութեան յայնմիկ, գիշեր մի անդ օթևանս կալաւ։*

## 657. ՉԻՖԹԵ ՄԻՆԱՐԵ ԿԱՄ ՁՈՒՅԳ ՄԶԿԻԹՆԵՐ

Գտնվում է Կարին քաղաքում

*Զմին ի սոցանէ շինեաց ճարտարապետն, իսկ զմիւսն աշակերտն՝ որ լաւագոյն դատեցաւ։ Յորմէ զայրացեալ ճարտարապետին, ի վայր էարկ զինքն առ մախանաց։ Այլ աշակերտին ցաւեալ ընդ մահ նորին, ինքն ևս անձամբ զանձն էարկ վերուստ ի վայր։ Յորէ տաղտկացեալ, ասեն, բնակչացն սակս այսպիսի արեանհեղութեանց ի սկզբան անդ շինութեան, ի բաց թողին, լքին յերեսաց։*

## 658. ՎԱՐԴԱՆ ԶՈՐԱՎԱՐ

Գտնվում է Խոյից ճարավ, Ղոթուր գետի մոտ,
Կարմիր սարի գագաթին

*Վարդան զորավարը պարսիկների գլխավորին հալածել է մինչև մոտակա բլուրները։ Նրա հետապնդումից ազատվելու համար պարսիկը պատսպարվել է քարաժայռերի ետևում։ Վարդանը նետերով ծակոտել է քարերը և սպանել նրան։ Այստեղ էլ հենց, Կարմիր սարի գագաթին, թըշնամու հետ կռվելիս, նահատակվել է Վարդանը։ Նրա անունով մատուռը կոչվել է Վարդան զորավարի մատուռ։*

## 659. ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏ

Գտնվում է Երզնկայի Յալանգպաղ գյուղի մոտ

*Երբ սուրբ Կարապետի մարմինը ջրու վրա դրած Կեսարիայից բերում են Հայաստան, ջրին հանկարծ շեղվում է ճանապարհից ու անհայտանում։ Երկար փնտրելուց հետո նրան գտնում են բերդ շալակին։ Ջրու գտնված տեղում վանք են կառուցում և անունը դնում Միավոր սուրբ Կարապետ։*

## 660. ՍՈԽԱԿԵՐԱՑ ՎԱՆՔ

Գտնվում է Սվազի կենտրոնում

*Այստեղ ապրել են ճգնավորներ, որոնք ամբողջ տարին միայն սոխ ու հաց են կերել։ Դրա համար էլ վանքի անունը դրել են Սոխակերաց։*

## 661. ԼՈՒՍԱՎՈՐԻՉ

Գտնվում է Սվազում

*Կառուցվել է Լուսավորչի Սեբաստիա գալու օրերին։ Տաճիկների բռնիշխանության ժամանակ, երբ այստեղ պատարագ են անելիս լինում, մի մոլլա մտնելով եկեղեցին, բարձրանում է սեղանը և հայտարարում, որ այլևս քրիստոնյաները գործ չունեն այստեղ, քանի որ եկեղեցին մզկիթի է վերածվել։*

## 662. ՀԱՅԿԱՎԱՆՔ

Գտնվում է Վանում, Այգեստան տանող ճանապարհի սկզբին

*Այստեղ ավվանել (օթեվանե՞լ) է Հայկ նահապետը և դրա համար տեղի եկեղեցին նրա անունով կոչվել է Հայկավանք։*

## 663. ՔՈՇԱՀԱՆ Ս. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ

Գտնվում է Վանում, Այգեստանից դեպի հարավ

*Գյուղի հովիվը դաշտում ոչխարն արածացնելիս, տեսել է, որ քոշը (խոյ) քրքրում է գետինը և եղջյուրներով խփում ինչ որ բանի։ Մոտիկ գնալով նա մի գիրք է գտնում, փաթաթված գույնզգույն թաշկինակներով։ Հովիվն այդ գիրքը հանձնում է գյուղի եկեղեցուն և եկեղեցին այդ օրվանից կոչվում է Քոշահան Սուրբ Աստվածածին, մեծ հռչակ հանելով շրջակայքում։*

## 664. ԿՌՆԿԱՆ ՎԱՆՔ

Գտնվում է Վանից հարավ, Սվրստան գյուղի մոտ

**Ա**

*Մի անգամ վանքի հնձվորներից մեկը մանգաղով վիրավորում է կռունկի ոտը և բռնելով նրան, տալիս վանահորը։ Վանահայրը հանդիմանում է հնձվորին և բժշկելով կռունկի ոտը, բաց է թողնում։ Ժամանակ անց, երբ նույն վանահայրը ուզում է պատարագ անել, տեսնում է, որ գինին վերջացել է։ Մոլորված չի իմանում ինչ անի։ Հանկարծ երևում է նույն կռունկը խաղողի ողկույզը կտցին։ Վանահայրը վերցնում է խաղողը, ճմլում և պատարագ անում։ Դրանից հետո վանքի անունը դնում են Կռնկան վանք։*

Բ

Երբ դաշտում մեծ կաթսայով կերակուր էր պատրաստվում վանքի հնձվորների համար, հանկարծ մի կռունկ բարձր կանչելով սկսում է պտտվել կաթսայի վերևում և իրեն նետում է նրա մեջ։ Երբ կռունկին հանում են, կաթսայի մեջ մի ահագին օձ են տեսնում։ Գլխի են ընկնում, թե ինչու էր կռունկը նետել իրեն կաթսայի մեջ։ Դրա համար էլ վանքի հին անունը (Տովահայաց ս. Աստվածածին) փոխելով, կոչում են Կռնկան վանք։

## 665. ԿՏՈՒՑ ԱՆԱՊԱՏԸ

Գտնվում է Վան քաղաքից դեպի հյուսիս-արևմուտք, Կտուց կղզու վրա

Ասում են, որ սրա հիմնադիրը եղել է Գրիգոր Լուսավորիչը։ Հռոմից վերադառնալիս նա իր հետ բերում է Կենաց փայտի մի մաս և յոթ սրբերի նշխարներ։ Հասնելով այս կղզին նա մի ձայն է լսում, որն ասում է. «Մեզ այստեղ ամփոփեցեք»։ Լուսավորիչը հնազանդվում է այդ կոչին և նշխարները տեղավորելով յոթ առանձին տեղերում, նրանց վրա նույնքան եկեղեցիներ է շինում և իր աշակերտներից մեկին այնտեղ առաջնորդ է կարգում։ Կամաց-կամաց այստեղ հավաքվում են 500 միաբաններ։ Մի օր նրանցից երեքը հիվանդանում ու մեռնում են։ Սպասավորները գալով մեռած միաբանների մոտ, տեսնում են, որ նրանց վրա կուտուց (մի խումբ) հրեշտակներ են իջել։ Սպասավորները սկսում են ձայնել մեկ-մեկու. «Կուտուց հրեշտակներ են իջել, կուտուց հրեշտակներ...»։ Դրանից հետո անապատը կոչվում է Կտուց։

## 666. ՀՈԳՈՑ ՎԱՆՔ

Գտնվում է Անձևացյաց երկրում

Ա

Այս վանքը կառուցելիս մոտակա քարայրի դևերը շարունակ խանգարել են շինարարությանը։ Տիրամայրը երևացել է բանվորներին և ասել. Մի օրվա մեջ շինեցեք և օծեցեք վանքը, որպեսզի դևերը չկարողանան խանգարել։ Այդպես էլ անում են։ Դևերը հալածվելով փախչում են, բացի մեկից, որը կոտրելով ոտը, չի կարողանում վազել։ Խոստանում է մինչև վերջ հավատարմությամբ ծառայել վանքին, թոնրի մոխիրը տանել, թա-

*փել Փրե-Բաթմա գետը: Կաղ դևի խնդիրը հարգվում է, և այն օրվանից Հոգոց վանքի թոնիրներում երբեք մոխիր չի մնում...:*

Բ

*Հոգվոց վանքի մոտ, Կուզրութա բուն կոչված այրում բնակվում է Կուզրութ անունով մի դև: Ասում են, թե երբ Լուսավորիչը հալածել է այստեղի դևերին, զիջել է սրան, պայմանով, որ նա վանքի թոնիրների մոխիրը տանի Թափի գետը (Տիգրիս): Ասում են նաև, որ վանքի տնտեսուհին ամեն օր մի գունդ խմոր է դրել թոնրի ակի մեջ, Կուզրութ դևին բաժին:*

Գ

Գտնվում է Վասպուրականում

*Հոգոց վանքի շինարարության ժամանակ մի արջ ծառայել է վանքին, օրական երկու անգամ անտառից փայտ բերելով: Երբ նա սատկել է, թաղել են Սուրբ Հովհաննես մատուռի մոտ: Շատերը ուխտ են գնում արջի գերեզմանին:*

## 667. ԱՆԳՂԱ ՎԱՆՔ

Գտնվում է Վասպուրականի Արտամետ գյուղի հարավ-արևելյան կողմում, Սաչան ջրվեժի մոտ

*Ասում են, թե երբ մի գիշեր Թադեոս առաքյալը աղոթելիս է լինում, նրան հանկարծ երևում է Աստվածածինը որդին գրկին և պատվիրում է՝ խորտակել դևերի կուռքերը և տեղը տաճար կառուցել: Թադեոս առաքյալը կատարում է Աստվածածնի պատվերը, սակայն, երբ նա սկսում է շինել տաճարը, դևերը գիշերով գալիս և քանդում են այն, քարերը Սաչան գետը նետելով: Երկար ժամանակ շարունակվում է այս բանը, երբ մի անգամ Թադեոս առաքյալին նորից է երևում Աստվածածինը, և ասում. Մի խաչ օծիր, յուղի շիշը դիր վրան և դու կտեսնես աստծու հրաշալիքը:*

*Առաքյալը կատարում է Աստվածածնի պատվերը և տաճարի շինությունն անխափան է մնում, իսկ քարերը քանդող դևերն էլ սև ագռավներ են դառնում: Առաքյալի հրամանով նույն պահին գալիս են անգղների երամները և կտուցով ագռավներին նետում են Սաչան գետը:*

*Ասում են նաև, թե երբ դևերն իրենց սովորականի համաձայն քանդելու են գալիս տաճարի քարերը, նրանց ետևից հասնում են անգղ թռչունի*

*կերպարանքով հրեշտակները, իսկ դևերը սև ագռավների կերպարանք առնելով և նրանց առջևից փախչելով գնում լցվում են ծովը, աղաղակելով. «Սա չէ, ա՜յն, սա չէ, ա՜յն», որից և կազմվել է Սաչան գետի անունը։*

### 668. ԱՆԳՂԱ ՎԱՆՔ

Գտնվում է Վասպուրականի Անգղ գյուղի մոտ

*Մի խումբ ճգնավորներ այստեղ ժամանակին սկսում են վանք կառուցել։ Սակայն, նրանց ցերեկվա կառուցածը գիշերը քանդում են չարքերը։ Այսպես կրկնվում է երեք օր։ Ճգնավորները հուսահատվելով, թողնում են և հեռանում։ Ճանապարհին նրանց հանդիպում է հրեղեն նժույգով Սուրբ Գևորգը և առաջարկում է վերադառնալ ու շարունակել վանքի կառուցումը։ Այդպես էլ անում են։ Չարքերն այլևս չեն համարձակվում մոտենալ և վանքը մեկ օրվա մեջ ավարտվում ու օծվում է։*

### 669. ԷՋՄԻԱԾԻՆ

Գտնվում է Վասպուրականում, դեպի Կտուց և Լիմ անապատները տանող ճանապարհին

*Այստեղ ժամանակին անապատականների ճգնատեղի է եղել։ Նրանց վրա մի անգամ երկնային լույս է իջել, որից հետո ճգնատեղու անունը դրել են էջմիածին։*

### 670. ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՆ

Գտնվում է Հայոց ձորի Առեղ գյուղի մոտ

*Ավանդությունն ասում է, թե այս վանքի մեջ, մի անծանոթ անկյունում, թաղված է Վարդան զորավարի գլուխը, որի համար և վանքը կոչվում է Սուրբ Վարդանի վանք։*

### 671. ՏԻՐԱՄՈՐ ՎԱՆՔ

Գտնվում է Թիմարի շրջանի Համանուն գյուղում

*Այս վանքի տեղում առաջ եղել է Շիրաք, Զիրաք և Միրաք չաստվածների կռատունը։ Ներսես Մեծը կործանել է այն և տեղը ուրկանոց է հիմնել, անվանելով Տիրամոր վանք։*

## 672. ՍԻՎՏԿՈՒ ՎԱՆՔ

Գտնվում է Վասպուրականի Թիմարի շրջանում, պատմական Կյուանենց գյուղում

*Ասում են, թե երբ Լենկ-Թեմուրը հարձակվում է այս վանքի վրա, նրա սևամորթ զինվորներից մեկը կացինը ձեռքին փորձում է խորտակել վանքի դուռը, բայց առաջին իսկ հարվածն իջեցնելիս նրա սև գույնն անմիջապես սպիտակում է։ Սարսափելով այդ հրաշքից, Լենկ-Թեմուրն այլևս ձեռք չի տալիս վանքին և հավաքելով իր զինվորներին հեռանում է։ Այդ օրվանից էլ վանքը կոչվում է Սիվտկու (սպիտակի) վանք։*

## 673. ԼՈՒՍԱԱՂԲՅՈՒՐ ՍՈՒՐԲ ՍԱՀԱԿ

Գտնվում է Վասպուրականի Ռշտունյաց գավառում, Գանձակ գյուղի մոտ

*Սահակս այս էր ճգնաւոր ոմն ի միաբանից Կարմրակայ վանաց. և աղօթատեղի ընտրեալ նորա աստ մինչդեռ անշէն էր վայրս, գայր անտի երբեմն աստ աղօթել. և քանզի ինքն միականի էր, խնդրէր ի տիրամօրէն առնուլ զլոյս և զմիւսոյ ականն. «Միայն զի տեսից զքեզ»—ասէ մի անգամ։ Եւ ըստ անձուկ փափաքանացն տեսեալ զտիրամայրն, խաւարեալ ակնն լուսաւորի և լուսաւորն խաւարի։ Եւ անտի և այսր ուխտատեղի է ամենայն աչացաւաց։*

## 674. ՄԵԾՈՓԱ ՎԱՆՔ

Գտնվում է Արճեշի դաշտի հյուսիսային կողմում

*Լենկթիմուրա, ասեն, բազում մենաստանս կործանեալ և կողոպտեալ, իբրև մերձեցաւ ի սա՝ կոչեաց առ ինքն զվանահայր ուխտին զայրն ճգնազգեաց և առաքինի, թերևս զի զանձս առեալ ի նմանէ, մեկնեսցի ի տեղւոջէն։ Իբրև եկն առ նա վանահայրն միայնակ, տեսիլ այնպէս երևեցաւ բռնաւորին՝ եթէ բիւրաւորք ի զօրաց շուրջ պատեալ են զնովաւ, եհարց ցնա, թէ՝ Առ իմէ՞ իցեն զօրքդ ընդ քեզ, ոչ ապաքէն միայնակ գալ հրամայեցի քեզ։ Իսկ առաքինի այրն քանզի չտեսանէր զոք ընդ իւր, շփոթեալ յայսկոյս, յայնկոյս հայէր, թէ զորոց արդեօք զօրաց ասիցէ։ Իմացեալ բռնաւորին, եթէ ձեռն Տեառն է ընդ նմա, խաղաղութեամբ*

*արձակեաց զնա՝ անվնաս թողեալ զվանսն։ Եւ զի որդի նորա հիւանդու-թեամբ մերձեալ ի դրունս մահու՝ բժշկեցաւ յաղօթից նորա, հրաշացեալ մեծապէս՝ ի յիշատակ սքանչելեացն պարգևէ մենաստանին զգրչեալ մատեանսն, զորս կողոպտեալ էր յայլոց վանաց, բեռինս 65, յորոց արդ երկու հատորք մնացեալ են՝ Ճառընտիր մի և Սարգիս։*

## 675. ԱՄԵՆԱՓՐԿԻՉ

Գտնվում է Մոկսում

### Ա

*Ի բանակիլ Լէնկ-Թիմուրա յայսմ վայրի, բնակիչք երկրին յորդոր-մամբ առաջնորդի վանացս զաւուրս երիս կերակրեցին զզօրս նորին։ Փոխարէն այնմ Լէնկ-Թիմուր խոստացաւ առաջնորդի վանացս տալ զոր ինչ և խնդրեսցէ։ Իսկ առաջնորդին զայս միայն խնդրել ի նմանէ. շնոր-հել նման զայնչափ գերիս ի հայոց, որչափ ինչ մարթ էր հաւաքիլ յեկե-ղեցի մենաստանիս։ Եւ հաւաքեցան ի նմա սքանչելեօք 70 հազար գե-րիք, զոր ոչ կարէր տանիլ։ Իսկ ի տրտնջել վասն այսր զօրացն բռնաւո-րին, հրաման ետ երթալ առնուլ զնոսա։ Բայց սքանչելիք տեառն պահեալ զնոսա, ոչ ոք ի զօրաց կարաց երբէք գտանել կամ տեսանել զմենաս-տանն, վասն այնորիկ կոչեցաւ ապա մենաստան Ամենափրկիչ։*

### Բ

*Լենկթամուր քյանդըլով չյարգըլով էկավ միր Մուկաց էրկիր. էկավ մե գեղ ըմ, էնու անոր նստավ, անուն Աղին ըր։*

*Աշտըճանա քյահանեն կինաց, էնու աղաչանք, ասաց... Քենե կը-խնդրիմ, ինձի մե փուքրիկ եկեղեցիմ կա, բյախշիս Աստըծուն, ընձի։*

*Լենկթամուր ըսաց. Քեշիշ, տյու էդ ինչխ մարդ իս, եիս Թիլվիսու ընչանք Հյուրըսաղեմ, Հյուրըսաղմա հընչանք ըստը ժյամ ըմ քյանդի, հիչ մարդ իմ դեմ չ'էկավ խընդըրվիլու խամար, տյու էդ ինչխ մարդ իս, որ տյու քյու եկեղեցու խամար կխնդըրվիս։ Քյու եկեղեցին բյաշխիմ քիզ, մեկ ժյում խաց տը կերցըցիս իմ կուշումին, իմ եխսըներուն։*

*Տերտեր ըսաց. Լենկթամուր սաղ ըլնը, որ տյու իմ եկեղեցին ընձը բեաշխիս, մեկ ժյում չէ, իրիք ժյում քի խաց կ'կերցըցիմ։*

*Ասաց. Բեաշխիր իմ, կընա խացը պատրաստութին տիս։*

*Տերտեր կնաց մեկ ոխչար բիրիլ էտու գինիլ ավից. մեկ էլ մե կոզով խաց էնիլ ավից, տարավ Աղինա գեաշտը, Լենկթամուրի դեմ։*

*Լենկթամուր տեսավ. էս ինչխ բեանը, էս տասը մարդ անչախ տըսնա. դքի կը գինիմ։*

*Քահանեն ըսաց. Լենկթամուր փաշեն սաղ ըլնը, մեկ քյու ոխչրին, քյու կուշումին սաս չերկ նստին, սեղան եխս բեաց էնիմ, խաց քցիմ պատրաստուխին տեսնամ, էնունք թուղ ուտին։*

*Լենկթամուր կանչից, չերկ նստան։*

*Տերտեր զսեղան պատրաստից, կերակուր լցրից, դեարձավ դեմ աղոթրանը, խաչակնքից զսեղան։*

*Աստվածուխին ուր սուփ շնորք մեջ լցրից, իրիք օր իրիք գիշեր կերան խման, չիմացան էն սեղան յա խաց ա կերած, յա չկերած։*

*Լենկթամուր փաշեն ըսաց. Քեշիշ, քյու մուրազ ինչ ի, որ քյու մուրազ կատարիմ, տյու լավուխին էրիր իմ խիտ։*

*Տերտեր ըսաց. Լենկթամուր փաշեն սաղ ըլնը, քենե կխնդրվիմ մեկ փոքրիկ եկեղեցիմ՝ ունիմ՝ էնով մեկ ոխչր ընձը բեաշխիս։*

*Ոխչրնիր էլան կյացին։*

*Թիլվիսու քյաղքեն ընչանք Հյուրըսաղեմ, Հյուրըսաղմա ընչանք Մուկաց էրկիր, Լենկթամուր ընչանք ոխչրը բռնի, բիրադի կյացին էն փուքրիկ եկեղեցին. էրթացող էլավ ճանճ ըմ, կպավ էնու պատիր, էնու ուճուռք (առաստաղ)։ Ինչքան ոխչիր կար, բիրադի (բոլորը) կնացին, բիրադի ժեամ լիք չլցվավ։*

*Տերտեր աչքից տեսավ, որ ութ մարդու տեղ պակաս ա։ Գնաց խնդրվավ Լենկթամուր փաշին, ըսաց. Ոխս քի խիտ բարիշիր իմ, եկեղըցով մեկ, ութ մարդ պակաս ը մնացիր։*

*Լենկթամուր ըսաց. Ջանմ, եխս հիմ թագավորական խուսք չիմ կուտըր. ութ մարդ բռնիր իմ իմ ձեռաց հեռչիվ, վաճառական մարդ ին, որ ինչ թյուխյունչի իմ շինի, որ ինչ կահվաչի իմ շինի։ Ասաց, այ, ութ մարդ, իլիցեք տյուք էլ կյացեք. մեկ քիչ ժամանակ մնացեք էնդեխ, իս կկյամ՝ որ պետքական մարդ ի, կվիրուցինք ձիկ, որ չէ, կթողնինք քեշըշին։*

*Էլան էն ութ մարդ էլ կյացին էնդեխ։*

*Էն եկեղեցին էլավ ու հըրթիկ, ու տեռո, էլավ մե կտուր քյար։*

*Լենկթամուր ըսաց. էրթամ տեսնամ էս ինչխ եկեղեցի ը, որ էսքան մարդ տարավ։*

*Գնաց տեսավ ոչ եկեղեցի կա, ոչ բեան. քա՚ընեն կայնիր աղոթք կենը։*

*Լենկթամուր փաշեն ըսաց. Քեշիշ, հյուր ի քյու եկեղեցին, ինչ իմ մարդ բերիր իս մեջ։*

*Քահանեն լաց էլավ, ըսաց. Լենկթամուր փաշեն սաղ ըլնը, ինչանք հիմի ձը եկեղեցի կար, հիմի էլավ մե կտուր քեար։*

*Լենկթամուր վախացավ, ըսաց. Ըստուց փախնիմ, թե չէ վնաս կըտեսնամ։*

*Էլավ կնաց ուր ասքեար առից, փախավ։*

*Գնացին խասան Եղերովա սար (ձմեռ էնդեղ փիս թիփի կըլնը). քարե կարկուտ թափավ էնունց վրա, բիրադի սպանից, մեկ լե չպրծավ։*

*Սելավ զէնունք տարավ կուրցրուց մեր էրկրից։*

*Նյուր էն քահանեն աղոթք էրավ, եկեղեցու տյուռ բացվավ, էն եխսըրնիր ազատվան։*

*Էն եկեղեցու անուն հիշացին սուրբ Ամենափրկիչ, էնդուր համար, որ ամեն լե ազատից։*

## 676. ՓՈՒԹԿՈՒ ՍՈՒՐԲ ԳԵՎՈՐԳ

Գտնվում է Մոկսից հյուսիս, Արտևանի լեռան վրա

Ա

*Հայ գյուղացին քուրդ հովվին մի կտոր հող է նվիրում։ Քուրդը ընտանիք կազմելով, կամաց-կամաց հավաքում է գլխին իր բարեկամներին ու ցեղակիցներին, որոնք սկսում են նեղել հայերին։ Հայերն ստիպված գաղթում են ուրիշ տեղ։ Գյուղում մնացած ժամկոչին սբ. Գևորգը երազում պատվիրում է վերցնել եկեղեցու սեղանի տակ փորված մասունքով պուտուկը և հեռանալ գյուղից։ Ժամկոչը հանում է պուտուկը և շալակելով գալիս է Մոկս։ Մոկսի կառավարիչ Միր Հասանը տեսնելով, որ ժամկոչի մեջքից լույս է ճառագում, կանչել է տալիս իր մոտ։ Ժամկոչը փախչում է դեպի Եղերով լեռը։ Երբ Միր Հասանի մարդիկ հասնում են նրա ետևից, ժամկոչը պուտուկը դնելով մի քարի, կանգ է առնում։ Քարը պատռվում է, ընդունում պուտուկը և նորից փակվում։ Ժամկոչի և ուրիշ քրիստոնյաների ջանքերով, այդ տեղում մի եկեղեցի է շինվում, որի անունը դնում են Փութկի (պուտուկի) Սուրբ Գևորգ։*

Բ

*Վանքի ոչխարների հոտը և տավարի նախիրը պահպանում են գայլերը, իսկ վանահայրը մի աքաղաղ է, որը և վարում է տնտեսությունը։ Առանց այդ աքաղաղի կանչի վանքում իջևանող կարավանը երբեք ճանապարհ չի ընկնի։ Երբ վախճանվում է աքաղաղը, ժողովուրդը նրա փոխարեն վանահայր է կարգում մի բարեպաշտ մարդու երազում եկած արժանավոր աքաղաղին։*

### 677. ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՈՍ

Գտնվում է Սպարկերտի Կոտենց գյուղում

*Երբ Քրիստոս գալիս է այս կողմերը՝ տղամարդիկ նրան դիմավորում են ձեռներին վարդ ու ռեհան, իսկ կանայք էլ՝ երեխաները գրկած։ Մի կին էլ, որ երեխա չուներ, գետնից քար է վերցնում և թևի վրա դրած գնում է Քրիստոսին ընդառաջ։ Քրիստոսի հրամանով քարը երեխա է դառնում։ Երեխայի անունը Ստեփանոս են դնում, որը մեծանալով մարգարե է դառնում։*

### 678. ՍՈՒՐԲ ՍԱՀԱԿ

Գտնվում է Տարոնի Աշտիշատ գյուղում

*Զսորայ եկեղեցին և զմենասատան քակեաց Լենկ-Թէմուրն առ ի շինել ի քարանց նոտի զքայքայեալ կամուրջն Եփրատայ. որոյ զզօրս իւր ի Սուրբ Սահակայ մինչ ի կամուրջն, որ հեռի է իբրև երկու ժամաւ՝ կարգաւ դասաւորեալ մի զկնի միոյ, այնպէս կրել ետ ասեն զքարինս ի գեղջէն մինչ ի յԵփրատ՝ ձեռաց ի ձեռս տալով։*

### 679. ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏ

Գտնվում է Մշո դաշտի Շմլակ գյուղում

*Երբ Գրիգոր Լուսավորիչը Սուրբ Կարապետի մարմինը ջորու վրա բարձած բերում է Մշո դաշտի Քարկե (Բաղմա) լեռը, ջորին ճանապարհին մի տեղ չոքում է։ Ջորու չոքած տեղում Լուսավորիչը սկսում է վանք կառուցել։ Նրա ցերեկվա շինածը գիշերը քանդում են դևերը։ Լուսավորիչը բռնում է դևերին և լցնում վանքի գնդանը։ Մի կաղ դև խնդրում է*

ազատել իրեն ընդանից, խոստանալով մինչև աշխարհի վերջը մաքրել վանքի փռան մոխիրը։ Լուսավորիչը կատարում է կաղ դևի խնդիրքը, և մինչև հիմա էլ նա մաքրելով վանքի մոխիրը, թափում է Բաթման գետը։

### 680. ԱԿՌԱ ՎԱՆՔ

Գտնվում է Մշո դաշտում

Հլո անունով մի գյուղացի ունենում է Գելո անունով մի շուն։ Սա մի անգամ կծում է տիրոջը։ Տերը մանգաղով խփում է շանը և երկու ատամը հանում բերանից։ Բայց հետո զղջում է և հանած ատամները թաղում է բլրի վրա՝ սալաքարերի տակ։ Երբ Գելոն սատկում է, նրան թաղում է ատամներից քիչ հեռու՝ մի փոսի մեջ։ Ժամանակ անց նաև մեռնում է Հլոն։ Նրա թոռը՝ 10 տարեկան մի աղջիկ երազում տեսնում է սուրբ Կարապետին, որը նրան ասում է, թե իմ ատամներս թաղված են ձեր բլուրներից մեկի վրա գտնվող սալաքարերի տակ։ Եթե այնտեղ վանք չշինեք, ձեր գյուղից երաշտն ու սովը անպակաս կլինեն։ Աղջիկը երազը պատմում է մորը, մայրը՝ սկեսրոջը, սկեսարը՝ գզրին, գզիրը՝ ռեսին, ռեսը՝ տերտերին, տերտերը՝ վարդապետին։ Հավաքվում են բոլորը, նաև ուրիշ շատերը, գնում բլուրը, աղջկա ցույց տվածով գտնում ատամները և դրանց տեղում վանք կառուցում։ Վանքը շինվում է սալաքարերի վրա և այդ օրվանից գյուղը կոչվում է Ակռա-վանք։

Վանքի մեջ հաստատվում են վարդապետներ, եպիսկոպոսներ։ Դառնում է ուխտատեղի։

Մի ծերունի՝ Մրգե անունով, ասում է, որ վանքի տեղում թաղվածը ոչ թե սուրբ Կարապետի, այլ Գելոյի ատամներն են։ Հոգևորականները և ժողովուրդը, երբ լսում են, թոկը գցում են ծերունի Մրգեի վիզը և խեղդելով թաղում են Գելոյի կողքին։

Անցնում են տարիներ։ Ակռա-վանքի գյուղացիք բերք չեն ստանում, սովամահ են լինում։ Միայն Մրգեի տղաների արտերն են ազատվում երաշտից և բերք տալիս։ Գյուղացիք հավաքվում են Մրգեի տանը, հետաքրքրվում, թե ինչու իրենց արտերը բերք չեն տալիս, իսկ նրանցը տալիս են։ Մրգեի մեծ տղան՝ Գրսպեն պատասխանում է՝ թե որովհետև դուք շան ատամները սուրբ էք դարձրել և պաշտում էք, իսկ մենք՝ ոչ։ Եթե չեք հավատում, գնացեք հանեցեք Գելոյին, վերցրեք վանքում ոսկյա տուփի մեջ պահվող ատամները և չափեցեք, կտեսնեք, որ դրանք Գելոյի ատամներն են։ Գյուղացիները կատարում են այդ խորհուրդը և տեսնում,

*որ Գըսպեի ասածը ճիշտ է։ Վարդապետներին ու եպիսկոպոսներին ծեծելով դուրս են անում վանքից և վանքն էլ քանդում են։*

### 681. ՍՈՒՐԲ ՆՇԱՆ

Գտնվում է Դերսիմի Աղտատ գյուղի արևելյան կողմում

*Տրդատ թագավորը անձամբ հսկել է այս վանքի կառուցմանը, իսկ Գրիգոր Լուսավորիչն էլ պատարագել է Աստվածածնա խորանում։*

### 682. ՇՆՈՐՀԱԼՈՒ ՄԱՏՈՒՌ

Գտնվում է Ակնի շրջանի Կարուչլա գյուղի մոտ

*Ասում են, թե խուլերը բժշկվելու համար դիմել են սրան, անխոս ու բոկոտն քայլելով ժամ ու կես։ Նրանք մեջքերին մի քար առած, երեք անգամ շրջել են մատուռի բոլորը, հետո էլ մի փոքր քար հետները, տուն վերադարձել։ Մի քանի օր այդ քարը ականջներին պահելուց հետո, նրանք նորից այն երկյուղածությամբ վերադարձրել են Շնորհալու ուխտատեղին։*

### 683. ՍՈՒՐԲ ՀԱԿՈԲ

Գտնվում է Ակն քաղաքի մոտ, Տափակ ձոր կոչված վայրում

*Թուրքերը գրավելով այս վանքը, ուզում են արևելյան դուռը դարձնել դեպի հարավ։ Ինչքան չարչարվում են, չեն կարողանում. դուռը միշտ մնում է իր տեղում և բացվում դեպի արևելք։*

### 684. ԱՐԱԿԱ ՎԱՆՔԸ

Գտնվում է Ակնի շրջանում, Արակա գյուղի վերևում,
մի լայնատարած ճարթավայրի մեջ

*Ասում են, թե երբ Նարեկա վանքի կրոնավորները Սենեքերիմ թագավորի հետ այս կողմերն են փոխադրվում, իրենց հետ բերում են նաև Գրիգոր Նարեկացու մարմինը։ Այստեղ նրանք մենաստան և եկեղեցի են շինում և մեջը ամփոփում Նարեկացու մարմինը՝ հատուկ դամբարանի մեջ։ Մենաստանը և մոտակա գյուղը դրանից հետո կոչվում են Նարեկա, որը աղավաղվելով դառնում է Արակա։*

## 685. ԴԵՎՈՑԱ ԿԱՄ ՏԵՎՔՍԵ ՎԱՆՔ

Գտնվում է Սեբաստիայի հարավ-արևելյան կողմում

*Ասում են, թե այս վանքի տեղում առաջ դևեր են բնակվել. հետագայում դևերը հալածվել են և կառուցվել է Սուրբ Գևորգի վանքը։ Այդ պատճառով էլ վանքը կոչվել է Դևոցա կամ Տեվքսե վանք։*

## 686. ՃԿՈՒՅԹ ՎԱՆՔ

Գտնվում է Սասնո Փսանաց գավառում

*Գյուղի ռեսը ստիպում է վանահորը, որ գնա Քաղքիկի անտառից փայտ բերի։ Վանահայրը անիծում է ռեսին, որ նրա տանը ոչ մի էգ չծնի, ինքն էլ փախչում է օտար աշխարհ։ Ռեսի կինն ու անասունները չեն ծնում։ Ցանված արտերը չեն ծլում։ Ռեսը զղջում է իր արածի համար և գնում է փնտրելու վանահորը։ Հասնելով Երուսաղեմ նա իմանում է, որ վանահայրը մահացել է։ Ռեսին խորհուրդ են տալիս գնալ Հռոմ, Պետրոս առաքյալից թողություն խնդրելու։ Հռոմում նրան վանքի լուսարար են նշանակում, խաղողի չորացած մի տունկ տալիս և ասում, եթե տունկը կանաչի, դու կներվես։ Անցնում է երկար ժամանակ, ռեսը երազում տեսնում է, որ Պետրոս առաքյալն իր ճկույթը տալիս է նրան, որ ատամներով կտրի և վերցնի։ Լուսարարն այդպես էլ անում է։ Ապա Պետրոս առաքյալը հայտնում է, որ երբ նա հասնի Գոմք, այնտեղ, որտեղ ջորին երրորդ անգամ ծունկը գետին տա, մի վանք շինի Ճկույթ վանք անունով։ Վանահայրը կատարում է առաքյալի պատվերը։ Նրա շինած վանքի անունը դնում են Ճկույթ վանք։*

## 687. ՍՈՒՐԲ ԱՂԲՐԻԿ

Գտնվում է Սասունում

*Հայերն այս վանքի խաչը լվանում էին ջրի մեջ և ջուրն անասուններին խմեցնելով կամ նրանց վրա թափելով բուժում։ Երբ մի անգամ հիվանդություն է ընկնում քոչվոր քրդերի անասունների մեջ, մի քուրդ գնում է Սուրբ Աղբերիկ և վանահորը խնդրում, որ խաչը տա, իրենց անասուններին փրկելու համար։ Վանահայրը գաղտնի հանում է շղարշից խաչը և փոխարենը բողկի ճյուղերով խաչ շինելով, տալիս է քրդին*

ու ասում. «Շղարշը չբանաս, աշխարանցում կլինի»։ Քուրդն այդպես էլ անում է և նրա անասունները բուժվում են։ Նա նորից գալիս է Սուրբ Աղբերիկ և խաչը հանձնում վանահորը։ Քրդի գնալուց հետո վանահայրը բաց է անում շղարշը և տեսնում, որ բողկի ճյուղերը դարձել են իսկական խաչ։ Դրանից հետո այդ հրաշագործ խաչը կոչվում է Բողկի խաչ։

### 688. ԲԱՐՁՐԱՀԱՅԱՑ ՎԱՆՔ

Գտնվում է Տոփնում, Դիարբեքիրից հյուսիս, Արղանա գետի ափին

Երբ Թադեոս առաքյալը սկսում է այստեղ վանքի հիմք դնել, հաջորդ օրը տեսնում է, որ բահերն ու բրիչներն անհայտացել են։ Նույնը կրկնվում է և մյուս օրերին։ Երկինք նայելով Առաքյալը գոչում է. Տե՛ր, մի՞թե չես ուզում, որ քո անունով ուխտատեղի շինվի։ Հողմի հետ երկնքից մի մեղմ ձայն է գալիս . «Թադե՛, Թադե՛, բարձրահայաց»։ Առաքյալը ավելի վեր բարձրանալով, տեսնում է, որ բոլոր գործիքներն այնտեղ են. այդ տեղում էլ նա շինել է տալիս վանքը, անունը դնելով Բարձրահայաց։

### 689. ԱՐՔԱԿԱՂԻՆ

Գտնվում է Կիլիկիայում

Զայս մենաստան ասացին լինել մենաստան նախնեաց ի ժամանակս Ռուբինեանց, որ յառաջագոյն ծածկեալ գոլով յանտառախիտ կաղնի ծառոց, Արքակաղնի անուանեալ։

### 690. ԳԱՅԼՈՒ ՎԱՆՔ

Գտնվում է Կիլիկիայում, Սիս քաղաքի մոտ

Եղեալ է երբեմն, որ վասն սրբութեան վանացն առաջնորդին կամ միաբանիցս, որ գայլն արածեալ զոչխարսն, վասն այնր կոչի Գայլ վանք։

### 691. ԳԵՄՈՒՉԳԵՐԻ ՎԱՆՔԸ

Գտնվում է Կիլիկիայի Մանազ քաղաքի արևմտյան ձորափին

Այս ձորի միջով անցնում է սառն և մաքուր ջրով Լամբրոն գետակը, որի մեջ լողանում են բազմաթիվ կարմիր թեփուրներով ձկներ։ Ասում են, թե վանքն իր անունը ստացել է կարմիր ձկներից (Կարմիր ձկներ= Գեմուձգեր)։

### 692. ՍՈՒՐԲ ԳԵՎՈՐԳ

Գտնվում է Կիլիկիայի Արամո գյուղի հյուսիսային կողմում

Ա

*Երբ այստեղ արարողություն է կատարվել, շատերը եկեղեցու հյուսիսային պատին տեսել են ձիու վրա նստած սուրբ Գևորգի ստվերը: Ասում են, թե մինչև արարողությունը չի վերջացել, ստվերը չի անհայտացել:*

Բ

Գտնվում է Ղզլարում

*Իշխան ոմն ունելով առ ինքն զմասն նշխարաց սրբոյն Գէորգեայ, անցանէ ընդ այս գետ (Թերեք) և իջեալ զօվանայ ընդ հովանեաւ միոյ խնձորենւոյ, ուր հանեալ ի պարանոցէ զսրբազան մասն կախէ զծառոյն և անդ իջևանի ի նոյն գիշեր: Իսկ ընդ արշալոյսն աճապարեալ նորա ի գնալ մոռանայ բառնալ զայն: Յետ ոչ սակաւ միջոցի զգայ զկորուստն մեծ. աճապարէ ի գիւտ կորուսելոյն, սակայն անձեռնհաս գտեալ՝ վերադառնայ տրտմութեամբ: Ի վերջոյ յետ քանի ինչ ամաց, տեսիլ երևի ուրումն կնոջ, որ հրաւիրի յուխտագրութիւն ի նոյն տեղի, և կինն այն աճապարեալ ի ձեռն բարեկամաց, գնայ ի նշանակեալ տեղին, և առ նոյն խնձորենեաւ կատարէ զուխտ իւր, որ և առ ժամայն սրբեալ գլխովին՝ վերադառնայ ի տուն իւր: Ուստի յօրէ յայնմանէ հռչակի հարկանի ամենայն ուրեք և մեծանայ անուն ուխտատեղւոյն:*

### 693. ՍՈՒՐԲ ՀԱԿՈԲ

Գտնվում է Երուսաղեմում

*Սալահադդին Սուլթանը Երուսաղեմ մտնելիս տեսնելով այս բարձր ու հոյակապ տաճարը, որն իր փառավորությամբ գերազանցում էր այստեղի բոլոր շենքերին, կարծում է, թե դա Օմարի մզկիթն է և երկրպագում է նրան: Սուլթանին հայտնում են, որ դա Հայոց Սուրբ Հակոբի վանքն է: Սալահադդինը զայրանալով, որ ինքը երկրպագել է հայոց վանքին, հրամայում է կործանել այն: Հայերը, մեծ ու փոքր, կին ու երեխա լալով ու աղաչելով ընկնում են Սալահադդինի ոտքերը և հայցում նրա գութը: Սուլթանը սրտաշարժվում է, ինքն էլ լաց լինում և կարգա-*

դրում է ձեռք չտալ հայոց վանքին։ Նրա այդ հրամանը արաբերեն լեզվով արձանագրված է տաճարի դռան վրա։

# ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐ

## 694. ՎԱՐԴԻԿԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Օշականի ձորում, Դառաքավոր կոչված քարայրի տակ

Ա

Երբ լազգիքը գալիս հասնում են Աշտարակ, էստեղի մարդիկ փախչում, մտնում են Դառաքավորը։ Դառաքավորը շատ մեծ ղաղա (քարայր) ա, կտանի իրեք-չորս հազար հոգի։ Տասնհինգ-քսան օր էդտեղ մնալուց ետը (հետո), աշտարակցիք տեսնում են, որ իրենց իքանիքը (այգիներ) չորանալու են։ Դրանց միջիցը մի մարդ ասում ա. Ինձ վեր բերեք, գնամ տենամ մեր իքանիքը ինչ էլան։ Իջնելու ժամանակը լազգիքը ձորի էն էրեսիցը նետ ու աղեղով տալիս են, դրան սպանում։ Մի էրկու-իրեք օր մնալուց ետը, էդ մարդի կնիկն ասում ա. Ախր իմ մարդը գնաց ինչ էլավ. ինձ վեր բերեք, գնամ իմ մարդին տենամ։ Կնկանը ճախարակով վեր են բերում։ Կնիկը վեր ա գալիս, տենում ա մարդը սպանված ա։ Հանում ա նրա թուրը, խրում ա իրա գոտիկը։ Էդ ժամանակ գալիս են լազգիքը, բռնում դրան ու շատ նեղություն տալի։ Ասում են. Արի էթանք մեր թագավորի կողքը, թագավորը մի կտոր ոսկի կտա քեզ, մենակ թե դու էդ ղաղի մարդկանցն ասա, թող վեր գան։ Շատ չարչարելուց ետը, էդ կնիկն ասում ա. էկեք էթանք ասեմ, թող վեր գան։ Գալիս ա հասնում Դառաքավորի տակը, ձեն տալիս, ասում.

Ա՜յ ձորի մարդիկ,
Անունըս Վարդիկ.
Ինձ տեսեք, ձեզ լացեք,
Տեղներդ պի՛նդ կացեք...

Լազգիքը հասկանում են կնգա խոսքի միտքը, թուրը խրում են սիրտը, տեղն ու տեղը սպանում։ Մի քանի օր ետը թողում են, գնում։ Աշտարակցիք Դառաքավորիցը վեր են գալի, տենում են, որ՝ համ մարդն ա մեռած, համ էլ կնիկը։ Էդ ձորի միջին, էրերի (այրեր) տակ տեղ են

*քանդում ու էրկուսին էլ թաղում։ Մինչև հիմի էլ էդ մարդ ու կնկա գերեզմանը էն էրերի տակին ա։*

բ

*Ձորն Օշականայ լի է անմատչելի անձաւօք և քարայրիւք, ընդ երկուս կողմանս գետոյն, ուր ամրանան բնակիչք նորա՝ յաւուրս խռովութեանց։ Պատմի, թէ ի հին աւուրս ինչ կալեալ զօրաց թշնամեաց զմի ի գիւղականացն Օշականայ, չարաչարս տանջէին մատնել զտեղի թաքստի նոցա։ Իսկ այրն առաքինի՝ փոխանակ մատնելոյ զնոսա, կամ խաբէութեամբ արտաքս յամուր տեղեացն հանելոյ, բան զայս առեալ ի բերան, և կեղծելով զհաճոյս կամաց թշնամեացն կատարել, ի ձայն բարձր աղաղակեաց առ նոսա.*

*Օշակնա՛յ մարդիկ,*
*Անունս է Վարդիկ.*
*Ինձ տեսէք,*
*Ձեզ լացէք,*
*Ուր որ կէք՝ ամո՛ւր կացէք։*

*Զոր թարգմանութեամբ հասկացեալ զօրավարի նոցա՝ եա, ասեն, մահու սպանանել զայրն հայրէնասէր, որ միով արեամբ իւրով գնեաց զարին և զգերութիւն բազմաց։*

### 695. ՅՈԹ ԵՂԲՈՐ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Օշականի մոտակայքում, մի Խարխառու բլրի վրա

*Հայրն իր յոթ որդիներից մեկին ուղարկում է այգի քաղված խաղողը հսկելու։ Որդին գնում է և այլևս չի վերադառնում։ Ուղարկում է երկրորդին։ Սա ևս չի վերադառնում։ Նույն կերպ գնում են նաև մյուսները, և ոչ մեկը չի վերադառնում։ Ի վերջո գնում է ինքը՝ հայրը, որին նույն ճակատագիրն է վիճակվում։ Թե՛ յոթ եղբայրները և թե՛ նրանց հայրը մեկ-մեկ մորթվում են ավազակների կողմից։ Դրանից հետո այդ վայրը կոչվում է Յոթ եղբոր գերեզման։*

### 696. ԻՆՔՆԱՍՊԱՆ ՎԱՐՊԵՏԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղի եկեղեցու պատի տակ

*Եղվարդի եկեղեցին կառուցող վարպետը համոզվելով, որ աշակերտը գերազանցում է իրեն, սրտնեղվում է և գմբեթի վերջին քարը տեղավորե-*

լուց հետո, պատից ցած է նետվում ու տեղն ու տեղը ջախջախվում։ Տեղացիք ինքնասպան վարպետին թաղում են նրա կառուցած եկեղեցու պատի տակ և վրան մի մեծ գերեզմանաքար դնում։

### 697. ՇԱՌՈՅԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Եղեգնաձորի շրջանի Ազատեկ գյուղի հին գերեզմանոցում

Ազատեկ գյուղը հիմնել են մշեցի Շառոն և սալմաստեցի Ճանոն։ Մի անգամ սրանց մեջ մեծ վեճ է ծագում։ Հողաբաժանման ժամանակ Շառոն շառով է տալիս Ճանոյին և մովրովների ձեռքը գցելով նրան, ծեծել տալիս ու տիրանում գյուղի հողերի մեծ մասին։ Շառ անելու համար նրա անունը դնում են Շառո, իսկ մեռնելուց հետո էլ գերեզմանին մի մեծ քար քաշում, որպեսզի տակից դուրս չգա և ուրիշին շառով չտա։

### 698. ՃԳՆԱՎՈՐԱՑ ՇԱՆ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Հին Նախիջևանի Խաչափարախ գյուղի մոտ

Երեք սրբեր Լենկ-Թեմուրի ասպատակներից հալածվելով, թողնում են իրենց ճգնարանը և թաքնվում մի քարայրում։ Ճգնարանում մնում է միայն նրանց արդար շունը, որը սպանվելով թաղվում է նույն վայրում։ Շան վերքից թափված արյունից նրա գերեզմանին գոյանում է մի փշենի, որը ուխտատեղի է դառնում։

### 699. ԱԶՆԱՎՈՒՐՆԵՐԻ ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐ

Գտնվում են Փոքր-Մասսի զագաթին

Այստեղ կան ազնավուրների (հսկաների) գերեզմաններ և ուղտերի քարացած քարավան։ Ուղտապանի մի ձեռքին գտնվում է առաջնորդող ուղտի սանձը, մյուսում՝ գավազանը։

### 700. ԴԱՎԻԹ-ԲԵԿԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Ղափանի Հալիձոր գյուղի եկեղեցու գավթում

Երբ Դավիթ-բեկը հիվանդանում ու մեռնում է, Տաթևի վանքից հատուկ նրա համար գալիս է ծերունի Հովակիմ եպիսկոպոսը (Պապ կոչված) և մեծ հանդիսով թաղում նրան Հալիձորի եկեղեցու գավթում։ Ասում են,

*թե Դավիթ-բեկի գերեզմանաքարին միայն մի ծաղիկ կա քանդակված և այն էլ երեսով դեպի հողը, որպեսզի թշնամիները չկարողանան ճանաչել և ոսկորները հանել։*

### 701. ՇՈՒՆ-ՖՐԱՆԳՅՈՒԼԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Ղափանում

*Մելիք-Ֆրանգյուլը, որ հայտնի է Շուն-Ֆրանգյուլ անունով, իբրև ուրացող ու դավաճան, մահվանից հետո թաղվում է հասարակաց գերեզմանոցից հեռու, առանձին։ Անցորդները մինչև այսօր էլ իրենց պարտքն են համարում մոտենալ նրա գերեզմանին և թքել վրան։*

### 702. ԱՆԶՆԱԶՈՀ ԵՂԲԱՅՐՆԵՐԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Գորիսի շրջանի Քարահունջ գյուղի եկեղեցու դռանը

*Նախիջևանի խանի զինվորները երկու խմբի բաժանված հարձակվում են Քարաշեն և Քարահունջ գյուղերի վրա։ Քարաշենը շուտով անձնատուր է լինում։ Ասպատակողները թալանում են գյուղը և գերի են տանում երիտասարդներին։ Քարահունջը պաշտպանվում է. գյուղացիք ապաստանում են եկեղեցում և սեղանի վեմ քարով ծածկում են դուռը։ Խանի զինվորները փորձում են քանդել եկեղեցին, բայց չեն կարողանում։ Բերում են դաշտում բռնված երկու քարահունջեցի եղբայրների, որոնց հայրը նույնպես գտնվում էր եկեղեցում, և ստիպում են նրանց աղաչել իրենց հորը, որպեսզի նա բաց անի եկեղեցու դուռը, խոստանալով խնայել թե եղբայրների և թե նրանց հոր կյանքը։ Եղբայրները թուրքերեն լեզվով աղաչում են հորը բաց անել դուռը, իսկ հայերեն՝ հակառակն են պնդում։ Տեսնելով, որ եկեղեցու դուռը չի բացվում, խանի հրոսակները իրենց սրերը դնում են եղբայրների վզին և կանչում են նրանց հորը, որ ազատի զավակներին։ Սակայն, հայրը էլի չի բացում եկեղեցու դուռը և արցունքներ թափելով, զոհաբերում է հարազատ զավակներին։*

### 703. ԱԳՌԱՎԱԽԱՉ

Գտնվում է Տաթև գյուղից ճյուսխ-արևելք

*Ծիծեռնավանքը կառուցող բանվորներին կերակուր եփելու համար մի մեծ կաթսա են տանում մոտակա գետը և ջրով լցնելով դնում են*

*կրակի վրա։ Ջրի հետ մի օձ է ընկնում կաթսայի մեջ և մնում աննկատելի։ Երբ գալիս է ճաշելու ժամը, մի ագռավ կռկռալով սկսում է պտտվել կաթսայի վրա։ Բանվորները ուշադրություն չեն դարձնում և նստում են ճաշի։ Հանկարծ ագռավը ծղրտալով նետվում է կաթսայի մեջ։ Պղծված համարելով կերակուրը, բանվորները թափում են այն։ Մեծ է լինում նրանց զարմանքն ու հիացումը, երբ կերակրի մեջ նկատում են օձի մարմնի մասերը։ Նրանք երախտագիտությամբ պատանքում են ագռավի մարմինը և հանդեսով թաղում վանքի արևմտյան պատի մոտ, վրան էլ խաչի նման մի մեծ քար կանգնեցնում, որը կոչվում է Ագռավախաչ։*

### 704. ԵԶԱՆ ՈՒԽՏԱՏԵՂԻ ԿԱՄ ՕՔՑՈՒԶ ԶԻԱՐԱԹ

Գտնվում է Տաթևի վանքի հանդիպակաց լեռնաշղթայի վրա

*Այստեղ թաղված է մի եզ, որն առանց մարդու ճիպոտի, մոտակա քարհանքից ահագին քանակությամբ քար է կրել Տաթևի վանքը շինելու համար։*

### 705. ԴՈՇՈՒՆ-ԴԱՇ

Գտնվում են Սիսիանի Ղարաքիլիսա գյուղի մոտ

*Այս քարակույտերի տակ թաղված են զորավարների, իսկ ուղղահայաց քարերի տակ զինվորների դիակները։ Դրա համար էլ այդ գերեզմանները կոչվում են Ղոշուն-Դաշ (Զորքի քար)։*

### 706. ԵՐԵՔԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Սիսիանի Անգեղակոթ գյուղում

*Այս գերեզմանը պատկանում է մի թագավորի, նրա հարսին ու քավորին, որոնք սպանվել են հարսին փախցնելու եկած անօրենների կողմից։*

### 707. ԱՂՈՒԴԻԻ ՄԱՀԱՐՁԱՆԸ

Գտնվում է Սիսիանի Աղուդի գյուղի մոտ

*Պատմում են, որ ժամանակին պարսից մարզպանը իր մոտ է կանչում Սյունյաց երեք իշխանների, որպեսզի ձերբակալի նրանց։ Կռահելով*

*մարզպանի միտքը, իշխանները չեն ներկայանում։ Պարսից մարզպանը մեծ զորքով հասնում է Աղուդի։ Հայերը հաղթում են, բայց կռվի դաշտում ընկնում են Սյունյաց երեք քաջ իշխանները։ Նրանց հիշատակը հավերժացնելու համար աղուդցիները մի դամբարան են կառուցում, ուր ամփոփում են զոհված իշխանների աճյունները, իսկ դամբարանի վրա էլ կանգնեցնում են աշտարականման մի գեղեցիկ մահարձան։*

## 708. ԱՐՋԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղում, Պտկաբերկ հինավուրց եկեղեցու մոտ

*Այս եկեղեցին կառուցելիս մի արջ շարունակ քար է կրել շրջակայքից։ Շինարարությունն ավարտելու համար վերջում պակասել է մի մեծ քար ևս։ Երկար որոնելուց հետո արջը գտել է քարը և շալակած բերել։ Նա օգնել է վարպետին քարը տեղը դնելու, և երբ ամեն ինչ ավարտվել է, փռել է շունչը։ Վարպետը արջի մարմինը մեծ հոգատարությամբ թաղել է եկեղեցու մոտ և վրան քարեր դարսել։ Արջի գերեզմանի վրա ուխտավորները մոմ են վառում և մատաղ անում։*

## 709. ԱԳՌԱՎԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ ԿԱՄ ԼՈՒՍԱՎՈՐՉԻ ԱԳՌԱՎԸ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանի
Նինկի գյուղի մոտ

*Մի հետի (անգամ) ժողովուրթը հըվաքվալ ա Լուսավերիչա սուրբը, վեր մատաղ անի։ Մատաղը վեր մորթըմ ըն, ղըզղանը (կաթսա) տնում ըն կրակին։ Ղըզղանը կրակին տրած վախտը, օխծը (օձ) մննում ա մաշը։ Մին քաշ (ագռավ) տեսնըմ ա, կյամ ա, ղըզղանի յրա սկսում կըռկըռալ։ Ժողովուրթը հիշքան խըռեկ ա տամ (վռնդել), քյնում չի, էլի յա շոռ տամ, կըռկըռում։ Վեր շատ զոռ են անում, ուրան թխում ա (նետում) ղըզղանի մաշը։ Կըզնըրվում ըն (բարկանալ), ղըզղանը թափում, տեսնըմ հինչ. մաշին մին օխծը։ Էտ վախտը քաշը ըտե թաղում ըն, յրան մին սև քար քցում, վեր էտքան ժողովուրթին ըզատում ա։ Էտ քարը էնա մհենդչ էլ (այժմ էլ) կա։*

## 710. ԲԱՐՍՈՒՄ ԳՅՈՒՂԻ ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐԸ

Գտնվում են Արցախի Փառխուս գավառում, Շամքոր գետակի ձախ ափին

*Ասում են, թե լեզգիների դեմ մղված կռիվների ժամանակ նահատակված հայերին թաղել են Բարսում գյուղի գերեզմանատանը, դրա համար էլ այնքան բազմաթիվ են այստեղի գերեզմանները։*

## 711. ՓԱՇԱՅԻ ԱՂՋԿԱ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Մարտակերտի շրջանի Մաթրավանդ գյուղի գերեզմանոցում

*Այստեղ թաղված է տեղի փաշայի միանձար աղջիկը։ Երբ փաշան մեռնում է, աղջիկը չի ուզում ամուսնանալ, որպեսզի հոր ունեցվածքն ուրիշին չանցնի։ Մեռնելիս էլ նա պատվիրում է իր գերեզմանին ֆալուսանման մի քար դնել, ի նշան այն բանի, որ ինքը տղամարդուց կարոտ է մնացել։*

## 712. ԱՂԻ ՆԱՀԱՏԱԿ

Գտնվում է Շուշի բերդաքաղաքի դիմաց, Քառասնից կոչված գյուղի եկեղեցու մոտ

*Էր ծառայ ուրումն տաճկի, և նա բռնադատեալ է դարձուցանել զնա յօրէնս Մահմետի։ Յոչ յանձն առնուլ ծառային, չարաչար խոշտանգանօք նահատակի ի սմին տեղւոջ, ուստի անուանի Աղի նահատակ, այսինքն՝ նահատակեալ յաղայէ իւրմէ։*

## 713. ՍՈՒՐԲ ՍԱՐԻԲԵԿ

Գտնվում է Ստեփանակերտի շրջանի Դաշուշեն գյուղի մոտ

*Ղարաբաղի խանի մոտ ծառայելիս է լինում Սարիբեկ անունով մի հայ մարդ։ Երբ խանը պատրաստվում է կոտորելու Շուշվա գյուղերի հայերին, Սարիբեկն ասում է, որ հայերը նրան ոչ մի վատ բան չեն արել։ Խանը սաստում է Սարիբեկին։ Սա գաղտնի լուր է տալիս գյուղացիներին, զինում նրանց և անցնելով գյուղական զորքի գլուխը, կռվում է խանի զինվորների դեմ և զոհվում պատերազմի դաշտում։ Սարիբեկի գերեզմանը սրբավայր է համարվում։*

### 714. ՋՈՒԽՏԱԿ ԽԱՉ

Գտնվում է Ստեփանակերտի շրջանի Խանցք գյուղի մոտ

*Լենկ-Թեմուրը մեծ զորքով հարձակվում է այս գյուղի վրա։ Ժողովուրդը դուրս է գալիս նրա դեմ։ Երկու եղբայրներ երկար դիմադրում են թշնամուն։ Վիրավոր և արնաքամ վիճակում էլ նրանք շարունակում են կռվել, մինչև որ սպանվում են։ Եղբայրներին գյուղացիները թաղում են նրանց ընկած տեղում և վրաները երկու խաչ տնկում։ Այդ գերեզմանը ուխտատեղի է և կոչվում է Ջուխտակ խաչ։*

### 715. ԱՂՋԻԿ-ՏՂԻ ՔԱՐ

Գտնվում է Նոր-Բայազետից դեպի հյուսիս,
Աղկալա գյուղի ճանապարհի եզրին

Ա

*Մի աղքատ ու գեղեցիկ երիտասարդ սիրահարվել է քահանայի աղջկա վրա. սա էլ իր հերթին սիրել է երիտասարդին։ Քահանան մտածել է ազատվել երիտասարդից։ Կանչելով նրան իր մոտ նա ասել է. Աղջիկս կտամ, եթե դու մի օրում մենակ կարողանաս քաղել իմ մեծ արտը։ Երիտասարդը գիշերը սրում է գերանդին և լուսաբացին սկսում է երգելով քաղել արտը։ Երեկոյան դեմ, երբ շատ քիչ է մնում քաղը վերջացնելուն, քահանան դիմում է նոր խորամանկության։ Նա տղայի մոտ ուղարկում է մի պառավի, որը նրան ասում է. Իզուր ես տանջվում. քահանան սպանեց իր աղջկան, որ քեզ չտա։ Լսելով այդ բոթը, տղան հանկարծամահ է լինում։ Քահանայի աղջկան լուր են տանում, թե քո սիրած տղան չկարողանալով պահանջված ժամկետին հնձել արտը, ուժասպառ եղավ և մեռավ։ Քահանայի աղջիկը այդ լսելով նետվում է լիճը։ Զղջալով իր արածի համար, քահանան հանում է լճից խեղդված աղջկան և տղայի հետ թաղում միևնույն գերեզմանում, վրան էլ մի խաչքար դնում։ Նույն գիշերը գյուղացիներին երևում է ծերունու կերպարանքով սուրբ Նշանը և ասում. Ով հազի ցավ ունենա, թող գնա մեռած երիտասարդների գերեզմանը համբուրի, նրանց ողորմի տա, հազը կկտրվի։ Դրանից հետո այդ գերեզմանի անունը դնում են Խազախաչ (հազի խաչ) կամ՝ Աղջիկ-տղի քար։*

Բ

*Ժամանակին մի հարուստ մարդ է լինում, որն ունենում է մի գեղեցիկ աղջիկ։ Սրան սիրահարվում են երկու երիտասարդներ։ Երկուսն էլ*

*խնամախոս են ուղարկում աղջկա հոր մոտ։ Հայրն ասում է. Ես երկու հասած արտ ունեմ, երկուսն էլ նույն մեծության. ով որ շուտ հնձի, աղջիկս նրան կտամ։ Աղջկա սիրած տղան մինչև կեսօր քիչ է մնում, որ ավարտի գործը։ Հանկարծ նրա մոտ է գալիս մի ջադու (չար) պառավ և ասում. Խե՛ղճ տղա, դու դեռ չես պրծել քաղդ, իսկ հակառակորդդ արդեն վերջացրեց և աղջկանը տարավ։ Լսելով այդ լուրը, տղան հանկարծամահ է լինում։ Պառավը գնում է աղջկա մոտ և ասում. Անբա՛խտ աղջիկ, քեզ սիրող տղան այնքան աշխատեց, որ սիրտը պայթեց։ Լսելով այդ լուրը, աղջիկը ևս հանկարծամահ է լինում։ Երկուսին էլ միասին թաղում են նույն արտի ծայրին, մի բարձունքի վրա։ Նրանց գերեզմանը կոչվում է Աղջիկ-տղի քար։*

## 716. ՆՈՐԱԴՈՒԶԻ ԽԱՉՔԱՐԵՐԸ

Գտնվում են Նոր-Բայազետի շրջանի Նորադուզ գյուղում

*Ժամանակին թուրքերը հարձակվում են Գեղամ թագավորի վրա։ Շատ քիչ զինվորներ ունենալով, նա այս խաչքարերին զինվորի շորեր է հագցնել տալիս և ինքը իր փոքրիկ խմբով կանգնում է այդ քարերի առաջ։ Այս որ տեսնում են թուրքերը՝ կարծում են, թե բոլորը զորք է և փախուստի են դիմում։ Գեղամ թագավորն իր փոքրիկ խմբով ընկնում է նրանց ետևից ու բոլորին կոտորում։*

## 717. ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ ՄԱՏՈՒՌԸ

Գտնվում է Շամշադինի շրջանի Բերդ գյուղի անտառում, բլրի վրա

*Ասում են, թե Սարգիս անունով մի կտրիճ տղա է եղել. թշնամիների դեմ կռվելիս նա վիրավորվել է, վիրավոր վիճակում եկել է աղբյուրի մոտ, մի բրբյուն տեղ (ծառ չանող) նստել։ Սրա քույրը լսել է, որ եղբայրը վիրավորվել է, կաղալով (նա կաղ է եղել) եկել գտել է եղբորը։ Եղբայրը ջուր է խնդրել քրոջից. մինչև սա բերել է ջուրը, վիրավոր եղբայրը մեռել է։ Նրան թաղել են բլուրի վրա, գերեզմանին մատուռ կառուցել։ Այդ մատուռը ուխտատեղի է դարձել շրջակա բնակչության համար և հայտնի է Սուրբ Սարգիս անունով։*

## 718. ՅՈԹ ԵՂԲՈՐ ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐ

Գտնվում են Շամշադինի Նավուր գյուղի մոտ,
խաչբուլաղ աղբյուրի ճանապարհին

Այստեղ կողք-կողքի թաղված են յոթ հարազատ եղբայրներ, որոնցից վեցը սպանվել են լեզգիների դեմ կռվելիս, իսկ յոթերորդն էլ թշնամու ձեռքը չընկնելու համար ինքնասպան է եղել։ Տեղացիք Օխտն ախպեր են կոչում այս վայրը, ուր իրար մոտ շարված են յոթ գերեզմանաքարեր։

## 719. ՆԱՆԱՅԻ ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆ

Գտնվում է Շամշադինի Այգեձոր գյուղի մոտ

Լեզգիները Դաղստանից գալիս են Այգեձոր։ Սրա բնակիչները հավաքվում են գյուղի մոտ գտնվող բերդում։ Մելիք-Քալանթարը մի թուղթ է ուղարկում Գանձակի ռուս գեներալին, որպեսզի նա օգնության գա հայերին։ Մինչ այդ, երկու լեզգիներ պատգամավոր են գալիս Մելիք-Քալանթարի մոտ, պահանջելով անձնատուր լինել։ Մելիք-Քալանթարը 20 կոպեկանոցի չափ մի թուղթ է կպցնում ծառից և լեզգիների ներկայությամբ նշան է բռնում թղթին։ Նա երեք անգամ կրակում է հրացանից և երեք փամփուշտներն էլ դիպչում են նույն կետին։ Մելիք-Քալանթարը վերցնում է գնդակներով ծակծկված ծառի կտորը, տալիս է լեզգի պատգամավորներին, պատվիրում է հանձնել իրենց մեծավորին և ասել, որ հայերը քանի դեռ ողջ են, երբեք չեն ենթարկվի նրան։

Հետևյալ օրը ռուսները մի կողմից, հայերը մյուս կողմից պաշարում են լեզգիներին, բոլորին կոտորում իրենց առաջնորդ Նանայի հետ միասին։ Դրանից հետո այդ վայրի անունը կոչվում է Նանայի գերեզմանոց։

## 720. ՍՈՒՐԲ ԳԻՐԱԳԻ ԵՎ ԳԱՅԱՆԵԻ ԽԱՉԵՐԸ

Գտնվում են Իջևանի շրջանի Աչաջուր գյուղից 6—7 կմ դեպի
արևմուտք, Կեղատեղ կոչվող վայրում

Ժամանակին, երբ այլազգիները հարձակվում են Աչաջուր գյուղի վրա՝ թալանի ու կոտորածի համար, աչաջուրցիք մի մարդու պես ելնում են նրանց դեմ։ Կռվողներին առաջնորդում են քույր ու եղբայր՝ Գիրագն ու Գայանեն։ Շատերի հետ, կռվի մեջ, սպանվում են նաև նրանք։ Երբ թշնամին հեռանում է, ողջ մնացած գյուղացիք քրոջ ու եղբոր դիակները

*թաղում են նրանց ընկած բարձրունքներին և վրաները մատուռ-խաչքարեր կանգնեցնում, իսկ իրենք էլ, թշնամիների հետագա հարձակումներից ավելի լավ պաշտպանվելու համար, բնակություն են հաստատում հին գյուղից ոչ հեռու, սարերով շրջապատված մի տափարակում։ Ժամանակի ընթացքում Գիրագի և Գայանեի գերեզմանները սրբատեղի են դառնում աղաչուլցիների համար և կոչվում են Սուրբ Գիրագի և Սուրբ Գայանեի խաչեր։*

### 721. ԱԳՌԱՎԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Լոռում, Հաղբատաձոր կոչված վայրում

*Մի շոգ օր մշակները այստեղ հունձ են անելիս լինում։ Ճաշի ժամանակ նրանց համար թանե սպաս են բերում։ Դեռ հացի չնստած, օձն ընկնում է սպասի մեջ։ Մի ագռավ նկատելով այդ՝ զանազան ձայներ հանելով ուզում է մշակների ուշադրությունը հրավիրել օձի վրա։ Տեսնելով, որ նրանք գլխի չեն ընկնում, ագռավը իրեն նետում է սպասի մեջ և խեղդվում։ Ագռավին ճաշից հանելիս մշակները նկատում են օձին և նոր միայն հասկանում նրա անհանգստության պատճառը։ Ի նշան իրենց երախտագիտության՝ մշակները ագռավին թաղում են մոտակա գերեզմանատանը և վրան մի փոքրիկ տապան դնում, որը հայտնի է Ագռավի տապան անունով։*

### 722. ՀՈՒՅՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Լոռում

*Օհան Օձնեցին Հայաստանից հալածում է հույներին և գերի բռնում հունաց պատրիարքին, որը սպառնացել էր եռացրած ջրի մեջ ձգել նրան։ Մի կաթսա ջուր եռացնել տալուց հետո, Օձնեցին դիմելով պատրիարքին, ասում է. Սպառնացել էիր ինձ եռացրած ջրի մեջ ձգել. ես այդ քեզ չեմ անի, միայն այս խաչը ձգի ջրի մեջ և հանի։ Հունաց պատրիարքը վախենում է եռացրած ջրում այրել իր ձեռքը։ Օհան Օձնեցին խաչակնքում է ջուրը և խաչը ինքն է ձգում ջրի մեջ՝ և առանց վնասվելու հանում այնտեղից։ Հունաց պատրիարքը հետևելով Օձնեցու օրինակին, ձեռքը ջուրն է մտցնում, բայց իսկույն խաշվում է։ «Այդքանը քեզ բավական է իբրև*

պատիժ»,—ասում է Օձնեցին և ազատ է արձակում նրան։ Պատրիարքի հետ լինում է մի հույն վարդապետ։ Տեսնելով Օձնեցու կատարած հրաշքը, նա թողնում է պատրիարքին և գալիս է Օձնեցու հետ ճգնելու։ Օձնեցու վանքի մոտ հունարեն տապանագրով մի գերեզմանաքար կա. տեղացիների ասելով այդտեղ թաղված է Օձնեցու վանքում ճգնող հույն վարդապետը։

### 723. ԵԼԻ ԳԼՈՒԽ

Գտնվում է Լոռում, Հաղբատի վանքի ճանապարհին

Լանկ-Թամուր յԱղտալայէն ճանապարհաւն խրամաձորի դիմեաց աւերել զՀաղբատ, և պահնակք կալեալ զկիրճս ուղւոյն յետս դարձուցին դատարկաձեռն։ Ի ստորոտս քարագլխոյն առաջի աւերակ դղեկին առ ճանապարհաւն տեսանին գերեզմանք նահատակելոցն ի զօրաց Լանկ-Թէմուրի։ Դաշտավայրն գերեզմանատան անուանի Ել ի գլուխ, վասն դժուարութեամբ ելիցն ի ձորէն ի դաշտս Հաղբատայ։

### 724. ԴՈՇՈՒՆ-ԴԱՇ

Գտնվում է Շիրակի Ղարաքիլիսա գյուղից ոչ հեռու

Այստեղ հնում ապրել են աժեղ և ուժեղ հսկաներ։ Երբ նրանք մեռել են, նրանց թաղել են և վրաները քարեր դրել։ Քարակույտերի տակ ամփոփված են զորավարների, իսկ կանգնած քարերի տակ՝ զինվորների դիակները։ Տեղացիները այդ գերեզմաններին Ջորքի-քար (Դոշուն-դաշ) են ասում։

### 725. ՄԱՐԶՊԵՏՈՒՆՈՒ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Շիրակի Բագրան գյուղի միջնաբերդի հինավուրց մատուռում

Ասում են, թե այս մատուռի մեջ թաղվածը ոչ թե սուրբ Գևորգն է, այլ Գևորգ Մարզպետունի զորավարը։ Նրա գերեզմանը ուխտատեղի է, ուր ամեն տարի սեպտեմբեր ամսին մեծ բազմություն է հավաքվում։

## 726. ԱԶՆԱՎՈՒՐԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Մակուի Սանգյառ գյուղի մոտ

### Ա

*Ազնավուրի (հսկա) մայրը իր երեխային արևից պաշտպանելու համար՝ երկու հսկայական քարակտորներ է մոտեցրել իրար և ստվեր արել նրան։ Մինչև հիմա էլ այդ քարերը կանգուն են և հեռվից երևում են անցորդներին։ Տեղացիները դրանց Ազնավուրի քարեր կամ Ազնավուրի գերեզման են ասում։*

### Բ

Գտնվում է Մանազկերտի Բոստան-խայա գյուղի մոտ

*Ազնավուր անունով մի հսկա հեռու տեղերից փախցնում և իրենց գյուղն է բերում գեղեցկուհի Շիրինին, որի սիրտը գրավելու համար նա կատարում է Շիրինի առաջարկած բոլոր դժվար գործերը։ Վերջին անգամ Շիրինն ուղարկում է Ազնավուրին Սիփանա սարի վրա աճող դեղերից մի աման հարիսա բերելու։ Ազնավուրը գնում է, մոռանալով փակել իր ապարանքի դռները։ Նրա բացակայության ժամանակ գալիս է Շիրինի իսկական սիրածը (Ղոփո) և փախցնում նրան։ Իմանալով կատարվածի մասին, Ազնավուրը հիասթափվում է Շիրինից և բահով ինքնասպան է լինում։ Գյուղի երիտասարդները թաղում են նրան և գերեզմանի վրա մի հսկայական քար են դնում։*

## 727. ՍՈՒՐԲ ՍԱՐԳՍԻ ՈՒԽՏԱՏԵՂԻՆ

Գտնվում է Ալաշկերտի բերդի հարավ-արևմտյան կողմում

*Ավանդությունն ասում է, թե երբ ժամանակին Ալաշկերտի բերդը պաշարվում է մի բռնավորի կողմից, Սարգիս անունով զորավարը ինքնակամ անձնատուր է լինում թշնամուն, որպեսզի փրկի բերդի ժողովրդին։ Բայց երբ թշնամին չարաչար տանջում է Սարգսին, բերդի ժողովուրդն այդ տեսնելով, ուժեղ դիմադրություն է ցույց տալիս և վանում թշնամուն։ Ասում են նաև, թե Սարգիսը եղել է ս. Սուքիասանց ընկերներից մեկը, որն իր ընկերների նահատակության ժամանակ խույս է տվել և թշնամին վրա հասնելով, սպանել է նրան այս վայրում։*

### 728. ՍԵԲԵԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Կամախի մոտ, Սեպուհ լեռան գագաթին

*Այս գերեզմանից ժամանակ առ ժամանակ կայծակներ են ճայթում և որոտ ու լույս տարածում շրջակայքում։ Տեղացիների ասելով այդ անողը գերեզմանում թաղված Սեբեն է։*

### 729. ՍԵՎ ՀՈՂԵՐ ԿԱՄ ՔԱՋԱՑ ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐ

Ա

Գտնվում են Սեբաստիայի հայոց գերեզմանատանը

*Այստեղ Լենկ-Թեմուրի կողմից ողջ-ողջ թաղված են 4.000 սեբաստացիներ։ Նույն գերեզմանատանը ցույց են տալիս երկար, գորշ ու լերկ քարեր, առանց խաչի ու հիշատակագրի, որոնք անվանվում են Քաջաց գերեզմաններ։*

Բ

Գտնվում է Սեբաստիայի Սուրբ Գևորգ եկեղեցու շրջակայքում

*Կոչի սև հողեր, զի Լէնկ-Թեմուրն զմանկունս Սևստոյ յայսմ վայրի ասեն ժողովեալ, և կոխան արարեալ։*

### 730. ՖԵՐԱՏԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Ամասիայից Զիլե տանող ճանապարհի ձախ կողմում

*Այստեղ թաղված է Ֆերատ անունով մի գյուղացին, որը մոտակա ապառաժները փորելով ջուր է բերել քաղաքի համար։ Նա զոհ է դարձել իր սիրուհուն։*

### 731. ԵՂԻՇԵԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Ոստանի Զարահան սուրբ նշան վանքում

Ա

*Ասում են, թե այստեղ միայնության մեջ վախճանվել է Եղիշեն։ Մարդիկ տեսել են նրա դիակը՝ սուրբ նշանը կրծքին։ Տեսել են նաև, թե ինչպես լույս է իջել սուրբ նշանի և Եղիշեի մարմնի վրա։ Նրանք մի գմբեթավոր եկեղեցի են շինել և Եղիշեի դիակը ամփոփել են մեջը։ Այդ*

*օրվանից Եղիշեի գերեզմանի վրա բազմաթիվ բժշկություններ են կատարվում։ Մի օր էլ մի բորոտ վիշապ իջնում է սարից և բառաչելով սկսում լիզել Եղիշեի գերեզմանը։ Վիշապն անմիջապես առողջանում է և մի պայծառ ակ ձգելով գերեզմանին հեռանում է։*

Բ

*Եղիշեն մի ժամանակ ճգնել է Մոկաց լեռներում, որտեղից փոխադրվել է Ռշտունյաց ծովեզերքը, ուր և վախճանվել է։ Նրան թաղել են Վանա լճի մոտ գտնվող վանքում։ Դրա համար էլ վանքը կոչվում է Ջարահան Սուրբ Նշան։*

### 732. ՄՈՒՇԵՂ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Վասպուրականի Կենդանանց գյուղում

*Վարդանանց պատերազմից հետ վերադառնալիս Մուշեղ վարդապետը այստեղ հիվանդանում է և մեռնում։ Տեղացիք թաղում են նրան իրենց գյուղում, վրան մի քար դնում և երեք աղյան եղներ մատաղում։*

### 733. ԱՐՋԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Վասպուրականում, Հոգոց վանքի մոտակայքում

*Հոգոց վանքը կառուցելիս մի արջ է եկել և ինքնահոժար ծառայել վանքին, անտառից օրական երկու անգամ փայտ բերել։ Երբ արջը սատկել է, նրան թաղել են վանքից ոչ հեռու, Սուրբ Հովհաննես մատուռի մոտ։*

### 734. ԼԵՍԿԱ ԳՀՈՌՆԵՐ

Գտնվում են Վասպուրականի Լեզք և Շահբաղ գյուղերի արանքում

*Ժամանակին այստեղ գանձ է գտնվել։ Գանձին տիրանալու համար մարդիկ կռվել են իրար հետ և կոշտ քարերով ոչնչացրել իրար։ Ուրիշ մարդիկ եկել թաղել են սպանվածներին և վրաները շիրմաքարի տեղ կանգնեցրել են այդ կոշտ քարերը։*

### 735. ՔՈՒՉԱԿԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Վասպուրականի Սբ. Թեոդորոս վանքի պատի տակ

*Մի անգամ Քուչակը կանչում է գյուղացիներին, բարձրանում Սուրբ Թեոդորոս վանքի կատարը և ասում. Ես այստեղից ինձ ցած կնետեմ, ուր որ ընկնեմ, այնտեղ էլ թաղեցեք։ Գյուղացիները կարծելով, թե Քուչակը կատակ է անում, ուշադրություն չեն դարձնում նրա խոսքերին։ Բայց նա իրոք ցած է նետվում վանքի կատարից և տեղն ու տեղը մահանում։ Այդտեղ էլ թաղում են նրան։*

### 736. ՍԻՐԱՀԱՐՆԵՐԻ ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐԸ

Գտնվում է Հաղբակի Խանա-Սորի ձորի ճանապարհին

*Տղա ու աղջիկ սիրելիս են լինում իրար։ Հայրը չի ուզեցել տալ աղջըկան։ Երկուսով խոսքը մեկ արած գիշերով փախել են։ Հայրն ընկել է աղջկա ետևից և ձորի մեջ բռնելով նրան տեղն ու տեղը սպանել է։ Այդ տեսնելով տղան ժայռից ցած է նետվել ու մեռել։ Երկուսին էլ թաղել են նույն տեղում։ Այդ օրվանից նզովք է դրվել, որ ամեն անցորդ մի քար գցի նրանց գերեզմաններին, ծնողների անունը մրոտելու համար։*

### 737. ՊՌՈՇԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Արծկեի և Խլաթի սահմանում, Խանց-կրճտուկ գյուղի մոտ

*Պռոշի հասակը շատ երկար է եղել։ Դրա համար էլ թաղելիս չոքերն ու գլուխը կտրել առանձին են թաղել, իսկ մարմինը՝ առանձին։ Ասում են, թե նրա մարմինը ութ արշին է եղել, չոքերը՝ չորս, իսկ գլուխը՝ երեք։*

### 738. ԴԱՎԹԻ ԹՇՆԱՄԻՆԵՐԻ ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐԸ

Գտնվում են Խլաթի հին քաղաքատեղի մոտ,
Վանա լճի հարավ-արևմտյան ափին

*Եւ են դոքա առ հասարակ հայ բնակչաց կոտորեալք ի մարտի, զոր արարեալ է քաջն Դաւիթ ի Սասնոյ ընդդէմ այլազգեաց։*

## 739. ՄԱՇՏՈՑԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Տարոնի Հացիկ գյուղում

Ա.

*Մաշտոցը մեռնելիս պատվիրում է գյուղացիներին, որ իր դիակը դնեն սայլի վրա և ուր որ տանեն եզները, այնտեղ էլ թաղեն։ Սայլը կանգնում է Թորեի տան մոտ, աղբյուրի առաջ։ Այդ տեղը աննշան համարելով, հացիկեցիք Մեսրոպի դիակը տեղափոխում են Օշական, իսկ Թորեի տան մոտ թաղում են միայն նրա ճկույթը և վրան վանք կառուցում։ Այդ տեղը կոչվում է Մեսրոպի գերեզման։*

Բ

*Յեկեղեցոց գեղջս է գերեզման սրբոյն Մեսրոպայ. յայս եկեղեցի երդնուն մինչև ցայսօր քուրդք և եէզիտիք շուրջանակի բնակեալք յերդմունս իւրեանց ասելով՝ Զիարաթ էլ խասիկ. այսինքն՝ Ուխտ Հացեկայ. կամ Տէրէլ խասիկ. այսինքն՝ Եկեղեցի Հացեկայ. նաև տանին ընծա և պարգև։*

## 740. ԱՐՋԻ ԳԵՐԵԶՄԱՆ

Գտնվում է Մշո Սուրբ Կարապետի վանքից ոչ հեռու,
խոտաճարակաց եզնարանի մոտ

*Տեղացի հայերի ասելով այստեղ թաղված է մի արջ, որը ժամանակին հավատարմությամբ ծառայել է Սուրբ Կարապետի վանքին։*

## 741. ՄԵՍՐՈՊԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

Գտնվում է Բալուի հյուսիսային կողմում

*Գերեզմանի ձև ունեցող մի քար է, որ կոչվում է Մեսրոպի գերեզման։ Այստեղ ուխտի են գալիս տեղացի հայերը, որոնք պնդում են, թե հայոց գրերը այստեղ են գտնվել։*

## 742. ԼՈՒՍԱՎՈՐՉԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ

*Գրիգոր Լուսավորչի մահվանից շատ տարիներ հետո, հովիվները գտնում են նրա մարմինը մի մեծ գիհի ծառի փչակի մեջ, կոթնած վիճա-*

կում, գավազանը ձեռին։ Նրանք այդտեղ էլ թաղում են Լուսավորչին և վրան մի գմբեթավոր գերեզման-մատուռ կառուցում։

### 743. ՄԼԵՀ ԻՇԽԱՆԻ ԴԱՄԲԱՐԱՆԸ

Գտնվում է Կիլիկիայի Կյուրետին լեռան ստորոտում, Մեծքար Ոսխտ անունով քարայրում

Ասում են, թե այստեղ իր մականով, սաղավարտով ու թրով թաղված է Մլեհ քաջ իշխանը, որին սպանել են Կիլիկիայի իշխանները (նրա անհանգիստ ու բռնակալ բնավորության համար)։

## ԹԱԳԱՎՈՐՆԵՐ, ԻՇԽԱՆՆԵՐ, ԶՈՐԱԿԱՆՆԵՐ

### 744. ԱՂԵՔՍԱՆԴՐ ՄԱԿԵԴՈՆԱՑԻ

#### Ա

*Աղեքսանդր Մեծի մայրը սիրահարվել է գերի բռնված մի թագավորի, որ նշանավոր կախարդ է եղել։ Սա միշտ վիշապի կերպարանք է ընդունել և նոր եկել թագուհու մոտ, որպեսզի ոչ ոք չկասկածի։ Ասում են, թե այս վիշապ կախարդից է ծնվել Աղեքսանդրը։ Երբ թագավորը սկսել է կասկածել, կախարդը փախել է Հայաստան և Մասիսի ստորոտում առանձին ապրել։ Կարճ ժամանակից նրա կախարդության համբավը տարածվել է շատ տեղեր։ Երբ Աղեքսանդր Մեծը եկել է Հայաստան, ցանկացել է գուշակել տալ նրան, թե իր արշավանքները ինչ ելք պիտի ունենան։ Նախքան այդ, նա կամեցել է փորձել կախարդին և հարցրել է, թե ո՞ւմ ձեռքից պիտի մեռնի նա։*

*— Ես իմ որդու սրից պիտի մեռնեմ, պատասխանում է կախարդը շատ հաստատուն։*

*Աղեքսանդրը զայրացած նրա ինքնավստահ պատասխանից, քաշում է սուրը և սպանում կախարդին։ Մեռնելուց առաջ նա հայտնում է, որ գուշակությունը արդեն կատարվեց, քանի որ Աղեքսանդրը իր որդին էր։*

#### Բ

*Աղեքսանդրը գլխին մի եղջյուր ուներ, որ մարդկանցից սաստիկ թաքցնում էր, իսկ մազերը խուզելիս սպանել էր տալիս սափրիչին։ Մնացել էր միայն մի սափրիչ, որը կարողանում է գլուխն ազատել, երդվելով, որ ոչ ոքի չի հայտնի գաղտնիքը։ Սակայն, մի քանի օրից հետո սափրիչի փորն սկսում է ուռչել։ Նա ճարահատ գնում է մի դաշտ և կռանալով ջըր-*

հորի վրա, ասում. «Աղեքսանդրի գլխին եղջյուր կա»: Իսկույն փորի ու-ռուցքը սկսում է իջնել և սիրտը հանգստանալ: Շատ չանցած ջրհորի մեջ մի եղեգն է բուսնում, որը կտրում է մի հովիվ, սրինգ շինում և երբ սկսում է նվագել, սրինգը պարզ ու որոշ կրկնում է. «Աղեքսանդրի գլխին եղջյուր կա»: Երբ Աղեքսանդրն անցնում է այդտեղից և լսում սրնգի ձայնը, իս-կույն իմանում է, թե ով է տարածել իր գաղտնիքը և կանչելով երդմնա-զանց սափրիչին՝ հրամայում գլխատել նրան:

Գ

Աղեքսանդր Մակեդոնացու մահվանից հետո, մայրը ողբում էր որ-դու կորուստը և չէր թողնում թաղել նրան: Պալատականները տեսնելով, որ անհնարին է մորը խոսքով համոզել թաղելու անհրաժեշտությունը, առաջարկում են, որ նա որդու դիակի հետ առանձնանա մի սեն-յակում և սնունդ չընդունի: Աղեքսանդրի մայրը տալիս է իր համաձայ-նությունը: Պալատականները նրան, որդու դիակի հետ, փակում են առանձին սենյակում, և առաստաղից հաց կախում: Աղեքսանդրի մայրը առաջին երեք օրը անընդհատ ողբում էր իր որդու մահը, միայն չորրորդ օրը, շատ քաղց զգալով, և նկատելով կախված հացը, ուզում է վերցնել այն: Բայց որովհետև հացը շատ բարձր էր կախված, նա կանգնում է որ-դու դիակի վրա, որ հասնի հացին: Նկատելով այդ, հսկող պալատական-ները ասում են. Դու չէիր թողնում թաղելու որդուդ, վիրավորանք համա-րելով այդ, մինչդեռ ինքդ ոտնահարում ես նրա դին հաց ճարելու հա-մար...:

Աղեքսանդրի մայրը համոզվելով, որ պալատականները իրավացի են, թույլ է տալիս թաղելու որդուն:

Դ

Պատերազմ գնալիս, Իսկանդերը ամեն անգամ խմում էր սխտորից քամված անմահության հեղուկը: Մի անգամ նա հրամայում է իր աղջը-կան բերել այդ հեղուկից մի շիշ: Աղջիկը հետաքրքրվելով՝ խմում է շշի հեղուկը: Զայրացած Իսկանդերը մերկացնում է սուրը, բայց աղջիկն արագ պատուհանից ծովն է նետվում և այնտեղ դառնում կես-ձուկ, կես-մարդ: Իսկանդերի աղջկա՝ ձկների հետ ունեցած ամուսնությունից ծագել են կես-մարդ, կես-ձուկ արարածները: Բայց նա գերադասում է մարդ-կանց հասարակությունը և միջոցներ է փնտրում նրանց գրավելու համար:

*Հրեղեն աղջիկը գիշերները նստած ապառաժի վրա լուսնի լույսի մեջ սանրում է իր ոսկեզօծ մազերը։ Նա մեծ մասամբ հագնում է կապույտ շոր։ Երբ նավորդները դույլը ծովն են իջեցնում ջուր վերցնելու համար, նա կպչում է այդ դույլից և դեպի իրեն քաշում նավորդներին։ Ասում են, թե այդ հրեղեն արարածը արագ կանհետանա, ամբողջ մարմնով դողալով, եթե նրան կանչեն՝ «Իսկանդեր թագավորը գալիս է»։*

 Է

*Աղեքսանդր Մակեդոնացի կամեցել է գնալ անմահական ջուր բերելու, որպեսզի խմի ու անմահանա։ Եվ որովհետև այդ անմահական ջրի տեղը միմիայն ծերունիները կարող էին իմանալ, ուստի սկսում է որոնել մի խելացի ծերունու։ Նա երկար ժամանակ չի կարողանում գտնել այդպիսի մի ծերունու, որովհետև ժամանակի սովորության համեմատ ծերունիներին քթոցի մեջ էին դնում և գլորում ձորը։ Վերջապես մի երիտասարդ ներկայանում է Աղեքսանդրին և նրանից խոսք առնելով, որ չի պատժվելու, խոստովանում է, թե ինքը, անչափ սիրելով իր ծերունի հորը՝ չի սպանել նրան և պահել է մի ջրհորի մեջ։*

*Աղեքսանդրն իսկույն կանչել է տալիս այդ ծերուկին և հետն առած գնում մութ աշխարհը, որից անցնելով պիտի մտնեին լույս աշխարհը, ուր գտնվում էր անմահական ջուրը։ Սակայն այստեղ նրանք սկսում են մտածել, թե ինչպես անեն, որ վերադարձին կարողանան իրենց երկրի ճանապարհը գտնել։ Ոմանք առաջարկում են անցած ճանապարհին հարդ թափել, որ նրա հետքով վերադառնան, ուրիշները ասում են, որ ավելի լավ է թոկ կապել ու ծայրը բռնած գնալ։ Ծերունին խորհուրդ է տալիս մատակ ձիերի վրա նստած անցնել այդ ճանապարհը, միայն սրանց քուռակներին իրենց հետ չտանել, որպեսզի ձիերը վերադառնան, իրենք էլ նրանց հետ։*

*Աղեքսանդրը հետևում է ծերունու խորհրդին, մատակ ձիերի վրա նստած անցնում են մութ աշխարհը, գտնում անմահական ջրի ավազանը, լցնում մի սրվակի մեջ և վերադառնում։ Մութ աշխարհից անցնելիս ծերունին ասում է. Այստեղ եղած քարերից ուզում եք վերցրեք, ուզում եք մի վերցրեք։ Վերցնողն էլ, չվերցնողն էլ զղջում են, որովհետև այդ քարերը ոչ թե հասարակ, այլ անգին են. վերցնողը զղջում է, թե ինչի շատ չի վերցրել, իսկ չվերցնողն էլ զղջում է, թե ինչի գոնե մի քանի հատ չի վերցրել։*

*Բերած անմահական ջուրը, առանց մի կաթիլ խմելու Աղեքսանդրը դնում է պահարանը։ Քույրը իմանալով այդ մասին, բաց է անում պահա-*

*րանը և ամբողջ ջուրը խմում։ Աղեքսանդրը սուրը քաշած հասնում է քրոջ վրա։ Սա երկյուղից նետվում է տան առաջ տարածված ծովը։ Ասում են, թե մինչև հիմա էլ նա կենդանի է և տիրում է ծովին. միայն վախենում է դուրս գալ, որովհետև կարծում է, թե եղբայրն էլ նույն ջրից խմելով անմահացել է և շարունակում է տիրել աշխարհին։*

## 745. ՏԻԳՐԱՆ ՄԵԾ

*Մեծն Տիգրան, անվանի թագավորն Հայոց, մեկ օր ֆորս (որս) անելիս, մեկ քարի վրա մեկ սև ղարալթու (ուրվապատկեր) տեսավ ու հենց իմացավ՝ թե արծիվ ա, նետը լարեց, ղարալթուն վեր ընկավ. ծին չափ քցեց, որ ֆորսը բռնի, բայց ա՞խ՝ ֆորսի տեղ՝ մեկ ութ տարեկան երեխա արնումը շաղաղվել ու ողորմելի մայրը, որ մոտին քնած էր էլել, վրեն ընկել, իրան կտրատում էր։ Մեծահոգի թագավորի գլխին կրակ վառվեցավ. իսկույն ծիուցը վեր էկավ, էն կնկա ոտներն ընկավ, ու հրամայեց՝ քցեց, որ ֆորսը բռնի, բայց ա՞խ՝ ֆորսի տեղ՝ մեկ ութ տարեկան երեխա դրեց, մյուս թայումը՝ էն քաշովը ոսկի լցնել տվեց ու ասաց. «Քո՛ւյր իմ, էս թուրն ու քո որդին, էս նրա չափովը ոսկին, էրեխիդ ես սպանեցի անգիտությամբ։ Կուզես, թուրն ա՛ռ, շլինքս տո՛ւր, կուզես ոսկին վերցրո՛ւ, որ քո գլուխն էլա պահես, ես լավ գիտեմ, որ դու քո ազիզ զավակը աշխարքի հետ չես փոխիլ, ամա ի՞նչ անեմ, չար սհաթն (ժամ) ռաստ բերեց (հանդիպեցնել) էս բանը, բայց էլի կամքը քոնն ա, ինչպես ուզես, էնպես արա»։ Ի՞նչ պետք է աներ ողորմելի մերը. ինքն էլ տեսավ, որ թագավորը կամոք չի արել, ընկավ ոտները լալով ու սաեց. «Իմ աստղս խավարեց՝ թագավոր, բայց ի՞նչ անեմ, քո ոտի հողն եմ, էդ մեծասրտությունը՝ որ դու արիր, ի՞նչպես կթողա, որ ես իմ միայն (միակ) որդու արինը քո գլխին ղուրբան (մատաղ) չանեմ»։ Էս օրից սկսած՝ էն կնիկը էլ թագավորի դռնիցը չի հեռացավ։*

## 746. ՏԻՐԻԹ-ՏՐԴԱՏ

*Վերին Հայաստանի թագավոր Տիրիթը, երբ գալիս է Հռոմ Ներոնից թագ ստանալու, Հռոմի իշխանները նրան զարմացնելու համար՝ ման են ածում քաղաքում և ցույց են տալիս Հռոմի մեծամեծ ու երևելի շենքերը, այդ թվում նաև այն հսկայական շենքը, ուր գտնվում էր ծերակույտը և ուր պահվում էին օրենքների բազմաթիվ գրքերը։ Երբ Տիրիթը ճաշի է նստում,*

*Ներոնը նրան հարցնում է. Հայոց աշխարհում էլ այսպիսի օրենքներ կա՞ն։ Տիրիթը պատասխանում է. Հայոց աշխարհի օրենքները քիչ են, բայց լավն են. և ամեն մարդ պարտավոր է իմանալ դրանք. և եթե հայոց ազգն իր օրենքները լավ պահի, հռոմայեցիք չեն կարող մտնենալ Հայաստանին։*

*Իսկ որո՞նք են Հայաստանի այդ օրենքները, որ մենք դեռևս չենք լսել,—հարցնում է Ներոնը զարմանքով։ Առաջին օրենքն այն է, որ մեր թուրը ժանգոտ լինի և մանգաղն էլ հայելու նման փայլուն։ Երկրորդ օրենքն էլ այն է, որ դատարանի դռանը կանաչ խոտ լինի բուսած, իսկ տաճարի դուռն էլ միշտ ցեխոտ լինի,—պատասխանում է Տիրիթը։*

## 747. ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐ

*Ապա հրաման տայր թագաւորն Շապուհ, զկէս յատակին իւրոյ խորանին հարկանել ի բերեալ հողոյն Հայոց, և զջուրն ցանել ի վերայ նորա, և զկէսն ի նոյն հողն զիւրոյ բնակութեան երկրին թողուլ։ Եւ եա ածել զԱրշակ արքայ Հայոց զառաջև իւրով, և զայլ մարդիկն ի բաց հրամայեաց կացուցանել. և զձեռանէ առեալ շրջէր ճեմելով... Ի չքմեղս առեալ զնա ածէր ի հայակողմն ի հողն հարեալ յատակն։ Իսկ իբրև յայն տեղի հասանէր, և զհայ զհողն կոխէր, մեծամեծս ըմբոստացեալ հպարտացեալ՝ այլ ձայն շրջէր. սկսանէր խօսել և ասել. Ի բաց կաց յինէն ծառայ չարագործ տիրացեալ տերանցն քոց. այլ ոչ թողից զքեզ և որդւոց քոց զվրէժ նախնեաց իմոց, և զմահն Արտևանայ արքայի...*

*Իսկ դարձեալ առնոյր զձեռանէ, դարձեալ տանէր յայն հող Պարսից, ապա աշխարհէր զասացեալսն, խոնարհէր բուռն հարկանէր զոտից նորա, մեծապէս ապաշխարելով զղջմամբ զասացեալ բանսն։ Իսկ յորժամ առեալ զձեռանէ զնա տանել ի հայ հողն, եւ խստագոյն քան զառաջինսն բարբառէր. իսկ դարձեալ մեւսանգամ հանէր յայնմ հողոյն, բանիւք յապաշխարութիւն դառնայր։ Յայգուէ ի երեկոյն այնպէս շատ փորձ փորձեաց զնա. զի իբրև ի վերայ հարեալ հողոյն տանէր, խստացեալ ամբարտաւանէր. իսկ ի վերայ բուն գետնոյն յատակին՝ և կայր, ի զղջումն դառնայր։*

*Ապա տայր հրաման Շապուհ արքայ Պարսից, բերել շղթայս և արկանել ի պարանոցն Արշակայ և յոտս և ի ձեռս նորա երկաթս, և խաղացուցանել զնա ի յԱնդմըշն՝ զոր Անուշ բերդն կոչեն, և պնդեալ զնա մինչև անդէն մեռցի։*

## 748. ՎԱՍԱԿ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ

Եւ եղև ի վաղիւ անդր ետ հրաման Շապուհ արքայ, ածել զառաջեաւ իւր զՎասակ Մամիկոնեան զզօրավարն սպարապետն Հայոց մեծաց, սկսաւ պատուհասել զնա, քանզի էր Վասակ անձամբ փոքրիկ, ասէ ցնա արքայն Պարսից Շապուհ. Աղուէս, դու էիր խանգարիչ՝ որ այսչափ աշխատ արարեր զմեզ. դու ես այն՝ որ կոտորեցեր զԱրիս այսչափ ամս, և զի՞ գործես. զմահ աղուեսու սպանից զքեզ։ Իսկ Վասակ տուեալ պատասխանի, ասէ. Այժմ քո տեսեալ զիս անձամբս փոքրիկ, և ուրն իմ ոչ է ընդ իս, ոչ առէր զչափ մեծութեան իմոյ, զի ցայժմ ես քեզ առեւծ էի, և արդ աղուէս։ Բայց մինչ ես Վասակն էի, ես սկայ էի. մի ոտնս ի միոյ լերինն կայր, և միւս ոտնս իմ ի միւսոյ լերին կայր. յորժամ յաջ ոտնս յենուի, զաջ լեառն ընդ գետին տանէի. յորժամ ի ձախ ոտնն յենուի, զձախ լեառն ընդ գետին տանէի։ Ապա հարցանէր թագաւորն Պարսից Շապուհ և ասէ. աղէ՝ տուր ինձ գիտել, ով են լերինքն այնոքիկ՝ զորս դուն ընդ ունջ տանէիր։ Եւ ասէ Վասակ. լերինքն երկուք, մի դու էիր, և մի թագաւորն Յունաց։ Այն մինչ տուեալ էր ինձ աստուծոյ, զքեզ ընդ գետին տանէի և զթագաւորն Յունաց, մինչև օրհնութիւն հօրն մերոյ Ներսէսի հանգուցեալ էր ի վերայ մեր, և աստուծոյ զմեզ ի ձեռանէ չէր թողեալ. մինչև զնորա բանն արարաք, և խրատ նորա եկաց առ մեզ, գիտացաք տալ քեզ խրատ. մինչև մեզէն աչօք բացօք անկաք ի խորխորատ։ Արդ զինչ և կամիս, արա։ Ապա ետ հրաման թագաւորն Պարսից մորթել զզօրավարն Հայոց Վասակ, և զմորթն հանել և լնուլ խոտով, և տանել ընդ նոյն բերդ յԱնդմըշն՝ որ Անյուշն կոչեն, ուր արգելին իսկ զթագաւորն Արշակ։

## 749. ԱՏՈՄ ՄՈԿԱՑԻ

### Ա

Երբեմն ի մականական խաղուն երկիցս պատահեաց Շաւասպայ Արծրունւոյ զգնդակն հանել ի Շապհոյ։ Եւ նորա ածեալ նմա մականաւն՝ ասէ. Ծանիր զքեզ։ Իսկ նորա պատասխանեալ, թէ՝ Այո, ասէ, ճանաչեմ և զիս արքայորդի ի սերմանէ Սանասարայ, և ունիմ իշխանութիւն ընդ եղբարս քո զբարձն արքայի համբուրել, որպէս և անուանակոչեցեալս եմ։ Եւ զայս ասացեալ յոյժ քամահաբար, ի ձիարձակարանէն արփայագնաց լինէր։

Բ

*էր երբեմն զհետ երամակաց ցռուց յանդգնագոյնս արշաւել ընդ խորտաբորտս և ընդ վիմուտ տեղիս, յորմէ կասել սկսաւ Շապուհ։ Իսկ Ատոմայ Մոկացւոյ եպերեալ զնա՝ ասէ. Գնա՛, գնա՛, աստուածորդիդ Պարսից, եթէ այր իցես։ Եւ նա ասէ. Դու երթիցիր, զի ի քարինս դիւաց է շահատակել։ Դարձեալ յայլում ժամու դիպեցաւ ի շամբս կինչս որսալ հրով, և Շապհոյ ոչ համարձակեալ ի թաւուն քաջարշաւ լինել, մինչև շրջապատէր հուրն. և նորա զհայեցուածսն յերկուս բաժանեալ՝ այսր անդր բերեալ լինէր երիվարաւն։ Միւսանգամ ասէ Ատոմ. Աստուածորդիդ Պարսից, ահա հայր քո և աստուած, ընդէ՞ր զանգիտես։ Իսկ Շապուհ ասէ. Թողեալ ի բաց զկատակելդ՝ յանցանել ընդ հուրդ դարձո՛ զքեզ, որ և ես զկնի քո, քանզի յառաջելն՝ ձիս իմ խրտչի։ Յայնժամ այպանեաց զնա Ատոմ՝ ասելով. Միթէ և այդ քարի՞նք իցեն, զի ես յառաջեցից, և արդ՝ եթէ դու զՄոկացիս կոչես դիւազգիս՝ ես զՍասանեանսդ կոչեմ կնամարդիս։ Եւ մտրակեալ զերիվարն՝ իբրև ընդ հովիտ ծաղկանց անցանէր ընդ հուրն, զերծուցանելով զՇապուհ։ Եւ յետ այնր գիտացեալ, եթէ նմա լաւ ոչ լինի՝ անցեալ ի Մոկացն գնայր յաշխարհ։*

## 750. ԲԱԲԻԿ ՍՅՈՒՆԻ

*Արշակ թագավորի գերությունից հետո հայերն ընկնում են Պարսից Շապուհի իշխանության տակ։ Անդոկ Սյունին իրեն անպատված է զգում Պարսից արքունիքում, ապստամբում է Շապուհից, ավերում Տիզբոնը, գալիս Սյունիք և ամրանում Բաղաբերդում։ Շապուհը հրամայում է «Ելանել ի Սիւնիս և գերել զխօսուն և զանասուն». պարսիկները մի քանի անգամ կռվում են Անդոկի դեմ, բայց բան անել չեն կարողանում. երկիրը քսան և հինգ տարի ավեր է մնում։ Անդոկը հռոմայեցոց կողմն է անցնում։ Շապուհը մոխրով լի մի պղնձի սանդ է դնում դռանը, որ ով գա՝ «կոփէին ի նմա և ասէին. Սիւնեաց տէրութիւնն ընդ այս մոխիր ի վայր լիցի, և նոցա կեանքն և խորհուրդն»։ Բայց Անդոկի որդի Բաբիկը ծպտյալ անցնում է Պարսից մոտ, ծառայում է բանակում, և մեծ քաջություն անելով՝ նախատինքի սանդը վերացնել է տալիս ու տեր դառնում Սյունիքին։*

## 751. ՄՈՐԻԿ

*Ասեն զմանէ, թէ առաքեաց առ հայրն իւր թո՛ղուլ զպանդխտութիւնն և գալ վայելել զփառս նորա. և թէ ոչ՝ խրատ առաքել նմա, որով կարասցէ*

վարել զթագաւորութիւնն։ Եւ երթեալ սպասաւորացն գտին զնա՝ զի դարմանէր զպարտէզն. և ասացին նմա զհրաման թագաւորին։ Նա պատասխանի ետ և ասէ. Թագաւորի հայր ես ոչ վայելեմ։ Եւ ինքն սկսաւ զմեծամեծ կաղամբսն՝ որ ի պարտիզի անդ՝ արմատախիլ առնել, կտրել զգլուխս և ծածկել ընդ հողով, և զմանունս փայփայել և յօրինել։ Եւ արանցն տեսեալ զայն՝ համարեցան զնա բախած. և թողեալ զնա ի բաց գնացին։ Իսկ զոր ինչ արար նա՝ զայն ոչ գիտացին։ Եւ գնացեալ առ թագաւորն՝ պատմեցին զամենայն. և զչիմարութիւն զոր գործեաց ի պարտիզին։ Իսկ Մորիկ իբրև լուաւ՝ ծիծաղեցաւ, և ոչ ինչ յայտնեաց. և կալեալ զմեծամեծս՝ զոր կարծէր թէ սատան են թագաւորութեան իւրոյ, եբարձ զամենեսեան, զի մի՛ դաւ ինչ լինիցի. և զփոքունս ած ի տեղիս նոցա կարգեաց. և կոչեցեալ զարսն զայնոսիկ զոր առաքեաց առ հայրն, ասէ ցնոսա. Այս է խրատ հօրս իմոյ՝ զոր արար ի պարտիզին, և դուք ոչ իմացայք։

## 752. ԳԱՅԼ ՎԱՀԱՆ

...Իսկ Վախտանգայ ի ցասումն բարկութեան շարժեալ վասն Ռահանայ, առաքեաց դարձեալ զԱսուր ի վերայ ութ հազարաւ։ Որք եկեալ բանակեցան յեզերս Մեղտայ, և արձակեցին առ Վահան այսպէս. Ա՛յ չարաբարոյ գայլ Վահան. մինչ գիտես եթէ ծառայելոց ես Արեաց արքային, ընդէ՞ր այդպէս յանդըգնեալ անամօթիս։ Արդ, արի՛ե՛կ առ մեզ, և լեր հարկատու. ապա թէ ոչ, մեռանիս որպէս զշուն։ Եւ նորա լուեալ զայն, առեալ վեց հազար այր՝ գնաց ի վերայ նոցա ինքն և որդին իւր Սմբատ։ Իբրև կային հանդէպ իրերաց, սկսաւ Ասուր թշնամանել զՎահան, և գայլ կոչէր նմա։ Եւ նա ասէ. Յիրաւի է անունդ ինձ. քանզի գա՛մ կոտորեմ, երթամ և այլ գամ...։

## 753. ԱՇՈՏ ՈՂՈՐՄԱԾ

Հայոց Աշոտ թագավորը Կարս կնստիր։ Ինոր (նրա) հպատակներուն մեջը ինչ տեսակ ազգ ըսես կար։ Մե անգամըմ խալխը (ժողովուրդ) մուխտարին (լիազորին) ղրկե կը Աշոտի քով, որ թագավորը իրենց ձեռք բռնե (օգնի), չունքի որ (որովհետև) իրենք շատ նեղութեան մեջ են։ Աշոտը 500 ոսկի դնե կը մուխտարի բուռը, կըսե. Տա՛ր, ամենքին հավսար փայ-բաժին էրա։ Գիտեմ օր դու ազահութեն պ՛իտի էնես, շատը քեզի առնես, խոր համար ա ըհըն (ահա) քեզի ջոկ 100 ոսկի, մինակ թե 500-ը անպատճառ

*խալխին բաժնես։ Մուխտարը կերթա խալխին կըսե. Թագավորը շատ հեր-սոտավ (բարկացավ) ձեր վրա ու ըսավ. գուզե Թող բիրադինն ա (բոլորը) անօթի մեռնին, իմ ի՞նչ բանս է, ու Աշոտի տված 500 օսկին իրեն կպահե։ Խաբարը (լուր) Թեզմ (անմիջապես) հասնի կը Աշոտ Թագավորին։ Ասիկ (սա) կանչել կուտա մուխտարին իրեն քովը, մե լավմ զվռնե կը (խայ-տառակել), օսկեստանը (ոսկիները) ձեռքեն կառնե, բաժնե կը խալխին։ Ատոից էտեվ (դրանից հետո) ըշտը Աշոտ Թաքավորին անունը դնեն կը Աշոտ Օղորմած։*

## 754. ԹԱԹՈՒԼ ԻՇԽԱՆ

*Հայոց Թաթուլ քաջ իշխանը պարսից Տուղրիլ Թագավորի դեմ քաջու-Թյամբ պատերազմելուց հետո՝ գերի ընկավ։ Պատերազմի ժամանակ Թաթուլը վիրավորեց մի պարսիկ իշխանի տղայի, որ Տուղրիլի սիրե-լին էր։*

*— Եթե այս տղան առողջանա,— ասաց նրան Թագավորը,— քեզ կա-զատեմ. իսկ եթե մեռնի, քեզ սրան կզոհեմ։*

*— Եթե հարվածը իմս է, չի ապրի,— պատասխանեց Թաթուլը։*

*Շուտով իշխանի տղան մեռավ։ Թագավորը Թաթուլին սպանել տվեց և նրա աջ ձեռքը կտրելով ուղարկեց մեռնողի հորը՝ ասելով.*

*— Որդիդ վատ բազկից չի մեռել։*

## 755. ՋԻԼԻ ՍՈՒԼԹԱՆ

*Վրաց Թեհմուրազ Թագավորը Ջաքարեի և Իվանեի հորը՝ Սարգսին (Շիոշ կոչեցյալ) պատգամավոր է ուղարկում Ջիլի Սուլթանի մոտ։ Սա նայում է Շիոշի կարճ հասակին, երկար բեխ ու մորուքին և արհամար-հանքով ասում է. Ձեր երկրում ուրիշ մարդ չկա՞ր, որ քե՛զ ուղարկեցին։ Մարդը մարդկանց մոտ, ինձ էլ քեզ մոտ ուղարկեցին,— պատասխանում է Շիոշը։ Սուլթանին դուր չի գալիս Շիոշի պատասխանը, ուստի և կամե-նալով ծաղրել նրան, հրամայում է ճաշին մածուն տալ Շիոշին, որպեսզի նրա երկար բեխերն ու մորուքը մածունոտվեն։ Շիոշը կռահելով Սուլթա-նի մտադրությունը, ասում է. Մեր երկրում մածունը մեղրով են ուտում։ Իսկույն մեղր են բերում։ Շիոշը մի բրդուջ մեղր է վերցնում, ապա մեղ-րոտ մատներով սրում բեխերն ու մորուքը և առանց դրանք մածնի մեջ ձգելու, ուտում։ Ջիլի Սուլթանին դուր է գալիս Շիոշի հնարամտությունը,*

բայց չի մոռանում նրա համարձակ պատասխանը։ Երբ Շիոշը վերադառնում է, Սուլթանը նրա ետևից հինգ ձիավոր է ուղարկում, որպեսզի ճանապարհին սպանեն նրան։ Շիոշը քաշում է թուրը, թռցնում հինգի գլուխներն էլ։ Այնուհետև առնելով նրանց ձիերը, վերադառնում է Սուլթանի մոտ ու ասում. Երկիրդ շատ անապահով է, ամեն քայլափոխում ավազակներ են վխտում. հնգին ես ճանապարհին սպանեցի. պահապաններ տուր հետս, անունս էլ քյոթկումը (գլխավոր մատյան) գրիր, որպեսզի եթե ինձ մի բան պատահի, դու պատասխան տաս։

Ջիլի-Սուլթանը ստիպված պահապաններ է տալիս Շիոշին, որպեսզի նրան անվտանգ հասցնեն մինչև իր երկրի սահմանը։

## 756. ՊՌՈՇ

### Ա

Պառոշ ոմն թագաւոր, ասեն, որ բնակէր ի բերդի ի վերա Պլեճան լերին, որ հանդէպ կայ գաւառին (Պուլանուխա), ունէր սուսեր շինեալ ի կայծականց յերկնից թօթափելոց։ Եւ որդիք նորա ընդ հակառակս ելանէին միմեանց, թէ՝ ո՞ւմ ի նոցանէ անկցի սուսերն։ Տեսեալ հօր նոցա զանդադար կռիւ որդւոցն, արկ ի ծովակն զսուսերն։ Իսկ որդւոցն յարձակեալ զկնի ի ծովն թէ յափշտակեսցեն զսուսերն, հեղձնուն։ Այլ ոգիք նոցա մի անգամ յեօթնեկի յուրբաթու ասուր ի կռիւ ելանեն ընդ միմեանս և չկարեն ի բուռն արկանել զզէնն։ Նմին իրի, ասեն, յամենայն ուրբաթու ալեկոծութիւն սաստիկ լինի ի ծովակին (Խուշլու)։

### Բ

Հին ժամանակ եղել է Պռոշ անունով մի կռապաշտ թագավոր, որ նստել է Լաթարում։ Նա յոթ զավակների համար յոթ բերդ է շինել և ամեն մեկին նստեցրել մի բերդում։ Մեծ զավակին տեղավորել է Բլեճան լեռան վրա գտնվող բերդում։

Ծերանալիս Պռոշը ուզում է իր Հավլունի թուրը կտակել զավակներից մեկն ու մեկին։ Կանչում է ավագ որդուն և թուրը նրան տալով, ասում է. Տա՛ր ձգիր Խաչլվա լիճը։ Տղան ափսոսալով պահում է թուրը և վերադառնալով հոր մոտ, հայտնում է, որ նրա հանձնարարությունը կատարված է։ Ի՞նչ պատահեց լճի հետ,—հարցնում է Պռոշը։ Ոչ մի բան,—պատասխանում է որդին։ Գնա՛, բեր թուրը, դու այն պահել ես,—ասում է հայրը

*և վերցնելով Թուրը տալիս է մյուս որդուն։ Բոլոր վեց որդիներն էլ նույն կերպ են վարվում։ Պոռշ Թագավորը Թուրը տալիս է կրտսեր որդուն, ասելով. Տա՛ր ձգիր լիճը, մնա այնտեղ, տես ինչ կպատահի և արի պատմիր ինձ։ Կրտսեր որդին ճշտությամբ կատարում է հոր պատվերը և վերադառնալով պատմում է, որ լիճն ալեկոծվեց, ձկները դուրս թափվեցին, ջրի խորքից գրգռոցի ձայներ լսվեցին։*

*Հավլունի Թուրը լիճն է նետվում ուրբաթ օրը։ Այն օրվանից մինչև այսօր ամեն ուրբաթ խաշլվա լիճը փոթորկվում է և պղտորվում խորքից։ Ասում են, թե մի խումբ քաջեր բռնում են Թուրը, իսկ մի ուրիշ խումբ էլ ուզում է խլել, որից ջրերն ալեկոծվում են։ Ասում են նաև, թե Պոռշ Թագավորի կատարած հմայության պատճառով Հավլունի Թուրը բռնողը աշխարհ է գալու միայն այն ժամանակ, երբ լիճը ցամաքի։*

Գ

*Ծեխյաղուբ գյուղի նախրորդը նախիրն արածացնելիս պատահմամբ գետնից կլոր քարի նման մի մետաղ վերցնելով հարվածում է պառավի կովին։ Մետաղը ծակելով կովի կողերը, դուրս է գալիս մյուս կողմից։ Պառավը բողոքում է Պոռշ Թագավորին։ Սա կանչում է նախրորդին և վերցնում է նրանից մետաղի կտորը, իսկ պառավին էլ վճարում է կովի գինը։ Այդ հրաշալի մետաղից Պոռշ Թագավորը մի կտոր նմուշի համար վերցնելով, տալիս է դարբնին և պատվիրում հերոն պատրաստել։ Հերոնը ստանալուց հետո, Պոռշը մետաղի մնացած մասն էլ տալիս է նույն դարբնին Թուր շինելու համար։ Իմանալով Թագավորի տված մետաղի զորությունը, դարբինը այն պահում է իր մոտ և ուրիշ հասարակ մետաղից մի Թուր պատրաստում։ Պոռշը հերոնով սեղմում է Թրին, և Թուրն անմիջապես ծակվում է։ Դարբինը բռնվում է խարդախության մեջ և ստիպված է լինում Թագավորի համար իսկական մետաղից Թուր պատրաստել։*

*Թշնամուն հարվածելիս, ինչքան էլ նա հեռու գտնվեր, հրաշալի Թուրը երկարանալով հասնում էր և տեղն ու տեղը սպանում։*

*Երբ Պոռշ Թագավորը ծերանում է, կանչում է մեծ որդուն և Թուրը հանձնելով նրան, պատվիրում է նետել մոտակա աղբյուրի մեջ և պատահածի մասին գալ պատմել իրեն։ Պոռշի մեծ որդին պահում է Թուրը և ոչինչ չի ասում։ Թագավորը Թուրը տալիս է միջնակ որդուն։ Սա էլ վարվում է մեծ եղբոր պես։ Վերջապես Թուրը հանձնվում է կրտսեր որդուն։ Սա կատարում է հոր պատվերը։ Երբ նա Թուրը նետում է աղբյուրի մեջ և ձիու գլուխը դարձնելով փախուստի է դիմում, ձիու ետևի ոտները միջա*

*ջրի մեջ են մնում։ Փոքր որդին եա դառնալով, տեսնում է մի ահագին ջրային տարածություն (Խազանի լճակը)։*

*Այդ ջրում բնակվող քաջքերից ամենաուժեղը վերցնելով թուրը, դնում է գլխի տակ։ Ասում են, թե մինչև այսօր էլ թուրը նրա գլխի տակ է։ Ամեն ուրբաթ օր, երբ մյուս քաջքերը գալիս են Հրաշալի թրի համար կռվելու, մեծ իրարանցում և աղմուկ է լինում լճի հատակում։ Դրա համար էլ ջուրը պղտորվում է և հատակից մի խուլ որոտ է լսվում։*

## 757. ԼԵՆԿ-ԹԵՄՈՒՐ

### Ա

*Թամեր կամ Թամուր ի մանկութեանն էր հովիւ խաշանց։ Դէպ եղեւ երևիլ ի մէջ հօտին նապաստակի միոյ. Թամուր գառն կարծելով զայն՝ յորժամ կամէր փախչել, զառաջս կալեալ միշտ ընդ խաշանցն բերէր մուծանէր ի փարախն։ Յաւուր միում տրտունջ եբարձ հօրն զանդորր բնաւորութենէ գառին, որոյ գիտացեալ զինչ է այն, և զարմացեալ ընդ արագավազութիւն որդւոյն իւրոյ, ասէ. Կանուխ թէ անագան, ընդ բռամբ նուաճելոց ես դու զաշխարհ և կործանելոց զուխտ կրօնաւորաց. այլ որպէս զի մի զբովանդակ երկրագունդն ունիցիս քեզ և յաւեր զամենայն տեղիս դարձուցես, բառնամ ի քէն զարագընթացութիւնդ։ Եւ նա եհատ զջիլ միոյ ոտին նորա։ Յայնմ օրէ կաղացաւ մանուկն, այր վասն կոչեցաւ Լանկ-Թամուր (Կաղ Թամուր)։ Բայց իբրեւ աճեաց և զօրացաւ, ստացաւ արիութիւն քաջութեան և սիրտ անվեհեր։ Եկաց գլուխ ցեղին իւրոյ, և եա ի մտի զբռամբ ածել զաշխարհ։*

### Բ

*Երբ Լենկ-Թեմուրը հարձակվում է Աշտարակի վրա, աշտարակցիք միանալով օշականցոց հետ, երկար կռվում են նրա դեմ։ Վերջում սակայն, այլևս չկարողանալով դիմանալ, նրանք թողնում են իրենց գյուղը և քաշվում դեպի Կարբի։ Նոր ուժեր հավաքելով, աշտարակեցիք դուրս են գալիս թշնամու դեմ և այնքան են նեղում նրան, որ Թեմուրը ոտից ծանր վիրավորվելով, լնգլնգալով, փախչում է։ Դրա համար էլ, ասում են, նրա անունը դնում են Լենկ (կաղ) Թեմուր։*

Գ

*Մի անհաջող կռվից հետո թշնամուց հաղթված Լենկթեմուրը պատերազմի դաշտից փախչում մտնում է մի քարի տակ և սկսում է դիտել իր շուրջը։ Տեսնում է, որ մի մորմոնչ (մրջյուն) ցորենի հատիկը քարշ տալով ուզում է բարձրացնի քարով և տանի բույնը։ Հատիկը 69 անգամ ցած է ընկնում, վերջապես 70-րդ անգամ մորմոնչը կարողանում է բարձրացնել։ Տեսնելով այդ՝ Լենկթեմուրը ամաչում է, որ ինքը գործը մի անգամ տանուլ տալով այդքան հուսահատվել է։ Դուրս է գալիս թաքստոցից, հավաքում ցրված զորքը և հաղթություն է տանում։*

Դ

*Մե շիք-տերտերըմ (թուրքացած քահանա) փաշային մատնե կը, թե հայերը խավարումին գիշերը, եփոր (երբ) մոմերը քյուլլի (բոլոր) մարին կը, շընութեն կենեն (անբարոյականանում են)։ Փաշան մարթ կը ղըրկե, օր քընընե. ան ա սուտ ըսպաթ (երդում) կենե, թե տերտերին ըսածը ղորթ է։ Փաշան մենձ ջաիմա (հարկադրանք) կըդընե Աստվածամոր ժամին վըրան—քանիմ լիտր արծաթ։ Է՛, ուրտից պիտի տային ադքան արծաթը։ Խորուրթ կենեն, օր ժամի հընացած զար (արծաթաթել, ոսկեթել կտոր) շուրջըռները վառեն, քլաչա (գուղձ, մեծ կտոր) էնեն, արծաթը հանեն, տան։ Կանչեն կը թարզիներուն (դերձակներին)։ Պաշլայեն կը (սկսում են) մե հին շուրջառիմ աստառը քակել։ Եփոր կը քակեն՝ մեջեն թուխտըմ գելլե, վըրան գըրած գըլլի, թե աս շուրջառացուն Լանկթամուր թաքավորը պաշխեր է (նվիրել) Աստվածամոր եկեղեցուն։ Ջին կապած է էղե ժամին մեջը. եփոր ուզեցեր են դուս քաշել, դուս չէ էկե։ Թաքավորին խորուրթ են տըվե, օր մե բանըմ պաշխե ժամին. ան ա (նա էլ) աս շուրջառացուն կը պաշխե։*

## 758. ԼԻՊԱՐԻՏ ԶՈՐԱՎԱՐԻ ՔՈՒՅՐԸ

*Եւ քաջն Լիպարիտ ունէր քոյր մի փախուցեալ ի գիւղ մի, առնակին եղեալ, իբրեւ յիսուն ամաց։*

*Եւ յայնմ ժամանակին ելեալ փահլուան մի խմայելացի եւ ասէր պարոնին Սըսա, թէ բեր ի գաւառէ քումմէ կամ ի զօրաց քոց ինձի նման, զի զօտեմարտիցուք, թէ ոչ տուր ինձ հարիւր դեկան կարմիր ի աշխարհաց քոց։*

*Եւ նա ոչ եգիտ այլ բռնամարտիկ որ զգօտին բռնեալ էր տաճկին։*

*Եկն քոյրն քաջն Լիպարտին եւ ասէ. Ի՞նչ տայք ինձ եւ ես կոխեմ զփահլուանն։ Եւ ասէ պարոնն. Զինչ խնդիրք ունիս նա տամ, եթէ կոխես զնա։ Ասէ կինն. Որչափ բամպակ շալկեմ այն իմ լիցի։ Եւ առին յանձն։*

*Եւ եկեալ փահլուանն՝ ետես զկինն հնկայաձեւ եւ երկեաւ. բայց վասն կին լինելոյն արհամարհեաց զնա։ Եւ մերկացաւ փահլուանն եւ զգեցաւ զզգեստն իւր. եւ սկսաւ խաղալ, իբր թէ այպ առնէր, եւ խնդրէր այր մարդ զի մարտիցէ ընդ նա։*

*Եւ եկն յառաջ կինն՝ իւր կանացի զգեստին. եւ բռնեալ զերկու լծակացն փահլուանին երկու բռամբն եւ վերացուցեալ զնա եւ տարաւ յառաջի պարոնին, եդիր զերեսս փահլուանին ի գետինն եւ զմի ակռանցն քարշեալ ի բաց նետեց։ Եւ ամենեքեան զահի հարան, թէ ուստի՞ է սա կամ ո՞ր ազգէ։*

*Եւ հրամայեաց թագաւորն տալ նմայ բամբակ որպէս որ կարէ շալկել։ Եւ բարձան զկինն այնչափ, մինչեւ հարիւր լիտր։ Եւ նա առեալ ուրախութեամբ եւ գնաց ի տուն իւր. եւ իբրեւ էբաց զբամպակն, նա ետես որ եդեալ էր ի մէջ բամպակին քարս որ կայր քառասուն լիտր։*

*Եւ ամենեքեան ապուշ մնացին։*

## 759. ԹՄԲԿԱԲԵՐԴԻ ԻՇԽԱՆԻ ԿԻՆԸ

*Ժամանակին Թմբկաբերդին տիրում էր մի հայ իշխան։ Պարսից թագավորը գալիս է, պաշարում այս բերդը, սակայն երկար ժամանակ չի կարողանում առնել այն։ Իշխանի կինը սիրահարվում է պարսից շահին։ Շահը խոսք է տալիս ամուսնանալու նրա հետ, եթե ինքը սպանի իր ամուսնուն և բերդը հանձնի շահին։ Իշխանի կինը սպանում է ամուսնուն, հարբեցնում նրա զորքին և բերդի բանալիները ուղարկում շահին։ Շահը բերդին տիրելուց հետո հարցնում է մատնիչ իշխանուհուն. Ես եմ գեղեցի՞կ, թե ամուսինդ։ Եվ երբ նա պատասխանում է, թե՝ ամուսինս գեղեցիկ էր, շահը հրամայում է կապել նրան ձիու պոչից և քաշ տալ մինչև մեռնելը, ասելով՝ «Եթե ամուսինդ շահից գեղեցիկ էր՝ ինչո՞ւ սպանեցիր նրան...»։*

## 760. ՇԱՀ-ԱԲԱՍ

### Ա

*Շահ Աբասը տեսնելով հայ երիտասարդ դարբնի գեղեցկուհի կնոջը, որոշում է ինչ գնով էլ լինի տիրանալ նրան։*

*Դերվիշի շորեր հագնելով, շահը մուտք է գործում դարբնի տունը և սիրալիր խոսքերով փորձում է գրավել նրա կնոջ սիրտը։ Սակայն դարբնի կինը մնում է անդրդվելի։*

*Շահին հյուրասիրելու պատրվակով նա տասներկու ձու է խաշում՝ յուրաքանչյուրը ներկելով մի գույնի։ Մաքրելով բոլոր ձվերը և մեկ-մեկ հրամցնելով Շահին, դարբնի կինը հարցնում է իր տված ձվերի համի մասին։ Շահը պատասխանում է, որ դրանք բոլորն էլ սովորական ձվի համ ունեին։ Դրանից հետո դարբնի կինը դառնալով շահին, ասում է. Ինչպես որ տարբեր գույնի ձվերը նույն համն ունեն, այդպես էլ զանազան արտաքին ունեցող կանայք միևնույն հաճույքն են պատճառում տղամարդկանց։*

*Շահը հավանելով դարբնի կնոջ սրամիտ համեմատությունը, մի քսակ ոսկի տալով հեռանում է նրա տանից։*

Բ

*Սովորութիւն էր Շահ Աբասին երբեմն-երբեմն, զի այլակերպեալ զինքն՝ ձևանայր իբրև զմի ի զօրականաց՝ և գնայր ի տեղին ուր գնալոց էր։ Ըստ այսմ սովորութեան յայսմ նուագի ևս արար, զի ինքն միայն և իւր յառաջընթաց փայեկն, նախ քան զամենայն զօրսն՝ եկին յառաջին գիւղն երկրին Փարիոյ՝ զոր Դարբնի գիւղ ասեն։*

*Որում հանդիպեալ կին ումն ի նոյն գեղջէն, և կինն ոչ գիտէր զնա թէ շահն իցէ. խօսեցաւ շահն ընդ կնոջն և ասաց. Եթէ ունիս հաւ վաճառելոյ՝ բեր առ իս զի գնեցից։ Իբրև եբեր կինն զհաւն, և ի պատճառէ հաւին բազում խօսս և զբանս առաջարկեալ փորձ ի փորձ ընդ կնոջն, խօսէր զնանրութիւն և ի սիրտս իւր ժողովէր զանօրէնութիւն։ Եւ ի կարգս խօսիցն ասաց շահն. Տասն փող տամ քեզ ի գինս հաւիս՝ և թէ դու սիրես զշահն տուր մեզ զհաւս։ Եւ կինն ասաց. Զինչ լաւագոյն բարիս և զերախտիս տեսաք մեք ի շահէն՝ որ վասն սիրոյ շահին տաց քեզ զհաւս։ Եւ շահն ասաց. Զինչ այլ ևս բարիս արասցէ ձեզ շահն, զի յայսպիսում լաւ և վայելուչ երկրի բնակեցուցեալ և յապահով պահէ զձեզ յամենից նեղութեանց, և քաղցրութեամբ և գթով վարի ընդ ազգիդ ձերում։ Եւ կինն ասաց. Երանի՜ թէ ոչ էր բերեալ զմեզ՝ զի վտարանդի արարեալ եհան զմեզ ի նախնի աշխարհէն մերմէ, ի բնիկ տեղեաց, և ի հայրենի ժառանգութեանց, և բերեալ աստէն յօտար աշխարհի բնակեցոյց պանդխտութեամբ։*

Գ

Յաւանդութենէ պատմի, թէ յանցանելն Շահ Աբասայ՝ հայ ումն արբեալ ընթանայ և կալնու զսանձս երիվարի նորա և ասէ. Քանի՞ վաճառես զայս երիվար՝ զոր ես գնել կամիմ։ Շահ Աբաս հրամայէ տանել զնա ի տուն մինչև սթափեալ յարբեցութենէն՝ իրազեկ անցիցն լինի՝ և յահէ սրտին մնայ վարանեալ։ Խրատ տա նմա կինն իւր զսրուակ մի գինի տանել ընդ ինքեան առ Շահ Աբաս, և պատուիրէ զինչ խօսել անդ։ Տանեն զնա ծառայքն առ արքայ, և Շահ Աբաս հարցանէ նմա. Քանի՞ կամիս գնել զերիվար իմ։ Նա հանէ զսրուակն զինւոյ և դնէ առաջի թագաւորին և ասէ. Տէ՛ր իմ, սա գնօղ երիվարիդ է, և վեհափառութիւնն ձեր վաճառօղ այնր. իսկ ես միջնորդ մի եմ յայգմ տուր և առութեան. վերջաւորեսջիք զգին երիվարին, և եթէ միջնորդիս շնորհեսջիք ինչ՝ այն ձեր է բարեշնորհութիւն։ Հաճեալ Շահ Աբասայ ընդ բանս պատասխանւոյ նորին՝ խիլայէ զնա և արձակէ։

Դ

Ջուղայի մոտ կա մի տեղ, ուր Արաքսի ջուրը պտույտներ է գործում, որի համար և այն կոչվում է Պտըտան։ Գաղթի ժամանակ Շահ Աբասի հրամանով Ս. Աստվածածին եկեղեցու բանալիները գցել են այդ Պտըտանի մեջ, որպեսզի քաղաքացիք մտքերից հանեն իրենց եկեղեցին։

## 761. ԱՄԻՐԳՈՒՆԱ ԽԱՆ

Յորժամ էառ զԵրևան Շահ-Աբաս թագաւորն պարսից, կարգեաց անդ իշխօղ զԱմիրգունայ խանն։ Սա ի տիրելն իւրում Երևանայ, բազմացոյց զկոռն։ Վասն որոյ առասպելեցին, թէ՝ կին յղի գոլով՝ այր նորա տանէին կոռ, և ոչ թողուին գնալ ի տուն իւր. և կինն ծնանէր որդի և զարգանայր, և առաքէին զնա կոռն, զի հայրն երթիցէ ի տուն։

## 762. ՀՌՈՄՈՑ ԹԱԳԱՎՈՐԸ

Զմին հայ տղայ լօղնորդ զովեցին առ ի հոռոմոց թագաւորին ի Տրապիզոն։ Ասաց թագաւորն. թէ դայ մինչև յԸստըմբօլ լօղա, զիմ դուստրն նմա տամ։ Յանձն էառ և լօղաց Ռ. միլ Խ. ասւր ճանապարհ. գիշերն հետ ֆանարի լուսոյն գնայր. գնաց լօղալով մինչև ի Ըստամբօլ և դարձաւ։ Նենգաւոր թագաւորն պատուէր տուել էր, թէ դառնա, նա զնաւն ի բալաղ-

*չնստուք, որ մոլորի և մեռանի. և սոյնպէս արարեալ կորուսին զնա։ Եւ նաւորդքն երգս ի բերան առեալ ողբան զնա. «արմէ՛ն, արմե՛ն» գոչեն, «վա՜յ և եղուկ» ասեն։*

## 763. ԴԱՎԻԹ ԲԵԿ

### Ա

*Մելիք Փոանգյուլը մին ջահել, սիրուն աղջիկ ա ունենում։ էտ աղջըկանտ հերը տամ ա (տալիս է) Մեհտի Ղուլի խանին, որ խանին աչքը ուրան վրա քաղցր ինի։*

*Խաբարը (լուր) գնում ա հասնում Դավիթ Բեկին։ Ասում են. Դավիթ բեկ, բա ասիլ չես, թե էտ մուտտառ (զզվելի) Մելիք Փոանգյուլը իրան գյոզալ (գեղեցիկ) աղջիկը տվել ա քավթառ (զառամյալ) Մեհտի Ղուլի խանին։*

*Դավիթ բեկը ոտը տափով (գետնին) ա տալիս, ձին նիհ ա ելնում (նստում), իրան թիկնապահների հետ գալիս ա Արծըվանիկ, որ իրան աչքովը տեսնա, անկաճովը լըսի։*

*Գալիս ա Մելիք Փոանգյուլի դռանը վեր ա գալիս, կանչում Փոանգյուլին տանից դուրս, ասում. Աղջիկտ ո՞ւր ա։*

*Դե՛, բանը բանից անցկացած ա լինում, կարա՞ էլ Փոանգյուլը ասի՝ չէ։ Ընկնում ա Դավիթ բեկի ոտները, թե՝ մի ղալաթ (զանցանք) ա արել եմ, էս անգամ ինձ բախշի։*

*Դավիթ բեկն ասում ա. Որ հիմի աղջկանդ ես ծախել, էքուց էլ հավատդ կը ծախես, էլ օր էլ ինձ։*

*Հրամայում ա՝ Մելիք Փոանգյուլին կապում են մի գիժ ձիու պոչից ու բաց թողնում...։*

### Բ

*Դավիթ բեկը պաշարված է եղել Հալիձորի բերդում. պարսից շահը հազար ու մի հնար է մտածել ու չի կարողացել բերդը գրավի։ Չորս ձիու քառասուն օր ծարավ է պահել, հետո բաց թողել բերդի կողմերը ման գան. ասել է՝ որտեղ որ խրխնջան, ոտները գետնին խփեն, քանդեն, ուրեմն իմացեք, որ ջուրն էն տեղից էլ գետնի տակով գնում է բերդի կողմը։ Էդպես էլ արել են։ Ձիերը երբ որ լսել են գետնի տակից փողրակների (կավե խողովակ) միջով վազող ջրի ձենը, խրխնջացել են ու սկսել ոտներով քանդել գետինը։ Բաց են արել ձիերի քանդած տեղը, ջարդել թրծած փողրակները, ջուրը կտրել և Դավիթ բեկի զորքերին ծարավ թողել։*

Գ

*Դավիթ բեկը, որ կռիվ է գնում Օրդուվարի վրա, հաղթելուց հետո հրամայում է, որ իր զինվորները թալանեն բոլոր հարուստ մահմեդականներին։ Դե՛ թալան է էլի, մի երկու անխիղճ զինվորներ մի խեղճի էլ են թալանում։ Տավարը, ոչխարը որ բերում են բեկի առաջը, բեկը նայում է՝ տեսնում, մի լղար կով էլ կա, կեղտոտ քնձռոտած, ասում է. էս կովը հարուստի չի. ո՞ր խեղճին էք թալանել, ասացե՛ք։ Վախից վիզ չեն առնում։ Դավիթ բեկը Դալի Քեշիշին (Տեր-Ավետիս) հրամայում է, որ կովատիրոջը ճարեն։ Կովը քաղաքումը ման են ածում, որ տերը հայտնվի։ Դուրս է գալիս մի աղքատ թուրք, յոթ երեխայի տեր, անունն էլ Ալի։ Նրան բերում են բեկի կողքը։ Դավիթ բեկը հրամայում է պինդ թակել կովը խլողներին և ասում է. Ով որ սրանից հետո դիպչի աղքատի ունեցած-չունեցածին, գլուխը կը կտրեմ։ Հետո էլ Ալուն ձի, կով, ոչխար, փող-բան է տալիս, թե գնա, քեզ համար ապրի։ Ալին օրհնում է Դավիթ բեկին և ուրախ-ուրախ հեռանում։ Ասում են, թե դրանից հետո, Դավիթ բեկի մարդիկը էլ ձեռք չեն տալիս աղքատներին, ուզում է հայ լինի, թուրք, թե ղըզըլբաշ։*

## 764. ԹՅՈՒԼԻ-ԱՐԶՈՒՄԱՆ

*Մի անգամ Արզումանը պատահում է մի բարձրաստիճան թուրք մոլլայի, որն իր ծառաների հետ գնում էր Շուշի բերդը։ Բռնում է մոլլային և սուրը պարանոցին դնելով, ասում է. Եթե կխոստովանես, որ Քրիստոս Աստված է, քեզ չեմ սպանի։ Մոլլան խոստովանում է։ Արզումանը կըրկնել է տալիս խոստովանությունը և նոր բաց է թողնում մոլլային։ Այդ մասին իմանում է Իբրահիմ-խանը։ Նա մոլլային իր մոտ կանչելով, բարկությամբ հարցնում է. Միթե՞ դու խոստովանեցիր, որ Քրիստոս աստված է։ Այո՛, խոստովանեցի,—պատասխանում է մոլլան,—իսկ եթե դուք, վեհափառ խան, Արզումանի ձեռքն ընկնեիք, կասեիք, որ ոչ միայն Քրիստոս աստված է, այլև դու ինքդ, Արզուման, աստվածների աստվածն ես...։*

## 765. ԵՐԵՎԱՆԻ ՍԱՐԴԱՐԸ

Ա

*Ժամանակին թե՛ երևանցիները և թե՛ գամրեզցիներն ու նորքեցիները խմելու համար օգտվել են Նորքի առվի ջրից, որը որքան որ ամռանը*

տաք էր, պղտոր ու դառնահամ, նույնքան ուշ աշնանը սառն էր, պարզ ու քաղցրահամ։ Այդ նրանից էր, որ աշնան տերևաթափին առուն լցվում էր տերևներով և ջուրը անցնելով տերևաշատ առվի միջով զտվում, պարզվում և դառնում էր արտակարգ քաղցրահամ։ Երևանի Սարդարը խմելով Նորքի առվի աշնան ջուրը, ասել է. Աշնան ջուրը շատ է լավը, ափսոս որ հայերն են խմում («Փարի սույի, հայիֆ քի էրմանի իչըր»)։

Բ

Ղըզըլբաշի ժամանակին, Սարդարը Քանաքեռիցը կանչում ա Պետրոս քյոխվին, ասըմ ա. Քանաքեռցիք ուժեղ մարդ են, մեզ հըմար պետք ա մե սաղլամ (կենդանի) գել բերես։ Պետրոս քյոխվեն էլ իլաջ (հնար) չի գըտնըմ, գնըմ ա ուռցը (ուտելու բանջար) քաղըմ, գոտկըմը դընում, տանըմ Սարդարի մոտ։

Սարդարը հարցընըմ ա. Հը՛, քանաքեռցիք, եկե՞լ էք, ասըմ ա, գելը բերեցի՞ք...

Պետրոս քյոխվեն գոտիկը բաց ա անըմ, ուռցը վեր ածըմ, ասըմ ա. էս ուռցը ուտողը կարա՞ սաղ գել բռնի՞լ։

Սարդարը ծիծաղըմ ա ու ասըմ. Սրան,—ասըմ ա,—մե թոփ կտավ տվեք թող էթա։

Գ

Երևանի խանը լսելով Եղվարդ գյուղի տանուտիրոջ աղջկա գեղեցկության համբավը, պահանջում է բերել նրան իր հարեմը։ Տանուտերը մերժում է։ Խանն ուղարկում է զինվորներին, որ բռնի բերեն։ Խանի զինվորների ձեռքը չընկնելու համար, տանուտիրոջ աղջիկը բարձրանում է գյուղի եկեղեցու գմբեթը և այնտեղից իրեն ցած նետելով, ինքնասպան է լինում։

Դ

Երևանի խանը էջմիածնի կաթողիկոսին վիրավորելու համար մի խուրձ յոնջա (առվույտ) է ուղարկում նվեր։ Կաթողիկոսը ընդունում է նվերը և պատվիրում է էջմիածնի ոչխարների հոտից ընտրել մի լավ ոչխար և փոխադարձաբար ուղարկել խանին։

Խանը զարմանում է, որ կաթողիկոսը իր վիրավորանքին այդպես պատվով է պատասխանել։ Հասկանալու համար, թե ինչումն է բանը, նա հատուկ մարդ է ուղարկում կաթողիկոսի մոտ։ Խանը իր սիրած կերակրից է ուղարկել, ես էլ իմ, ասում է նրանց կաթողիկոսը։

Ե

*Ասում են, թե Երևանի խաները մի ժամանակ Զանգվի կամրջի գլխին բարձրում շինած իրենց ապարանքից, հաճույքի ու ժամանցի համար, գնդակահարում էին կամրջով անցնողների էշերը։ Եվ այգիները գնացող կամ այգիներից վերադարձող իշատերերը չէին համարձակվիլ ձայն հանել։*

766. ՆԱԽԻՋԵՎԱՆԻ ԽԱՆԸ

*Նախիջևանի խանի զինվորները երկու խմբի բաժանված՝ մի խումբը հարձակվում է Քարաշենի, մյուսը՝ Քարահունջի վրա։ Քարաշենը շուտով անձնատուր է լինում։ Ասպատակողները թալանում են գյուղը, երիտասարդներին գերի տանում. իսկ Քարահունջը պաշտպանվում է։ Գյուղացիներն ապաստանում են եկեղեցում և սեղանի վեմ քարով ծածկում դուռը։ Զինվորները փորձում են քանդել եկեղեցին, բայց չեն կարողանում։ Բերում են դաշտում բռնած երկու եղբայրների, որոնց հայրը նույնպես եկեղեցումն էր, ստիպում են աղաչել իրենց հորը, որ նա բանա եկեղեցու դուռը, հակառակ դեպքում կսպանեն նրանց։ Եղբայրները թուրքերեն աղաչում են հորը, որ բաց անի դուռը, բայց և հայերեն խնդրում են, չանել այդ, չզոհել մյուսներին։ Թուրքերը տեսնելով, որ հայրը չի լսում որդիների աղաչանքը, սուրը դնում են եղբայրների վզին և կանչում հորը, որ ազատի նրանց։ Սակայն հայրը արցունք թափելով, զոհում է որդիներին։*

767. ԱՆԴՐԱՆԻԿ

Ա

*Պատմում են, որ երբ նորածին Անդրանիկին քահանան ուզում էր կնքել, հանկարծ դրսում լսվում է ձիու պայտերի ձայն։ Ներս է գալիս մի մարդ, խլում է մանկանը քահանայի ձեռքից, թաթախում սուրբ ջրի մեջ, հետո նորից տալիս քահանային և ինքը անհայտանում։ Մարդիկ նկատում են, որ երեխայի մեջքին մի խաչ է դաճվել և գլխի են ընկնում, որ դա սուրբ Գևորգն էր։ Ասում են նաև, որ երբ հետո Անդրանիկը կռիվ էր գնում, գնդակները չէին խոցում նրան։ Ամեն անգամ կռվից վերադառնալիս նա թափ էր տալիս շորերը և գնդակները թափվում էին գետին։ Սուրբ Գևորգի խաչը պահում էր նրան։*

Բ

*Պատմում են, որ՝ երբ Անդրանիկն իր զորքով շարժվում էր գաղթողների ետևից, հանկարծ ճանապարհին փոսի մեջ տեսնում է մի երեխայի բարուր։ Վերցնում է բարուրը և մոտենում գաղթողների առաջին խմբին։ «Ո՞վ է այս բարուրը թողել»,—հարցնում է նա։ Ոչ ոք չի ուզում հանձն առնել։ «Եթե երեխան մայր չունի, ապա թրատեք նրան»,—վրդովված հրամայում է Անդրանիկը։ Դրանից սարսափած մի կին ճչում է։ «Վերցրու»,—ղառնորեն ասում է Անդրանիկը և բարուրը մեկնում է նրան։ «Եթե այս երեխան չլինի, վաղը ո՞վ պիտի մեր երկիրը դառնա»։*

Գ

*Ասում են, թե երբ Անդրանիկը թողնում է Սասունն ու գնում Բուլղարիա, սասունցիք երկար ժամանակ պահում են նրա ճամփան։ Տեսնելով, որ սիրելի զորավարը չի երևում, նրանցից մեկը որոշում է անպայման գտնել Անդրանիկին և ետ բերել Սասուն։ Նա հասնում է Բուլղարիա ու մի խուլ գյուղում տեսնում է Անդրանիկին տուն շինելիս։ Սասունցին վրդովված ուզում է թողնել, հեռանալ։ Բայց Անդրանիկը ձեռքը դնում է նրա ուսին և ասում հայրաբար. Լավ իմացիր, բարեկամ, մարդ կարող է հարյուր տուն ունենալ, բայց միայն մեկ օջախ։*

Դ

*Անդրանիկ իրեք տղով գալըմ է (գալիս է) Տաճկաստանի Սոլուխա կարմնջի վրեն կայնըմ։ Մի ձիավոր է գալըմ ընցնըմ։ Անդրանիկ ձիավորի առաջը կտրըմ է, ըսըմ. Կերթաս Քոսա բինբաշուն կըսես, որ պառվու տղեն իրեք մարդով Սոլուխա կարմընջի վրեն կայնած ծանր կռիվ կուզե։ Տղամարդ է՝ թող գա մեյդան։*

*Ձիավորն ըսում է. Ես ո՞նց էրթամ Քոսա բինբաշուն ըսեմ, թե չորս հայ տղա քեզ հետ կռիվ կուզեն։*

*Անդրանիկն ըսում է. Եթե էդպես չանես, խլամ էս կարմնջէն բցի չթողնեմ ընցնի։*

*Ձիավորը ճարը կտրած էրթըմ է, Քոսա բինբաշուն հայտնըմ Անդրանիկի ըսածը։ Քոսա բինբաշին տեսնըմ է, որ էլ հնար չկա, հեռագրըմ է Սուլթանին, թե Անդրանիկն էկե, Սոլուխա կարմունջ կտրե, չի թողե խլամ ընցնի։ Սուլթանն հեռագրըմ է, թե՝ դո՛ւ էս հայի ղազաբը (ղահիճ), դու գնա մաքրի գործը։ Քոսա բինբաշին էլնըմ է հազար ձիավորով գալըմ է Սոլուխա կարմնջի մոտ։*

*Անդրանիկ ընկերներին պահըմ է ճամփու մոտ, թփերու մեջ, մաուզերները ձեռներին, ինքը գալըմ է կարմնջի վրա, ջուխտ (զույգ) մաուզերը ջուխտ ձեռքերի մեջ, ձեռքերը հետևը դնըմ, չոքըմ է։*

*Քոսա բինբաշին ձին քշըմ է, առաջ գալըմ։ Անդրանիկն ըսըմ է. Ցա՛ն որդի, էն վախթն (ժամանակ) էկար, որ ձեռք ու ոտքս կապած է. տղամարդ էիր ուրիշ վախթ գայիր։ Քոսա բինբաշին էդ որ իմանըմ է, ձին ուժեղ քշըմ է Անդրանիկի վրա։ Հենց վրա քշելու վախթ Անդրանիկ քաշըմ է մաուզերն ու Քոսա բինբաշու ճակտին շարըմ։ Տղերքը էն կողմից սկսըմ են մաուզերները շխկշխկացնել։ Է՛, թուրքերու ձեռին այնալու թվանք, տղերքի ձեռին՝ մաուզեր...*

*Հայտնըմ են Սուլթանին, թե Անդրանիկ չաուշը Քոսա բինբաշուն սպանեց։ Սուլթանն ըսում է. էլ Անդրանիկ չաուշ չէ, սրանից հետո Անդրանիկ փաշա է։*

*Էդ օրվանից Անդրանիկին փաշա են ըսում։*

## ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐ, ԳՐՈՂՆԵՐ, ԱՐՎԵՍՏԱԳԵՏՆԵՐ

### 768. ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ

**Ա**

*Եւ տեսանէ Մեսրոպ ոչ ի քուն երազ և ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երևութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջո՝ գրելով ի վերայ վիմի. զի որպէս ի ձեան վերջք գծին՝ կուտեալ ունէր քարն։ Եւ ոչ միայն երևութացաւ, այլ և համգամանք ամենայնին որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ։ Եւ յարուցեալ յաղօթիցն՝ եստեղծ զնշանագիրս մեր։*

**Բ**

*Ապա յաղօթս ապաւինեալ՝ տեսանէր Մաշտոց մարգարէական աչօք՝ թաթ ձեռին աջոյ, որ գրէր ի վերայ վիմի. և ամենայն համգամանքն և որպիսութիւնն տպաւորեցաւ ի սիրտն. և վաղվաղակի ստեղծանէր իննևտասան գիր։*

**Գ**

*Սուրբն Սահակ և Մեսրոպ բազում աշխատութեամբ պէտս արարին, ավլոյ և ծարաւոյ յոտանաւոր չարչարանաց ի լերինս աքնեալ 40 տիւ և 40*

*գիշեր, ոչ ինչ ճաշակելով, բայց միայն յաղօթսն Աստուծոյ պարապեալ։ Եւ ի տեսլեան գիշերոյն հրեշտակ Տեառն էջ յերկնից առ նոսա. և որպէս ի ուրնչեան խօսէր ընդ նոսա, և յաման ինչ խեցեղէն՝ մատամբ նկարեալ տայր նոցա զգիրս եւթն։ Եւ զարթուցեալք ի քնոյն և զնոյն նշանակ ունելով. և գոհանային զԱստուծոյ, զոուողէն այնպիսի պարգեւացն։*

Դ

*Մեսրոպ Մաշտոցն ուզում է հայերի համար գիր ստեղծել։ Այդ նպատակով նա վանքից-վանք է անցնում, գիշեր ու զօր աղաչում, բայց երեվույթք չի լինում։ Հասնում է օտար աշխարհ։ Մի օր էլ մտնում է մի վանք՝ տեսնում է պատի վրա լույս է խաղում, շատ զարմանում է։ Նրան ասում են, որ այդ լույսը քարերից է, քարերն էլ Հայաստանից են բերել։ Մաշտոցը նայում տեսնում է, որ պատի մեջ չորս քար է դրած՝ քարը քարին, գիծը գծին։ Քարերը լույսի տակ են լույս տալիս, գծերը՝ մթնում։ Ջոքում է՝ աղոթում։ Գիշերվա մի ժամին վերից ձայն է լսվում։ «Դա է,—ասում է ձայնը,—հայոց գրի նշանը»։ Խաչը՝ ամեն թեքին ինն տառ։ Մաշտոցը նայում է պատին։ Տեսնում է լուսե մի խաչ՝ լուսե քառակուսու մեջ. մեկ վառվում է մեկ-երկու թևը՝ հետո էլ քառակուսու մեկ-երկու կողմը, մեկ էլ մյուս թևերը՝ հետո էլ քառակուսու մյուս կողմերը, և պատի վրա լույսը տառեր է գրում, իսկ լույսից էլ Մաշտոցը։ Եվ այդպես ստեղծվում են հայոց տառերը։*

## 769. ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻ

*Ժամանակին Հայոց աշխարհի մի մթին անկյունում, մի իշխանի ջրաղացում ջրաղացպանություն էր անում մի ծերունի մարդ, որին չէր ճանաչում իշխանը, թե ինչ մարդ է կամ որ գավառից, բայց հարգում և պատվում էր նրան՝ տեսնելով, որ ծերունին հասարակ մահկանացուներից չի։ Իշխանը հափշտակված էր մանավանդ նրա քաղցր ձայնով և հրաշալի երգերով։*

*Մի անգամ Գյուտ կաթողիկոսը հյուր է գալիս նույն իշխանի մոտ։ Իշխանը ցանկանալով ավելի պատված և մեծարած լինել կաթողիկոսին, հրամայում է ջրաղացպանին, որ ի պատիվ Հայրապետի, երգ երգի։ Ծերունին չոքում է Գյուտի առջև և երգում է մի հրաշալի մեղեդի։ Գյուտ կաթողիկոսը իջնում է թախտից, գրկում ջրաղացպանին և բացականչում.*

*— «Մովսե՞ս, Մովսե՞ս...», և արտասուքը խեղդում է նրան... Ասում են, թե այդ ջրաղացպանը Մովսես Խորենացին է լինում։*

## 770. ՀՈՎՀԱՆ ՈՍԿԵԲԵՐԱՆ

*Նեստոր Նասրանին ետ պոռնիկ կնոջ միոյ 50 դահեկան և ասաց. Գնա՛ եմուտ յեկեղեցին Հայոց և ասա՝ «Ընդէ՞ր հաւատայք, թէ աստուածորդին եկեալ բնակեցաւ ի յարգանդի Մարիամ անուն կնոջ միոյ և ծնաւ ի նմանէ որպէս զմարդ»։ Եւ Յոհան Հայրապետն ասաց. Ոչ իբրև զքեզ պոռնիկ և յաղտեղի կնոջէ էառ մարմին, այլ ի սուրբ և յանարատ մաքուր կուսէն Մարիամայ...*

*Եւ ի նոյն եկեղեցին կախեալ կայր նկարեալ պատկեր մի՝ Տիրամայր սուրբ աստուածածնին, որ առժամայն ձայնեալ ասաց երեք անգամ. Բերա՛նդ ոսկի, բերա՛նդ ոսկի, բերա՛նդ ոսկի։ Եւ այնպէս մնաց անունն Յոհաննու սուրբ հայրապետին՝ Ոսկի բերան։*

## 771. ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹ

*Սովորութիւն էր Աթենացւոց, զի յորժամ ամք եօթն կատարէին, բերէին յառաջ զժամանակի ուսեալքն, և էր ի քաղաքին մեծ սիւն մի, և բարձր յոյժ, և էր պղնձի, և էր գրեալ եօթն բանք իմաստասիրաց սակաւագրով, և մեկնութիւնն՝ յոլովակի պահանջումն, բան առ բան գլխաւորեալ։*

*Ով ոք զայս բանքս կարդայր և մեկնէր, զնա կացուցանէին վարդապետ, ամենայն իմաստասիրական ուսմանն, զորս էր ի յայն եօթն ամ ուսեալն, և զորչափ ժամանակս կեայր յԱթէնս, նա էր անդ վարդապետ։*

*Կատարեալ վարդապետութեամբ որք էին վաթսուն, կացուցին զնոսա առաջի սեանն, եթէ ով ոք մեկնեսցէ զբան իմաստասիրացն։ Եւ ամենեքեան պշուցեալ հայէին ընդ երեսս սեանն, և անգիտելի էր բանն այն ի նոցանէ։ Եւ միտ եդեալ Դաւիթ և գաղտ ակամբ, սկսաւ ի միտսն մեկնել բան առ բան. և նա իմացեալ թէ ճշմարտիւ զմեկնութիւնն գտաւ, և համարձակեալ էանց և եկաց յատենին. և ամենեքեան առ հասարակ ի նա հայէին. քանզի քաղաքն առ հասարակ եկեալ էին ի տեսիլ բանիցն։ Եւ ելեալ Դաւիթ ի վերին աստիճանն, և ձեռօքն զամբոխն սկսաւ խաղաղացուցանել, և ասաց վարդապետացն զի լռեալ դադարեսցեն։ Եւ Դաւիթ, որպէս զլուսեղէն աման՝ ծագել սկսաւ զլոյս վարդապետութեան իւրոյ, և բան առ բան զծածկեալ գանձս իմաստասիրացն մեկնէր՝ ահաւոր բանիւք, և ամենեքեան հիացան ընդ ճշմարիտ մեկնեալ բանիցն նմանութիւն. յերկարախօս տուն առ տուն զբանն յայտնէր։ Եւ բերեալ ոսկի ա-*

պար, զարդարեալ ակամբ և մարգարտօք, և զԴաւիթ եդեալ ի վերայ ասպարուն, և ընկերք ուսման իւրոյ՝ բարձեալ ի վերայ ուսոց և գլխոց, ձայնեալ ի վերայ նորա անուն Անյաղթ, որով և կոչեցաւն։ Եւ այն օր ի շուրջ ածին զնա ի քաղաքն՝ ձայնիւ ցնծութեամբ սրնգովք և փողովք...։

772. ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

Անանիա Շիրակացին տաղտկացեալ ի Հայոց, և գնացեալ ի Վենետիկ, և ուսուցեալ է նոցա Թագաւորին՝ քիմեյով զերկաթն առնել զոսկին. և նոքա յետ ուսանելոյն ի նմանէ՝ մտածեր են սպանանել զնա։ Եւ ինքն խնդրեալ է, թէ ոսկոյ մի կողմն իւր պատկերն նկարել. և նոքա յանձն առեալ են այնպես առնել. և ի նմանէ թողութիւն առնելով՝ զգլուխն կտրեր են։

...Որ և ևալտըզ ոսկոյն մէկ երեսն կնկուղով պատկերն՝ Անանիայ Շիրակացուի պատկերն է։

— Վենետն՝ թող երկու ծիծաղի. Հայն՝ մէկ ծիծաղի, մէկ խրատուի։

773. ՕՀԱՆ ՕՁՆԵՑԻ

Ա

Օհան Օձնեցու ժամանակ հույները սաստիկ նեղում էին հայերին։ Նրանք տախտակը ծակում էին, անցկացնում հայի վիզը, երկու կողմում մի մի հույն նստում, որոնք հայի գլխին ընկույզ կոտրելով ման էին գալիս և զվարճանում։ ...Այդ ժամանակ մի կնոջ միակ հիվանդ որդին ցորենի հաց է ուզում, իսկ հույները հայերի համար ցորենի հացը «պաս էին դարձրել» (նրանք գարի հաց էին ուտում)։ Կինը դիմում է մի ջրաղացպանի և մի քիչ ցորենի ալյուր խնդրում՝ երեխայի համար բլիթ եփելու։ Ջրաղացպանը առաջարկում է կենակցել իր հետ։ Կինը սաստիկ վրդովված հեռանում է և արտասվախառն աչքերով պատմում այդ մասին Օձնեցուն։ Օձնեցին հրամայում է ծառային բանալ պահարանը և մի հաց տալ կնոջը։ Ծառան պատասխանում է, թե հաց չկա։ Օձնեցին կրկնում է հրամանը։ Ծառան բաց է անում պահարանը և երկու հաց գտնելով այնտեղ, տալիս է կնոջը։

Բ

Ուռմներն (հույները) օր թագավորութեն ունեին, հայերին շատ նեղութեն կուտային էղե. վարանաթաղ տախտակը ծակեին, անցնեին կը

*մարդոց գլոխն ու էրկու կողքը մեկ-մեկ մարդ նստած շարսուներր (շուկաները) պըտըտեխն կեղե։ Ցորեն հացն ա հազար ու մեկ նեյութենով գտնին կեղե։*

*Ատ վախթերը (ժամանակներ) Սասամպըլու մեջը մե օրբեվարի կնկանմ էրկու տղան հիվանդ գլլին, զուլան, կերերան թը մեզի կտորմ ցորեն հաց տու ուտենք։ Մարը, ձունը գլխուն, բան չի ունենա տունն, որ տանի ծախե ցորեն հացի տա, կերթա ուռում դրկցներեն կտորմ ցորեն հաց զուզե, թը՝ Աստծու սիրուն, տղաքս հիվանդ են, բարքերը ցորեն հաց զուզե, հորերուդ խերին, կտորմ տվեք տանիմ, բեալքիմ (գուցե) ուտեն լավնան։*

*Հեչ մեկմ ա չի տա, քաշեն քաշկռտեն կը կնկանը. կտորմ հացի հմար զուզեն օր հետը լակվըրթին (շնանալ)։*

*Ատ խեղճ կնիկը լալեն, էրերալեն գելլե կերթա Օհան Օձնեցու քովը, ոտվիքը գըյնի, թը՝ տղաքս հիվանդ պառկած՝ կտորմ ցորեն հաց զուզեմ, չեն տա, զուզեն օր մե կտորմ հացի հմար լակվըրթին հետըս. դու գիտես, օտքըտ եմ ընկե, մեղք են տղաքս։*

*Օհան Օձնեցին հարցնե կը փոքրավորին թը՝ դոլապը (պատի պահարան) հեչ հաց ունի՞նք։*

*— Չէ՛, կըսե փոքրավորը, ինչ օր կար քիչմ առաջ հանեցի կերանք։*

*— Մեմ ա աշե (մեկ էլ նայիր),—կըսե Օհան Օձնեցին։*

*Փոքրավորը բանա դոլապը կաշե օր իրեք հատ ղոճա (ահագին) թոփխանա (կլոր հաց) դրած է։ Զարմանքով վերցնե կուտա կնկանը։ Կնիկը շնորհակալ գլլի, կերթա։*

Գ.

*Սա էր այր իմաստասէր և սուրբ, և վայելուչ հասակաւ մարմնով, և հոգւով ևս առաւել գեղեցիկ։ Զսա կոչեաց Հէշմ ի դուռն իւր, և վասն վայելչութեան երեսաց նորա մեծապէս պատուեաց զնա. քանզի խարտեաշ ոսկի, և արկեալ զմորուօք իւրովք եմուտ առ նա։ Եւ տեսեալ Հէշմայ զարմացաւ ընդ գեղեցկութիւնն, և ասէ ցնա հեգութեամբ. Վասն Քրիստոսին ձերոյ ասեն, եթէ կարի յոյժ հեզ էր և խոնարհ, և զաղքատութիւնն առաւել սիրէր. զայս յայտ առնեն և կարգ քրիստոնէից, զի որ նոցա առաջնորդքն են՝ զաղքատութիւն և զգծծութիւն առաւել մեծարեն, քան զփարթամութիւն և զճոխութիւն. իսկ դու ընդէ՞ր այդպէս զարդարեալ ես։ Ասէ ցնա սուրբն. Դու քան զծառայն քո առաւել ինչ ոչ ունիս, բայց միայն զթագդ և զհանդերձդ թագաւորական, և վասն այդորիկ երկնչին ի քէն և պատուեն զքեզ։*

*Առաջին հարքն մեր նշանագործք էին և սքանչելի վարուք. վասն այնորիկ երկնչէին ի նոցանէ ընդ ձեռամբ անկեալքն, և կատարէին զհրամանս նոցա զողութեամբ։ Իսկ մեք այնպիսիք ոչ եմք, վասն այնորիկ զարդարիմք մեք ի հանդերձս և ի ձև, զի մի՛ արհամարհեսցի հրամանք մեր. և մերկացուցեալ զկուրծս իւր՝ եցոյց նմա զմազեղէնն, զոր զգեցեալ էր ի ներքոյ հանդերձին երևելոյ, և ասէ. Այս է իմ հանդերձ։ Եւ զարմացաւ արքայ, և գովեաց զհաւատս քրիստոնէից, և ասէ ցսուրբն. Խնդրեա զինչ և կամիս, և արարից քեզ։ Ասէ հայրապետն. Երիս իրս խնդրեմ ի քէն, որ քեզ դիւրին է տալ։ Առաջինն այս. ի քրիստոնէից զոք մի՛ բռնադատեսցես թողուլ զհաւատս իւր, այլ իւրաքանչիւր կամս թողցես. և երկրորդ՝ զազատութիւն եկեղեցւոյ ընդ հարկաւ մի դնիցես, և ի սարկաւագաց և ի քահանայից մի ինչ առնուցուս. և երրորդ՝ ուր և իցեն քրիստոնեայք ի տէրութեան քում, համարձակութեամբ պաշտեսցեն զպաշտօնս իւրեանց. զայս գրով տուր մեզ. և ամենայն ազգ իմ ծառայեսցեն քեզ։ Եւ վաղվաղակի հրամայեաց գիր գրել ըստ խնդրոյ նորա, և կնքեաց մատանեաւ իւրով, և ետ նմա պատիւս բազումս, և գումարեաց զօրս բազումս ընդ նմա, և առաքեաց մեծաւ պատուով յաշխարհ Հայոց։ Եւ նորա եկեալ հալածեաց զամենայն Յոյնս՝ որք էին յաշխարհին Հայոց, եթէ վերակացուք, եթէ զինուորք. և նոցա փախուցեալք այնքան շտապով, մինչև զգանձս ևս անգամ ոչ ժամանել տանել ընդ իւրեանս...։*

Դ

*Օհան Օձնեցին վեր է կենում, գնում Բաղդատի խալիֆայի մոտ օգնություն խնդրելու։ Խալիֆան պատվով ընդունում է նրան և տեսնելով նրա չափազանց շքեղ հանդերձը, հանդիմանում է, թե ինչպե՞ս է, որ Քրիստոսը պարզություն է քարոզում, և ինքը այդպես շքեղ է հագնվում։ Օձնեցին առանց պատասխանելու բաց է անում կուրծքը և խալիֆան տեսնում է, որ գեղեցիկ հանդերձի տակ, մարմնի վրա խարազան է հագած, որի վրա նույն իսկ մանր մեխեր են անցկացրած, որ շարունակ ծակոտեն մարմինը։*

*Մինչդեռ խալիֆան զարմացած նայում է, Օձնեցու մարմնից մի կաթիլ արյուն է թռչում խալիֆայի կույր աչքին, որ իսկույն բացվում է։ Այնուհետև Օձնեցին բռնում է խալիֆայի բորոտ ձեռքերը և տանում իր ծոցը, որոնք իսկույն բժշկվում են։ Խալիֆան հիացած այս հրաշքներից, խոստանում է կատարել Օձնեցու խնդիրը, միայն ոչ թե ուղղակի զորք,*

*այլ դրամ տալով, որպեսզի նա այդ դրամով զորք պատրաստի։ Օձնեցին համաձայնում է։ Երբ քանակի մասին խոսք է լինում, Օձնեցին մի կտոր թղթի վրա գրում է մի քանի խոսք և տալիս խալիֆային, խնդրելով այդ թղթի քաշով ոսկի տալ իրեն։ Խալիֆան ծիծաղելով նետում է թուղթը կշեռքի մի նժարի մեջ, իսկ մյուսում ոսկիներ դարսում, բայց ինչքան ավելացնում է՝ թուղթը չի կշռվում։ Հրամայում է մի քիչ մեծ, հետո ավելի մեծ և ի վերջո ամենամեծ կշեռքը բերել և երբ իր գանձերը չեն կարողանում կշռել այդ մի կտոր թուղթը, համաձայնում է հինգ հարյուր զինվոր տալ։ Օհան Օձնեցին զորքն առած գալիս է և երբ կամուրջից պիտի անցնեին, դիտում է, թե որ զինվորի պատկերն է, որ գետում անգլուխ է երևում։ Դրանից գուշակելով, որ այդ զինվորին վիճակված է մեռնել պատերազմում, նրան վերադարձնում է խալիֆային և միմիայն 300 զինվոր առած վերադառնում։ Այդ ժամանակ երկնքից մի խաչանիշ թուր է ընկնում։ Օձնեցին վերցնում է թուրը և կապում մեջքը։*

*Տեսնելով այդ հրաշքը, հույները հուսահատվում են և փախչում։*

## 774. ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

### Ա

*Ի յետին ժամանակս քուրդ մի տիրէր Նարեկայ։ Եւ հաւ մի այն քուրդն յիւր շինականին եա ի թուխս դնել՝ և եհան զձագն. և շրջէր հաւն ձագերովն։ Եւ երթեալ յահէ անձրևին եմուտ ձագերովն ի ներքոյ երկայնաքարի միոյ, որ յեցեալ էր յորմն պատին. և յազդմանէ չարին անկաւ երկայնաքարն ի վերայ հաւուն և ջարդեաց զհաւն ձագերովն։ Իսկ այն կինն, որ զհաւն ի թուխս եդեալ էր՝ ահաբեկ եղեալ յահէ քրդոյն յուսացաւ յԱստուած և յաղօթս սրբոյն Գրիգորի։ Եւ եդեալ զհաւն մեռեալ և հատեալ ձագերովն ի մաղ մի փոկէ, և առեալ հաւատովն տարեալ եդ առ գերեզման սրբոյն Գրիգորի՝ և ինքն դարձաւ ի գործ իւր տառապանացն, և ի միտս իւր աղաչէր զԱստուած և զսուրբն Գրիգոր։ Եւ իբրեւ ժամ մի էանց ի վերայ, ետես զի հաւն գայր գրգրալով կենդանացեալ ձագերովն։ Եւ հիացեալ փառս ետ Աստուծոյ և ձագայարոյց վարդապետին սրբոյն Գրիգորի։*

### Բ

*Ավուր մեկին կնիկ ըմ կըլնի կիա բեր (կիթ անելու)։ Թուխս տրե տուն, ծաքեր նոր խանե։ Բերից կգա, կը տեսնի ճեճկներ գեռ (ահա) տա, խավ չկա։*

Դես, դեն կաշկա, խավ գեռ թոներ վե խատե։

Խավ կխանա տուս, կնստի վերեն կլա, կասա. Ապա ես ի՞նչխ էնեմ էնա ճիճկըներու խետ։ Ես տանեմ տանեմ Գրիգորի մոտ, որ կասեն խրաշք կգործա, տանեմ խեմ (տեսնեմ) ճար ըմ չենա՞ իմ խավուն։

Ճիճկըներ կլցա փեշ, լալելեն կառնի կգա խը թըխսըմոր։

Կառնի կգա Գրիգորի մոտ։ Կլա, կխնդրա, կասա. Գրիգոր, ախրի աստծու սիրուն, էսա պես պամ ա էղեր, մենք լսեր ենք քու խրաշագործություն։ Գրիգոր կնկան կասա. Մայրիկ, հաշ (լուռ) կաց։ Խեմ քու փեշ պաց։

Փեշ կպանա, Գրիգոր իրեք տիր, անուն Աստծուն կենա, կխաչակնքա. կասա. Թա՛լ գետին, խեմ։ Կթալա գետին։ Թալելու պես, խավ գը՜ոթ, գը՜ոթ, կընցընի ճիճկըներու հառճև, կտանի։

Կնիկ զինք կթալա վըր ոտքերուն, որ խամբուրա էնոր ոտքեր։

Կասա. Ծեն մաժէ, առ խավ ու գնա։

Կնիկ կառնի, կիա (կգնա)։

Գ

Գրիգոր Նարեկացիս քեռորդի էր Անանիայի Շիրակվանցոյն, որդի Խոսրովու։ Սա յ մինչ մանուկ էր ութն տարու, ետուն զնա յաշակերտութեան Եղիշէի սրբոյն վարդապետին յերկիրն Մոկաց, զի նա առաջնորդէր Կոչողաց սրբոյն Աստուածածնին։ Եւ օրըստօրէ յառաջանայր յիմաստութիւն և յառաքինութիւն աստուածային. և ի մանկութենէ առնէր սքանչելիս մեծամեծս։

Եւ այլ սարկաւագունքն սրբոյն վարդապետին Եղիշէի յաւուր միում եկին առ վարդապետն և պատմեցին նմա, թէ մանուկն Գրիգոր ըսքանչելիս առնէ և մեք ամենեքեան զարմացեալ եմք։ Եւ կամեցաւ վարդապետն փորձել զնա։ Յաւուր միում եզն վանաց անկանի ի քարէն և մեռանի։ Եւ վարդապետն Եղիշէ բան ետ նմա թէ՝ զնա յայս ինչ տեղի և եզն անդ է, առ և եկ։ Ու գնացեալ մանուկն Գրիգոր տեսեալ զեզն մեռեալ. և նա յիշեաց զանունն Աստուծոյ ի վերայ եզին և խաչակնքեալ ի վերա՝ հրամանաւն Աստուծոյ կենդանացաւ եզն։ Եւ առեալ եբեր առ վարդապետն։

Դ

Սուրբն Գրիգոր ի գիշերին գաղտ ի քեռօչէն իւրմէ ել և գնաց ի յերկիրն Մշու, ի գիւղն Յարտօնք և անդ նախիր արածէր երկու տարի և զվարձն

առեալ տայր աղքատացն։ Եւ յազգմանէ չարին օր մի տաւար մի կու մեռանի ի դաշտին։ Եւ տէրն գայ տեսանէ և խիստ անարգանք ասէ սրբոյն։ Եւ նա խոնարհութեամբ ասէ. Վասն է՞ր զիս կու անարգես. ես երթամ քո տաւարն սաղ բերեմ քեզ։ Եւ նա ասէ. Դու ո՞ւստի բերես. ես տեսի զնա մեռած, որ դու ես սպաներ։ Եւ նա ասէ. Եթէ ես ոչ բերեմ, իմ տարուչ վարձըս քեզ լինի։ Եւ ելեալ գնաց առ մեռեալ եզն, և եկաց յաղօթս Աստուծոյ։ Եւ հրամանաւն Աստուծոյ յորժամ խաչակնքեաց ի վերա, առժամայն կենդանացաւ եզն. և բերեալ ետ ի տէրն իւր։

Ե

Մի քանի հաշաղկոտներ չարախոսում են Նարեկացու մասին եպիսկոպոսների և իշխանների մոտ։ Իշխաններն ու եպիսկոպոսները հավաքվելով՝ ուզում են նրան դատի մատնել. հրավիրակներ են ուղարկում Գրիգորի մոտ, որ նրան առնեն, դատարան տանեն։ Նարեկացին հեզությամբ ընդունում է եկողներին և ճանապարհ ընկնելուց առաջ հացի հրավիրելով նրանց՝ առաջները դնում է երկու խորոված աղավնի։ Օրն ուրբաթ է լինում. հրավիրակները հիշեցնում են այդ մասին Նարեկացուն։ Վերջինս ներողություն է խնդրում, որ մոռացել է, թե օրը պաս է, և ասում է, որ հյուրերը հրաման տան աղավնիներին թռչելու։ Հյուրերն, իհարկե, այդ չեն կարողանում անել։ Ինքը՝ Նարեկացին նրանց տեղ հրամայում է, և աղավնիները կենդանանալով թև են առնում ու թռչում։ Եկողները, իրենց աչքով տեսնելով Նարեկացու սրբությունը, սարսափում են, և ամբաստանությունը խափանվում է։

Զ

Բիրտ և սուտ մարդիկք այպանէին զՆարեկացին և համբաւէին զնա ծայթ։ Եւ ժողովեալ ի մի վայր եպիսկոպոսունք և իշխանք՝ աղատանօք և տանուտերօք, եւ յղեալ կոչեցին զնա՝ առ ի դատել և յանդիմանել հրապարակաւ, և աքսորել զնա պատուհասիւ՝ որպէս զհերձուածող։ Եւ եկեալ առ սուրբն հրաւիրակքն զի տարցեն զնա։ Իսկ սուրբն գիտացեալ զխորհուրդս նոցաւ և կամեցաւ յանդիմանել զանմտութիւն նոցա։ Ասաց. Նախ կերիցուք հաց, և ապա գնասցուք։ Եւ ետ տապակել երկու աղաւնիս և բերեալ եդ առաջի նոցա սեղան։ Եւ օրն այն՝ ուրբաթ էր։ Ընդ որ ես տաւել զայթակղեցան հրաւիրակքն և ասեն. Վարդապետ՝ ո՞չ է օրս ուրբաթ. և նա իբրև յանգէտս եղեալ ասաց. Թողութիւն արարէք եղբարք, ես ոչ գիտացի թէ պահս է օրս այս։ Յայնժամ ասէ ցտապակեալ աղաւնիսն.

Արիք գնացէք ի տեղիս ձեր և յերամս. զի պահս է օրս այս: Եւ նոյն ժամայն ընդ ասել սրբոյն կենդանացան աղաւնիքն և թևս առեալ թռեան առաջի ամենեցուն: Եւ տեսեալ զզարմանալի սքանչելիսն որ եղեն, և ապուշ մնացին. և յարուցեալ անկան յոտս յերկիր պագին, և թողութիւն անձանց հայցէին:

Եւ գնացեալ պատմեցին զհրաշն որ եղեն: Եւ նոքա լռեցին ի չար խորհրդոցն և անուանեցին զնա երկրորդ Լուսաւորիչ և երկրորդ սքանչելագործ:

Է

Եւ սուրբն Գրիգոր ել արտաքս խաչ եհան ի վերայ եկեղեցւոյն, և թռուցեալ երեք աղաւնի եկն ի ձեռն վարդապետին: Եւ նա կալեալ, ետ ի մշակն զենուլ և խորովիլ: Իբրև ժամ եղև ճաշու, եդ նոցա սեղան և զաղաւնիսն ի միջի: Եւ զի էր օրն ուրբաթ, և ասէ. Հրամայեցէք ի ճաշել: Եւ նոքա հարցեալ ասեն. Վարդապետ, ո՞չ է օրս այս ուրբաթ: Եւ նա յանդէտս եղեալ, ասէ. Թողութիւն արարէք ինձ. ես ոչ գիտացի թէ ուրբաթ է օրս. բայց դուք հրաման տուէք գնալ յիւրեանց տեղին: Եւ նոքա ասեն. այս ոչ է մեզ կարողութիւն զայս առնել: Յայնժամ սուրբն Գրիգոր յիշեաց զանուն աստուծոյ, և խաչակնքեալ ի վերա տապակեալ աղաւնեացն, ասէ. Գնացէք յերամս ձեր: Յայնժամ նոցա թև բուսեալ և թռուցեալ գնացին յերամս իւրեանց: Յայնժամ սքանչացան նոքա և անկան յոտս վարդապետին: Եւ ելեալ արտաքս, տեսին՝ զի գայլքն բերեալ էին զոչխարն ի մէջ բակին: Եւ գայլքն անկան յոտս վարդապետին և սուրբ վարդապետն ասաց. Մեկ ոչխարն ձեզ լինի տարին մինչև ի կատարածին:

Ը

Եւ Գրիգոր ել և գնաց ի Սուրբ Կարապետն երկիր պագանել սուրբ գերեզմանի նորա: Եւ կատարեալ զուխտն իւր և եկեալ ի քաղաքն Մուշ: Եւ յանցանելն ետես մեռեալ մի զի տանէին և ետես ծեր մի զի զմորուսն փետէր ի վերա և պառաւ մի զծամերն ի դուրս տայր և հարսն մի քօղն ի վերա գլխոյն յետեն երթայր և այլ ժողովուրդ և յոյժ լային: Եւ Գրիգոր հարցանէր զպատճառ լալոյն և նոքա ասեն. Այս մարդս տէր էր հօրն և մօրն, և նոր էր պսակած եւթն աւուր և մեռաւ: Եւ տեսեալ սրբոյն զգթան արտասուք նոցա, գնաց զհետ զնոսա մինչ ի հանգստարանն և անդ արտասուօք յիշելով զանունն Աստուծոյ և խաչակնքեալ ի վերա մեռելոյն, առ-

ժամայն կենդանացաւ մեռեալն և ամենեքեան տեսեալ անկան յոտս նորա փառաւորելով զԱստուած։

Թ

Եւ սուրբն Գրիգոր եկեալ էհաս ի գաւառն Հարքիդ։ Եւ ետես զի գեղացիքն կռուէին ընդ միմեանս։ Եւ նա եհարց զպատճառ կռուոյն և նոքա ասեն. Գեղի հովիւն մեռեալ է, վասն այն կռուիմք, զի այլ հովիւ չկա։ Եւ սուրբն ասէ. Ի տուն նորա մարդ չըկա՞, որ զոչխարն արածէ։ Ասէն. Ոչ, այլ կին է և ութն որբ։ Ասէ սուրբն. Կամի՞ք զիս, ես զոչխարն արածեմ և դուք զվարձն տայք այն որբերացն։ Եւ նոքա սիրով յանձն առին։ Սուրբն տանէր զոչխարսն արածէր վեր գեղին, ոչխարքն կըեւնէին ի սարն, արածէին, յամանենայն ասւր և նա ի խնծորի ծառի տակն աղօթէր. և որչափ գայլ և գազան տեսանէին զոչխարսն և փախչէին ի նոցանէ. և յորժամ կթելու լինէր, ոչխարքն առանց մարդոյ գային ծառի տակն առ սուրբն Գրիգոր։ Յաւուր միում տեսին գեղացիքն, որ լոյս էր իջեալ ի վերա սրբոյն։ Արածեաց զոչխարն մինչև աշունն. առեալ չորս քիլայ հաց վարձ, ետ այն որբերացն, որ կերեալ զայն չորս քիլայ հացն ութն տարի։

Ժ

Նարեկացին ժամանակով աղքըտի տղա էր, էլեր էր խոտաղ։ Յոթ տարի խոտաղութեն էրաց։

Կոր եղ ըմ կեր (կար) էնոր տավրի մեչ. էտա յոթ տարիվան մեչ, օր ըմ չասաց թե՝ տու զիյան (վնաս) էրիր, օր ըմ էնոր հիշունց չետու (հայհոյել)։

Հըմեն դամ (միշտ) խոտըղներ կը խաղեն, խոտըղներաց կը ջոկվէր, կը նստեր, աղոթք կըներ։

Մեկ օր խոտըղներ անոթցան, էն գընաց բըռըմ քակոռ ժողվեց էպե (բերեց), իրեք դիր անուն սատըծուն էրաց, խաչակնքեց, քակոռներ դառցան թաժա լոշ, շորան (շոգի) էտու վերեն։

Տիրմ էրկու (մեկ-երկու անգամ) էնպես խաց կը պերա խոտըղներ կուտեն։

Խոտըղներ կը զարմանան, կասեն. Գրիգոր, կը խնդրենք, տու ո՞ր տեղեն կը պերես թաժա տաք լոշ։

Կասա. Ես կիամ (կգնամ) տնեն կը պերեմ, տյուըչ չըքչ ակխե (գլուխ ընկնել)։

Հա խոտըղներ էտա պես շըֆա (կասկած) կնեն վերեն։

Կը գան գեղ կը պատմեն։
Կը խաղցնեն, խոստ չի գա (չի խոստովանում)։

ԺԱ

Եւ եղեալ երկու վարդապետքն եկին ի տեսութիւն Նարեկացւոյն։ Եւ սուրբըն Գրիգոր Հոգւով իմացեալ զգալուստն նոցա, ելեալ առաւօտուն, ասաց միաբանիցն թէ՝ այսօր երկու վարդապետ գալոց են աստ, և դուք ասացէք՝ Հաց է տարեալ Հովուին։ Եւ ինքն զՀովուական Հանդերձն զգեցեալ ել և գընաց Հովիւ եղև ոչխարացն։ Եւ իբրև եկին վարդապետքն Հարցանէին թե՝ ո՞ւր է վարդապետն։ Եւ միաբանքն ասացին թէ՝ Հաց է տարեալ Հովուին։ Եւ գնացեալ տեսին զՀովիւն ոչխարաց և Հարցին ի նմանէ, թէ՝ ո՞ւր է վարդապետն։ Եւ նա ասաց. Ինձ Հաց եբեր և գնաց մօտ գուիթան։ Եւ նոքա ջուր խնդրեցին ի Հովուէն։ Եւ ասաց. Կացէք աստ, առ ոչխարն, ես երթամ ջուր բերեմ։ Եւ գնաց ի ձորամէջ տեղ մի քարաժեռ։ Յայնժամ յիշեաց սուրբն զանունն Աստուծոյ, և գաւազանն եՀար՝ ի քարաժեռ տեղին ջուր բղխեցոյց. և ելից ամանն և եբեր վարդապետացն։ Եւ նոքա առեալ խմեցին։ Եւ ազօթիւք սրբոյն ոչ պակասեցաւ ջուրն ի ամանոյն։ Դարձեալ լի տուին ի Հովուին։ Եւ Հովիւն ասէ. Դուք ծառաւ չէիք. ընդէր խնդրեցիք ջուր և ոչ խմեցիք։ Նոքա ասեն. Շատ խմեցինք, բայց քո վարդապետի շնորքն էր անկեալ ի մէջ ջրին, վասն այն ոչ պակասեցաւ։ Եւ ապա ասեն թէ՝ արի, եկ երթիցուք ցոյց տուր զվարդապետն Նարեկացին։ Եվ Հովիւն, խաչ եՀան ի վերա սարին։ Յերկու գայլ եկին, անկան յոտն Հովուին։ Եւ ասէ Հովիւն. Դուք արածեցէք զոչխարն, ես երթամ ցոյց տամ զվարդապետն Նարեկացին։ Եւ նա առեալ զնոսա, եկն ի գուիթան, եՀարց մշակացն թէ՝ զինչ եղև վարդապետն։ Նոքա ասացին թէ՝ գնաց ի վանքն։ Եւ նա ասէ. Եկ երթիցուք ի վանքն, տամ նշան ձեզ։ Առեալ գնաց ի մէջ բաղ՛ին և ասաց նոցա. Կացէք աստ, ես երթամ ասեմ նմա, որ ելանէ առ ձեզ։ Գնաց ի խուցն և զգեցաւ զգեստ վարդապետի, և ել ի դուրս՝ եւ ողջոյն վարդապետացն, տարաւ զնոսա, նստոյց։

ԺԲ

Եւ յայլում աւուր առու բերէին վանիցն։ Եւ Հանելով՝ ղառուն եկաւ Հասաւ ջոչ աՀագին քարի մի, և ոչ կարէին անցուցանել։ Եւ վարդապետն ասէ. Գրիգոր դու ել և գնա առ մշակն և Հնար մի արէք այն մեծ քարին։ Եւ գնաց սուրբն Գրիգոր և ետես զի աՀագին էր վէմն, և չէր Հնար մար-

դով անցուցանել զառուն։ Յերեկոյին այլ մշակքըն դարձան ի վանքն, և Գրիգոր մնաց անդէն։ Եւ վարդապետն եհարց նոցա թէ ուր է Գրիգորն։ Եւ նոքա ասեն. Մնաց ի տեղին։ Եւ վարդապետն յերեկոյին ել ու գնաց տեսանել, թէ զինչ առնէ մանուկն Գրիգոր։ Եւ գնացեալ ետես զի չոքեալ էր ի վերա ծնկաց իւրոց առաջի քարին և զձեռս իւր տարածեալ աղաչէր զԱստուած։ Եւ խաչակնքեալ ի վերա քարին առ ժամայն պատառեցաւ քարն և ջուրն անցուցեալ ի վանքըն եբեր։ Զայն իբրեւ ետես վարդապետն եղիշէ՝ փառըս ետ Աստուծոյ։ Եւ մանուկն Գրիգոր ասաց ի միտս իւր թէ՝ չէր պարտ գիտել զգործս իմ։ Ել և գնաց յերկիրն Ըռըշտունեաց, մօտ իւր քեռին Անանիա Շիրակվանցին, որ էր առաջնորդ վանացն։ Եւ վարդապետն Անանիա բան ետ Գրիգորի թէ՝ արի ռոգի հաց տար մշակներուն յարտն ցորենոյ։ Եւ նա առեալ գնաց առ մշակներն։ Եւ մշակքն սկսան ուտել. և ասեն Գրիգորի թէ՝ եկ կեր և դու։ Եւ նա ասէ. Իմ ճաշու ժամ չէ, դուք կերէք, իմ բաժինն պահեցէք։ Եւ նոքա կերան և ոչ թողին բաժին Գրիգորի։ Եւ ասին ցնա. Ծարաւ եմք, երթ գնա մեզ ջուր բեր։ Եւ նա գընաց։ Եւ նոքա գաղտ ի նմանէ ժողովեցին զփթիրն և եդին ի մէջար, և ծալեալ վերացուցին զսեղանն, և ելին ի գործ քաղուցն։ Եւ նա զջուրն եբեր ետ մշակացն։ Եւ նոքա ասեն. Գնա և կեր ըզքո բաժինն, ահա մեք թողինք քեզ։ Եւ նա գնաց, ետ զսեղանն առջև իւր և յիշեալ զանուն Աստուծոյ խաչակնքեաց ի վերա և եբաց, և տեսեալ հաց սրբոյն, և մշակքն ծաղր առնէին դաղտաբար։ Եւ տեսեալ զսքանչելիս զահի հարան և զարմացան և անկան յոտս սրբոյն Գրիգորի։ Եւ թողին զգործ քաղուցն, եկին առ վարդապետն և պատմեցին նմա զսքանչելիսն զոր արար Գրիգոր։

ԺԳ

Եւ սուրբն Գրիգոր ելեալ գաղտ գնաց յերկիրն Բզնունեաց ի Յարծկէ, ի ներքին Գաւզոխ։ Եւ անդ ի գիւղն մարդ մի կայր աղքատ և պարտական։ Նա ինչ մշակ, կամ հոտաղ բանացներ՝ վարձն չէր տար. զի պարտատէրքն կու տանէին, բան չէր մնայր, որ տայր։ Եւ այլ մարդ մշակ չէր մտներ մօտն։ Եւ տեսեալ մարդն այն Գրիգոր, ասէ մանկանն. Եկ ինձ մօտ հօտաղ, քեզ տարին 10 ղուռուշ տամ։ Ասէ Գրիգոր. Դրամով ոչ լինիմ քեզ մշակ. դու քո յանձն կառնես, որ յաւուրն երիս անգամ գալ եկեղեցի և աղօթել, առանց վարձու ես քեզ մշակութիւն առնեմ։ Եւ նա յանձն էառ աղօթել։ Եւ նա երեք տարի եկաց մօտն։ Եւ աղօթիւք Գրիգորի փարթամացաւ այրն այն, և եղև բազում ոչխարի, և գուէնի, տաւարի, ձիոյ տէր. և մեծացաւ յոյժ, և ազատաւ ամենայն պարտուց իւրոց։ Եւ Անանիայ քե-

ոին իւր լալով փոռոէր Գրիգոր յամենայն տեղիս։ Եւ շրջելով գնացեալ եհաս ի գիւղն Գազոխ. և յերեկոյին քարոզ ասաց ժողովրդեանն. և զընաբանն եդեր զքերականն, և զհետ քերականի ոճին ոչ գնաց, այլ ասէր վասն խոստովանութեան և զղջման։ Եւ յաւարտել քարոզին ելին ի դուրս և մարդիկքն ասեն թէ՝ լաւ քարոզ ասաց. իսկ Գրիգոր ասէ. Բարի էր, բայց ըստ առաջին քերականին որ եդ զընաբանն ոչ գնաց։ Եւ այն մարդն որ մօտ մշակին էր, գնաց առ վարդապետն և ասէ. Ճշմարիտ է, որ հրամանքդ քարոզ ասացիր, զքերականն ընաբան դրիր և ի հետ նորա ոչ գնացեր։ Եւ նա հիացեալ զարմացաւ, թէ զայս բանս ով իմացաւ։ Եւ նա ասէ. Մշակն իմ։ Եւ նա ասէ. Քո մշակն ուստի՞ իցէ։ Եւ ասէ. Օտար է և ոչ ճանաչեմ։ Եւ ասէ. Զի՞նչ անուն է նրա։ Եւ նա ասէ. Գրիգոր։ Եւ այնու իմացաւ, թէ իւր քեռ որդին էր։ Եւ ասէ. Յոյց ինձ զնա։ Եւ նա տարեալ եցոյց նմա։ Եւ տեսեալ զնա ծանեաւ և լալով համբուրեաց զնա և առեալ տարաւ յեկեղեցին և ուրախանայր ի վերայ նորա։

ԺԴ

Եւ գնացեալ Գրիգոր ի Մծբին քաղաք ի գերեզման սրբոյն Յակոբայ Մծբընայ հայրապետին, և հասանելն ի գետն Տիգրիս ի ներքոյ Ջզերոյ, որ բազում գետ խառնին ընդ նմա և կարմունճ մի կայր ի վերա գետոյն մի աչքէն, որ Բաւառ կարմունճ ասէին, և յանցանելն Գրիգորի և ի տեսանելն զարմանայր, թողութիւն մեղաց և արքայութիւն խնդրէր վասն կարմունճ շինողին։ Հրեշտակ տեառն երևեալ նմա, ասաց. Սորա շինօղն կրապաշտ է, մեռեալ է, և ի դժոխս։ Իսկ եթէ կամիս, որ Աստուած նորա արքայութիւն տայ, կենդանացոյ զմեռեալն. գերեզման սորա մերձ է առ կարմունճն. ցուցեալ զտեղին և գնաց։ Եւ գնաց Գրիգոր կանգնեցաւ ի վերա գերեզմանին, եկաց յաղօթս առ Աստուած և խաչակնքեալ ի վերա հողացեալ մարմնոյն։ Եւ հրամանաւն Աստուծոյ առ ժամայն յարուցեալ կենդանացաւ։ Եւ նա տայ նմա խոստովանել և երկիր պագանել Աստուծոյ։ Եւ առ ժամայն մկրտեալ արար զնա որդի Աստուծոյ։ Եւ դարձեալ խաչակնքեաց ի վերա նորա, իսկոյն մարմինն հող դարձաւ, և զհոգին տարաքեաց ի դրախտն Ադամայ։

ԺԵ

Մարդ մի կայր անունն Անդրէաս ի Աղթամարայ. և՛ կին ունէր ամուլ, և ոչ ունէին զաւակ։ Եւ առեալ զկինն եկն ի գերեզման Գրիգորի Նարե-

*կացւոյն, և խնդրեցին ի սրբոյն տալ նոցա որդի։ Եւ Աստուած բարեխօսութեամբ սրբոյն Գրիգորի ետ նոցա որդի և խնդացին յոյժ, և մկրտեալ զանունն եդին Գրիգոր։ Եւ տղայն եղեալ եւթն տարւոյ, կամեցան հայրն և մայրն առնուլ զտղայն և գնալ ի տապան սրբոյն։ Նստան ի գամի և եկին ի մեջածով Վարդավառի շաբաթ օրն. և յազդմանէ չարին ելաւ քամի և տարաւ զգամին յԱրճշու դէմ ի Ղարաքաշիշու յարջև։ Եւ անկաւ տղայն ի մէջ ծովուն։ Հայր ու մայրն յոյժ ողբացին, մինչև աչկներն կուրացան։ Եւ ելին ի ցամաք, և խնդրեցին զամենայն կողմանց և ոչ գտին զմարմին որդւոյն իւրեանց։ Եւ ելեալ կսկծանօք և դառն արտասուօք դարձան ի տունս իւրեանց։ Մնացին մինչև ի միւս տարի Վարդավառին։ Եւ գեղացիքն ասեն ցԱնդրէաս. Որդիդ անկաւ ի ծով և մեռաւ. դուք լալով կուրացայք. եկայք երթանք ի տապան սրբոյն, որ ձեր աչքն լուսաւորէ։ Եկին հասին ի վանից ջաղացըն. և այլ տղայքն յառաջ գնացին, զի համբուրեսցեն զգերեզման սրբոյն։ Եւ բացեալ զդուռն գերեզմանին, տեսեալ զմանուկն Գրիգոր նստեալ ի վերա գերեզմանին ջրաթաթախ և զարմացան։ Եւ դարձան ուրախութեամբ աւետիս ետուն ծնօղաց նորա թէ՝ մանուկն քո կենդանի է ի վերա գերեզմանի սրբոյն։ Եւ նոքա ոչ հաւատային, մինչև եկին յորդին իւրեանց։ Եւ ասեն ցտեսեալն որդի. պատմէայ մեզ, թէ զինչ եղև ընդ քեզ։ Եւ նա ասէ. Յորժամ անկայ ի ծովն, և այլակերպ մի զիս ըմբռնեաց և կամէր խեղդել զիս ի ծովուն՝ յայնժամ երևեալ Գրիգոր Նարեկացին՝ ունելով գաւազան ի ձեռին իւրում, և սաստեաց այլակերպ դիւին և ազատեաց ի ձեռաց նորա, և առեալ զիս՝ իջաւ ի ծովու տակն, և զգաւազանն էզարկ ի գետին և զփիլոնն ձգեաց ի վերա գաւազանին իբրև զվրան. ջուրն իբրև զկամար եղև ի վերա իմ. և խաչակնքեաց ի չորս կողմն՝ որ եղև լուսեղէն. և ես էի ի հանգստեան իբրև լուսեղէն դարպասի։ Եւ ասաց. Դու կացիր աստ՝ մինչ ես երթամ զուխտաւորաց խնդիրքն կատարեմ։ Եւ երկուշաբթի դարձաւ և երկու նշխարք եբէր ինձ, և ես կերայ և զօրացայ։ Եւ այսպէս յամեն շաբաթ օր երկու նշխարք բերէր ինձ։ Եւ այսօր ասաց ինձ. ահա քո հայրըն և մայրն կու գան ի գերեզման իմ յուխտ. եկ տանեմ քեզ և տամ նոցա։ Եւ կալեալ զիս և եհան ի ծովէն, յանկարծակի զիս ի վերա իւր գերեզմանին տեսայ։ Եւ զիւր ձեռաց աղլուխն ետ ինձ նշան, թէ՝ սովաւ լուսաւորէ ծնօղացդ աչքն։ Եւ յորժամ համբուրեցին զսուրբ դաստառակն՝ լուսաւորեցան աչք նոցա։ Եւ որք տեսին և լուան հիացեալ սքանչացան ամենեքեան ի փառս ետուն աստուծոյ և սուրբ վարդապետին Նարեկացւոյ։*

ԺԶ

*Օր ըմ Հրեշտակ կգա Հառճև, կըլնի անդամնալուծ, յարալու (վիրավոր) մարթ ըմ։*

*Գրիգորին կասա. Գրիգոր, կխընդրեմ, զի շըլկի Փայխըներ, ես յարալու եմ, չըմ կենա։*

*Ասաց. Շատ աղեկ, թըխ տավար նըստի ըստեղ, ես քե կտանեմ։*

*Գրիգոր կշլկա յարալուն, կտանի Փայխըներ։ Մարթն կասա. էդի մեր գեղ չի. զի տար Նոր-գեղ։*

*Կտանի դի՝ կասա. էս էլ մեր գեղ չի։*

*Քյամկեն գետին չտնա, որ յարալուին տեղ ըմ չցավի։ Էնպես շըլկած, կառնի տանի Բելու։*

*Կտանի դի՝ կասա. էն էլ մեր գեղ չի։*

*Տայեն կառնի, կգա։*

*Կասա. Դեո՞ր տանեմ։*

*Կասա. Զի տար Զախավանց։*

*Տարավ խասուց էն տեղ։ էլմ (դարձյալ) կյ ասաց անդամնալուծ. Կխնդրեմ, էս էլ մեր գեղ չի։ Ըստայեն (աստեղից) տար չում Պատականց։*

*Ընտեղեն կտանի Կաղագիչ։ Մեկ խոսքով յոթ գեղ տարավ։*

*Հյո՞ւ հյո՞ւ գետին չետի։*

*Ասաց. Զի տար դի ընտեղ, դեռ որ ձի շլկեր էս։*

*Կտանի էն տեղ, տավրի մոտ։ Կէճնի տակ, խալիվոր կտառնա ջահել տղեմ։*

*Կասա. Գրիգոր, ես հրեշտակ եմ։ Քե ջըրբեցի (փորձել), շատ չարչարում քե տվի։ Քու ծնունթ աստված օխնա։ Ինչ ասես, աստված կլսի։ Քու էրած աստված ընդունեց։ Յոթ տարի խոտաղ էլար, քընձ յոթ տարվան ճգնավոր հավել ընդունելի էլար աստըծու մոտ։ Տու մեկ օր եզան չասիր՝ կոր եզ, կամ հիշունց ըմ տեր։ Ինչ խիվընդի վըրեն ծեռ տընես, ապրելու ըլնի՝ ապրի, մեռնելու ըլնի՝ մեռնի։ Քու խոր-մոր հիշատակ ըլնես։ Խոտղության թարկի, գնա գրության։ Մեկ առնես, խազար սովրես։*

*Կօխնա ու կթողնա կերթա։*

ԺԷ

*Եկն Գրիգոր ի վանին իւր առ քեռին։ Եւ նա սաէ ցնա. Քո վարդապետն Եղիշէ վախճանեցաւ, երբ ի գերեզման նորա։ Եւ ելեալ գնաց, և տեսեալ զգերեզմանն վարդապետին իւրոյ, համբուրեաց զնա և դարձաւ ի վանքն իւր։ Եւ եկեալ եհաս ի դիմաց Սուրբ Վարդանայ։ Եւ Քրիստոս աղ-*

քրտի նման և անդամալուծի տեսեալ զի անկեալ էր ի վերա ճանապարհին, և Գրիգոր ողջոյն ետ նմա և կամէր անցանել։ Եւ ասէ ցնա անդամալուծն. Դո՞ւ ես Գրիգոր Նարեկացին։ Եւ նա ասէ. Այո՛։ Եւ ասէ. Վասն Աստուծոյ սիրոյն առեալ տար զիս ի վանքն։ Եւ նա ասէ. եկ ինձ հետ։ Եւ ասէ. Ոչ կարեմ. առ զիս ի քո շալակն և տար։ Եւ յորժամ եկին հասին ի վանից տակն ի ջաղացն, ջուր խնդրեաց աղքատն։ Եւ նա առեալ ջուր տայր նմա։ Եւ նա ասէ. Առուի ջուր մի տար, այլ տուր աղբիւրի ջուր։ Յայնժամ Գրիգոր աղօթեալ առ Աստուած և բղխեցոյց աղբիւր ի տեղին, և առեալ ջուր ետ աղքատին։ Եւ ասէ աղքատն. Ես ոչ կարեմ գալ ի վանքն ձեր, այլ զիս առեալ տարցես ի Վարագ։ Եւ նա հնազանդեալ նմա առեալ ի շալակն և տարաւ ի Վարագ և եդ ի գաւիթս եկեղեցւոյն։ Եւ մտեալ յեկեղեցին երկրրպագեաց սեղանոյն։ Եւ Մխիթար վարդապետն Կախիկ առաջնորդ էր Վարագայ. սիրով ընդունեաց զնա, և աղքատն ոչ տեսանէին։ Եւ յէտ երեք աւուր կամէր գնալ սուրբն ի տեղի իւր։ Եւ եկեալ առ աղքատն, ասէ. Կաց բարի, ահա ես երթամ ի տեղի իմ։ Եւ ասէ աղքատն. այս երեք օր է այս տեղիս եմ, և մէկն ինձ չասաց թէ՝ բարի եկիր. վասն աստուծոյ տար զիս ընդ քեզ, զի ես անտէր եմ։ Եւ առեալ ի շալակն իւր և տարաւ։ Եւ եկեալ եհաս ի դիմաց Գաւաղից։ Գրիգոր կաղաց և ոչ կարէր գնալ։ Եւ աղքատն ասէ. Վասն է՞ր կաղաս. ես ևս նեղացայ, դիր զիս ի գետին և հանգիր։ Եւ դնելն զնա ի գետին, դարձաւ յետս և ոչ ետես զաղքատն։ Եւ տեսեալ լոյս սաստիկ ծագեալ զանձամբն և հայեցեալ ի բարձունս ետես զտերն ի խաչին։ Եւ ձայն եղև ի խաչէն և ասէր. Ես այն աղքատն եմ, որ քո շալակն ունէիր այս վեց օր. և որ յետոյ ի քո գերեզմանն գայ երեք անգամ, գտցէ մեղաց իւրոց թողութիւն։ Եւ այլ ոչ ետես ըզնա։ Եւ եկեալ ի վանքն առ քեռին իւր։

ԺԸ

Եւ սուրբն Գրիգոր նստուցին յաթոռն առաջնորդ վանիցն, և հանապազ վարդապետէր ժողովրդեանն։ Եւ Գորգն տանուտեր գեղջին քառասուն մշակ ունէր գործաւոր, ոչ գայր եկեղեցին ի տեղի աղօթիցն։ Եկաց մինչ ի կիրակին և ասէր. Ընդէ՞ր ոչ գաս եկեղեցին։ Եւ նա ասէ. Շատ մշակ ունիմ, ես գամ նոքա ոչ բանին, և ոչ տայ ինձ ձեռն չբանիլ կիրակին։ Ասէ սուրբն. Եթէ տաս բանացնել կիրակին, դու բաժին լինիս սատանայի։ Իսկ Գորգն զայն էառ իւր սիրտն, և հեծեալ զձին գնաց յՈստան, և երկու քուրդ առեալ եբեր և եթող ի վերա վարդապետին։ Նոքա զնճիլ բերին դրին յատն վարդապետին, ի մէջ եկեղեցւոյն կախեցին գլխիվայր երեք օր։ Եւ աղօթիւք սրբոյն զնճիլն իբրև հալեցաւ, և արձակեցաւ վարդապետն։ Քուրդերն որ

*զայն տեսին, թողին և գնացին ի տեղիս իւրեանց: Եւ յետ քանի աւուր անհազորդ մեռաւ Գորգն ի գիշերի: Եւ առաւօտն խաբար բերին վարդապետին: Երբ որ լսեց, ասաց. Հողն մուտ չտայ մեռելին: Տարան զԳորգն թաղեցին, և յերեկոյին տեսին զԳորգն ելեալ ի յերես հողին: Եւթն օր օրն երեք անգամ կու թաղէին, հողն մուտ չէր տար մեռելին: Ընտանիքն ու ժողովուրդքն գնացին լալով ու անկան յոտս վարդապետին և առին զվարդապետն բերին ի վերա մեռելին: Յայնժամ Գրիգոր յիշեաց զանունն Աստուծոյ, և խաչակնքեալ ի վերա մեռելին: Եւ առժամայն յարուցեալ մեռեալն եկն անկաւ յոտս վարդապետին, երեք անգամ մեղայ ետ Աստուծոյ: Եւ սուրբն արձակեաց զնա ի կապանաց մեղաց իւրոց: Եւ ապա խաղաղացեալ մեռեալն, հողն մուտ ետ մեռելին:*

ԺԹ

*Եւ սուրբն Գրիգոր ել և գնաց Յապարանից սուրբ խաչն և երկու տարի պարտիզպան եղև վանիցն. և օրն մէկ անգամ քաղէին զպարտէզն: Եւ առաւօտուն երթային և տեսանէին զի այլ առաւել եղեալ էր: Մշակք ելին ի գիշերի գնալ գող ի պարտէզն: Եւ իբրև հասին ի տեղին և տեսին զի Գրիգոր աղօթէր բազկատարած ի վերա ծընկաց իւրոց: Եւ լոյս ծիրանածաւալ ելանէր ի բերանոյ սրբոյն և դարձեալ մտանէր ի բերան իւր: Եւ մշակացն տեսեալ զարմացան և գնացեալ ասացին վարդապետին: Եւ նա յարուցեալ եկն ի տեսանել: Եւ տեսեալ զհրաշն եկն անկաւ յոտս նորա և տարաւ ի վանքն և ծառայէր նմա իբրև հրեշտակի Աստուծոյ: Եւ նա ասէ զմիտս իւր. «Պարտ էր զի ոչ ոք գիտեալ զգործս իմ, այլ ոչ կարեմ կալ ի տեղիս այս». ել և գնաց:*

Ի

*Նարեկացին հոտաղ էր Ջեվիկ գյուղի տանուտերի մոտ: Մի օր դաշտում տիրոջ ոչխարներն արածացնելիս նա մի մեծ կարոս (բույս) է կտրում և խաչի ձև տալով, բերում է իր քառասուներկու գառնարած ընկերների մոտ: Սրանք սկսում են երկրպագել Կարոս խաչին: Հանկարծ խաչը թռչում է Գրիգորի ձեռքից, գնում նստում է ածուի մեջ և սկսում է փայլփլել: Նույն գիշերը գյուղի քահանային երազում պատվիրում են Կարոս խաչը դաշտից տուն բերել: Լուսանալուն պես քահանան կատարում է այդ պատվերը և տուն բերելով խաչը դնում է մի հատուկ տեղ: Խաչն անհատնում լույս է սփռում քահանայի տանը: Մի օր գյուղի գզիրը հյուր է լինում քահանայի տանը և իմանալով նրանից Կարոս խաչի գաղտնիքը, մտնում է տանու-*

*տերին։ Սա մարդիկ է ուղարկում քահանայի տունը, որոնք խլելով Կարոս խաչը բերում են տանուտիրոջ տունը։ Նույն գիշեր խաչը դադարում է լույս տալուց, իսկ առավոտյան էլ մտնում է Նարեկացու աղոթատեղի մոտ եղած հորի մեջ։*

ԻԱ

*Երկու վարդապետ կայր ի Սիս քաղաքին, նոքա լսեցին զգործսն սրբոյն Գրիգորի, լցին ջուր ի չափուկըն և առ Նարեկացին առաքեցին։ Իսկ սուրբն Գրիգոր իւր ձեռն առաւ գզած բամպակ և մէջն եդ պէծ մի կրակ, և ղուԹի մի ջրով ելից, և զբամպակն կրակով ետ ի մէջ ջրին, զբերանն փակեաց և առաքեաց վարդապետացն և երեք Թուղթ ընդ նմայ. Եւ յորժամ զմէկ Թուղթն բացեալ կարդացին, մեծ և փոքր եղեն սպիտակամօրուս։ Եւ զերկրորդ Թուղթն որ կարդացին՝ գարուն էր և դարձաւ աշուն, աղբիւրք և գետք ցամաքեցան, ջուր և պրտիկ եղան սև, այլակերպ իւրեանց երեսներն յետ դարձաւ։ Ապա մեղայ տուին սուրբ վարդապետին։ Եւ երրորդ Թուղթն որ կարդացին, որ էր օրհնութիւն, ամենեքեան, առաջի գոյնն և կերպն դարձան։ Եւ յորժամ զղուԹին բացին, տեսին զբամպակն, զկրակն և զջուրն ի մէկ տեղ, ոչ բամպակն էր այրեցեալ և ոչ կրակն անցեալ ի ջրէն. զահի հարան, զարմացան և փառս ետուն Աստուծոյ։*

ԻԲ

*Գրիգոր Նարեկացին գառնարած է լինում մեկի մոտ։ Մի օր տերը Երուսաղեմ է գնում՝ ուխտի։ Ժամանակ անց տանտիրուհին ասիդա (կերակուր) է եփում և ուտելու ժամանակ ինքն իրեն ասում է. «Երանի այս ասիդան հիմա ամուսնուս առջև լիներ»։ Գրիգորն ասում է. Տուր այդ ափսեն և ես անմիջապես Երուսաղեմ տանեմ... Եվ ափսեն առնելուն պես անհայտանում է։ Երեկոյան դեմ նա Երուսաղեմ է հասնում և կերակուրը տիրոջը տալով, պատմում է կատարվածի մասին։ Տերը չի հավատում Նարեկացու խոսքերին։ Գրիգորը ճշմարտությունը ապացուցելու համար, ասում է. Թող այս ափսեն մոտդ մնա, տուր ինձ մատանիդ։ Եվ առնելուն պես առավոտյան հասնում է տանտիրուհու մոտ։ Սա էլ չի հավատում Նարեկացուն, մտածելով, որ ամուսինը գնալիս մոռացմամբ տանն է Թողել մատանին։ Բայց երբ ամուսինը վերադառնում է և նա նրա բեռների մեջ գտնվում է ասիդայի ափսեն, համոզվում են, որ իրենց գառնարածը սուրբ է։ Կանչում են Գրիգորին և մեծ պատիվներ տալով նրան, ազատում են ծառայությունից։*

ԻԳ

*Եւ յարուցեալ սուրբն Գրիգոր գնաց երկիրն Ըռըշտունեաց, և եղ ի լեառն և եմուտ այրն գիմաց իւր քեռի վանիցն, եկաց անդ եւթն տարի. և աղօթեր. և ողորմութիւն խնդրէր։ Եւ ոչ ոք գիտաց զնա ի մարդկանէ։ Եւ յաւուր միում երևեալ նմա Մարիամ տիրամայր սուրբ Աստուածածինն։ Եւ հրամայեաց նմա գնալ Յերուսաղէմ յերկրպագութիւն գերեզմանին Քրիստոսի։ Եւ ասէ ցնա սուրբն. Դու ով ես, որ զայդ ասես յիս։ Եւ ասէ. Ես եմ մայրն Յիսուսի։ Եւ նա ասէ. Ես ոչ հաւատամ, թէ դու նա ես, եթէ ոչ տեսանեմ զքեզ նոյն փառօք որպէս տեսին երեք թագաւորքն մոգուց ընծայելն իւրեանց զնուէրս։ Եւ ի միւս օր առաւօտուն էջ տիրամայր Աստուածածինն անպատմելի փառօք ունելով ի գիրկն զմանկացեալն Աստուած։ Եւ նա սկսաւ շոքել ի վերայ ծնկաց իւրոց և ասաց ողբալով՝ «Աչքն ծով...» մեղեդին ի պատիւ նմա։ Եւ զի լոյս սաստիկ ծագեալ էր ի վերայ ծովուն և այրին, խօսեցաւ Աստուածածինն ընդ սրբոյն Գրիգորի և ասաց. Տաց քեզ շնորհս և իշխանութիւն առնել բազում սքանչելիս և հանել զդևս և բժշկել զամենայն ախտս ցաւոց ի մարդոց և յանասնոց. և որք ապաւինին ի քո բարեխօսութիւնն, ազատեսցին ի պարտուց իւրեանց, և որ ամուլ լինի կինն, քոյին խնդրուածովքն որդի ծնցի և ողորմութիւն գտցէ յԱստուծոյ. և այլ բազում նեղութեանց անդորրութիւն գտցեն։ Եւ քեռին տեսեալ զլոյսն զի ծագեալ էր ի վերայ այրին, գնաց տեսանել, թէ զի՞նչ կայ ի նմա։ Եւ տեսեալ զքեռ որդին՝ զարմացաւ և անկաւ յոտս նորա, և առեալ եբեր ի վանքն։ Եւ յետ քանի աւուր եղ ի մտի գնալ յԵրուսաղէմ։ Եւ գնացեալ եհաս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և շրջեալ յամենայն տեղիս տնօրինականացն և համբուրէր զամենեսեան ջերմ արտասուօք և եկեալ ի գերեզմանն Քրիստոսի։ Եւ ետես զՔրիստոս ի վերայ գերեզմանին և երկրպագեաց, և կատարեալ զուխտն իւր դարձեալ եկն ի Հայս։*

ԻԴ

*Գրիգոր Նարեկացին փախավ գնաց Հախբակու վանքն, եղավ պարտիզպան։ Ավուր միում ելավ առաջնորդն պարտեզն գնաց։ Գրիգոր սալա (գործված տափակ կողով) մի պարկուկ ժողվեց տարավ առաջեն։ Չորս պարկուկ առավ առաջնորդն, ետ Գրիգորի սրբույն։ Կերավ սուրբն Գրիգոր և կուտն հանեց բերանուն, նետեց։ Գիշերն առաջնորդն հուն պառկեցավ։ Գիշերն տեսավ առաջնորդն, որ չորս ճրագ կու վառի պարտեզն։ Ձայնեց փոքրավորիցն, թե վազեցեք տեսեք այն ինչ բան է։ Գնացին տեսան, որ չորս պարկուկի կուտն էր։ Եկին ասին։ Մտմտաց առաջնորդն, որ*

սրբույն Գրիգորի բերնեն հանած կուտն էր։ Ասաց, թե՝ հարցանեմ, թե այս ինչպես մարդ է։ Ինքն իմացավ, հոգով սրբով ելավ փախավ այն գյուղորեից։ Մեկ մարդ մի հորն համար մեկ քարե խաչ էր շիներ, պիտի բերեր առաջնորդն, որ օծեր։ Այն գիշերն նա լվավ, թե՝ տար, որ Գրիգոր Նարեկացին օծե։ Մարդն շալկեց զքարե խաչն, կերթար։ Հանդիպեցավ սրբույն Գրիգորի։ Սուրբն ասաց, թե՝ այդ ի՞նչ է։ Ասաց մարդն, թե խաչ է։ Ասաց սուրբն. Ո՞ւր կուտանես։ Ասաց, թե՝ գիշերս ձայն լվա, որ ասաց, թե՝ «Տար, որ Գրիգոր Նարեկացին օծե»։ Ասաց սուրբն, թե՝ կու ճանաչե՞ զնա։ Ասաց մարդն, թե՝ ոչ տեսեր եմ, ոչ լսեր եմ։ Ասաց սուրբն. Դիր ի վար, ես օծեմ։ Այն չի գիտե. մարդն չի տար, թե՝ ես երկնքից ձայն լսեցի, զան կու գտնիմ։ Ասաց սուրբն. Դիր ի վար։ Եբ վար ի դիր, սուրբն ի ծունկ անկավ։ Եբ կանգեցավ ու ձեռքն առ Քրիստոս աստուած տարածեց, անկարծակի լույսն հերկնից ճառագայթյալ, իջավ ի վերա խաչին կանգնեցավ։ Մարդն խաչն ձգեց, վազեց ի վանքն։ Լսեց առաջնորդն, ասաց, թե պարտիզպանն է, որ իրեն կու բռնեն։ Վազեցին, գնացին տեսան, որ քարե խաչին վրա լուսն կամար էր կապեր։ Վերուցին խաչն, բերին վանքն, վազեցին այսդես, անդեն, այլ չի գտան։ Ապա գիտացան, որ Գրիգոր Նարեկացին էր։ Անկե գնաց ի Վանա ծովուն անապատն՝ վաղճանեցաւ։

## 775. ՀՈՎՀԱՆՆԵՍ ԻՄԱՍՏԱՍԵՐ

Այնպէս փոյթ էր այրն յուսումն, մինչ զի պատահեաց յաւուր միում գնալ նմա յայրն, ուր գրեանն էին, և այլք ընդ նմա։ Իբրև ելին, որ ընդ նմայն էին, և փակեցին զդուռն, նա թաքոյց զանձն ի ներքս, այսպէս գիտելով նոցա, եթէ նախ ել նա։ Իբրև անցին աւուրք բազում ի վերայ, դարձեալ գնացին յայրն ի պէտս ինչ, տեսին զնա և սքանչացան։ Հարցանէին զնա, թէ որպէ՞ս ապրեցար առանց կերակրոյ և ըմպելոյ։ Եւ նա եցոյց զգրեանն, զոր ընթերցեալ էր. և ասէ՝ «Այդ է իմ կերակուր և ըմպելի, զոր կերայ և արբի զաւուրս զայսոսիկ»։

## 776. ՆԵՐՍԵՍ ՇՆՈՐՀԱԼԻ

Այս Ներսէս առաւելեալ էր իմաստութեամբ քան զկոլովս ի ժամանակի անդ ոչ միայն քան զվարդապետս հայոց, այլև քան զյունաց և զասորւոցն, այնքան՝ մինչ զի համբաւ իմաստութեան նորա տարածեցաւ ընդ ամենայն ազգս. մինչ զի իմաստասէր ոմն Կոստանդնուպօլսեցի, անուն

*Թէորա, լուեալ զհամբաւ նորա, բարձեալ զգրեանս իւր ի վերայ գրաստուց, եկն փորձել զնա և լսել զիմաստութիւն նորա։ Եւ եկեալ՝ զաւուրս բազումս խօսեցաւ ընդ նմա, և եգիտ զնա փորձ ամենայնիւ, այլև հոգւով սրբով տոլցեալ։ Եւ իբրև գնաց նա ի քաղաքն Կոստանդնուպօլիս, հարցանէին զնա, թէ ո՛րպէս էր համբաւն, նոյնպէ՞ս է, եթէ ո՛չ։ Եւ նա ասէ. Որպէս լուաք, սոյնպէս և տեսաք։*

## 777. ՄԽԻԹԱՐ ԳՈՇ

*Դէպ եղև երբեմն, զի պաշտօնեայք Գոշի զայրին գրաստիւք՝ բարձեալ գինի ի պէտս վանիցն։ Վրացի ոմն, Բասիլա անուն, եկեալ՝ բռնութեամբ կամէր առնուլ ի նոցանէ ի գինւոյ անտի, զի գործակալ էր նա Իւանէի ի վերայ մայրոյն, որ պահէր զտեղի իշխանի նորա։ Եւ պաշտօնեայքն ասեն ցնա։ Մի նեղեր զմեզ, քանզի Գոշին եմք։—Զի այսպէս կոչէին զնա մականուամբ, քանզի հեղգագոյն եկին ալիք նորա։ Իսկ թշուառականն անարգեաց զնոսա և զԳոշն հայհոյութեամբ։ Եւ իբրև եկն յայն տեղի, որ յիշէր զանուն նորա ձաղանօք, անդէն վաղվաղակի համրացաւ, և կապեցաւ լեզու նորա, և թիւրեցան շրթունք նորա, և այսպէս եկաց բազում աւուրս, մինչև հառաչանօք խնդրեաց թողութիւն։ Եւ ամենայն ոք, որ տեսանէր զայրն, գովէին զձառայն Աստուծոյ։*

## 778. ԱԼԻԾ

*Ասեն, թէ էր կոյս մի ի Տարսոն, և անուն Ալիծ, որ և նա էր գրագիր յոյժ հմուտ. գրեաց զայբուբենս, և ասաց թէ՝ Ով ոք որ սմա նմանեցնէ, նա է իմ տեսոյն արժանի. որ և գրեալ՝ բերին զերկուքն. ոչ հաւանեալ ասէ.*

*Ծայրըն ձային, ծակըն ծային՝*
*Չի նըմանիր գիրն Ալիծին։*
*Եւ դարձեալ ասէ վասն ուզողացն, թէ՝ Ով որ գրրէ՝*
*Զծայրըն ձային, զծակըն ծային,*
*Նա կու լինի փեսայ Ալծին.*
*Եւ ոմն ի նոցանէ գրեալ է գիր և հաւանեալ՝ ասէ.*
*Ծայրըն ձային, ծակըն ծային՝*
*Կու նըմանի գիրն Ալիծին։*

## 779. ԽՈՒԼ ԳՐԻԳՈՐ

*Ընդ այն ժամանակս էր պատուական վարժապետն և երաժիշտն և առաջին քարտուղարն Սսոյ՝ Գրիգոր, մականուամբ Խուլն։ Որ ասեն, թէ մոմ դնէր յականջն՝ առ ի չլսել զբանս աշխարհականս, վասն այն կոչեցաւ Խուլ Գրիգոր։*

## 780. ՍԱՐԳԻՍ ՊԻԾԱԿ

*Սարգիսս այս նոյն ինքն ճարտար Պիծակն, որդի Խուլ Գրիգորի, զորոյ և զմականուան ծագումն յայտնէ։ Որպէս թէ երբեմն յառնելն ծաղկի և ի նկարելն, պիծակ մի նստաւ հանդէպ նմա ի լուսամուտն, որ և շուտ նկարեաց զնա։ Զոր տեսեալ մերձակայիցն՝ կարծեցին, թէ պիծակն եկեալ նստաւ, զոր ձեռօքն վարելն նոցա զնա, ծիծաղեալ Խուլ Գրիգորն։ Ապա գիտացին գիրն, և զարմացեալ կոչեցին զնա Սարգիս Պիծակ։*

## 781. ՀՈՎՀԱՆ ՈՐՈՏՆԵՑԻ

*Սիսիանում առաջ կռապաշտներ են եղել, որոնք մեծ նեղություն են պատճառել հայերին։ Նրանք ծակել են տախտակները, անցկացրել հայերի վիզը և երկու կողմից մեկական մարդ նստելով, ման են եկել։ Մի օր մի այրի կին գնում է ջրաղացը աղունի։ Կռապաշտներից մեկը ուզում է բռնաբարել նրան։ Կինը փախչում է և գալով Հովհան Որոտնեցու մոտ, գանգատվում է։ Որոտնեցին իսկույն ձի է նստում, գնում է պարսից Շամ շահի մոտ և կռապաշտներին պատժելու համար զորք է խնդրում նրանից։ Գետն անցնելիս Որոտնեցին որ զինվորի ստվերը որ տեսնում է ջրի մեջ, նրան վերցնում է, իսկ որինը որ չի տեսնում, հետ է վերադարձնում։ Այդ պարսիկ զինվորների միջոցով նա ոչնչացնում է Սիսիանի կռապաշտներին։ Նրանց մեծամեծներին բռնում, նետում է կաթսաների մեջ և եփելով թափում է քարերի վրա։ Ասում են, թե Սիսիանի պարսիկները Շամ շահի տված այդ զինվորներից են ծագել և կոչվում են Ղզլբաշ (Կարմրագլուխներ)։*

## 782. ԳՐԻԳՈՐ ՏԱԹԵՎԱՑԻ

### Ա

*Մի անգամ, երբ Տաթևացին սովորելիս է լինում Տաթևի վանքում՝ վանահայրը հրամայում է նրան, որ փարչով ջուր բերի։ Գրիգորը ցույց*

է տալիս բերանն ու ականջները, կամենալով հասկացնել, որ բերանն ասաց, թող ականջը լսե, իրեն նման սրբին չի կարելի հրամայել։ Երբ վանահայրը չհասկանալով կրկնում է հրամանը՝ Գրիգորը նույնպես հրամայում է իր աշակերտներից մեկին, և երբ սա չի կատարում՝ անիծում է նրան, ասելով՝ գետինն անցնիս։ Աշակերտն իսկույն կիսով չափ գետնի մեջ է մտնում։ Վանահայրը խնդրում է Գրիգորին, որ հանի աշակերտին։ Գրիգորը կատարում է վանահոր խնդիրը։ Վանահայրն այդ հրաշքի մասին գրում է կաթողիկոսին։ Սա կանչում է իր մոտ Տաթևացուն։ Սակայն Գրիգորը չի գնում։ Կաթողիկոսը երկու վարդապետ է ուղարկում, որ բերեն։ Գրիգորը նրանց ներկայությամբ կշռում է մի փունտ կրակ, դնում է մի փունտ բամբակի հետ, փաթաթում է թղթի մեջ և տալով նրանց ասում է. Տարեք կաթողիկոսին և նրա ներկայությամբ կշռեցեք. եթե տված բաները կորցնեն իրենց քաշը ես ինքս կգամ։ Վարդապետները վերցնում գնում են և կաթողիկոսի ներկայությամբ կշռում են Տաթևացու տված բաները։ Նրանց քաշը բոլորովին նույնն է լինում։ Կաթողիկոսը բացականչում է. Գրիգորն արդեն կշռել է երկինք ու գետինք, նա անչափ իմաստուն ու արդար է։

Բ

Տաթևի վանքի ջրաղացի ջուրը մի գիշեր կտրվում է։ Բաց են անում, նորից է կտրվում։ Այսպես մի հինգ-վեց անգամ որ կտրվում է, հետևում են, տեսնում, որ ջրաղացի ջուրը կտրողը քաջքի ձագն է։

Նրան բռնում, տանում են Գրիգոր Տաթևացու մոտ։ Սա քաջքին պահում է վանքում։ Ասում են՝ «գնա ջուր բեր»։ Գնում է կուլան կոտրում, գալիս։ Ասում են՝ «տունն ավլիր»։ Աղբը լցնում է ներս։ Ստիպված ամեն բան հակառակն են ասում։

Մի օր էլ քաջքն ընկնում է Տաթևացու ոտները, թե ինձ ազատի վանքից, ես ձեր թոնիրների մոխիրը դուրս տամ։ Տաթևացին ազատում է նրան։

Հազար տարի է ինչ վանքի թոնիրներում հաց են թխում, բայց ներսը ոչ մի մոխիր չի մնում։ Ասում են, թե դա քաջքի արածն է։

Գ

Վասն է՞ր կոչեցաւ անուն նորա Գրիգոր...

...Եղև այս հրեշտակաց միջնորդութեամբ. զի դայեակ նորա յորժամ տարաւ զնա ի Կեսարիայ, և ի մերձենալ ի քաղաքն, նստաւ ի ներքոյ ծա-

*ռոյ ինչ՝ հանգչիլ։ Եւ եկեալ հաւ մի նստաւ ի վերայ ծառոյն, զոր ոմանք գուրգուր և ոմանք դոուն կոչեն, և ձայնեաց. «Գո՜ւր, գո՜ւր...»։ Իսկ իմացաւ դայեակն, եթէ հոգին սուրբ է ձևակերպեալ ի տիպ հաւու, որ ունի զնմանութիւն աղաւնոյ և անուանեաց զմանուկն՝ Գրիգոր։*

## 783. ՍԱՅԱԹ-ՆՈՎԱ

### Ա

*Սայաթ-Նովան Հախպատից Թիֆլիս գալիս Սուրբ Սարգիս եկեղեցու մոտ, բաստ է գալի մե օտարական աշուղի։ Էկող աշուղը հարցնում է. Մե աշուղ կա էստի, Սայաթ-Նով ին ասում. իս նրա գովասանքն Հալեբ, Ղեիսարի իմացա, շատ իմ ուզում նրա տեսնիլը։*

*Էստու վրա Սայաթ-Նովեն ասում է թուրքեվար. Բիլմանամ, գորմանամ, թանմանամ (չի՛մ գիդի, չի՛մ տեսի, չի՛մ ճանչնում)։*

*Օտարական աշուղը չէ իմանում, թե ինչ ասավ Սայաթ-Նովեն։ Սա հիդ դուբարա (կրկին անգամ) ասում է. Նրա տիղը ասի քիզ, բա ինչի՞ չիմացար։*

*— Չիմ իմանում, թէ ի՞նչ ասիր։*

*— Դուն վուր է՛ս խոսքերս չիմացար, բաս ի՛նչպես կուզիս նրա տեսնիլն ու մարաքումը (մրցում, վեճ) խառնվիլը. գնա՛ էսղանց, ռադ ըլի, թէ չէ՛ սազդ կու խլիմ։*

*Աշուղը մնում է նեհնիմ-նեհնիմ ննգած ու սառած, գնում է հիդ, էլ քաղաք չէ մտնում ահու։*

*Սայաթ-Նովեն իր խոսքերը ուրիշ մտքով էր ասի։ Նրա խոսքերու միտքը էսենց էր.*

*«Բի՛լ-ման ամ=իմացի՛, իս իմ,*
*Գո՛ր-ման ամ=մտի՛կ տու, իս իմ,*
*Թա՛ն-ման ամ=ճանչցի՛, իս իմ»։*

### Բ

*Ասում են, թե Իրանի նշանավոր աշուղ Շահադին Իսպահանից գալիս է Գյուրջիստան՝ Սայաթ-Նովայի հետ մրցելու։*

*Առաջինը սկսում է Շահադին, որի երեսուն հարցին Սայաթ-Նովան պատասխանում է ճշտորեն, ապա ինքն է սկսում հարցեր տալ։ Քսանհինգ հարցին ճիշտ պատասխանում է Շահադին, բայց քսանվեցերորդին կապ*

*է ընկնում։ Պայմանի համաձայն երեք հարցին չպատասխանողը համարվում էր հաղթված։ Սայաթ-Նովան երկրորդ ու երրորդ հարցերն է տալիս։ Չկարողանալով պատասխանել՝ Շահադին ցած է դնում սազը։*

*Սայաթ-Նովան, ձեռքը դնելով նրա ուսին, ասում է. Աշուղի պատիվն ու պարծանքն իր սազն է, ես քիզ չիմ զրկիլ քու սազից, վերցրու սազդ ու իմացիր, որ դին այրի (տարբեր կրոն) եղբայրներ ենք։ Շահադին տեղն ու տեղը երգում է.*

*Շատ երկրներ եմ ման եկել,*
*Շատ մարդիկ եմ ես տեսել,*
*Շատ աշուղներ եմ հաղթել,*
*Ոչ մեկն էլ Սայաթ-Նովին չի հասնի...*

Գ

*Պատմում են, որ մի անգամ վրաց Հերակլ թագավորը սաստիկ տրխրած է լինում. Նրա գերդաստանի անդամներն ու իշխանները ոչ մի կերպ չկարողանալով մխիթարել թագավորին, ճարները հատած, դիմում են Սայաթ-Նովայի օգնությանը։ Սայաթ-Նովան քամանչան ձեռին մտնում է Հերակլի սենյակը և առանց նայելու նրա տխուր դեմքին, համարձակ սկսում է իր երգն ու նվագը։ Շատ չանցած, խաղաղ խնդություն է գալիս թագավորի մռայլած ճակատին։*

Դ

*Սայաթ-Նովան մի անգամ Քռի ափին, Հերակլ թագավորի պալատի տակ քեֆ է անելիս լինում իր հին ընկերների հետ։ Նրանց հարայ-հրոցի ձայնը ընկնում է Հերակլի ականջը։ Իմանալով, որ այդ քեֆչիներից մեկն էլ մի քահանա է, վրաց թագավորը սաստիկ բարկանում է և մարդ է ուղարկում նրան հանդիմանելու և հեռացնելու համար։ Երբ Սայաթ-Նովային հայտնում են թագավորական հրամանի մասին, նա ասում է.*

*«Էրի վիղավի, բերի րա՞թ մենդոდա,*
*Բերի վիղավի, ղվդելի րա՞թ մինդոდა...»։*
*(«Աշխարհական էի, աբեղան ինչի՞ս էր պետք,*
*Աբեղա էի, քահանան ինչի՞ս էր պետք»)։*

Ե

*Ասում են, թե երբ Աղա-Մահմատ խանի զորքերը մտնում են Թիֆլիս, Սայաթ-Նովան աղոթելիս է լինում բերդի եկեղեցում։ Կողոպուտի հա-*

մար եկեղեցի խուժելով՝ խանի զինվորները պահանջում են Սայաթ-Նովայից անմիջապես դուրս գալ եկեղեցուց և ուրանալ իր հավատը։ Սայաթ-Նովան չի համաձայնվում և պարսից զինվորների թրերի տակ ավանդում է հոգին՝ ասելով. «Չըխմանա՛մ քլիսադան, դոնմանա՛մ Իսադան» («Չեմ դուրս գա եկեղեցուց, չեմ ուրանա Հիսուսին»)։ Մի քանի օրից, երբ պարսիկները թողնում են Թիֆլիսը, քաղաքացիք Սայաթ-Նովայի մարմինը տանում և թաղում են Մեծ բերդի եկեղեցու հյուսիսային փոքր դռան առջև։

## 784. ՔԵՇԻՇ-ՕՂԼԻ

### Ա

Նախիջևանում ապրող նշանավոր հայ աշուղ Թանժին մի անգամ հայտարարում է, թե ով իրեն հաղթի՝ քաշովը մեկ ոսկի կտա, իսկ եթե պարտվի՝ գլուխը կկտրի։ Մեկը մյուսի ետևից Թանժու հետ մրցելու են գալիս 39 աշուղներ։ Հաղթելով բոլորին, Թանժին նրանց բանտարկել է տալիս, որպեսզի հետո կտրել տա գլուխները։

Պատահաբար Նախիջևան է գալիս շուլավերցի հայտնի հայ աշուղ Քեշիշ-օղլին։ Մրցելով Թանժու հետ, Քեշիշ-օղլին հաղթում է նրան և պահանջում հասանելիք ոսկին։ Թանժին չի կարողանում կատարել խոստումը, որի համար և Նախիջևանի խանը գլխատել է տալիս նրան։

### Բ

Քեշիշ-օղլին և Ալավերդին հանդիպելով իրար, եղբայրանում են և երդվում այլևս թուրքերեն չերգել։

Մի անգամ նրանք միասին հրապարակ են դուրս գալիս, ժողովրդի առաջ իրենց շնորհքը ցույց տալու։ Տեսնելով, որ ինքը տանուլ պիտի տա Քեշիշ-օղլուն, Ալավերդին սկսում է թուրքերեն երգել։

Քեշիշ-օղլին դրա համար անիծում է նրան։ Երեք օր անց լուր է տարածվում, որ Ալավերդին էրզերումի ճանապարհին ձիուց ընկել է և մեռել։

## 785. ՄԻՍԿԻՆ-ԲՈՒՐՋԻ

Ասում են, թե Միսկին-Բուրջին շատ խաղամոլ մարդ է եղել։ Որտեղ գնացել, ինչ որ ձեռք է գցել՝ կամ սրան նրան է բաժանել, կամ ղումար (թղթախաղ) խաղացել, վատնել, փչացրել…

Մի անգամ Ղարաբաղում նա ղումար է խաղում Ջաֆար Կուլի-բեգի հետ։ Երբ բեգը տանուլ է տալիս ունեցած ամբողջ փողը, խաղի մեջ է դնում նաև վերարկուն, խանչալը և գլխարկը։

*Բուրջին այդ բոլորն էլ տանում է։*

*Խաղը վերջանալուց հետո բեգը մարդիկ է ուղարկում Բուրջու ետևից, որոնք հասնելով աշուղին, Ասկյարան բերդի մոտ սպանում են նրան։*

786. ԹՈՒՋՋԱՐԻ

*Ղարսի փաշան պատվիրում է Թուջջարին, որ նա բոլորովին նոր մի հեքիաթ ասի։ Թուջջարը նեղն է ընկնում. նայում է չորս կողմը, նշան է անում աշակերտին, որ այլայլված հետևում էր վարպետի անհանգիստ շարժումներին՝ ու հազալով, կոկորդը մաքրելով, անպատրաստից սկսում է մի նոր հեքիաթ հորինել (պատմելով և ներկայացնելով)։ Այդ ընթացքում Թուջջարն այնպիսի սրտաշարժ տեսարաններ է հորինում, որ փաշան սկսում է հեկեկալ։ Անսպասելի կերպով լաց է լինում և ինքը Թուջջարը։ Զարմացած աշակերտը մոտենալով իր վարպետին հարցնում է. Ուստա, դո՞ւ ինչու ես լաց լինում, հո գիտես որ պատմածդ հեքիաթը սուտ է։ Որդի,—պատասխանում է Թուջջարը,—ես լալիս եմ ոչ թե հեքիաթի ազդեցությունից, այլ թե ի՞նչպես պիտի վերջացնեմ այն։*

787. ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎՅԱՆ

Ա

*Երբ Աբովյանը դեռ պատանի է լինում, նրան երազում երևում է Գրիգոր Լուսավորիչը և պարգևում է լավ կարդալու շնորհքը։ «Ընչանք էն վախտը ըսկի չէր կարըմ կարդա. ամեն մի կիրը կըմկըմալեն էր ասում—հիմի ջրի ղայղա (պես) գնում է. ինչ գիրք որ դնում են առաջը, բիրադի (բոլորը) հավասար էր նրա համար»։*

Բ

*Խաչատուր Աբովյանը ռուսի թագավորի հետ պայման է դնում, որ եթե ինքը բարձրանա Մասսի գագաթը, թագավորը հայերին ազատություն տա։ Չի կարողանում բարձրանալ, դրա համար էլ ահից ու ամոթից գլուխն առնում կորչում է։*

Գ

*Աբովյանը մեծ ազգասեր լինելով, ժողովրդին գրգռել է ռուսաց թագավորի դեմ։ Թագավորը բռնել է նրան, սև կառետի մեջ դրել և ուղարկել Սիբիր։ Սիբիրի խորքերում նրան տեսել են սաստիկ ծերացած, սպիտակ*

*մորուքը մինչև գոտին։ Աբովյանը թեև չի հայտնել իր ով լինելը, բայց նրան ճանաչել են, և երբ հարց են տվել, թե՝ ե՞րբ պիտի դառնաս հայրենիք՝ նա պատասխանել է. Ցմահ դատապարտված եմ մնալու Սիբիրում. թեև շատ ծերացել եմ, բայց մինչև չտեսնեմ Հայաստանի ազատությունը՝ չեմ մեռնելու։*

Դ

*Սիբիրում ճամփորդող գերմանացի գիտնականները մի կորած-մոլորած գյուղում հանդիպում են երեխաների, որոնք իրենց հետ գերմաներեն են խոսում։ Երբ նրանցից մեկը զարմացած հարցնում է երեխաներին, թե նրանք որտեղի՞ց են գերմաներեն սովորել, երեխաները պատասխանում են, որ իրենց ուսուցիչը հայ գրող Աբովյանն է եղել։*

## ԲԻԲԼԻԱԿԱՆ ԵՎ ԱՎԱՆԴԱԿԱՆ ԴԵՄՔԵՐ

### 788. ԱԴԱՄՆ ՈՒ ԵՎԱՆ

Ա

*Աստված օր Աթամին ստեղծեց, անոր ընկեր ա Ալին (միականի հրեղեն ոգի) ստեղծեց։ Ասիկ հրեղեն էր, մե աչքանի։ Աթամ մարմնեղեն, հեչ իրարու չէին սազե, ատոր համար ա Աթամը հեչ չէր սիրե Ալին։ Աստված տեսավ օր Ալը չկրցավ ընկերութեն էնե Աթամին հետ, Եվային ստեղծեց։ Ատ վախտվանից Ալը դյուշման (թշնամի) ընկավ Եվային ու անոր ջնսին (ցեղին)։*

Բ

*Աստված օր զերկինքն ու զգետինք ստեղծեց պրծավ, ափ մե հող առավ զԱդամ լե ստեղծեց, սորա (հետո) թմբրութեն թափեց վրր Ադամա, ձախ կողերուց կողմե քաշեց ստեղծեց զԵվեն, զերկուս մեկտեղ դրեց ադամական (եդեմական) դրախտ։*

*Սատանեն օձու կերպարանքով մտավ ի Եվի խալբ (սիրտ), Եվեն խաբվավ, զպտուղ կերավ, տվեց Ադամին՝ Ադամ լե կերավ, մերկացան։*

*Աստված զԱդամն ու Եվեն դրախտեն տկլոզ (մերկ) դուս էրեց։ Մութ գիշերն օր էկավ՝ նստան լացին ու ողբացին, չընգինի (չգիտեին) թե լուս պտի էղներ։ Սատանեն էդ վախտ էկավ մըտ Ադամ, ըսեց. Ի՞նչ կիտաք օր լուս լուսցում վրր ձըզի։ Ադամն ու Եվեն ըսին. Ինչ կուզիս կիտանք,*

*թաքիլան (միայն) լուս բերիս։ Խաբեց գձեռագիր առավ թե չէ՝ աղոթրան ճղճղնավ (ճյուղավորել), լուս լուսցավ վըր արար աշխարքին. Նոր փոշմընան, լե (բայց) ինչ օգուտ, եղածն եղեր էր։ Էն ձեռագիր մնաց մըտ սատանին, հարի (մինչև) Քրիստոս էկավ աշխարհք, խլեց, դրեց խաչի տակ, հալավ կորավ։*

Դ

*Սատանան ցանկանալով վրեժ լուծել մարդուց, օձի կերպարանք է մտնում և համոզում է Ադամին ուտելու արգելված պտուղը։ Ադամը ուտում է, բայց պտուղը մնում է կոկորդում։ Երկար չարչարվելուց հետո Ադամին վերջապես հաջողվում է կուլ տալ, սակայն շատ ուժ գործադրելուց նրա կոկորդի մի ոսկորը մնում է դուրս ցցված։ Ասում են, թե այդտեղից է մնացել մարդու խռչափողի ոսկորը, որ ունի ադամա խնձոր անունը։*

Դ

*Սատանան ուզեց վրեժը լուծել մարդուց և իր վիճակին հասցնել։ Օձի կերպարանք մտավ ու գնաց Ադամին համոզելու, որ արգելված պտուղից ուտի։ Ադամը համոզվեց, կերավ, բայց պտուղը կոկորդից ցած չէր իջնում, ուժ տալով վերջապես կուլ տվեց, սակայն կոկորդի մի ոսկորը դուրս ցցվեց։*

Ե

*Եվան տեսնելով, որ Ադամը ամառը նեղվում է շոգից, նրա գլուխը փաթաթում է դդումի տերևներով և ջուր է լցնում վրան, որպեսզի հովանա։ Ասում են, թե երաշտի ժամանակ անձրև բերելու համար երեխաների կողմից Նուրին (=պուրպատիկին, խունձկուլուլու, չիչի մամա և այլն) ման ածելու սովորությունը այդ ժամանակներից է մնացել հայերի մեջ։*

Զ

*Ադամը դրախտից արտաքսվել է երեկոյան։ Նա երկար թափառել է գիշերվա խավարի մեջ և կորցրել է երբևէ լույսը տեսնելու հույսը։ Սատանան իմանալով, որ լուսաբաց է լինելու և արև է դուրս գալու, գալիս է Ադամի մոտ և ասում. Տուր ինձ քո հոգին և ես կվերադարձնեմ քեզ լույսը։ Ադամը համաձայնվում է։ Առավոտյան արևը դուրս է գալիս և Ադամը ամբողջ օրը վայելում է արևի լույսը։ Երեկոյան արևը նորից մայր է մըտ-*

նում և սկսում է թագավորել խավարը։ Ու այսպես շարունակվում է ամեն օր։ Ադամը հասկանում է, որ սատանան խաբել է իրեն, քանի որ ցերեկն ու գիշերը անպայման պետք է հաջորդեն իրար և ինքը զուր է հոգին ծախել սատանային։

Է

Ադամն ու Եվան դրախտից արտաքսված ժամանակ, երբ առաջին անգամ տեսնում են արևի մայր մտնելը, մեծ ողբ ու կոծ են անում։ Սատանան տեսնելով այդ, ասում է Ադամին. Քեզ լույս աշխարհ կհանեմ, եթե խոստանաս սերունդդ ինձ գերի տալ։ Ադամը համաձայնվում է և ի հաստատություն՝ դրոշմում է ձեռքը Սատանայի ներկայացրած աղյուսի վրա։ Նույն պահին Սատանան ցույց է տալիս Ադամին Արևելքը, ուր արդեն սկսել էր փայլել Լուսաստղը (=Արուսյակ) և ինքը աղյուսը Հորդանան գետը տանելով, թաղում է։ Երբ Քրիստոս գալիս է մկրտվելու Հորդանան գետում, կանգնում է այդ աղյուսի վրա, որը անմիջապես հալչում է, և Ադամի սերունդը ազատվում է Սատանային գերի լինելուց։

Ը

Դրախտից դուրս գալուց հետո Ադամն սկսում է պարապել երկրագործությամբ։ Նրա ընչասիրությունը փորձելու նպատակով, աստված երկիր է ուղարկում իր հրեշտակներից մեկին։ Հրեշտակը կերպարանափոխ լինելով՝ իրեն Ադամի եղբայր է հայտարարում և առաջարկում է նրան կիսել իրենց հասանելիք հողերը։ Ադամը հրաժարվում է անգամ մի գազ հող տալուց նրան։ Հրեշտակը բարձրանում է երկինք և պատմում աստծուն Ադամի վարմունքի մասին։

Աստված ասում է. Ես գիտեի, որ նրա աչքը միայն մի բուռ հողով կկշտանա։

Թ

Ադամ որ դրախտից էլավ դյուս, բաշլայից (սկսեց) խող վարել-ցանել, որ չը մնա անութի։

Աստված ուզեց Ադամ փորձել, խենք (նայենք) թըմախ (ընչասիրություն) ունի՞, թե չէ։

Էլավ խրիշտըկին մարթու կըլըղ (կերպարանք) մտուց, էօրօխկեց (ուղարկեց) մոտ Ադամ։

Ադամն էլ եզներն առեր էր, կնացեր էր արտ՝ վար-ցանք անել։

Խրիշտայն էկավ ասաց. Պարեով քե, ախպեր Ադամ, աստված կարողութեն տա:

Ադամն էլ ասաց. Աստծու պարին. տյու վո՞վ ես:

Խրիշտայն ասաց. Արե նստի, մեյ խա խանգստանանք. սորա (հետո) ես կասեմ ես վով եմ:

Ադամ եզներն առըրկեց, էկավ նստավ խրիշտըկի կուշտ, բաշլայիցին (սկսեցին) զրուցել:

Խրիշտայն ասաց. Կիտե՞ս ես վով եմ. ես քո ախպերն եմ, իկեր եմ, որ մեր խողեր խե քե (քեզ հետ) պաժնենք:

— Է, աղեկ, պարեով, խազար պարեով, էսօր էրթանք մեր տուն, մաաֆիր (հյուր) էլի զիկ (ինձ), նոր առատուն կուզանք կը պաժնենք:

Իրիկուն էլան կնացին տուն, կերան-խըման: Մնացին առավոտուն, էլան էկան տաշտ:

Տաշտ գյալու գյախ (ժամանակ), Եվեն ճոչ չըվանըմ (պարան) կուտա Ադամին, կասի. Տար, խորով (սրանով) չափի, չէլնի խրիշտակ քե խապի, ավելի խող առնի քեզնից:

Կէլնեն չըվան կառնեն կուզյան դաշտ, բաշլայեն (սկսել) խողեր կինել:

Էնա քե, էնա զիկ: Չում կուզյան, կը խասնեն էտա վարուկ արտի վերեն:

Չըվան կը տնեն, կը չափեն: Խրիշտակ կը բաշլայի էտա տեղ հիլահավլութեն (խարդախություն) անել, ըսկուն որ կը պիրի շատն կիսկի ուր, քարմ էլ կը տնգի նշան:

Էտա տեղ Ադամ կաբյուլ չանե (չի հանդուրժում), կը բաշլային խետ մեյմըկու կռիվ, շամաթա (աղմուկ) անել:

Ադամ քար կը վերցի կը տնա դեխ խրիշտըկի խող. խրիշտակ քար կը վերցնի կը տնգի Ադամի խողի մեչ:

Մեյ մըկու խետ խատած կը քաշեն: Ծեն ծու կըխանեն: Լեզվակռիվ կը տառնա ծեռնակռիվ. կը խասնեն դեխ (դեպի) մեմեկ: Խրիշտակ կը պռնի Ադամուն, կը տնի գյետին, ձեռ կը տնի բողազ, որ խեխտի:

Ադամ էլ խեխտըվել, մեխտըվել չիրիշկա, կը բաշլայի խրիշտըկի տկանց ոտնով քար կլորել դեխ խրիշտըկի խող:

Քիչըմ կավելուց վերչ, խրիշտակ կը քաշվի մեկ դեխ, կասի. Ախպեր, ես չը կիտի տյու ըտընամ (այդքան) թմախի տեր (ագահ) մարթ իր, պարեով էլնես տյու քո խողեր:

Ադամ կասի. Ես խողից եմ էլի, իսկի իմ աչք խողից կը կտրի՞:

Խրիշտակ ուր խրիշտըկութեն նշանց կուտա Ադամին, կը թոնի կէրթա։

Կէրթա Աստծուն կասի. Ադամի խողի թըմախ շատ ի. կըշտանալ չկա։

— Ես կիդիմ ըսկուն ի (այդպես է), ինոր աչք ափըմ՝ խողով մենակ կը կըշտանա։

Ժ

Հրեշտակ ամենակալին էկավ Ադամին սովրցուց վար ու ցանք էնելը, հարոր շինելը։

Ըսեց. Իտա հըմեն (այդ բոլորը) դաշտ ու դուրան քու առջեն է, գործ դիր քըղի, արտ վարե-ցանե, զքու իդարեն (օրապահիկ) էրե։

Լծեց Ադամ զուր արոր, քշեց հա քշեց։ Շատ ու քիչ գնաց, հրեշտակն եկավ՝ ըսեց. Հար հո՞ւր պտի էրթաս, սինոռ (սահման) մե դիր քու արտին, իդա խըտար (այդ չափ) տեղ քըզի կը հասնի՞։

— Ես ինչ գինամ սինոռն ի՞նչ է։

— Հորին (ինչու) չըս գինա, բեր ակոս մե թալինք հոդա (այստեղ), թըղ էղնի սինոռ մըջ ընձի ու մըջ քըզի. իդա դին (այս կողմ) ընձի, էն դին քըզի։

Էն վախտն օր զակոս կը թալեն՝ Ադամ ուր ագահութենեն ոտքով զկոշտներ կը թալեր վըր հրեշտակի դիուն, օր ուր արտ մեծ էղներ։

ԺԱ

Երբ Ադամը անուններ է դնում բոլոր կենդանիներին, էշը մոռանում է իրեն տրված անունը։ Նա մի քանի անգամ հարցնում է Ադամին, թե ի՞նչ է իր անունը։ Ադամը խիստ զայրացած բռնում է նրա ականջը և մի լավ քաշելով, գոռում է. «Է՜շ է, է՜շ է... հասկացա՞ր»։ Դրանից է ահա, որ էշերի ականջները երկար են։

## 789. ՆՈՅ ՆԱՀԱՊԵՏ

Ա

Ջրհեղեղի ժամանակ, երբ տապանը ջրերի վրա էր, մեկ մարդ լող է տալիս դպա տապանն ու գոռում.

— Նո՛յ ջան, ճոպանը (պարանը) քցե, տապանդ էլնեմ։ Միտքդ չէ՞, որ դու եղ չունեիր, քեզի մի տիկ եղ տվի։

Նոյ նահապետը չլսելու տվավ ու մտքի մեջ ըսավ. Ազատեմ, ետև պտի կանգնի, եղը պահանջե։ Թող ջրի տակն անցնի։

*Մեկ ուրիշ մարդ մոտեցավ ասավ. Նո՛յ, ազատի ինձի, դու լավ մարդ ես։ Էն տարին ալուր չունեի, մեկ չվալ ալուր փոխ տվիր։*

*Նոյ նահապետը տղոցը թե՝ ազատեցեք, խեղճ է։ Ու մտքի մեջ ըսավ. «Որ խեղդվի, ալուրս պտի կորի. ազատեցեք, կելնի, կաշխատի, պարտքը կուտա»։*

Բ

*Երբ ջրհեղեղն անցնում է և Նոյ նահապետը Մասիսի գագաթից իջնում է Նախիջևան, պատվիրում է իր որդիներին՝ ջուր ցողել իրար վրա, որպեսզի դրանով մարդիկ անմոռաց պահեն ջրհեղեղի հիշատակը։ Ասում են, թե Վարդավառի տոնը, որի ժամանակ երեխա և ծեր, տղամարդ ու կին տանը և փողոցներում, դաշտերում, գետերի ափին, աղբյուրների ու առուների մոտ կժերով իրար վրա ջուր են լցնում կամ իրար սուզում ջրի մեջ՝ Նոյի ժամանակից է մնացել Հայաստանում։*

Գ

*Նոյ նահապետի ժամանակ, երբ սա տապանն էր շինել տալիս, մի պառավ հարցրել է Նոյին, թե ջրհեղեղը ե՞րբ պիտի լինի։*

*— Երբ հարսը սկեսրոջ հետ խոսի, պատասխանել է Նոյը։ Մի առ ժամանակից հետո մի օր այս պառավը հարցնում է իր հարսին. Թոնիրը կար չընկա՞վ (չվառվեց)։*

*— Ուր ա թա կար ընկավ, էնքան փչել եմ, գլուխս տրաքվում ա,— պատասխանում է հարսը։*

*Պառավը սրա պատասխանից հասկանում է, որ ջրհեղեղի օրը հասել է, թե չէ հարսն իր հետ չէր խոսի. մոտենում է թոնրին, տեսնում է ջուր է դուրս գալիս, վազում է Նոյի մոտ և խնդրում, որ իրեն էլ վերցնի տապանի մեջ, սակայն սա մերժում է, ասելով թե՝ միայն մատաղահասներից պիտի վերցնի։*

Դ

*Սկեսրայրը հարսին ուղարկում է թոնիրը վառելու, որ հաց թխեն։ Հարսը գնում է, բայց չի կարողանում վառել, որովհետև թոնրի տակից ջուր էր դուրս գալիս։ Սկեսրայրը ձայն է տալիս հարսին, թե՝ «Ա՛յ հարս, ի՞նչ է պատահել, ինչո՞ւ չես վառում»։ Հարսը չխոսկան լինելու պատճառով չի կարողանում պատասխանել։ Սկեսրայրը գալիս է թոնրի մոտ, նորից հարցնում հարսին, թե ինչու նա չի վառում։ Հարսն այլևս չի դի-*

մանում և ասում է, որ թոնրից ջուր է դուրս գալիս։ Չխոսկանության օրենքը խախտելու համար Աստված պատժում է մարդկանց. թոնրի տակից դուրս եկող ջուրը վարարում է, դառնում մի մեծ գետ և ծածկում է աշխարհի երեսը։

Ե

Նոյ նահապետն օր տապանը պիտի շիներ, կանչեց ուստի մեկիմ ու ըսաց. Արի տապանս շինե, աղջիկս քեզի տամ։ Ասիկ էկավ, օր գիշեր սկսավ դատել։

Նոյ նահապետը տեսավ օր բանը շատ յավաշ (դանդաղ) կերթա, կանչեց ուրիշ էրկու դյուրկրի (ատաղձագործ) ա ու ըսաց. էկեք իմ տապանս շինեցեք, աղջիկներս կուտամ ձեզի։

Նոյ նահապետը ալայը (ընդամենը) մե աղջիկմ ուներ, հիմի իրեք մարդու խոստացավ, չունքի զան կեներ (կռահել) թը՝ ջրհեղեղին իրեքն ա խեղտին կը։ էղավ օր ատ ուստեքը տապանին գլուխը իրենց հըմար ա տեղ շինեցին ու ազատան։ Ազատան օրա՝ էկան Նոյ նահապետին քովը՝ աղջիկները ուզեցին։ Նոյը մոլըրավ մնաց, ունիր չունիր մե աղջիկմ ունիր՝ իրեք հոգու խոստըցեր էր, հիմի չիտեր վերին տար։

Մոլըրած օր պտըտիր կը՝ բիրտան (հանկարծ) տեսավ, օր իրեն սիպան ու շունը աղջիկ դառան, իսկ աղջկանը պես։ Վերուց անմեն մեկը մեկին տվեց։ Վախթմ անցավ՝ մէ օրմ՝ էլավ գնաց իրեն աղջկներուն տես։ Գնաց մեկին քովը, մարթուն հարցուց. Ի՞նչղ է աղջիկս։ Մարթը ըսավ. Լավ է, հըմը մե բանն է գեշ, ինչ օր խոսիմ կը՝ իշու պես կողը դեմ կուտա (չի լսե)։ Նոյը հասկըցավ, օր ատիկ էշն է։ Գնաց մեկալին (մյուսին), անոր մարթն ա զանգըտավ. թը շատ լավ է՝ հըմը ինչ օր կըսեմ, շան պես չամշյուրմիշ կենե (կը հակառակի)։ Նոյը հասկըցավ, օր ատիկա շունն է։ Գնաց մեկալին քովը՝ մարթը ոտքեն գլուխ շնորհակալ էղավ։ Ադ իրեքին ցինսն ա բազմացան։

Զ

Նոյն օր (որ) մտավ տապան, ջրհեղեղի վախտ (ժամանակ) Նոյա տղեկներուց (տղաներից) մեկն չկրցավ օր զինք զավթեր (իրեն զսպել), հելավ ուր անկողին. աղջիկմ՝ եղավ ուրին (իրեն)։ Ջրերն օր հիջան, Նոյն ու ուր ճժեր (երեխաներ) դուս պտի հելնեն, էն պզտիկ աղջիկ մնաց ներս։ Հրեշտակն եկավ հարցուց. Նոյ, էլ մարդ չմնա՞ց ի ներս։ Չէ՛, ըսեց Նոյ։ Թէ մարդ մանցեր (մնացել) է, էղնի աներևութք։ Թող էղնի,—ըսեց Նոյ

*ուր ահուն (վախից)։ Էն սհաթին (անմիջապես) աղջիկն էղավ աներևութք փերի, հընկավ աշխարք, քնու մեջ մոտեցավ մարդկանց հետ, զուր (իր) ցեղ շատցուց։ Մարդ օր մկա (հիմա) հերազափորձ (երազախաբ) կեղնի, սաբաբն (պատճառ) ի՞նչ է—էդ փերիքն են։*

Է

*Յորժամ Նոյ ի տապանն էր, ասացել են թէ տապանն ծակեցաւ և ասաց Նոյ. թէ ի կենդանեացտ ով որ կալնու զծակն, յորժամ ի դուրս ելանեմք, զորն ի կենդանեացս ուզէ, ես իրեն կերակուր տամ. և օձն կալաւ զծակն. և յորժամ ելան ի տապանէն, ասաց Նոյ. խնդրեայ, զորն կու խնդրես։ Եւ օձ ղրկեց զգոռեխն և ասաց. թէ տես, թէ որու արիւն անուշ է և ինձ ասայ. և գնաց զամէն կենդանեացն տեսաւ և գիտաց, զի մարդոյն շլնէցն արիւն անուշ է և յորժամ գայր խապար բերել, ծիծառն՝ սզօն հաւ է և ասաց, թէ ես և դուն եղբայր ենք. ինձ ասայ, թէ ո՞րն է անուշ. և նա ասաց, թէ մարդոյն շլնեցն. և ասաց, թէ զլեզուտ ի բերանս ած, որ տեսնում, թէ ըղորդ ես. և կտրեց զլեզուն ի տպակ և համեալ օձին ասաց. Զի՞նչ է. և սկսաւ գռեալ. և գիտացեալ օձին և փախաւ ծիծէռն. և օձին զհետ մտեալ էխած զագին և կտրեաց. և մնաց ագ ծիծըռան խոռ։ Եւ սատակէալ օձն այն... և այն է, որ խայթէ զմարդն՝ վասն խոստման Նոյի։*

Ը

*Աստծու հրամանով օր Նոյը տապանը մտնի կը՝ մե քանիմ՝ օրեն մե տեղմ ծակի՝ ջուրը նես լցվի կը։ Նոյը ինչով կալնե չի ըլլի, կենա ջուրը քանդե նես լցվի կը։ Օձը դառնա ասոր կսե կը թը՝ աղատ չէ (անկարելի է), դու չես կրնը ատ ծակը կալնե. ինչ կուտաս օր ես կալնեմ։ Նոյը թը՝ ինչ կուզես։ Ակյար (եթե) կալնեցի,—կըսե կը օձը,—թող օր ջանետ (մարմընիցդ) քիչմ արուն խմեմ։ Նոյի հոգուն էր հասե, տեսնի կ'օր չի ըլլի. օձը դուլուլի (կլորվել) բաթաթ կըռոի կ'ու, կալնե կը ծակը։ Քանիմ՝ օրեն հետև՝ ջուրն օր քիչմ կիջնի, օձը գելլե ծակեն, կերթա կը Նոյի քովը, կըսե. Տեսար, ծակը կալնեցի, տը թող օր ջանետ արուն խմեմ։ Լավ,—կըսե Նոյ նահապետը,—քիչմ կեցի։ Աս կըսե կու, կերթա մե ղռճա (ահագին) կրակմ վառե կը, բռնե աս օձին ցկե կը բոցերուն մեջը։ Օձը վառի, մոխիր կառի կը (դառնում է)։ Մոխիր օր կառի կը, Նոյ նահապետը մոխիրը լըլե կը բուռը, փչե կ'ու, կըսե. Տիա արունս խմել կուզեիր՝ լու դառի, խմե։ Օսա-*

*հաթ (Նույն ժամին) ատ մոխիրեն պըզտի-պըզտի կարմիր ճիճուներ գըլլին, լցվին կը Նոյի վրան։*

Թ

*Մուկը ապաստան գտնելով Նոյի տապանում, կրծեց և ծակեց տապանը։ Ջուրը սկսեց ներս լցվել։ Նոյը այս տեսնելով բարկացավ մկան վրա, որը գնաց մի անկյունում թաք կացավ։ Հետո Նոյը առաջարկեց մյուս կենդանիներին, որ փակեն տապանի անցքը, բայց ոչ մեկը չկարողացավ։ Վերջապես օձը ոլորվելով տարածվեց անցքի վրա և ծածկեց այն։ Երբ ջրհեղեղն անցավ, Նոյն առաջարկեց օձին՝ վարձատրություն ուզել իր մատուցած ծառայության համար։ Օձը հանելով լեզուն՝ մարդու արյուն պահանջեց։ Ծիծեռնակը, որ նստած էր Նոյի ուսին, հարձակվեց օձի վրա և կծեց նրա լեզուն։ Դրանից է, որ մինչև հիմա էլ օձի լեզուն միջից կտրված է։ Օձն էլ իր հերթին հարձակվեց ծիծեռնակի վրա և կծեց նրա պոչից։ Դրանից է, որ ծիծեռնակի պոչը երկու մասի է բաժանված։ Օձի խայթած տեղից երկու կաթ արյուն ընկավ՝ մեկը Նոյի վրա, և անմիջապես ոջիլ դարձավ, մյուսն էլ՝ գետին, որը լու դառնալով թռավ։*

Ժ

*Երբ Նոյ նահապետը իր տնկած խաղողի որթից գինի պատրաստելով՝ փորձում է համը, շատ խմելուց սաստիկ հարբում է։ Կորցնելով իրեն, Նոյը մերկանդամ պառկում ու քնում է։ Սեմն ու Քամը տեսնելով իրենց հորն այդ վիճակում, ծիծաղում և լուր են տալիս Հաբեթին։ Սա ծածկում է Նոյի մերկ մարմինը, որպեսզի եղբայրները այլևս չծիծաղեն։ Արթնանալուց հետո Նոյը անիծում է Սեմին ու Քամին, և օրհնում Հաբեթին։ Մի քանի օր անց, նա բարձրանում է Մասսի գագաթը և այնտեղից շնորհակալության զոհ մատուցում աստծուն՝ ի պատիվ խաղողի որդի և գինու։ Առաջին անգամ Նոյը զոհում է մի գառ, երկրորդ անգամ՝ մի կապիկ, իսկ երրորդ անգամ՝ մի խոզ։ Երբ Հաբեթը հարցնում է հոր հիշյալ կենդանիների զոհաբերության պատճառը, Նոյը պատասխանում է. Առաջին գավաթը խմելիս մարդ գառան նման հանգիստ ու անմեղ վիճակի մեջ է լինում. երկրորդին՝ կապկի նման զվարճաբան ու ծիծաղելի է դառնում. երրորդին՝ խոզի պես սկսում է թավալել տիղմերի մեջ... Այս ասելուց հետո, Նոյն ավելացնում է. Թող ձեզ խրատ լինի իմ օրինակը։*

## 790. ԿԱՅԵՆ ՈՒ ԱԲԵԼ

### Ա

*Մի անգամ չարը ագռավի կերպարանքով վերցրել է մի սատանի եղունգ և մորթել մի ուրիշ ագռավ: Կայենը այս տեսնելով ինքն էլ վերցրել է մի այդպիսի եղունգ և մորթել Աբելին:*

*...Սպանված Աբելի դիակը հողը չի ընդունել, որքան որ փորել են և թաղել, հողը դուրս է ձգել գետնի երեսը: Աստված հրամայել է ընդունել և միևնույն ժամանակ օրհնել է հողը՝ ասելով. Ամեն բան քեզանից եմ ստեղծում, ամեն ինչ քեզանից է ծնունդ առնում և քեզ է վերադառնում: Հողն ընդունել է Աբելի դիակը:*

### Բ

*Էրկու ախպեր էն լըմ, մնի անըմը Կայան, մեկելինը Աբել: Մը հետ էրկու ախպերն էլ ուզըմ էն սածուն մատաղ անեն: Կայանը բանչպար ա ըլըմ, Աբելը՝ չոբան: Աբելը ոչխարը բերըմ ա դյուզըմը կըղնըցընըմ, ըրխին խաչ քաշըմ ու ոչխարի միջից, սրտալի, մի թուխը-սախար ոչխար ա ջոկըմ, ձեռաց վե քըցըմ մորթըմ, փետ ու կրակ անըմ, սկըսըմ խըռվել: Կայանը վեր ա կալնըմ, անսիրտ-անսիրտ ցորենը խախալըմ, տակ ու գլուխը բերըմ, մատաղանա տալի ու ինքն էլ փետ ու կրակ անըմ, իր ջըկածը խըռվըմ:*

*Աստոծ մտիկ ա տայի տենըմ, վոր Աբելը սրտով տըվեց՝ նրա մատաղն ընթունելի ա անըմ:*

*Պոռթող-մոռթող, տակ ու գլուխ տվող Կայանի վրա աստված չրանըմ ա ու նրա ցորենի հասկերն անըծըմ, թե. «Թող քու ցորենը մի հասկանի մնա»:*

*Կայանը տենալով, որ աստոծ Աբելի ղոլը պահեց, մի օր Աբելին ոչխարի մեչ շվաքըմը խորը քնած վախտը վեր ա կալնըմ կովըզիգիգը (սև, սուր քար), բուգը դուս ա կտրըմ ու իրան չոմբախովը կրկածի կիսին տալի՝ ղուղը շաղ ա տալի հա սպանըմ:*

*Կայանն անպատիժ չի մնըմ: Աստոծ նրան շաշվացնըմ ա, սարերն ու հանդերը քցըմ...:*

### Գ

*Սատանան մի օր սև ագռավ է դառնում, սկսում է մի ուրիշ ագռավի հետ կռվել և սև, սուր քարով կտրում է նրա վիզը: Կայենը նրանից օրինակ առնելով, վերցնում է նույն քարը ու Աբելի վիզը կտրում:*

*Մինչև այսօր էլ Բաղեշի գյուղացիները Սատանի եղունգ են կոչում այն կայծքարը, և ուր որ տեսնում են, կոտրատում են։*

Դ

*Աբելից շատ էր նախանձում Կայենը։ Ուզեց եղբորը սպանել, խաբեց դաշտը տարավ, բռնեց դրեց գետին. բայց չգիտեր ինչով վիզը կտրեր։ Սատանան սև ագռավի կերպարանքով եկավ և ցույց տվեց սատանայի եղունգ քարը, որով Կայենը մորթեց իր եղբորը։*

## 791. ՀԱՅՐ ԱԲՐԱՀԱՄ

*Երբ Հայր Աբրահամը գնում է սարը Իսահակին մատաղ անելու, աստված հրեշտակի միջոցով մի խոյ է ուղարկում, որպեսզի Աբրահամը Իսահակի փոխարեն խոյին մատաղ անի։ Աբրահամն այդպես էլ անում է։ Մորթված խոյի բուրդը գզելու համար, այնուհետև, Հայր Աբրահամը խոյի ոսկորներից և աղիքներից մի գործիք է շինում և այդ գործիքով փորձում է գզել։ Սակայն ինչ որ անում է, բուրդը չի գզվում։ Հուզվելով նա լաց է լինում։ Աբրահամի արցունքները կաթում են խոյի բրդի վրա։ Հանկարծ Աբրահամի մոտ հայտնվում է Չարը (Սատանան) և ասում. Աբրահամ, ինչ կտաս ինձ, որ գործիքդ (անեղն ու չաքը) աշխատեցնեմ։ Աբրահամն ասում է. Ինչ որ ուզես։ Չարը պահանջում է Աբրահամից՝ աշխատանքից ու աղոթքից ազատ իր ժամանակը իրեն տրամադրել։ Աբրահամը համաձայնվում է։ Չարը վերցնում է խոյի ճանը, դնում լարի և տափի (գզրարի գործիքի մասերի անուններն են) միացման կետում, որով լարը սկսում է թրթռալ և գզել բուրդը։*

## 792. ՄՈՎՍԵՍ ՄԱՐԳԱՐԻ

Ա

*Պատմում են, թե Մովսես մարգարեն խնդրել է աստծուց, որ մի բան էլ ինքը ստեղծի, և ստեղծել է օթիզը՝ անասունների աղբից։ Սրանք խուռն թափվել են Մովսեսի վրա, որ վախենալով բացականչել է, թե՝ «Սա ինչ բան է, ես ստեղծեցի, ինձ վրա թափվեցին»։*

*— Թող առաջ ղսմաթը (բաժին) ստեղծեիր և ապա իրենց, որ իրենց ղսմաթովը ապրեին,—խրատում է աստված Մովսեսին։*

Բ

*Ժամանակին Մովսես մարգարեն խնդրում է աստծուց՝ թույլ տալ իրեն մի քանի օր կառավարել աշխարհը։ Աստված երեք օրով իր գահը տալիս է Մովսեսին։ Նայելով աշխարհին, Մովսեսը տեսնում է մի ծաղկած, ընդարձակ դաշտ, մեջտեղը մի ջրաղաց, շրջապատված բազմաթիվ գյուղերով։ Շատ չանցած նա նկատում է մի աղքատ, որբևայրի կնոջ, որը փոքրիկ տոպրակով ցորեն էր տանում աղալու։ Ջրաղացպանը բացատրում է կնոջը, որ այդքան ցորենը չի աղացվի, ուստի պիտի սպասի մինչև բեռով ցորեն բերեն աղալու։ Կինը, տոպրակով ցորենը թողնելով ջրաղացում, գնում է։ Մի հարուստ գյուղացի ջորիով մի բեռ ցորեն է բերում ջրաղաց և պահանջում է, որ ջրաղացպանը շուտով աղա։ Ջրաղացպանը դուրս է գալիս ջուրը բանալու։ Հենց այդ ժամանակ հարուստը տեսնելով որբևայրու տոպրակը, նրա ցորենից մի բուռ գողանում է։ Մովսեսը բարկությամբ հրամայում է, որ ջրաղացը փլչի հարուստի վրա։ Այդպես էլ լինում է։ Եվ հարուստը, ջորին ու ջրաղացպանը ջրաղացի տակ մնալով ոչնչանում են։*

*Աստված, որ հեռվից դիտում էր այդ բոլորը, հարցնում է Մովսեսին. Այդ ի՞նչ ես անում։ Արդարությունն եմ գործադրում, Տեր աստված,— պատասխանում է Մովսեսը։ Եթե ես քեզ նման արդարություն գործադրեի, աշխարհը վաղուց քանդված պիտի լիներ։ Իջիր իմ աթոռից։ Եվ Մովսեսը իջնելով աստծու աթոռից՝ գլուխը կախ գնում է առաջվա գործին։*

Գ

*Մի անգամ, երբ Մովսես մարգարեն բարձրանում էր սարը աստծու հետ խոսելու, պատահում է մի աղքատ մարդու, որ արյուն քրտինք մտած շալակով ցախ էր տանում քաղաք ծախելու։ Մովսես մարգարեն խղճահարվելով՝ ցանկանում է ողորմություն տալ աղքատին, սակայն մոտը փող չի լինում. տալիս է մատանին և պատվիրում, որ հետևյալ օրը գա ողորմություն ստանալու։ Աղքատը ապահովության համար մատանին պահում է բերանի մեջ։ Գետն անցնելիս հանկարծ սայթաքում է, ընկնում ջուրը և մատանին կորցնում։ Մովսես մարգարեն իմանում է, որ մատանին կուլ է տվել ձկներից մեկը։*

*Երբ վշտացած ծերունին պատմում է Մովսեսին մատանու կորստյան մասին, Մովսեսը մխիթարում է նրան և մի թաշկինակ լիքը արծաթ փող նվիրում։ Այս անգամ էլ ծերունու հարստությունը հափշտակում է մի թուրքին։ Մովսես մարգարեն իմանալով այդ, պատմում է աստծուն։ Աստ-*

*ված նրան տալիս է մի մետաղե դրամ և պատվիրում է այն տալ աղքատ ծերուկին։ Մովսես մարգարեն կատարում է ատծու պատվերը։ Ծերունին վերցնում է այդ դրամը և տուն վերադառնալիս դրանով մի ձուկ առնում։ Երբ կինը ճեղքում է ձկան փորը՝ գտնում է Մովսես մարգարեի տված մատանին։ Զարմանքը ավելի մեծ է լինում, երբ տեսնում են, թե ինչպես մի թռչուն թաշկինակով լիքը արծաթը կտցից վայր է դնում և ձկան փորոտիքը առնելով թռչում է։ Ծերունին մատանին և դրամն առած ուրախ ուրախ գալիս է Մովսես մարգարեի մոտ և պատմում պատահածը։ Մարգարեն ասում է. Ամեն մարդ իր ղսմաթն (հասանելիք) ունի, էս էլ քո ղսմաթն է, տար ու վայելիր։*

## 793. ԴԱՎԻԹ ՄԱՐԳԱՐԵ

*Ասում են, թե առաջին դարբինը Դավիթ մարգարեն է եղել։ Իբրև արդար մարդ նա երկաթը ձեռքով բռնել, դրել է կրակի մեջ և շիկացած հանելով այնտեղից, ծեծել է ծնկան վրա (այն ժամանակ ոչ գազ է եղել, ոչ էլ զնդան)։*

*Մի օր, երբ Դավիթ մարգարեն դուրս է գալիս արհեստանոցից, այնտեղ մնում է միայն աշակերտը։ Մի շուն է գալիս արհեստանոց, նստում աշակերտի կողքին, առջևի ոտները մկրատի ձևով դնում իրար վրա, գլուխն էլ դնում ոտներին։ Տեսնելով այդ՝ աշակերտը շան ոտների ձևով երկաթից մի գազ է շինում, մեկ էլ մի զնդան. գազով բռնում է երկաթը, դնում կրակի վրա, կարմրացնում և հանելով՝ ծեծում է զնդանի վրա։ Դավիթ մարգարեն գալիս է ձեռքը մեկնում, որ երկաթը հանի, ձեռքն այրվում է. մեկ էլ է մեկնում, էլի է այրվում. մնում է սառած։ Աշակերտին հարցնում է. էս ինչի՞ց է։ Նա ցույց է տալիս գազն ու զնդանը։ Դավիթ մարգարեն ամեն ինչ թողնում և դուրս է գալիս արհեստանոցից։*

## 794. ՍՈՂՈՄՈՆ ԻՄԱՍՏՈՒՆ

### Ա

*Սողոմոն Իմաստունը վերցնում է մի ապակե անոթ և մեջը բանտարկում է մի մրջյունի՝ հետը մի հատ ցորեն։ Մի տարի անց նա բաց է անում անոթը և տեսնում է, որ մրջյունը դեռ կենդանի է, իսկ ցորենի հատիկի էլ միայն կեսն է կերված։ Սողոմոնը զարմանքով հարցնում է մրջյունին, թե ինչո՞ւ է նա ցորենի միայն կեսը կերել։ Մրջյունը պատասխանում է. Տեր,*

*մտածելով, որ քո բարկությունը կարող է երկու տարի տևել, դրա համար էլ ցորենի միայն կեսը կերա, մնացածը պահելով հաջորդ տարվա համար։*

Բ

*Մե օրըմ Իմաստուն Սողոմոնըն ու իրեն տղեն նստած կեղնին։ Մե քյասիր (աղքատ) մարթըմ կուգա կըսե. Իմաստուն Սողոմոն, հինգ կոտ ցորեն ունեմ, ցանե՞մ, թե ուտեմ։*

*Իմաստուն Սողոմոնը կըսե. Տար ցանե։ Հըմը (բայց) տըղեն կըսե՝ «Հայրիկ, մարթը մեռնելու վրա է, թող չցանե, թող ուտե»։*

*Մարթը Իմաստուն Սողոմոնին կը լսե, տանի կը ցանե։ Կանցնի մե վախտըմ (ժամանակ), էտ մարթը կերթա ցորնին աշելու (նայելու)։ Կը մտնի արտին մեչը, դե՝ անոթի մարթ,—էլ չի կըրնա դուս գա, մնա կը մեչն ու մեռնի կը։*

*Իմաստուն Սողոմոնին տղեն հուր կըսե. Հայրիկ, քելե (գնանք) ման գալու։ Հերըն կըսե. Քելե։*

*Կերթան ման գալու, կը հասնին էտ մարթու արտին, կը մըտնին մեչը, ֆոտ (հոտ) կառնեն։ Իմաստուն Սողոմոնը կըսե. էս ինչ ֆոտ է։ Տըղեն կըսե. Հայրիկ, էսիկ քու բերնի ֆոտն է։ Ըսիր ցանե—ցանեց, մեռավ, հոտավ։*

*Իմաստուն Սողոմոնն իմացավ, օր տղի իմաստութենը իրենեն շատ էր։*

Գ

*Սողոմոն Իմաստունը մի նախրի մոտից անցնելիս ասում է, թե այսինչ կովի որովայնում եղած հորթի ճակատը ծաղկավոր է։ Նախրապանն ասում է, թե չէ՛, պոչն է ծաղկավոր, որ դրել է ճակատին։ Սողոմոնը մորթել է տալիս կովը և տեսնելով, որ նախրապանի ասածն էր ճիշտ, հարցնում է, թե ինչի՞ այդքան իմաստուն տեղովը նախրապան է մնացել։ Նա էլ պատասխանում է, թե իմ ծննդյան ժամանակ իմ ղսմաթի (բախտ) դուշը ոտը տարել պոզերն է քորել, դրա համար էլ ես չոր-չորացել եմ, իսկ քո ժամանակը՝ դմակն է քորել։*

Դ

*Սողոմոնն իր կնոջ հաճույքը գոհացնելու համար հրաման է արձակում, որ բոլոր թռչունները գան և թափեն իրենց փետուրները, դրանցից պալատ շինելու համար։ Ամենից վերջը գալիս է բուն։*

*— Զարագույծ բու,— ասում է Սողոմոնը,— ինչո՞ւ ուշացար։*

*— Տեր արքա,— պատասխանում է բուն,— իմ երամի բոլոր թռչունների հետ կարևոր ժողով ունեի, դրա համար էլ ուշացա։*

*— Ի՞նչ ժողով, հարցնում է արքան։*

*— Վիճում էինք, թե մարդկային ցեղի մեջ մեռնողնե՞րն են շատ, թե ապրողները։*

*— Բնական է, որ ապրողները շատ են, ասում է արքան։*

*— Ո՛չ, տեր արքա, մեր մեծամասնության կարծիքն այն է, որ մեռնողները շատ են, որովհետև կնոջից խաբվածն էլ մեռած հաշվեցինք,— ասում է բուն։*

*Այս պատասխանի վրա Սողոմոն Իմաստունը հրամայում է բոլոր թռչուններին առանց փետուրները թափելու ետ դառնալ։ Չղջիկը, որն արդեն թափել էր փետուրները, դրանից հետո մնում է անփետուր։*

**Ե**

*Սողոմոն Իմաստունին կնիկը սուտ հիվանդ գլլի, հեքիմին սիրե կը։ Իրեն մարթուն յախան (օձիքը) ա կպչիկը՝ թը հավքերու ոսկռներեն ինծի մե ղոնախանա (հյուրատուն) պիտի շինես, թեպուլներեն (փետուր) ա յորղան դոշակմ՝ (վերմակ և ներքնակ) սարքես։*

*Սողոմոն Իմաստունը կանչե կը հավքերուն, մորթե կ' ու ոսկռանքն ու թեպուլները թոփ կենե (հավաքել), օր կնկանը ուզածը հազըրե (պատրաստի)։ Աշխարք ինչքան հավք կա, գուգա կը, սալթ (միայն) քոռ բուֆը չի գա։ Սողոմոնը անղա զմրութին (արծիվ) ղրկե կ'օր գտնի բերե։ Անղա զմրութը ազմ (բավական) ման գուգա, անճաղ անճաղ (հազիվ-հազ) գտնի կը բնիմ մեջ, ինչքան կանչե ճվա կը՝ չի դուս գա, ահ կուտա՝ չի ըլլի, խոստում կենե՝ չի ըլլի։ Խյուլասա (վերջապես) բնին առաջը կայնի, սիրուն քարոզմ խոսի կը, ասիկ գելլե դուս։ Բուֆն օր դուս գելլե՝ ասիկ քարոզը ծալէ՝ ղըրկե կ'ուտանի կը Սողոմոն Իմաստունին։*

*Սողոմոն Իմաստունը հերսոտի (բարկանում է) կը թը՝ կանչեի կը, ինչի՞ չէիր գա։ Բուբըուն կըսե կը. Զոթք ցկեի (հաշվում էի) կը՝ թը աշխըրքիս մեջ տղամարդն է շատ, թե կնիկ մարդը, անոր ուշացա։*

*— Է, կըսե Սողոմոն Իմաստունը, իմացա՞ր, վերն է շատ։*

*— Թը՝ կնիկ մարդը շատ է։*

*— Ի՞նչղ (ինչպես), կըսե Սողոմոն Իմաստունը, տղամարդը շատ պիտի ըլլի։*

*— Ղորթ (իրավցի) է, կըսե՞ բուբըուն, հըմը ես կնկանը խոսքը*

անկած էնողին ա կնիկմարդ ցկի. կնիկմարդ չէ՞ անիկ որ կնկանը ձեռքը խաղալիք է դառե, կնիկը մինտրին տակը յուխա լցեր, սուտ հիվանդ է ձևացե ու հեքիմին սիրէ կը, մարդուն ա չարչըրելու հըմար հավքերուն օսկոտանքեն ղոնախանա գուզե: Ի՞նչքան հավք պիտի գտնես ջարդես, որ անոնց օսկոտանքեն ղոնախանա կայնեցընես:

— Խելացի ըսաց,—կըսե Սողոմոն Իմաստունը ինքն իրեն,—ես ա կնիկ մարտ եմ, որ կնկանս խոսքովը աշխըքի հավքերուն արունքը մտա: Արթղ բիտտուն (բոլոր) հավքերուն բաց թողնե կը, օրը իրեք ղուշ (հավք) ա բուբբուին կապե կը: Տեյ մ՝ օր հիմի ա օրը իրեք ղուշ իրենք իրենք գուգան բուբբուին առաջը կայնին կը: Բուբբուն էրկուսը կուտե, մեկը Աստծու սիրուն ազատե կը:

Գ

Սողոմոն Իմաստունի կնիկն մեզեց (մտածեց), թե Սողոմոն Իմաստուն բանով մի չի խափվի, քենի օ ինքը գիտնական ա, իմ մտքով պտի խափեմ, խավատից խանեմ: Սողոմոն էրուն-թռչնաց թագավորն ա. պտի սեմ, էրուն թռչուն, խավ, խավքեր ժողվա:

Կնիկն ա, գնաց, սաց. Սողոմոն Իմաստուն խրամանք էրաց. խավք ու խավքորեք, էրուն թռչուն ժողվան, էկան: Օ էկան, Սողոմոն սաց զուր կնկան. Կնիկ, քու սրտի բան ի՞նչ ա, սա օ ես կատարեմ: Իմ սելն էն ա, օ խավքի բըկից բերդմ շինես, օ ես մըջ էդ բերդին խանգիստ քնիմ:

Սողոմոն տեսավ հըմեն խավք էկած էն, հըմա քոռ բուվ չեկեր էր. ուր չավուշ (ստիկան) ճամբխեց քոռ բըվու հետևը. չավուշ գնաց, սաց.

— Քոռ բուվ, Սողոմոն քե կու ղանչա (կանչել). արի էրթանք:

— Դե գնա, սաց քոռ բուվ, ընձի խսապ (հաշիվ) կա:

Չավուշ դարձավ Սողոմոնի վերեն. սաց, ինչ օ սեր էր:

Հըմեն խավքեր հիվի էրին (աղերսանք արին). Մեկ քոռ բըվու հապով (պատճառով) մեզի հո՞րին պանտ էրեր էս. մեր էնած ինչ ա, մենք ձագու տեր էնք, մեղք էնք. ի՞նչ ա քու սելիք, սա:

Ձուր (մինչև) քոռ բուվ չգա, չեմ սեր, սաց:

Էմլ էլ (նորից) չավուշ յետ դարձուց: Գնաց էկավ, սաց. Չեկավ:

Մաշկաթիթեռ սաց. Սողոմոն Իմաստուն. իմ ձագեր անօթի խատան, մեռան. քու սելիք ի՞նչ ա:

Սողոմոն տեսավ, օ խավքեր շատ գանգատ կէնեն:

— Էրուն թռչուն, սաց, ձեր բըբկներու հապով ձեզի ղանչեր (կանչել) էմ:

*Մաշկաթիթեռ թողեց զուր բըբուկ. Ահա, ասաց, իմ ձագեր անօթի մեռան, ես կերթամ։*

*Մաշկաթիթեռ իմալ օ (հենց որ) զուր բըռուկ (փետուրներ) թողեց, էն գախ (ժամանակ) քոռ բուվ ներս մտավ։ Օ ներս մտավ, Սողոմոն ասաց. Անիրավ քոռ, հորին անդցար (ինչի ուշացար), էսքան վախտ էսա խավքեր քու հապով (պատճառով) պաքլամիշ (սպասել) կէնին։ Քոռ բուվ ասաց. Ընձի խսապ կեր (հաշիվ կար)։*

*Քոռ անիրավ. քեզի ինչ խսապ կեր, ասաց. էսա իրեք դիր (անգամ) քու հետե մարդ կու ճամբխիմ։*

*— Թագավոր ապրած, մեռելին ու կենդընին կու խսեպի (հաշվեի)։*

*— Քոռ անիրավ, մեռե՞լը շատ էր, թե կենդընին։ Ասաց. Մեռելը շատ էր խընչ (քան) կենդընին։ Ասաց. Քոռ անիրավ, օրեն խազար կու մեռի, խազար ու մեկ կու ծնի, հորի (ինչու) մեռելը շատ պտի էղի։*

*— Էն օ կնկա խափած ա, էն էլ մեռել կու խըսեպի։*

*Սողոմոն մտածավ. Քոռ անիրավ, ասաց, իմա՞լ (ինչպես)։*

*— Ապա դու էսա խավքեր ժողվեր ես, բեկըներ մոտեն կառխ. էրուն թռչունաց բեկըներե բերդ կու շինես զքու կնկա հապով. վաղն օր թա Սամել քամին (սամում) հելավ, զբեկըներ կու տանի, աշխարմ կու հանե դուս, դու կու մնաս մեղաց տակ։ Քենի օ դու կնկա խափած էս, դու էլ մեռել էս։*

*— Աֆարիմ (կեցցես) քոռ բուվ. ապրիս դու քոռ բուվ, ասաց. ու խրամանք էրաց օրեն իրեք ճնճուղ քոռ բվուն թալին։ Ճնճղներ մկա լե (այժմս էլ) ինքնիկ (կամավոր) կուգան. մեկ կուտա, էրկուս ազատ կենա։*

Է

*Սըղումուն Իմաստունը ինքը շատ մեծ իմաստուն ըլալ, շատ ալ մեծ քարոզուղ. քեցալ ա Փարավոն թագավորեն աղջիկն օզալ. ասալ ա՝ տալ չիմ, տու հո՞ւվ ըս, որ տամ, մըն բուզալա տղա ըս, տու կըկարիս որ ինձ նհետ կռեվ տաս, թա կարիս, աղջիգս կըտամ։ Ասալ ա՝ ինձ օխտն օր մոհլաթ տըր, պատրաստութուն տեսնամ, քեզ նհետ կռե տամ։ Սըղումուն Իմաստունը եռ ա տեռալ քեցալ տափեն տակեն հինչ որ շոռ կիվող կոն՝ մշերմնը, մոկնը, պըլուճ, բոուց թագավորնուն հրամայալ, թա Փարավոն թագավորեն ղոշունեն ամբարեն պիրիպասը հանց կքաշիք, որ զատ չմնա։ Բոտանք դոշանը օխտն օր թմամիլը թագավորեն ըմբարումը հինչ որ այլեր, պիրիպաս ըլալ, քաշալ ըն տափեն տակը։ Փարավոն թագավորեն*

երակացունեն քեցալ ըն տեսալ ըմբարումը ոչ այլեր կա, ոչ ցորեն, թամուզ պրծած ա. օխտն օրը որ թըմամում ա, Սըղումուն Իմաստունը հրամայում ա, թա՝ քու ղոշունդ ալ եր կալ, եկ փլան դյուզը, որ իմ ղոշունս ալ ա կյալու ընտեղ: Փարավոն թագավորեն ղոշունը կյալիս ա էն տյուզումը սանգյար տալիս, որ էգուց Սըղումուն Իմաստունեն ղոշունն ալ կյա: Ըրուգունը իրիքնակը մըրմուրեն Սըղումուն Իմաստունը հրամյում ա ծովեն թոխպերեն կյալիս ըն երգինքին իրեսը փըռնում, հանց որ քամե չի խաղ անե. երնա ալ հրամայում ա մոծակեն թագավորեն, մըն աման զըհար ալ տնում ընտեղ. մոծակնեն օման կյալիս ըն զընդըզնեն էն զըհարավը ճըրում, քինում երա տալիս Փարավոն թագավորեն ղոշունեն, ղոչանը լյուս էնքան կծոտում ըն, որ լափ օռչում ըն, իրեսնեն տընդըռնում, աչքընեն քըռանում, ալ ռուրուր տեսնում չին, ընգնում ըն մինմինու կըտորում: Պըծնողը քինում ա թագավորին կուշտը, թա՝ հանց հրաշակործութուն ա ըրալ, հանդ փանդ եկալ, օյին հանալ, որ մուք մինմինու կըտրալ ըք, համա ուրուն ղոշունեն ոչ մընին քեթը ըրնալ չի: Ըտեղ Փարավոն թագավորը տեսնում ա, որ առանց ղոշունի հաղթալ ա, ամբարը կրալ, թողալ լյութ՝ բաս ա կյալիս, թողթ կիրում, թա՝ ասե կյա աղջիկս տամ: Սուղումուն Իմաստունը ախչիկն օզում ա, եր օնում քինում: Էդ ախչիկն ալ կռապաշտ ա ընում: Կնգանը թողում ա տան, ինքը քինում երգիր քարոզելի: Կյալիս ա տեսնում, որ կնեգը շատ մալուր ա. «Խե՞ըս ըտի մալուր, տյուղնը չիս, ծարավ չիս»: Ասում ա. «Տու քինում ըս աշխարհք շռռ կյալիս, ես մնալիս ըմ ըստեղ մինակ, ինձ հետե մըն հանց օթախ շինի, որ թոռնը եշիմ ըրհա». թա՝ պա հինչա՞վ բըրհամ կըկյա. կնեգը եր ա օնում թա՝ ղուշերը պիր հըվաքե, ընտրանց թեփուռներան չաթան շինի, օթախեն ղրաղավը քաշի, որ թոռնը եշիմ՝ ըրհա: Սուղումուն Իմաստունը հրամայում ա, ղուշերը հվաքվում ըն. յափալաղը կյալիս չի. ղուշերեն թագավորը մարդ ա ղարկում պիրիլ տալիս: Կյալիս ա թա՝ տու խե՞ ըս էսքան հեյվանու մեղք ընգնում. հինչն ա բոլ, ծովեն ղրաղեն ղամիշը, ուխարեն ալ պուրթը: Պիրում ա հետո ղամիշա չաթան շինիլ տալիս, պրթա ալ քիչա օբա շինում, քցում երան, թա՝ թոռնը օզում ըս, եշի՝ ըրևա: Քեչաչաթանը էդ օրաց ա աղաթ ընգած:

Ալըհան քինում ա երգիր քարոզելի. կյամ ա տեսնում կնեգը տխուր. ասում ա՝ մհե՞նգ խե տխուր ըս: Թա՝ հունց չի ընիմ տխուր, տու աստված օնիս, պաշտում ըս, ես աստված չօնիկ պաշտիմ: Քինում ա մըն սանդուղ շինում, պիրում տընում պուճախումը, թա՝ էս ալ քու աստվածը տեսնա, երգըրպագութուն տուր:

*Մըն ալ ա քինում մհալումը քարոզելի. կյալիս ա տեսնում կնեգը ալըհան տխուր. ասում ա. Մհե՞նգ խե տխուր ըս, հեն ա տու ալ աստված օնիս։ Թա՝ դէիմ աստվածս ասում ա՝ շատ ալ ւշու երկիրպագութուն ըս տալիս, որ քու մարդ երգիրպագոթուն չի տալիս հինչո՞ւ ա պետք։ Սուղումուն Իմաստունն ալ թա՝ Ես աստված օնիմ, ես օրիշ աստծու երգրպագոթուն չիմ տալ։ Ելում ա տեսնում կնեգը դահի բեթահր տխրվալ ա, ասում ա՝ էն վախտը, որ քինիմ ծիս պիրիմ եր ընիմ, ղասիդ ղամչիս վեր ըմ քյալու, որ կռանամ եր օնիմ, գիտաց, որ քու կուռքեդ ըմ երգըրպագոթուն տալիս։ Քինում ա ծին քաշում պիրում, իրեսը տիքի կուռքն անում, ղամչին վեր քցում, կռանում ա որ եր օնե—ըտուունավ հանց ա օզում ըլալ կնգանը խաթրը խոշ անե—բիրդան հոգավ-մարմնավ կորչում ա։ Մհենգ էս ահաթս ալ Սուղումուն Իմաստունեն տեղը մահլում չի, գիտացվալ չի՝ քամե՞ ա տեռալ, հինչ ա տեռալ։*

Ը

*Սողոմոն ուղտ հեորեողկեց (ուղարկեց) հիտև ճրնճըղկուն։*

*Ուղտ գյընաց ճնճղկու պնի հառճև, կանչեց. Ճրնճղո՛ւկ։*

*Ճնճղուկ ասաց. Է՞։*

*Ասաց.—Արի՛, Սողոմոն քյե կը կանչա։*

*Ասաց. Ինգի ետ, ես էլա տյուս, լանգեմ՝ (աքացի) տը տամ մըշ քյու գյըլխուն, յոթ թաղկլ (գլուխկոնծի) առնես։*

*Ինչ ընցկոն (այդպես) ասաց, ուղտ սարփ-սարփ (քահ-քահ) ծծղաց, պերան քյեթրավ (ծռվավ), վիզ քյեթրավ, մնաց քյեթր։*

*Էկավ, գյընաց մըտ Սողոմոն։*

*Սողոմոն իրիշկեց (նայեց) ղուղտ, տեսավ ի՞նչ, վիզ քյեթրե, պերան քյեթրե։*

*Ասաց. Ուղտ, էտա քյե ի՞նչ ա էլե։*

*Ասաց. Ապա ես ճընճղկուն կասեմ՝ արի Սողոմոն քյե կը կանչա, ճրնճղուկ ձի կասա, ինգի ետ, որ ես էլա տյուս, մեկ լանգա (աքացի) կը տամ մըշ քյու գյըլխուն, յոթ թաղկլ առնես։ Թակավոր ապրած կենաս, ընցկոմ (այնպես) ձի ծաղր էկավ, եմ սարփութնից պերան էլ քյեթրավ, վիզն էլ։*

*Սողոմոն խընձ ուղտ շատ ծծղաց, ջաղամաթ (ժողովուրդ) չխո ծաղըու էլավ փետ։*

*Սողոմոն ասաց. Բազի՛ (բազե), վազի գյընա են քաջ ճընճղուկ առ, արի։*

*Բաղեն վաղեց վըր տռան, մեկ ուր ձեն խաղցուց, էրաց՝ ճյո՛ւ, ճյո՛ւ, ճյո՜ւ։*

*Կանչեց սսաց. Ծընճղո՛ւկ։*

*Ծընճղուկ սսաց. Հրամե։*

*Ասաց. Ընչի՞ սիգյա (չես ի գա) տուս։*

*Ասաց. Պատրաստ եմ, ըհա էկա։*

*Առեց, տարավ Սողոմոնի իրես։*

*Սողոմոն սսաց. Ծընճղուկ, էն ընչի՞ ես ըղտուն էսպես սսե։*

*Ասաց. Վոլա եմ կնիկ, եմ զոքյանչ էնտեղն են, ես զրոթ ըմ տվի (պարծենալ)։*

*Հըմեն էլմ էլ ծծղացին, սաին. Վոլա, ճընճըղկու խաբարն ա, հմեն մարթ ուր կընգան հառճև զըոթ կը տա։*

### 795. ԵՂԻԱ ՄԱՐԳԱՐԵ

Ա

*Սա մի շատ առաքինի մաշկակար է եղել, որ չկամենալով կանանց երեսը տեսնել մեծ և ծանր գդակ է ծածկել, որպեսզի չկարողանա վերև նայել։ Մի անգամ սատանան կնոջ կերպարանքով եկել է մաշիկ կարել տալու։ Նա ցույց է տվել իր փոքրիկ, գեղեցիկ ոտը, մի քիչ սիրախոսել։ Եղիան բարձրացրել է գլուխը և երեսին նայել։ Բայց իսկույն զգացել է, որ մեղանչեց, ձեռի հերոնը իր աչքն է խրել, կուրացրել։ Նույն վայրկյանին սատանան անհայտացել է, իսկ Եղիան էլ երկինք է համբարձել։*

Բ

*Եղիա մարգարեն վախթով մաշկակար էր, առաջը մոխիր էր ցանե, գալող մյուշտարին (հաճախորդ) ոտքը կոխեր կը մոխրին մեջը, կերթար, օր Եղիան եառ անոր աշե օտըմանը կարե։ Եղիան անքան բարեպաշտ էր, օր օղլուշաղին (կանանց) օտացը բիլա չէր աշե։*

*Մե օրմ՝ Չարը կնկա ղաբալով (կերպարանքով) բոըլիկ օտվիքը հլուն շարած գուգա Եղիային օտըման կարել տալու։ Անքան կը լակվըռթի (սեթևեթել), ասթին անթին գըյնի, օր Եղիան գլուխը վերցընե, կաշե տոոր ճերմակ թուխթուլիկ ոտներուն։ Չարը կերթա օրա՝ Եղիան նոր զըշա կը, ղարկե կը հերոնը աչքը, երկու լուսն ա կը հանե, բռնե կը Եղիսե աչկերտին ձեռքեն, գելլե քաղքեն դուս։ Մեմ՝ ա բիրդան բիրա (հանկարծակի)*

*էրկինքը կը բացվի ու հրեղեն կառքմ՝ գելնի, Եղիան նստի, համբառնա կը երկինք։*

Գ

*Կռապաշտները բռնելով Եղիա մարգարեին լավ ծեծում են և ստիպում, որ նա ասի «Իմ Աստվածս չկա»։ Եղիան ուտում է ծեծը, լաց լինում, բայց ոչ մի կերպ չի թույլ տալիս իրեն մեղանչելու աստծու դեմ։ Հանկարծ նրան երևում է Քրիստոս և ասում. Եղիա՛, թող քո արցունքները ջավահիր դառնան և ծավալվեն երկրից-երկիր։ Այդպես էլ լինում է։ Ասում են, թե ջավահիրը Եղիա մարգարեի արցունքներից է գոյացել։*

Դ

*Երբ Եղիան երկինք էր բարձրանում, Եղիսե աշակերտը խնդրում է նրան, որ հրաման տա իրենից հետո կաշեգործության մեջ վարպետություն անելու։ Եղիան հեռու լինելով՝ ոտքի մաշիկը վերևից ցած է նետում, ի նշան Եղիսեի վարպետության։*

## 796. ՀՈԲ ԵՐԱՆԵԼԻ

Ա

*Հովբի մոտ մի աղքատ եկավ. սա շատ զզվելի կերպարանք ուներ. շորերը պատառոտած և որդնոտ։ Ծառաները աղքատին դուրս արին, իսկ Հովբը նրան ետ կանչել տվեց և իր բաժակով գինի տվեց խմելու։ Որդերից մեկը ընկավ բաժակի մեջ. ծառաների սիրտը սկսեց խառնել և ուզեցին ծեծելով դուրս անել աղքատին։ Հովբը արգելեց նրանց այդ անելու, և որդնոտ բաժակի մեջ գինի լցնելով՝ խմեց։ Այդ միջոցին երկինքը բացվեց և մի պսակ իջավ Հովբի վրա, իսկ աղքատը հանկարծ աներևութացավ։ Այդ աղքատը ինքն աստված էր։*

Բ

*Ասում են մին արթար մարթ ա ըլալ՝ Հոփ Երանին։ Սատանան։ քյացալ ա աստծո կուշտը ասալ ա, որ էն ապրուստը ինձ տաս, ես էլ քե փառք կտամ։ Ասում ա՝ 40 տղա, 40 հարսը եթե Հոփ Երանին ձեռքան հանես, տեսնանք էլի քեզ փառք կտա՞։ Հոփ Երանին 40 տղան, 40 հարսը փչացան (մեռան)։ Հոփ Երանին իրեն ստեղծած աստվածը մոռացավ ոչ, էլի նրան փառք տվավ։ Մեկ էլ եկավ սատանան աստծու մոտ՝ թա դու էնչանքը*

*տարար հինչ արիր (40 հարսն ու 40 տղան), պիտի նրա ջանին* պատիճիս *(պատժես)* յարինի *(վերքեր) տաս, նրա ջանից ըմըլ կյա* պողոճնի *(=որդեր)։ Դա տհենց էլի յարալու աղոթում էր աստծուն։ էդ որդերից մեկը, որն ուտում էր Հոփ Երանիի միսը, ընկնում է գետնի վրա. Հոփ Երանին նայում տեսնում է մի որդ գետնի վրա և ասում. մեղա քեզ աստված, էս որդը աստված ինձ համար է ուղարկել։ Նայում է ձեռքին տեսնում է, որ ձեռքի երեսին պողոճի (որդի) տեղը բաց է մնացել, նայում տեսնում է պողոճը, ասում է. Ինչո՞ւ ես ընկել գետին։ Հոփ Երանին վերցնում է պողոճը (որդը) դնում մաշկի վրայի բաց տեղի՝ վերքի վրա։ Աստված էդ տեսնելով մտածում է, որ դրանից մեծ պատիժ չի լինի։ Էյդ նույն ժամանակ սատանան գնում է աստծու մոտ։ Աստված սատանային ասում է. էսքան պատիժ տվեցի Հոփ Երանին, դարձյալ ինքն ինձ մեղա եկավ։ Սատանան էստեղ աստծու կողմից անիծվում է.—Աշխարհի էրեսին քեզ ոչ բըրըքթ, ոչ ապրուստ ինի։ Ըստեղ միհինգ (=հիմա) յեր կացավ աստոծը Գաբրիել հրեշտակին ղրկեց, որ քինա Հոփ Երանին ասե՝ քինա քոն իլ (=գնա քնիր)։ Որ քինաց ասաց Գաբրիելը, էկավ աստծո մոտ, ասաց. Տէր, աստծդ ըրալ եմ։ Աստված ասում ա Գաբրիել հրեշտակին, թե նրա 40 հարսըն ու 40 տղան իրան երախայովը սաղացրա բեր իրենց տուն։ էդ չանքդ կտրելան ետը աստծու հույսն ու հավատը, սերը երանի (=փառք) տալով անունն էլ մնացել է Հոփ Երանի։ Աստված պղոճներ:ն խըշկընքեց, մեկը մղրաճանճ դառավ, մեկն էլ բրամա (շերամ)։ Մղրաճանճը և բրամ:ան Հոփ Երանին ջանան կերած պղոճնին էին։ Դրանա մինը ինչ մարդու կծալիս ա ըլել՝ մարդը փչացալ ա (=մեռել է)։ Քրիստոսը մտածալ ա, թա էդ ընցի՞ց ա, որ դա աղու (=թույն) ունի. մեկը փռնալ ա (=բռնել՝է) մի հատ մեղու բռումը, բաց է արել տեսել, որ ինքը՝ ճանճը ճակտան հետ շամ ա (մոմ) շինել, պատրիք ա ըրալ ուրան և Քրիստոսը ասում ա՝ էս քու գաղտնիքդ չիմացա. ասում ա՝ դէ որ էդպես ա՝ դու կծես, դու ստակես։*

## 797. ՀԱԲԵԹՆ ՈՒ ՍԱԲԵԹԸ

*Հետևելով Սողոմոն Իմաստունի քարոզներին՝ մարդիկ թողնում են վար ու ցանքը և սկսում են ճգնել լեռներում։ Տեսնելով, որ դրանից ոչ մի օգուտ չկա, Աստված հրամայում է Հաբեթին ու Սաբեթին զբաղվել երաժըշտությամբ։ Հաբեթը վերցնում է զուռնան, իսկ Սաբեթն էլ նաղարան, բարձրանում են մի սարի գագաթ և սկսում են նվագել։ Նրանց նվագը*

*ջուր է գալիս մարդկանց և մարդիկ թողնելով ճգնավորությունը, սարերից իջնում են աշխարհ։*

### 798. ՄԱԹՈՒՍ ԱՂԱ

*Մաթոս աղեն 999 տարի ապրավ. էն խըղար (այնքան) անկուշտ էր, օր խնդրեց աստծուց ուրին էլ ումր (կյանք) իտեր (տար)։ Աստված լե հրեշտակին ըսեց. Գնա Մաթոսին ըսե, թող զուր ձեռք զարկե վըր եզան պառեկին (մեջքին), ինչխըղար օր մազ հընկավ ձեռաց տակ, էնխըղար (այնքան) տարի լե ումր կիտամ ուրեն։ Մաթոս աղան եք հրեշտակից լսեց աստծու հրամանը, զփոր թալեց վըր եզան, հրեշտակ լե ինաղ էրեց (հակառակվեց) զհոգին առավ։*

### 799. ՌՈՒՌՆԱՅԻ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ

**Ա**

*Մեռաւ Ռունայ և մնաց երկու որդի և արտ մի իւրեանց հայրենի և յամէն տարի կու ցանէին և ի կալնի կէս կու առնէին և՝ տուն մի էր իւրեանց միջնակով՝ զկէսն ի մէկի դին կու լնուին, զկէսն ի մէկ. երփ կու տանէին, նայ փոքր եղբայրն թի մի երկուս ի յիր բաժնէն կու առնուր, ի մեծ եղբօրն ի դին կու լնուր, թէ իմ եղբայրն տղայոց տէր է և շատ խարճ ունի. թող նորա աւելի լինի։ Նոյնպէս մեծ եղբայրն կու լնուր, թէ իմ եղբայրն հարսանիք պիտի արնէ, որ իրենն մատաթ լինի։ Եւ զտանն դուռն փակեցին. և յորժամ կեփթային, որ հաց հանէին, դուռն չէր ի բացվիլ. և տեսին, զի լցվեց էր և դռանն էր առներ. և ձայն ընկաւ ի քաղաքն և ժողովեցան քահանայք և իշխանքն և իմացեալ զպատճառն և փառս ետուն աստուծոյ։*

**Բ**

*Ռունայի երկու որդիները բաժանվում են. մեծը ամուսնացած է լինում, փոքրը՝ ազապ (ամուրի). հալալ բաժանում են մալը (ունեցվածքը) և կալի մեջ դիզած ցորենի շեղջը։ Բաժանման առաջին գիշերը մեծ եղբայրը մտածում է, թե փոքր եղբայրս ազապ է, պիտի պսակվի, ծախսեր անի, նրան ցորեն տանեմ, ու ծածուկ իր շեղջից ցորեն է տանում լցնում եղբոր բաժնի վրա։ Փոքր եղբայրն էլ մտածում է, թե եղբայրս ընտանիք ունի, կարիք շատ ունի, ու ինքն էլ է ցորեն տանում։*

*Երկուսի տարած ժամանակ էլ ցորենը թափվում է երկնքի վրա. առավոտը վեր են կենում և երկուսն էլ նկատում են, որ իրենց շեղջից բան պակաս չէ։*

*Աստծու հրամանով ցորենը դառնում է աստղ ի տես մարդկանց, որ իրար սիրեն, օգնեն, և Քրիստոս երկրորդ անգամ գալուս այնտեղ պիտի իր աթոռը դնե ու դատաստան անե։*

## 800. ԱՍՏՎԱԾԱԾԻՆՆ ՈՒ ՔՐԻՍՏՈՍ

### Ա

*Մայրան Աստվածածինը մըն հետ բղանձատ ա օտում. Քրիստոս ալ հալում հեն ա ընում խատեն։ Մարդ ալ որ բղանձատ օտե, կաթնը շատ կըքըղցրանա։ Քրիստոս մտնում ա մորը գյուրգը ծեծ օտում, թա. Նանե, էս հինչ ըս ըլալ կերած, որ կաթնըդ էսչուքեն քաղցր ա։ Էն ալ օզում չի գյուզ ասե, թա. Դե յոնչա ըմ կերած։ Քրիստոս թա. Դե որ ըտի ա, թող մըն տարե վարին, օխտը տարե հարին։*

*Մարը փըշմանում ա, որ խաբալ ա, թա. Յոնչա չիմ ըլալ կերած, է՛, բղանձատ ըմ ըլալ կերած։ Թա՝ ալ ընցած ա, հինչ ասալ ըմ, ալ ասալ ըմ։*

*Ըտուր հետե ա, որ յոնչան մըն հետ որ վարում ըս, օխտը տարե հարվում ա։*

### Բ

*Մարիամ Աստվածածինը, Միածին օրդու օխտը տարեկան էղած քենը, ուղացիլ է նարա վարժատուն տալու։ Նա իրեն ազգական Եղիսաբեթին կերթա ու նարա կինդրե, որ իրեն հետ պարապար երթան մանուկ Հիսուսին վարժատուն տալու։ Եղիսաբեթը աղ օրը խայիլ չի ըլա սուրբ Մարիամի ասածին ու կասե. Ես ասօր չիմ կրնամ գալու, հարկավոր կար ունիմ անելու տեյին։ Սուրբ Աստվածածնի սիրտը կելլե ու կասե. Քուկդ կարը մուկերը թո կտրտին։ Տիրամարը ասիլեն վերջը կելլե մեյնակ կերթա ինքը, իրեն օրթուն վարժատուն կուտա։*

## 801. ՔՐԻՍՏՈՍ

### Ա

*Մի անգամ դաշտով անցնելիս Քրիստոսը հանդիպում է երեք մարդու։ Առաջինի համար նա քարերից մի ամբողջ հոտ է ստեղծում. երկրոր-*

*դի համար՝ դաշտը վեր է ածում խաղողի այգու. երրորդին տալիս է մի գեղեցիկ ու բարի կին։*

*Ժամանակ անց, փորձելու համար իր բարերարյալներին, Քրիստոսը հերթով հյուր է գնում նրանց մոտ։ Առաջին երկուսը շատ անհյուրընկալ են գտնվում։ Քրիստոսը նրանց պատժելու համար, մեկին իր հոտի հետ քար է դարձնում, իսկ մյուսի այգին՝ անտառ, իրեն էլ՝ արջ։ Երբ Քրիստոսը գնում է երրորդի մոտ, սա կնոջ հետ մեծ սիրով ընդունում են հյուրին և չնայած իրենց ծանր պայմաններին, պահում ու պատվում են նրան։*

*Այդ հյուրասիրության դիմաց Քրիստոսը կենդանացնում է տանտիրոջ մեռած որդուն, մորթված եզան ոսկորներից նորից եզ է ստեղծում, ոսկի է դարձնում այն ջուրը, ո՛րով լվացել էին իր ոտներն ու ձեռները։*

Բ

*Հայոց Աբգար թագավորը պիրալ ա ուրան ճոխտ աչքերը տյուս օնել տըվալ, թա որ տյուզ տիվան անե՝ հարուստն ան քյասիբը, բեազն ան բորհաթը ճոկե ոչ։ Քրիստոս աշխարհք շռռ կյալիս վախտը թա. «Թա եկ քինիմ մըն փորձիմ հունց ա շար կտրում»։ Կյալիս ա մըն պըռավու ղոնաղ ընգնում։ Քըշըհանը հղե ընգնելիս տեղը, էդ պըռավեն մըն վերթն ա ընում, խաչակնքում ա, կովը թողում ա, վազ տալիս ընգնում ճորուն տակը։ Եռան եր ա օնում, որ քինի. պառավը հարչանք հայ-հայ ա անում, թա. Իմ վերթն ա, ըշտեղ ես տանում։ Քրիստոս եշում չի, թա. Քու կվենն ա, եր կալ տար քցի կվեդ տակը, խե ա ճորու եռան կյալիս։ Ճոխտն ալ քինում ըն Աբգար թագավորեն կոշտը ի՛ենգատ։ Պառավն ասում ա. Տեր, մուք կենգատ օնիք, էս մարթս եկալ ա իմ տանս ղոնաղ ընգալ, մհենգ իմ վերթս եր ա կալած, քցած ուրան ճորուն տակը, տանում, թա՝ իմ ճորունն ա։ Քրիստոս ասում ա,—Իմն ա, որ ընդրանը ընի, կովեն տակեն կկենա, ճորու եռան կյալ չի։ Թագավորը միտք ա անում, ալ խոսում չի։ Քրիստոս ասում ա. Ես ճանապարհորդ ըմ, խե չիս մեր կենգատը կտրում։ Թագավորն ասում ա. Մըն օրիշ պեն կա, ընտրա ըմ մետք անում, ծեզանից առաջ մըն կնգատավոր եկալ ա ասալ՝ թա. «Ծավեն դրաղեն կյարի ըմ վառած, ծըկները տյուս ըն կյալիս օման քիչեր օտում։ Քրիստոս թա,—Պա ծուկնը—կյարի՞։ Թագավորը թա,—Պա ճորեն վե՞րթ։ Քրիստոս խաչակընքում ա, վերթը մորը տակն ա ընկնում, մարն ալ եր ա օնում։ Մըն ալ խաչակնքում ա, թագավորեն աչքերը սըղանում ըն, ինքն ալ անհայտանում ա։*

Աբգար թագավորը թա՝ Երանի քեզ, այ պառավ, էն Քրիստոս ըլալ, տու տեսիլ ըս, կըղափուն, որ ես հիմարութուն ըմ ըրալ, աչքերս հանալ, ընտուր տեսությունան զրկվալ։

Գ

Երեխա ժամանակ Քրիստոսին տվել են ներկարարի մոտ աշակերտության։ Մի օր վարպետը տեղ գնալիս, թել է հանձնում Քրիստոսին ու պատվիրում, որ մինչև վերադառնալը ներկի-պատրաստի, որպեսզի թելը հանձնեն տիրոջը։ Աշակերտը ներկում է թելը։ Գալիս է վարպետը, գալիս է և թելի տերը։ Սա շատ զարմանում է, երբ տեսնում է, որ թելերը իր ասած գույներով չեն ներկված։ Վարպետը բարկանում է աշակերտի վրա և ուզում է ծեծել․ բայց նա փախչում է դուրս։ Վարպետը բարկությունից տոփանը քցում է նրա ետևից, որը քարին դիպչելով՝ երկու կտոր է լինում և իսկույն ընկած տեղից երկու ծառ են բուսնում։ Վարպետի բարկությունը իջնելուց հետո, աշակերտը իր սխալն ուղղելու համար, նորից գալիս է ու նրա ներկայությամբ, նույն կարասից ամեն անգամ տարբեր գույնի թել է հանում։ Տեսնելով այս հրաշքը՝ վարպետն ասում է․ Ես չեմ կարող ինձանից հազար անգամ բարձր վարպետին աշակերտ պահել ինձ մոտ, և արձակում է հրաշագործ աշակերտին։

Դ

Քրիստոս քցալ ա մըն ներկարարու ղունլուղ արալ։ Մըն հետ ըրուգունը որ զանգը տվալ ըն, ուստան քցալ ա ժամ, Քրիստոսեն ալ ասալ՝ թիլը լըվանա, թակե, թակե դոշանը ուրան կյալը։ Դոշանը ժըմըտեղա կյալը, Քրիստոս լըվանում ա, տանում նի․ տալիս կըրասեն մաչը, կըրըսխառնավ խառնում։ Ուստան կյալիս ա թա՝ պա հինչ ըս ըրալ թիլը։ Թա՝ տարալ ըմ նի տվալ կըրասեն մաչը։ Կըզնըվում ա, քինում կըրըսխառնին եր օնում, ետան ընգնում, քմական որ պահ ա տալիս, քինում ա վեղումը ղարխ ընում․ Քրիստոս խաչակնքում ա, կըրըսխառնին կընանչում ա։ Ուստան վաշ-վաշ ընելավ քինում ա, թա՝ թիլս խարաբ ա տեռալ, որ կըրասան տյուս տա, տեսնում ա, որ թիլերը օման ալ ուրան օզածը ըռանգավը ներկված ըն՝ կյարմուրը ճոկ, տեղենը ճոկ, կանաչը ճոկ։ Ուստան կլխու ա ընգնում, որ էն Քրիստոս ըլալ։ Թա՝ ես մեղա աստծու, էն Քրիստոս ըլալ, ես ճընընչեցալ չիմ։ Մըն կըլխեն ա թխում, մըն ծընգանը, ալ ըշտե՞ղ, պենը պենան ընցած ա ընում․ ալ Քրիստոս ա՞ ետ տըռնալու։

Ե

*Քրիստոսը պոյաճում՝ (ներկարար) քով աշկերտ կը մտնի։ Ուստան պատւամ թել կուտա կօր ռանգ-ռանգ (գույնզգույն) ներկե։ Ասիկ (սա) վերցնե կու բիտուն (բոլոր) մե կարասմ՝ լըլե կը։ Ուստան օր տեսնի կը՝ կառնե փատմ՝ գըյնի հետևը։ Քրիստոս փախչի կը, ասիկ փատը հետևեն ցկե կը, օսահաթ (նույն պահին) փատը ընկած տեղը ծառ կը կտրի։ Ուստան գուգա հանե կը թելը, կաշե օր անմենքը մե ռանգմ (գույն) ներկըվեր է, զարմանա մնա կը։*

*Ներկարարի մոտից դուրս գալուց հետո, Քրիստոսը աշակերտ է մըտնում հյուսնի մոտ։ Մի անգամ վարպետը գերանի չափը տալիս է նրան և պատվիրում է, որ նշան արած տեղից կտրի։ Քրիստոսը երկու թզաչափ կարճ է կտրում։ Երբ վարպետը գերանը ուզում է տեղը դնել, տեսնում է, որ չափից կարճ է կտրած, սկսում է բարկանալ աշակերտի վրա։ Աշակերտը, տեսնելով վարպետի բարկությունը, գերանի ծայրից քաշում է և մեղրամոմի նման երկարացնելով՝ տեղն է դնում։ Վարպետը տեսնելով այս հրաշքը, քաղցրությամբ արձակում է իր հրաշագործ աշակերտին։*

Է

*Նըրկարարեն կշտան Քրիստոս քինում ա դյուլգարու մոտ. դյուլգարեն մըն ժուկ ծառայում ա։ Մըն հետ սրահ ըն ըլալ շինում. ուստան բրուգունը ժամու վախտ մըն կերան ա նշանց տալիս, երան խազում, թա՝ ըստեղան կտրե, ալ օրիշ պեն չիս անել։ Քրիստոս գիդալավ ըստեն ասած տեղը թողում ա, կարճ կտրում, հանց անում, որ հըսնե ոչ. դե ալըհան ուրան ծեռքավն ա ընցնոլու։ Ուստան ժըմըտեղան կյալիս ա տեսնում, որ ուրան ասած տեղան թողած ա, հանց կտրած, որ ալ ամալ կիվող չի։ Կղնվում ա թա. Հիմար, ես ըստեղաս ըմ ըլալ ասած, որ կտրալ ըս կըրճըցրա՞լ։ Թա—Դե ուստա, հի՞նչ կան որ, կարուղըք ըրգընցնիք, մեր ձեռքեն չի՞, համ մըն խրեգ ծիք կտաք։ Ուստան ծըծաղում ա, ուրան մաչին ասում՝ «էս առնի հիմար ա, մահլըմ փադը ծիք տալավ կըրգընանա՞»։ Քրիստոս թա՝ Ուստա, տու ձեռքդ տեղադ երա, հարե կերանեն, ես քաշիմ, ըրգընանա։ Ուստան Քրիստոսեն հիմարու տեղ տինիլավ, ձեռքերը երա ա հարում. Քրիստոս ծեռքը քցում ա, ծիք տալիս, ըրգընցնում, տանում ուրան տեղը ոննը անում. որ պրծնում ա, աներևութ ա տեռնում։*

*Ուստան մնալիս ա ախ քըշիլիս թա՝ պա էն Քրիստոս ըլալ, ես ճըընըչեցալ չիմ։ Շատ ա փըշմանում, համա դե հի՞նչ կարուղ ըլալ անե։*

Ը

*Երբ Քրիստոսը անցնում է ճանապարհով, բոլորը գնում են նրան տեսնելու, բացի ջուլհակից, որն ասում է. «Այս էլ վերջացնեմ՝ հետո. այս էլ՝ հետո», մինչև որ Քրիստոսը բոլորովին հեռանում, գնում է։ Տեսնելով, որ ամեն կարգի արհեստավորներ եկել են իրեն տեսնելու, բացի ջուլհակից, Քրիստոսն ասում է. Ինչքան աշխատես, կուշտ չուտես։*

Թ

*Ծերունու կերպարանքով Հիսուսը ուզում է հյուր լինել մի աղքատ մարդու տանը, բայց խստասիրտ տանտերը չի ընդունում նրան։ Տանտիրոջ կինը ամուսնուց թաքուն նրան տեղ է տալիս մսուրում և մի քիչ հաց ու ջուր է դնում առաջը։ Կես գիշերին տանտերն սկսում է տանջվել փորացավից։ Կինը օգնություն է խնդրում ծերունուց։ Քրիստոսն ասում է. Գնա՛, աղնիվ կին, ամուսինդ առողջ է։ Կինը գնում տեսնում է, որ ամուսինը առողջացել է։ Վերադառնում է, որ շնորհակալություն հայտնի հյուրին, բայց ծերունին արդեն հեռացած է լինում։ Մարդ ու կին նոր իմանում են, որ իրենց հյուրը Քրիստոսն է եղել։*

Ժ

*Քրիստոսը աղքատի կերպարանքով կերթա տուն մը հյուրընկալություն կը խնդրե։ Կինը կը մերժե, էրիկը կըսե որ ներս առնեն. կովուն մսուրը անկողինը կը ձգեն. ուտելու համար խոռ պնակով մը թթու թան, գարիի հաց կուտան, կուճուկ դգալով մը։ Քրիստոսը կուտե, կպառկի։*

*Կես գիշերուն տնեցիներուն հարսը ծանր խոցտուկի մը կբռնվի, ճարահատ՝ կըսեն որ աղքատ մարդուն դիմենք, նայինք դեղ մը գիտե։ Կդիմեն։ Այս աղօթքը կըսե ու խոցտուկը կդադրի։*

*Քրիստոս ներս հուր էր,*
*Օթեվանքը մսուր էր,*
*Խոռ պնակիկ,*
*Թթու թանիկ,*
*Կուճու դգալիկ,*
*Թունյի կտիկ,*
*Տուր (այսինչին) բժշկություն։*

ԺԱ

— *Քրիստոսը անցնում էր մի աղքատիկ գյուղով։ Գյուղացիներից մեկը հրավիրում է նրան իր տունը, մի պռատ (կոտրված) խան (ցորեն չափելու աման) դնում՝ վրան նստելու և մի պոչիկ (պոչը կոտրված) գդալ գցելով թթու թանի մեջ՝ առաջարկում է ուտել։ Քրիստոսը սիրով ընդունում է այդ աղքատիկ, բայց սրտանց հյուրասիրությունը։ Գիշերը, երբ տեսնում է, որ տանտիրոջ երեխան տանջվում է փորացավից, ասում է հետևյալ աղոթքը և անէրևութանում.*

*Ինքը սուրբ*
*Տեղը մաուրք,*
*Թթու թան,*
*Պոչիկ գդալ,*
*Պռատ խան.*
*Ով սուրբ Աստվածածին,*
*Դու կտրես սրա սանջուն։*

ԺԲ

*Քրիստոս օր տասանորդ ժողվեր կը, շատերը լավ տղոցն ու աղջիկներուն պահեին կը, օր ատոնցեն տասանորդ չտան։ Օր ժողվեց պրծավ, տեսավ օր բիտուն (բոլորը) դարձրվորածներ (այլանդակներ) են, հասկըցավ թը բանը հուր տեղն է, լավերը պահեր են, դարձավ ըսաց. Ալ չկա՞։ Ըսին. Չէ՛, չիք։ Թը կա, չիք դառնա,—ըսաց Քրիստոս։ Օսահաթ (նույն պահին) ատ պահվըտածները չիք դառան, անէրևութացան։*

*Տեյմ՝ օր հիմի ա ատոնք կան, կուտեն խմեն, աճին բազմանան կը. եփ օր ա սրտեցն ուզե, մարդոց էրևին կը։*

ԺԳ

*Քրիստոս երեխաներից տասանորդ (հարկ) էր հավաքում։*

*Մի կին, որ տաս որդի ուներ, մի քանիսը թաքցնում է, որ չվճարի։*

*Քրիստոս գալիս է այս կնոջ մոտ. սա ցույց է տալիս իր երեխաներին։*

*Քրիստոսը հարցնում է. էլ որդիք չունե՞ս։*

*— Չէ՛,—պատասխանում է կինը։*

*Քրիստոսը լուռ հեռանում է։*

*Կինը գնում, բաց է անում պահարանը, որտեղ թաքցրել էր իր երեխաներին, սակայն ոչ մեկին այնտեղ չի գտնում. բոլորը դարձել էին Ջաչանք (քաջքեր = բարի ոգիներ)։*

ԺԴ

*Մի քահանա ունենում է քառասուն զավակ. քսանը տղա, քսանը աղջիկ։ Լսելով, որ Քրիստոսը պիտի այցելի իրեն և մտածելով, որ նա կարող է նախատել շատ զավակներ ունենալու համար, նրանցից քսանին (տղա ու աղջիկ) թաքցնում է անկողնու մեջ։ Քրիստոսը հարցնում է. Բոլորը սրա՞նք են։ Այո, ասում է քահանան։ Է՛, ուրեմն ներկաները թող երևելի մնան, իսկ նրանք որ պահված են՝ թող աներևույթ դառնան։ Անկողնու մեջ մի վայնասուն է սկսվում։ Եվ քահանայի թաքնված զավակներն աներևութանալով սկսում են բազմանալ։ Որպեսզի դրանք չթշնամանան և մարդկանց վնաս չտան, նրանց կոչում են Մեզանից լավեր (Քըզ մեզ աղեկներ)։*

ԺԵ

*Երբ Քրիստոսի մայրն ու մորաքույրը տիրոջ գերեզմանի վրա գլուխները կախած ողբում էին իրենց մեծ կորուստը, սատանաները (որ այդ ժամանակ մարդկանց մեջ էին ապրում և տեսանելի էին) ցանկանալով սգավորների ուշադրությունը ուրիշ բանի հրավիրել, պարկերի մեջ պղնձե ամաններ լցնելով, սկսում են թրխթրխկացնել։ Աստվածածինը հետ է նայում և տեսնելով սատանաներին, ասում է. «Աներևույթք լինեք»։ Այդ օրվանից էլ նրանք այլևս չեն երևում մարդկանց։*

802. ԽԻԿԱՐ

Ա

*Այրն, զոր գեղջուկք Շնար կոչեն և էր Շունայր, զի խոտէր զամուսնութիւնն, զբազումս ձգեաց զկնի իւր, իսկ այրն զոր գեղջուկք Խիկար անուանեն և էր Խոկայր, զի իւրով իմաստութեամբ՝ հանապազ խոկմամբ ամենեցուն տայր խրատս և առակօք կրթէր։*

Բ

*Խիկարի ուսուցիչը մի ամբողջ ամիս աշխատել է նրան սովորեցնել հայերեն այբուբենի առաջին տառը, բայց չի հաջողել։ Երբ խեղճ մարդը ասում է Խիկարին, որ ինքը երբեք այսքան տխմար աշակերտի չի հանդիպել, Խիկարը նրան պատասխանում է. «Ես այնքան էլ տխմար չեմ, ինչքան դու կարծում ես. եթե չեմ ցանկանում այբուբենի առաջին տառը սովորել, այդ իր պատճառն ունի։ Հենց որ այն ճանաչեմ, դու ինձ ստի-*

պելու ես սովորել երկրորդը, և հանգիստ չես թողնելու, մինչև բոլոր տառերը չսովորեմ»։

Գ

Մի օր թագավորը հարցնում է Խիկար Իմաստունին. Այդ ինչի՞ց է, որ քեզ պես խելոք մարդիկ աղքատ են։ Դա նրանից է, որ ծնվելու ժամանակ մեր աստղը այծի չոր պոզին է ընկել, իսկ քեզ պես թագավոր մարդկանց աստղն էլ՝ ոչխարի չաղ դմակին։ Դրանից է, որ շատ անգետներ հարուստ են գանձով, իսկ շատ գիտուններ էլ կարոտ են հացի։

## 803. ԼՈԽՄԱՆ

Ա

Աղեքսանդր Մակեդոնացին կուպր է լցնում ծովի երեսին և կրակ տալիս, որպեսզի ձկներն ստիպված լինեն հպատակվել իրեն և հարկ վճարեն։ Եվ ձկներն, իբրև հարկ, մի կտոր խմոր են տալիս, ասելով որ զգուշությամբ եփի և ուտի։ Աղեքսանդրը այդ խմորը հանձնում է մի հացթուխի, պատվիրելով, որ մեծ զգուշությամբ եփի։ Չնայած հացթուխի զգուշությանը, խմորը վառվում է։ Հացթուխը գլուխը կորցրած, վառված հացը տալիս է մի աղքատ ծերունու և ինքը մի ուրիշ խմորից հաց թխելով ներկայացնում է Աղեքսանդրին։ Երբ աղքատն ուտում է վառված հացը, հանկարծ երիտասարդանում է և սկսում է հասկանալ թռչունների, ծառերի, ծաղիկների լեզուն։ Նա դառնում է բժիշկների բժիշկ՝ նշանավոր Լոխման հեքիմը։

Բ

Վախթովմ թագավորին մեկը գուշե կ՚օր ջրերու միջի ջանավարներեն ա խարճ առնե։ Բերե ձեթ լըլե կը ծովերուն էրեսն ու կրակ կուտա կը։ Ջրին միջի ձկները, գազանները կրակին չէն դիմանա, գելլեն ջրին էրեսը, թագավորին կըսեն կը թը՝ մեղքը չե՞նք, օր բոբոլական կրակը ցկեր մեզի վառես կը։ Անա կըսե կը թը՝ բերեք խարճ տվեք, ձեզի վնասմ ա չտամ։ Ատոնք բերեն աս թագավորին մե պզտի բանմ կուտան ու կըսեն կը թը՝ խմորի հետ շաղվե, լավմ էփե ու կե՝ քեզի հերիք է։ Թագավորը կառնե ատ պզտըլի բանը, կուտա կը ֆռնչուն, օր լաւծին պես խմորին մեջ շաղվե, լավմ էփե բերե իրեն, համա կըսե կը թը՝ թակար վառեր էս՝ գլուխդ զարնել կուտամ։

*Յունջին կառնե, դողդողալեն շաղվե, բուլուճըմ կը շինե, ցկե կը ֆուռը։ Է չիտես օր չարը դողդղած բանին գլխուն կայնած է, ատ բուլուճը վառի, մոխիր կառի կը։ Յունջին բանա ֆուռը, կաշե կ՚օր բուլուճը մոխիր է կտռե, դողը գըլնի սիրտը, հըմը ատ սըհաթին մե ախքատմ ձեռքը էրկըն-ցընե, կտորմ՝ հաց գուզե կը։ Յունջին հանե կը ատ բուլուճն ու՝ պարտկելու համար կուտա կը ախքտին, ու մե ուրիշմ շինե կը թաքավորի համար։ Աղքա-տը օխթը օր հաց կերած չիլլի, հարամու պես ցկե կը բերանը ատ բուլու-ճը ու կուլ կուտա, մե մա քիչմ կերթա, կաշե օր ծառները, խոտերը, ծա-ղիկները բիտոռուն խոսին կը. անմեքը կըսեն կը թը՝ ես աս ցավի դեղն եմ, ես ան յարայի մեահըլամն եմ։ Ծո, աս լավ էղավ, կըսե կը աղքատը. հե-քիմութենեն ա լավ բան, ինչի՞ հեքիմութեն չեմ էնե՞ օր։ Արթըղ պաշըլա է կը հեքիմութենը. ինչ հիվնդի օր կերթա՝ ատաթ չէ օր չլավցնե։ Ատոր ա-նունը սաղ աշխարքը բռնե կը, ու բիտոռուն հիվընդները Լոխմանի կըսեն, վառին կը։*

Գ

*Մե հիվանտըմ Լոխման հեքիմին քովը գուքա, օր դեղ էնե։ Լոխմանը նամզին կաշե, կըսե. Դուն անպես մարազմ ունիս, օր լավցընելու իլլաճ չըկա։ Մարթը ումուտը կըռռած՝ գելլե քախկեն կերթա, օր գըլոխն առնե կորցըվի։ Գեղըմ կը հասնի, կաշե օր օչխըրները բերեր են կըթելու։ Մե սև օչխարըմ կնիկմարթը կըկըթե. գործըմ փեյտահ գըլլի՝ կաթը քուղով թողնե կերթա։ Մե սև օցըմ գուքա, աս կաթը կը խմե, հըմը սիրտը չի վերցընե, քիչըմ էտև փըսխե կը քուղին մեչը։ Աս մարթը կըսե. Ան օր օլումս հասեր է՝ իտի կաթը կը խըմեմ, օցին փըսխածն է, աղուլի գըլլի, մե անքամեն կը պըրծընում։ Խըմե կը, կաշե օր քիչըմ թեթևցավ, կենա կը խըմե—ավելի լավին կը դառնա։ Հա պըրե, տե պըրե՝ աս մարթը կաշե օր հա՛ լավցավ։ Գելլե սաղ-սալամաթ իրեն քաղաքը գուքա։ Կերթա Լոխ-մանին քովը. Դուն չըսի՞ր ատ մարազիտ իլլաճ չկա. հըպը ես ի՞նչըղ լավ-ցա։ Լոխմանը կըսե. Ես օր ըսի «իլլաճ չըկա», անոր համար էր, օր դեղը չէյի կըրնա ճարել. ես ո՞ւրտեղ սև օչխար գըտնեյի, անոր կաթը սև օցին խըմցընեյի, օցը փըսխեցնեյի, փըսխածը քեզի խըմցնեյի, օր լավնայիր։ Քու բախտը է, օր պատահեր ես ատպես բանի ու ազատվեր ես։*

Դ

*Լոխմանին էրկու աշկերտ ուներ. մեկի անունն էր Յայլատին, մեկա-լինը՝ Ալֆատին։ Ատոնց մե բանմ չէր սորվեցնե, հըմը ատոնք շատ սա-*

*տանա էին, մե պզտի ծակմ էին էրե, ու անտից կաշեին թը ինչղ դեղ կենե հիվընդներուն։*

*Մե օրմ ա մե հիվանդմ բերեն կը. Լոխմանին ասոր գլխուն խուփը վերցնե, կաշե օր մե գյանա ճիճում կպեր է ուղեղին։ Լոխմանին մոլըրի կը թը՝ ինչղ վերցնե ճիճուն, թե քաշե հանե, ան ա ուղեղը կը քաշե՝ մարդը մեռնի կը։ Աշկերտներն օր ծակեն կաշեն, ալ չեն համբերե, ճվան կը թը՝ ճաղըմ տաքցու մեջքին դի՝ ճանկերը բանա կը, ու իրենք թողնեն փախչեն կը։ Մեկը կերթա Ֆրանգստան, մեկալը՝ Ինկլիզ։*

**Ե**

*Մե հիվանդըմ գուքա Լոխմանին քովը դեղ էնելու։ Լոխմանը կըսե. Ես վախըթ չունիմ. գընա Ֆիլան գեղը, աշկերտըս անտեղ է. անիկ քեզի կըլավցնե. հըմը ճամփուն հում սոխ ուտելով կերթաս։ Անպես կըսե, օր աշկերտին փորցե, թը լավ սորվե՞ր է։ Մարթը սոխ ուտելով կերթա, աշկերտին գըտնի կը, կըսե. Իսպես, իսպես բան, հեքիմ ուստատ ինձի քու քովըտ ղըրկեց օր լավցընես։ Ուտելիքի՝ փահրեզի ի՞նչ պատվեր տըվեց, հարցընե կը աշկերտը։ Հեչ, ըսաց հում սոխ ուտելով կերթաս, ես ա անպես էրի։—Լավ, կըսե աշկերտը, հիմի կենա ետ դարցի, հըմը ճամփուն տայմա էփած սոխ կե։ Աս հիվանդը էփած սոխ ուտելով կերթա, կաշե օր քանի կերթա՝ անքան լավին կը դառնա, անպես օր տեյոր իրեն քաղաքը գուքա՝ թամամ լավնա կը։ Կերթա Լոխմանին կը պատմե։ Լոխմանը կաշե օր աշկերտը իրեն ուզածին պես սորվեր է։*

**Զ**

*Լոխմանը շահմար օձի մսից կերած լինելով, շատ լավ հասկանում էր ծաղիկների լեզուն։ Նա մի անգամ իր աշակերտների հետ ծաղիկներ է ժողովելիս լինում։ Աշակերտներից մեկը, որը ձևացնում էր, թե ինքը ոչինչ չի հասկանում, վերցնում է մի ծաղիկ։ Լոխմանը, որ չէր ուզում աշակերտներին բան սովորեցնել, միակ գիտունը մնալու ցանկությամբ, գլխի է ընկնում, որ աշակերտը արդեն բավական բան սովորել է, հարվածում և սպանում է նրան։*

**Է**

*Երբ Լոքմանը ժամանել է Թիֆլիս քաղաքը և ցանկացել է գնալ շուկա, մի երկար շարք լիքը բարձած սայլեր փակել են նրա ճանապարհը։ Լոքմանի հարցին, թե սայլերին ի՞նչ է բարձած, պատասխանել են՝ Զուկ։*

«Այդ դեպքում այստեղ շատ գործ կլինի»—ասել է նա։ Այդպես զրուցելով նա ծռվել է մի ուրիշ փողոց։ Բայց այստեղ էլ նրա ճանապարհը կտրել է սայլերի մի ուրիշ անվերջ շարք, լիքը բարձած ռետինե խողովակներ։ Լոքմանը հարցրել է. Այս խողովակների մեջ ի՞նչ կա։ Նրան պատասխանել են՝ Գինի։—Այդ դեպքում այստեղ մնալն ավելորդ է։ Քանի որ այդպիսի լավ դեղ կա, այն էլ չափազանց առատ, ապա բժշկության կարիքը այստեղ ոչ ոք չի զգա։ Եվ այս ասելով տխուր դեմքով նա հեռացել է այդ քաղաքից։

Ը

Լօխմանը աշկերտին հետը ճամբորթութեն կենե, օր իրեն արհեստովը պարապի։ Մե անքամըմ գուքան Շորակալ, արտիմ քանարը նըստին կը հանքչելու։ Կաշեն օր գերընտվորները նըստին կը ցորեկհացի։ Մածունը բըրթին կուտեն, արեքըկին ակը շարան-շարան պառկին կը քընելու։ Լօխմանը աշկերտին կըսե. է, օղուլ, աստեղեն ալ չէրթանք, մեզի լավ գործ գըլլի. աս մարթիքն օր քըրտընած-քըրտընած մածունը կերան ու արեքըկին ակը պառկեցան՝ քյուլլի կը հիվընտնան։ Խեյլըմ վախըթ կանցնի, գերընտվորները հանքչին կը, վեր գելլեն, որը գերընտին կառնե, որը փոցխը, որը էղանը, գործի կը կըպչին։ Անպես կը բանին օր քըրտինքը գելլե, էրեսներեն կը վազզե։ Լօխմանը աշկերտին կըսե. Քալե, օղուլ, քալե էրթանք։ Աստեղ մեզի ալ գործ չըմընաց. աս մարթիքը հիվընտնալ ա գիտեն, լավնալ ա։

Գելլեն գուքան Թիֆլիզ։ Լօխմանը կաշե օր քթոցներով՝ բեռներով ձուկ է օր կը բերեն, խանութներուն առաչը լիքը ձուկ առնող է։ Աշկերտին կըսե. Աստեղ օր աըըլ մեր տեղն է. աքան ձուկ ուտելեն էտև շատ հիվընտցողներ գըլլին՝ մընանք, լավ գործ կունենանք։ Գելլեն քաղաքը պըտըտվին կը։ Լօխմանը կաշե օր անդրեն ըռոմպիներով գինի է օր գուքա, մարթիքը թափին կը սելերուն վըրա, թյունկիներով գինի է օր կառնեն տանին կը։ Լօխմանը կըսե աշկերտին. Էրթանք օղուլ. աստեղ ա մեզի գործ չը մնաց. աս մարթիքը հիվընտցող չեն. դեղն իրենց քովն է։

Թ

Լոխմանին արթղ ծերացեր էր, գիտեր օր թեզմ պտի մեռնի, գնաց սարեր ընկավ, ծաղիկներ, խոտեր քաղեց, բերեց դեղ շինեց, տվեց իրեն աշկերտին ու ըսաց, թը եփ օր ես հոգու հետ գլլիմ, լից բերանս, օր գյանճընամ։ Էղավ օր Լոխմանին հիվընդցավ, գողինք ընկավ։ Աշկերտը քովը

կայներ էր՝ դեղը ձեռքը։ Մի օր Լոխմանին հոգու հետ էղավ՝ աշկերտը էրավ թը դեղը բերանը լի՝ սատանան զարկեց ձեռքին՝ թափեց դեղը։ Աշկերտը շատ կսկծաց, հըմը ի՞նչ էնե, ուստան բան չէր խրատ տվե, որ ինքը նորեն դեղ շիներ, ուստին սաղցներ։ Տեյ մ'օր հիմա ա Լոխմանին նասաղ է, նա մեռած. պառկած ճվա կը՝ «Լից գա, լից գա»։

## 804. ՏՈՐՔ ԱՆԳԵՂ

*Զայր խոժոռագեղ և բարձր և կոպտաբանձն և տափակաքիթ, խորակն և դժնահայեաց, ի զաւակէ Պասքամայ, ի Հայկա թոռնէ, Տուրք անուն կոչեցեալ, որ վասն առաւել ժահադիմութեանն ձայնէին Անգեղեայ, վիթխարի հասակաւ և ուժով...*

*...Երգէին նմա բուռն հարկանել զորձաքար վիմաց ձեռօք, ուր ոչ գոյր գեղութիւն, և ճեղքել ըստ կամաց մեծ և փոքր, և քերել եղնգամբքն և կազմել որպէս տախտակ, և գրել նոյնպէս եղնգամբք իւրովք արծուիս և այլս այսպիսիս։*

*Եւ յեզեր ծովուն Պոնտոսի դիպեալ նաւաց թշնամեաց՝ դիմէ ի վերայ. և ի խաղալն նոցա ի խորն իբրև ասպարէզս ութ, և սա ոչ ժամանեալ նոցա՝ առնու, ասեն, վէմս բլրաձևս, և ձգէ զկնի. և ի սաստիկ պատառմանէ ջուրցն ընկղմին նաւք ոչ սակաւք, և ամբարձումն ալեացն, որ ի պատառմանէ ջուրցն, վարէ զմնացեալ նաւսն բազում մղոնս։*

## 805. ԱՐՏԱՎԱԶԴ

### Ա

*Զրուցեն զմանէ պառաւունք, եթէ արգելեալ կայ յայրի միում, կապեալ երկաթի շղթայիւք. և երկու շունք հանապազ կրծելով զշղթայսն՝ ջանայ ելանել և առնել վախճան աշխարհի. այլ ի ձայնէ կռանահարութեան դարբնաց զօրանան, ասեն, կապանքն։ Վասն որոյ և առ մերով իսկ ժամանակաւ բազումք ի դարբնաց, զհետ երթալով առասպելին՝ յաւուր միաշաբաթուջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտավազդայ։*

### Բ

*Մոլորութիւն դիւաց խաբեաց զկռապաշտսն Հայոց ի ձեռն քրմացն, որք ասէին, թէ զԱրտաւազդ ոմն վիշապք արգելեալ են կենդանի ի Մասիս*

լեառն. և նա ելանելոց է և զաշխարհս ունելոց. և ոմն այլ մտաց ունէր զիշխանութիւն Հայոց. զարհուրեալ հարցանէր զղձայս որում դիւաց և զկախարդսն, թէ ե՞րբ լինի Արտաւազդայ ելանելն ի կապանացն։ Եւ նոքա ասեն ցնա. թէ ոչ կամիս զելանելն նորա ի կապանաց, հրաման տուր ընդ ամենայն աշխարհս դարբնացն, որ ի Նաւասարդի օրն ամենայն դարբին կոփէ կռանաւն ի վերայ սալի իւրոյ. և երկաթքն Արտաւազդայ անդրէն հաստատի. և կատարեն զնոյն հրաման այժմ ամենայն դարբին, որ ի Նաւասարդի կռանաւ հարկանեն զսալն մինչև ցայսօր։

Գ

Մոլորութիւն դիւաց խաբեաց զդիւցապաշտս Հայոց, եթէ զոմն Արտաւազդ անուն արգելեալ իցէ դիւաց, որ ցայժմ կենդանի կայ, և նա ելանելոց է և ունելոց զաշխարհս, և ի սնոտի յոյս կապեալ կան անհաւատք, որպէս և Հրեայք՝ որ ի զուր ակնկալութիւն կապեալ կան, եթէ Դաւիթ գալոց է՝ շինել զԵրուսաղէմ և ժողովել զՀրեայս, և անդ թագաւորել նմանոցա։

806. ՇԻԴԱՐ

Ա

Թագաւոր մի կայր Հայոց Արտաւազդ անուն, և ունէր որդի մի խելագար, որոյ անուն էր Շիդար։ Եւ եղև յորժամ մեռաւ արքայն Արտաւազդ, հայրն Շիդարայ, ոչ ետ զթագաւորութիւնն իւր Շիդարայ, զի խելագար էր։ Վասն որոյ և աշխարհս յիրար դիպաւ, և աւերումն լինէր ոչ սակաւ։ Եւ յաւուր միում հեծեալ Շիդարն ի ձի և ետ փող հարկանել, թէ կամիմ թագաւորել. և եւ գնաց ընտիր հեծելաւք ի զբաւսանս, և ելեալ ի վերայ կամրրջի գետոյ վասն անցանելոյ։ Եւ անդէն շարժեալ զնա այսոյն պղծոյ, անկաւ ի գետն և կորեաւ։

Բ

Եւ հեծելազաւրքն համբաւեցին թէ չաստուածքն Շիդարայ յափշտակեցին զնա և եդին ի սեաւ լեառն, որ է աւագ Մասիս, և անդ կայ շղթայած։ Եւ երկու շունք՝ մինն սպիտակ և մինն սեաւ կու լիզեն հանապազ զշղթայսն Շիդարայ. և ի տարեւիցն ի մազն գայ, որ թէ կտրի, նա ելանէ և զաշխարհս անցուցանէ։ Վասն որոյ կարգեցին կախարդքն առասպել դիմաւք և թէատրոնօք՝ թէ ի տարեմուտն ի Նաւասարդի մեկն ամենայն

*գործաւոր զիւր զինչ և իցէ գործն կոփէ երեք անգամ, դարբինն և այլն ամենայն։ Չի կապն Շիդարայ որ ի մեկ մազն եկեալ է ի կորիլ, դարձեալ հաստատի և ամրանայ, որ ոչ ելնէ և զաշխարս անցուցանէ։*

### 807. ՍԱՆԱՏՐՈՒԿ

*Յաւուրս ձմերայնոյ ճանապարհորդեալ ի Հայս քոյր Աբգարու Աւգէ՝ պատահէ բքոյ ի լերինս Կորդուաց. ցրուեաց զամենեսեան մրրիկն, մինչ ոչ գիտել ընկեր զընկեր՝ ընդ որ վարեցաւ։ Իսկ դայեկին նորայ (=Սանատրկոյ) Սանոտայ, քեռ Բիւրատայ Բագրատունւոյ, կնոջ Խոսրենայ Արծրունւոյ, առեալ զմանուկն, քանզի տղայ էր, եդ ի մէջ ստեանց իւրոց, մնալով ի ներքոյ ձեանն զերիս տիւս և զերիս գիշերս։ Զորմէ առասպելաբանեն, եթէ կենդանի իմն նորահրաշ սպիտակ յաստուածոցն առաքեալ՝ պահէր զմանուկն։ ...Արդ՝ կոչեցաւ Սանատրուկ, ի դայեկէն զանուանակոչութիւնն առեալ, որպէս թէ տուրք Սանոտայ։*

### 808. ԱՌՅՈՒԾԱՁԵՎ ՄՀԵՐ

*Սասունը հարևան երկրների հետ կապող ճանապարհին մի առյուծ է լույս ընկնում, որը արգելում է մարդկանց երթևեկությունը։ Այդ պատճառով թանկություն է ընկնում Սասունում։ Տասնհինգ տարեկան Մհերը հակառակ հոր կամքին մեն-մենակ գնում է առյուծին սպանելու։ Առյուծն ու Մհերը գոտեմարտի են բռնվում։ Մհերը առյուծին երկու կտոր է անում, մի կտորը դնում ճանապարհի մի կողմը, մյուս կտորը՝ մյուս։ Այդ օրվանից Մհերին անվանում են Առյուծաձև (առյուծին կիսող, ձևող) Մհեր։*

## ՍՐԲԵՐ ԵՎ ՀՈԳԵՎՈՐԱԿԱՆՆԵՐ

### 809. ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ

Ա.

*Սուրբ Սարգիսը թաթախման գիշերը զինավորված, սպիտակ ձիու վրա նստած շրջում է տնե-տուն, որ տեսնի թե ո՞վ չի պատվում իրեն փողնձով։ Ում տունը որ արժանավոր է համարում, Սուրբ Սարգիսը նրա փողնձի մեջն է իր ձին քշում ու հետքեր թողնելով այնտեղ, դուրս թռչում երդկից։*

Բ

Մի կին մեռնելուց առաջ ասում է ամուսնուն. Իմ մեռնելուց հետո, խնդրում եմ, ամուսնանաս այն կնոջ հետ, որի դաստակին կհարմարվի իմ ապարանջանը։

Մեռնում է կինը. մարդը որ կնոջ բազուկին փորձում է, ապարանջանը չի հարմարվում։ Մի օր աղջիկը ապարանջանն անց է կացնում ձեռքը։ Ապարանջանը հարմարվում է նրա ձեռքին։ Հայրը բռնի ուզում է ամուսնանալ աղջկա հետ. աղջիկը դիմադրում է, բայց տեսնելով որ հնար չկա ազատվելու, օգնության է կանչում Սուրբ Սարգսին։ Գալիս է ձիավոր Սուրբ Սարգիսը. աղջիկը վազում ընկնում է նրա գիրկը. սուրբը աղջկանը վերցնում է ձիու գավակը. աղջիկը գրպանից փոխինդ հանելով ցանում է օդի մեջ. Սուրբ Սարգսի փոթորիկը օգնության է գալիս. փչում է փոխինդը հոր աչքերի մեջ և փախցնելով աղջկան՝ ազատում նրան հոր ձեռքից։

Գ

Դուշման թագավոր մի կելնա վըր Ուռումի թագավորին, շատ նեղ կը լծե զէդի։ Ուռումներ լե հայոց թագավորից իմդադ (օգնություն) կուզին։ Հայերուց Սարգիս անվոր մարդ մի զուր ասքար (զորք) կառնե կերթա հօգն (օգնություն)։ Կռվու մեջ Սարգսին ու ուր ասքար շատ քաջություն կենին՝ զուռումներ կազատեն։ Ուռումներու թագավոր զարզանդ կը բռնե. Հայ, հայ, կըսե, իդա հմլա քաջ ազգ լե կեղնի՞, զադոնք օր թողինք սաղ մնան՝ օր մե չէ՝ օր մե, մըր գլխուն պատիժ կը դառնան։ Կռվու մեջ Սարգըսի ասքար հըմեն ջարդվավ, մանցին քառսուն հոգի։ Թագավոր կըսե. էդ քառսուն մարդոց քառսուն աղջիկ տվեք. թանպեհ էրեք (պատվիրեցեք) օր գիշերով հարբեցուն՝ սպանեն։

Աղջկներ հիրկուն օր կեղնի, կուտեն կը խմեն հըտ տղեկներուն, կը հարբեցուն։ էն վախտն օր կը քնին՝ հեռսուն ու ին աղջկներ զեռսուն ու ին տղեն լե կսպանին. մենակ մեկ աղջիկ կը նստի Սարգսի գլխու վերև մոր-մոր կիլա. կիլա կիլա՝ գիլ-գիլ արտսունք կը գլորեն թափեն վըր Սարգսի ճակտին, Սարգիս կիմնա։

— Յա,—կըսե,—խեր էղնի. հարին (ինչու) կիլաս։

— Ապա իմա՞լ չի լամ, թագավոր հրամանք է էրի օր ձըզի սպանինք. աչքե տես, զըմեն սպանած ին. լե իմ ձեռք չըռնեց օր ես լե զքըզի սպանենք, հելի, բալքի ճարմ' էնենք մըր գլխուն։

Սարգսին ու աղջիկ ծունկ մը չոքին, զաստված կը կանչին, աստծու

*օղորմութինով բուք ու քամի կելնա։ Սարգիս կը թալե զաղջիկ ուր բող ձիու թարք, զուրանք քաղքի բաղնեն (պարսպից) կը թալեն ցած, ու յա ու յալլա՝ կիգան հայոց աշխարք։*

Դ

*Երբոր Ուլիանոս թագավերըն ուղեցել ա հայերի հետ կռիվ տա, Սուրբ Սարգիսը հետը կռվել ա։ Կռվելու ժըմանակ նա օխտն օր ու գիշեր սոված ա ըլել ու անքուն։ Կռիվը պրծնելուց եդը, նա մի տեղ նստել ա, մնացել միտք անելիս, թե ո՞րտեղից մի կտոր հաց ճարի, սոված սրտի թլկտոցը կտրի։ Հենց միտք անելու բհարին (ժամանակ) մնել էն ա տեհել, որ քամին երկնքից բռռալե մի քանի ցորնի հասկ վեր բերեց, առաջն ածեց։ Նա հասկերը վեր ա կալել ու ձեռի մեջ հղաղելով՝ բերանն ա գցել, կերել կշտացել։ Կշտանալուց հետո խնդրել ա աստուն, թե սրանից եդը ով որ տարվա մեջ օխտն օր հասկերի իշատակի հըմար պաս ու ծոմ պահի, ուրբաթ իրիկուն էլ փողնձով թաթախվի, մուրազը տա, ինչ խնդիր անի, կատարվի։*

Ե

*Սուրբ Սարգիսը մի ազրայել տղամարդ ա ըլել։ Ղզլբաշի Ուշաք թագավորը մըհետ հրաման ա անըմ ըշխարին, որ հայ քրիստոնեքն իրանց լուս հավատն ուրանան ու կրակին, ըրեգնակին (արև) աստծու տեղ պաշտեն։*

*Հայերը անգամ չեն դնըմ նրան։ Թագավերը քյափար-քյափար ա ըլըմ, կտաղըմ, փրփրըմ ու հայերին սկսըմ ա կապել, տանջել, չըրչարել։ Շատերի գլուխն ա թոցնիլ տալի, շատերին քյունդած (ոտն ու ձեռը կապած) թակելուց եդը տիկ ա հանըմ։*

*Հենց էն բհարին մինը անօրենի արարմունքի խաբարը Սուրբ Սարգըսին ա հասցնըմ։ Սուրբ Սարգիսն իր ընկերտանոց հետ հասնըմ ա Ուշաքի ղոշունին (զորք), թյունդ կռիվ տալի։*

*Խաբարը հասնըմ ա Ուշաք թագավորին։ Թագավորը ոտները տափին ա թակըմ (գետին խփում), կտաղըմ, փրփրըմ, հրաման ա անըմ, որ էն սըհաթին Սարգսին փռնեն, թիքա-թիքա անեն (կտոր-կտոր)։*

*Ամա ի՞նչ. Սուրբ Սարգիսն ամբի պես կեռըմ, կեծակի նման տրաքտըրաքըմ, քանդուքար ա անըմ թագավերի բերդերն ու էնտեղ կապած, կշկռած հայերին ազատըմ։*

Զ

*Վաղթին երկու գեղացի ղարիպներ. գոշկար (կոշկակար) մի և Նաճար (ատաղձագործ) մի, Ատանայեն գեղ գուգային. գոշկարը հապիկայով (խուրջին) փին, նաճարը հապիկայով օսկի բարձած իրենց իշվըներուն վրա: Ճամբան, փիրսիլա ձիավոր մը դեմերնին կելլա: Նարժուն (նաճարին) կը հարցնե, քի հապիկային միջինը ի՞նչ է: Նաճարը, վախուն՝ «Թալաշ (փայտի քերվածք) է», կըսե: Հայտե, թալաշ թող ըլլի,—կ'ըսե ճիավորը, և կը դառնա գոշկրին և էնոր ըլ կը հարցնե,—Իշուդ բեռն ի՞նչ է: Գոշկարը փին ըսելու ամչնալով,—«Աղա, օսկի է»,—կը պատասխանե: Ըսածիդ պես՝ օսկի ըլլի,—կ'ըսե ճերմակ ձիավորը և իղկորուստ կըլլի (անհայտանալ):*

*Երկու ղարիպները տուն կը հասնին սաղ սելիմ (ողջ առողջ): Իրենց հապիկաներուն բերաններուն կարը կը քակեն, կը բանան՝ օր ի՞նչ բանան, գոշկրին փինը օսկի է կյրեր, և նարժուն օսկին թալաշի է փոխվեր:*

Է

*Մի անգամ մի աղջիկ յուր ծննդկան մոր մոտից հեռանալով գնում է գետակի մոտ կրակ բերելու: Վերադարձին դուռը փակ է գտնում և ականջ դնելով լսում է մի ձայն, որ ասում էր թե՝ Նորածին երեխան մեծանալիս, երբ կամենա ամուսնանալ, ձուկ դառնա և ջուրն ընկնի: Աղջիկն իսկույն հասկանում է, որ այս ձայնը այն հրեշտակինն էր, որ եկել էր երեխայի ճակատի գիրը գրելու:*

*Երբ երեխան մեծանում է և հասնում են ամուսնության օրերը, քույրը պահում է Սուրբ Սարգսի պասը և ջերմեռանդությամբ աղոթում նրան, որ փրկե իր եղբորը և թույլ չտա ձուկ դառնալու: Սուրբ Սարգիսը լսում է նրա աղաչանքը և ինքը գալիս խաչեղբայր է դառնում տղային: Երբ հարսը բերում են և ուզում են գետն անցնել, Սարգիսը իսկույն հեծնում է փեսացուի գավակը և ամուր գրկում նրան, որ թույլ չտա ձուկ դառնալու, սակայն չի լինում. տղան, հենց որ գետի մեջտեղն են հասնում, ձուկ է դառնում և ընկնում ջուրը:*

Ը

*Շեփկըցիին մեկը շալակ մը դժնիկի փուշ շալկած՝ Գոհանամի զառ ի վայրեն կիջնա: Հանկարծ սաստիկ հողմ մը կելլե: Հովը կը փչե կը հրե կատաղի. ու խեղճ մարդուն անդնդախոր ձորին մեջ պիտի ձգե:*

*— Ամա՜ն, Սուրբ Սարգիս, դո՛ւն հասիր, սա հովը հեյրընար (հան-*

*դարտել), քեզի մոմ մը ու քիչ մը խունկ շըլլիիս պարտքը թող ըլլա։— Որո՞ւն կըսես. վը՞զզ... մոնչյունը կը կրկնապատկի։ —Ճերմակ խորոզ մը մատաղ պիտի ընեմ, Սուրբ Սարգիս պապա, խոսք մեկ՝ աստված մեկ։ Ի՞նչ օգուտ, հազար խոստում՝ լսող չի կա։ Վերջին ճիգե մը ու խոստումե մը ետք՝ ճարահատ ու հուսահատ շեփկըցին շալակին չվանը թող կուտա և փշին բեռը հովին առջև խաղալիքի մը պես կը թավալի, զառ ի վայրեն ոստոստելով։ —Տե՛, փախիր Սուրբ Սարգիս, որ եռեղ փուշ չմտնե,—կը պոռա սրտմտած գեղացին հուսահատ հրճվանքով։*

## 810. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՎՈՐԻՉ ԵՎ ՏՐԴԱՏ

### Ա

*Երբ Գրիգոր Լուսավորիչը աղոթելիս է լինում Արագած լեռան կատարին՝ նրան գիշերը լուսավորում է մի կանթեղ, անպարան (առանց պարանի) կախված երկնքից։ Ասում են, թե այդ կանթեղը այժմ էլ կա, միայն տեսանելի է արժանավորներին։*

### Բ

*Հայոց Տրդատ թագավորը արձակում է մեջքից իր Հավլունի թուրը և Գրիգոր Լուսավորչի ձեռքով նետում Սեպուհ լեռների կողմը։ Սակայն թուրը գետին չի ընկնում և խաչի ձևով մնում է օդի մեջ կախված։ Խաչի շուրջը սկսում է շրջանակաձև մի շող փայլել։ Ասում են, թե դա Լուսավորչի մշտավառ կանթեղի լույսն է, որը, առանց պարան, կախված է երկնքից։ Լուսավորչի կանթեղի պես Տրդատի թուրը ևս տեսանելի է միայն արժանավորներին։*

### Գ

*Հաւլունի թուրն Տրդատայ կաա Սուրբ Լուսաւորիչն և օծեալ որպէս գխաչ եդ ի յօղն բանիւն Աստուծոյ՝ ի գլուխ լերինն Սեպհոյ։*

### Դ

*Եւ զայն ամս երեքտասան որ եղեւ Գրիգորիս ի բերդին բանտին և ի խոր վիրապին, կին ոմն այրի՝ որ էր ի բերդին յայնմիկ, հրաման առեալ յԱրհաւրաց, զի աւուրն նկանակ մի արարեալ պատրաստական՝ ընկենուլ ի ներքս ի խոր վիրապին, և այնու կերակրեալ լինէր նա ի հրամանէն աստուծոյ՝ զայն ամս որ եղև նա անդ։ Իսկ յայն վիրապ՝ ուր ընկեցին զնա,*

*պահեալ լինէր նա կենդանի, շնորհիւ Տեառն իւրոյ։ Իսկ այլ մարդիկ՝ որ մի անգամ էր իջուցեալ անդր՝ ամենեքեան մեռեալ էին, վասն դժնդակ չարաշունչ դառնութեան տեղւոյն, վասն կարակում տղմին, օձախառն բնակութեան և խորութեան։*

Ե

*Տրդատ թագավորը Գր. Լուսավորչի հետ մեհյաններ կը քանդեր ու եկեղեցի կը կանգներ անոնց տեղ։ Ուր որ մեհյան չկար, լեռնեն քարեր կը բերեր իր կռնակով ու կը շիներ։ Մի անգամ վանքի մը ջրի քարե մեծ գուռը (ավազան) գլուխն անցուցած, և միակտուր քարե մեծ սյուներ անութներ դրած լեռնեն կուգար, իսկ Գրիգոր ետևեն կաղոթեր, կը սաղմոսեր, ույժ և կարողություն կը խնդրեր բեռնավորված արքային։ Տրդատ ձանձրանալով սրբույն միօրինակ սաղմոսերգութեննեն, կըսե վերջապես. «Ջը հոգամ գուռ վրր գլխուս, կը հոգամ պտպտիշն (մրմունջ) ի հետևուս»։ Գրիգոր Լուսավորիչն այն ատեն կը լռե, ու Տրդատը քարերու ծանրության տակը մինչև գետինը կիջնե, ու անպատճառ, ամբողջապես ջրի մեջ խորասուզվելու նման, գետինը իջնելով պիտի մեռներ, եթե ուշքի չգար և չխնդրեր սուրբեն՝ «Պտպտա՛, պտպտա՛, պտպտիկդ ի հոգիս»։*

Զ

*Երբ Գրիգոր Լուսավորիչը Խոր-Վիրապից դուրս գալով գալիս է Վաղարշապատ, վաթսուն օր շարունակ քարոզ է կարդում տեղի հեթանոս հայերին, որոնք հետաքրքրությամբ լսում են նրան։ Աղքատներին ճաշ տալու համար, նա հրամայում է գյուղացիներին շատ յուղ ու ոչխար բերել։ Երբ բերում են յուղն ու ոչխարը, Լուսավորիչը մորթել է տալիս ոչխարները. մեծ-մեծ կաթսաներ են դնում կրակի վրա, միսը լցնում մեջը և կորկոտ էլ վրան։ Այնուհետև նա հրամայում է հաստաբազուկ կտրիճներին՝ խառնել կաթսայում եղած միսը, ասելով. Հարեք զսա։ Այդտեղից էլ կերակուրի անունը մնում է Հարիսա։*

## 811. ՍՈՒՐԲ ՍԱՀԱԿ

*Պատմում են, թե Սահակ հայրապետը Ուշտունյաց երկրից է եղել. աջ աչքով կույր, ճգնավորական խիստ կյանք է վարել և նույնիսկ մարմնացած դևեր տեսել։ Մի օր մի առյուծ բերել է սրա մոտ իր կույր կորյունին և մարդկային լեզվով աղաչել, որ բժշկե։ Սուրբ Սահակը պատասխա-*

նել է, թե ինչ կարող է անել ինքը, քանի որ իր աջ աչքն էլ կույր է։ Սակայն, աղյուծը շարունակել է խնդրել և Սահակը ստիպված խաչակնքել է կորյունին, որի աչքերը անմիջապես բացվել են։ Դրա համար էլ աղյուծը և կորյունը սուրբ Սահակից բոլորովին չեն բաժանվել և միշտ ծառայել են նրան։

## 812. ՍՈՒՐԲ ԱՐԻՍՏԱԿԵՍ

### Ա

*Սուրբ Արիստակեսն օր Նիկիա կերթար, ճամփան ուռմները (հույներ) խնդան կը վրան թը՝ ատա ինչ է օր հայերն իրենց վրա պատրիարք են էրե, ատիկ անճաղ լավ արտ քշե։ Ասիկ ձեն չի հանե, կերթա մաճը ձեռը կառնե, դառցնե եզները քշե կը ծովին մեջը էրկու ակօս բանա, դառնա գուգա կըսե կը թը՝ տիս ես գորտեցի (վարել), էկեք դուք ա ցանեցեք։ Անոնք մեղա գուգան, ոտքը գըլնին։ Տեյմ՝ օր հիմի (մինչև այժմ) ա ան ակոսները էման կեցեր են։ Ստամբոլ էրթցողներ կերթան տեսնին կը։*

### Բ

*Սուրբ Արիստակեսը կերթա Նիկիա, կաշե օր ժողովը էրիր պրծեր են, կըսե. Հեչ ի՞նչ էրիք։*

*Թը՝ միսը, եղը, պանիրը պաս էրինք։ «Հայ վա՜խ, կըսե Արիստակեսը, ես թեզ հասած ըլլեի, ցորեն հացըն ա պաս կեննեի։ Խեղճ դեղացիք օր դարի հացով տեյ իրիկուն դատին, արուն քրտինք մանին կը, քաղքցիք պաս օրը ընչի՞ ցորեն հաց ուտեն»։*

## 813. ՍՈՒՐԲ ՀԱԿՈԲ

### Ա

*Զայնու ժամանակաւ խաղաց գնաց մեծ եպիսկոպոսն մծբնեցւոց ի լերինս Հայոց, ի լեառնն Սարարադա, ի սահմանս այրարատեան տէրութեան ի գաւառն Կորդուաց։ Սա եկեալ ցանկացեալ փափաքեալ մեծաւ տենչանօք աղաչէր զաստուած՝ տեսանել զփրկական տապանն Նոյեան շինուածոյն, զի յայս լերին հանգեաւ նա ի ջրհեղեղէն. քանզի զամենայն ինչ որ հայցէր, առնոյր ի տեառնէ։ Ապա մինչդեռ ելանէր ընդ անջրդի ընդ ափափայն անապատին Սարարադեան լերինն, աշխատեցան և ծարաւեցան նա և որք ընդ նմայն էին։ Ապա դնէր ծունր մեծն Յակոբ ի վերայ երկրին, և կայր յաղօթս առ տէր. և ի տեղւոջն՝ ուր եդեալ էր զգլուխ իւր՝*

*բղխեաց աղբիւր, և արբին նա և որ ընդ նմայն էին, որ մինչ ցայսօր ասեն այնմիկ աղբիւր Յակոբա։ Եւ ինքն ի նմին աշխատեալ դեգերէր՝ զխնդրելին տեսանել առանց յապաղութեան, առնէր աղօթս առ տէր։*

*Արդ իբրև էր նա խոնճեալ ի վեր ի դժուարին տեղւոջն մօտ ի կատարն, և կարի վաստակեալ էր, ննջեաց նա, և եկն հրեշտակ աստուծոյ և ասէ ցնա. Յակոբ, Յակոբ։ Եւ նա ասէ. Ահաւասիկ տէր։ Եւ ասէ հրեշտակն. Ահա ընկալաւ տէր զաղաչանքս քո, և կատարեաց զխնդրուածս քո. որ կայ ընդ սնարս քո, է ի փայտից տապանակին. ահա բերի քեզ, անտի է այդ. զի այլ մի ևս յաւելցես տեսանել զայն. զի տէր այդպէս կամեցաւ։ Եւ մեծաւ խնդութեամբ յոտն կացեալ, բազում գոհութեամբ երկիր պագանէր տեառն, և տեսանէր զտախտակն՝ իբրև զի կացնեաւ հատեալ հանեալ ճեղքեալ ի մեծ ինչ փայտից։ Եւ առեալ դառնայր անտի, հանդերձ շնորհատուր պարգևելովն, և որք ընդ նմայն երթեալք՝ իւրովքն ճանապարհորդ լինէր։*

Բ

*Սուրբ Հակոբը գիշեր-ցերեկ աստծու փեշերը պոկում, աղոթում է, որ նա օգնական լինի իրեն Մասիս բարձրանալու համար։ Քանի-քանի անգամ բարձրանում, հասնում է Մասիսի կեսը, քունը տանում է։ Հրեշտակները գալիս են մտնում թևերը, իջեցնում, բերում սարի տակը։ Շատ որ աստծուն աղաչում-պաղատում է, ատված ասում է Գաբրիել հրեշտակին. Գնա Նոյի տապանի տախտակից մի կտոր բեր տուր Սուրբ Հակոբին։ Գաբրիելը կատարում է աստծու պատվերը և Սուրբ Հակոբը նոր հրաժարվում է Մասիսից։*

Գ

*Եւ եղև ի մերձենալ Հակոբա Մծբնա Հայրապետին ի գիւղն Արտամետ՝ յոտն Մասեաց ետես աղբիւր յանդս ճանապարհին. և անդ հոյլք լուացողացն՝ աղջկունք և կանայք. որ ոչ պատկառեցան ի սրբոյն, և ոչ ծածկեցին զսրունս իւրեանց, այլ արհամարհեալ զնովաւ՝ յանհոգս կային անամաչ. և ոմանք ևս այպանէին զայրն աստուծոյ։ Եւ սուրբն անէծ զաղբիւրն, և առժամայն ցամաքեցաւ. և զհերս աղջկանցն փոխեաց ի սպիտակութիւն որպէս զպառաւելոց։*

Դ

*Եւ եկեալ Սուրբ Հակոբ ի Տոսբայ գաւառ, ի գիւղն Արտամետ։ Եւ անդ յաղբեւրն աղջկունք լըւաց առնէին։ Եւ անամօթ լեալ ոչ պատկառե-*

*ցան ի սրբոյն։ Եւ նա անէծ զաղբեւր և ցամաքեցաւ և զՀերս աղջկանցն սպիտակացոյց։ Եւ անցեալ գնայր զճանապարհ իւր։ Եւ զայն տեսեալ բնակչաց տեղիս ընթացան զՀետ սրբոյն և աղաչեցին զնա բղխեցուցանել զաղբեւրն և սևացուցանել զՀերս աղջկացն։ Եւ նա դարձեալ աղօթեաց առ աստուած և բղխեաց աղբեւրն. բայց զսպիտակութիւն Հերացն ոչ փոխեաց, զի այն տեսեալ մի մոռասցին զերկեւղն աստուծոյ։*

**Ե**

*Ասում են, թե Սուրբ Հակոբը ժամանակին բարձրացել է Ռշտունյաց գավառի Ընձաքիարս կամ Կապուտկող լեռան գագաթը և այնտեղից գլուխը բաց անեծք է կարդացել ամբողջ գավառին, որովհետև Մանաճիհր անունով Ռշտունի մեծ իշխանը, հակառակ նրա թախանձանքներին՝ ծովն էր նետել ավել ծերունի հայրապետի անմեղ սարկավագներին։ Սրբի անեծքը կատարվում է և Ռշտունյաց գավառում երեք տարի շարունակ անձրև չի գալիս։*

## 814. ՀՈՀԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ

**Ա**

*Սոյն Յոհան եպիսկոպոս, որդի Փառինայ, յորժամ երթայր առ թագաւորն Հայոց, խաղակատակ լինէր նոցա. որպէս խաղալով զանձն իւր կրթէր յագաՀութեան, որում ծարաւեալ պապքեալ փափաքէր, սակայն միհանէք (միաՀանէք) այն էին նորա։ Ի չորք անկեալ յատս և ի ձեռս սողէր առաջի թագաւորացն, և զուղտու զձայն ածէր կառաչելով, զօրէն ուղտու այնպէս փարելով։ Ընդ կառաչելն ապա մի մի բան խառնելով առնէր ի ձայն կառաչելոյն, ասելով՝ թէ ուղտ եմ, ուղտ եմ, և զարքայի զմեղս բառնամ, դիք ի վերայ իմ զմեղս արքայի, թող բառնամ։ Իսկ թագաւորքն զմուրհակս գիւղից կամ ագարակաց գրեալ և կնքեալ դնէին ի վերայ ողինն ՅոՀաննու փոխանակ ընդ մեղաց իւրեանց. և ի թագաւորացն Հայոց ստացաւ իւր գեւղս և ագարակս և գանձս յուղտն լինելոյ և զմեղսն բառնալոյ ըստ բանիցն։ Այսպիսի էր այրս ՅոՀաննս կապեալ յըռժդութեան և յագաՀութեան զամենայն աւուրս կենաց իւրոց. զայսպիսի գործս գործէր վասն ագաՀութեան, որ չէր արժան։*

**Բ**

*Եւ էր սա այր կեղծաւոր, և Նրևեցուցանէր ինքն զանձն իւր մարդկան պաՀող և խորգաՀանդեձս (խորգաՀանդերձ). մինչ զի մոյգս անգամ ոչ*

*ագանէր, այլ զամառն հեսկով պատէր, և զձմեռն կեմով։ Եւ յագահութեան առանց չափոյ էր հեղեալ, և ոչ կարէր տալ զագահութիւն իւր ընդ երկիւղին աստուծոյ. այնչափ ինչ, զի զիրս անարժանս և չհաւատալիս գործէր։*

*Զի էր երբեմն դիպեալ ի ճանապարհի ուրեմն, զի նստէր նա ի գրաստու վերայ և գայր. եկն դիպեցաւ սմա օտար պատանի մի աշխարհական հեծեալ ի ձի, սուսեր ընդ մէջ, թուր զգօտւոյ, աղեղնակապարճ զմիջով. լուացեալ զհերս իւր օծեալ մերձեալ, վարսակալ եդեալ ի գլուխ իւր, և օղիկ (յօղիկ) արկեալ զուսովք իւր. և գայր զճանապարհս իւր. թերևս յաւազակութենէ։ Իսկ ձին՝ յորում հեծեալ՝ մեծ հասակաւ, և էր գունաւոր, գնացող, մինչ զի ի բացէ տեսանէր եպիսկոպոսն Յոհան զձին, մեծապէս զարմացեալ՝ ակնկառոյց լինէր։ Ապա իբրև եկն մերձեցաւ հեծեալն մօտ ի նա անդր, ապա սպասեալ Յոհաննու՝ բուռն հարկանէր զերասանակաց ձիոյն, և ասէր. էջ դու վաղվաղակի ի ձիոյ այտի, զի բանք են ինձ ընդ քեզ։ Ասէ այրն. Զի ոչ դու զիս գիտես, և ոչ ես զքեզ, զինչ այն բանք իցեն, զոր դու ընդ իս իցես խօսելոյ։ Մանաւանդ զի այրն արբեալ ևս դիպեցաւ, և շատ յամառեաց այրն իջանել ի ձիոյն։ Ապա բռնադատեաց զնա Յոհան, իջոյց ի ձիոյ անտի. և առ տարաւ զնա մեկուսի ի ճանապարհէն։ Եւ առնն խոնարհել հրամայէր և ասէր. Ձեռիցութեան ձեռն դնեմ ի վերայ քո։ Իսկ նա տայր պատասխանի զանձնէն, եթէ այր աւազակ սպանող չարագործ և խառնագնաց լեալ ի մանկութենէ իմմէ, ես ոչ ինչ եմ արժանի այդպիսի իրաց. և այժմ դեռ ի նմին գործ կամ։ Եւ շատ ի վէգ եկեալ յամառէր այրն, և նա ևս չար քան զնա։ Ապա բռնաբար զգետնեալ զայրն, դնէր Յոհան զձեռն իւր՝ առնել զնա երէց. և յարուցեալ հրամայէր լուծանել զհանգոյցս մեկնոցին, և արկանել նմա աղաբողոն։ Եւ ասէր. Երթ ի գեւղ քո, և լիջիր դու անդ երէց գեղջն՝ ուստի ես։ Եւ անգամ ոչ գիտէր զայրն թէ յորմէ գեղջէ իցէ։ Ինքն Յոհան մատուցեալ բուռն հարկանէր զձիոյն, և ասէր. Այս ինձ կօշիկք լիցին, փոխանակ զի երէց արարի զքեզ։ Իսկ այրն յամառեալ ի վերայ ձիոյն չառնոյր յանձն տալ. ապա բռնաբար զինքն հանեալ զձին, և զայրն արձակեաց։ Եւ այս ամենայն իրքս վասն ձիոյն եղեն։*

*Ապա այրն թէ ոչ կամօք՝ աղէբողոն արկեալ, գնայր ի տուն իւր, և երթեալ մտանէր ի մէջ ընդանեաց իւրոց, ասէ ցկին իւր և ցնդանիս. Արիք յաղօթս կամք։ Եւ նոքա ասեն. Մոլիս դու, դե՞ւ ուրեմն հարաւ ի քեզ։ Իսկ նա ասէ. Արիք կամք յաղօթս, վասն զի երէց եմ։ Իսկ նոքա զարմացեալ, մերթ շիկնէին, մերթ ծիծաղէին. մինչև բազում անգամ յամառեալք, ապա ուրեմն հաւանեցան կալ յաղօթս ընդ նմա։ Ապա ասէ կինն ցայրն իւր.*

*Ո՞չ դու երախայ էիր, և չէիր մկրտեալ։ Առէ այրն զկինն իւր, Ապշեցոյց, չետ յիշել. և ոչ յիշեցի զայդ ասել ցնա. զիս երէց արար, և ձին սանձաւ թամբաւ առ և անց։ Եւ ասեն ցայրն ընդանիքն իւր. Յարիցես անդրէն գնասցես առ եպիսկոպոսն, և ասասցես. Մկրտեալ չէի, զի՞ արարեր զիս երէց։ Իսկ նորա յարուցեալ գնացեալ առ եպիսկոպոսն, ասէ ցնա. Ես մկրտեալ չէի, զի՞ արարեր զիս երէց։ Եւ ասէ Յոհան. Սափորով միով ջուր բերէք։ Եւ առեալ զջուրն էարկ զգլխով նորա, և ասէ. Երթ, մկրտեցի զքեզ։ Եւ արձակէր զայրն վաղվաղակի յիւրմէ։*

## 815. ԳՐԻԳՈՐ ՍՔԱՆՉԵԼԱԳՈՐԾ

*Գետ մի հոսի ի գաւառի անդ յաղբերաց հայոց լերանց, ընդ ձորավայրաբերեալ յորձանօք ահաւոր հոսմամբ. Գայլ անուանի ի բնակչաց աշխարհին, որ ընդ որ անցանէր մերձակայիցն բազում առնէր վտանգս. առնոյր և ագարակս և արտավարս և մարգս. և թէպէտև բազում դարմանս և հնարս առնէին, այլ օգտէին և ոչինչ. քանզի իբրև հեղեղատ յորդեալ ըստ ժամանակին՝ քանդէր զամենայն ամրութիւնս և ապականէր զաշխարհն։ Վասն միաբանեալ մարդկան, եկին առ Սուրբն Գրիգորիս և աղաչէին զնա, զի լուծցէ զվնաս գետոյն՝ որպէս կամեսցի. և կամ հրամայեսցէ նոցա թողուլ զսահմանն և գնալ յայլ աշխարհ։ Հասեալ յեզր գետոյն և իմացեալ թէ անհնար է մարդկան իմաստութեան կամ ուժոյ ելս առնել վնասուց նորա, բայց եթէ աստուծոյ զօրութեան, յիշեաց զբան մարգարէին, թէ՝ «Սահման եդիր, որ ոչ անցանէ»։ Զայս ասաց և զգաւազանն ի խոնարհ ցցեաց յափն գետոյն, ուր յարձակումն հոսանացն առնէր զվնասն։*

*Եւ ի կալ նորա յաղօթս առ Տէր հանդերձ արտասուօք՝ անդէն վաղվաղակի արմատացեալ լինէր գաւազանն։ Եւ արդարև ծառայեալ գաւազանն այն՝ սահման հաստատեցաւ հոսանաց, զի յայնմհետէ ի յորդել անձրևաց և ուղխից գարնայնոյ՝ ոչ իշխէին անցանել ընդ արմատ ծառոյն. և անուն ծառոյն է մինչև ցայժմ Գաւազան Գրիգորի։*

## 816. ՊԵՏՐՈՍ ԳԵՏԱԴԱՐՁ

*Ժողովուրդը հավաքվել էր Տրապիզոն քաղաքում՝ ջրի օրհնության տոնին։ Հույները հայոց Պետրոս հայրապետին իր ժողովրդի հետ միասին կանգնեցրին ջրի հոսանքի վերևում, իսկ իրենք տեղավորվեցին ներքև-*

վում։ Այդպես արեցին դիտմամբ, որպեսզի Պետրոսի կատարած ջրի օրհնությունը թերի համարեն և իրենք նորից սկսեն օրհնել ջուրը։ Նրանք վաղօրոք սովորեցրել էին մի սպիտակ աղավնու, որպեսզի սա գա, իջնի ջրի մեջ և հետո վերանա երկինք. իբր թե սուրբ հոգին էր, որ եկավ խառնվեց ջրին, հետո երկինք համբարձավ։

Պետրոս Հայրապետն այնպես էր աղոթում, որ գետի ջուրը միանգամից դարձավ դեպի վեր։ Իսկ երբ որ հույների վարժեցրած աղավնին եկավ ջրին խառնվելու՝ հանկարծ հայոց լեռներից մի արծիվ հայտնվեց և վերցնելով աղավնուն, գնաց։ Այս տեսնելով հույները շատ մեծ ամոթով մնացին և ակամայից սկսեցին գովել հայոց հավատը։ Այդ օրվանից Պետրոս Հայրապետին կոչեցին՝ Պետրոս Գետադարձ։

### 817. ՀԱԿՈԲ ՊԱՏՐԻԱՐՔ

Սուլթան Մահմուտի վախթերը թուրքերը հայերին շատ նեղություն կուտային. խեղճերը օր ու արև չունեին։ Մե օրմ Սուլթան Մահմուտը կանչե Հակոբ պատրիարքին կըսե կը. Մեղք է, քու էլլիկտ (ժողովուրդ) հերիք է նեղութեն քաշե, արի ձեռք քաշե, թը ձեր սուտ հավատը թողնեք, մեր ճշմարիտ հավատին դառնաք կը, ես ֆարման կուտամ քու էլլիկիտ (ժողովուրդ) մազին ա չդիպչին։ Հակոբ պատրիարքն ա կըսե կը. Իմ էլլիկս անպես էլլիկմ է, օր նեղութեննեն պրծնելուն հմար իրեն լուս հավատը չի ուրանա։ Իմա օր գլուխս զարնես, ատպես թղթիմ տակ ձեռք չեմ քաշե։ Խաթրով չեք դառնա՝ զոռով դարձնեմ կը,—կըսե Սուլթանը։ Թախտը քուկըդ, իշխանութենը քուկդ,—կըսե Հակոբ պատրիարքը,—ինչ կրնըմ ըսե։

Մեկալ օրը Սուլթանը հրամայե կ'օր Արաբստանու մե քեահլան ձիմ թամքեն տանին ժամին դուռը ման ածեն ու ճվան՝ թը Սուլթանի հրամանն է, վեվ օր Մահմետի դնին դառնա՝ սա ձին, ազմ (ահագին) խազնա ու փաշայութեն ստանա կը։ Տանին կը ձին ժամին դուռը պըտըտցընեն կը, գալող էրթցող գիմանա, կանցնի կէրթա։ Ժամվորն օր գելլե, ժամարար գահանան գելլե ժամեն դուս, տեսնի կը ձին՝ խելքը կերթա. հըմը ֆարաջան մե կողմմ ցկե կը ու վազզե հեծնի կը ձին։ Օսահաթ (նույն պահին) սոոր ալլահ ալլահով, տասվերկու մոլլայով տանին կը թագավորին, սիվնըթեն կը, փաշայութեն, ազմա խազնա կուտան կը։

Սուլթանը կանչե կը Հակոբ պատրիարքին ու կըսե կը թը. Տե՛ս, մե էյրաթի բանովմ քու ժամարար գհանատ դառուցի, արի վախթին ստորագրութեն տու, վերջանա։

— Թագավոր ապրատ,—կըսե Հակոբ պատրիարքը,—ներե, մե խոսքմ ըսեմ։ Ղորթ է, ժամարար գըհանաս դառուցիր, հըմը՝ ատիկ թուրքի տղա գըլլի։

Կերթան գուգան օր ատոր մարը հինգ տարի առաջ վախճաներ է։

— Է, վնաս չունի,—կըսե Հակոբ պատրիարքը,—կաղաչեմ օր ղահմատ (նեղութլուն) քաշես գաս հետս, ես անոր հարցնեմ կը։

Սուլթանը հոժարի կը։ Հակոբ պատրիարքը զգեստավորի կը, կերթան գերեզմանները, ատոր մոր գերեզմանը գտնին կը։ Հակոբ պատրիարքը ձեռքերը վերև բարձրցընե, աղոթե կու կըսե. Աստծու անունով հրամայեմ կը քեզի, օր դուս էլլես ու ըսես թը աս գհանա տղատ հումե՞ն է։

Մեմ ա բիրտան (հանկարծ) հինգ տարվա մեռածը գելլե դուս ու կըսե. Մե ենիչարեցեմ է էղե ատ տղաս, ու կենա կանցնի գետնի տակը։

Սուլթանը աս օր տեսնի կը, շատ ղարմանա կը, հըմը մոլլաները կըսեն կը թը ատ հեչ, գեողպայաճութեն (աչքակապություն) էր, ակար ատքան հրաշագործ է, էրկու շուն դրկիմ, թող ուրիշ բան դառցնե։

Սուլթանը հրամայե կը, մե սնդկիմ մեջ էրկու լակոտ դնեն, ղայիմ (ամուր) կողպեն, բերեն կը Հակոբ պատրիարքին. Հակոբ պատրիարքը խաչակնքե կ՚ու կըսե՝ տարեք։ Տանին կը. Սուլթանը բանա կը օր էրկու հատ կարմիր խնձոր, հավասի՝ կաննե կուտե։ Մոլլեքը կըսեն, տեսար, Հակոբ պատրիարքը քեզի շան լակոտ ուտեցուց։ Լավ, կըսե Սուլթանը, դուք ա էրեք, թող շան լակոտ ըլլի կերածս։

## 818. ԴԱՎԻԹ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Դավիթ կաթողիկոսի համար ասում են, որ նա էլ ա մի քիչ փողի հետ սեր ունեցել ու չէ թե մենակ իր փողի համարքը, իր աշխանի ձվի, ընկուզի, իր մառանի տանձ ու խնձորի, իր բաղի հավողի ճթերն էլ ա համարած ունեցել։

Հավողը որ հասնում ա մեկ ամառ, վազի չորս կողմը բարակ հող ա ածիլ տալիս, որ թե գողացող ըլի, կոխած տեղը չափի, ոտողին գտնի, քթիցը հանի։ Ղոյմաղոշում, բայց չգիտեմ ֆառաշ, թե տիրացու է ըլում, կաթողիկոսի իրան հողաթափը վերցնում, հաքնում, վազի հոգին հանում ա։ Մյուս օրը սար ու ձոր իրարոցով են դիպչում։ Ինչքան դոանը մարդ ա ունենում, բերել ոտները չափել ա տալիս, բայց ընդվայ։ Ծառայիցը մեկը, կարելի ա՝ թե հենց անողն ըլի էլած—իրան ա գող հանում, չունքի իր հողաթափը որ բերում են, մի և նույն չափն ա դուս գալիս։ Տեսնում ա վե-

հապետը, որ բանը բոշ ա, ծանր ծանր տուն ա գնում ու հողաթափներին էլ ղարաուլ կանգնացնում։

## 819. ՆԵՐՍԵՍ ԱՇՏԱՐԱԿԵՑԻ

Եփ օր Ներսես Աշտարակցին էղեր է պզտիկ տղա, էնոր խըրկեր ին էջմիածին կրթութեն առնելու։ Մե քանի վախտ օր կը սորվի, մե օրըմ կերթա վարթապետի ախոռ։ Կը տեսնա օր կատուն կը բանցըրնա տանիք, դոխու (աղավնու) ձաքեր ուտելու։ էտ տղեն կը քըշե կատվու ետևեն. կատուն կը փախնի կը մըտնի մե ուրուշ վարթապետիմ՝ տուն։ Տղան կը մըտնի նես ու վարթապետին կըսե. Սրփազան տեր, քու կատուն կապե, օր մեր դոխուն ձաքեր չուտե։

Վարթապետ կը նեղանա ու կըսե. Թող գընա հուկուց (այստեղից), անիծյալ տղա։ Ներսեսը ավուն (տհուն) կը փախնի կիգա տուն։ Մեկէլ հեղ կը տեսնա, օր էլի կատուն օտներ կը բանցըրցու, դոխներ ուտելու։ Կը բըռնե, օտներ կը դնե գզի (ընկույզ) կըճոռի մեջն ու կը հալե կուբը, կըլնա օտներուն։ Եփ օր կը պազի, բաց կը թողնի ուրանց տուն։ Վարթապետ կիմնա, կիգա գանգատ կենե ուր սովըրցուցող վարթապետին։ Եփ օր Ներսես կիգա տուն, ուր վարթապետ էնոր գլոխ կը շփե ու կըսե. Ջավակըս, դու շնորքով տղա իս, քըզի պըտի պահիմ, չուրի (մինչև) քու վարթապետ դառնալ։

Իսկական էռմալ լե կեղնի։

## 820. ԽՐԻՄՅԱՆ ՀԱՅՐԻԿ

Ասում են, թե հազար ինն հարյուր հինգ թվականին ռուսաց ցարը կազակը ղրկեց, ամբողջ էջմիածնի վանքը շրջապատեց, որ ոչ մի մարդ չկարողանա օգնության հասնել։ էդ ժամանակ Երևանի գիմնազիստները գալիս են, որ կազակների հետ կռվեն։ Խրիմյանին լուր են տալիս, որ գիմնազիստները գալիս են։ Խրիմյանը մարդ ա ուղարկում, ասում ա. Ետ դարձեք, էս սև քարի (=վանքի) ապրանքը ոչ ոք չի կարող տանել։ էդ ժամանակ կազակները, որ շրջապատել էին վանքը, մտնում են ներս, ամբողջ հարստությունը թալանում։ Սաղ թանկարժեք ապրանքը լցնում են յաշչիկներն ու ղրկում Պետերբուրգ։

էդ ժամանակ բոլոր հայ կնանիք անիծեցին, որ ցարը էդ տարածից խեր չտեսնի, չը վայելի։

*Ցանցավ մի քանի ամիս ճապոնու պատերազմն սկսվեց։ Ցարն էդ պատերազմը տանուլ տվեց։ Էդտեղ Թագավորի մերն ասաց տղին. էստեղ էջմիածնի վանքի Թալանն էր պատճառը. էդ Թալանի պատճառով էր էս կռիվն ու տանուլ տալը։*

*Ինց որ էդ Թալանը տարել էին, էնպես էլ ետ տվեցին։*

Բ

*Խրիմյան Հայրիկը երբ Բերայեն կանցնի՝ կը տեսնե որ հինգ-վեց վանեցի երիտասարդներ արյուն քրտինքներու մեջ ապրանքներու ծանր հակեր կը տանին։ Երբ անոնք կը տեսնեն Հայոց Հայրիկը, իրենց բեռները գետինը կը դնեն, և ճամբուն մեկ կողմը կը շարվին՝ անոր օրհնությունն ընդունելու համար։*

*Հայոց Հայրիկը կը մոտենա անոնց, կը հարցնե. Զավակներս, ինչպե՞ս եք, ի՞նչ կ'ընեք։*

*— Սրբազան Հայրիկ, բեռնակրություն կ'ընենք, չոր հացի մը համար Պոլսո ճամբաները մեր քրտինքով կը Թրջենք, նորեն ալ շնորհքով չենք կրնար ապրիլ։*

*— Զավակներս, Պոլսո ճամբաները որչափ ալ Թրջեք ձեր քրտինքով, անոնք արդյունավոր չեն ըլլար։ Գացեք երկիր, երբ հոն ձեր պապերուն հողին փարիք և անոր մեջ խառնեք ձեր քրտինքը՝ այն ատեն արդյունավոր կը լինի ձեր աշխատանքը։*

Գ

*Մի անգամ Խրիմյան Հայրիկը Վան քաղաքից ոտքով Վարագ էր գնում։ Ճանապարհին հանդիպում է նրան մի քուրդ ավազակ։ Չարագործի դեմքը գունատվում է, ձեռքերը սկսում են դողալ։*

*— Բարեկամ, ինչո՞ւ շփոթեցար դու, հարցնում է Հայրիկը։*

*— Ես ուզում էի քեզ սպանել,—պատասխանում է քուրդը։*

*— Ապա ինչո՞ւ չսպանեցիր,—հարցնում է Խրիմյանը։*

*— Աստված չթողեց,—ասում է քուրդը և ընկնում է նրա ոտքերը ներողություն խնդրելու։*

## 821. ԿԱՇՈՑԻ ԵՐԵՑԿԻՆԸ

*Կը պատմեն, թե կաշոցիք, Թրքաց բռնութենեն ազատելու համար, կորոշեն տաճկանալ, և կը տաճկանան. գեղի քահանայն այգին կը գտնվի*

*այս ժամուս. երեցկին կը վազե գույժ տալ երիցուն, թե՝ փութա, գեղացիք ամենքը տաճկցան։ Երեցը կը դառնա կը պատասխանե. «Վա՛յ գարը, սեն տահա կյավուռճա՞ մը սեռյլերսըն, պեն չոգտան տաճիկ օլմուշում»։ Խեղճ երեցկինը այլայլված, մազերը փետտելով կը թոփ ժայռի մը գլուխ, ձայն կարձակե կամրկապցվոց. «Ես մինակ մնացի հայ. ձեր աստվածը կը սիրեք, կամրկապցիք, իմ հոգվույն խունկ ծխեցեք, աղոթք ու պաշտոն կատարեք»։ Եվ կամրկապցվոց աչքին առջև զինքը կը գահավիժե, Եփրատին հոսանաց մեջ կը սուզանի։ Կամրկապցիք անոր մարմինը կը հանեն, կը թաղեն, ամեն տաղավարին անոր գերեզմանը կօրհնվի, և ամեն կիրակմտին Կամրկապու մայրերը երբ տանիքը խունկ կը ծխեն, կսեն. Աստված ողորմի հին ու նոր անցավորաց, անօրենն սպանվածին, ծովն ու ցամաքը մեռածին, ճամբա շինողին, աղբյուր բերողին, կամուրջ կապողին, քարերը խտտկողին, աստված ողորմի Կաշոյի երեցկին Մամային։*

## 822. ԴԱԼԻ ՔԵՇԻՇԸ

*Արզյուրում դալի քեշիշըմ կա էղե։ Թուրքերը ատոր ձեռք կառնեն էղե, օր յա իրեն վըրան խընտան, յա մեր հավատին, յա թե չէ՝ խոսքով պարտավորեցնեն ու ծեծեն։ Հըմը դալի քեշիշը ամմեն անքամ թուրքերուն սարքած օյիններուն տըկեն դուս գուքա ու անոնց կամընչեցընե կը։ Մե անքամըմ մե պատկերքըմ քաշել կուտան—Քրիստոս չըպլախ, մե ձեռքը արանքին դըրած, մեկալ ձեռքը փուրչուլուղ կուտե. առաչն ա իրենց Մահմատին պատկերքը, օր ձեռքը էրկընցուցեր է։ Կանչեն կը դալի քեշիշին. «Տեսնիս կը,—կըսեն,—ձեր Իսան ինչքան անամոթ է. չըպլախ կայներ է, մե ձեռքը արանքին է դըրե, մեկալովը փուրչուլուղ կուտե, մեր Մահմատն ա անոր կըսե. չե՛ս ամըչե օր ատ ղայտին կայներ ես, փուրչուլուղ կուտես»։ Դալի քեշիշը պատասխան կուտա. «Դուք սըխալ էք, պատկերքին միտքը չէք հասկըցե. մեր Քրիստոսը փուրչուլուղ կուտե, ձեր Մահմատը ձեռքը էրկընցուցեր է, թե ինծ ա տու, մեր Քրիստոսն ա մեկալ ձեռքովը ցըցընե կը թե՝ խիկ կե»։ Թուրքերը ամոթով կը մընան, ձեները կը կըտռեն։*

# ԱՅԼ ԵՎ ԱՅԼ ՎԱՅՐԵՐ, ՇԵՆՔԵՐ, ԱՌԱՐԿԱՆԵՐ

## 823. ՊԱՌԱՎԻ ԾԱԿ

Գտնվում է Արտաշատի Յուվա գյուղից ճարավ

*Խոր-Վիրապի առաստաղի արևելյան կողմում կա մի փոքրիկ անցք, որ կոչվում է Պառավի ծակ։ Այդ անցքով հազիվ ներս է թափանցում լույսը։ Ասում են, թե հրեշտակի հրամանով մի աստվածապաշտ պառավ ամեն օր այդ անցքից գաղտնի մի կտոր հաց է նետել Խոր-Վիրապում գտնվող Գրիգոր Լուսավորչին։*

## 824. ՓԱՌԱԽՈՏ ԵՎ ՑՈԼԱԿԵՐՏ

Ստույգ տեղը հայտնի չէ

*Ամասիա բնակեալ յԱրմաւիր՝ յետ ամաց ծնանի զԳեղամ, և յետ Գեղամայ զՓառոխ, արի և զՑոլակ։ Եւ յետ ծնանելոյ զսոսա՝ անցանէ զգետովն մերձ ի լեառնն Հարաւոյ, և շինէ անդ առ խորշիւք լեռնոտինն մեծապէս ծախիւք երկուս տունս, զմին յարևելս կոյս, մօտ յակունս աղբերցն, որ առ ստորոտով լերինն ելանեն. իսկ զմիւսն յարևմուտս կոյս նորին տանն, բացագոյն իբր մեծօր հասարակ աւուր միոյ հետևակագնացի առն ճանապարհի։ Եւ ետ զնոսա ի ժառանգութիւն երկուց որդւոց իւրոց, արւոյն Փառոխի և կայտառին Ցոլակայ. յորս բնակեալ՝ յիւրեանց անուն զտեղիսն կոչեցին, ի Փառոխայ՝ Փառախոտ, և ի Ցոլակայ՝ Ցոլակերտ։*

## 825. ԱՆԴՐԱՆԻԿԻ ՏԱՆՁԵՆԻՆ

Գտնվում է Եղեգնաձորի Ազատեկ գյուղից ճյուսիս-արևելք

*Երբ Ազատեկի ժողովուրդը իմանում է, որ Զորավար Անդրանիկն իր քաջերով գալու է իրենց գյուղը, մեծ խմբով գնում են նրան դիմավորելու։*

Գյուղից դուրս, տանձենու տակ նրանք ճոխ խնջույք են տալիս սիրելի զորավարի պատվին։ Խնջույքի վերջում հիշատակի համար Անդրանիկը սրով հարվածում է տանձենու բնին։ Սրի հետքը հիմա էլ կա տանձենու վրա։ Տեղացիք այդ ծառին Անդրանիկի քռոսիկ են ասում, որ տեղական բարբառով տանձենի է նշանակում։

## 826. ՍԵԼԻՄԻ ԻՋԵՎԱՆԱՏՈՒՆԸ

Գտնվում է Եղեգնաձորում

Ասում են, որ տեղական իշխանի որդին մի անգամ ձմռանը իր շքախմբով անցնելիս է լինում այս լեռնանցքով։ Հանկարծ բարձրանում է մի սոսկալի ձյունամրրիկ։ Ամայի վայրում պատսպարվելու տեղ չգտնելով, իշխանազնն ու նրա մարդիկ խեղդվում են բքի մեջ։ Իր զավակի հիշատակը հավերժացնելու համար իշխանի կինը դեպքի վայրում մի մեծ իջևանատուն է կառուցել տալիս, որպեսզի ձմռան բուքերին Եղեգնաձորի լեռնանցքով անցնող կարավանները իջևանեն այնտեղ՝ մինչև եղանակի պարզվելն ու ճանապարհի բացվելը։ Եվ իջևանատունը իշխանազնի անունով կոչվում է Սելիմի իջևանատուն կամ քարվանսարա։

## 827. ՇԱՀ-ԹԱԽԹ

Գտնվում է Ջուղայի բերդի մոտ

Ժամանակին ջուղայեցի խոջա-խաչիկը այստեղ մեծ ճաշկերույթ է տվել Շահ-Աբասին։ Ճաշի ժամանակ սեղանի վրա դրվել են ոսկուց շինած զանազան մրգեր (խաղող, խնձոր և այլն)։ Շահ-Աբասը կարծելով, թե դրանք բնական են, ձեռքը պարզել է դեպի խաղողը, բայց վերիրի ակնարկով հասկացել է իր սխալը և ձեռքը հետ է քաշել։ Զարմանալով ջուղայեցիների այդքան հարստության ու փարթամության վրա, Շահ-Աբասը որոշում է նրանց գաղթեցնել Պարսկաստան։

## 828. ԲԵԴՈՒ ԾԱՌԸ

Գտնվում է Գորիսի շրջանի Խոտ գյուղում

Խոտ գյուղում Բեդի անունով մի մարդ է եղել, որն ունեցել է մի շատ գեղեցիկ աղջիկ։ Սա սիրահարվել է իրենց հովվին։ Մի օր էլ, երբ Բեդին հովվին տեսել է իր աղջկա հետ համբուրվելիս, քաշել է

*խանչալը և սպանել է նրան։ Աղջիկը ուշաթափ ժայռից ցած է նետվել։ Աղջկան թաղել են իր ընկած տեղում և գերեզմանի վրա մի ծառ տնկել, որը հայտնի է Բեդու ծառ անունով։*

### 829. ԲՈԼՈՒ ԿԱԼԸ

Գտնվում է Գորիսի շրջանի Շինուհայր գյուղում

*Դավիթ-բեկն ունեցել է Բոլի անունով մի հաղթանդամ և ուժեղ թիկնապահ։ Նա գրպանում մեծ-մեծ քարեր է պահել, որոնցով հարվածել ու սպանել է իրեն զայրացնողներին։ Միայն Դավիթ-բեկին նա ծառայել է հլու-հնազանդ, կատարել նրա բոլոր ասածները։ Երբ Բոլին Շնհեր գյուղի բերդի գլխից քար է նետել, քարը հասել է մինչև Որոտան գետի ափը։ Ամեն անգամ, երբ գետը 10—15 փթանոց քարեր է բերել իր հետ, Բոլին մեն-մենակ գրկել է այդ քարերը, բարձրացրել մինչև գյուղ և իրար վրա դնելով կալ է սարքել։ Այդ կալն է ահա, որ կոչվում է Բոլու կալ։*

### 830. ՋՈՐՈՒ ՈՏԱՏԵՂԸ

Գտնվում է Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի մոտ

*Արաքս գետի ափին պարսիկների դեմ հայերի մղած արյունալի կռվից հետո, մի հարս գիշերով նստում է ջորին և գնում է կռվի դաշտ՝ զոհված ամուսնու դիակը գյուղ տեղափոխելու։ Վերադարձին նրա դեմ դուրս են գալիս 10—15 պարսիկ զինվորներ և ուզում են բռնել։ Հարսը ջորին նըստած ծառս է լինում զինվորների վրա։ Ջորու ոտների տակից կրակի կայծեր են ցայտում և այրում զինվորներին։ Եվ հարսը զոհված ամուսնու դիակը բերում է գյուղ ու թաղում։ Ջորու ծառս եղած տեղում սալ քարի վրա երևում են նրա ոտների հետքերը։*

### 831. ԵՋԻԴ ԽՐՄԱՆԻ

Գտնվում է Շուշուց հյուսիս ընկած լեռնահովտում

*Պատմում են, որ Իրանի Մահմեդ խանը նվաճում է այստեղ գտնվող հայկական խաղաղ գյուղը և ցանկանալով գովասանքի խոսքեր լսել իր հասցեին, կանչել է տալիս մի ծեր գյուղացու (գյուղի տանուտերին) և հարցնում, թե ինչն են ամենից շատ սիրում գյուղացիները։ «Մեր արտը, կալը, այգին ու արոտը, եզն ու կովը, գոմեշն ու ոչխարը, մեր սարերը»,*

—պատասխանում է հայ գյուղացին։ Զայրացած խանը հրամայում է կալ պատրաստել, հարյուր ձի պայտել այնպես, որ մեխերը դեպի գետին ուղղված լինեն սուր ծայրերով և ծայրերն էլ չծալված։ Հավաքում է գյուղացիներին և պառկեցնելով կալում, կատաղի ձիերին բաց է թողնում նրանց վրա։ Նահատակվում են բոլորը։ Այդ օրվանից սպանդի տեղը կոչվում է Եգիդ Խրմանի (եզիդների կալ)։

## 832. ԲԱՐԵՎԱԾԱՌ ՈՒԽՏԱՏԵՂԻՆ

Գտնվում է Արցախի Վերին Թաղավարդ գյուղից
ճարավ-արևմուտք

Ասում են, թե հին ժամանակ այստեղ ապրել է մի եպիսկոպոս. և ամեն անգամ, երբ նա երկար ծոմապահությունից ու ճգնությունից հետո պատարագ էր մատուցում, շրջակայքի ծառերը ողջույնի ժամանակ երեք անգամ խոնարհում էին իրենց կատարները և իրար կպցնելով ողջույն էին տալիս։ Դրանից էլ ուխտատեղու անունը դնում են Բարևածառ։

## 833. ԽՈՇԱՄԴԱՄԻ ԱԳԱՐԱԿԸ

Գտնվում է Արցախում

Կին ոմն հայազգի լուանայր ի միում վտակի զնորածին մանուկն իւր, որում հանդիպեալ արքային Շահ-Աբասայ, և տեսեալ զմանուկն ի գիրկս ծնողի՝ խանդաղատի զնովաւ, և ապա ի նշան սիրոյ պարգևէ նմա զնոյն կալուած և ի հրովարտակի իւրում հաստատութեան գրէ, թէ՝ չունի ոք զհրաման որսալոյ անգամ զթռչուն ագարակիս։ Ուստի յաճախեալ յայնմ վայրի թռչնոց, և ի ձայնելն փասիանաց՝ որսորդք ի հեռուստ կացեալ, ասեն. Զայնեա փասիան, ձայնեա, զի ունիս զԽօշամդամ քեզ հզօր պաշտպան։ Եւ այժմ առակ է հասարակեալ առ արցախեցիս, և ասի այնոցիկ արանց, որոց են հզօրեղ պաշտպանք։

## 834. ԱՂՋԿԱ ԾՄԱԿԸ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ջարդարաշեն գյուղի մոտ

Ժամանակին Ջարդարաշեն գյուղից կորչում է չորս տարեկան մի աղջիկ։ Ծաղիկ քաղելով նա աննկատելի հասնում է անտառի խորքը և մոլորվելով մնում անտառում երեք օր, երեք գիշեր։ Չորրորդ օրը գյուղի

տավարածը տավարը բերում է անտառ և գտնում կորած երեխային։ Ձեռքից բռնած բերում է գյուղ և հանձնում ծնողներին։ Այդ օրվանից անտառի այն տեղը, որտեղ գտնվել էր կորած աղջիկը, կոչվում է Աղջկա ծմակ։

835. ՈՍԿՈՒ ԽԱՉ

Գտնվում է Լեռնային Ղարաբաղի Աշան գյուղի ճանդում

Էտ հանդումը մին կաղնի ծառ ա իլալ (եղել)։ Տրա վրա երգինքան յուս ա էր էկալ (իջել)։ Ըռուխանա (առավոտից) ըտե (այդտեղ) Նահատակին սարին դիմաց աղոթք են ըրալ (արել). տրա հետի (համար) տեղը կոչվել ա Վեսկե (ոսկու) խաչ։

836. ՀԱՐՍԻ ԹԱԼԱ

Գտնվում է Կարմիրի շրջանի Հին Բաշքենդ գյուղի մոտ

Շատ հին վախտին (ժամանակ) մի տղա Շամշադինից մի լավ, սուրուն ախչիկ ա ուզըմ, պիրըմ Հին Բաշքյանդ։ Անց ա կենըմ միառժամանակ, մի օր էս ախչիկը մարթին ասըմ ա. Ա՛յ մարթ, վե կաց թդարիք (պատրաստություն) արա, քնանք իմ հերանց տուն։ Սրհանք թդարիք են տենըմ ու քընմ են կնգյա հերանց տուն։ Ճմփին թուրքերը վրա են տալի, վեր սրա կնգյանը փխցնեն. սա կնգյանը քըցմ ա մի փոս ու ինքը դիրք մըտնըմ, թամուզին էլ (բոլորին) կոտըրըմ ա, ու կնգյա հետ ճամփա ընգնըմ քըմն։ Ըտիյան եդը (դրանից հետո) էտ տեղի անըմը մընըմ ա Հարսի թալա (բացատ)։

837. ԳՅՈՒՆԱՇԻ ՀԱՆԴ

Գտնվում է Շամշադինի շրջանի Նորաշեն գյուղի մոտ

Նորաշեն գյուղում ապրելիս է եղել Գյունաշ անունով մի հաղթանդամ ու քաջ կին։ Նա գոտեմարտել է շահի փահլևանի հետ և հաղթել է նրան։ Շահը լսելով այդ մասին՝ առատ պարգևներ է տվել Գյունաշին։ Այդ օրվանից գոտեմարտի տեղը կոչվել է Գյունաշի հանդ։

838. ԱՆԱՍՏՎԱԾԻ ԿԱԼ

Գտնվում է Շամշադինի շրջանում

Լենկ-Թեմուրը որ գալիս է մեր երկիրը, Գարդման լեռան լանջի բնակիչները թաքնվում են խորանաշարի վանքերում։ Թեմուրը շղթաներով

*կապկապել է տալիս գյուղացիներին, երեսնիվայր պառկեցնում կալատեղում, և ձիերի պայտերի մեխերի ծայրերը դեպի դուրս ամրացնել տալով՝ այնքան է քշել տալիս նրանց վրայով, որ բոլորը տրորվում, ոչնչանում են։ Հետո հողով ծածկել է տալիս կալը և հեռանում։ Կալի անունը մնում է Անաստվածի կալ (=Եղիտ խրման)։*

## 839. ՇՈՒՂՈՒ ԱՂՋԿԱ ՈՒՐԹ

Գտնվում է Շամշադինի շրջանում, Մուրղուզ լեռան լանջին

*Լեզգիները որ եկել են Հայաստան, փախե-փախն ընկել է չորս կողմը, ժողովուրդը քաշվել է սարերը։ Շուղու աղջիկը դուլաջ է ընկել (մոլորվել է), մնացել մենակ և մտել Մուրղուզ լեռան այրերից մեկը։ Քանի դեռ գետինը բաց է եղել, նա ապրել է կանաչով, երբ ձյունը ծածկել է գետինը, Շուղու աղջիկը ուժասպառ է եղել ու մեռել է։ Այդ տեղը այժմ կոչվում է Շուղու աղջկա ուրթ։*

## 840. ՎԱՐԴԱՆ ԶՈՐԱՎԱՐԻ ԿԱՂՆԻՆ

Գտնվում է Իջևանի Ներքին-Աղդան գյուղում

Ա

*Սա մի վիթխարի հսկա է, ամեն ճյուղը մի մեծ ծառի չափ։ Բնի տակ ունի մի ահագին բացվածք, ուր կարող են մի քանի մարդ տեղավորվել։ Ասում են, թե այս կաղնին տնկել է Վարդան զորավարը։ Նրա տակից հոսում է առատաջուր ու զուլալ մի աղբյուր, որին տեղացիք «Զորավորի աղբյուր» են ասում։*

*Երբ գյուղի ջահելները պատերազմ են գնացել, ծերերը նրանց ասել են. «Զորավոր աղբյուրից ջուր խմեք, ձեռքներդ քսեք քաջ Վարդանի տնկած կաղնուն՝ ձեզ մահ ու մեռ չկա»... Եվ այդպես էլ արել են։*

Բ

*Նույն ծառի և աղբյուրի մասին պատմում են, որ երբ արաբների դեմ տարած հաղթանակից հետո, իր զորքի հետ միասին, վերադառնում էր Գևորգ Մարզպետունին, ծարավից պապակած զորքն ու զորապետը հասնում են Զորավոր աղբյուրին, հագենում, և իբրև հիշատակ, Գևորգ Մարզպետունին մոտակա ծառից մի շիվ է կտրում ու տնկում աղբյուրի շուր-*

*թին։ Մարդիկ խնամում են ծառը և այդ օրվանից սրբացնում նրան ի հիշատակ սիրելի զորավարի։*

## 841. ԼԵԳԶՈՒ ԿԱԾԱՆ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի հյուսիսային կողմում

*Ասում են, թե ժամանակին լեզգիները այս կողմերից երեխաներ են փախցրել, տարել ծախել։ Եկել են թաքնվել անտառում, աչքով պահել, որ մենակ երեխա տեսնեն, փախցնեն։ Եվ գալիս են լինում աշնան կողմերը, աշնան բինաների ժամանակ։ Մի օր էլ մի բինայում կանայք վայնասուն են բարձրացնում. Տարա՜վ, տարա՜վ, լեզգին տարա՜վ... Դավի անունով մի մարդ, շատ հայտնի մի նշանառու, տեսնում է փախչող լեզգիներին, որոնք քիչ է մնում, որ հասնեն անտառին։ Ձեն է տալիս, որ երեխան ետ նայի, գլուխը թեքի։ Հենց երեխան թեքվում է, կրակում է։ Լեզգին ընկնում է ցած։ Ընկերներն ուզում են մոտենալ վերցնել։ Էլի է կրակում, սպանում մի քանիսին։ Մնացածները փախչում են։ Երեխային բերում են բինա։ Դրանից հետո՝ էլ ոչ մի լեզգի չի գալիս։ Կածանի անունն էլ են օրվանից մնում է Լեզգու կածան։*

## 842. ՀԱՏԿԻ ՃՈՃԱՏԵՂ

Գտնվում է Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի Քաչալ-դաղ սարում

*Պատմում են, որ մի ջահել տղա ղաչաղ է ընկնում։ Նշանածը չի ուզում մնալ տանը, հետը փախչում է սարերը։ Տարին չանցած՝ մի աղջիկ են ունենում։ Ընկերները անունը դնում են Ոսկեհատ. բայց Հատիկ են ասում, մեկ՝ որ կարճ է լինում, մեկ էլ՝ որ ուրիշ երեխա չի լինում իրենց հետ։ Մտածում են նրա համար ճոճատեղ շինել։ Քարայրի մուտքի երկու կողմի քարերը ծակում են՝ ճոճ կապում։ Հատիկը մեծանում է այդտեղ։ Դրա համար էլ քարայրի անունը մնացել է Հատկի ճոճատեղ։*

## 843. ՆԱՀԱՏԱԿԻ ԽԱՉՔԱՐԸ

Գտնվում է Լոռու Թեղուտ գյուղի ճանղամասում

### Ա

*Մեծն Վարդան ի խաղալն իւր զօրօք յօգնութիւն Աղուանից ի պատերազմին ընդդէմ Պարսից, աստ իջևանեալ իցէ, և զկնի նահատակութեան*

*նորա, տեղիս այս կոչեցեալ է վասն յիշատակի նորա Նահատակի խաչքար։*

Բ

*Պարսիկների դեմ կռվելիս Վարդան Մամիկոնյանը վիրավորվել է։ Նրա վերքից հոսած արյան տեղում հետագայում մի խաչքար են կանգնեցրել, որը կոչվում է Նահատակա խեչ։*

## 844. ՀԱԿԱՌԱԿԻ ՀՈՂԵՐ

Գտնվում է Կայան բերդի հարավ-արևելյան կողմում

*Ընկալաւ զայս անուն ի հակառակութենէ որդւոյն Տուտայ, ընդ եպիսկոպոսին Մինասայ առաքեցելոյն ի Զաքարիա սպասալարէ, վասն առնելոյ զքանի մի արարողութիւնս ընդ Յունաց... Աստ զանակոծ արարին զՄինաս եպիսկոպոսն և զչորիսն զահավէժ արկին. վասն որոյ բնակիչք աւանդութեամբ ցայսօր ժամանակի Հակառակի հողեր ասեն։*

## 845. ՄԱՐՄԵՏ

Տեղը որոշակի չէ

*Ինքն (Արտաշէս) չուեաց ի քաղաքն Երուանդայ. յառաջ քան զմիջօրեայ հասեալ ի դաստակերտն Երուանդայ, և միաբան գոչմամբ հրամայեաց աղաղակել զօրացն՝ «Մար ամատ», որ թարգմանի Մարս եկն,. յիշեցուցանելով զթշնամանսն, զոր յղէր Երուանդ առ Թագաւորն Պարսից և առ Սմբատ, Մար զնա կոչելով։ Յայսմ ի սոյն ձայն անուանեցաւ դաստակերտն Մարմէտ, իբր ի կամաց Արտաշիսի՝ բառնալ զանուն Երուանդայ ի տեղւոջէն՝ այս պատճառ է անուանակոչութեան դաստակերտին։*

## 846. ՆԱՐԵԿԱՑՈՒ ԱՂՈԹԱՏԵՂԻՆ

Գտնվում է Վասպուրականի Նարեկ գյուղի մոտ

*Սա մի ճգնարան է, որի հատակի քարերը տեղ-տեղ մարդու ոտքի տեղերի մեծությամբ փոսեր ունեն։ Ասում են, թե դրանք Գրիգոր Նարեկացու ոտքերի հետքերն են։*

## 847. ԿԱՐԿՈՒՏ ԽԱՉ

Գտնվում է Վասպուրականում, Վարագա վանքի մոտ

*Մի անգամ սարսափելի կարկուտ է գալիս Վանի Այգեստան թաղամասի այգիների և շրջակա արտերի վրա։ Տեղացիները խաչքար են տնկում դիմացի բարձրավանդակի գլխին, որպեսզի կարկուտը դադարի և այլևս չկրկնվի։ Այդ խաչքարին ասում են Կարկուտ խաչ։*

## 848. ՍՈՒՐԲ ԾԱՌԵՐԻ ՊՈՒՐԱԿԸ

Գտնվում է Հայոց-Ձորի Հնդստան գյուղի մոտակայքում

*Մի քուրդ ծառ է կտրում այս պուրակից և թեպետ տեսնում է, որ կտրելու ժամանակ արյուն է հոսում ծառից, շալակում է այն և տանում տուն։ Ճանապարհին նստում է հանգստանալու. երբ ուզում է վեր կենալ, տեսնում է, որ ծառը կպել է շալակից և չի թողնում շարժվել։ Գիշերը վրա է հասնում և քուրդը ծառը շալակին մնում է տեղում։ Երազում երևում է մի ծերունի և ասում է. Հետ տար ծառն իր տեղը և դու կազատվես։ Այդպես էլ անում է, և նոր միայն ծառը պոկ է գալիս նրա մեջքից։*

## 849. ԿՃԱՎ

Գտնվում է Մոկսում

*Կճաւն կոչեցեալ տեղի դիւաց լցեալ պաշտամամբ, հասեալ անդ առաքելանման քահանայիցն և սրբոց կուսանացն զընդդիմամարտն արգելուին զճիոցն։ Յորում զայրագնեալ դիւացն՝ դիմեալ ի վերայ խեղճին, ծռէին, պնչատէին զպաշտօնեայս իւրեանց. որ և անդ առաքելանման քահանայքն հալածեալ զնոսա բժշկէին զխեղեալսն, վասն որոյ տեղին կոչեցաւ Կճաւ։*

## 850. ՉՈՐՍ ԳՅՈՇԱ

Գտնվում է Շատախի Թաղ գյուղից արևելք

*Այստեղ արյունով և թարախով լի կաթսաներ են թաղված։ Ասում են, թե եթե այդ կաթսաները հանեն և նրանց միջի հեղուկը թափեն, այլևս կռիվ ու պատերազմ չի լինի և «խեր-խաղաղութեն» կտիրի աշխարհին։*

## 851. ԻՇՈՑ ՀՐԱՊԱՐԱԿ

Գտնվում է Սպարկերտի Պաստ և Մզրա գյուղերի մոտ

*Սպարկերտի գյուղերի էշերը հնում փախչում գալիս էին Կաղնուտադաշտ կոչված վայրի մոտ և սկսում էին կռվել իրար հետ։ Այստեղ էին հավաքվում նաև իշատերերը և նույնպես կռվում։ Պատահել է, որ էշերի համար նույնիսկ մարդասպանություն է եղել։ Այդ տեղի անունը կոչվում է Իշոց հրապարակ կամ Իշոց կռվադաշտ (Մայդանե-քիտան)։*

## 852. ԺՈՂՈՎ

Գտնվում է Տարոնում

*Ոմանք ելեալք ի յՈղկանայ, որսոյ պատճառաւ գային արք ԾԾ։ Իբրև տեսին զզաւրսն Պարսից, զի յանհոգս էին, ի վերայ յարձակեալ, ոչ ետուն ումեք յերիվար ելանել, այլ ի շուրջ եկեալ ի նոյն սեղանն, սպանին արս ՑՃԸ, և վասն որ այնպէս ժողովեալ սպանին, կոչեցաւ անուն տեղոյն Ժողով։*

## 853. ԱՐԾՎԻՔ

Գտնվում է Տարոնում

*Իշխանն Հաշտենից սկսաւ կռուել ընդ իշխանսն Հայոց։ Եւ յանխնայ սկսաւ արեան ճապաղիս հանել և ամենայն զաւրքն զաղաղակ բարձին առաջի իշխանին Սմենայ։ Իսկ նա ձայն տուեալ ասէ. Ա՛յ գայլակորիւն, յիշեցեր զբարս հաւր քո և ի նոյն շաղախակերութիւն դարձար։ Իսկ նա ասէ. Ա՛յ արծուաձագ, որ թևաւքդ ես հպարտացեալ, եթէ ի լար ականատացս անկանիս, ես ցուցանեմ զզաւրութիւնս իմ ի քեզ։ Իսկ Սմենայ իշխանն ոչ հանդուրժեաց առ թշնամանսն, յարձակեալ ի վերայ նորա եհար մրճովն ի վերայ սաղաւարտին, և կտրեաց զնա ի զաւրացն և փախստական արար ի վերա լերինն ընդ յարևելս կոյս. և ապա հասեալ հանդէպ Իննակնեան վայրուցն մղեալ ընկեց յերիվարէն և իջեալ կտրեաց զգլուխ նորա և զմարմինն գահավէժ արարեալ, ասէր. Տեսցեն զքեզ անգեղք և գիտասցեն, թէ արծուոյ հարեալ է զնապաստակդ. և ինքն դարձաւ, զոր մինչև ցայսօր Արծիւք կոչեն տեղեացն։*

## 854. ԱՆԿԱՆԻՍ

Գտնվում է Տարոնում

Եւ ինքն Վարազ գնաց զհետ փախստէիցն և հասեալ միւս իշխանին պարսից, ասէ. Անկի՛ր, պարսիկ, կամաւ, ապա թէ ոչ՝ անկանիս ակամայ։ Իսկ նա փախեաւ։ Եւ Վարազայ զհետ մտեալ եհար զտէգն ի թիկունս նորա և անցոյց ընդ յողն երիվարին և ասէ. Այժմ անկանիս։ Եւ սակաւ ինչ գնացեալ՝ եհաս միւս այլ իշխանին և ասէ. Անկանիս կամաւ, եթէ անկանիս ակամայ։ Իսկ նա ընդդէմ դարձեալ եհատ զգլուխ երիվարին Վարազայ և ընկէց։ Իսկ նա ի վայր վազեալ՝ եհար զչիլս երիվարի պարսկին և ասէ. Անկիր և դու։ Եւ կոչեցաւ անուն տեղոյն Անկանիս (Վայրանկանիս)։

## 855. ՄԱՀՈՒ ԱՌԻԹ

Գտնվում է Տարոնում

Իսկ այլ զօրքն պարսից եկեալ հասին յանտառն, որ հանդէպ վանացն հայի և թաքեան անդ։ Իսկ Վահան անապարեալ գնաց անդ, և սուր ի վերայ եդեալ կոտորեցին, որ ոչ մնաց և ոչ մի։ Եւ կոչեցաւ անուն տեղոյն Մահու առիթ։

## 856. ԹԻԼ

Գտնվում է Տարոնում

Եւ եկ Սմբատ ջահիւք ի վերայ զօրացն Պարսից. և յանկարծակի տեսին այր մի գիսաւոր, որ լոյս փայլէր ի հերաց նորա, և զաչս թշնամեացն կուրացուցանէր։ Զոր տեսեալ քաջին Սմբատայ, ասէ ցզօրսն. Քաջալերացարուք, որդեակք, և մի երկնչիք. զի սուրբ Կարապետն մեզ ի թիկունս հասեալ կայ, և ընդ մեր՝ ինքն պատերազմի։ Եւ մի ոք անհաւատալի զիրսն կարծիցէ. զի ինքեանք սկսան մարտնչիլ ընդ միմեանս, և զմիմեանս սատակել. զի տէր պատերազմէր ընդ նոսա։ Եւ այնչափ կոտորեցին զնոսա, մինչև հեղեղատք արեանց ելանէին. որ և Թիլ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ։

## 857. ՀՈՆԻ ԴՈՒՌ

*Ասում են, թե Գեդրե անունով հոնը ժամանակին ասպատակում է Հայաստանը։ Մուշեղ սպարապետը մենամարտում է նրա հետ և սպանում։ Իսկ ճարտարաց ասորոց պողովատիկ գրչաւ նկարեալ զՄուշեղ ճերմակ երիւարաւն ի յարձանի առ գետեզերին և զհոնն՝ յոտս նորա, որ բնակիչք գաւառին Հոնի դուռն ասեն զայն մինչև ցայսաւր։*

## 858. ՄԱՇՏՈՑԻ ԱՂՈԹԱՏԵՂԻՆ

Գտնվում է Բալուի Չեք գյուղի արևմտյան կողմում

Ա

*Տեղացիների ասելով այստեղ ճգնել, աղոթել և հայկական տառերն է գտել Մեսրոպ Մաշտոցը։*

Բ

*Ունի այս քաղաքն (Բալու) բերդ ամուր ի գլուխ լերին. ի մէջ բերդին տեսանի վայր անձաւաձև, տեղի աղօթից սրբոյն Մեսրոպայ, ուր և ցուցանեն զքար իմն պատուեալ իբր հրաշական։*

## 859. ՏՐԴԱՏԻ ՄՈՐԻՆ

Գտնվում է Դերսիմի շրջանում

*Տրդատ թագավորը քրիստոնեությունը հալածելու և Գր. Լուսավորչին խոր Վիրապը նետելու համար պատուհասվում է աստծուց։ Նա խղճալով բնակություն է հաստատում Դերսիմի անտառներում։ Այստեղ կա մի անմատչելի ու անթափանց պուրակ, որը կոչվում է Տրադատա մորի։*

## 860. ՄԸՍՏՈՅԻ ԴԻՔԸ

Գտնվում է Դերսիմի Քաչարան գյուղի սահմանում

*Մստո անունով մի երիտասարդ սիրած աղջկան փախցնելուց հետո, այստեղ քաջաբար կռվել է հետապնդողների հետ և պաշտպանել սիրածին։*

## 861. ՆԱՐԵԿԱՑՈՒ ՏՈՒՆԸ ԿԱՄ ՈՍԿԵԿՇՒՌ ՆԱՐԵԿ

Գտնվում է Նղեսիայի արևմտյան կողմում

*Ասում են, թե այստեղ է գտնվում Նարեկը, որը համանուն վանքի ավերումից հետո, այդ ավերակների մոտ բնակվող մի ընտանիք պահել է։ Ժամանակ անց, ընտանիքի ժառանգորդներ քույրն ու եղբայրը չեն կարողացել համաձայնության գալ՝ թե ո՞ւմ է հասնում Նարեկը։ Քույրը նրա քաշով մեկ ոսկի է տալիս եղբորը և տիրանում Նարեկին։ Դրա համար էլ այն կոչվում է Ոսկեկշիռ Նարեկ։*

## 862. ԹՈՐՈՍ ԼԵՎՈՆԻԻ ԹՈՒՐԸ

Գտնվում է Տարսոնի արևելյան կողմում, Կյուդնոս գետի ափին.

*Լսելով, որ իր եղբայր Ստեփանեն դավադրաբար սպանված է բյուզանդացիների կողմից, Թորոս Լևոնին քաջերի գլուխն անցած հարձակվում է Տարսոնի վրա։ Կատաղի կռվի ժամանակ Թորոսը հեռվից նետում է թուրը, որը մխրճվում ու մնում է քարի մեջ։ Տեսնելով այդ հրաշքը՝ Թորոսի զինվորները կրկնապատկված ուժով տապալում են քաղաքի պարըսպի դուռը և ներս խուժելով գրավում են այն։*

*Ասում են, թե մինչև հիմա էլ Տարսոնի ավերակների մեջ, պարսպի դռան ճակատին դեռ երևում է Թորոս Լևոնիի թուրը։*

# ՏՈՀՄԵՐ, ՑԵՂԵՐ, ԳԱՂՈՒԹՆԵՐ

## 863. ԱՐԾՐՈՒՆԻՆԵՐ

*Երբ Արծրունյաց տոհմի մանուկ նախահայրը քնած էր բաց օդում, մի արծիվ թևերը լայն բաց արած պաշտպանում էր նրան անձրևից ու արևից։ Դրա համար էլ նրա տոհմը կոչվում է Արծրունիների տոհմ։*

## 864. ՌՈՒԲԻՆՅԱՆՆԵՐ

*(Յետ սպանման Գագկայ ի Յունաց) զմանուկն (զՌուբէն) այն որ էր ընդ նմա, գնեաց ոմն վաճառական հայ, և արար իւր փեսայ։ Եւ եղեւ յետ աւուրց իբրեւ զարգացաւ մանուկն և եղեւ այր, գնաց ի սահմանս Կի–*

լիկիոյ արամբ միով որսալ կաքաւս. և էր անդ բերդ մի՝ զոր Բարձրբերդ կոչեն. և էր անդ եպիսկոպոս մի Հոռմ. և եղեւ ծանօթութիւն առնն և եպիսկոպոսին, և եղեն միմեանց սիրելիք. և բազում աւուրս ուտէին և ըմպէին ի միասին. և այրն ոչ հանէր ի մտաց զխրսն, զոր գործեցին Հոռոմք ընդ թագաւորն Գագիկ, ընդ ազգական նորա։ Եւ եղեւ օր մի զի ամենայն պաշտօնեայք եպիսկոպոսին ելեալ էին արտաքս ի բերդէն ի պէտս ինչ գործոյ իւրեանց. և էր եպիսկոպոսն միայն և պատանի մի ընդ նմա. եկն այրն որսորդ հուպ առ բերդն՝ որսալ կաքաւս. և տեսեալ զնա եպիսկոպոսին ձայնեաց ի պարսպէն գալ առ նա, և ի միասին ճաշակել. և նա ոչ հաւանէր. և էջ առ նա եպիսկոպոսն առանց պաշտօնէի։ Իբրեւ ետես այրն թէ միայն գայ եպիսկոպոսն և ծանեաւ թէ ոչ ոք կայ ի բերդն, ասէ ցայրն որ ընդ նմա էր. Այսօր ի դէպ է առնուլ զվրէժ արեան սպանման թագաւորին մերոյ՝ զոր գործեցին Հոռոմք. տես, զուցէ առաքեսցէ զքեզ եպիսկոպոսն ի բերդն, ջանասջիր առնուլ զնա, և ինձ իմացուսցես ի ձեռն նշանի ինչ, զի ես սպանից զեպիսկոպոսն։ Եւ իբրեւ եկն եպիսկոպոսն՝ մտին ի ճաշել. և ի պակասել գինւոյն՝ ասէ եպիսկոպոսն ցպատանին. Երթ ի բերդ անդր, և բեր մեզ անտի գինի, զի ուրախասցուք ի միասին. և գնաց այրն և առաց զհրաման եպիսկոպոսին՝ սպասաւորի նորա։ Եւ իբրեւ նա խոնարհեցաւ ի կարաս անդր զի հանցէ գինի, նա կալեալ զոտից նորա և դարձուցեալ ի վերայ գլխոյն՝ խեղդեաց զնա ի գինի անդր։ Եւ ելեալ ի պարիսպն՝ նշանակեաց տեառն իւրում, եթէ առի զբերդս. և սա աստէն ի ներքոյ խեղդեաց զեպիսկոպոսն, և ինքն մտեալ ի բերդ անդր բռնացաւ։ Եւ առ սակաւ սակաւ աճեցոյց զկալուածս իւր, զոր բռնութեամբ և զոր պատրանօք. մինչեւ տիրեցին նա և որդիքն իւր և թոռունքն՝ աշխարհին Կիլիկեցւոց, քաղաքաց և գաւառաց։

865. ՔԱՋԱՐԱՆՑԻՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

Ասում են, որ Քաջարանի առաջին բնակիչը մի ձյունահարս է եղել։ Նա եղել է լեռներում իր ոչխարի հոտը պահող մի պատանի։ Մի անգամ լեռան բարձրադիր արոտներում անսպասելի մրրիկ է սկսվում։ Պատանին կորցնում է իր հոտը, ապա ընկնում ուշակորույս։ Ձյունահարսը նրան տանում է Կապուտջիղի խոռոչներում գտնվող իր ապարանքը, ուշքի բերում, ապրում հետը։ Այդ հավերժահարսից ու հովվից էլ ծագել են առաջին քաջարանցիները։

## 866. ՇԱՀՎԵՐԴՅԱՆՆԵՐ

*Սրանց նախահայրը ուրացել է քրիստոնեությունը, որի համար պարսից շահից ստացել է ազնվականության տիտղոս ու Իգահատ գյուղը։ Այստեղից էլ ծագել է տոհմի Շահվերդյան (=շահի տված) անունը։*

## 867. ՍԻՐԱԴԵՂՅԱՆՆԵՐ ԵՎ ԲԵՋԱՆՅԱՆՆԵՐ

*Լենգթեմուրը ջարդելով գալիս հասնըմ ա Կոթի գեղը։ Սարատիկենց Բեջանը փախչըմ ա մերին (անտառ)։ Շատ ա վնասըմ Լենգթեմուրի զորքին։ Լենգթեմուրը մարդ ա ուղարգըմ նրա մոտ, որ գա իր զորքում ծառայի։ Բեջանը գալիս ա զորքը մտնըմ։ Լենգթեմուրը հողեր ա բաշխըմ, աղի անուն տալիս։*

*Բեջանը գալիս ա իրա ախպոր՝ Սիրադեղի մոտ, ասըմ. Բեր աչառի կաշին տիկ հանիր, հինգ հատ էլ լավ ոչխար, տանենք Լենգթեմուրին, քեզ էլ աղություն տա։ Սիրադեղն ասըմ ա. էս եղի տկերն ինձ հմար աղա էլ ա, քեզ էլ։*

*Բեջանը ջոկվըմ ա Սիրադեղից. դրա համար էլ հիմի էրկու ազգ կա՝ Սիրադեղյան ու Բեջանյան։*

## 868. ԼԵՋԳԻՆՅԱՆՆԵՐ

*Լազգիները աղբյուրից փախցնում են մի գեղեցիկ հարսի, նստեցնում ձիու գավակին, յափնջին գցում վրան ու տանում, հասցնում Ալբուզի (=էլբրուս) տակը—Լազգստան։ էդ հարսը երեխով է լինում ու նրանց տանը մի տղա է բերում։*

*Հարսի ամուսինն ու բարեկամները շատ ման գալուց հետո, մի կլեկչի լազգու միջոցով իմանում են նրա տեղը։ էս լազգի ծանոթի հետ գնում են, հարսին կանչում և ուզում են տանեն, բայց նա ասում է, թե առանց երեխիս չեմ գա։ Գիշերը, երբ բոլորը քնում են, հարսը երեխի բարուրն առնում է ու շտապ դուրս գալիս։ Դու մի ասի, շատ շտապելուց տեքոր կնոջ երեխի բարուրն է վերցնում։ Որ գալիս հասնում են իրենց տուն՝ երեխի երեսը բաց են անում, տեսնում մի շեկ, աչքերը չալ-չալ, գլուխը սուր երեխա։ Երեխին բոլորը լազգու ճուտ են ասում, անունն էլ դնում են Լազգի։ էդ երեխու համար դրանց ազգին լազգինանք են ասում։*

## 869. ՀԱՄՇԵՆԻ ՀԱՅԵՐԸ

*Տերեպեյին կոչված թուրքերը Համշենում հայերի հետ ապրելով, մասնակցում էին հայկական հարսանիքներին, պար բռնում հայ կանանց հետ։ Մի օր էլ նրանք բռնաբարում են նրանցից մեկին։ Հայ երիտասարդները սպանում են մեղավորներին և թողնելով Համշենը՝ փախչում Օրտու։ Փախչողներից մի քանիսը, սակայն, ճանապարհին բռնվում են թուրքերի կողմից և մահվան սպառնալիքի տակ մահմեդականություն ընդունում։ Ասում են, թե Համշենի մահմեդական հայերը դրանցից են ծագել։*

## 870. ՆԻԿՈՄԻԴԻԱՅԻ ՀԱՅԵՐԸ

*Նիկոմիդիայում մզկիթներ ու բաղնիքներ շինել տալու համար Մեհմետ փաշան Բալուից հայ վարպետներ է բերել տալիս։ Վարպետների մեծ մասը ամուրի լինելով՝ օտար միջավայրում դժվարանում է կյանքի ընկեր գտնել և ընտանիք կազմել։ Տեռնկել կոչված հայաբնակ գյուղից նրանք աղջիկ են ուզում և մերժում են ստանում։ Մի կիրակի օր էլ քաղաքի արևելյան կողմում զբոսնելիս, բալուցի վարպետները բոշաների (գնչու) վրաններ են նկատում։ Պարզվում է, որ դրանք քրիստոնյա հայ բոշաներ են՝ Մարզվանի կողմերից։ Բալուցի վարպետները աղջիկ են ուզում նրանցից և հավանություն ստանալով, ընտանիքներ են կազմում։ Նրանցից հետզհետե գոյանում է Նիկոմիդիայի հայ գաղութը։*

## 871. ԻԶՄԻՏԻ ՀԱՅԵՐԸ

*Թուրք Փերթև փաշան Իզմիտի Ենի ջամի մզկիթը շինելու համար կանչում է հայ բանվորներ ու վարպետներ։ Մզկիթի շինարարությունը երկար ժամանակ է պահանջում. դրա համար փաշան կարգադրում է հայ բանվորներին ու վարպետներին Իզմիտ տեղափոխել իրենց ընտանիքները՝ տրամադրելով նրանց Իզմիտի ամայի բարձունքների վրա եղած թափուր հողակտորը, որի անունը դնում են քրիստոնյաների թաղ (Քարապաշ մահալեսի)։ Այդտեղից էլ սկիզբ է առնում Իզմիտի հայ գաղութը։*

## 872. ԲՈՇԱՆԵՐ

### Ա

*Բոլոր ազգերը կանչվում են մի մեծ հրավերքի։ Ամենից ուշ ներկայանում են բոշաները (լոմերը), երբ տեղերը արդեն զբաղեցված են լի-*

նում։ Նրանց ասում են. Պո՛շ ա, պո՛շ ա (զո՛ւր է, զո՛ւր է), գնացեք։ Դրանից հետո այդ ցեղի անունը դնում են բոշա։

Բ

Շատ վաղ ժամանակներում ապրում էր մի վարդապետ, որի երեք սարկավագները կաշառվելով թշնամիներից, մի կին են բերում վարդապետի խուցը։ Երբ թշնամիները բռնում են վարդապետին կնոջ հետ, սա հասկանում է սարկավագների խարդավանքը և անիծում նրանց, ասելով. Սև երեսներ, գնացեք, էլ մարդկանց մեջ չերևաք։ Իսկույն սրանց երեսների կեսը սևանում է, առնում են մի մի պարկ, գավազան ու գնում։ Ճանապարհին հանդիպում են ձիերի, կովերի, ոչխարների, սակայն այդ կենդանիներից ոչ մեկը չի մնում սրանց մոտ, միայն էշն է, որ հավատարմություն է ցույց տալիս։ Վերցնում են էշին, գնում, հասնում են մի անտառ, ճյուղեր կտրում, քթոց, մաղ շինում։ Եվ որովհետև նրանց երեսի կեսը սևացած էր, ուստի չեն համարձակվում մտնել մարդկանց մեջ. տալիս են, որ իրենց կանայք ծախեն։ Այսպես շարունակվում է նրանց կյանքը, ամուսինները տանը նստած քթոց և փոկ են պատրաստում, իսկ կանայք տանում, վաճառում են քաղաքներում ու գյուղերում։

Գ

Քրիստոսի աշակերտներից մեկը ճաշի ժամանակ մի կտոր հաց է տալիս նրան։ Քրիստոս այդ հացի վրա կեղտի հետքեր նկատելով, բարկանում է և մի փունջ մազ պոկելով իր գլխից մեկնում է հաց տվողին։ Աշակերտը զարմացած նայում է ուսուցչին։ Քրիստոս դրանից հետո խաչակնքում է մազը և աշակերտը իսկույն սկսում է մաղ գործել։ Ասում են, թե մաղագործների (բոշաների) նախահայրը եղել է Քրիստոսի այդ աշակերտը։

## 873. ԼԵՌԳԻՆԵՐ

Թամուր եկն ի Հայաստան. և իբրև մեծ թշնամի քրիստոնէութեան եդ ի մտի երթալ, աւերել, կործանել զեկեղեցիս և զվանորայս. դիմէ գնալ ի Գեղարդավանք. այլ հասեալ յեզր գետոյն տեսանէ ի միւսում կողմանն զօրս անթիւ բազմութեամբ, զորս ինքն միայն նկատեալ ցուցանէ զօրաց իւրոց, և գիտացեալ թէ երկինք ընդ դէմ դիմեն նմա՝ աղաղակեաց. Եօլ գէչ (երթ ի բաց), ուստի մնաց անուն վանիցն ի Թաթարաց Եօլ-գէչ։

*Դարձ արարեալ անտի դիմեաց ի վերայ Սեանայ վանից, և աստանօր տեսեալ կրօնաւոր ոմն, որոյ արկեալ զփիլոնն ի վերայ ջուրց գնայր անվտանգ, պակեաւ ի հրաշիցն, և կոչեալ առ ինքն զնա պատուիրեաց օրհնել զզօրս իւր և ասէ. «Խնդրեա զինչ և կամիս, տուայց քեզ». յայնժամ կրօնաւորն խնդրեաց զի որչափ գերիք զետեղեսցին ի փոքրիկ տաճարի վանիցն, արձակեալ լիցին. էին ի մէջ զօրաց նորա անհամար գերիք և ամենեքին զետեղեցան ի տաճարին, վասն որոյ ազատս կացոյց զնոսա։ Իսկ կրօնաւորն փոխանակ օրհնութեան, գրեաց և ետ նմա անէծս, զի մի առաւել քան զտասն այր հնազանդեսցին և կացցեն ընդ ձեռամբ նորա. և յայնմ օրէ ցրուեցան զօրք Լանկթամուրայ։—Ի նմանէ յառաջ եկեալ են և լեկզիք, յորս չէ մարթ բնաւ տեսանել առաւել քան զտասն այր թէ միաբանեսցին և իցեն ընդ միոյ իշխանութեամբ։*

## ԱՌԱԾՆԵՐ, ԱՍԱՑՎԱԾՔՆԵՐ, ԱՆԵԾՔՆԵՐ

### 874. ՄԱՐԴՈՒ ԱՉՔԸ ՄԻ ԲՈՒՌ ՀՈՂՈՎ ԿԿՇՏԱՆԱ

*Դրախտից դուրս գալով Ադամն սկսում է պարապել երկրագործությամբ։ Նրա ընչասիրությունը փորձելու նպատակով, աստված ուղարկում է իր հրեշտակներից մեկին։ Կերպարանափոխ հրեշտակը եղբայր է ձևանում և Ադամին առաջարկում է կիսել իրենց հասանելիք հողերը։ Ադամը հրաժարվում է անգամ մի գազ հող տալ նրան։ Հրեշտակն այդ մասին պատմում է աստծուն։ Աստված ասում է. Ես գիտեի, որ նրա աչքը մենակ մի բուռ հողով կկշտանա։ Դրանից էլ ծագում է «Մարդու աչքը մի բուռ հողով կկշտանա» առածը։*

### 875. ՄԻՆՉԵՎ ՇՈՒՇԱՆԸ ԶԱՐԴԱՐՎԻ, ԺԱՄ-ՊԱՏԱՐԱԳ ԿԱՐՁԱԿՎԻ

*Բագարանցի տիկին Շուշանը մի անգամ ուզում է ներկա գտնվել Սուրբ Թեոդորոսի վանքում կատարվելիք պատարագին։ Մինչև նա զարդարվում է, պատարագն արդեն վերջանում է։ Այս դեպքը կրկնվում է մի քանի անգամ և դառնում է ժողովրդի խոսակցության առարկա։ Դրանից հետո, երբ մեկը ձգձգում է որևէ գործ, ասում են. «Մինչև Շուշանը զարդարվի, ժամ-պատարագ կարձակվի»։*

876. ՈՒՐԲԱԹՆ ԱՎԵԼԻ ՇՈՒՏ ԵԿԱՎ, ՔԱՆ ՇԱԲԱԹԸ

*Ոստանցի չեչխերը մի օր խորհուրդ են անում, որ Զատկի շաբաթ օրը կոտորեն Իլի վանքի վարդապետներին։ Իմանալով այդ, վանքի վանահայրը վարդապետների համար թուր ու հրացան է ճարում։ Ուրբաթ օրը, երբ բոլոր չեչխերը մզկիթում են լինում, վարդապետները հարձակվում են նրանց վրա և բոլորին կոտորում։ Այստեղից էլ ծագում է «Ուրբաթն ավելի շուտ եկավ, քան շաբաթը» առածը։*

877. ԱՄԵՆ ՄԱՐԴ ԻՐ ԲԱՎԼԻՆ ԿՈՒԼԱ

*Ժամանակին Կապան-մատեն կոչված մետաղի հանքերում փլվածք է առաջանում, և զոհվում են Բավլի անունով բազմաթիվ հույն հանքագործներ։ Դեպքի վայրով անցնող մի ուղևոր տեսնելով, որ մի քանի տեղ հարազատները ողբում են իրենց կորուստը, շարունակ կրկնելով միևնույն անունը, հարցնում է, թե ո՞վ է այդ Բավլի կոչվածը։ Նրան պատասխանում են՝ Ամեն մարդ իր Բավլին կուլա։ Դրանից էլ, ասում են, ծագել է, այս առածը։*

878. ԱՆԻՆ ՇԵՆ՝ ԱՇԽԱՐՀՆ ԱՎԵՐ, ԱՆԻՆ ԱՎԵՐ՝ ԱՇԽԱՐՀԸ ՇԵՆ

*Որպէս թէ գաղթականք Անւոյ կարեն կանգնել զնոր աշխարհ. և աշխարհ ի մի գումարեալ՝ հազիւ կարէ լնուլ զքաղաքն Անի։*

879. ՎԱՆԵՑՈՒ ԿԱՂԸ ՉԻՆԱՍՏԱՆ Է ՀԱՍԵԼ

*Էջմիածնի նվիրակներից մեկը շրջելով աշխարհի բոլոր հայաբնակ վայրերում, ամեն տեղ վանեցիների է հանդիպում։ Երբ նա հասնում է Չինաստան, լսում է, որ այստեղ ապրում է մի կաղ հայ։ Նվիրակը գնում գտնում է նրան. պարզվում է, որ այդ կաղ հայն էլ վանեցի է։ Ասում են, թե այդտեղից է ծագել «Վանեցու կաղը Չինաստան է հասել» ասացվածքը։*

880. ՈՐ ՉԼԻՆԵՐ ԴԱՐՈՒՆՑ ԱԿ, ՉԷՐ ԼԻՆԻ ԽԻԶԱՆԻ ՎԱՍՏԱԿ

*Դարունց գյուղի մոտ կա մի աղբյուրի ակ, որի ջրով ոռոգվում են Խիզանի գյուղերի հողերը։ Եթե այդ ջուրը չլիներ, գավառի բնակիչներն*

*ապրուստ չէին ունենա։ Ասում են, թե այդ առթիվ է հորինվել «Որ չլիներ Դարունից ակ, չէր լինի Խիզանի վաստակ» ասացվածքը։*

### 881. ԴՈՒՐԳԱՐԻ ԱՉՔԸ ՏԱՇԵՂԻ ՎՐԱ Է

*Ավալի այամին (հին ժամանակ) դուլգյարը (ատաղձագործ) հինչ որ տաշել ըլալ, տաշեղը ոսկի ըլալ տեռնալ, ըրուզունը (երեկոյան) հըվաքել ըլալ փեշկը (փեշը) տանել տոն (տուն), ածել սանդուղը (սնդուկ)։ Մըն օր տաշեղը փեշկումը քինիլիս (գնալիս), Քրիստոս չըհում ա (հանդիպում է) թա (թե). Ուստա, էդ հինչ ա։ Թա՝ Դե ըսկի, տաշեղ ա, տանում ըմ տընիք (դնենք) կրակեն, էրինք։ Թա՝ Չէ, ախեր տաշեղու մնան (նման) չի։ Թա՝ Չէ, տաշեղ ա։ Քրիստոս թա՝ Բալամ, դե որ տու ինձ խաբալ ըս, քու խեր-բարաքյաթդ (լիություն, առատություն) լհա տաշեղումը մնա, անխու-անխս, ւոերտակ (դատարկ) նստիս։ Ուստան կյալիս ա տոն, սանդուղը պենում (բաց անում), որ ոսկեն ածե, տեսնում ա տաշեղ ա։ Մհեդ էդ օրաց տեսն ա տյուլգարեն աչքը լհանեն կընի տաշեղեն երան, ինքն ալ քիշեր-ցերեկ կանե, համա դե ոչ մաղեն տակեն (մաղի տակ) կընի (կլինի), ոչ մաղեն կըլխեն (գլխին)։*

### 882. ԴՈՒՐԳԱՐԻ ՏԱՇԵՂՆ Է ՇԱՏ, ԴԱԲԱՂԻ՝ ՓՈՂԸ

*Մի անգամ մի դուրգար (ատաղձագործ) գոգը փող լցրած գալիս է տուն։ Ճանապարհին նրան պատահում է Քրիստոսը և հարցնում. Գոգինդ ի՞նչ է։ Դուրգարն ասում է՝ Տաշեղ է։ Քրիստոսն խսկույն վրա է բերում. Աստված ձեր տաշեղին բարաքյաթ (առատություն, լիություն) տա։ Հետո Քրիստոսն հանդիպում է մի դաբաղի (կաշեգործ)՝ գոգով ներկ տանելիս։ Սրան նույնպես հարցնում է. Տարածդ ի՞նչ է։ Դաբաղն ասում է. Փող։ «Աստված ձեր փողին բարաքյաթ տա»,—ասում է նրան Քրիստոսը։ Այստեղից էլ՝ «Դուրգարի տաշեղն է շատ, դաբաղի փողը» ասացվածքը։*

### 883. ԹՌՉԻ ԷԼ՝ ԱՅԾ Է

*Արծիվը թառած է լինում ժայռի վրա։ Երկու մարդ հեռվից նկատում են նրան։ Մեկն ասում է՝ արծիվ է, մյուսը՝ այծ։ Պնդում են իրենցը, մինչև հասնում են ժայռին։ Արծիվը նրանց տեսնելուն պես թռչում է։ Նա, որ պնդում էր, թե այծ է, նորից համառում է։ Մյուսը ասում է. Չե՞ս տեսնում, որ թռավ, արծիվ է։ Համառն ասում է. Որ թռչի էլ, միևնույն է, այծ է։ Այստեղից ծագել «Որ թռչի էլ էլի այծ է» ասացվածքը։*

## 884. ԿԱԿՂՆԱՍ ՉՈՐՊԱՍԻՆ ԿԱՄ ԿԱԿՂԵՍ՝ ԿՈՒՏԵՍ

Ա

Ժամանակին մի Թուրք աղա իջևանում է մի աղքատ հայի տանը և սկսում է զանազան կերակուրներ պահանջել։ Տանտերն ասում է. Աղա, չունեմ։ Հյուրը շարունակում է պնդել իրենը։ Հայն ասում է. Կակղնաս չորպասի (ապուր) կա, եթե ուզում ես, կարող եմ բերել։ Հյուրը սաստիկ քաղցելով, ստիպված ասում է. Կակղնաս թող լինի, միայն թե բեր։ Եվ տանտերը դնում է նրա առաջ իր պատրաստած հասարակ ապուրը։ Այստեղից ծագել է «Կակղնաս չորպասին» դարձվածքը։

Բ

Մի քուրդ ու մի հայ քավորներ են լինում։ Երբ քուրդը գալիս է հայի տունը, սա հավ է մորթում, ձվաձեղ անում ու լավ ճանապարհում նրան։ Մի օր էլ հայն է գնում քրդի տունը. քուրդը հաց և թան է տալիս նրան։ Ժամանակ անց քուրդը նորից է գալիս հայի տունը։ Հայը այս անգամ միայն հաց ու ժաժիկ (շոռ) է տալիս։ Քուրդը հրաժարվում է ուտել։ Հայն ասում է. Կակղես՝ կուտես։ Եվ իրոք. շատ չանցած քաղց զգալով, քուրդն ասում է. էն կակղես-կուտեսից մի քիչ բեր։ Այստեղից էլ ծագել է «Կակղես՝ կուտես» դարձվածքը։

## 885. ՀԱՑԸ ՇԱՆ ՌՌՆՈՑՈՎ Է ԵԿԵԼ ԱՇԽԱՐՀ

Ա

Քաղցած շունը երկինք նայելով սկսում է անընդհատ ոռնալ։ Երկնքից մի հատիկ է ընկնում գետին։ Այդ հատիկը ծլում է, աճում և արտը լցվում է հացով։ Շան տերը քաղում է արտը, ծեծում, աղում... Աշխարհը լցվում է հացով։ Դրա համար էլ ասում են՝ «Հացը շան ոռնոցով է եկել աշխարհ»։

Բ

Ժամանակին երկինքը շատ մոտ է եղել երկրին։ Մի օր մի կին ցորենի հասկով սրբում է երեխայի կեղտը և շպրտում վերև։ Երկինքը բարկանում է ու անիծում ցորենին, որ նա այլևս հասկ չտա։ Այդպես էլ լինում է։ Ցորենը, որ առաջ ամբողջովին ծածկված էր հասկով, դրանից հետո ցցվում է դատարկ ցողունով։ Շները սկսում են կաղկանձել և հաց խնդրել։ Խղճալով շներին, երկինքը պատվիրում է ցորենին՝ ցողունի ծայ-

րին մի փոքրիկ հասկ ունենալ։ Բայց մարդիկ շների այդ բաժինն էլ խլում են և իրենք են սնվում դրանով։

## 886. ՀԱՅԸ ՍՈՒՏ ՉԻ ԽՈՍԻ

Հայ ումն սպանեալ էր զայլազգի ոք, զոր կալեալ տարեալ էին յատեան Շահ-Աբասայ։ Հարցեալ էր նմա Շահ-Աբաս. Դո՞ւ ես սպանեալ զայլազգին, թէ ոչ («թէ ոչն» ասելով՝ կամեցեալ էր ազդել նմա ասել ո՞չ)։ Խոստովանեալ էր հայն, թե՝ այո՛, ինքն է սպանօղն։ Հրամայեալ էր արձակել զնա այն օր, ասելով, թէ արբեալ է։ Ի հետևեալ աւուրն կրկին հարցաքննեալ էր նովին բանիւ, և նա դարձեալ չէր յուրաստ լեալ։ Արձակեալ էր զնա ասելով, թէ՝ ունի զթմրութիւն արբեցութեան։ Եւ մինչ յերրորդում աւուր ի հարցաքննութեան իւրում զնոյն խոստովանութիւն լուեալ էր ի հայոյ անտի։ Առաջարկել էր բողոքարկու այլազգւոյն, թէ ես սակս միոյ հայոյ ծախսեալ եմ զհազար թումանն՝ և ես տաց քեզ զմահապարտ հայն զի սպանցի։ Խորշեալ ոսոխին յառաջարկութենէ արքային, հայն արձակեալ էր անդատապարտ։ Ի ճշմարիտ խոստովանութենէ անտի մահապարտ հայոյ, մինչև ցայս ժամանակ իսկ աւանդութիւն կայ յազգապարսից թէ՝ Հայն ոչ խօսի սուտ։

## 887. ԼԵՆԿ-ԹԵՄՈՒՐԻ ԺԱՄԱՆԱԿ Է

Լենկ-Թեմուրը Սվազում իր առաջին նախճիրը գործելուց հետո, քաշվում է վրանը և մարդ է ուղարկում տեսնելու, թե քաղաքացիք ինչ են անում։ Երբ լուր են բերում նրան, թե նստած ողբ ու կոծ են անում, Թեմուրն ասում է. Խելքերը դեռ չի եկել գլուխները,—և երկրորդ հարվածն է տալիս։ Երրորդ հարվածին, երբ ամբողջ քաղաքը հրդեհելով, մարդ է ուղարկում լուր բերելու, տեսնում են, որ քաղաքի բնակիչները դհոլ և զուռնա նվագելով պարում են ծխացող ավերակների շուրջը։ Հիմա խելքերը արդեն եկել է նրանց գլուխը,—ասում է Թեմուրը և վերցնելով բանակը հեռանում է Սվազից։ Դրանից հետո, երբ մարդիկ հակառակ իրենց թշվառության, զբաղվում են զվարճությամբ ու շռայլություններով, ասում են՝ Լենկ-Թեմուրի ժամանակ է։

## 888. ԱՆՈՂՈՐՄ ՊԵՏՐՈՍԻ ՀԱՅԻ ԿՈՒՏԸ

Պետրոս Առաքյալը շատ անողորմ մարդ է եղել։ Նրա այդ համբավը տարածվել է ամեն տեղ։ Մի մուրացիկ կին ուզում է անձամբ փորձել

Պետրոս Առաքյալին։ Գալիս է նրա մոտ և ողորմություն է խնդրում։ Առաքյալը անարգելով արտաքսում է մուրացիկին։ Սա նորից ու նորից է գալիս և ամեն անգամ դատարկաձեռն հետ վերադառնում։ Մի օր էլ մուրացիկը գնում է այն ժամանակ, երբ Առաքյալի կինը հաց է թխելիս լինում։ Տեսնելով, որ մուրացիկը ոչ մի կերպ պոկ չի ուզում գալ իրենից, Պետրոս Առաքյալը վերցնում է մի տաք հացի կուտ և շպրտում է նրա երեսին, ասելով. Ա՛ռ ու կորիր, էլ ուրիշ անգամ աչքիս չերևաս... Դրանից հետո ագահ և ժլատ մարդկանց տված ողորմության համար ասում են, թե «Անողորմ Պետրոսի տված հացի կուտն է»։

## 889. ՁԵՌՔԴ ԴԱԼԱՐ

Եղև զի եկեղեցի մի հնացեալ քանդեցին առ ի նորոգել։ Եւ բազում գերեզմանք կային շուրջ բոլորն։ Եւ բացեալ զգերեզմանսն զի էին ամենայն ոսկերքն փտեալ ի հող դարձեալ։ Եւ մի գերեզման մի բացին, որ և սայ հողացեալ էր ամենայն ոսկերքն, բայց ձեռն ամենևին ողջ և դալար։ Եւ զարմացան, թէ՝ ի՞նչ պատճառի ամենայն ոսկերքն փտեալ է, և ձեռքն դալար՝ որպէս կենդանոյ։ Եւ կային անդ առաքինի եպիսկոպոսք և հարք։ Եւ հարցեալ նոցա զպատճառն ձեռին դալար մնացելոյ։ Այլ և այլ պատճառս եդին։ Ոմանք, թէ՝ «Այս մարդս քահանայ էլեալ և սուրբ խորհուրդն միշտ բաշխելոյ ժողովրդեան ձեռօք, վասն այն դալար է մնացեալ»։ Եւ ոմանք ասացին, թէ՝ «վաստակեալ և ձեռօքն բաշխեալ զսուրս առ աղքատս և կարօտեալս, վասն այն է հրաշիւք ձեռն ողջ մնացեալ», և ամենեքեան՝ ըստ իւրեանց մտացն այլ և այլ պատճառս ասացին։ Բայց ոչ էին համեմատ մեկնութիւնքն միմեանց։

Հայրն սոցա աւուրս բազում աղօթէր առ աստուած, զի գիտասցէ աներկբայ պատճառ իրին։ Եւ ի մէջ աղօթիցն զմայլեալ ետես այր մի լուսատեսիլ, որ ասեր. «Ես եմ տեր ձեռացն և ոչ է այնպէս, զոր դուք մեկնէք զպատճառն անապականութեան իմոյ ձեռին, այլ լուր զի ասացից. Ես էի ճարտար արուեստաւոր հիւսն, և զոր ինչ շինէի լաւագոյն և գեղեցիկ, առնէի բազում աշխատանօք, որքան էր իմ կար. և ամենեքեան շնորհակալ լեալ գովէին զիս և աւրհնէին և ասէին՝ ձեռդ դալար։ Վասն այն աստուած զիմ ձեռս դալար պահեաց ի մեռանիլն իմ»։ Եւ լուեալ զայս հօրէն ամենեքեան փառս ետուն աստուծոյ։

## 890. ՏՈՒՆԴ ԱԿՈՌԻ

*Ակոռին Մասիսա տակն ընկած գեղ ա։ Չարքեր ժամանակին կելնին Մասիս կփլցուն Ակոռու վրա։ Ակոռին կմնա քարերու ու հողի տակ։ Հմի մեկ մեկի օր կանիծի, կասի. «Տունդ Ակոռի» (=ակոռի). յանի թե՝ տունդ Ակոռու պես փլի։*

## 891. ԿԱՅԵՆԻ ԿՈՏՈՇ ՀԱՆԵՍ

*Աստված անիծում է Կայենին և նրա գլխին կոտոշներ (պոզեր) են դուրս գալիս, որպեսզի նա երկար ապրի և նրան ճանաչելով իր կոտոշներից ոչ ոք չսպանի։ Մեկին անիծելիս, ասում են. «Կայենի կոտոշ հանես»։*

## 892. ՁՈՒՆԸ ԳԼԽԻՍ

*Անիի ավերման օրերին երկնքից սկսում է մուգ գույնի ձյուն գալ։ Քաղաքացիք սարսափած խուճապահար սկսում են փախչել, ասելով. «Սև ձուն եկավ գլխներիս»։ Դրանից հետո, երբ որևէ դժբախտ պատահար է լինում ընտանիքի մեջ, և կամ մերձավոր ազգականների մահվան գույժն է լսվում՝ հայ կանայք ասում են. «Ձունը գլխիս» կամ «Սև ձունը գլխիս»։*

## 893. ՍԱՏԱՆԱՅԻ ՊՈՉ ԽԱՂԱՑՆԵԼԸ ԿԱՄ ՍԱՏԱՆԻ ՄԱՏԸ ԽԱՌՆ Է

### Ա

*Մեկը ճանապարհ է գնում։ Մեծ ու փոքր սատանաները հետևում են նրան։ Հանկարծ մարդու ոտը քարին է դիպչում. երեսնիվայր ընկնելով նա ասում է. Նալլաթ (նզովք) քեզ չար սատանա։ Փոքր սատանան լսելով մարդու այդ խոսքերը, դառնալով մեծին, ասում է. Ախր ինչու է նա քեզ հայհոյում, դու ինչ մեղք ունես այստեղ, չէ որ ինքը ոտը քարին խփեց։ Չէ, որդի,—պատասխանում է մեծ սատանան,—այդպես չէ. մարդը իրավունք ունի. ես թեև այստեղ եմ, բայց իմ պոչի ծայրն այն քարի տակ էր։ Դրանից էլ ծագել է «Սատանայի պոչ խաղացնել» դարձվածքը։*

### Բ

*Մի գյուղացի ցորենը եզան վրա բարձած տանում է քաղաք ծախելու։ Երբ հասնում է գետափին, ջրի ձայնից եզը խրտնում է և վայր նետելով*

բեռը, սկսում է փախչել։ Զայրացած գյուղացին բացականչում է. էհ, սատանա, քո աչքը կուրանա, այս ինչ փորձանք բերիր գլխիս։ Նույն պահին սատանան ու սատանորդին, որոնք քաղաքից էին գալիս, գտնվելիս են լինում գետի հակառակ ափին։ Սատանորդին լսելով գյուղացու խոսքերը, ասում է հորը. խենթ է, ինչ է այս գյուղացին. չէ որ ինքը գետի մյուս ափին է, իսկ մենք այս, ինչ վնաս տվինք մենք նրան։ Այո, որդի, այդպես է,—ասում է սատանան,—ճիշտ է, ես այստեղ եմ, բայց մասս այնտեղ է։ Դրանից էլ, ասում են, առաջ է եկել «Սատանի մասը խառն է» դարձվածքը։

### 894. ՋՈՒԿԸ ԽԱՂԱՑ

Մի մեծ վիշապ պատել է աշխարհը՝ երկնքի և գետնի միջև։ Այնքան մեծ է այդ վիշապը, որ հեռվից տեսնում է իր պոչը և կարծում է, թե դա ուրիշ գազան է։ Երբ վիշապը կռիվ տալու համար հարձակվում է իր պոչի վրա՝ դրանից առաջ են գալիս որոտն ու կայծակը։ Դրա համար էլ, երբ ամպամած երկնքում կայծակ է երևում, ասում են թե՝ Ջուկը խաղաց։

### 895. ՂԱԶԱՐՈՍԻ ԿՈՇԻԿԸ

Քրիստոսի միջոցով հարություն առած Ղազարոսը կոշկակար է դառնում։ Մեկը կոշիկ է պատվիրում նրան, պահանջելով, որ այն այնքան ամուր լինի, որ յոթ տարի դիմանա։ Ղազարոսը ժպտում է։ Երբ աշակերտը հարցնում է վարպետին ժպտալու պատճառը, Ղազարոսը ասում է. խեղճը յոթ օրվա կյանք ունի, յոթ տարի դիմացող կոշիկ է ուզում։ Երբ մեկը շատ հաստատուն մի բան ուզենա շինել տալ, ասում են՝ Ղազարոսի կոշիկը հո չէ։

### 896. ԱՅՎԱԶԻ ԱՄԱՌԸ

Սևանի շրջանի Դդմաշեն գյուղացի Այվազը ճիշտ ժամանակին կատարում էր հացի հունձը, բայց ծեծելն ու կալ անելը ուշացնում էր։ Նա բերքը հավաքում էր, դիզում կալում, կողքերին խուրձերով փուշ շարում, որ հավերն ու կենդանիները չուտեն, ինքը մանգաղը ձեռին գնում էր ձորերը ու անանցանելի տեղերը խոտ քաղելու, և միայն ուշ աշնանն էր ծեծում իր կալը, երբ մի քանի օր տաք եղանակ էր անում։ Այդ օրերին դդմաշենցիները «Այվազի ամառ են ասում»։

### 897. ԹԹՈՒՆ ՊՈՎԵ

Կաճեացին կուզեն շախգմե թթու պռնեն։ Հմեն մեյ տուն ճոյ-ճոյ (չոկ-չոկ) պռնելու տեղ, գեղ-գեղայնով (գյուղականներով) կելնեն մեյ (մեկ), կերթան բոլ-բոլամաղի (մեծ քանակությամբ) շախգամ կառնեն, կպիրին (բերեն) պրտեն (խոթեն) ուրենց գեղի գյոլ (լիճ)։ Ծմեռ օրըմ ուրենցից մեկում կմտուցեն գյոլ, տեսնան թե թթուն պովե՞ (պատրաստ է)։ Մարթն որ կթփվի (նետվել) ճուր, համ լող չի կիտե, համ ցուռտ, կբաշլայի (սկսում է) խեղտել, ծեռ-ոտ իրար կուտա, էն մեկելներն (մյուսները) կիտեն, թե կասի. «էկեք, թթուն պովե»։ Ինոնք էլ կթափվին ճուր, կխեխտվեն։

Կաճեացիներին ծաղրելու համար հեգնաբար ասում են «Թթուն պովե»։

## ԶԱՆԱԶԱՆ

### 898. ՀԱՅ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆ

Բոլոր ցեղերին ու ազգերին ստեղծելուց հետո, աստված սկսում է երկիրներ բաժանել նրանց։ Մինչև գալիս է հայերի հերթը, մնում է մի քարքարոտ հողակտոր։

— Ինչպե՞ս պիտի ապրեք այս հողում,—ասում է աստված հայերին։

— Ոչի՛նչ, տե՛ր, դու տուր, մենք մի կերպ կապրենք,—պատասխանում են հայերը։

Եվ աստված մնացած քարքարոտ հողակտորը տալիս է նրանց։

Քարերի վրա քրտինք թափելով, հայերը մշակում, շենացնում են աստծու տված հողակտորը և բնակություն հաստատելով այնտեղ, հիմնում են Հայաստան երկիրը։

### 899. ՀԱՅԿԻ ԶԱՎԱԿՆԵՐԸ

Հայկ ոմն աղեղնաւոր հսկայ՝ յազգէ Յաբեթի որդւոյ Նոյի, եկեալ ի Բաբելոնէ՝ տիրեաց Հայոց։ Եւ բնակեալ ի Հայս, և յանուն նորա կոչեցան Հայք, նոյնպէս որդւոց և դստերաց նորա՝ եդին ի վերայ ամսոյդ՝ վասն մեծարանաց հօրն և զաւակացն. և են այսոքիկ՝ Նաւասարդ, Հոռի, Սահմի և Մահեկի, Արեգ և Մարերի՝ դստերք էին Հայկին։ Տրէ, Քաղոց,

Արաց և Հրոտից՝ որդիք էին Հայկին։ Իսկ Մարգաց և Հարաանց, զոր այժմ Անկի կոչեն, այս ի գործոց անուանեցան. զի ընդ այն ժամանակս ամառնայինք էին սոքա։

### 900. ՓԱՅԼԱԿ

Երկրի վրա կա մի մեծ ձուկ, որի փորին կա մի փայլուն բան։ Երբ ձուկն ընկնում է մեջքին, նրա փորի փայլուն շողքից երկինքն սկսում է փայլատակել։

### 901. ՈՐՈՏ

Ա

Մի կույր մարդ բարկանալով աստծու վրա, որ իրեն զրկել է տեսողությունից, վերցնում է թթու լոշը և շպրտում է թխպի վրա։ Թուխպը սաստիկ բարկանում է և սկսում է գոռգոռալ կույրի վրա։ Այդ գոռգոռոցից առաջ է գալիս որոտը։

Բ

Բամբակե պառավը, նստած բամբակե ձիու վրա, ձեռին բամբակե մտրակ՝ քշում է երկնքով։ Նրա ձիու ոտների դոփյունից առաջանում է որոտը։

Գ

Ասում են, թե Հիսուսը տավարներ է տվել Մահմետին՝ կիսովի պահելու։ Ձմեռը բոլոր տավարները սատկել են։ Մահմետը քերթել է կաշիները, չորացրել և պահել։ Գարնանը Հիսուսը եկել է տավարները պահանջելու՝ ոչ մեկին կենդանի չի գտել, և բարկանալով ետ է դարձել։ Մահմետը վերցրել է կաշիները և նետել Հիսուսի ետևից։ Դրանք իրար դիպչելով և գոռգոռոցի ձայներ հանելով, դեռ գնում են ու գնում։

### 902. ԿԱՅԾԱԿ

Ասում են, թե երբ երկինքն ամպամած է լինում, սատանաները գնում կանգնում են մարդկանց կամ կենդանիների կողքին և դիմադարձություն են անում Աստծուն։ Աստված բարկանալով խփում է նրանց կայծակով, սակայն սատանաները շատ անգամ կարողանում են փախչել և նրանց տեղ տուժում են մարդիկ կամ կենդանիները։

## 903. ԱՆՁՐԵՎ

*Հիսուսն ու Ալին միասին ցորեն են ցանել, հնձել և կալսել։ Ցորենը բաժանելիս Ալին խլել է Հիսուսի բաժինը, որից դառնացած Հիսուսն արտասվել է։ Նրա արտասուքներից գոյացել է անձրևը։*

## 904. ՑՈՂ

*Երբ առաջին անգամ վարդը թառամել է դրախտի մեջ, սոխակը սաստիկ տրտմագին դայլայլել է նվաղելու աստիճան։ Լուսինն էլ տեսնելով սոխակի այդ սրտաճմլիկ վիճակը, արտասվել է։ Լուսնի արտասուքներից առաջ է եկել ցողը։*

## 905. ԿՐԱԿԻ ԵՎ ԿԱՅԾԱԿԻ ԾԱԳՈՒՄԸ

*Ասում են, թե քարերն ու ծառերը ժամանակին աստծու կամքով կարողացել են մարդկանց նման շարժվել, խոսել, ուտել և խմել։ Տեսնելով այդ հրաշագործությունը, սատանան գալիս է աստծու մոտ և իրավունք խնդրում, որ ինքն էլ մի բան ստեղծի։ Աստված քմծիծաղով ասում է. եթե կարող ես, ստեղծիր։ Գալով քարերի մոտ սատանան տեսնում է, թե ինչպես նրանք իրենց համար թագավոր են ընտրել ոսկուն՝ իբրև ամենափայլունն ու գեղեցիկը բոլոր քարերից։ Նա հայտնում է քարերին, որ չախմախը ոսկուց ավելի զորավոր է և կարող է ավելի լավ թագավոր լինել։ Ապացուցելու համար իր ասածը, սատանան մի տան մեջ խոտ, փայտ ու ցան է լցնում և առաջարկում է չախմախին բախվել երկաթի հետ։ Չախմախն ու երկաթը բախվում են և կայծեր առաջացնում։ Կայծերն ընկնում են տան մեջ գտնվող խոտի, փայտի ու ցանի վրա, որից կրակ է ծագում։ Մարդիկ ու քարերը հավաքվում են կրակի շուրջը և հանելով նրա միջից խորոված կենդանիներն ու պտուղները, ուտում են։ Հավանելով դրանց համին, նրանք այնուհետև վառվող ածուխներ են հանում կրակից և տուն տանելով օջախ են սարքում, որի վրա սկսում են զանազան կերակուրներ պատրաստել։ Աստված զայրանում է սատանայի վրա՝ կրակի գաղտնիքը մարդկանց հայտնելու համար։ «Քո պատճառով ես ստիպված եմ մի այնպիսի կրակ ստեղծել, որից սարսափեն մարդիկ»,— ասում է նա սատանային։ Եվ աստված ստեղծում ու երկիր է ուղարկում կայծակին, որի հենց առաջին հարվածից զոհվում է տասը մարդ։ Սարսափահար սատանան փախչում է, և այլևս չի երևում աստծու աչքին։ Աստված պատ-*

ժում է քարերին՝ զրկելով նրանց շարժվելու և սնվելու կարողությունից, որովհետև մարդիկ չախմախ քարի միջոցով էին իմացել կրակի գաղտնիքը։ Նույն ձևով նա պատժում է նաև ծառերին, որոնք կամավոր վառելափայտ էին դարձել մարդկանց համար։

Ասում են, թե այսպես են ծագել կրակն ու կայծակը։

### 906. ԿՐԱԿ ԵՎ ՋՈՒՐ

Ա

Երկու մարդ ինչքան անում են, չեն կարողանում կրակ ստանալ։ Նրանց զանգատը լսում են երկու սատանա և ծիծաղելով ասում իրար. Ապա թող չախմախը քարին տան, կտեսնեն ոնց կրակ դուրս կգա։ Մարդիկ լսում են սատանաների ասածը, փորձում են և անմիջապես կրակ են ստանում։ Երբ նրանց վառած կրակի բոցը երկինք է բարձրանում, նույն սատանաները գալիս են մարդկանց մոտ և հարցնում. Ո՞վ ձեզ սովորեցրեց կրակ ստանալը։ Մենք այդ վաղուց գիտեինք,— պատասխանում են մարդիկ։

Բ

Կրակն ու ջուրը քույր ու եղբայր են եղել։ Մի անգամ նրանց մեջ վեճ է ծագում, թե որն է իրենցից ավելի ուժեղ։ Վճռում են փորձել։ Քույր կրակը գնում վառում է սարերի խոտը, իսկ եղբայր ջուրը հանգցնում է վառվող խոտը։ Այդ օրվանից նրանք բաժանվում են իրարից։

Գ

Մի անգամ եղբայր ջուրը իջել է սարից. քույր կրակը ասել է նրան. Ե՛կ, մի քիչ նստիր տաքացիր։ Ջուրը պատասխանել է. Դու էլ մի քիչ ինձանից խմիր, հովացիր։

### 907. ՉԱԽՉԱԽ

Ա

Ջաղացն օր հնարեն կը, չախչախ չեն գիտնա օր կախեն. բռով ցորեն պիտի լըլեն (լցնել) հլուլին (աղունատեղ), օր աղա։ Մե օրմ, ինչըղ գըլլի (ինչպես է պատահում), ջախջպանը կըսե. Տղե՛ք, էսօր ջաղացը

*անպես լավ ալուր աղաց օր... Ատ վախթն ա (այդ ժամանակ) սատանան դուռը գըլլի (դռանն է լինում), ոտքը տնկե, կըսե. Մըկըր (չլինի թե) չախչա՞խ կախեցիք։ Օսահաթ (անմիջապես) սատանի ոտքի լման (նման) չախչախմ շինեն կախեն կը, ջաղացքը ֆուըլ-ֆուըլ (ֆռալով) դառնա կը։*

Բ

*Ջրաղացպանների նախնին ամեն բան հնարելուց հետո, դժվարանում է գտնել ցորենը երկանքի քարի վրա վաղեցնելու միջոցը։ Դրա մասին մտածելու ժամանակ, նրա քունը տանում է։ Երազի մեջ տեսնում է մերկ սատանային՝ մի ոտը ջրաղացի կոճակին, մյուսը եղերքին, առանանդամը ջրաղացքարին կախած։ Տեսնելով այդ պատկերը՝ ջրաղացպանը արթնանալուն պես հնարում է չախչախը. Այդ օրվանից չախչախին ասում են Սատանի կ...։*

## 908. ՁԻԹԱՀԱՆՔ

*Երբ մարդիկ առաջին անգամ ձիթահանք շինեցին, չկարողացան անմիջապես ձեթ հանել։ Սատանան եկավ նրանց մոտ և խոստացավ սովորեցնել, պայմանով, որ իրեն էլ բաժին տրվի։ Մարդիկ չհամաձայնեցին և շարունակեցին իրենց փորձերը։ Մի օր էլ, երբ սատանան ներս մտավ, ձիթահանքի տերը տաք ջուր ուզեց աշխատողից։ Սատանան բացականչեց. Ինչ, գտա՞ք գաղտնիքը, տաք ջուրը կտավհատի վրա՞ պիտի ածեք։ Այո՛,—պատասխանեց տերը,—վաղուց արդեն գտել ենք գաղտնիքը և քո օգնության կարիքը չունենք։ Երբ սատանան հեռացավ, ձիթահանքի տերը փորձեց սատանայի ասածը և հիանալի ձեթ ստացավ։*

## 909. ՄԹԻԹ

*Ջուլհակի հորը հնարողը ամեն բան հարմարեցնելուց հետո, սկսում է մտածել կտավի առաջքի բացվածքը ձգելու մասին։ Այդ մտքով տարված՝ քունը տանում է։ Երազի մեջ նա տեսնում է, որ կտավի մի եզրից մյուսը մութ շվաք է երկարել։ Արթնանալով, նա իսկույն հնարում է մթիթը։*

## 910. ԿԼԱՅԵԿ ԱՆԵԼ

*Կլայեկագործը ամանները մաքրելուց հետո ուզում է կլայեկել դրանք, բայց չի իմանում ինչով քսի անագը։ Երկար ու զուր ջանքեր թափելուց*

հետո, նա փակում է արհեստանոցն ու գնում։ Սատանան պատահելով նրան, հարցնում է. Կլայեկեցի՞ր ամանները։ Կլայեկեցի,—պատասխանում է նա։ Բամբակո՞վ,—կրկին հարցնում է սատանան։ Հա, բամբակով,—պատասխանում է կլայեկագործը, և ետ դառնալով արհեստանոց, փորձում և տեսնում է, որ կլայեկը իրոք պետք է բամբակով քսել։

## 911. ԿԱՇԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

Վախտովըմ տապըխները (կաշեգործներ) չեն կըրնա էղե կարմիր ըռանկի (գույնի) սեկ (բարակ կաշի) հանել։ Դեղին, կանանչ, կապուտ ըռանկի լավ սեկեր հանեն կը էղե, հըմը կարմիր ըռանկի խանկռած (գունաթափ) դուս գուքա էղե։ Ինչքան ա թըխաթ կենեն (հետամտել), չիլլի էղռ։

Տապխին մեկը մե օրըմ խանութը նըստեր, կարմիր սեկը առաջը դրեր կաշխատի կը էղե։ Աղ մարթուն տըղան տունը ծանդըր հիվանդ գըլլի։ Բանելու վախտը տընեն մարթ գուքա, կըսե. «Տղան մեռավ»։ Մարթուն աչքերեն մեզ-մեզ արտըսունք գըլորվին սեկին վըրան գընկնին։ Տապաղը արտըսունքը սեկին վրայեն սըրփե կը. կաշե օր արտըսունքին ընկած տեղը սեկին ըռանկը բացվեր՝ պայծըռցեր է։ «Ինչո՞ւն ինչն է, մըտածե կը տապաղը,—ըըհար (երևի) արտըսունքն օր աղի է՝ անոր աղիութենեն է ըռանկը բացվեր»։ Քիչըմ աղջուր կը շինե, սեկին կը քըսե—դուրս գուքա պայծառ կարմիր ըռանկ։

Էքսի (հետևյալ) օրը տապախներուն ասնաֆը (համքարություն) գուքա աս մարթուն թողապիս (ցավակցություն) տալու։ Եփօր նըստին կը հոքուհաց ուտելու՝ աս տապաղը կըսե. «Ախպըրտիք, ասօր մեզի համար սուք չէ, ուրախութեն է. չունքի տըղիս մահը մեր արհեստին մենձ օքուտ էրավ»։ Բերե ցըցընե կը պայծառ կարմիր սեկը, պատմե կը թե ինչըղ գըտավ։

## 912. ԳՈՐԳԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

Մարդուն ստեղծելիս Աստված նրան ամեն տեսակ արհեստներ (աման շինել, փայտ տաշել, պատ քաշել, կար անել, երկաթ հալել և այլն) է սովորեցրել, որ նա դրանցով իր գլուխը պահի։ Տեսնելով այդ, սատանան էլ է ուզեցել մի բան սովորեցնել մարդուն, որ իրեն էլ միշտ հիշեն։ Ցույց տալով իր գործած գեղեցիկ գորգը, նա գայթակղել է մարդուն և տալով

նրան տորքը (փայտե շրջանակ, որի վրա հյուսում և գործում են), սովորեցրել է գորգ գործելու արհեստը և պատվիրել խիստ գաղտնի պահել այն։ Դրա համար էլ գորգ գործելը համարվում է դժվարին և սատանայի արհեստ։

## 913. ՀԱՐՍ ԽԵՂԴՈՂ ՆԱԽՇԸ

Երբ նորահարսը գալիս է փեսայի տունը, կեսրանք նրա շնորհքը փորձելու համար առաջարկում են կարպետ գործել։ Զխոսկանությունը և ամոթը թույլ չեն տալիս հարսին ասելու, որ ինքը կարպետ գործել չգիտի։ Նա մի կերպ փորձում է ընդօրինակել պատից կախված կարպետի նախշերը, բայց դրանցից մեկը ոչ մի կերպ չի դուրս գալիս։ Շատ չարչարվելուց հետո, հուսահատությունից ու ամոթից նա գնում է գոմ և ինքն իրեն կախում։ Դրանից հետո, կարպետի այն նախշը, որ չէր կարողացել գործել չխոսկան հարսը, կոչվում է Հարս խեղդող նախշ։

## 914. ՊԱՌԱՎԻ ՊԱՍԸ

Ասում են, որ ժամանակին մի պառավ ամառը պաս է պահել, որպեսզի աստված հով եղանակ անի և որդին կարողանա հեշտությամբ հունձ անել։

Սա Լուսավորչի պասն է, որ լինում է ամառվա ամենաշոգ ժամանակ, երբ գյուղացիները սաստիկ զբաղված են հունձ անելով։

## 915. ՎԱՐԴԱՎԱՌ-ՆԱՎԱՍԱՐԴ

Ասում են, թե երբ Նոյ Նահապետը ջրհեղեղից փրկվելով հասնում է Մասիսի գագաթը և ապա այնտեղից իջնում է Նախիջևան, այդ օրվանից սկսվում է հայոց նավասարդ կոչվող ամիսը։ Եվ որպեսզի ջրհեղեղի հիշատակը անմոռաց մնա մարդկանց մեջ, Նոյը պատվիրում է իր որդիներին իրար վրա ջուր լցնել։

## 916. ՄԵՌԵԼՈՑ

Բազմաթիվ հայեր, Բարեկենդանի առիթով հավաքված մի բաց դաշտում, ուրախ-զվարթ խնջույք էին անում։ Հանկարծ դիմացից մի ձիավոր անձարձակ արշավում է նրանց մոտ և գուժում Վարդան Մամիկոնյանի

*մահվան բոթը։ Հավաքված բազմության ծիծաղն անմիջապես լացի է փոխվում... Եվ այդ օրվանից Բարեկենդանի օրը դառնում է մեռելների օր կամ Մեռելոց։*

## 917. ՆԵՐՍԵՍԻ ՑԱՎԸ

*Ասում են, թե Արշակավանը կործանվել է Ներսես Մեծի անեծքով։ ...Ելանէր կեղ մի վեր ժանդագոյն՝ ի մարդ և յանասուն. և ի միում աւուր կորեան և սատակեցան մարդ և անասուն... Եւ ցաւն այն ժանդ անուանեցաւ և ոմանք ասեն զնա Ցաւ Ներսեսի։*

## ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԱԱ—Ազգագրական հանդես, առաջին տարի, Ա. գիրք, Շուշի, 1896:
ԱԲ—Ազգագրական հանդես, երկրորդ տարի, Բ. գիրք, Թիֆլիս, 1897:
ԱԳ—Ազգագրական հանդես, երրորդ տարի, Գ. գիրք, № 1, Թիֆլիս, 1898:
ԱԴ—Ազգագրական հանդես, երրորդ տարի, Դ. գիրք, № 2, Թիֆլիս, 1898:
ԱԵ—Ազգագրական հանդես, չորրորդ տարի, Ե. գիրք, № 1, Թիֆլիս, 1899:
ԱԶ—Ազգագրական հանդես, հինգերորդ տարի, Զ. գիրք, Թիֆլիս 1900:
ԱԷԸ—Ազգագրական հանդես, վեցերորդ տարի, Է. և Ը. գրքեր, Թիֆլիս 1901:
ԱԹ—Ազգագրական հանդես, յոթներորդ տարի, Թ. գիրք, Թիֆլիս, 1902:
ԱԺ—Ազգագրական հանդես, ութերորդ տարի, Ժ գիրք, Թիֆլիս, 1903:
ԱԺԱ—Ազգագրական հանդես, իններորդ տարի, ԺԱ. գիրք, Թիֆլիս, 1904:
ԱԺԲ—Ազգագրական հանդես, իններորդ տարի, ԺԲ. գիրք, Թիֆլիս, 1904:
ԱԺԵ—Ազգագրական հանդես, տասնմեկերորդ տարի, ԺԵ. գիրք, Թիֆլիս, 1907:
ԱԺԷ—Ազգագրական հանդես, տասնմեկերորդ տարի. ԺԷ. գիրք, № 1, Թիֆլիս, 1908:
ԱԺԸ—Ազգագրական հանդես, տասնմեկերորդ տարի, ԺԸ. գիրք, № 2, Թիֆլիս, 1908:
ԱԺԹ—Ազգագրական հանդես, տասներկուերորդ տարի, ԺԹ. գիրք, № 1, Թիֆլիս, 1910:
ԱԻԵ—Ազգագրական հանդես, տասնհինգերորդ տարի, ԻԵ. գիրք, № 2, Թիֆլիս, 1913:
ԱԻԶ—Ազգագրական հանդես, տասնվեցերորդ տարի, ԻԶ. գիրք, Թիֆլիս, 1916:
ԳԱԹ—Հայկական ՍՍՀ գրականության և արվեստի թանգարան:
ՀԱԱ—Հայկական ՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի ազգագրության բաժին:
ՀԱԺԲ—Հայկական ՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի ժողովրդական բանահյուսության բաժին:
ՄՄ—Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարան:
ՊԹԱ—Երևանի Պետական պատմական թանգարանի ազգագրական բաժին:
ИКОГО—Известия Кавказского отделения русского географического общества.
СМОМПК—Сборник материалов для описания местностей и племен Кавказа.

## ԱՐԵՎ, ԼՈՒՍԻՆ, ԱՍՏՂԵՐ

1. Արև: *Ա.—Երվ. Լալայան, Վարանդա, ԱԲ, էջ 218—219։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Վարանդայի Նինգ գյուղի մոտ կա մի քար, որը տեղացիների ասելով՝ արեգակի մոր անեծքով քար դարձած հարսնացուն է»։*

*Բ.—Հ. Նազարյանց, Նախապաշարմունք, 1878, էջ 1։*

*Գ.—Գ. Նժդեհյան, Պառավաշունչ, ԱԹ, էջ 268—269։*

*Դ.—Երվ. Լալայան, Գանձակի գավառ, ԱԶ, էջ 345։ Հմմտ. №№ 133, 138, 147, 156, 166, 175, 180 ավանդությունների հետ («Քար դարձած հարսը», «Հարսնաքար» և այլն)։*

2. Լուսին: *Ա.—Երվ. Լալայան, Բորչալու, ԱԺ, էջ 199։*

*Բ.—Նույնի, Վարանդա, ԱԲ, էջ 217—218։*

*Գ.—Գ. Նժդեհյան, Պառավաշունչ, ԱԹ, էջ 269։*

3. Արև և լուսին: *Ա.*—Е. Мелик-Шахназаров, Из поверий, предрассудков и народных примет армян зангезурского уезда, СМОМПК, вып, 34, отд. 3, *էջ 91—92։*

*Բ.—1957 թ. հաղորդել է Թալինի շրջանի Մաստարա գյուղացի Շահոյան Սանդուխտը (Շհոյ Սանդուխտ)։ Գրի է առել նույն գյուղացի Շահոյան Հրանտը։*

*Գ.—Երվ. Լալայան, Գանձակի գավառ, ԱԶ, էջ 346։*

*Դ.—Նույնի, Նոր-Բայազետի գավառ, ԱԺէ, էջ 94։*

*Ե.—Նույնի, Գանձակի գավառ, ԱԶ, էջ 346։ Հմմտ. ԱԲ, էջ 217 և ԱԱ, էջ 348։*

*Զ.—Նույնի, Բորչալու, ԱԺ, էջ 198։*

*Է.—Գ. Նժդեհյան, Պառավաշունչ, ԱԹ, էջ 269։*

*Ը.—Բեննե, Բուլանըխ կամ Հարք գավառ, ԱԶ, էջ 113։*

*Թ.—Երվ. Լալայան, Ջավախք, ԱԱ, էջ 348։*

4. Հարդագողի ճանապարհը: *Ա.—Անանիա Շիրակացի, Տիեզերագիտութիւն և տոմար, աշխատությամբ Աշ. Աբրահամյանի, 1940, էջ 30։*

*Բ.—1957 թ. հաղորդել է Թալինի շրջանի Մաստարա գյուղացի Մկրտչյան Նախշունը։ Գրի է առել նույն գյուղացի Շահոյան Հրանտը։ Հմմտ. Ա. Մխիթարյան, Փշրանքներ Շիրակի ամբարներից, հատ. 1, 1901, էջ 181, Աէ, էջ 95, ԱԱ, էջ 349, Ս. վրդ. Ամատունի, Հայոց բառ ու բան, 1912, էջ 162։ Վերջինս ունի հետևյալ ծանոթությունը. «Սանամայրը սանահոր հետ գյուղերում ամենևին չէ խոսում, և փախչում է, որ սանահայրը իրեն տեսած չլինի»։*

*Գ.—Գ. Նժդեհյան, Պառավաշունչ, ԱԹ, էջ 271։ Հմմտ. Ս. Մովսիսյան (Բեննե), Հին և նոր կենցաղ Բուլանըխի հայության, մասն Ա., էջ 35 (ձեռագիրը գտնվում է ՀԱժԲ արխիվում)։*

*Դ.—Գ. Հալաճյան, Դերսիմի ազգագրությունը, էջ 1478 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում)։*

*Ե.—Երվ. Լալայան, Գանձակի գավառ, ԱԶ, էջ 347։*

*Զ.—Նույնի, Վարանդա, ԱԲ, էջ 219։*

*Է.—Ս. վրդ. Ամատունի, Հայոց բառ ու բան, 1912, էջ 162։*

*Ը.—Երվ. Լալայան, Ջավախք, ԱԱ, էջ 279—280։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Հարսը դատապարտված է լռության. նա հարսնություն է անում—չի խոսում՝ կեսուրի հետ 3, կեսրարի հետ 10—12, տեգերկնիկների հետ մինչ 1, տեգրի հետ 15 և կնքավորի հետ 25—30 տարի, անգամ մինչև մահ. դեռ սրա դռնիցն անգամ չի անցնում՝ սաստիկ մեղք համարելով այդ»։*

*Թ.—Հ. Մուրադյան, Համշենցի հայեր, ԱԶ, էջ 114։*

5. **Քարավան կտրող աստղը**: *Ա.—Գ. Նժդեհյան, Պառավաշունչ, ԱԹ, էջ 269։ Հմմտ. «Բյուրակն», 1898, էջ 88, Մանուկ Պ. Ծերոն, Բարջանճ, 1938, էջ 126, Պ. Պռոշյան, Երկեր, հատ. Ա., 1953, էջ 241։*

*Բ.—Երվ. Լալայան, Նոր-Բայազետ, ԱԺԷ, էջ 95։*

6. **Ծույլ հոտաղի աստղը**: *Գ. Նժդեհյան, Պառավաշունչ, ԱԹ, էջ 270։*

7. **Յոթ սանամոր աստղերը**: *Երվ. Լալայան, Գանձակի գավառ, ԱԶ, էջ 346։*

8. **Խեճեր**: *Աղվանյան, Հայկի որդիքը, «Լումա», 1898, գիրք 2, էջ 289։ Հմմտ. ԱԻԵ, էջ 56։ Հմմտ. № 899 ավանդության հետ («Հայկի զավակները»)։*

## ԼԵՌՆԵՐ, ԺԱՅՌԵՐ, ԲԼՈՒՐՆԵՐ

9. **Հայոց լեռները**: *Հաղորդել է Հարություն Մկրտչյանը։ Ավանդությունը լսել է պատանության տարիներին հայրենի Արճեշում։ Գրի է առել տողերիս գրողը 1946 թ.։*

10. **Արագած**: *Մ. Խորենացի, Պատմութիւն հայոց, 1913, էջ 39։*

11. **Մասիսն ու Արագածը**: *Հաղորդել է Թալինի շրջանի Աշնակ գյուղացի Աբգար Տոնոյանը։ Գրի է առել նույն գյուղացի Հայկանուշ Հարությունյանը 1944 թ. (ձեռագիրը գտնվում է տողերս գրողի մոտ)։*

12. **Արայի լեռ**: *Յովհ. Շահխաթունեանց, Ստորագրութիւն կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ, հատ. 2, 1842, էջ 11։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Անուանի այս լեառն ըստ այլազգականին Ղարնը եառըղ, զի ունի ի գագաթանէ ցստորոտն պատառուած ի հարաւոյ կողմանէ»։*

13. **Դժվարաղեմ**: *Ղ. Ալիշան, Այրարատ, Վենետիկ, 1890, էջ 288։*

14. **Օձասար**: Ա.—К. Никитин, Народные предания в Нахичеванском уезде Эриванской губернии, СМОМПК, вып. 2, отд. 2, *էջ 108։*

*Բ.—Նույն տեղում։*

*Գ.—Լեո, Իմ հիշատակարանը, 1890, էջ 324։*

15. **Տապանասար**: *Երվ. Լալայան, Գողթան գավառ, ԱԺԱ, էջ 324—325։*

16. **«Գալիս եմ, գալիս եմ» ճարաժայռը**: *Նույն տեղում։*

17. **Շանանդուխտի ճերծ**: *Երվ. Լալայան, Սիսիան-Տաթև, ԱԳ, էջ 155։ Հմմտ. Լեո, Իմ հիշատակարանը, 1890, էջ 94—96, Ստ. Օրբելեան, Պատմութիւն նահանգին Սիսական, 1910, էջ 163—164։*

18. **Դառ-Մելիք**: Ա.—*Երվ. Լալայան, Զանգեզուր, ԱԳ, էջ 14։*

*Բ.—Հաղորդել է Գորիսի շրջանի Վերիշեն գյուղացի Արտավազդ Մինասյանը։ Գրի է առել Արշալույս Ղազինյանը 1962 թ.։*

19. **Գյազբել**: *Գրի է առել Ս. Խանզադյանը 1946 թ., Գորիսի շրջանի Խոտ գյուղում (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

20. **Գանձասար**: А. Саакян, Покорители Гандзасара, «Коммунист», 1965 г., № 287, 10 декабря.

21. **Սառնըծակեր սար**: *Հ. Էփրիկյան, Բնաշխարհիկ բառարան, հատ. Ա., Վենետիկ, 1903—1905, էջ 484։*

22. **Բոզիի քար**: Н. Григоров, Село Татев Зангезурского уезда, СМОМПК, вып. 13, отд. I, *էջ 68—69։*

23. **Սուրբ քար**: Зангезурский уезд, СМОМПК, вып. 24, отд. 2, *էջ 183—184։ Բանահավաքի հավաստմամբ խնձորեսկ գյուղի բնակիչները այս ժայռի շուրջը տոն օրերին մոմ ու մարխ են վառում։*

24. **Մռավ**: *Ա.—Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն 2, 1858, էջ 237։*

*Բ.—Գրի է առել Առաքելյան Միքայելը 1963 թ., Լեռնային Ղարաբաղի Մարտակերտ գյուղում (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

25. **Դաղստանի լեռն ու Մռավը**: *Գրի է առել նույնը, նույն տեղում։*

26. **Քափասն ու Մռավը**: *Երվ. Լալայան, Գանձակի գավառ, ԱՀ, էջ 329։*

27. **Ավանա քերծ**: *Մ. Բարխուդարյան, Արցախ, 1895, էջ 423։*

28. **Դիզափայտ**: *Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն 1, 1842, էջ 211։*

29. **Արուքյունա սար**: *Հ. Էփրիկյան, Բնաշխարհիկ բառարան, հատ. Ա., Վենետիկ, 1903—1905, էջ 309։*

30. **Աստղաբլուր**: *Ա.—Նույն տեղում, էջ 210—211։*

*Բ.—«Յայսմաւուրք», 1730, մարտի 29։*

31. **Քառասուն աղջիկներ**: Ա.—*Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն 2, 1858, էջ 343։*

*Բ.—Գրի է առել Առաքելյան Միքայելը 1963 թ., Լեռնային Ղարաբաղում (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

32. **Հովվի սար**: *Մ. Բարխուդարյան, Արցախ, 1889, էջ 414։ Հմմտ. №№ 83, 154բ, 164, 179, 186Ա, 186Բ, 186Գ, 201, 203 ավանդությունների հետ («Աժդահա սարը», «Քարացած հովիվն ու ոչխարները» և այլն)։*

33. **Օրորոցասար**: *Նույն տեղում։*

34. **Սև և Կարմիր սարերը**: *Գրի է առել Հարություն Մկրտչյանը 1963 թ., Նորադուզցի Ալեքսանից։*

35. **Պանակասար**: *Հաղորդել է Շամշադինի Նավուր գյուղացի Ասրիյան Ցրիդոնը։ Գրի է առել Ս. Խարայելյանը 1945 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

36. **Չալաբի մառ**: *Հաղորդել է Իջևանի Վերին Աղդան գյուղացի Ղուշչյան Արշավիրը։ Գրի է առել Արաք Կարապետյանը 1961 թ. (ձեռագիրը գտնվում է նույն տեղում)։*

37. **Ամուրիների սար**: *Հաղորդել է Նոյեմբերյանի Կողբ գյուղացի Աբովյան Արտեմը։ Գրի է առել Արաք Կարապետյանը 1961 թ. (ձեռագիրը գտնվում է նույն տեղում)։*

38. **Կարծախ:** *Գրի է առել Շամլուղի միջնակարգ դպրոցի դասատու Շախկյան Սարգիսը 1957 թ.։*

39. **Արուլ:** *Երվ. Լալայան, Ջավախք, ԱԱ, էջ 127։*

40. **Բամբակի լեռ:** *Յովհ. Շահխաթունեանց, Ստորագրութիւն Կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառաց Արարատայ, հատ. 2, 1858, էջ 12։*

41. **Բալաբան:** *Ա—Դո, Վանի, Բիթլիսի և Էրզրումի վիլայեթները, 1912, էջ 204։*

42. **Գոճանամ:** *Ս. Բաբախանյան, Հայաստանի լեռներում ավանդությունները, 1931, էջ 37—38։ Համա. № 58 ավանդության հետ («Գրգուռ, Սիփան և Մասիս սարերը»)։*

43. **Հավատամք:** *Շիրակեցի, Ճանապարհորդական նկատողություններ, «Նոր-Դար», 1886, № 123։*

44. **Համեստ թռչափող:** *Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, հատ. 1, 1806, էջ 59։*

45. **Բյուրակն:** *Ա.—Գեղամ, Տիրացուն և ժամկոչը, «Արևելք», 1899, № 3685։*

*Բ.—Հաղորդել է Մշո Պասքան գյուղացի Մարիամ Ղուկասյանը։ Գրի է առել Արտաշես Մարտիրոսյանը 1957 թ., Լենինականում։*

*Գ.—Գ. Սրվանձտյանց, Գրոց ու բրոց, 1874, էջ 86—87։*

*Դ.—Երվ. Լալայան, Ջավախքի բուրմունք, 1892, էջ 59։*

*Ե.—Նույն տեղում։*

46. **Քույր ու եղբայր:** *Գ. Հյուսիսյան, Շապին-Գարահիսարի և շրջանի ազգագրական տեսություն, էջ 258 (ձեռագիրը գտնվում է ՊԹԱ արխիվում, ֆոնդ 163, մասյան 1)։*

47. **Գավրա:** *Գ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, մասն 1, 1879, էջ 201—202։*

48. **Դևտ:** *Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻԵ, էջ 22։*

49. **Ամենափրկիչ:** *Նույն տեղում, էջ 23—24։ Նույնը տես նաև՝ Մ. Կ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն, մասն 2, 1885, էջ 252—253։*

50. **Ջագրոշ:** *Հաղորդել է Կարկառի շրջանի Բերկրի գյուղացի խուզոն։ Տես Ռ. Տեր-Մինասյան, Հայ հեղափոխականի մը հիշատակները, հատ. 5, 1951, էջ 95—96։ Քաղել է Ազատ Համբարյանը։*

51. **Արտոս և Առնոս:** *Ա.—Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻԵ, էջ 23։*

*Բ.—Նույն տեղում, ԱԻՁ, էջ 195։*

52. **Տրգամ-Տրգամ:** *Նույն տեղում, էջ 196։ Համա. № 60 ավանդության հետ («Գամգամ»)։*

53. **Ընձախիարս:** *Մ. Կ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն, մասն 1, 1885, էջ 106—107։*

54. **Խնձորի սար:** *Տ. Չիթունի, Ազգագրական նյութեր Սպարկերտ գավառի վերաբերյալ (ձեռագիրը գտնվում է ԳԱԹ արխիվում, Չիթունու ֆոնդ, ձեռ. № 99, էջ 5)։*

55. **Ճաշտեն:** *Նույն տեղում։*

56. **Դեղատ:** *Նույն տեղում, էջ 6—7։*

57. **Սրոց սալեր:** *Նույն տեղում։*

58. **Գրգուռ, Սիփան և Մասիս:** *Ս. Մովսիսյան (Բենսե)։ Հին ու նոր կենցաղ Բուլանըխի հայության (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։ Տե՛ս նաև Գ. Սրվանձտյանց, Գրոց ու բրոց, 1874, էջ 56, «Լումա», 1898, գիրք 1, էջ 158։ Համա. № 42 ավանդության հետ («Գոհանամ»)։*

59. **Բլեջան:** *Բենոե, Բուլանըխ կամ Հարք գավառ, էջ 12։*

60. **Գամ-զամ:** *Նույն տեղում, ԱՁ, էջ 37—38։ Համա. № 52 ավանդության հետ («Տըզամ-տըզամ» քարաժայռը)։*

61. **Կուրյա:** *Յովհ. Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ, 1941, էջ 199—200։*

62. **Ճերմակ լեռ:** *Ս. Հայկունի, Մոքսս, 1896, էջ 85։*

63. **Աժդահա:** *Գ. Հալաճյան, Դերսիմի ազգագրությունը, էջ 1249 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 5դ (1)։ Համա. №№ 154բ, 164, 179, 186Ա, 186Բ, 186Գ, 201, 203 ավանդությունների հետ («Հովվի սար», «Քարացած հովիվն ու ոչխարները» և այլն)։*

64. **Մնձուր:** *Նույն տեղում, էջ 292—293, № 5ա։ Համա. № 774ԻԲ («Գրիգոր Նարեկացի»)։*

65. **Տուժիկ պապա:** *Նույն տեղում, էջ 1242—1243, № 5դ (1)։*

66. **Պաղր պապա:** *Նույն տեղում, էջ 1244, № 5դ (1)։*

67. **Յոթ եղբոր գոռ:** *Նույն տեղում, էջ 244, № 5ա։*

68. **Մաստարա:** *Ս. Հայկունի, Մոքսս, 1896, էջ 85։*

69. **Մարութա և Անդոկ:** *Նույն տեղում, էջ 384։*

70. **Ծովասար:** *Վ. Պետոյան, Սասունի բարբառը, 1954, էջ 89։*

71. **Սյավ կամ Մթին լեռներ:** *Հ. Տեր-Ղազարյան, Հայկական Կիլիկիա, Անթիլաս-Լիբանան, 1966, էջ 68—69։*

72. **Մեծ Մասսի բլուրները:** *Հաղորդել է երկրաբան Ռուբեն Սեփոյանը 1955 թ.։ Լսել է Արտաշատի շրջանի Յուվա գյուղում, խաղողի այգու ծեր պահակից։ Գրի է առել տողերս գրողը։*

73. **Մուխանենար թափա:** *Ա.—Եվ. Բայբուրդյան, Հայաստանի գունավոր կերամիկան, «Տեղեկագիր» ՀՍԽՀ պատմության և գրականության ինստիտուտի, գիրք 2, 1937, էջ 277—278։*

*Բ.—Նույն տեղում։*

74. **Դիտի կոնդ:** *Յովհ. Շահխաթունեան, Ստորագրութիւն Կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ, հատ. 2, 1842, էջ 80։*

75. **Շամիրամի բլուր:** *Նույն տեղում, էջ 10։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Եւ երևի սորոյգ աւանդութիւն, զի մերձ յայս բլրակ ի դաշտի անդ Կոտայից գտանին հիւզօրայքն տեղի անկմանն Արայի. Արգնի և Արամուս՝ այն է, արամօնս, և ըստ ոմանց արախոյզ»։ Համա. № 430 ավանդության հետ («Արգնի»)։*

76. **Ծակ գլուխ բլուր:** *Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն 2, 1858, էջ 135։*

77. **Արփա-ղաղ:** *Հաղորդել է Գորիսի շրջանի Տաթև գյուղացի Պետրոսյան Կատինը։ Գրի է առել Սերո Խանզադյանը 1946 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱժԲ արխիվում)։*

78. **Եղնիկի բլուր:** *Հաղորդել է Գորիսի շրջանի Խոտ գյուղացի Մարտիրոսյան Հովհաննեսը։ Գրի է առել Սերո Խանզադյանը 1946 թ. (ձեռագիրը գտնվում է նույն արխիվում)։*

79. **Ղարա-ֆյոփակ կամ Ղառի ֆյոփակ:** *Ա.—Երվ. Լալայան, Կուրգաններ, ԱԲ, էջ 307։*

*Բ.*—М. Погосов, Армянская народная словесность в Закавказье, СМОМПК, вып. 28, отд. 2, *էջ 5—7։*

*Գ.—Նույն տեղում։*

80. **Կարմիր բլուրներ:** *Արշ. Աթայան, Սալմաստ, 1906, էջ 220։*

81. **Ղարնը յարղ**: *Արշ. Աթայան, Սալմաստ, 1906, էջ 9—10։*

82. **Էլեգուսա**: *Վ. Թաթիկյան, Դեպքեր և դեմքեր (ձեռագիր)։ Ավանդությունը քաղել է Սարգիս Հարությունյանը։*

83. **Շեղջա դար**: *Գ. Սրվանձտյանց, Գրոց ու բրոց, 1874, էջ 51—52։ Նույնը տե՛ս նաև Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻԵ, էջ 28—29։ Համա. №№ 162, 177, 178 ավանդությունների հետ («Քարացած քակորը», «Քար դարձած հարսը», «Անգութ եղբոր քարը»)։*

84. **Մանու բլուր**: *Յովհ. Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ, 1941, էջ 226։*

85. **Վարազաբլուր**: *Նույն տեղում, էջ 246։*

## ՔԱՐԱՅՐՆԵՐ, ՁՈՐԵՐ, ԴԱՇՏԵՐ

86. **Արդար Դավիթ**: *Արիստ. Սեդրակյան, Հիշատակարան, մասն 1, 1845—1864, էջ 114—115 (ձեռագիրը գտնվում է ԳԱԹ արխիվում, Սեդրակյանի ֆոնդ)։*

87. **Ծաղկեվանք կամ Վարվառա կույս**: *Ա.—Պ. Պռոշյան, Երկերի ժողովածու, հատ. 1, 1953, էջ 110։*

*Բ.—Հաղորդել է Աշտարակեցի Տաքարյան Օսանը։ Գրի է առել Վարդ Բդոյանը 1945 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

*Գ.—Հաղորդել է Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղացի Վարդանյան Նիկողոսը։ Գրի է առել Վարդ Բդոյանը 1945 թ. (ձեռագիրը գտնվում է նույն տեղում)։*

88. **Այրանքափոս**: Август фон-Гакстгаузен, Закавказский край, часть 2, 1857, *էջ 68։ Նույնը տես նաև՝ «Կռունկ հայոց աշխարհի», 1860, էջ 881, «Արարատ» ամսագիր (էջմիածնի), 1873, էջ 285։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Այստեղ կա մի այր, որի մուտքը ոչ ոքին հայտնի չէ. այն բացվում է միայն տարին մի անգամ, որվա որոշ ժամերին»։*

89. **Թափագյոզի քարայրը**: *Երվ. Լալայան, Նոր-Բայազետի գավառ, ԱՀԺէ, էջ 93։ Համա. Գ. Տ., Թեփե-կեոզը, «Արևելք», 1900, № 4263։*

90. **Մեսրոպ Մաշտոցի այրը**: *Գրի է առել Ռազմիկ Գևորգյանը 1963 թ.։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Ամեն ամռան հուլիսի 24-ին հավատացյալները ուխտի են բարձրանում Մսրվանիս գյուղի մոտ գտնվող Սարի Սուրբնման լեռը, ուր կա մի մատուռ»։*

91. **Ծծեր**: *Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն 2, 1858, էջ 361—362։*

92. **Վորոյի բուն**: *Գ. Ստեփանյան, Դդմաշեն գյուղի ազգագրությունը, էջ 17 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 11Ա)։*

93. **Աղեկի այր**: *Ա.—Երվ. Լալայան, Բորչալու, ԱԹ, էջ 204։*

*Բ.—Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն 1, 1842, էջ 125։*

94. **Հոռոմայր**: *Ղ. Ինճիճեան, Ստորագրութիւն հին Հայաստանեայց, 1822, էջ 362։*

95. **Դրսեվանքի զառները**: *Հաղորդել է Ալավերդու շրջանի Հաղպատ գյուղացի Բադալ Մեժլումյանը։ Գրի է առել Գրիգոր Կարախանյանը 1965 թ.։*

96. **Բանձրել քարայրները**: Гр. Бунятов, Памятники древности в окрестностях селения Баш-Шурагель, СМОМПК, вып. 13, отд. 2, *էջ 141։*

**97. Արշակավանի քարայր:** *Արս. Թոխմախյան, Մասիս լեռների հարավային ստորոտները, մասն 1, 1882, էջ 53—54։ Ունի հետևյալ ծանոթությունը. «Սհա մի պատմական ավանդություն, որ մեզ ծանոթացնում է Արշակ 2-րդի շինած Արշակավանի հետ»։*

**98. Մհերի դուռ կամ Ագռավու քար:** *Ա.—Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական վեպը, 1908, էջ 63։*

*Բ.—Հ. Օրբելի, Հայկական հերոսական էպոսը, 1956, էջ 52—53։ Ունի հետևյալ ծանոթությունը.*

*«Հետաքրքական է, որ Հայաստանի շատ վայրերում ցույց են տալիս Դավթի և Մհերի հետքերը։ Մոկս գավառում ինձ ցույց են տվել Բաթմանա կամուրջը, ուր Դավիթն ընդհարվում է Մըսրա Մելիքի երկու փահլեվանների հետ։ Իսկ Վան քաղաքի մոտ, միջնաբերդից չորս կիլոմետր հեռավորության վրա տեսել եմ Մհերի հուշակավոր դուռը։ Դա իրոք դուռ հիշեցնող մի քանդակ է վիթխարի ժայռի վրա՝ սեպատառ մակագրությամբ։ Քարանձավի մուտքի առաջ ժայռի մեջ մի փոքր փոս կա. դա այն տեղն է, ուր դուռը բացվելուց առաջ անհամբերությունից սմբակով խփել է Քուռկիկ Ջալալին»։*

*Գ.—Հաղորդել է «մի տաճկահայ»։ Գրի է առել Ավետիք Իսահակյանը Բասենի Չորմալի գյուղում, 1902 թ. սեպտեմբեր ամսին։ Ունի հետևյալ ծանոթությունը. «Մի տաճկահայ՝ Մանուկ անունով, բաղեշցի, կարծեմ թե մշեցի, պատմեց ինձ հետևյալը Մհերի մասին... բոլորը բառացի եմ գրել, նրա բերնից. մանավանդ վերջին խոսքերը» (ձեռագիրը գտնվում է Իսահակյանի անձնական արխիվում)։*

*Դ.—Գ. Սրվանձտյանց, Գրոց ու բրոց, 1874, էջ 182—183։*

*Ե.—Հ. Էփրիկյան, Բնաշխարհիկ բառարան, հատ. Ա., Վենետիկ, 1903—1905, էջ 89։*

*Զ.—Հմայակ Նարլյան, Համբարձման տոնին ավանդությունը, «Արևելք», 1893, № 2778։*

*Է.—Գրի է առել Սեննքերիմ Շալչյանը, 1939 թ. (ձեռագիրը գտնվում է ՊԹԱ արխիվում, № 55, էջ 10—11)։*

**99. Ուրքաքայրք:** *Մ. Խորենացի, Մատենագրութիւնք, 1865, էջ 302։*

**100. Վիշապի այր:** *Գրի է առել Սեննքերիմ Շալչյանը, 1939 թ. (ձեռագիրը գտնվում է ՊԹԱ արխիվում, № 55, էջ 13)։ Համա. Մ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն ի հայաբնակ գավառս արևելյան Տաճկաստանի, մասն 2, 1885 թ., էջ 93—94։*

**101. Արծվաքար այրը:** *Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻԵ, էջ 28։ Համա. № 98Զ ավանդության հետ («Մհերի դուռը»)։*

**102. Մաշտոցի այր:** *Գ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, հատ. 2, 1884, էջ 154—162։ Համա. № 90 ավանդության հետ («Մեսրոպ Մաշտոցի այրը»)։*

**103. Մանիի այրը:** *Մ. Խորենացի, Պատմութիւն հայոց, 1913, էջ 242—243։*

**104. Պոչիկ ձոր կամ Նշխարաձոր:** *Յովհ. Շահխաթունեանց, Ստորագրութիւն Կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառաց Արարատայ, հատ. 2, 1842, էջ 48։*

**105. Շանբեկի ձոր:** *Արիստ. Սեդրակյան, Հնութիւնք հայրենեաց, «Արարատ» (էջմիածին), 1872, էջ 307։*

**106. Այդարա:** *Հաղորդել է մեղրեցի Վարդանյան Հակոբը։ Գրի է առել տողերս գրողը, 1961 թ.։*

**107. Մրճաձոր:** *Գրի է առել Սերո Խանզադյանը Գորիսի շրջանի Խնածախ գյուղում, 1946 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

108. **Բարսեղամեռ**: *Գրի է առել նույնը, Գորիսի շրջանի Տաթև գյուղում, նույն թվականին (ձեռագիրը գտնվում է նույն տեղում)։*

109. **Սախկալ-քարաճ**: *Հաղորդել է Գորիսեցի Մաթևոսյան Հայրապետը։ Գրի է առել Սերո Խանզադյանը, 1946 թ. (ձեռագիրը գտնվում է նույն տեղում)։*

110. **Բամբակի ծով**: *Ն. Տեր-Ավետիքյան, Տեղագրական նամականի, 1889, էջ 17։ Ունի հետևյալ ծանոթությունը. «Թանձր մշուշն ու մառախուղը հատուկ է այս երկրին։ Մարդիկ շարունակ ամպերի մեջ են ապրում... Ասած դարձած է, որ Սյունիքի ձորերում շները սկսում են հաչել, երբ արտափայլում են արեգակի ճառագայթները, այն աստիճան անսովոր բան է այստեղ արև օրը»։*

111. **Կանլը-դարա**: *Գրի է առել Առաքելյան Միքայելը 1963 թ., Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանում (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

112. **Ձոճրաքի ձոր**: *Գրի է առնված Մարտունու շրջանի Երանոս գյուղում, 1932 թ.։ Բանահավաքի ով լինելը հայտնի չէ։*

113. **Շավոյի ձոր**: *Գ. Ստեփանյան, Դղմաշեն գյուղի ազգագրությունը, էջ 11 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 11ա)։*

114. **Մանյակի ձորը**: *Հաղորդել է Իջևանի շրջանի Աչաջուր գյուղացի Սերգեյ Օհանյանը 1966 թ.։ Գրի է առել նույն գյուղացի Աշոտ Օհանյանը։*

115. **Սևորդվոց ձոր**: *Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մաս 1, 1842, էջ 83։*

116. **Խոռվկանի ձոր**: *Հաղորդել է Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղացի Շամամ Ղաղինյանը։ Գրի է առել որդին՝ Արշալույս Ղազինյանը 1966 թ.։*

117. **Հրացանա ձոր**: *Հաղորդել է Նոյեմբերյանի շրջանի Բարանա գյուղացի Գիշյան Գիգոլը։ Գրի է առել Կարապետյան Արաքը, 1961 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

118. **Իմիլարի**: *Մ. Կ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն, մաս 3, 1885, էջ 123։*

119. **Արջուց ձոր**: *Յովհ. Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ, 1941, էջ 92—93։*

120. **Թմբրաձոր**: *Նույն տեղում, էջ 245—246։*

121. **Եղսանի ձոր**: *Գ. Հալաչյան, Դերսիմի ազգագրությունը, էջ 244 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 5ա)։*

122. **Մեղրաձոր**: *Վ. Պետոյան, Սասնա ազգագրությունը, 1965, էջ 136։*

123. **Սեոյլեմեզ դարասի**: *Զեյթունցի, Զեյթունի անցյալն ու ներկայեն, մաս 1, 1900, էջ 17—18։*

124. **Դավա-յաթաղ**: *Գ. Ստեփանյան, Դղմաշեն գյուղի ազգագրությունը, էջ 35 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 11ա)։*

125. **Նարգիսների դաշտ**: *Երվ. Լալայան, Զանգեզուրի գավառ, ԱԺԲ, էջ 191։ Հմմտ. Ստ. Շահումեան, Ընտիր պատմութիւն Դաւիթ բէգին և պատերազմաց հայոցն խափանու..., 1722, էջ 22—24, Րաֆֆի, Երկերի ժողովածու, հատ. 6, 1956, էջ 547։*

126. **Ղանլի-զամին**: *Ստ. Լիսիցյան, Զանգեզուրի հայերը ազգագրական տեսակետով, էջ 44 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 128)։ Հմմտ. Ղ. Ալիշան, Սիսական, 1893, էջ 276։*

127. **Գյունաշի ճանդ**: *Հաղորդել է Շամշադինի շրջանի Նորաշեն գյուղացի Մարգարիտ*

*Մխիթարյանը։ Լսել է իր տատից՝ Բաբայան Պարոնից։ Գրի է առել տողերս գրողը 1964 թ.։*

**128. Աչո արտ:** *ՄՄ, ձեռ. № 9861, էջ 18բ—19բ։ Արտագրություն 1713 թվականի մի գրչագրից։*

## ՆՇԱՆԱՎՈՐ ՔԱՐԵՐ

**129. Ազռավաքար:** *Մ. Թաղիադեանց, Ճանապարհորդութիւն ի Հայս, 1847, էջ 179։*

**130. Օձի քար:** *Գրի է առել Շահոյան Հրանտը 1957 թ., Թալինի շրջանի Մաստարա գյուղում։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Մենք պստիկ վախտ միշտ կերթայինք, կքանդեինք, համա բան չէինք գտնի։ Կսեին՝ ինչքան քանդեք, էնքան սատանեք ապրանք կիջեցուն գետնի տակ»։*

**131. Սուրբ Սարգսի քար:** *Գրի է առել նույն բանահավաքը, նույն թվականին, նույն վայրում։ Նրա վկայությամբ տեղացիները պաշտում են այս քարը, համարելով սուրբ։ Հմմտ. № 176 ավանդության հետ («Սուրբ Սարգսի քար»)։*

**132. Լաչլաչի քար:** *Հաղորդել է Գյուլնազարյան Արայիկը։ Գրի է առել տողերս գրողը, 1962 թ.։*

**133. Հարսնաքար:** *Գրի է առել Մալխասյան Երվանդը, 1957 թ., Ապարանի շրջանի Քուչակ գյուղում։*

**134. Սուրբ Վարդանի քար:** *Մ. Ե. Սմբատյանց, Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գավառի, 1895, էջ 300—302։ Հմմտ. «Արևելյան մամուլ», 1896, էջ 139—140։ Ունի հետևյալ ծանոթությունը. «Նվիրական նշխարը գետային մի սև քար է, հազիվ կես բռաչափ։ Ամեն գյուղերից բարեպաշտների մեծ բազմություն կհավաքվի այստեղ ուխտի»։*

**135. Քավորի և սանամոր քարեր:** *Հաղորդել է Հրազդանի շրջանի Համանում գյուղացի Գրիգորյան Գյուլնարը։ Գրի է առել Կարախանյան Գրիգորը։ Ունի ասացողի հետևյալ ծանոթությունը. «Հրազդանցիք ամառը որ էթում են բանչրի, աղբրից ջուր խմելու համար, էթում են էն քավորի ու սանամոր սրբատեղը։ Քավոր ու սանամոր քարերի վրներին եղը պտուկ-պտուկ դուս ա տալում։ Էնտեղ էթում են ուխտի. պագում են. մոմ վառում, խունկ ծխում, եա դառնում գեղը»։ Հմմտ. № 173 ավանդության հետ («Քավոր-սանամեր»)։*

**136. Քարացած վիշապը:** *Գրի է առել Սարգիս Հարությունյանը 1956 թ.։ Հմմտ. № 168 ավանդության հետ («Քարացած վիշապ-օձեր»)։*

**137. Շանի քար:** Dubois de Montpereux, Voyage autour du Caucase, P. 1840 t. 4, 42.

**138. Հարսի քար:** *Երվ. Լալայան, Գողթան գավառ, ԱԺԱ, էջ 314։ Հմմտ. № 367 ավանդության հետ («Հապուպ»)։*

**139. Հարսի ու փեսի քար:** *Նույն տեղում, էջ 318։ Հմմտ. № 183 ավանդության հետ («Հարսի ու փեսի քար»)։*

**140. Կուզիկ մամի քար:** *Արիստ. Սեդրակյան, Հնութիւնք հայրենեաց, «Արարատ» (էջմիածնի), 1872, էջ 390—391։*

**141. Հոռոմ քար:** *Ս. Խանզադյան, Քաջարան, 1965, էջ 68։*

**142. Պտղաբեր քարը:** *Ս. Խանզադյան, Քաջարան, 1965, էջ 68։*

**143. Նոյի տապանից ընկած քարը:** *Ս. Խանզադյան, Քաջարան, 1965, էջ 67—68։ Ունի-*

*հետևյալ ծանոթությունը. «Երաշտ է եղել ձորերում ու տափարակներում։ Մարդիկ թափոր առ թափոր բարձրացել են մինչև Ջյունահարսի վճիտ աղբյուրը, Նոյի քարը հանել աղբյուրից ու զոհեր մատուցելով նրան, երգեր հնչեցնելով, տարել, ման են ածել երաշտից խանձվող արտերում, որ երկնքի աչքը քաղցրանալով՝ թացանա, ամպ ու անձրև ուղարկի հողին»։*

**144. Ջյունիկի քարե արձանը:** *Ս. Խանզադյան, Քաջարան, 1965, էջ 68։*

**145. Ազռավաքար:** *Հաղորդել է Գորիս գյուղացի Շալունց Մաքանը։ Գրի է առել Սերո Խանզադյանը 1947 թ.։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Քարաժայռի ստորոտում մի խոռոչ կա՝ ծխից սևացած։ Այդտեղ մոմեր են վառել, որպեսզի ագռավը վերացնի հավերի հիվանդությունը» (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

**146. Եզան ուխտատեղի:** Н. Григоров, Село Татев Зангезурского уезда, СМОМПК, вып. 13, отд. I, *էջ 68։*

**147. Հարսնաքար:** *Գրի է առել Սերո Խանզադյանը Գորիսի շրջանի Խնածախ գյուղում, 1946 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։ Հմմտ. №№ 175, 180 ավանդությունների հետ («Հարսի ու փեսի քար», «Հարսնաքար»)։*

**148. Ծակ քար:** *Գրի է առել Սերո Խանզադյանը Գորիսի շրջանի Խոտ գյուղում, 1946 թ. (ձեռագիրը գտնվում է նույն արխիվում)։*

**149. Անիծած քարը:** *Ստ. Կուրտիկյան, Հայրենի լեգենդներ, Երևան, 1963 թ.։*

**150. Հայրիկի քար:** *Հաղորդել է Տաթև գյուղացի Գևորգյան Արտեմը։ Գրի է առել Սերո Խանզադյանը 1945 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։*

**151. Յոթ քույրերի քար:** *Հաղորդել է Գուրգեն Դոլուխանյանը։ Գրի է առել Անահիտ Դոլուխանյանը 1966 թ.։*

**152. Ծծաքար:** *Երվ. Լալայան, Քարերի պաշտամունք (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 43)։*

**153. Օխտն աղջկա քար:** *Նույն տեղում։*

**154. Քարացած հովիվն ու ոչխարները:** *Ա.—Երվ. Լալայան, Վարանդա, ԱԲ, էջ 193։ Հմմտ. №№ 32, 63, 164, 179, 186Ա, 186Բ, 186Գ, 201, 203 ավանդությունների հետ («Հովվի սար», «Աժդահա», «Քարացած հովիվն ու ոչխարները» և այլն)։*

*Բ.—Նույն տեղում։ Հմմտ. նույն ավանդությունների հետ։*

**155. Ցից քար:** *Ա.—Նույն տեղում, էջ 218—219։*

*Բ.—Հաղորդել է Աշան գյուղացի Լ. Հարությունյանը։ Գրի է առել Ալվարդ Ղազիյանը 1966 թ.։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Ըստ տեղացիների Ցից քարի վրա երևում է կնոջ, երեխայի և կթվորի պատկերը։ Քարի մյուս երեսին կան ինչ-որ նշաններ»։*

**156. Քարացած հարսը և հարսնևորները:** *Ա.—Երվ. Լալայան, Վարանդա, ԱԲ, էջ 192։*

*Բ.—Նույն տեղում, էջ 217։*

*Գ.—Նույն տեղում, էջ 218։*

**157. Ծծաքար:** *Նույն տեղում, էջ 189։*

**158. Կուզ քար:** *Հաղորդել է Վազգեն Մնացականյանը 1966 թ.։ Լսել է հորից՝ Գետաշեն գյուղացի (Գանձակի գավառ) Միքայել Մնացականյանից։ Գրի է առել տողերս գրողը։*

**159. Քարեչանի քառ:** *Գ. Ստեփանյան, Գետաշեն գյուղի ազգագրությունը, էջ 3—4 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 11ա)։*

**160. Այվազի քառ:** *Նույն տեղում, էջ 7։*

**161. Վիշապի քարերը:** *Հաղորդել է Գառնի գյուղացի Սաթո Այվազյանը: Գրի է առել Գրիգոր Կարախանյանը 1965 թ.:*

**162. Քարացած խաղը կամ աքարի դեզ:** *Երվ. Լալայան, Նոր-Բայազետ, ԱԺՀ, էջ 88: Հմմտ. №№ 83, 177, 178 ավանդությունների հետ («Շեղջա դար», «Քար դարձած հարսանքը»):*

**163. Պառավաքար:** *Հաղորդել է Գուրգեն Մանուկյանը: Լսել է իր մորից՝ Աբեգնազ Հակոբյանից (Հրազդանի շրջան, Մաքրավանք գյուղ): Գրի է առել Արշալույս Ղազինյանը 1966 թ.:*

**164. Քար դարձած նովիվն ու ոչխարները:** *Հաղորդել է Շամշադինի շրջանի Մարտունի գյուղացի Բաբայան Պարոնը: Գրի է առել Մարգարիտ Մխիթարյանը, 1961 թ.:*

**165. Աղջկա քար:** *Գրի է առել Կարապետյան Արազը, 1962 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում):*

**166. Հարսնաքար:** *Հաղորդել է Իջևանի շրջանի Աչաջուր գյուղացի Ջ. Մեհրաբյանը: Գրի է առել Աշոտ Օհանյանը 1966 թ.:*

**167. Հարս ու կեսուր:** *Հաղորդել է Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղացի Շամամ Ղազինյանը: Գրի է առել վերջինիս որդին՝ Արշալույս Ղազինյանը 1966 թ.:*

**168. Քարացած վիշապներ:** *Ա.—Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն հայոց, 1961 թ., էջ 70: Հմմտ. № 136 ավանդության հետ («Քարացած վիշապը»):*

*Բ.—Երվ. Լալայան, Բորչալու, ԱԺ, էջ 218—219: Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Այժմ Օհան Օձնեցու վանքի և Արդվի գյուղի մեջ ցույց են տալիս այս երկու օձ-վիշապները, որոնք ժայռի մեջ ընկած սև քարի շերտեր են, մոտ հիսնական սաժեն երկարությամբ: ժայռի գլխին քարերի կույտը և մի տափարակ քարի վրա նկարված ափսեն ու գդալները՝ պատկերացնել են տալիս գութանին հաց տանող պառավին»: Հմմտ. Ռ. Ք., Նամակ Լոռուց, «Մշակ», 1875, № 31:*

**169. Մոնդաքար:** *Ռ. Երզնկեան, Հնախօսական տեղագրութիւն Հաղբատայ Ս. Նշանի, 1886, էջ 98—99:*

**170. Խոլնի քար:** *Հաղորդել է Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղացի Շամամ Ղազինյանը: Գրի է առել Արշալույս Ղազինյանը 1966 թ.:*

**171. Հարսնաքար:** *Գրի է առել Նազինյան Արտաշեսը 1961 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում):*

**172. Ջուհար խաչ:** *Ղ. Ալիշան, Երկեր, հատ. 2, 1939, էջ 14: Ունի հետևյալ ծանոթությունը. «Այս եկեղեցին մի փոքրիկ մատուռաձև շինություն է. ներսը ավագ կողմին կանգնեցրած է մի սևագույն, բավականին լայն ու երկայն որձաքար: Քարի վերա եղած արձանագրության խոսքով՝ նա անվանվում է Ջուհար խաչ, և շինված է Սմբատ իշխանի ձեռով մեզանից մի հազար տարի առաջ, բայց ժողովրդի մեջ եղած ավանդությունը այդ քարին տալիս է հրաշալի ծագումն»:*

**173. Քավոր-սանամեր:** *Հաղորդել է Աղինի շրջանի Սառնաղբյուր (Սոկթլի) գյուղացի Գասպարյան Եղիկը: Գրի է առել Վարդ Բդոյանը 1945 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում): Հմմտ. № 135 ավանդության հետ («Քավորի և սանամոր քարեր»):*

**174. Կաթ քար:** *Երվ. Լալայան, Ջավախքի բուրմունք, 1892, էջ 53: Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը: «Այս ավանդությունը պատմվում է Մուրճախեթի գերեզմանոցում կանգնած մի քարի մասին, որ 5 արշին երկարություն, $1^1/_2$ արշին լայնություն և*

*1 արշին հաստություն ունի։ Սորա արևմուտք դարձրած երեսի վրա նկատելի է մի կնոջ պատկեր։ Կաթ չունեցող կանայք գալիս են այդտեղ ուխտ, երեխան դնում են Կաթ-քարի առջև, քարի պատերի վրա քսում են կարագ յուղ, և իրենք քարի առաջ չոքած աղոթում, որ սուրբը երեխայի լացից գութի գալով՝ շատացնե մոր կաթը։ Ուխտը ընդունելի է լինում, երբ «սուրբի քթինքը» (կարագը) հալվում է»։*

**175. Հարս ու փեսի քար:** *Ս. Հայկունի, Բագրևանդ, 1894, էջ 103։ Համա. №№ 147, 180 ավանդությունների հետ («Հարսնաքար», «Խզլար»)։*

**176. Սուրբ Սարգսի քար:** *Հ. Քոսյան, Բարձր Հայք. հատ. 2, 1926, էջ 138։ Համա. № 131 ավանդության հետ («Սուրբ Սարգսի քար»)։*

**177. Քար դարձած հարուստը:** *Երվ. Լալայան, Քարերի պաշտամունք (ձեռագիրը գտնըվում է ՊԹԱ արխիվում, № 43)։ Համա. №№ 83, 162 ավանդությունների հետ («Ճեղջա դար», «Քարացած քակոր կամ աթարի դեզ»)։*

**178. Անգութ եղբոր քարը:** *Մ. Կ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն, մասն 2, 1885, էջ 125—126։ Համա. №№ 83, 162, 177 ավանդությունների հետ («Ճեղջա դար», «Քարացած քակոր կամ աթարի դեզ», «Քար դարձած հարուստը»)։*

**179. Քար դարձած ուղտապանը:** *Կ. Գաբիկյան, Բառգիրք Սեբաստահայ գավառալեզվի, 1952, էջ 671։ Համա. №№ 32, 63, 154Բ, 164, 186Ա, 186Բ, 186Գ, 201, 203 ավանդությունների հետ («Հովվի սար», «Աժդահա», «Քարացած հովիվն ու ոչխարները» և այլն)։*

**180. Խզլար:** *Գ. Ջուլում, Խզլարի ավանդավեպը, «Բյուրակն», 1900, էջ 380—381։ Համա. №№ 147, 175 ավանդությունների հետ («Հարսնաքար», «Հարս ու փեսի քար»)։*

**181. Սուրբ թռչուն:** *Արշ. Ալպոյաճյան, Պատմություն Եվդոկիո հայոց, 1952, էջ 391, 487, 498։ Ունի հետևյալ ծանոթությունը. «Կարմիր արտեն քիչ մը հառաջ երթալով կպատահինք միապաղաղ լերկ քարի մը, կարծես ուրիշ տեղե մը ինկած ըլլնի այս քարը այնտեղ։ Քարին երկու կողմն երկու այրեր կան փորված. ճամբուն վրա նայող այրը իր դրան ներքին շրթան վրա հունարեն գրով տող ու կես արձանագրություն ունի, իսկ մյուս այրին մեջ գերեզմանի չափով ու ձևով փորված մը»։*

**182. Մատուռ քարեր:** *Գրի է առել Սեներերիմ Շալչյանը, 1939 թ. (ձեռագիրը գտնըվում է ՊԹԱ արխիվում, № 55, էջ 7)։ Բանահավաքի հավաստմամբ այստեղ ժամանակին եղել է քրիստոնեական մատուռ։ Համա. ԱԻԵ, էջ 26։*

**183. Հարս ու փեսի քար:** *Գ. Սրվանձտյանց, Գրոց ու բրոց, 1874, էջ 51։ Համա. № 139 ավանդության հետ («Հարս ու փեսի քար»)։*

**184. Ջորաքար:** *Արսեն Թ(ոխմախյան), Վարագա հայրենյաց երգեր, 1865 թ.։ Համա. №№ 131, 196 ավանդությունների հետ («Սուրբ Սարգսի քար», «Ջրահետիկ»)։*

**185. Թադեոս առաքյալի քար:** *Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻԵ, էջ 29։ Բանահավաքի հավաստմամբ շատերը ուխտի են գնացել այս քարին։*

**186. Քար դարձած հովիվն ու ոչխարները:** *Ա.—Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻՁ, էջ 195—196։ Տե՛ս նաև Հ. Աճեմյան, Ծաղկաքաղ Վասպուրականի հայ ժողովրդական բանահյուսության, Ա. Փունջ, 1917, էջ 83—85։ Համա. №№ 32, 63, 154Բ, 164, 179, 186Բ, 186Գ, 201, 203 ավանդությունների հետ («Հովվի սար», «Աժդահա» և այլն)։*

*Բ.—Նույն տեղում, ԱԻԵ, էջ 30։ Համա. նույն ավանդությունների հետ։*

*Գ.—Մ. Կ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն, մասն 2, 1885, էջ 34—35։ Համա. Նույն ավանդությունների հետ։*

**187. Րաֆֆու քարը:** *Հ. Աճեմյան, «Ձայն տուր ով ծովակ», տես Փարիզի «Հառաջ» պարբերականը, 1937 թ., № 3571, էջ 2 և № 3573, էջ 2: Քաղել է խաչիկ Սամվելյանը։*

**188. Ծամքար:** *Ա.—Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ Հայս, 1864, էջ 274: Համա. Մ. Խորենացի, Պատմութիւն հայոց, 1913, էջ 56, Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց պատմության մեջ, 1900, էջ 511—515, 538—549:*

*Բ.—Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻՆ, էջ 27—28:*

*Գ.—Նույն տեղում: Համա. Հ. Աճեմյան, Ծաղկաքաղ Վասպուրականի հայ ժողովրդական բանահյուսությունից, փունջ Ա., 1917, էջ 72—73: Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Այսօր, երբ ուղևոր մը Վանի կողմեն Արտամետը մտնե, գյուղի սկզբնամասին մոտիկ, ճամբու եզերքին, փոսի մը մեջ տեղավորված մոտ 10 կանգուն բարձրությամբ և 20 կանգուն շրջագծով հսկա քարի մը կը հանդիպի։* **Ծամքարն** *է այդ, որը Շամիրամ թագուհին իր գլխու ծամերու մեջ դրավ և ձգեց Առնակի ետևեն, զայն սպաննելու նպատակով:*

*Արտամետցին այդ քարի մասին շատ հաճույքով կը պատմե հայտնի առասպելը:*

*Այդ քարի կողերուն վրա քանի մը շարք խիստ նուրբ և մազանման փորվածքներ կան: Ավանդապաշտ ու միամիտ ժողովուրդը կհավատա, որ այդ նուրբ փոսերը, հետքերը կամ տեղերն են Շամիրամի մազերուն (ծամերուն):*

*Արտամետի հայ աղջիկներ կհավատան, որ Ծամքարը օժտված է Շամիրամի մազերու հմայիչ զորությենեն, որ այժմ աներևույթ կերպով կմնա իր մեջ: Կարճ մազեր ունեցող աղջիկները ջերմ հավատքով Ծամքարին կմոտենան և իրենց մազերը կփռեն անոր վրա, որպեսզի երկարի, և կամ՝ Շամիրամի առվեն (որը Ծամքարի մոտեն կանցնի) կում մը ջուր կբերեն ու մազերը քարին վրա փռելով կլվանան, որ երկարին, նուրբ ու դիմացկուն ըլլան, Շամիրամի պես շնորհք ունենան... Իսկ ծամաշատ աղջիկները ուխտի կուգան Ծամքարին, որ իրենց ծամերը ավելի երկարին ու դիմացկուն, գեղեցիկ ըլլան, Շամիրամի ծամերու հմայքը ունենան»:*

**189. Կատվան քարիկ:** *Գրի է առել Սեննեքերիմ Շալչյանը 1939 թ. (ձեռագիրը գտնվում է ՊԹԱ արխիվում, № 55, էջ 12): Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Քարաժայռի ճեղքի մեջ կատվի նմանող մի փոսիկ կա, որի պատճառով և ժայռը Կատվան քարիկ է կոչվում»:*

**190. Նարեկացու քարերը:** *Ա.—Ն. Սարգիսեան, Տեղագրութիւն ի Փոքր և ի Մեծ Հայս, 1Ɛ64, էջ 250: Ունի հետևյալ ծանոթությունը «Եւ յետ ժամանակաց՝ խաչաքար կանգնեալ են հանդէպ նորա, նշան ուխտատեղի լինելոյ»:*

*Բ.—Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻՁ, էջ 197: Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Վերցնում են չորս փոքրիկ քարեր և գցում հանգելաքարերի վրա. եթե խաչաձև դասավորվեցին, նշանակում է, որ կատարվելու է գցողի մուրազը, իսկ եթե ոչ՝ չի կատարվելու»:*

*Գ.—Մ. Կ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն, մասն 1, 1884, էջ 110—112:*

**191. Քարացած քույր ու եղբայր:** *Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻՁ, էջ 197:*

**192. Դարբնաց քար:** *Մ. Խորենացի, Մատենագրութիւնք, 1843, էջ 294:*

**193. Աստվածամոր քար:** *Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻՁ, էջ 197:*

**194. Նեմրութ թագավորն ու քարացած ուղտերը:** *Ա.—Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ Հայս, 1864, էջ 273—274։ Համա. Մ. Կ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն, մասն 1, 1884, էջ 80։*

*Բ.—Ս. Մովսիսյան (Բենսե), Հին ու նոր կենցաղ Բուլանըխի հայության, մասն 1, էջ 97—98 (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Դաժան, անգութ և բռնակալ մարդկանց նեմրութ են ասում։ Նեմրութ են կոչվում նաև մռայլ դեմք ունեցող, մաղձոտ ու տխուր մարդիկ»։*

*Գ.—Գ. Սրվանձտյանց, Գրոց ու բրոց, 1874, էջ 47—48։*

*Դ.—Հաղորդել է Խլաթի Ծղակ գյուղացի Մուրադ Կուբադյան-Սուքիասյանը։ Գրի է առել Սարգիս Հարությունյանը 1955 թ.։ Ունի ասացողի հետևյալ ծանոթությունը. «Նամրութ իբր մե անտես մարդ էղեր ա, մռութ կախ էղեր ա. էդտեղից էլ նամրութ մարդ»։*

**195. Անղրի քարեր:** *Երվ. Լալայան, Քարերի պաշտամունք (ձեռագիրը գտնվում է ԳԹԱ արխիվում, № 43)։*

**196. Ջորաննոտիկ:** *Հ. Էփրիկյան, Բնաշխարհիկ բառարան, հատ. 2, գիրք 1, 1907, էջ 289։ Համա. №№ 131, 184 ավանդությունների հետ («Սուրբ Սարգսի քար», «Ջորաքար»)։*

**197. Սանղի քար:** *Գ. Սրվանձտյանց, Գրոց ու բրոց, 1874, էջ 94—95։*

**198. Կուսանաց քարեր:** *Երվ. Լալայան, Քարերի պաշտամունք (ձեռագիրը գտնվում է ԳԹԱ արխիվում, № 43)։*

**199. Պառվու քար:** *Նույն տեղում։*

**200. Տրդատի քար:** *Գ. Ա., Մշեցի կինը, «Բյուրակն», 1898, № 4, էջ 56։*

**201. Քարացած հովիվն ու ոչխարները:** *Ս. Շեհրիր, Բու և կանկար, «Բյուրակն», 1900, էջ 326։ Համա. №№ 32, 63, 154Բ, 164, 179, 186Բ, 186Գ, 203, 354 ավանդությունների հետ («Հովվի սար», «Աժդահա», «Քարացած հովիվն ու ոչխարները» և այլն)։*

**202. Դավթի քարը:** *Հաղորդել են Մշո դաշտի Խաս գյուղի բնակիչները։ Գրի է առել Հ. Համամճյանը 1910 թ.։ Տե՛ս «Հայրենիք», 1933, № 3։ Նույնը արտատպված է նաև «Սասնա ծռեր», հատ. 2, գիրք 1, 1944, էջ 129։ Ավանդաբար ասում են, թե այս քարի վրա կա Սասունցի Դավթի ձեռքի դրոշմը։*

**203. Քարացած հովիվն ու հոտը:** *«Նոր դեղի ազգագրական հանդես», մասն 1, 1964, էջ 45։ Համա. №№ 32, 63, 154Բ, 164, 179, 186Ա, 186Բ, 186Գ, 201, 354 ավանդությունների հետ։ («Քարացած հովիվն ու ոչխարները», «Կրիա»)։*

**204. Զալոյի քար:** *Գ. Հալաճյան, Դերսիմի ազգագրությունը, էջ 245 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 5ա)։*

**205. Սուլթան-Մուրադի քար:** *Գ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, մասն 1, 1879, էջ 304։*

**206. Քարացած զույգ:** *Արշ. Ալպոյաճյան, Պատմություն հայ Կեսարիո, հատ. 1, 1937, էջ 21։ Ունի հետևյալ ծանոթությունը. «Մինչև այսօր մայրերը հոն կտանին իրենց զավակները և զանոնք գինեմոլութենե զգուշացնելու համար, ցույց կուտան այդ քար կտրած ամոլին մարմինները»։*

**207. Շարան քարեր:** *Վ. Պետոյան, Սասնա ազգագրությունը, 1965, էջ 36, 385։*

**208. Ցոփըռ քար:** *Նույն տեղում, էջ 27։*

**209. Սատանի եղունգ:** Ա.—Ս. Մովսիսյան (Բենսե), Հին և նոր կենցաղ Բուլանըխի հայության, մասն 1, էջ 133 (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։
Բ.—Թուխ-Կոպո, Ավանդություններ Բիթլիսի մեջ, «Բյուրակն», 1898, № 22, էջ 426։

**210. Աստվածածնի քար:** Աղ. Մխիթարյան, Փշրանքներ Շիրակի ամբարներից, հատ. 1, 1901, էջ 206։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Սպիտակ գույնով փխրուն քար է, որը ջրի մեջ մասամբ լուծվում է և ջուրը կաթի գույն է ստանում։ Այն տալիս են քիչ կաթ ունեցող կանանց, որպեսզի նրանց կաթն առատանա»։

## ԼՃԵՐ, ԳԵՏԵՐ, ՋՐԱՆՑՔՆԵՐ, ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

**211. Թոխմախան գյոլ:** Եվ. Բայբուրդյան, Հայաստանի գունավոր կերամիկան, «Տեղեկագիր պատմության և գրականության ինստիտուտի», գիրք 2, 1937, էջ 278։

**212. Բաղերի լիճ:** Մ. Հովհաննիսյան, Բադերի լճում մեծ հարստություն կա, «Սովետական Հայաստան», 1961, № 48։

**213. Մեծամորի լիճ կամ Այղր-գյոլ:** Ա.—Պ. Պռոշյան, Երկերի ժողովածու, հատ. 1, 1953, էջ 309—310։ Ունի հետևյալ ծանոթությունը. «Մեծամորի ջուրը գալիս է Արագածի կատարի լճից»։
Բ.—Նույն տեղում։

**214. Սև լիճ կամ Ղարա-գյոլ:** Ա.—Հաղորդել է Գորիս գյուղացի Մաթևոսյան Հայրապետը։ Գրի է առել Սերո Խանզադյանը 1946 թ. (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում)։
Բ.—Ճանապարհորդական նկատողություններ, «Նոր-Դար», 1887, № 175։

**215. Ծովք:** Գրի է առել Տիրայր արք. Տեր-Հովհաննիսյանը (ձեռագիրը գտնվում է ԳԱԹ արխիվում, Տ. Տեր-Հովհաննիսյանի ֆոնդում)։

**216. Օխնած գյոլ:** Հաղորդել է Լեռնային Ղարաբաղի Ստեփանակերտի շրջանի Սեյդիշեն գյուղացի Սերգեյ Սարինյանը։ Գրի է առել տողերս գրողը 1966 թ.։

**217. Սևանա լիճ:** Ա.—Գրի է առել լեզվաբան պրոֆ. դ-ր Աշոտ Աբրահամյանը, 1961 թ.։ Ունի գրառողի հետևյալ ծանոթությունը. «Գյուղից հարավ լճի մեջ երկարված փոքրիկ հրվանդանից դեպի արևմուտք, ափից հազիվ մի քանի քայլ հեռու ջրի մակերեսից փոքրինչ վեր էր բարձրանում մի ժայռաբեկոր, որին տեղի բնակիչները անվանում էին «Հարսնաքար»։

Ասում են, որ Ցամաքաբերդ և մոտակա մյուս գյուղերում, երբ հարսանիք է լինում, հարսանեկան հանդեսի օրը նորապսակներին մի քանի անգամ պտտեցնում են այս Հարսնաքար կոչված քարաժայռի շուրջը»։

Նույն ավանդությունը՝ մասնակի գրական մշակմամբ բերված է «Կապույտ Սևանի ափերով» խորագիրը կրող մի ակնարկում (տե՛ս «Պիոներ կանչ», 1957 թ., № 55)։ Համա. №№ 219, 220 ավանդությունների հետ («Ջալթըր», «Գայլատվա լիճ»)։

Բ.—Հաղորդել է Բարխուդարյան Թամարը։ Գրի է առել Մարտիրոսյան Արտաշեսը, 1965 թ.։

**218. Արյունոտ լիճ կամ դանլի-գյոլ:** Տեղագրական պատառիկներ, «Արևելյան մամուլ», 1895, էջ օծՀ։

**219. Ջալթըր:** Հաղորդել է տեղացի «մի հայ գարբին»։ Գրի է առել Մարտիրոս Սարյանը 1903 թ. ամռանը։ Տես Մ. Սարյան, Գրառումներ իմ կյանքից, գիրք առաջին, Երե-

*վան, 1966, էջ 65։ Համա. №№ 217, 220 ավանդությունների հետ («Սևանա լիճ», «Գայլատվա լիճ»)։*

220. Գայլատվա լիճ կամ Բալդ-գյոլ: *Ա-Դո, Վանի, Բիթլիսի և էրզրումի վիլայեթները, 1912, էջ 203։ Համա. № 217, Ա, 219 ավանդությունների հետ («Սևանա լիճ», «Ձալթըր»)։*

221. Վանա լիճ: *Ա.—Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ Հայս, 1864, էջ 275։*

*Բ.—Մկո, Վանա ծովը, «Արձագանք», 1882, էջ 19։ Նույնը մի փոքր համառոտած տես նաև՝ Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻԵ, էջ 60։*

*Գ.—Գ. Սրվանձտյանց, Գրոց ու բրոց, 1874, էջ 93—94։*

*Դ.—Երվ. Լալայան, Վասպուրական, ԱԻԵ, էջ 60։*

222. Արճակ: *Ս. Ավագյան, Արճակ, էջ 2—3 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում)։*

223. Ախթամար կղզին: *Ա.—Հ. Հ. Ոսկյան, Վասպուրական-Վանի վանքերը, մասն 1, 1940, էջ 87—88։ Համա. «Արարս», 1898, էջ 70—72, «Բազմավեպ», 1897, էջ 150—152, «Լումա», 1896, գիրք 2, էջ 111—112, «Լույս», 1898, № 2, «Բյուրակն», 1899, № 13։*

*Բ.—Տ. Փիրումյանց, Ախթամար կղզին, «Տարազ», 1893, № 2, էջ 31։ Ունի բանահավաքի հետևյալ ծանոթությունը. «Շրջելով Ախթամարի մոտակա գյուղերը, մենք լսեցինք հետևյալ հին ավանդությունը։ Երբ ես, սրանից մի քանի ամիս առաջ, այդ ավանդությունը պատմեցի պ. Հովհ. Թումանյանցին, նա հենց նույն օրը կազմեց դրանից մի սիրուն ոտանավոր, որ տպվեցավ «Մուրճ» ամսագրի 1892 թ., № 4-րդում»։ Տե՛ս Հովհ. Թումանյան, Երկերի ժողովածու, հատ. Ա., Երևան, 1950 թ., էջ 275—277, նաև՝ էջ 177—178, 683—685։*

224. Առտեր: *Ա.—Մկո, Վանա ծովի կղզիները, «Արձագանք», 1882, 20։ Համա. Հ. Հ. Ոսկյան, Վասպուրական-Վանի վանքերը, մասն 1, 1940, էջ 133—134։*

*Բ.—Ա. Սոլաքյան, Վանա բանահյուսությունից, ԱԺԲ, էջ 99։*

225. Քահանայի լիճ կամ Քեշիշ-գյոլ: *Ա.—Հ. Երեմյան, Հուշարձան, հատ. 1, 1929, էջ 66։*

*Բ.—Գրի առնողն ու գրառման ժամանակը հայտնի չէ (ձեռագիրը գտնվում է ՀԱԺԲ արխիվում, № 872Գ)։ Համա. Հ. Երեմյան, Հուշարձան, հատ. 1, 1929, էջ 66—67։*

226. Սպահանի լճակը: *Մ. Կ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն, մասն 3, 1885, էջ 18։ Համա. №№ 225Ա, 225Բ ավանդությունների հետ («Քահանայի լիճ կամ Քեշիշ-գյոլ»)։*

227. Կարապների լիճ: *Գ. Հալաճյան, Դերսիմի ազգագրությունը, էջ 1288—1289 (ձեռագիրը գտնվում է ՀԱԱ արխիվում, № 5դ)։*

228. Այղըր գյոլ: *Նույն տեղում, էջ 1280։ Համա. № 213 ավանդության հետ («Մեծամորի լիճ կամ Այղր գյոլ»)։*

229. Ջինգոլ: *Վ. Պետոյան, Սասնա ազգագրություն, 1965, էջ 30։*

230. Արաքս: *Ա.—*Известия древних греческих и римских писателей о Кавказе, часть I, 1884, *էջ 157։*

*Բ.—Լսել է Ավետիք Իսահակյանը հայրենի Շիրակում։ Ավանդությունը հիմք է դարձել նրա «Արաքսի ծնունդը» չափածո լեգենդի համար, որը կրում է «Աշուղ Վշտալիի*

